Հայկական ՍՍՌ
ՄՈԼՈՏՈՎԻ անվան ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ



# ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ՀԱՏՈՐ XXVI





ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1948

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ԱՆՎԱՆ ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ



Հ. ԱՃԱՌՅԱՆ



# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ՀԱՏՈՐ Դ.



ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1948

# Ն

*ՆԱԲԱԹ, իգ.<Թրք. nabat «սառնաշաքար» բառից. իբրև անձնանուն գործածված է մեր մեջ առաջին անգամ 1611 թ. Նապաթ ձևով (Թորոս աղբ. Բ. 424), ապա 1678 թ. Նապաթ (Ձեռ. Նոր-Բայազ. 2 բ). Նույնը գրված է Նօպաթ՝ անթվական մի հիշատակարանում (Rapport Belgique 52)։ Գործածական է այժմ Ղարաբաղում։

*ՆԱԴԱՐ, ար. նույն Նազար անվան տարբեր արտասանությունն է. ավանդված է Նատար ձևով՝ 1581 թ. (Ձեռ. Թավր. 75 բ) և 1609 թ. (Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 242)։—Նույնը կա իգ. Նաղար՝ Թիֆլ. անհայտ (Ձեռ. Վասպ. 642) և Նատար կամ Նատարփաշա իգ. 1557 թ. (անդ 657—8)։

*ՆԱԴԱՐՂՈՒԼԻ, ար.<նախորդ Նաղար անունից+Թրք. قول qulə «ծառան». ամբողջը նշանակում է «Նադարի ծառան»։ Ավանդված է մի անգամ 1531 թ. Արատէսի հանգստարանում, մի խաչքարի արձանագրության մեջ՝ Նատարղուլի ձևով (Սիսական 144, Արրտ. 1888, էջ 772)։

*ՆԱԴԱՐՓԱՇԱ տես Նադար։

*ՆԱԴԻՐ, ար.<արաբ. نادر nādir բառից, որ նշանակում է «հազվագյուտ» և է հատուկ անուն. հմմտ. Nādiršāh Պարսից թագավորը։ Մեր մեջ իբրև անձնանուն գործածված է ԺԴ—ԺԶ դարերում։ Սրանից է Նադիրխան կամ Նատիրխան ազգանունը, որ գործածական է այժմ։

— 1. Նատիր, գրիչ, հայր և ուսուցիչ Ստեփանոս քահանայի, որ Խրիմի Սուրխաթ քաղաքում, Յովհաննէս կրոնավոր Սեբաստացու համար օրինակեց Դաւթի Սահմանաց գիրքը, 1363 թ.—Manus. brit. mus. 248 ա։

— 2. Նատիր, որդի Մուրատի և եղբայր Վրթանէս քահանայի, որ Թովմա աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1456 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 31 ա։

— 3. Նատիր, որդի Էրկիլի և հանգուցյալ եղբայր Զաքարայ աբեղայի, որ Յակոբ քահանայից գնեց մի Շարակնոց, Երզնկայում, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 աբ։

— 4. Թերևս ԺԸ դարից է նաև Նատիր գրիչ Էջմիածնի Գև. № 672 ծառընտրի (տես հրատ. Ազատ. 1909 թ. յուշ. էջ ԽԷ և Ջիռ. Կարին. 161)։ Իսկ ավելի ուշ՝ 1596 թվից է ունի Նատիր (Ջեռ. Թուր. 75 բ)։

*ՆԱԶ, իգ.<պրս. ناز nāz «նազանք» կամ հյ. նազ բառից։ Ավելի ճիշտ՝ կրճատված է Նազլու, Նազանի, Նազխաթուն ևն անուններից։ Այս կրճատ ձևի տակ մի անգամ ունինք գործածված ԺԴ դարում։

— Նազ, մայր Շահնշահի, որ Գողթան գավառի Կապտառի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Ավետարանը՝ 1336 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

ՆԱԶԱԶ, ծագումն ինձ անհայտ. հիշված է թե՛ ար. և թե՛ իգ. ձևով՝ ԺԷ դարում և միևնույն անձի թե՛ մոր և թե՛ որդու անունն է.—Ջեռ. Դադեան, Ա. 105 բ։ Գուցե սրա հետ նույն է՝

ՆԱԶԱՂ, որ հիշված է Տող բերդի (Արցախ) եկեղեցու անթվական մի խաչքարի վրա (Բարխուդ. Արցախ 84)։

*ՆԱԶԱՆԴԱՐ, իգ.<պրս. نازنده nāzanda «նազող» բառից. -r բաղաձայնը հավելված է ինչպես سازنده sāzanda>սազանդար «նվագածու» բառի մեջ։ Մի անգամ հիշված է 1677 թ. Ջեռ. Դադեան, Բ. 34 (տպ. Հազանդար, բայց ցանկում Նազանդար)։

†ՆԱԶԱՆԻ, իգ.<հյ. նազանի «նազելի» բառից. այժմ կենդանի և գործածական անուն է. տես Սմբատեանց, Սաղիան 291։

*ՆԱԶԱՐ, ար.<արաբ. نظر nazar «նայվածք, հայացք» բառից. Ռուսների մոտ էլ գործածական է իբրև անձնանուն. հմմտ. Մելիք-Նազար՝ Հալէպի սուլթանը, Հեթում Ա թագավորի ժամանակ, 1250-ական թվերին, Մելիք-Նազար՝ սուլթան Եգիպտոսի, Լևոն Ե թագավորի ժամանակ, 1320-ական թվերին։ Հմմտ. նաև Հախնազար, Շահնազար, Բէգնազար, Գուլնազար, Նազարբէգ են անունները։ (Պատահական նմանություն ունի Նազարիոս հունական անունը. հմմտ. Նազարիոս վկա Յայսմավուրքում)։ Այս անվան հնագույն հիշատակությունները են մեր մեջ Գօղոս-Բուլաղի (Դարբանդ) գերեզմանատան երկու տապանաքարերը, առաջինը 801 թվից (շատ կասկածելի), երկրորդը 1261 թ. (հավանական) (տես Բարխուդ. Աղուանից երկ. 109—110)։ Ամենից վստահելի հիշատակությունները են Նազար 1535 թ. (Ջեռ. Թուր. 88 ա) և 1569 թ. (Ջեռ. Վասպ. 134)։ Կա նաև Նազար իգ. հիշված 1601 թ. ('Manus. brit. mus. 252 ա)։ Գործածական անուն է այժմ, որից և Նազարեան ազգանունը։ Նոր ժամանակներից է՝

— Նազար վրդ. Թլեցի, ունի Պատմութիւն վարուց Մոկացի Յովհաննէս վարդապետի (1710—1770), տե՛ս Ձեռ. Դաշեան, Բ. 58 բ։

*ՆԱԶԱՐԲԷԿ, ար.<Նախորդ Նազար անունից+թրք. بگ beg «իշխան»։ Հնագույն հիշատակությունը ԺԶ դարից. ավելի ուշ ունինք 1573 թ. (Միսական 422), 1655 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 48)։ Սրանից է Նազարբեկյան ազգանունը։

— Նազարբեկ, աշակերտն է տանուտեր Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց Ավետարանը 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

*ՆԱԶԱՐԷԹ, ար.<Պաղեստինի համանուն քաղաքի անունից (հուն. Ναζαρέθ), ուր բնակվել է Հիսուսը՝ Եգիպտոսից վերադառնալուց հետո և որի անունով էլ կոչվեց Նազովրեցի (Մատթ. Բ. 23)։ Պատահական նմանություն ունին արաբ. نظارت nazārat «տեսչություն» և نضارت naḋārat «զվարթություն, գեղեցկություն», որոնցից եթե լիներ հայ բառը, գոնե Նազարաթ ձևը պիտի ունենար։ Այս անվան հնագույն հիշատակություններն են՝ 1607 թ. (Դրնգ. 114), 1618 թ. (Ձեռ. Կարին. 51), 1629 թ. (Կնիք հաւ. յուշ. IV, Նոր-Ջուղայում), 1653 թ. (Ձեռ. Վեննետ. Բ. 1037)։ Գործածական էր Պոլսում՝ անցյալ դարում։ Սրանից է Նազարեթյան ազգանունը։

*ՆԱԶԱՐՇԱՀ, ար.<Նախորդ Նազար անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Հիշատակված է Գոշավանքի անթվական մի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. Ժ, էջ 31), նույնպես և մի ուրիշ անթվական արձանագրության մեջ (Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Ա. 1010)։

†ՆԱԶԵԼԻ, իգ.<հյ. Նազելի ածականից. հիշված է իբրև անձնանուն 1760 թվերին (Գալէմքեարեան, Կենս. Սարգիս արք. էջ 305)։

†ՆԱԶԵՆԻ, ար.<հյ. Նազենի ձևով ածականից. հմմտ. հաջորդը. հիշված է Նազենի ոմն Սաղմոսարանի մեկնության մեջ, տպ. Պոլիս 1801, էջ 110։

†ՆԱԶԵՆԻԿ, իգ.<հյ. Նազ բառից (որ պրս. փոխառություն է) -ենի, -ենիկ մասնիկով, ճիշտ ինչպես ունինք Վարսենիկ, Սաթենիկ, Արփենիկ: Ավանդված հնագույն ձևն է Նազինիկ, որ թերևս պետք է ուղղել Նազենիկ, ինչպես ընդունված է այժմ։ Սրա հետ նույն է Նազենի: Կրճատվելով դառնում է Նազիկ, ճիշտ ինչպես մյուսներն էլ լինում են Վարսիկ, Սաթիկ, Արփիկ: Կա և

ավելի կրճատ Նազէ ձևը՝ ԺԷ դարից (Աշխարհ. 3092) և 1730 թ. (Ձեռ. Վասպ. 493)։

— Նազ/ինիկ երգչուհի, Բակուր Սիւնի իշխանի հարճը (ժամանակակից Տիրան Ա. Թագավորի, որ նստել է ըստ Զամչ. 131—152 թ)։—Խոր. Բ. կզ։

*ՆԱԶԵՓԱՐ, իգ.<պրս. ناز nāz «նազանք»+ کار kār «գործող, անող» բառերից։ Իբրև անձնանուն հիշված է մեր մեջ 1558 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 133)։ Սրա վրիպակ գրչությունն եմ համարում Նազեֆար 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310)։

Նազէ տես Նազենիկ:

†ՆԱԶԻ, իգ. կրճատ ձևն է Նազիկ անվան. հիշված է 1610 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 9 բ)։

†ՆԱԶԻԿ, իգ.<կրճատ ձևն է Նազենիկ անվան. հիշված է ԺԵ դարում։ Գործածական է նաև այժմ. սրանից է կազմված Նազիկեան ազգանունը։

— 1. Նազիկ, կին Աթաբէգի և մայր Սպահանի, որ Սաղմոսավանքում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Թաւր. էջ 22 բ։

— 2. Նազիկ, մերձավորն է տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 3. Նազի (կրճատ ձև), 1671 թ. (Ձեռ. Վասպ. 940)։

— 4. Նազիր (գուցե Նազիկ), հարսն է Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

*ՆԱԶԼՈՒ, իգ.<Թրք. نازلو nazlu, nazlə «նազելի» բառից։ Ավանդված է ԺԶ դարից և գործածական է նաև այժմ։ Հնագույն վկայությունները են՝ Նազլու 1569 թ. (Թորոս աղբ. Ա. 222), 1635 թ. (Ձեռ. Վասպ. 887), 1654 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 385), 1655 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 577), 1662 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 13), 1664 թ. (Ձեռ. Կես. ածած. 56 բ), 1694 թ. (Թորոս աղբ. Ա. 220), Նազլի խաթունն՝ ԺԷ դար (Ձեռ. Վասպ. 992)։

*ՆԱԶԼՈՒԽԱՆ, իգ.<Թրք. نازلو nazlu «նազելի»+պրս. خان xān «իշխան» բառերից։ Հնագույն հիշատակությունները են՝ 1649 թ. (Հնոց և Նորոց 127), 1659 թ. (Սիսական 355), 1665 թ. (Սիսական 355), 1666 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 37), 1673 թ. (Ձեռ. Սանաս. 14 բ), 1674 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 46 բ)։ Կա և Նազլիխան ձևով՝ 1709 թ. (Ձեռ. Վասպ. 255)։

*ՆԱԶԼՈՒՄ, իգ. <Թրք. نازلم nazlum «իմ նազելին, նազելիս» բառից։ Գտնում եմ հիշատակված 1619 թ. (Ջեռ. Թաւր. 68 ա) և 1620 թ. (Bodleian 118)։

*ՆԱԶԽԱԹՈՒՆ, իգ. <պրս. Nāz-xātūn անունից, որ կազմըված է nāz «նազանք» և xātūn «տիկին» բառերից։ Պարսից մեջ այս անունը ավանդված է ԺԴ դարու սկիզբը (Justi 227 բ), մինչդեռ մեր մեջ արդեն ծանոթ է ԺԳ դարից։

— 1. Նազխաթուն, հիշված է Գոշավանքի մի արձանագրության մեջ՝ իբր պատարագ ստացող 1231 թ.—Ազգագր. հանդ. Ժ, 31, Արցախ 352։

— 2. Նազխաթուն, կին Սուքիասի, մայր Գրիգոր գրչի, որ Կաֆայում օրինակեց Տոնականն ու Ցայսմաւուրքը՝ Աւետիք վարդապետի հրամանով, 1307 թ.—Manus. bibl. nat. էջ 57, 60։

— 3. ՆաԶ խաթուն, դուստր Աֆէնտի. գնեց մի Աւետարան և ի հիշատակ իր հանգուցյալ որդի Սիրպէկի, նվիրեց Ազախ քաղաքի (այժմ Ազով) եկեղեցուն, 1341 թ.—Տաշեան, Ցուց. 885։

— 4. Նազխաթուն, կին Կիրակոսի՝ որդւոյ Շիրինի, ի Տիոյ (գիւղ Խիզանի), միասին օգնեցին դրամով Յովհաննէս Հռետորին, որ Խիզանի Ս. Խաչ վանքում օրինակեց Գր. Տաթևացու Քարոզգիրքը 1413 թ.—Նոտարք 43։

— 5. Նազխաթուն, դուստր Վարդանի, կին տանուտեր Յովհաննէսի, քեռառն Թադէոս քահանայի (№ 56), որ Մոկաց Ծպատայ վանքում գրել տվեց մի Ճառընտիր. 1413 թ.—Ջեռ. Հալէպի Ա. 269, 273 ա, Ջեռ. Վասպ. 294։

— 6. Նազխաթուն, դուստր Սիմէոնի և քույր Գրիգոր կրոնավորի, որ ստացավ Քարոզգիրք Տաթևացու 1419 թ.—Տաշեան, Ցուցակ 978։

— 7. Նազխաթուն, կին Առաքել քահանայի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Ճաշոց 1444 թ.—Նոտարք 135։

— 8. Նազխաթուն, դուստր Բուրթելի և քույր Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

— 9. Նազ խաթուն, կին Հայրապետ քահանայի և մայր Ստեփաննոս գրչի, որ Բաղէշում օրինակեց Ցայսմաւուրքը 1446 թ.—Նոտարք 152։

— 10. Նազխաթուն, դուստր Կիրակոս Սարփեցու, որ գնի միջնորդ եղավ տանուտեր Էգբիլշահի և Յովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 621։

— 11. Նազխաթուն, կին Շատաւրի և մայր տանուտէր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում գրել տուեց մի Աւետարան 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453—4։

— Աւելի ուշ ժամանակից են Նազխաթուն 1503 թ. (Ձեռ. Վասպ. 280), 1609 թ? (Ձեռ. Հալէպի, Ա. 98 ա), 1668 թ. (Թորոս աղբ. Բ. 440)։ Կա և Նաշխաթուն՝ ԺԶ դար (Ձեռ. Դաշեան, Ա. 12 բ), որ կարծեմ թե վրիպակ է։

*ՆԱԶՄԵԼԻՔ, իգ.<պրս. ناز nāz «նազանք»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից։

— 1. Նազմելիք, կին Սիմէոնի և մայր Յակոբ սարկաւագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան, յուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 2. Նազմելիք, կին մահտեսի Մուրատի և մայր Թովմա (№ 66) քահանա գրչի, որ օրինակեց Վանում մի Մաշտոց, 1393 թ.—Նոտարք 3։

— 3. Նազմելիք, դուստր Վարդանի, կին Յովանէսի և քոյր Թադէոս (№ 56) քահանայի, որ Մոկաց Ծպատայ վանքում գրել տուեց մի Ճառընտիր—Տօնական, 1413 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. էջ 273 ա։

— 4. Նազմելիք, եղբորդուստր Աղարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տուեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— Հիշատակված է նաև Նազամելիք ձևով, Հաղբատի մի արձանագրության մեջ՝ առանց թվականի (Երզնկեանց, Հնախ. տեղագր. 32)։

ՆԱԶՄԵՎ, իգ. անստույգ ձևով անուն, որ մի անգամ հիշատակված է Թէոդոսիայի անթվական մի արձանագրության մեջ հետևյալ ձևով. «... բարեխաւս է պր. Երեմենին և կողակցի Նազմեվլին և ծնողացն Տովերին և Խաչմելիքին» (Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 39)։ Քանի որ անունները վերջավորվում են -ին, ուստի ենթադրում եմ որ այստեղ էլ պետք է կարդալ «և կողակցին Ազմեվլին», որ սակայն նույնպես անծանոթ ձև է։

†ՆԱԶՈՒԿ, իգ.<հյ. նազ բառից՝ փաղաքշական ուկ մասնիկով, որով նույնանում է Նազիկ անվան հետ։ Ավանդված է Նազուք ձևով 1590 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 721) և Նազուգ ձևով՝ անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1490 թվից հետո (Ձեռ. Սևան. 6 ա)։

†ՆԱԶՈՒՏ, իգ.<հյ. նազ բառից՝ ուտ (ոտ) մասնիկով, իբր «նազով, նազելի»։ Հայտնի է միայն՝

— Նազուտ, դուստր աթաբէգ Սաթունի և կին Շահանշահ Ա Երկայնաբազուկի, որ էր որդի Զաքարէ սպասալարի († «1261 թ»)։ Սաթունը աթաբէկութեան տիտղոս ստացաւ Վրաց Դեմետր Բ թագաւորից և մեռաւ 1283 թ.—Justi 227 բ, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 28 (Արձ. ուր այս անունը գրված է Նազովդ: Ալիշանի մօտ՝ Շիրակ 175 Նազուտ ձևով է)։

*ՆԱԹԱՆ, ար.<եբր. נָתָן Nāthān անձնան հուն. Νάθαν տառադարձութիւնից. բուն նշանակում է «նուէր». հմմտ. նաև ասուր. Natan (Gesenius 531)։ Այս անունով հայտնի է Նաթան մարգարէն՝ Դաւթի և Սողոմոնի ժամանակ (Բ. Թագ. Է, 1 ևն)։ Սրանից է ծագում Նաթանեան ազգանունը, որ հիշված է 1634 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզ. 26 ա)։

— Նաթան, երեց աղուան, եղբայր Յովէլ սարկաւագի. ժամանակից եղաւ Ս. Գրիգորիսի մասանց գիւտին՝ Վաչագան Գ թագաւորի ժամանակ (Զ դար)։—Կղկնտ. Ա. իա։

*ՆԱԹԱՆԱՅԷԼ, ար.<եբր. נְתַנְאֵל Nəthanəēl անձնան հուն. Ναθαναήλ տառադարձութիւնից։ Բուն նշանակում է «աստուածանուէր, աստուածատուր». հմմտ. նաև բաբել. Natanni-el (Gesenius 531)։ Այս անունով հայտնի է գլխաւորապէս Նաթանայէլ՝ աշակերտ Քրիստոսի (Յհ. ա. 43—51)։

— 1. Նաթանայէլ. սա և Թովմայէլ՝ Ցուրտաւի եպիսկոպոսարանի աւագագոյն անդամներն էին և Ցուրտաւի Մովսէս եպիսկոպոսի սիրելագոյն ընկերները, որոնց գրեց Մովսէս իր մի թուղթը (Պատճառք Դ ժողովոյն, Գիրք թղ. 119—127), 605/606 թվին Հայաստանից։ Երկուսն էլ հիշված են նույն թղթի վերջում, էջ 127։ (Հայ են կամ հայադավան վրացի)։—Տես Ակինեան, Կիւրիոն կթղ. 212։

— 2. Նաթանիլեանք, հայ իշխաններ, որոնք գաղթելով Հայաստանից, գնացել էին Կիլիկիա և հունադավան դառնալով հույն կայսրների ծառայության էին մտել։ Միացան հույներին և Թորոս Բ-ի («1145—1168 թ») դեմ կռվի դուրս եկան։ Իրենց սեփական բերդն էր Անկուռաս (Կիլիկիա)։—Վահր. ոտ. 206. Պատմ. կիլ. 207. Պատմ. ռուբ. 216. Ջամչ. Գ. 73—74. Սիսուան, էջ 46 բ։

— 3. Նաթանաէլ, որդի Մենաւսի, ազգական Յորդանան քահանայի, որ շինել է Պօղոս-քիլիսայի հին եկեղեցին 1247 թ.—Արձ. Արցախ 363։

— 4. Նաթանիէլ, որդի Պարոնշահի, որ Բղնունեաց Աղէթ

գյուղում (տես Թաթուլ № 10), գրել տվեց մի Աւետարան 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։

— 5. Նաքանայել եպիսկոպոս և առաջնորդ Հայոցթաղի. Թվականն անհայտ է. կա իր մի հիշատակությունը՝ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 359, ուր նույն վանքի համար տալիս է հետևյալ տեղեկությունները. «Գիրքս Հայոց Թառոյ է, որ է աղաւթատեղ սուրբ Լուսաւորչին, և հաստատարոյց հաստատեաց և հանդիսացոյց տեղի Թարգմանութեան. և առն իմաստութեամբ, սուրբ հայրապետն Սահակ և սուրբ վարդապետն Մեսրովբ և յետոյ նորոգեաց սպարապետն Հայոց Գուրգ իշխանն... սուրբ և հռչակաւոր մեծ մենաբանիս Հայոց Թառայ, որ է սկիզբն սորա (տպ. արայ) ի սուրբ Լուսաւորչէն նոցա և հիմնարկութեամբ հաստատեալ և հանդիսացեալ ի սուրբ Թարգմանչացն Սահակայ և Մեսրոպայ»։

*ՆԱԹԷԼ, ար. հիշված է Գլաձորի վանքում գրված մի ձեռագրում 1334 թ.—Թորոս աղբ. Բ. 375 (պետք է կարդալ Նաքանայել)։

ՆԱԼԻԶԱ, ար. ծագումն ինձ անհայտ։ Կա միայն՝

— Նալիզա Մեղրեցի. ունի գավեշտական «Երգ ի վերայ զանազան քաղաքացւոց հայոց» (ԺԸ դար)։—Տաշեան, Ցուց. 469, 965, 987. երեք ձեռագրերից հնագույնը 1792 թվից է. երգչի անունը հիշված է երկու անգամ Նալիզա և մի անգամ էլ Նազիլա ձևով. Տաշեանը ցանկում ընդունել է վերջինը, որ կարելի է նաև բացատրել Թրք. naz-ile «նազով» բառով։ Ես ընտրեցի Նալիզա, որ ավելի հինն է։

*ՆԱԽԱՇ, < արաբ. نقاش naqqāš «նախշող, ծաղկող, զարդարիչ» բառից։ Ընդհանրապես արհեստավորն է ակնարկում. այսպես՝ Մկրտիչ Նաղաշ կամ պարզապես Նաղաշ։ Դարձել է նաև առանձին արական անուն, ինչ. Նախաշ ոմն 1602 թ. (Նաթանեան, Տեղեկ. Սեբ. 85, որ և Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331 գրված է Նաղաշ) և Նախաշ երեց ոմն 1637 թ. (յիշատ. Տեղեկ. համալս. 2, 192)։ Դարձել է նաև իգական անուն, որի հնագույն վկայությունն է՝

— 1. Նղաշ, կին Ստեփանոսի՝ որդւոյ Սուքիասի՝ որդւոյ Յովսէփի և եղբոր Յակոբ կրոնավորի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— Ավելի ուշ հիշատակված են Նղուշ (ուղղել Նղաշ) 1508 թ. (Ձեռ. Վասպ. 634), Նղաշ խաթուն 1585 թ. (Ձեռ. Վասպ. 698), Նղաշ կամ Նաղաշ 1620 թ. (անդ 199)։

† ՆԱԽՇՈՒՆ, իգ.<հյ. Նախշուն «նկարեն, զարդարուն, գեղեցիկ» բառից։ Գործածված է ԺԵ դարից սկսած և այժմ էլ դեռ կենդանի է։

— 1. Նշխուն, կին Աստուածատուրի, որ իր Յովհաննէս եղբոր հետ գնեց մի հին Աւետարան 1423 թ։—Ձեռ. Վասպ. էջ 192։

— 2. Նշխուն, կին Թումայի, որ Աղթամարում, Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1460 թ.—Ձեռ. Վասպ. էջ 433—4։

— 3. Նշխուն, հանգուցյալ կին Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 4. Նշխուն, քրոջ աղջիկն է Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 489։

— 5. Նշխուն, դուստր Մկրտիչ քահանայի և քո՞ւյր Մարգարա գրչի, որ օրինակեց մի Աւետարան, Աղրակի Էրնկանի գյուղում, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 512։

— Ավելի ուշ հիշված ունինք Նաշխուն 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), Նշխուն 1606 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84), Նխշուն 1608 թ. (Ձեռ. Վասպ. 824), Նշխուն 1651 թ. (անդ 200), 1682 թ. (անդ 1003), Նախշուն 1789 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 562), Նշխուն՝ անթվական (Ձեռ. Վասպ. 394)։

† ՆԱՀԱՊԵՏ, ար.<հյ. Նահապետ բառից։ Իբրև անձնանուն գործածված է ԺԴ դարից սկսած և այժմ էլ դեռ կենդանի է։

— 1. Նահապետ, որդի Բարսեղ քահանայի և եղբայր Ներսէս քահանա գրչի, Սեբաստիա 1222 թ.—Տաշեան, Ցուց. էջ 558։

— 2. Նահապետ, «արեամբ նահատակեալ» հայր Յովսէփ քահանայի, որ Կեսարիայում օրինակեց Աւետարանը 1277 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ. Կես. Բ. 1844։

— 3. Նահապետ քահանա, հանգուցյալ եղբայր Գրիգոր քահանայի, որ Հաւարծնի վանքում, Աստուածատուր քահանային գրել տվեց Աւետարանը 1284 թ.—Թորոս աղբ. Բ. 339։

— 4. Նահապետ, հորեղբայր Քահանայի և Շմաւոնի, որոնց ուսուցանում և սնուցանում էր Թեղենեաց վանքում։ Քահանան, Շմաւոնը և Դաւիթ կրոնավորը օրինակեցին Աւետարանը 1295 թ, երբ արդէն Նահապետը մեռած էր.—Manus. brit. mus. 16։

— 5. Նահապետ գրիչ, օրինակեց Դիոնեսիոս Արիոպագացու գործերը 1371 թ.—Ձեռ. Կարին. 5։

— 6. Նահապետ գրիչ. Մոկաց գավառի Կանաց վանքում օրինակեց Եսայեայ մարգարէութիւնը՝ առաջնորդ Տիրացուի պատվերով, 1380 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 73)։

— 7. Նահապետ աբեղա, միաբան Մեծոփայ վանքի. սրա մոտ իր նախնական ուսումն ստացավ Յովհաննէս վրդ. Մեծոփեցին, որ հիմնեց Մեծոփայ դպրոցը 1391 թ.—Մեծոփ. 54, Ազգապ. 1984։

— 8. Նահապետ կուսակրոն, աշակերտ Աբրահամ գրչի, որին օգնում էր թուղթ կոկելով՝ Բոլորաբերդի վանքում, 1482 թ.—Խաղբակեանք 236։

— 9. Նահապետ քահանա, ստացավ մի Ավետարան, 1486 թ.—Bodleian 107։

— 10. Նահապետ կրոնավոր, միաբան Գողթն գավառի Բուստայ անապատում 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։

— 11. Նահապետ սարկավագ, աշակերտ Վրթանէս կրոնավորի, որ գրիչ էր Ուրծայ անապատում 1491 թ.—Այրարատ, էջ 443։

— 12. Նահապետ քուչակ, Խառակոնիս գյուղից (Վան), նշանավոր բանաստեղծ. ծաղկել է ԺԵ/ԺԶ դարում. իր տաղերը հրատ. Փարիզ 1902, «Նահապետ քուչակի դիւանը» վերնագրով։ Տես և Նոր ժողովածու Ա. 71, Բ. 63, Նշչ. էջ 51 ծան։ Սրա վրա ընդարձակ ուսումնասիրություն ունի Աբեղյան, Տեղեկ. Համալս. 2 (1927), էջ 185—197. իր եզրակացությունն այն է, որ եղել է մի աշուղ՝ Նահապետ քուչակ անունով, ԺԶ դարում. մեռել է 1592 թ. և նրա գերեզմանն էլ մնում է Վանայ Խառակոնիս գյուղում։ Ավանդաբար մնում է անունը «աշուղ Ջիչակ» ձևով Վանում։ Սրա թոռն է այլ ոմն Քուչակ, որ ստացել է մի Ավետարան 1637 թ։ Բայց Քուչակը բանաստեղծ չէ, այլ ժողովրդական երգերի պարզ երգիչ և հավաքող։ Հեղինակի այս եզրակացության հիմքն այն է, որ այդ տաղերը ընդհանրապես անանուն են և «մի միջնադարեան անհեթեթ առասպելաստեղծ ու սառայօդ բանասիրութեամբ» վերագրել են Քուչակին (տես Աբեղյան, Գուսանական ժողովրդական տաղեր, Երևան 1940, էջ 5)։

— 13. Նահապետ Ուռհայեցի, կաթողիկոս Հայոց «1691—1705 թ», հաջորդ Եղիազարի, որի աշակերտն ու օգնականն էր։

[Զարմանալի է որ Թորոս աղբ. Բ. 486 ժամանակակից մի հիշատակարանում ՌՃԻԶ=1677 թվին կաթողիկոս է հիշվում. ուստի այս թիվը պետք է կարդալ ՌՃԽԶ=1697 թ]։ Դաժան կոչվելու չափ խիստ և կարգապահ մարդ էր. բարձրացրեց էջմիածնի տնտեսականը, այգիներ ու կալվածներ գնեց, Հրազդանից առու հանեց, շինեց Վաղարշապատ գյուղի եկեղեցին, Երևանի Անանիայի անապատը, Շողակաթի վանքը և Օշականի կամուրջը։ Չպատասխանեց Իսրայել Օրիի փափագին, որով սա՝ Հայաստանի ազատության համար Արևմուտքից օգնություն ստանալու հույսով, ուզում էր որ կաթողիկոսը ազգովին կաթոլիկություն ընդունի։ Այնու ամենայնիվ Նահապետը սիրով վարվեց հիսուսյանների հետ, ինչ որ պատրվակ դարձավ իր թշնամիների ձեռքը, գահընկեց անելու նրան և տեղը դնելու Ստեփաննոսին «1695—6 թ»։ Նահապետը քշվեց Տաթև, բայց այստեղից Թավրիզ փախավ և շահի հրամանով նորից գահը գրավեց «1697 թ»։ Կյանքի վերջում միանում է Օրիի շարժման և դիմում է անում Մեծն Պետրոսին, ըստ որում Ռուսաց կայսրը հայոց փրկության համար դավանափոխություն չէր առաջարկում։—Ջուղ. 151—2, 219, Զքր. սարկ. Բ. ծր, էջ 133, 136—7, 143, Ջամբռ 26, Մ. մաշտ. 336 բ, Զարբ. թրգմ. 615։

†ՆԱՀԱՏԱԿ, ար.<հյ. նահատակ բառից, ինչպես ունինք նաև Մարտիրոս, հասարակ անունից հատուկ անուն դարձած։ Մի անգամ գտնում եմ գործածված Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցու մի արձանագրության մեջ ՋՁԱ=1532 թ. «Վերստին նորոգեաց ժամատուրս մուղտեսի Ամիրան, որդին Նահատակի. Ած. ողորմի աշխատաւորացն» (Кучук-Иоаннесов, Стар. арм. над. էջ 36. համարում է հասարակ անուն. լավագույն համարեցի ընդունել հատուկ անուն, քանի որ ասված է «որդին Նահատակի» և ոչ թե «որդի նահատակին»)։

*ՆԱՀԻՏԷ, իգ. նոր անուն, որ հիշված է 1883 թ. Պոլսում (Ջեռ. Վենետ. Ա. 518).< պրս. ناهيده nāhīde ձևից, որ հյ. Անահիտ բառն է և նշանակում է «Արուսեակ մոլորակը»։

ՆԱՂԱՆԱՅ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշատակված է մի տապանաքարի վրա 1543 թ. «Այս է հանգիստ պարոն Սուլթանղուլին? և պարոն Նաղանայ խաթունին. թվին ՋՂԲ» (Սիսական 106)։—Հմմտ. Նաանայ։

ՆԱՂԲ, ար. անստույգ անուն, որ ավանդված է միայն սեռ. Նաղբին ձևով (Ջեռ. Վասպ. 393)։ Թվականն էլ անհայտ է։

ՆԱՂԴԻ, ար. անստույգ անուն. այս ձևով հիշում է Կրպտ. հպս.՝ Դոփեանք 190 (1570-ական թվերին)։ Նույնը Սմբատեանց՝ Գեղարք. 809 և Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 27 գրում են Նաղադի (1575 թ)։ Իսկ Ձեռ. Սևան. 4 կա Նաղտի՝ 1559 թվից ուշ գրված մի հիշատակարանում։

*ՆԱՄԴՈՒԼԱՅ, ար. < արաբ. نعمت الله ni'metullah «բարիք Աստուծոյ» անունից։ Հիշատակված է 1661 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 75), որ և Նամդալայ 1654 թ. (անդ 127)։

*ՆԱՄԷ ար. < արաբ. نعما na'mā «բարիք, բարօրութիւն» բառից։ Հիշված է 1621 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 175) և 1702 թ. (անդ 52 ա)։

*ՆԱՄԽՈՇ, ար. < պրս. نام nām «անուն»+خوش xōš «քաղցր» բառերից, այն է «քաղցրանուն»։ Հիշված է մի անգամ Ձեռ. Թաւր. 83 բ (թվականն անհայտ)։

*ՆԱՅԻԲՇԱՀ, ար. < արաբ. نائب nāib «խնամակալ, տեղակալ»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից։ Ավանդված է Նայիպշայ ձևով 1647 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 692), Նայիպշա 1552 թ. (Ձեռ. Վասպ. 654, 656) և առանց թվականի՝ Նայիպաշի (անդ, էջ 606)։

ՆԱՅՄԱՆԷՍ, ար. ծագումն անհայտ. հունարեն տառադարձված է Ναιμάνης, Νεμάνης, Μηνοφάνης. (Justi 228 բ մեկնում է «քաջամիտ»՝ հանելով պրս. نیو nīv «քաջ» բառից)։

— Հայազգի զորավար Միհրդատ Զ Պոնտացու. պատերազմեց Manius-ի և Nikomedes Դ-ի դեմ (88 թ), հաղթեց Հռովմայեցոց Աքուիլիոս զորավարին, որ 10,000 մեռյալ և 300 գերի թողնելով՝ գրեթե միայնակ փախավ Միտիլինէ կղզին։—Ե. Դուրեան, Ազգ. պատմ. 67, Մանանդեան՝ Տիգրան Բ. 39։

*ՆԱՆԱ, ար. և իգ. < լտ. nonnus բառն է, որ նշանակում է «հայր իմ, հայրիկ» և է հարգական բառ։ Սրա իգականն էլ է nonna «մայր իմ, մայրիկ», որ նմանապես հարգական բառ է։ Լատիններենից փոխառյալ է հուն. Νόννος անունը. հմմտ. Նոննոս, հույն հեղինակ, որ ունի «Ժողովարանք առասպելաց», թարգմանված նաև հայերեն (հրտր. Մանանդեան, Marburg 1903)։ Հունարենից անցել է ասորերենի نانوس Nanōs, نونا Nōnā, نونوس Nōnōs ձևերով։ Հայտնի է օրինակ՝

— 1. Նաննա կամ Նոննոս (որ և Նաննան) սարկավագ ասորի. Միջագետքից ուղարկվեց Հայաստան՝ վիճելու և հաղթեց Եպիկուռայ (=արաբ. Abū-Qurra REA 1, 440) քաղկեդոնիկին,

որ եկել էր համոզելու Աշոտ Մսակերին (812 թ)։ Բագարատ Բագրատունի պատրիկի խնդրքով գրեց Յովհաննու Աւետարանի մեկնութիւնը արաբերէն լեզվով, 813—6 թվերին, որ ապա հայերենի էլ թարգմանվեց (թարգմանչի անունը անհայտ է. գիրքը տպված է Վենետիկ 1920)։ Ըստ Տաշեան, Ցուց. 1136 գ կա նույնի հունարենն էլ՝ Նոննոս Պանոպոլսեցւոյ անունով, որ ըստ Mariès REA 1, 289—290 ոչ մի կապ չունի Նանայի գործի հետ)։ Բուղայի ժամանակ գերի քշվեց Բաղդադ, ուր բանտարկվեց և հավատքի համար չարչարանք կրեց։ Հայ նախարարների հետ ազատվելով և վերադառնալով Հայաստան, ներկա եղավ Շիրակաւանի ժողովին 862 թ։—Կիր. 44. Վրդ. խբ, խգ. Մխ. այրիվ. 68 (գրում է ნანან). Զարբ. Թրգմ. 620. Հայյապ. 371. Ցուցիկք Ա. 457։ Կենսագրությունը և իր Մեկնության քննությունը տես Mariès REA 1, 273—296, Ակինեան՝ Մատեն. հետազ. Ա. 115—163։

ნანა անունը այնուհետև խառնվեց հյ. ნან «տատ, տատիկ» և թրք. ~ nene «մայրիկ» բառերի հետ, որով կազմըվեցին նոր անուններ, ինչպես կտեսնենք հետո։

— 2. ნანა, քույր Իվանէի և Զաքարէ Բ ամիրսպասալարի, դուստր Սարգսի մեծի, թոռն Զաքարէ Ա-ի և կին Աբաս Բ Թագավորի Մածնաբերդի։ Իր վաղամեռիկ ամուսին Աբաս Բ-ի († 1192 թ) հիշատակին շինեց Զորագետի սրընթաց ալեաց վրա միակտուր միակամար մի կամուրջ 18—20 մետր բացվածքով, որ մինչև այժմ էլ կա և որի մոտ կանգուն է դեռ Նանայի խաչքարը՝ այս սրտառուչ արձանագրությամբ.

Սուրբ տէրունական

Կամաւն Աստուծոյ ես Նանա յազգէ Բագրատունեաց, դուստր իշխանաց իշխան Սարգսի, քոյր Զաքարէի և Իւանէի, կին Աբասայ թագաւորի, որ կենսաւրեալ վախճանեալ է խաւարեցոյց զմեզ. շինեցի զկամուրջս, կանգնեցի զխաչս յիշատակ նմա և ի մխիթարութիւն ինձ և ի կեանս ծնողաց և եղբարց մերոց. յիշեցէք ք Քս. Յս. (Ազգագր. հանդ. Գ. 309. Հայյապ. 444. Ուղեգրութ. Զ. 413)։

Նանան շինել է նաև մի սեղան Հաղբատում և մի խաչ ու խորան էլ Յովհաննավանքում յանուն իր որդեգիր վաղամեռիկ Մարգարէ վարդապետի, որի վերակացությամբ սկսեց շինել Յովհաննավանքի պարիսպը։ Անթվական սրտառուչ արձանագրությունը տես Մարգարէ № 1։—Կիր. 72, Զքր. պատմ. Գ. 23,

Շահխաթ. Բ. 107, Այրարատ 175, Տողակաթ 74, Մովսէսեան Լօռիի պատմ. 72—74, Ցուշիկք Ա. 31։ (Նանայի գերեզմանը գտնվում է Հաղբատի ժամատան մեջ. տես Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23, Ազգագր. հանդ. Է, 400—401)։ Բայց այնտեղ կա երկու դամբան, մեկի տապանագիրն է պարզապես «Նանայ», իսկ մյուսը հայտնապես գրված է «Զաքարէի և Իվանէի քոյր Նէզաէփն (այլ ընթ. Նեզաւփ»: Այս բոլորը ՛ինչպես պարզել։

— 3. Նանայ, որի հիշատակին սեղան է կառուցվել Հաղբատի վանքում, 1249 թ.—Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. էջ 25։

— 4. Նանա, դուստր Տուտիկի, կին հեճուպ Դաւիթի, որի հետ միասին նվերներ են արել Ցովհաննավանքին 1300 թ.—Արձ. Այրարատ 171 և Զքր. պատմ. Գ. 20. Շահխաթ. Բ. 103։

— 5. Նանա, կին Վախթանկի, որ էր որդի Սմբատ Թագավորացնի. միասին կալվածներ են նվիրել Դատիվանքին. Վախթանկի որդին է Հասան, որ իր Ռուզուքան կնոջ հետ նվերներ է արել Այրիվանքին.—անթվական Արձ. Այրարատ 340, Շահխաթ. Բ. 361. տես և Հասան № 70։

— Նանա հիշված է նաև 1648 թ. (Ձեռ. Վասպ. 436), 1668 թ. (Թորոս աղբ. Բ. 440), 1693 թ. (Ձեռ. Վասպ. 335՝ սեռ. Նանին ձևով)։

*ՆԱՆԱԳՈՒԼ, իգ. < Թրք. ننه nana «մայր»+պրս. گل gul «վարդ» բառերից, իբր թե «մոր վարդը» (և ոչ թե արաբ. نعنع na'na' «անանուխ» բառից, իբր թե «անանուխի ծաղիկ»։ Հիշված է 1694 թ. (Այրարատ 236), կենդանի է այժմ էլ Ղարաբաղում, և կրճատ ձեն է Նանա:

*ՆԱՆԱԽԱԹՈՒՆ, իգ. < նույն Նանա անունից+խաթուն «տիկին»։ Հիշատակված է ԺԷ դարում։ Անթվական մի հիշատակարանում էլ կա Ձեռ. Վասպ. 641։

— Նանախաթուն, դուստր Խանումի՝ դստեր Մելքոնի՝ որդւոյ խոջա Յովհաննէսի՝ հօրեղբօրորդւոյ խոջա Յովսէփի, որ էր իշխան Տարօնի և Մուշում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

*ՆԱՆԱՂՈՒԶԻ, իգ.<Թրք. ننه nene «մայրիկ»+قوزى quzə «գառն» բառերից, իբր թե «մոր գառնուկը»։ Հիշատակված եմ գտնում մի անգամ 1706 թ. (Ձեռ. Թաւր. 64)։

*ՆԱՆԱՋԱՆ, իգ.<Թրք. ننه nene «մայր»+պրս. جان ǰān

«հոգի» բառերից, իբր թե «մոր հոգյակը»։ Հիշատակված է 1606 թ. (Նաթանեան, Արտօսր Հյստ. 153, Թորոս աղբ. Բ. 342), 1651 թ. (Տաշեան, Ցուց. 363 ա), 1689 թ. (Bodleian 163), 1697 թ. (Ձեռ. Թուր. 49 բ)։Այժմ էլ կենդանի է Հնդկահայոց մեջ (Գուշակեան, Հնդկահայք 259)։

*ՆԱՆԱՍ, իգ.<Թրք. ننه nana «մայր» բառից+հյ. ս ստացական հոդով, ինչպես կա նույնը Թրք. م m ստացական հոդով՝ Նանում, որ տես։ Հմմտ. Գուլում, Աղամ, Շանում, Բեգում են։ Սրանով մայրը կամ հայրը պահած է լինում իր մոր հիշատակը, որին նման է եղել նորածինը։ Հիշատակված եմ գտնում 1641 թ. (Ձեռ. Թուր. 37, սեռ. Նանասին ձևով) և 1702 թ. (Manus. brit. mus. 167 բ)։

*ՆԱՆԱՓԱՇԱ, իգ.<Թրք. ننه nene «մայր»+پاشا paša «փաշա» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԶ դարում (Ձեռ. Նոր-Բայազ. 18 բ) և մի անգամ էլ անթվական մի խաչքարի վրա (Սմբատեանց՝ Գեղարք. 510)։

†ՆԱՆԵՐ, իգ.<հյ. Նան «տատ» բառի հոգնակին է, որով ծնողները հարգում են իրենց մայրերի հիշատակը։ Մի անգամ գործածված եմ գտնում 1665 թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 538)։

*ՆԱՆԷ, իգ. հմմտ. Նանա աստվածուհի Փոքր-Ասիական, Նինէի դիցուհի սումերական, ասուր. Nanā կամ Nīnā աստվածուհի, նաև Բ. մակ. ա. 13 «տաճար Նանեայ» = հուն. Ναναίας ἱερῷ.

— Նանէ աստվածուհի հայոց, դուստր Արամազդայ՝ հօր ամենայն աստուածոց (Ագաթ. 786 «Նանէական մեհեանն դստերն Արամազդայ»).—Սարգիսեան՝ Ագաթ. և իւր բազմ. 144. Սպենեան-Տաշեան, Ուսումն. էջ 113։

*ՆԱՆԷ, իգ. հիշված է ուշ ժամանակի անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 39 ա, սեռ. Նանէին ձևով)։ Կապ չունի Նախորդի հետ և պետք է համարել Նանա «մայր» բառի կոչականից։

†ՆԱՆԻԿ, իգ.<հյ. Նան «տատ» բառի փաղաքշականն է. մի անգամ հիշատակված է ԺԴ դարում։

— Նանիկ, մայր Սմբատի, որ էր տեր Որոտան բերդի և վտարվեց 1386 թ.—Խաղբակեանք 230։

*ՆԱՆՈՒՄ, իգ.<Թրք. ننم nenem «մայրս, մայրիկս» ձևից. տես վերը Նանաս։ Գործածական է Ղարաբաղում։

†ՆԱՆՈՒՇ, իգ.<հյ. Նան «մայր կամ տատ» բառից գգվական ձև. հիշված է 1676 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 47 բ։

ՆԱՇԱԴԻՆ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 73 ա)։

*ՆԱՇԻՏ, ար.<արաբ. نشيط Našīṭ անունից, որ բուն նշանակում է «ուրախ, զվարթ». այս անունով կան զանազան անձեր, որոնցից հիշենք Նաշիտ ճարտարապետին, որ Բասրա քաղաքում կառուցեց մի պալատ Ամիր-Ջիյադի համար, բայց կիսավարտ թողնելով Մէրվ փախավ։ Ամեն անգամ, երբ Ջիյադին հարցնում էին թե պալատը պիտի վերջացնի՞, պատասխանում էր. لا حتى يرجع نشيط من مرو lā, ḥatta yarǰu'u Našīṭu min Marvi «Ո՛չ, մինչև Նաշիտը Մերվից դառնա»։ Այս խոսքը արաբների մեջ առածի կարգ է անցած (Կամուս, Թրք. թրգմ. Բ. 520)։—Նաշիտ անունը լսել եմ Պոլսում (իմ դասընկերներից մեկն էր 1880-ական թվերին)։ Այլուր չեմ պատահել այս անվան։

†ՆԱՊԱՍՏԱԿ, ար.<հյ. նապաստակ բառից. մի անգամ գործածված է Հոռոմոսի վանքի անթվական մի արձանագրության մեջ (Շիրակ 25) հետևյալ ձևով. «Ի յԱրուճ փոքր այգիք են վանացս եկեղեցպանին, Բաւշուտին, Լապաստակայն, Հանկանն, Առեւծկանն, Աղպետեանցն, Թուխայրեանցն, Խաչեղբաւրն...»։ Այս բոլորը անձանց անուններ են, ոմանք զուտ անձնանուն, ոմանք ազգանուն, Նապաստակն էլ (ժղ. Լապաստակ ձևով) թերևս մականուն։ Բայց ի նկատի ունենալով նրա -այ հոլովումը, պետք է թերևս համարել անձնանուն։

*ՆԱՋՄԱԴԻՆ, ար.<արաբ. نجم الدين Naǰm-ad-dīn անունից, որ նշանակում է «աստղ կրոնի»։ Մի անգամ ունինք հիշատակված՝

— 1. Նաջմադին, որդի Սմբատի, թոռն Ուքանի. իր երկու որդիների՝ Սմբատի և Վահրամի հետ գերեզմանի տեղ են վերցրել Հաղբատում և մի խաչքար են կանգնեցրել 1211 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 57, Ազգագր. հանդ. Է, 405 (Նաշմադին սխալ ձևով), Խաղբակեանք 158 (Նաջմադին ձևով)։

— 2. Նեճմետտին կամ Մնճտետտին, հորեղբայր Սալահադդին սուլթանին Եգիպտոսի, քաջ զորավար Հալէպի Սուլթան Նուրեդդինի. 10,000 զորքով պաշարեց Անտիոքի իշխան Ռընալտին և գերի բռնեց նրան (1160 թ)։—Ոմանք սրան ուրացյալ հայ են համարում (Ալիշան, Շնորհ. էջ 310)։

ՆԱՍԵՐ, իգ. ծագումն անորոշ։ Մի անգամ հայտնի է՝

— Նասեր, դուստր պարոն Խայտերի, որ գնել է մի Աւետարան ԺԲ դարում.—Rapport Arm. 52։

*ՆԱՍԻԲ, ար.<արաբ. نصيب naṣīb «բախտ, վիճակ» բառից, որ արաբների մեջ էլ անձնանուն է (Կամուս, Ա. 270) և կամ արաբ. نسيب nasīb «ազնվական» բառից։ Հիշված է մեր մեջ ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես Նասիպ 1579 թ. (Сборн. Матер. 29, էջ 14), Նասիպ-ջան 1596 թ. (Ձեռ. Վաստ. 748), Նասիբ՝ 1670-ական թվերին հայ տպագրիչ (Լէօ, Հայկ. տպագր. Ա. 184—5), Նասիպ Գրիգորեան՝ գործակատար Ոսկան Երևանցու (†1674 թ) (Ազգաբ. 2545), Նասիպ ոմն Ագուլեցի 1687 թ. (Տաշեան, Ցուց. 872)։ Ամենահին վկայությունն է թերևս Նասիպ՝ Ջիրախլու գյուղի մի խաչքարի վրա ... ՂԷ թվից (Սիսական 108), որ Ալիշան ուղղում է ՋՂԷ=1548 թ?—Սրանից է Նասիբեան ազգանունը (Կովկաս)։

*ՆԱՍԳԱԹ, իգ.<արաբ. نسبت nisbat «համեմատություն» կամ نصفت naṣfat «արդարասիրություն» բառից։ Մի անգամ հիշատակված է 1656 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 954)։

ՆԱՍՏԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. գործածական է այժմ Զանգեզուրում։

ՆԱՍՏՈՒԽՆԱ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Նաստուխնա, մայր Իլովցի խոջա Խաչքոյի Սահցքոենց, որ գնեց և Իլովէ եկեղեցուն նվիրեց մի Ավետարան, 1644 թ. (Տաշեան, Ցուց. 885)։

*ՆԱՍՏՈՒՐ, ար.<պրս. Nastūr անունից. այս անունով հայտնի է Nastūr որդի Ջարիրի, զորավար Պարսից (Շահն. հտ. 4, էջ 312)։ Ծագում է հունական Νέστωρ անունից, որ իմաստության նշանաբանն է դարձել։ Մեր մեջ հիշված է մի անգամ 1651 թ. Սուչավա քաղաքում, Նասդուր ձևով (Տաշեան, Ցուց. 776. բայց ցանկում գրված է Նաստուր)։

*ՆԱՍՐ, ար.<արաբ. نصر naṣr «հաղթություն» կամ ناصر naṣir «հաղթական» բառից և կամ կրճատ ձևն է հաջորդ Նասրադին անվան։ Հիշված է 1635 թ. Նասըր ձևով (Թորոս աղբ. Բ. 414) և Նասր ձևով 1661 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 119)։

*ՆԱՍՐԱԴԻՆ, ար.<արաբ. نصر الدين Naṣr-ad-dīn «հաղթություն կրոնի» անունից, որ իսլամների մոտ էլ շատ գործածական է։ Օրինակ «մոլլա Նասրադդինը», որ Արևելքի նշանավոր առակախոսն է։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԲ—ԺԵ դարերում և թերևս սրա կրճատ ձևն էլ է Նասր:

— 1. Նասրադին, հիշված է Հաղբատի մի դամբանի տա-

պանագրում 1195 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 38, Աղգագր. հանդ. Է, 403։

— 2. Նասրատին պարոն, օգնեց Գրիգոր գրչին՝ արտագրելու ժամանակ իր Տօնականը, Կաֆա 1305 թ.—Ձեռ. Վեննա. Բ. էջ 511։

— 3. Նասրադին, հայր Յովհաննէս եպիսկոպոսի, որ էր առաջնորդ Լեհահայոց թեմի 1383 թ.—Ալիշան, Կամենից 11 և 218։

— 4. Նասրատին, որդի Սեւինջբէկի, տանուտեր, որ վանահայր Մկրտիչ վարդապետին (№ 169) գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Նոտարք 61։

— 5. Նասրադին, մեծ հայր տանուտեր Յովհաննէսի, որ Խլաթում գրել տվեց Աւետարանը, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 19 բ։

— 6. Նասրադին սարկավագ, թուղթ էր կոկում այն Աւետարանի համար, որ Թումայ Մինասենց և Հայրապետ աբեղան գրում էին Աղթամարում Թումայ Ղուզիկի համար 1444 թ.—Ձեռ. Վասպ. 390, 392։

— 7. Նասրատին, մերձավոր Գորգի մելիքի որդի Յոհաննէս քահանայի, որ Արճէշում գր.-լ տվեց Մեսրոպյարոյց Աւետարանը 1445 թ.—Նոտարք 147։

— 8. Նասրադին, որդի Թաճդինի, Արճիշեցի, եղբորորդի Ամիրդօլի. հիշված են 1437—55 թվերին (ավելին տես Թաճդին № 4)։—Նոտարք 111—2։

— 9. Նասրադին, հիշված է 1321 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում, ուր միևնույն ժամանակ գրված է Նսրի և Նրսի համառոտագրություններով.—Manus. brit. mus. 24 ա։

*ՆԱՍՐԱԴՕԼԱ, ար.<արաբ. نصر الدولة Naṣr-ad-dowla անունից կամ տիտղոսից, որ բուն նշանակում է «օգնություն կամ հաղթություն պետության»։ Հիշատակված է մեր մեջ մի անգամ ԺԳ դարում (տես Զաքարէ № 15)։

*ՆԱՐԲԷԿԻ, ար. նույն է անցյալ դարում նշանավոր դարձած Նարպեյ անվան հետ։ Հիշված է 1677 թ. Թորոս աղբ. Բ. 454՝ Նարբեկի ձեռով։ Թեև կարելի էր ստուգաբանել արաբ. نار nār «կրակ»+բեգ բառով, բայց ավելի ճիշտ եմ համարում դնել պրս. نارين nārīn «նուրբ» բառից։ 1611 թվին հիշատակված է Նարինբեկ, որից կրճատված է ավելի ուշ Նարբեկի։ Հմմտ. նաև Նար բառով կազմված հաջորդ անունները։

*ՆԱՐԳՈՒԼ, իգ.<պրս. نار nār «նուռ»+گل gul «ծաղիկ» բառերից, այն է «նռան ծաղիկ»։ Հիշված է մի անգամ 1649 թ. (Ջեռ. Կես. սարգ. 13)։

†ՆԱՐԴՈՒՀԻ, իգ.<հյ. նարդոս ծաղկանունից կազմված ուհի մասնիկով. հիշված է 1796 թվին (Էֆիմ. 448)։ Սրա փաղաքշականն է Նարդիկ, որ գործածական է Պոլսում։

†ՆԱՐԵԿ, ար.<հյ. Նարեկ գյուղի անունից, որով կոչվել է Գրիգոր Նարեկացին և իր նշանավոր Նարեկ աղոթագիրքը։ Գործածական է եղել Պոլսում (ըստ Թէոդիկի). նույնը գտնում ենք նաև Սուրիահայ տարեց. 1925, էջ 243։

*ՆԱՐԻՄԱՆ, ար.<պրս. نریمان Nārīmān անունից, որ ծագում է զնդ. naire-mana (սանս. Nṛmaṇa, հուն. 'Ανδρομένης) ձևից. բուն նշանակում է «առնական միտք ունեցող» (ապա դարձավ «քաջասիրտ»)։ Հմմտ. Նարիման՝ հայր Սամի՝ զորավարի Պարսից (Շահն. հտ. 1, էջ 128), որ Ավեստայի sāma kərəsāspa-ն է (Justi 225 ա)։ Սովորական անուն է այժմ Պարսից մեջ։ Մեր մեջ հիշված է անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Դաղեան. Բ. 31 բ) և այժմ էլ գործածական է Ղարաբաղի հայոց մեջ։ Սրանից է Նարիմանեան ազգանունը։

*ՆԱՐԻՆ, ար. և իգ.<պրս. نارین nārīn «նուրբ» բառից. գործածված է ԺԵ—ԺԷ դարերում. և սրանից է Նարինեան ազգանունը, հիշված 1657 թ. Նարինեանք ձևով՝ Երեմ. չէլ. օրագր. 224։ Հնագույն հիշատակությունն է՝

— 1. Նարին, մայր փակակալ Յակոբ կրոնավորի, ապաստավորում էր Այրարատյան գավառի Սերկևիլ գյուղի Ս. Յովհաննէս վանքում, 1441 թ.—Հրար. Ազաթ. 1909 թ. յուլ. էջ խթ։

— Ավելի ուշ են Նարին, կին, 1596 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 456), Նարին իգ. 1655 թ. (Ջեռ. Վասպ. 553), Նարին վարդապետ՝ ԺԷ դար (Ջեռ. Էջմ. № 1661), Նարին ար. (Զամբռ 285). տես և հաջորդ անունները։

*ՆԱՐԻՆԲԷԿ, ար.<պրս. نارین nārīn «նուրբ»+բէկ բառերից. հիշված է մի անգամ 1611 թ. (Ջեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 221) և մի անգամ էլ Նարինպէկ ձևով՝ ԺԷ դար (Արցախ 260)։ Տես վերը՝ Նարբէկի։

*ՆԱՐԻՆԳՈՒԼ, իգ.<պրս. نارین nārīn «նուրբ»+گل gul «վարդ» բառերից։ Հիշված է 1551 թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 506). գործածական է այժմ Ջանգեզուրում։ Հմմտ. Նարգուլ։

*ՆԱՐԻՆԽԱԹՈՒՆ, իգ.<պրս. نارین nārīn «նուրբ»+խաթուն

բառից, որ կցված է զանազանելու համար իգականը, քանի որ Նարին անունը երկսեռ է։ Գործածված է ԺՆ դարում. ավելի ուշ կրճատվելով դարձել է Նարխաթուն կամ Նառխաթուն։ Այսպես Նարխաթուն 1662 թ. (Ջեռ. Մեր.=ՀԱ 1929, 13), 1709 թ. (անդ 1928, 493), անթվական (Bodleian 147), Նառխաթուն 1732 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1894), անթվական (Թորոս աղբ. Բ. 367)։

— 1. Նարին խաթուն, կին Մկրտչի. էր դուստր տանուտեր Յովհաննէսի, որ Խլաթում օրինակել տվեց մի Աւետարան, 1443 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 2. Նարին խաթուն, դուստր Իսրայէլի, որի կինը Թուրվանդայ խաթուն գրել տվեց մի Աւետարան 1448 թ.—Ջեռ. Վասպ. 402, 404։

— 3. Նարին խաթուն, կին Խոջա Ղուբաթի, որ Արաշ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— 4. Նարին խաթուն, կին Ամիրազիզի և մայր Ազարիա սարկավագի, որ Արաշ գյուղաքաղաքում գրեց նույն Աւետարանը, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— 5. Նարին խաթուն, դուստր Էոհլշահի և քույր Խոնտաքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 23 ա։

† ՆԱՐԻՆՋ, իգ.<հյ. նարինջ պտղանունից կամ ուղղակի պրս. نارنج Nārenǰ անունից. հմմտ. Nārenǰ իշխանուհի Թուրք ԺԲ դարում (Macler, Rapport sur une mission en Arménie, էջ 36)։ Հնագույն վկայությունը 1509 թվից է (Ջեռ. Վասպ. 640), 1585 թ. (Սիմէոն վրդ. Ապարանցու մայրն է. տես Գ. Տէր-Մկրտչեան, Անան. շիր. էջ 1), 1585 թ. (Ջեռ. Վասպ. 704), 1608 թ. (անդ 824), 1645 թ. (անդ 295)։

* ՆԱՐԻՆՓԱՇԱ, իգ.<պրս. نارين nārīn «նուրբ» բառից+թրք. پاشا paša «փաշա»։ Հիշված է 1581 թ. (Manus. brit. mus. 32 ա). սրա կրճատ ձևն է Նարփաշա 1597 թ. (անդ 271 ա)։

* ՆԱՐԿԻՍ (որ և Նարգիզ, Նարգիս, Նարկիզ), ար. և իգ. հնագույն ձևն է Նարկիսոս, որ<հուն. Νάρκισσος անունից և արական է. հիշված է Է և Ը դարերում։ Ավելի ուշ պրս. نرگس nargis, արաբ. نرجس narǰis և մինչև իսկ թրք. նէրգիզ (Ջեռ. Վասպ. 627) ձևն ստացավ։ Բոլորն էլ նշանակում են համանուն

ծաղիկը։ Հմմտ. պրս. Nargīsi Հերաթցի բանաստեղծ † 1515 թ., Մոլլա Նարգիսի, բանաստեղծ † 1531 թ. (Justi 221 ա)։

— 1. Նարկիսոս, մին է 7 խոստաճարակներից, որոնք նահատակվեցին պարսիկներից Գայլ Վահանի պատերազմների միջոցին «604 թ».—Ազգապ. 598 (գրում է Նարկիսոս ձևով), Զամչ. Բ. 307 (Ենարկիոս կամ Նարկեսոս), Մամիկ. բ (Ենարկիոս, 2 ձեռ. Նարեսոս, նոր տպ. Երև. 1941, էջ 175 Նարկեսոս), Ցայսմ. սեպտ. 30։

— 2. Նարկիսոս եպիսկոպոս Խորխոռունեաց, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— 3. Նարկիզ, եղբոր դուստր Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— Ներգիզ, իգ. հիշված են 1620 թ. (Ձեռ. Վասպ. 199) և 1645 թ (անդ 296)։

*ՆԱՐՄԵԼԻՔ, իգ. ըստ իս պետք է կարդալ Նարմելէք և հետևելով վերի Նարինխաթուն են ձևերին՝ կրճատված համարել Նարինմելէք ձևից, որ կազմված է պրս. نارين nārīn «նուրբ»+ արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից։ Չէ ավանդված Նարինմելէք ձևը և կան միայն Նարմելիք 1593 թ. (Ձեռ. Սեբ. = ՀԱ 1926, 341), Նառմելիք 1651 թ. (Տաշեան՝ Ցուց. 363), Նարմելիք 1707 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 221) և անթվական՝ Manus. brit. mus. 56 բ, Ձեռ. Հալէպի, Ա. 206, Թորոս աղբ. Ա. 231։

*ՆԱՑՈՒԱԼ, ար. < վրաց. ნაცვალი նացվալի «պարգև, վարձատրություն, ժառանգորդ» բառից (Չուբինով 970)։

— Նացուալ, ձեռք բերեց մի հին Աւետարան և նվիրեց Անիի կաթուղիկէին, նրա քահանաների, Գերսամ դասապետի և Սարգիս սարկավագի միջոցով, 1236 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 396։

† ՆԱԽԱՍԱՐԴ, ար. < հյ. նաւասարդ ամսանունից, որ է հին հայոց տոմարով Նոր տարին. հմմտ. պրս. Նաւռուզ անձնանունը, որ բուն նշանակում է «ամանոր»։ Հիշատակված է ԺԳ—ԺԷ դարերում և այժմ էլ գործածական է։ Սրանից է Նաւասարդեան ազգանունը։

— 1. Նաւասարդ, Հայկ նահապետի որդիներից մին, որի անունով կոչվեց Նաւասարդ ամիսը։—Տաթև. ձմ. ա. հրց. 200 (առասպել)։

— 2. Նաւասարդ, որդի Սարգսի և եղբայր Աղուբ խաթու-

նի, որ Վարդան երեցին մի Ավետարան գրել տվեց՝ Վարագայ վանքում, 1260 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 47 ա։

— 3. Նաւասարդ, որդի Խաչիկի, եղբայր Թումա միակեց գրչի (№ 164). որ արդեն վաղամեռիկ էր եղած 1421 թ։—Նոտարք 67։

— 4. Նաւասարդ սարկավագ, հանգուցյալ մերձավոր Գրիգոր քահանա գրչի, որ Աղթամարում օրինակեց Ավետարանը՝ Սուլթան Մելեքի համար, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 415։

— 5. Նաւասարդ, որդի Խաչիկի և եղբայր Գրիգոր քահանայի, որ Աղթամարում, Սուլտան Մելեքի համար օրինակեց Ավետարանը 1452 թ.—Ձեռ. Վասպ. 415։

— 6. Նաւասարդ, որդի Աթաբագի և եղբայր Սպահանի, որ Սաղմոսավանքում մի Ավետարան գրել տվեց Յովհաննէս աբեղային 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։

— Ավելի ուշ ժամանակից են Նաւասարդ 1551 թ. (Սեդրակեան, Հնութ. Երնջակու 120), 1590 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 721), 1644 թ. (Ձեռ. Վասպ. 276)։

*ՆԱՒԲԱԹ, իգ.<արաբ. نوبت naubat «հերթ, կարգ» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1657 թ. (Տաշեան, Ցուց. էջ 355)։

*ՆԱՒԽՕՇ, ար. նույն է Նամխոշ անվան հետ, բայց ոչ թե նրա աղճատ ձևն է, այլ ծագում է քրդականից և նշանակում է նույնպես «քաղցրանուն»։ Գտնում եմ մի անգամ հիշատակված անթվական մի հիշատակարանում, 1420 թվից ուշ (Նոտարք 62, Ձեռ. Վասպ. 327)։

*ՆԱՒՈՒՄ, ար.<եբր. נחום Naxum անունից՝ հուն. Ναούμ տառադարձության միջոցով (գերմ. ֆրանս. Nahum)։ 12 փոքր մարգարեներից մեկն է։ Բուն նշանակում է «մխիթարություն»։ Գործածական անուն չէ եղած. մի անգամ գտնում եմ Նայում ոմն, հիշված 1591 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 274)։

ՆԱՒՈՒՐ, ար. ծագումն ինձ անհայտ. անսովոր անուն. մի անգամ գտնում եմ գործածված՝

— Նաւուր, եղբայր Ավելչատի, որ նրա հիշատակին շինեց Խորանաշատի մի խորանը 1220 թ.—Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 174։

*ՆԱՒՌՈՒԶ, ար. և իգ.<պրս. نوروز nauruz «նոր տարվա առաջին օրը» (համմտ. հյ. Նաւասարդ) բառից։ Իբր անձնանուն գործածական է նաև Պարսից մեջ. օր. Նաւռօզ՝ Թաթար խան

1095 թ. (Սամ. անեց. շար. 165), Նաւրուզ՝ որդի Թագաւորին Խորասանի, Նաւրուզ շահ՝ հայր Խուդադադի, Նաւրուզ դագի՝ որդի Արղունի և վեզիր Ղազան խանի են (Justi 226 բ)։ Մեր մէջ հիշատակված է ԺԳ—ԺԷ դարերում, բայց շատ սակավ։

— 1. Նաւռուզ, դուստր Գաւազանի, որ Օշականում նրա հիշատակին կանգնեցրել է մի խաչքար՝ 1265 թ.—Այրարատ 191, Շահխաթ. Բ. 81։

— 2. Նարուզ, կին Ղազարի 1606 թ.—Ձեռ. Թաւր. 21 բ։

— 3. Նավրուզ՝ հայր Դաւիթ քահանայի (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 51 ա։

— Կա նաև Նաւօ կրճատ ձևը, որ գտնում եմ հիշատակված մի անգամ 1708 թ. այն է «աշղ Նաւօ» (Ձեռ. Վասպ. 564)։

Նեգաւփ տես Նաճա։

Նեկտար տես Նեքտառ։

*ՆԵՐՇԱՊՈՒՀ, պր.<հին Ներս-Շապուհ. հմմտ. Ներս և Ներս-Միհր (Հիւբշ. 56, 57, 507), Ներս-Շապուհ՝ եղբայր Միհրանի (Փարպ.), Ներս-Միհր (Կղկնտ.) ըստ Ազգ. մատ. հտ. ԺԻ, Վիեննա 1929, էջ 24 Ներշապուհ ձևը Միհր-Շապուհի ռամիկ ձևն է։

— 1. Ներշապուհ Ռմբոսեան, գլխավոր նախարար. Յովսէփ կաթողիկոսի և Վասակ մարզպանի հետ ստորագրում է այն թղթին, որ գրեցին Թէոդոս կայսեր՝ օգնութիւն խնդրելու համար Յազկերտի դեմ։ Նշանակվեց Ատրպատականի սահմանի պահապան՝ առանձին գնդով.—Եղիշ. 54, 56. Կղկնտ. Բ. բ։—Նոյն է՝

— 2. Ներշապուհ իշխան Արծրունի. անդամ Արտաշատի ժողովի «449 թ». մին այն նախարարներից, որոնք Յազկերտի Դուռը կանչվեցին և առ երես ուրանալով արձակվեցին։ Մասնակցեց Վարդանանց պատերազմին (451)։ Նախարարների հետ 12 տարի բանտարկվեց Պարսկաստանում և ապա դարձավ Հայաստան («462 թ»)։—Եղիշ. 32, 77, 150. Փարպ. իգ (ձեռ. Մերշապուհ), իե, խբ, խէ. Յայսմ. օգոստ. 7.—սեռ. Ներշապհոյ՝ Փարպ. խբ, խդ, խէ.—Մերշապհոյ՝ Արծր. Բ. բ։

— 3. Ներշապուհ եպիսկոպոս Մամիկոնեան, ի Տարօնոյ. մին է գլխավոր անդամներից Դուինի երկրորդ ժողովի (551 թ), որ գումարեց Ներսէս Բ կաթողիկոսը՝ հայոց տումարը հաստատելու համար։ Ունի «Թուղթ հաւատոյ», որից մի հատված տես REA հտ. 2 (1922), էջ 248. Նույնը նաև Ձեռ. Վենետ. Բ. 862։

—Ասող. Բ. բ. Վրդ. լ.—սեռ. Ներշապհոյ՝ Կանոն. 107.—Վրաց աղբ. Ա. 39, 40. Զարբ. Հին դպր. 413։

— 4. Ներշապուհ եպիսկոպոս Ասպակունեաց, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

*ՆԵՐՍ, ար. նույն է Ներսեհ անվան հետ, որի կրճատն է (Justi 228 բ)։

— 1. Ներս Արծրունի, հայրը Ադրամելիք Արծրունու. ժամանակակից էր Պարսից Արտաշէս Երկայնաձեռն թագավորի (Ն. Ք. 465—425).—Արծր. Ա. գ։

— 2. Ներս Ցոլսեպեան, կուսակից Վահան Մամիկոնեանի. մեռավ Ճռէոյ գյուղի պատերազմում «483 թ».—Փարպ. ձգ։

— 3. Ներս եպիսկոպոս Բասենոյ և Մարդաղոյ. ստորագրում է այն երկու թղթերին, որ Յովհաննէս կաթողիկոսը գրեց Սիւնեաց Վրթանէս եպիսկոպոսին և Աղուանից եպիսկոպոսներին (Զ դար. Այրարատ 43 դնում է 605 թ).—բց. ի Ներսայ՝ Գիրք թղ. ժը, ժթ։

*ՆԵՐՍԵՀ, ար.<պհլ. Nerseh ձևից. հմմտ. արձանագրութեանց պհլ. N-rs-hī, պհլ. Narsah, Nrshšh (կարդալ Nersehšāh), պրս. Narsē անունները, որոնց տառադարձությունները են ասոր. Narsē, Narsai, վրաց. Ներսէ, հուն. Ναρσῆς, երբեմն Ναρσαῖος, լտ. Narseus։ Հիշատակված են Narsē I որդի Վահրամի, թագավոր Սասանեան (Շահն. հտ. 5, էջ 333), Narsā որդի Վոհուբարզի, թագավոր Պարսից (Justi 221 բ), Narsā որդի Պատուկրատի, թագավոր Պարսից, نرسی Narsī եղբայր Շապուհ Ա-ի, Narsahe (պհլ.) որդի Շապուհ Ա-ի, թագավոր Սասանեան 293—303 թ (Justi 221—5) են։ Մեր մեջ գործածված է եղել հնագույն ժամանակներից սկսած մինչև Թ դար, ապա դադարել է։ Գտնըվում է նաև ուրիշ անունների մեջ. ինչ. Ատրներսեհ, Միհրներսեհ, Փառներսեհ, Ամիրներսեհ, ինչպես նաև Ներսեհապատ տեղանվան մեջ։ Նույն անվան հունական ձևից է Ներսես, որ ավելի հայ-ազգային գույն ստացավ, ավելի գործածական դարձավ և այժմ էլ կենդանի է։ Այս անվան հնագույն ձևն է զնդ. Nairyosaṅha, որ մի աստվածային էակ է և կառավարում է աստվածային պատգամների առաքումը։ Համապատասխանում է հնդկական Narāçąsa-յին, որ Ագնիի (աստվածային կրակի) անունն է։ Կազմըված է nairya «արու, արական»+saṅha «խոսք, բառ, պատգամ» բառերից (Հիւբշ. 57, Bartholomae 1054)։

— 1. Ներսեհ, որդի Առաւանի, թագավոր Հայկազն (ըստ

Զամչ. Ա. 121 Ն. Ք. 475 Թ).—Խոր. Ա. լա. ՅՀ. կԹղ. գ. Սամ. անեց. 46. Մխ. այրիվ. 18. Վրդ. է. Մին. համղ. 12, գրված Ներսեհ (որ սխալ ձև է) Մագ. Թղ. ժԹ (ստուգաբանում է «որ և գետ յորդ տասցեալ»). Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 55.—բց. ի Ներսեհնե՝ ՅՀ. կԹղ. գ. Սամ. անեց. 46. Մին. համղ. 12։

— 2. Ներսեհ Արծրունի, հաջորդ Նեյսի, ժամանակակից Պարսից Դարեհ Բ Թագավորի (Ն. Ք. 424—406).—Արծր. Ա. ղ (գրված է Ներսեխ)։

— 3. Ներսեհ Արծրունի, հաջորդ Վահանի (Դ դար).—Ներսեհ՝ Արծր. Ա. Թ։

— 4. Ներսեհ, իշխան Շահէի Ծոփաց. մին այն վեց նախարարներից, որոնք ընկճեցին Աղձնեաց Բակուր բդեշխի ապստամբությունը Խոսրով Բ-ի («330—339 Թ») դեմ.—Բուզ. Գ. Թ։

— 5. Ներսեհ որդի Կամսարու, եղբայր Արշաւրի Ա. գլուխ կանգնեց Արշակ Բ-ի («350—368 Թ») դեմ ապստամբող նախարարների.—սեռ. Ներսեհի՝ Խոր. Գ. ԻԹ.—զՆերսեհե՝ Խոր. Գ. լա.—Արշակի ձեռքով բնաջինջ եղավ Արմաւիրում.—ըստ Կոգեան, Կամսարկանները 84 կեղծիք է։

— 6. Ներսեհ Արուանթունի, մին է Ատոմեան նահատակներից, որոնք նահատակվեցին «449 Թ» Յազկերտ Բ-ի հրամանով.—Վկ. ատ. 81.—սեռ. Ներսեհի՝ Վկ. ատ. 69. Սւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 75. Ազգապ. 347. Տաշեան, Ցուց. 27, 564։

— 7. Ներսեհ եպիսկոպոս առաջնորդ Արտազի. հաջորդ Թադէոսի. գնաց Աղուանք քարոզութեան՝ Վարդանանց պատերազմի ժամանակները.—Զքր. եպս. 281. Արրտ. 1868 դեկտ. էջ 103 բ։

— 8. Ներսեհ իշխան Ուրծայ, կողմնակից Վասակի՝ ընդդեմ ուխտապահների.—Փարպ. լզ. Եղիշ. 71. Օրբ. ժզ։

— 9. Ներսեհ որդի Վասակ Սիւնի մարզպանի. պատանդ մնաց Յազկերտի մոտ Պարսկաստանում («450 Թ»). այսպես է կոչում Սիս. պատ. 41 փոխանակ Ատրներսեհի (№ 2)։ Նույն է նաև էջ 43 այն Ներսեհը, որ բարեխոսում է Յազկերտի մոտ և խնդրում Սիւնիքը՝ Վարազվաղանի համար։

— 10. Ներսեհ Քաջբերունի, մասնակցեց Վարդանանց պատերազմին, ուր և նահատակվեց իր 7 զինվորներով «451 Թ».—Փարպ. լԹ. Եղիշ. 77, 90, 93. Յայսմ. օգոստ. 7.—գրծ. Ներսեհիւ՝ Փարպ. լԹ։

— 11. Ներսեհ Կամսարական, եղբայր Սահակի և Հրահատի, տեր Շիրակայ. երեքով որդիքն են Արշաւիր Կամսարականի և Թոռներ Քաջն Վարդանի։ Ներսեհը Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մեկն էր («452 Թ»), մասնակից եղավ Վահան Մամիկոնեանի ապստամբական շարժումներին. Ակոռիի ճակատամարտում պատերազմեց Ատրվշնասպ մարզպանի դեմ և սպանեց Հատիշների զորագլուխ Գարջոյլին («481 Թ»).—Փարպ. կը, կթ, հա, հդ, հզ, ձ, ձա, ղա և էջ 188. Եղիշ. 150. Անան. գիտ. 25. Սեմ. ապար. 62, 64.—Ներսեհ՝ Արծր. Բ. բ.—սեռ. Ներսեհի՝ Փարպ. կթ, հդ, հզ, հթ, ձա. Օրբ. ժէ. Սեմ. ապար. 62.—բց. ի Ներսեհէ՝ Փարպ. 196.—գրծ. Ներսեհիւ՝ Փարպ. հա.—Կոգեան, Կմսրկնները 103—120։

— 12. Ներսեհ Երուանդունի. մասնակցեց Վահան Մամիկոնեանի ապստամբական կռիվներին Պարսից դեմ («481 Թ»).—Փարպ. հ։

— 13. Ներսեհ Բասենցի, նախարար, Բասենի Բողբերդ գյուղից. իր Սահակ և Հրահատ եղբայրների հետ գնաց Պոլիս, Ներսէս պատրիկի մոտ. Յուստինիանոս կայսրը կարգեց նրան կուսակալ Ալեքսանդրիոյ՝ հայկական բանակով։ Ներսեհը կործանեց այնտեղ Նեղոսի մեջ գտնված մի մեհյան և արձանները Պոլիս ուղարկեց (533 Թ)։ Մասնակցել է Գոթաց դեմ պատերազմներին Իտալիայում, իբրև օգնական Ներսէս պատրիկի (537 Թ)։ Հունական բանակի զորավարներից մեկն էր այն պատերազմում, որ մղեցին Պարսից դեմ Անգղ բերդի առաջ, ուր և վիրավորվեց (542 Թ)։—Զամչ. Բ. 241, 246—7, 267—8. Այրարատ 16, 518։ (Որովհետև երեք եղբայրները՝ Ներսեհ, Սահակ և Հրահատ զուգադիպում են անունների նույնությամբ նախորդ (Ներսեհ № 11) երեք Կամսարական եղբայրների հետ, ուստի կարելի էր նույնացնել նրանց հետ։ Բայց այդ ճիշտ չի լինիլ. Ներսեհ Կամսարականը երբ բանտարկվեց Յազկերտի մոտ («452 Թ») անշուշտ 30 տարեկան կլիներ. ուրեմն ծնունդը 422 թվին էր. երբ կռվում էր Անգղ բերդի առաջ (542 Թ) ուրեմն 120 տարեկան էր, ինչ որ անհնարին է։—Այս մասին բացասական կարծիք ունի նաև Կոգեան, Կմսրկնները 119)։

— 14. Ներսեհ որդի նույն Ներսեհի, զորավար Մորիկ կայսեր. Փոկասը բռնեց նրան և այրեց 605 Թ։—Զամչ. Բ. 297, Justi 223 բ։

— 15. Ներսեհ տեր Շիրակայ և Արշարունեաց. հիշված է

Մրենի արձանագրության մեջ (Այրարատ 114) և Ալամանի Ս. Անանիա եկեղեցու հիմնարկության արձանագրության մեջ 637 թ.—Շիրակ 125, Կոգեան, Կմարկնները 130—146։

— 16. Ներսեհ Կամսարական, ապոհիպատ պատրիկ, «շինող եկեղեցեաց»․ հունարենից թարգմանել տվեց Սոկրատի Եկեղեցական պատմությունը և Սեղբեստրոսի Վարքը՝ ըստ Յիշատակարանի 696 թ., իսկ ըստ Ասողիկի 678 թ։ Carrière, Նորագոյն աղբերք, էջ 44 դնում է 690—692 թվերին. իսկ Խալաթեան, Մովս. Խոր. Վիեննա 1898, էջ 5 Սոկրատի թարգմանության մեկենաս համարում է ոչ թե Ներսեհ Կամսարականը, այլ Ներսեհ իշխան Վրաց՝ փեսայ Կամսարականաց։—Փ. Սոկր. նես.—սեռ. Ներսեհի՝ Վրք. սեղբ. (սկիզբը).—Ջամչ. պատմ. Բ. 375 և Մեսրոպ եպս. (Սոկր. յաջ. 86—94) նույն են դնում հաջորդի հետ։ Տես նաև Տաշեան, Ցուց. 926—7։—Ասող. Բ. բ. Կիր. 35.—սեռ. Ներսեհի՝ Ասող. Բ. բ. Կիր. 36. Անան. գիտ. 25. Մխ. աս. իթ (=ից).—Այրարատ 133.—Նույն անձն է, բայց Կիր. և Սամ. անեց. իբրև տարբեր անձ են դնում՝

— 17. Ներսեհ Կամսարական, որդի Վահանի, եղբայր Գագիկի, տէր Շիրակայ և Արշարունեաց. կինն է Շուշան, որդին Հրահատ. իշխան Հայոց. հաջորդեց Աշոտ Բագրատունի պատրիկին և նստավ «685—688 թ», որից հետո նորից նստավ Աշոտը։ Արաբների ասպատակության միջոցին Աշոտ սպանվեց «692 թ»․ Յուստինիանոս Բ կայսրը, որ Հայաստան էր արշավել, Ներսեհին իշխանապետ նշանակեց։ Ներսեհը նստավ մինչև «695 թ», երբ իշխանության գլուխ անցավ Սմբատ Բագրատունի Բիւրատեան։ Ներսեհը ծերացած հասակում քաշվեց Վաղարշակերտի Ս. Աստուածածին վանքը և պարապում էր զանազան գրքեր գրել կամ թարգմանել տալով։ Այսպես օրինակ «Ընթերցուածոց Մեկնութիւնը», որ գրել տվեց Գրիգոր եպիսկոպոսին Արշարունեաց։ Ինքն է շինել Թալինի Ս. Աստուածածին եկեղեցին ի բարեխօսութիւն իրեն, իր կնոջ Շուշանի և իր որդի Հրահատի (Արձ. Այրարատ 138 և Շողակաթ 173—4)։—Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 19. Կիր. 36.—Ներսեհ Շիրակացի՝ Սամ. անեց. 84.—սեռ. Ներսեհի՝ Մխ. այրիվ. 66.—Ջամչ. Բ. 373. Կոգեան՝ Կմարկնները 145—156. Վրաց պղ. Ա. 79 (կոչում է Ներսեհ Կամսարական)։

— 18. Ներսեհ Կամսարական, հիշված է Խոր. աշխ. հրատ. Սուքրեանի, էջ 18, ուր խոսելով Աֆրիկէի մասին, ասում է թե այնտեղ շինել են երեք նոր քաղաք (Տիսոբա, Իզիսիա և Պոն-

գիկա), «որոց իշխանացաւ իմաստունն Ներսեհ Կամսարական, պատրիկն Շիրակայ և Աշարունեաց տէրն»։ (Հայտնի չէ թե որն է այս Ներսեհը։ Բ. Առաքելեան, Տեղեկ. Արմֆանի 1941, № 1, էջ 69 համարում է նույն այս Ներսեհը, որ իբր թե 691 թվից հետո կայսեր հրամանով իշխան է նշանակվել Պոնտոսում։ Ճիշտ չէ, որովհետև Ներսեհը 692—695 թ. Հայաստանում իշխանության գլուխն էր, այնուհետև էլ պարապում էր շինարարությամբ և գրականությամբ)։

— 19. Ներսեհ ի Փղիպեան, Միհրական ցեղից. այն է Ներսեհ Սիւնի, որդի Փիլիպէի, թոռն Վասակի. սպանեց Աղուանից Վարազ-Տրդատ իշխանին (Թ դար. ըստ Մարքվարդ, Բագր. 43՝ 821—2 թ. իսկ ըստ Օրբ. 727 թ).—Ներսեհ ի Փղիպեան՝ Կղկնտ. Գ. ի (=Շահն. Ներսէհ ի Փիղիպպեան).—Ներսեհ ի Փիլիպեան՝ Կղկնտ. Գ. իգ. (=Շահն. Ներսէհ Փիլիպպեան).—Ներսեհ Սիւնի՝ Օրբ. լբ։ Հիշում է նաև Եաքուբի արաբ պատմիչը (Թալաթ. Արաբ, մատ. 115՝ հիջր. 213 թ.=826 թ). կոչվում է իր չարաբարու վարքի համար «գժնդակ»։ Իր աթոռը դրավ Դիզակ գավառի Տումի գյուղում և իշխում էր Դիզակ և Վարանդա գավառների վրա։ Նրանով է սկսվում Աղվանից իշխանական մի տոհմը (Թ դարում). որդին է Գագիկ Ա իշխան (Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 130)։

— 20. Ներսեհ Կամսարական, մասնակցեց արաբական արշավանքին Դերբենդի վրա, ուր խորշակահար եղավ «784 թ».— Ղև. լԹ. Մխ. այրիվ. 19?

— 21. Ներսեհ, որդի Վարդանի Բ և թոռն Վարազ-Տրդատ Ա իշխանի Աղուանից. միհրական ցեղից.—Կղկնտ. Գ. իգ.—սեռ. Ներսեհի՝ Կղկնտ. Գ. իգ.—Ներսեհ՝ Մխ. այրիվ. 23։

— 22. Ներսեհ, հայր Յովհանի և Սմբատի, որոնք իբրև վկա հիշվում են Տաթևի երկու կալվածագրերում 844 թ.—սեռ. Ներսեհի՝ Օրբ. լԸ։

— 23. Ներսեհ իշխան Գարթմայանից. գերի քշվեց Բաղդադ՝ Բուղայի ձեռքով (Թ դար).—Ներսեհ՝ Արծր. Գ. ժա։

— 24. Ներսեհ Բագրևանդացի տես Ատրներսեհ։

*ՆԵՐՍԷՍ, ար. < պհլ. Nerseh անվան հունացյալ Ναρσῆς, Ναρσαῖος ձևից (ասոր. Narsai.), ինչպես ունինք Տրդատ>Տրդատիոս (Հիւբշ. 335)։ Ավելի ընդարձակ տես Ներսեհ: Իբրև անձնանվան օրինակ հիշում է Լմբ. մատ. էջ 47—52, 62—79, ժողովրդական ձևով ունինք Ներսօ 1824 թ. (Ձեռ. Վասպ. 208),

Ղրբ. Նե՛սի, փաղաքշաբար Ներսիսուկս (խեղճ Ներսէսս) 1335 թ. (Ջեռ. Վենետ. Բ. 350), կա գրված Նորսես 1665 թ. (Թարգմ. մայր. Բ. 411). Նորսես 1721 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 220)։ Հիշատակված է մեր մեջ Դ դարից սկսած և այժմ էլ շատ գործածական և սիրված անուն է։ Սրանից է Ներսեսեան կամ Ներսիսեան ազգանունը։

— Գրված է սեռ. Նարսի, (որ պէտք է հասկանալ Նարսեսի). անթվական մի արձանագրության մեջ՝ Արցախ 222։

— 1. Ներսէս, ճարտարապետ Նոյ նահապետի տապանի. տապանի վերևում իր համար ծածուկ մի սենյակ շինեց և մտավ այնտեղ. և որովհետև Աստուծու հրամանով չէր, ուստի այնտեղ էլ մնաց. և նրա գիակն էր որ Նոյի արձակած ագռավը ուտում էր։—Տաթև. հարց. 294, ձմ. եժա (տառասխալ)։

— 2. Ներսէս, որդի Գիսակի, Արտաշէս Բ թագավորի սնուցի թոռը. իր հոր Գիսակի անձնազոհ քաջության համար՝ Արտաշէսը (88—129 թ. ըստ Ջամչ.) բարձրացրեց նրան նախարարական պատվի և կոչեց Դիմաքսեան.—Խոր. Բ. խէ։

— 3. Ներսէս ոմն, նահատակվեց Ալեքսանդրիայում, յուլիսի 16-ին (թիվը անհայտ).—Ալիշան. Արշալ. քրիստ. 84։

— 4. Ներսէս այլ ոմն, նահատակվեց յունիսի 15-ին՝ Վետուլա անուն նահատակուհու հետ (թիվը անհայտ).—Ալիշան, Արշալ. քրիստ. 84։

— 5. Ներսէս, առաջնորդ Կիրասոնի՝ Պոլեմոնական Պոնտոսում (թիվը անհայտ).—Հացունի՝ Կարևոր խնդ. 116։

— 6. Ներսէս Ա Մեծ, կաթողիկոս հայոց «353—373 թ», Յուսիկ կաթողիկոսի որդի Աթանագինէսի որդին էր։ Մանուկ ժամանակ կրթվեց Կեսարիայում։ Ամուսնացավ, կինն էր Սանդուխտ, ունեցավ մի զավակ Սահակ անունով։ Մի տարուց հետո կինը մեռավ և Ներսէսը մի տարի ևս շարունակելով իր ուսումը, «350 թ» հայրենիք վերադարձավ, եղավ սենեկապետ Արշակ թագավորի։ «351 թ» ուղարկվեց Բիւզանդիոն՝ Հայաստան բերելու համար Ոլոմպիադա իշխանուհուն, որ Աբլաբիոս իշխանի դուստրն էր և Կոստանդ կայսեր վախճանյալ եղբոր Կոստասի նշանածը։ Ոլոմպիադան ամուսնացավ Արշակի հետ և եղավ Հայոց թագուհին։ Շահակ կաթողիկոսից հետո, Ներսէսը ընտրվեց կաթողիկոս և օծվեց Կեսարիայում «353 թ»։ Գումարեց Աշտիշատի ժողովը «354 թ», եկեղեցու բարեկարգության համար։ Հիմնեց աղքատանոցներ, որբանոցներ, հյուրանոցներ, հիվան-

դանոցներ, ուրկանոցներ, կուսանոցներ, վանքեր և հույն ու-ասորի լեզվով դպրոցներ։ Արշակի անկարգ վարքի համար գժտվելով նրա հետ՝ հեռացավ արքունիքից «359—363 Թ»։ Արշակը նրա փոխարեն նշանակեց Չունակին։ «364 Թվին» զիջելով Արշակի խնդիրքին, պատգամավոր գնաց Բիւզանդիոն, Վաղես կայսեր օգնությունը խնդրելու համար Պարսից դեմ։ Այստեղ մեր պատմիչները մի առասպել են պատմում այն մասին, որ իբր թե Վաղես կայսրը արիոսական լինելով՝ ուրիշ բազմաթիվ եպիսկոպոսների հետ Ներսէսին աքսորել է մի հեռավոր կղզի-ում աշակերտության ժամանակ Պոլսում նույն իսկ ցույց էին տալիս այն կղզին՝ ուր աքսորվել էր Ներսէսը։ Դա էր Պոլսի դեմը՝ Մարմարա ծովում գտնվող մի անբնակ կղզի (Ինեիզ ատա)։ Այս մասին խոսում է նաև Երեմ. չել. իր Ստամպոլոյ պատմության մեջ (Վիեննա 1913, էջ 104), հետևյալ ձևով.

Կղզին Ներսէսի սրբոյն՝
Իբրու աստ գոլ ի յաքսորման,
Ջուր մի բարեհամ դեռ կայ՝
Անպակաս որ հանդիպին այն։

Ըստ նույն հեղինակի՝ կղզին կոչվում է «Սիվրի ատա», այն է «սրածայր կղզի»։ Տես և Նշանհանի հրատ. Օրագր. էջ ԻՁ և էջ 245)։ Տարակույս չկա, որ այս ավանդությունը ոչ մի ժողովրդական հիմք չունի, և մեր մեջ տարածված ուրիշ շատ ավանդությունների նման հարմարեցրած է հետո և շատ ուշ՝ պատմական որևէ գրված աղբյուրի վրա կեղծաբար։—Պապ թագավորի ժամանակ Ներսէսը նորից գահ դարձավ և ձեռնարկեց բարենորոգմանց։ Բայց այս անգամ ընդհարումը ավելի մեծ եղավ. Ներսէսը ուզում էր քաղաքական իշխանությունը ենթարկել կրոնական իշխանության, իսկ Պապը ընդհակառակը։ Վերջապես Պապը ազատվելու համար իր զորեղ հակառակորդից՝ թունավորեց նրան։ Ներսէսը թաղվեց Թիլ ավանում «373 Թ»։—Բուզ. Գ. ժե, ժԹ. Դ. գ—է, Թ, ժա—ժե, ժԹ, ծա. Ե. ա, գ, ե, իա—իե, իԹ—լա, լդ. Փարպ. ժե. Խոր. Գ. ժղ, ի, իա, իդ, իԹ, լ, լգ, լգ, լէ, լը. Կանոն. 12, 13. Պետր. եպս. սիւն. էջ 40. Գիրք Թղ. ծէ, ձբ, ղա. Եզն. եր. 266, 268. Շիր. քրոն. 29, 53, 56. Լփ. կոչ. 73, 166. Փ. ոսկր. ղԹ. Ցհ. կԹղ. ժա—ժգ. Ցհ. կԹղ. հյր. 273. Արծր. Ա. ժ, ժա. Ասող. Բ. ա, գ. Գ. իա. Մեսր. եր. 12—120

(համախ). Գում. Ներս. 5, 6, 10, 12—19, 23, 25, 28—30. Գում. յյա. Ներս. 34—37, 41—42, 68—69. Ներբ. յորդ. 32. Շնորհ. վիպ. 776. Շնորհ. պտճ. 182. Թղ. 315, 322. Ուռհ. 230, 241, 253. Միխ. աս. ժա, ժթ (=ժը). յիշ. յաւել. Մխ. այրիվ. 20, 61. Սամ. անեց. 66, 67, 69. Բհնպ. 270. Գում. վր. ժբ (հրատարակիչը համարում է Աշտարակեցին. բայց ժամանակը սխալ է գալիս). Լմբ. 217. մատ. 25. Լմբ. ուկ. 24. Գում. լմբ. 236. Մխ. անեց. գ, իգ. Կր. տղ. 59, 74. Մաղաք. աբ. 3. Կիր. 4, 11—13, 64. Վրդ. փա—իդ, խդ. Վրդ. աշխ. 529. Շար. ժէ, իէ (էջ 128), իթ, կը, ղ, ղբ, էջ 456, 462, 526. Մ. մաշտ. 290 բ, 303 բ, 307 բ, 308 ա, 311 բ, 341 բ, 336 ա. Յայսմ. նոյ. 6, 19, յունվ. 18, մրտ. 2, 18. Պարականոն շար. 114, 115. Օրբ. ղ, հա. Սմբ. պտմ. 78. Ջքբ. եպս. 283. Տաթև. ձմ. իղ, ճխե, ճծե. ոսկիփ. 578. հարց. 184, 542, 650. Յկ. կր. 43—45. Մոթ. եազր. 28. Մեծոփ. յիշ. ա, գ. Մխն. համղ. 25, 84, 88. Նղշ. լաւ. 420. Ջքբ. սարկ. Գ. 3. Դրնղ. 510.—
սեռ. Ներսիսի՝ Բուզ. Դ. գ, ե, ժբ, ժե, ծա, ծէ. Ե. ղ, իա (ցանկը), փղ, իղ, իէ, իթ, լա. Խոր. Գ. ի, իա, իե, իէ, իթ, լա, լղ, լը, լթ, խէ, խթ, ծէ. Սեբ. լե. Եղն. եր. 267. Մամիկ. էջ 58. Խսրվկ. քրս. 314 բ. Կղկնտ. Ա. ժգ. Յհ. կթղ. ժբ. Արծր. Դ. ժբ. Մեսր. եր. (համախ). Գում. Ներս. 5, 11, 17, 18, 27, 28. Ասող. Բ. ա. Սամ. անեց. 68. Գում. յյա. Ներս. 32, 46—49, 52—53, 61, 64. Տարօն. Բ. § 12. Շնորհ. չփ. էջ 463. Պարականոն շար. 115. Լմբ. մատ. 171, 218. Միխ. աս. իզ (=իե), իթ (=իը), յաւել. Վրդ. իդ, կդ, հգ. Վրդ. աշխ. 518, 522. Այրիվ. 20 բ. Ճշ. 505. Գործ. 547, 690. Ժմ. 346. Մեծոփ. 85, 32. Շար. ժէ, կը. Անանուն ժմ. 17, 24. Մխն. համղ. 25. Օրբ. գ—ը, լը, խթ. Ջքբ. սարկ. Գ. 7, 38.—
Ներսեսի, Ներսեսի՝ Բուզ. Դ. գ (ցանկը), ղ, ե, զ, ժա (ցանկը). ժբ, ժգ, ժե, ծղ. Ե. ա, ղ, իա, իդ, իդ, իթ. Զ. ե, զ, ժգ. Փարպ. ը, ժա, ժգ—ժե. Կանոն. 59. Յղ. մովս. և դաւթի 71. Գիրք թղ. ձգ. Օրհն. 246. Վկ. շուշ. 49. Յհ. կթղ. ժբ—ժղ. Յհ. կթղ. հյր. 273. Արծր. Ա. ժ, ժա. Դ. թ. Մեսր. եր. 41, 58, 139. Գում. Ներս. 15. Պարականոն շար. 115. Ուռհ. 220, 253, 267. Կր. եր. 423. Գում. յյա. Ներս. 43, 45, 47, 48, 51, 64, 67. Մխ. անեց. ե. իղ, իդ. Սամ. անեց. շար. 161. Բհնպ. 270. Գում. սահ. 5. Միխ. աս. յիշ. յաւել. Շնորհ. վիպ. 917. Օրբ. ժմ. 27. Մաղաք. աբ. 53. Մ. մաշտ. 228 ա. Գործ. 564. Ազաղ. 398. Յայսմ. սեպտ. 9, նոյ. 19, 25, յնվ. 1, փետր. 3. Շար. ժէ. Կիր. 14, ժբ. Վրդ. իգ.

*Վրդն. դան. ա (էջ 243). Տաթև. հարց. 544, 611, 638. Ցկ. կր. 11, 43, 48. Զուղ. 42. Արր. կրնտ. 105. Առաք. պտմ. 322.—ըցու ի* Ներսեհէ, զՆերսեհն՝ *Բուզ. Դ. ե, ժա, ժե. Ե. իդ, լա. Փարպ. թղ. էջ 203. Մամր. էջ 71. Խոր. Գ. լը. Ցհ. կթղ. ժգ. Արծր. Աժա. Ասող. Բ. ա. Մեսր. եր. 43, 116. Պտմ. ներս. 13, 20. Սամ. անեց. 63. Վրդ. իդ. Օրբ. է, հ. Մխն. համդ. 24, 25. Հայապ. 228?—ի* Ներսեսէ՝ *Բուզ. Դ. ժբ, ժդ, ժե. Անան. խոստ. 5. Ցկ. կր. 43.—զրծ.* Ներսեսիւ՝ *Ցհ. կթղ. ժգ. Պտմ. ներս. 18. Վրդ. իդ. Վրաց ազգ. Ա. 21 (Վրաց մոտ կոչվում է* Ներսէ*), 41, 75, 77. Բ. 95.—Զարբ. Հին դպր. 238—241. Թրգմ. 568. Այրարատ 351. Ավգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 351, Գ. 375—411. Ջամչ. Ա. 434—469, Ադոնց. Պատմ. 163—222։ (Ներսէսի աջի մասին (ի հարկե կեղծիք), որ պահվում է Երզնկայում, տես Թորոս աղբ. Բ. 294)։*

— 7. Ներսէս *եպիսկոպոս Մոկաց, Մեծն Ներսէսի ուղեկիցներից մեկն էր՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ»։— Մեսր. եր. 26։*

— 8. Ներսէս *ոմն եպիսկոպոս Փոքր-Հայոց. ստորագրում է այն համախոսականին, որ Ս. Բարսեղ եպիսկոպոս Կեսարիոյ՝ 32 եպիսկոպոսների հետ ուղարկեց Եվրոպա, Արիոսականների դեմ «372 թ»։—Ադոնց. 214։ (Գաթըրճ. Տիեզ. պտմ. Բ. 511 համարում է Ներսէս Մեծը. այսպես նաև Հացունի, Կարևոր խնդ. էջ 210)։*

— 9. Ներսէս *Ճիճրակացի. նախարարական բանակի գլուխ անցավ և դուրս վտարեց հայոց Շապուհ պարսիկ թագավորի բանակը «419 թ».—սեռ.* Ներսիսի՝ *Խոր. Գ. ծզ։*

— 10. Ներսէս *եպիսկոպոս Մարդպետական, ժամանակակից Բաբգէնի («490—516 թ») կաթուղիկոսի, որի աթոռակիցներից մեկն է համարվում և որի հետ ստորագրում է այն թղթին, որ Բաբգէնը ուղարկեց Պարսկաստանի ուղղափառներին.—բց. ի* Ներսեսէ՝ *Գիրք թղ. ը։*

— 11. Ներսէս *Բ Աշտարակեցի կամ Բագրեանդացի. կաթուղիկոս հայոց «548—557 թ». Բագրեանի Աշտարակ գյուղից էր. հաջորդեց Ղևոնդ Առեստացի կաթուղիկոսին. գումարեց Դուինի 551 թ. և «554 թ» ժողովները՝ եկեղեցական բարեկարգության, տոմարի հաստատման և նեստորական աղանդի դեմ մաքառելու համար։ Ուղղափառ միաբանակ ասորիները՝ հալածված իրենց ազգակից, բայց այլադավան (քաղկեդոնիկ, նեստորական, Սևերեան) ասորիներից, դիմում են Ներսէսին և նրա հովանա-*

վորության տակ պաշտպանություն գտնում։ Աբդիշոյ երեցը եպիսկոպոս է ձեռնադրվում Ներսեսից և իբրև Թեմական այնուհետև մասնակից է լինում հայոց եկեղեցական ժողովներին։ Ունի «Թուղթ հավատոյ», գրված ի խնդրոյ Մուշեղ Բագրատունւոյ, տես REA հտ. 2 (1922), էջ 248. (Հիշված է «միջնոյ Ներսեսի հայոց կաթողիկոսի» անունով, որ Macler համարում է Շնորհալին։ Բայց Շնորհալու ժամանակ չկային Բագրատունիք։ Ներսես միջինը Աշտարակեցին է, ինչպես հաստատվում է նույն էջ, քիչ հետո հիշված Ներշապուհ Մամիկոնեան և Գրիգոր Արծրունեաց եպիսկոպոսների հիշատակություններից, երկուսն էլ ժամանակակից Ներսես Բ-ի)։ Նույնը տես և Ձեռ. Վենետ. Բ. 161 և 862, որի ուսումնասիրությունն էլ Բազմ. 1904, էջ 65—71։— Գիրք Թղ. Ժ, Ժբ, Ժգ, Ժէ. Եղն. եր. 268. Բհնպ. 271. Յհ. կթղ. Ժգ. Յհ. կթղ. հյր. 274. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 73. Մխ. անեց. գ. Միխ. աս. Ժէ? ԻԹ (=ԻԸ). Կիր. 22. Վրդ. Ա խզ. Մխ. այրիվ. 20. Օրբ. հա.—սեռ. Ներսեսի, Ներսեսի՝ Գիրք Թղ. Ժգ, Ժզ, Ժէ. Յհ. կթղ. Ժզ. Կիր. 23.—Ներսիսի՝ Կնիք հաւ. 135, Կանոն. 107. Ասող. Բ. բ. Վրդ. Լ. Օրբ. Իա, Կբ. Օրբ. հկեռ. Ժբ.--ըց. ի Ներսեսէ, ի Ներսեսէ՝ Գիրք Թղ. Ժա, Ժէ bis.—ի Ներսիսէ՝ Գիրք Թղ. Ժզ. Կնիք հաւ. 135. Շիր. քրոն. 75. Յհ. իմաստ. 39. Օրբ. Իա.—գրծ. Ներսիսիւ՝ Միխ. աս. Ժէ.—Չարբ. Թրգմ. 759, Վրաց աղբ. Ա. 35—40, 78, 107. Տեր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 90—135 (Ներսեսի հարաբերությունները ասորի եկեղեցու հետ). Զամչ. Բ. 237—9, 493—508. Ազգապ. 535—556։

— 12. Ներսես պատրիկ, հռչակավոր զորավար Յուստինիանոս կայսեր հունաց. ծնվել է 472 Թ. հույն պատմիչները կոչում են նրան «Ναρσῆς պարսկահայ», այն է Պարսից պետության հպատակ հայ, որ, ապա Հունաց կողմն անցավ։ Մեծամեծ քաջություններ գործեց և նվաճեց Իտալիան և վերջ տվավ Գոթերի պետության (552 Թ)։ Յուստինիանոսից հետո, Յուստինոս կայսեր առաջ չարախոսեցին Ներսեսի մասին. կայսրը հավատաց և ետ կանչեց Իտալիայից։ Իսկ Սոփիա թագուհին էլ ծաղրելով հրավիրեց նրան «բուրդ մանելու կանանց հետ»։ Ներսեսը բարկացած՝ ասաց. «Այնպիսի մի մանած մանեմ, որ ոչ ինքը և ոչ կայսրը կարենան ծայրը գտնել ու քանդել». և հրավիրեց Լոնգոբարդացոց, որոնք 200,000 հոգով եկան և Իտալիոյ տեր դարձան (571 Թ)։ Ներսեսը նստավ Հռովմում, ուր և մեռավ 572 Թ։

—Justi 223 բ. ընդարձակ կենսագրությունը տես Զամչ. Բ. 266—281։

— 13. Ներսէս աբեղա Թաժիկ. քրիստոնյա դարձավ և հավատքի համար բանտարկվեց Դուինում, 551 թ. Իրեն բանտակից և չարչարակից եղավ Մախոժ կամ Ս. Յիզդբուզիտ պարսիկը, որ նույնպես քրիստոնյա էր դարձել և որի նահատակության «553 թ» պատմությունը գրելով Ներսէսը՝ անցկացրեց Յայսմաւուրքի մեջ։—Յայսմ. փետր. 25. Վրք. և վկ. Բ. 126, 128. Զամչ. Բ. 256. Հայապ. 68։

— 14. Ներսէս եպիսկոպոս Բասենոյ և Մարդաղոյ. անդամ Դուինի երկրորդ եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ. —բց. ի Ներսիսէ՝ Օրբ. իբ (այլ ձեռ. ի Ներսայ)։

— 15. Ներսէս ի Սամսոնեան, իշխան. անդամ Դուինի երկրորդ եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։

— 16. Ներսէս սպարապետ Յունահայոց՝ 586—591 թ.—Այբարատ 561։

— 17. Ներսէս վանահայր Գլակայ վանքի. հաջորդ Անդրէասի (Զ դար).—Մամիկ. ա։

— 18. Ներսէս սեպուհ Վահեւունի. մասնակցեց Սամուէլ Վահեւնու ապստամբության ընդդեմ Մօրիկ (582—602 թ) կայսեր, բայց պատերազմի մեջ սպանվեց։—Սեբ. ժե։

— 19. Ներսէս իշխան, թերևս որդի Ներսեհ Բասենցու. կոչվում է հունաց մոտ «Ներսէս փոքր». կարգվեց զինակիր Յուստինոս Փոքր կայսեր. նա կազմակերպեց Տիբերեան գունդը, որ 16,000 Սկիւթացիներից էր բաղկացած. Մօրիկ կայսրը առավ նրան իր մոտ։ Այնքան գեղեցիկ անձ էր, որ ժամանակակից Կորիպպոս բանաստեղծը կոչել է նրան «ձույլ ոսկի»։ Մօրիկ կայսրը զորք տվեց նրան և Մուշեղ Մամիկոնեանի հետ ուղարկեց Պարսկաստան՝ գահազուրկ Խոսրով թագավորի օգնության և ճնշելու համար՝ Վահրամ Չոբինի ապստամբությունը (591 թ)։ Երբ Փոկասը սպանեց Մօրիկին, Ներսէսը ապստամբեց և գրավեց Եդեսիան։ Փոկասը խարդախությամբ կանչեց նրան իր մոտ և ողջ ողջ այրեց (603 թ)։—Զամչ. Բ. 297—9, 308—9, Տէր Սահակեան, Հայ կայսերք, հտ. Ա. 37, 40. 81, 96—99, 303, 314։ Սեբ. Թ (էջ 37) կոչում է նրան «Ներսէս ստրատելատ յԱսորւոց»։ Նույն է որ Lebeau, Hist. du Bas Empire, հտ. X (ըստ Մեսր. վրդ. Սոկր. յաշ. 89) կոչում է Ներսեհ կուսակալ Դարայի

և Միջագետքի (տես և իմ Ֆիրդուսին հայոց մասին, էջ 62)։ Ալիշան, Շիրակ 5 ա համարում է Կամսարական)։

— 20. **Ներսէս** եպիսկոպոս Բզնունեաց, անդամ Դուինի եկեղեցական ժողովի «607 թ».—Ուխտ. Բ. լ.—ի Ներսիսէ՝ Ուխտ. Բ. լբ.—Նոյնը Ներսէս Բռժունեաց՝ Գիրք Թղ. լը.—Ներսէսի Բռժունեաց՝ Գիրք Թղ. խ.—ի Ներսէսէ Բռժունեաց՝ անդ լթ.—Ներսիսի Բժնունեաց եպիսկոպոսի՝ Ուխտ. Բ. լէ։

— 21. **Ներսէս** եպիսկոպոս Վանանդայ. «հաւատոյ ձեռնարկ» տվեց Աբրահամ կաթողիկոսին «607 թ».—Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ։

— 22. **Ներսէս** առաջնորդ Վարագայ վանքի. հաջորդ Մուշեղիկի (շուրջ 640 թ).—Հայապ. 232։

— 23. **Ներսէս** եպիսկոպոս Հարքայ, անդամ Դուինի եկեղեցական ժողովի (645 թ).—Կանոն. 130, Զամչ. Բ. 345, Տաշեան՝ Ցուց. 654։

— 24. **Ներսէս** Գ Շինող, կաթողիկոս հայոց «641—661 թ». (ըստ Ի. Առաքելեան, Տեղեկ. Արմֆանի 1941, № 1, էջ 65 մահվան տարին է 662 թ)։ Հաջորդել է Եզրին։ Տայոց Իշխան գյուղից էր. մանուկ հասակից մեծացել էր Յունաց երկրում և լավ հունարեն սովորել։ Ծառայել էր սկզբում իբրև զինվորական և ապա կրոնավոր դառնալով՝ Տայոց եպիսկոպոս կարգվել։ Կաթողիկոսության միջոցին հետամուտ եղավ ավերակները նորոգելու. շինեց Դուինի Ս. Սարգիսը, Արտաշատի Ս. Գրիգորը, Վաղարշապատի Ս. Աստուածածինը, Վասպուրականի Զորոյ վանքը (Ուռհ. 75), իսկ բոլորից հռչակավորը՝ Զուարթնոց եկեղեցին, որ ըստ Թորամանեանի, Հայ ճարտար. 258 շինել է 643—652 թվերին (ինը տարվա մեջ)։ Այս շինարարության պատճառով էլ կոչվում է Շինող։ Գումարեց Դուինի հինգերորդ եկեղեցական ժողովը «645 թ», և ապա վեցերորդ ժողովը «648 թ», ուր մերժվեց Քաղկեդոնի ժողովը։ Երբ Կոստանդին կայսրը եկավ Կարին, կաթողիկոսը համաձայնվեց լինել քաղկեդոնիկ, գնաց կայսեր հետ Պոլիս և դառնալով Հայաստան, քաշվեց Տայք «653 թ»։ Այստեղ մնաց մինչև Թէոդորոս Ռշտունու մահը «658 թ», որովհետև նրանից շատ էր վախենում իր դավանափոխության համար։ «659 թվին» նորից դարձավ իր աթոռը և բռնեց Յունաց կողմը։ Մուավիէի ժամանակ դարձյալ անցավ Արաբների կողմը և մեռավ «661 թ»։—Սեբ. խբ, խգ, խդ, խզ, ծ. Կանոն. 129. Գիրք Թղ. ծէ. Ղև. դ. Կղկնտ. Գ. ժե.

*Մամիկ.* 55. *Եղն. եր.* 268. *Բ՛հնպ.* 271. *Յհ. կթղ. ժթ, ի. Յհ. կթղ. հյր.* 275. *Ասող. Բ. բ, գ. Սամ. անեց.* 81, 83. *Մխ. անեց. գ. Մխ. այրիվ.* 21, 65. *Միխ. աս. իթ (=իը). Կիր.* 34, 50. *Վրդ. լե, լզ, խդ. Յայսմ. ապր.* 29. *Օրբ. հա. Ուռհ.* 75. *Սիմ. ապար.* 126 (*կոչում է* Ներսես Տայեցի). *Չքր. սարկ. Գ.* 3. *Առաք. պատմ.* 479.—*սեռ.* Ներսեսի, Ներսեսի՝ *Գիրք թղ. ծէ. Յհ. կթղ. ժթ, ի. Կիր.* 35. *Վրդ. աշխ.* 508. *Յայսմ. փետր.* 26, *ապր.* 29. *Հայսպ.* 230. *Օրբ. լէ. Մխ. այրիվ.* 63. *Տաթև. հարց.* 544. *Սիմ. ապար.* 125, 127.—Ներսիսի՝ *Յհ. իմաստ.* 29. *Մամիկ.* 56, 59. *Սեբ. խ, խէ. Կղկնտ. Բ. լը. Վկ. հմզ.* 61. *Արծր. Գ. իբ. Ասող. Բ. բ. Վրդ. լզ. Վրդ. աշխ.* 513. *Սամ. անեց.* 107.—*բց.* ի Ներսիսէ՝ *Սամ. անեց.* 104. *Օրբ. ժմ.* 11.—ի Ներսեսէ՝ *Գիրք թղ. ծէ,—Վրաց աղբ. Ա.* 46 (*կոչում է* Ներսես Իշխանեցի), 47, 78, 80, 100.—*Ջամչ. Բ.* 344—360. *Ազգապ.* 707—746.—*Ներսեսի քաղաքականության մասին խոսում է Մեղրակեան, Պատկերյարգութ.* 178—184.—*Զվարթնոցի ճարտարապետության մասին խոսում է հայ ճարտարապետության մեծագույն վարպետ Թորամանյանը, Հայ ճարտ. որից մեջ եմ բերում հետևյալ տողերը. «Համարձակ կարելի է ասել, որ Զվարթնոցն իր ոճով և շինելակերպով միակն է ճարտարապետության ընդհանուր պատմության մեջ, քանի դեռ չէ գտնված իր նախորդը որևէ երկրամասի վրա» (Հայկ. ճարտ. 90 բ) ...արդյունքը հրաշալի է. անոր ճարտարապետը հայկական նվիրագործված խաչաձևը հունական բոլորակին հետ ներդաշնակորեն պատշաճեցնելու համար արտակարգ յանդգնության հետ եզական հանճար ի գործ դրեր է ի մեծ զարմացումն այսօրվան մեր գիտական աշխարհին (էջ 172բ)։ ... կա ճարտարապետական այնպիսի մեծություն մը և արվեստագիտական այնպիսի հմտություն, որ համաշխարհային ճարտարապետության մեջ հազվագյուտ օրինակ և պսակ է հայու ստեղծագործական տաղանդին (էջ 175 բ)»։—Շարականների կանոնավորության մասին «Էջմիածին» 1945 թ. № 5, էջ 47։*

— 25. Ներսէս *իշխան հայոց, հաջորդեց Գրիգոր պատրիկ Մամիկոնեանին (№ 39), որ նստել էր «661—682 թ» և մեռել է 685 թ.—Մխ. անեց. Գ։*

— 26. Տէր Ներսէս, *շինել է Բագուանի եկեղեցին 641—690 թվերի միջև—Մխ. այրիվ. 66։ (Ո՞վ է ակնարկում. պետք է կարծել որ Ներսէս Գ Շինող կաթողիկոսն է)։*

— 27. Ներսէս *Ա. կաթողիկոս Աղվանից 689—713 թ. նա-*

խապես կոչվում էր Բակուր (№ 10). եղավ եպիսկոպոս Գարդմանի և ապա Վարազ-Տրդատ իշխանի կնոջ՝ Սպառամի աջակցությամբ եղավ կաթողիկոս, իբր հաջորդ Եղիազարի, բայց առանց հայոց կաթողիկոսից ձեռնադրություն ստանալու։ 700-ական թվերին հարում է քաղկեդոնական դավանանքին և հալածում ուղղափառներին։ Աղվանները դիմում են Հայոց Եղիա կաթողիկոսին («703—717 թ.») և երբ սրա հորդորները դուր են անցնում, Եղիան դիմում է Արաբներին, զորք է բերել տալիս, գնում է Պարտավ, ուր կաթողիկոսին շղթայի զարնելով՝ քշում է Դամասկոս «713 թ», ուր և մեռնում է։ Սրան հաջորդեց Սիմէոն Ա։—Ներսէս՝ Կղկնտ. Գ. գ, դ, ղ—թ, իգ. Ցն. կթղ. իբ. Կիր. ը. Վրդ. լը. Մխ. աս. իթ (=իը). Մխ. այրիվ. 24. Տաթև. հարց. 545. Օրբ. ծա, կը, Օրբ. հկճռ. ժբ. Հայաստ. 384.— Ներսէս-Բակուր՝ Ասող. Բ. բ.—սեռ. Ներսէսի՝ Կանոն. 201. Կիր. ը.—Ներսիսի՝ Կանոն. 201. Կղկնտ. Գ. գ, է—թ, ժա, իգ. (չունի էմին). Ցն. կթղ. իբ.—բց. ի Ներսիսէ՝ Կղկնտ. Գ. գ։

— 28. Ներսէս Սիւնեաց տէր. կարգավորեց Յովակիմ եպիսկոպոսի օրով՝ Սիւնեաց ավանների միջև ծագած նախագահական կռիվը (Ը դարի կեսին).—սեռ. Ներսէսի՝ Օրբ. ժա (1 ձեռ. Ատրներսեհի.—տպ. Թիֆլիսի 1911, էջ 48 գրված է Ատրներսեհի։ Գավազանագրքերում չկա Ներսէս իշխան)։

— 29. Ներսէս ոմն. հիմնել է Վենետիկի առաջին երկու եկեղեցիները (Իտալական) Ս. Թէոդորոս և Ս. Դեմինիանոս. իր եղբայրն էլ նույն եկեղեցու եպիսկոպոսն է եղել (Թ դարի սկիզբը).—Ալիշան, Հայ-Վենետ. 12։

— 30. Ներսէս կրոնավոր ոմն, որ Պետրոս Գետադարձ («1019—1058 թ») կաթողիկոսի դեմ ծանր ամբաստանություններ է արել և որի համար Մագիստրոսը (†1059 թ) գրել է իր 8-րդ թուղթը։—Մագ. Թղ. ը.—Ներսէսի՝ անդ։ Սա է որ կոչվում է Ներսէս Կատաղի՝ Տաշեան, Ցուց. 158, 1135 գ։

— 31. Տէր Ներսէս ոմն, հիշված է Դոնավարզի (Արցախ) մի խաչքարի արձանագրության մէջ 1071 թ.—Արցախ 131։

— 32. Ներսէս գրիչ. օրինակել է Աւետարանը 1111 թ.— Ջեռ. Կարին 17։

— 33. Ներսէս եպիսկոպոս Դրազարկի վանքի. սրա օրով Բարսեղ առաջնորդը Պոլսից բերել տվեց Կաթողիկեայց Մեկնութիւնը և թարգմանել տվեց Գրիգոր դպրին։ Բայց թարգմանությունը լավ չգտնելով՝ Ներսէսը նորից խմբագրեց, Բարսեղ

առաջնորդի մահից հետո, 1163 թ.—Սիսուան 516 ա, Զարբ. Հին դպ. 707։

— 34. Ներսէս Դ Շնորհալի կամ Կլայեցի. կաթողիկոս հայոց «1166—1173 թ». ծնվել է 1102 թ. որդի Ապիրատ իշխանի. Գրիգոր Գ Պահլավունի կաթողիկոսի կրտսեր եղբայրն էր, որ 18 տարեկան հասակում վարդապետ ձեռնադրվելով՝ իր եղբոր օգնականն ու գործակիցը դարձավ։ Ապա դարձավ Մամեստիայի եպիսկոպոս, բայց մշտապես մնում էր Ծովքի հայրապետանոցում, ապա Հռոմկլայ, ուր փոխադրվեց կաթողիկոսարանը «1149 թ»։ Ծերության ժամանակ Գրիգորը իր ձեռքով կաթողիկոս օծեց Ներսէսին «1166 թ», երբ նա 64 տարեկան էր։ Զբաղվեց հայ և հույն եկեղեցիների միության խնդրով, որի համար բազմաթիվ ժողովներ գումարեց և երկար թղթակցություն ունեցավ Յունաց կայսեր և նրա ներկայացուցիչների հետ։ Հարցը ընդհատվեց Ներսէսի մահով «1173 թ»։ Ունի բազմաթիվ գրական գործեր, որոնցից հիշենք՝ Ընդհանրականը, Թուղթք, Ներբողեան հրեշտակապետաց. Ատենաբանութիւն, Ճառ ի գալուստն Քրիստոսի, Մեկնութիւն Մատթէի, Մեկնութիւն Եօթն Կաթողիկեայց, Մեկնութիւն Սահմանաց գրոց, Հաւատով խոստովանիմ, Շարականներ, Խրատ ժամերգութեան, մասեր Ժամագրքում, Յիսուս որդի, Ողբ Եդեսիոյ, Վարք Մեծին Ներսէսի, Վիպասանութիւն (տաղաչափ Պատմութիւն Հայոց), Բան հաւատոյ, Յաղագս Երկնից և զարդուց նորա, Մեկնութիւն Առակաց, Տաղեր, Առակներ և հանելուկներ են (տես Զարբ. Հին դպր. 621—641, Թրգմ. 348, Ցոփճանեան՝ Հետազօտ. նախն. ումկ. Ա. 57—67, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 330—343, Զամչ. Գ. 25—26, 52—55, 62—111. Ազգապ. 1399—1446. Պալճեան 30—43, Տաշեան, Ցուց. 1134—5. —Իր կենսագրությունը՝ Վրք. շնորհ. տպ. Վենետ. 1854 (Սոփերք ԺԴ), գրված 1240 թ.—ընդարձակ կենսագրություն և ուսումնասիրություն է Ալիշանի «Շնորհալի և պարագայ իւր», Վենետ. 1873, էջ 1—538.— Շնորհալու գրել տված մի Ձեռագիր Աւետարանի մասին տես Թորոս աղբ. Ա. 115, ուր կա նաև Ներսիսեանց ազգաբանությունը։—Խարդախանք է Շնորհալու մեռոնի շիշը, որը թե իր մագաղաթե վկայականով և իր կնիքով կնքված ՈԺԷ=1168 թվին և թաղված, ապա գտնված Խուլէի վանքում (Թորոս աղբ. Բ. էջ 351—3)։—Շնորհալու և Թէորիանոսի միջև եղած հույն-հայկական կրոնական վիճաբանությունը երկարորեն տես Պալճեան 204—266։ Իր վիճաբանության մասին Աստ-

րոց հետ տես Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. 260—280։ Իր դավանաբանական գաղափարների մասին տես Տէր-Մինասեանց, անդ, էջ 301—312։—Իր գրած ստույգ և անստույգ շարականների մասին տես Ամատունի, Պարականոն շարականներ, էջ 60, 67, 74 և հաճախ (տես էջ 197 ցանկը)։—Շնորհ. չփ. էջ 158, 162, 223, 225, 276, 322, 340, 354, 362, 373, 391, 401. Վիպ. 1536. Շնորհ. ընդհ. 1. Շնորհ. պտճ. 86, 109, 144, 157, 159, 167. Շնորհ. թղ. 207, 209, 223, 323. Ողբ Եդես. 1009. Շնորհ. մտթ. 16 (կոչված է միայն Շնորհալի). Շար. (սկիզբը հիշված իբր հեղինակ. իսկ իբրև ծայրանուն՝ գտնում ենք ԼԲ, ԽԲ, ԾԲ, ԴԲ. ինչպես և Նորաստեղծեալ (էջ 439), Նահապետին Աբրահամու (էջ 445) և Նայեաց սիրով (էջ 445) շարականների վրա). Լմբ. 213. Լմբ. շն. 466, 468—473, 491. Լմբ. մատ. 535. Վրք. շնորհ. 30—83 (հաճախ). Գր. տղ. 76. Մխ. անեց. դ. Վրք. հց. ա. 349. Ոսկ. գծ. 53, 71, 72. Միխ. աս. ԻԴ (=ԻԵ), ԻԷ (=ԻԴ), ԻԹ (=ԻԸ). Կիր. 63, 67, 69. Վրդ. կդ, հե. Մխ. այրիվ. 21, 79. Օրբ. կէ, հա, Օրբ. ժմ. 18, 19. Երզն. մտթ. 107. Մ. մաշտ. 336ա. Ճշ. 474. Ժմ. 407. Ցայսմ. նոյ. 8, մրտ. 19, յունիս 13, յուլ. 24, օգոստ. 5. Սամ. անեց. 117, 138—9. Կրպտ. սարգ. յոչ. Հեթ. ժմնկ. Սմբ. պտմ. 100, 102, 114. Պտմ. լմբ. 227—8, 236. Տաթև. ձմ. ճխա? Տաթև. հարց. 221, 251, 270, 353, 467, 518, 637, 641—2, 685, 687, 695 (սրանցից ոմանք կարող են լինել Լամբրոնացին). Առաք. լծ. սահմ. 240, 473, 570, 585, 599. Դրնդ. 303, 400. Մին. համդ. 122. Առաք. պտմ. 335. —Ներսիսեանց՝ Վրդն. աշխ. 526. Պտրգ. 187. Ժմ. 947.—սեռ. Ներսեսի կամ Ներսէսի՝ Շնորհ. չփ. էջ 7, 267, 310, 321, 323, 326, 349, 351, 354, 361, 363—6, 371, 375, 377, 380, 388, 395, 398—9, 402, 404, 421, 431, 436—7, 452, 463, 475, 477—8, 485, 493, 560. Շնորհ. թղ. 311. Շնորհ. սահփ. 295. Շնորհ. սահմ. 287, 318. Ողբ եդես. յոչ. և յիշատ. Լմբ. 93. Լմբ. ծբ մարգ. էջ 5 (ովս. ա. 1). Սկեւ. լմբ. 11. Գր. տղ. 5. Միխ. աս. ԻԴ (=ԻԵ). Վրք. շնորհ. 8, 10, 75, 81, 82. Կիր. խը. 61. Վրդ. հթ. (հրատ. էջմինի). Պտրգ. 581, 669, 706—7. Վրք. հց. ա. 348—9. Ցայսմ. սեպտ. 25, նոյ. 8, յունիս 13, 19, օգոստ. 5. Օրբ. ժմ. 22. ZAPh 1, 206. Տաթև. հարց. 225. Դրնդ. 303. Սիմ. ապար. 22 (ակնարկում է Շնորհալու Վիպասանութիւնը).—Ներսիսի՝ Շնորհ. չփ. էջ 167, 231, 279, 303, 341, 363, 365, 370, 374, 376, 379, 412, 426, 464. Վիպաս. 42. Շնորհ. ընդհ. 1. Շնորհ. պտճ. 85, 109, 120, 144—5, 154, 157, 160—1, 166, 180. Շնորհ.

Թղ. 205, 207, 209, 211, 213—4, 216—8, 223, 230, 240, 289, 296, 329. Ծար. լԹ. Զարբ. Թրգմ. 341, 565. Վրք. շնորհ. 74, 81, 83. Հմբ. 158. Հմբ. շն. 461. Մխ. դտ. Ա. կ. Միխ. աս. իզ (=իե), իէ (=իզ). յաւել. Սամ. անեց. 139. շար. 143—4, 164. Ոսկ. ներբ. լս. 826. Սմբ. պտմ. 108, 115. Վահր. ոտ. 185. Ճշ. 214, 294, 595, 601, 662. Պտրգ. 690, 706. Ժմ. 25, 33, 41, 84, 104, 141, 452, 557, 813, 887, 946. Օրբ. կր. Առաք. պտմ. 333.—բց. ի Ներսէսէ՝ Շնորհ. սրպ. 3. Շնորհ. չփ. էջ 300. Վրք. շնորհ. 35. —ի Ներսիսէ՝ Շնորհ. չփ. էջ 277, 304, 313, 445, 456, 462. Շընորհ. պտճ. 87, 160, 162, 182. Շնորհ. սրգ. 4, 53. Հմբ. շն. 489. Վրք. և վկ. Բ. 299. (Զարբ. Թրգմ. (724), 725. Վահր. ոտ. 218. Ցայսմ. նոյ. 8. Առաք. պտմ. 333, 335.—գրծ. Ներսիսիւ՝ Վրք. շնորհ. 46.— Շնորհալին՝ Զուգ. 9.—Զամչ. Գ. 18—111. Ազգապ. 1399—1446։

— 35. Ներսէս եպիսկոպոս և մետրապոլիտ Պոլսոյ, Թարգմանեց Նեղոսի Դոքսապատրի Կարգագրութիւն պատրիարքական աթոռոցն՝ 1179 Թ.—սեռ. Ներսիսի՝ Նեղ. դոքս. 33.—Զարբ. Թրգմ. 560։

— 36. Ներսէս արքեպիսկոպոս, առաջնորդ Սկևռայ վանից, հրամայեց Սամուէլ գրչին օրինակել Լամբրոնացու Մեկնութիւն Սաղմոսաց են, որ Լևոն Թագաւորը ընծա ուղարկեց Հաղբատի վանքը՝ ՈԼԹ=1190 Թ.—Ձեռ. Կարին. 148։

— 37. Ներսէս եպիսկոպոս Ջահան գավառի. օգնեց Լամբրոնացուն գտնելու համար ավազակներից հափշտակված «Մեկնութիւն պատարագի» աշխատությունը 1192 Թ.—սեռ. Ներսեսի՝ Հմբ. մատ. 557։

— 38. Ներսէս եպիսկոպոս Կապանի 1193 Թ.—Սիսուան 192 ա։

— 39. Ներսէս որդի Հեթում Ա-ի և եղբայր Լևոն Գ-ի. «եղև եպիսկոպոս Հայաստանի» (Դարդել 16).—շփոթում է Ներսէս Լամբրոնացու հետ։

— 40. Ներսէս Լամբրոնացի, Լամբրոնի իշխան Օշին Բ-ի (դավաճանն) որդին էր. մայրն է Շահանդուխտ Պահլաւունի՝ դուստր Շահան-Զորավարի՝ եղբոր Ներսէս Շնորհալու։ Ծնվել է «1153 Թ». աշխարհական անունն էր Սմբատ։ Մոր ուխտական զավակը լինելով՝ նվիրվեց Սկևռայ վանքին։ Աշակերտել է Յովհաննէս վարդապետին (№ 181) և Ստեփաննոս Ցակովկացուն։ Սովորեց հունարեն, լատիներեն, հավանաբար նաև ասորերեն և

երրայերէն (Միսուան 90 ծան.), ինչպէս և եկեղեցական գրականութիւն։ Եկեղեցասէր, գրասէր և աղքատասէր՝ ստացել էր իր հայր Օշինից 30,000 ոսկի դահեկան. սրա 1/3-ը ծախսեց եկեղեցական սպասներ գնելու, 1/3-ը գրքեր օրինակել տալու և 1/3-ը բաժանեց աղքատներին։ Սովորութիւն էր արել ամեն չորեքշաբթի և ուրբաթ օրերը Տարսոնի եկեղեցու դրան, 200, 300, մինչև իսկ 400 աղքատների հաց ու բակլա բաժանել։ «1168 թվին», երբ դեռ 15՚ տարեկան էր, ձեռնադրվեց վարդապետ՝ Ներսէս Շնորհալու ձեռքով, և «1175 թվին», 22 տարեկան հասակում, ձեռնադրվեց եպիսկոպոս Տարսոնի՝ Գրիգոր Դ Տղայ կաթողիկոսից և նստավ առաջնորդ Սկեռայ վանքի։ Լևոն Բ ուղարկեց նրան Գրիգոր կաթողիկոսի հետ պատգամավոր Գերմանացոց Ֆրեդերիկոս կայսեր մօտ։ Լամբրոնացին հայտնի է կրօնական հարցերում ցույց տված իր ազատախոհութեամբ, որով և նա մօտիկ էր զգում իրեն թե հույն և թե լատին դավանութեան, և սրանով էլ իր դէմ հանում պահպանողականներին։ Իր խօսքերն են. «Է՛ ինձ հայն որպէս զլատինացին, և լատինացին որպէս զհելլենացին, և հելլենացին որպէս զեգիպտացին, և եգիպտացին որպէս զասորին» (Թուղթ առ Լև. էջ 220)։ Մեր արդի կաթոլիկ հայերը համարելով նրան զուտ կաթոլիկացած հայ, գերհաչակում են նրա արժանիքները։ Բայց որքան տարբեր է Ազգապատումի քննադատականը, մանավանդ էջ 1516։ Այս գրվածքը կարդալով չի կարող որևէ լուրջ մտածող չձայնակցել հեղինակի պաշտպանած մտքերին։ Ունեցել է անսպառ գրական գործունէութիւն. իր գործերն են՝ Ատենաբանութիւն, Թարգմանութիւն Յովհաննու յայտնութեան, Թարգմանութիւն Մեկնութեան Յովհաննու յայտնութեան (վերջինս իր թարգմանածը չէ. այլ Յերապոլսի Կոստանդին մետրապոլիտի, որ Գրիգորիս կաթողիկոսի հրամանով թարգմանեց նույնը հունարենից և Ն. Լամբրոնացին գրի առավ Հռոմկլայում «1179 թ». տես Ձեռ. Արգ. յովհ. 157—9), Խորհրդածութիւնք ի կարգս եկեղեցւոյ, Մեկնութիւն աղօթից պատարագի («1177 թ»), Մեկնութիւն Հայր մերի, Տէրունական առածք, Մեկնութիւն «Էր ընդ եղբարս» հանգստեան Յովհաննու, Մեկնութիւն Արարածոց, Սաղմոսաց, Առակաց, Ժողովողի, Իմաստութեան, Երգ երգոցի, Երկոտասան մարգարէից, Դանիէլի, Յոբանու (տես Ձեռ. Թար. 127), Մատթէի, Լուծմունք կաթուղիկէից, Գիրք մարդակազմութեան? Անունք քաղաքաց շինողաց (սուրբ Ապուսայից բժշկի խնդրանօք);

Մեկնութիւն ութ խորհրդոց (Ատոմ ճգնաւորի խնդրանօք), Հարցաքննութիւն առ Օրէնս Քրիստոսի, Գլխակարգութիւն յունաց, Խնդիրք հայոց, Ճառ հոգեգալստեան, Համբարձման, Վերափոխման (տպ. Ոսկեան, Մատ. քնն. 76—119), Անառակ որդին, Կանոն Ջրօրհնեաց (որ ինքն է կազմել և մտցրել Մաշտոցի մէջ, ըստ Ձեռ. Հալէպի, Բ. էջ 80 բ), Թուղթ առ Լևոն արքայ, Պատասխանի թղթոյն Տուտէորդւոյն և Զօրագետացւոց, Թուղթ ուղղեալ Յուսկան ճգնաւորի յԱնտիոք, Վարք Գր. Նարեկացւոյ, Գովեստ և կենսագրութիւն Ն. Շնորհալւոյ, Շարականներ (տես Ամատունի, Պարականոն շար. 113), Տաղաչափութիւն Բարձրացուցէք ճառին Դաւիթ Անյաղթի?—Թարգմանել է Լատինական Պատարագամատոյցը (որ հրատարակեց Դաթըրճեան, Պտրգմտ. էջ 451—466), Գրիգոր Մեծ պապի Տրամախօսութիւնք (բայց ոչ թե բնագրից, այլ հույն թարգմանության վրայից ըստ Սարգիսեան՝ Ձեռ. Վեննա. Բ. 1167)։—Իր արտագրած ձեռագրներից հիշատակելի են Պարիզի Ազգ. մատ. № 27 Նոր կտակարանը (Manus. bibl. nat. էջ 14=Մխսուան 87) հունարեն և հայերեն լեզուներով, Կիւրղի Պարապմանց գիրքը (արտագրել է 1175 թ. մի նմուշ տես Միսուան 87 և REA 8, 27—29)։—Կոստանդին (№ 26) գրչին գրել է տվել «անգերազանցելի» գեղեցկությամբ մի Աւետարան 1193 թ. (տես Ձեռ. Վեննա. Ա. 557), մի Նարեկ՝ Գրիգոր գրչին 1173 թ. (Շողակաթ 196)։—Իր կենսագրությունը տես Պտմ. լմբ. և Սկեռ. լմբ. նաև Լմբ. էր ընդ եղբ. էջ 157—9. Իր գործերը տես Տաշեան, Ցուց. 1133—4. մեռել է «1198 թ», 45 տարեկան հասակում և թաղվել Սկեռայ վանքում։ Խաչատուր կրոնավորի սրտառուչ ողբը իր մահվան վրա տես վերը, հտ. Բ, էջ 469—472։—Լմբ. մատ. 192. Լմբ. առակ. (195), 428. Լմբ. յայտ. յիշ. Ցհ. իմ. խոստ. յիշ. Շնորհ. պտճ. 199. Սկեռ. լմբ. 3, 70—82. Կիր. 63, ա. Վրդն. սղ, յոզ. Մխ. այրիվ. 79. Սամ. անեց. շար. 145. Պտմ. լմբ. 227—8, 237. Սմբ. պտմ. 108—9. Օրբ. ժմ. 22. Պտրգ. 405. Ցայսմ. յուլ. 17. Շար. (սկիզբը հիշված իբր հեղինակ). Տաթև. ձմ. գ, խե, խը, ձա, ճլդ. Տաթև. ոսկիփ. 429. հարց. 512, 637, 687, 706, 781. Ցհ. արճիշ. 7. Ոսկ. գծ. 44, 49. Թորոս ազբ. Բ. 443, ՀԱ 1898, 246 բ.—սեռ. Ներսեսի, Ներսէսի՝ Լմբ. 93, 95, 207, 249. Լմբ. մատ. 1, 556. Լմբ. առակ. 1. Լմբ. ժբ. մարգ. էջ 5 (ովս. ա. 1). Լմբ. յայտ. (խորագիրը). Լմբ. անատ. 127. Լմբ. էր ընդ եղբ. 3. Լմբ. օր. 5. Սկեռ. լմբ. 4, 61. Վրդն. սղ. յոզ. Ցայսմ. յուլ. 17. Նհպաք 107.

—Ներսիսի՝ Լմբ. 290. Լմբ. շն. 461. Լմբ. յայտ. յիշ. (տես և Ց. Մաւրատ, Ցայտ. յովհ. էջ ձիա). Լմբ. օր. 15. ZAPh 1, 204. Պտմ. լմբ. 224, 227, 233—4. Ճշ. 466.—բց. ի Ներսիսէ՝ Լմբ. 207. Լմբ. ածած. 360 (=Ոսկեան, Մատ. քնն. 76), Ցհ. արճիշ. 118. Վկ. դէ. 60.—ի Ներսէսէ՝ Պտմ. լմբ. 240.—Զարբ. Հին դպր. 91, 92, 648—661, 785, Թրգմ. 205, 221, 301—3, 345, 359, 360, 390, 448, 464, 500, 513—4, 518, 521, 539, 551, 560, 573, 606—7, 731, 754—5, 763. Աթան. յսչ. ժգ—ժե. Ցոփյանեան՝ Հետազօտ. Բ. 498. Հայապ. 413—435. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 344—353. Զամչ. Գ. 88—95, 407—411, Սիսուան 86—97. Հայկ. աշխատ. Ֆէթթերի, էջ 46—51. Ալիշան՝ Շնորհ. 281—6. Macler, Manus. bibl. nat. էջ 21.—Զամչ. Գ. 88—167, 407—411. Ազգապ. 1514—24։

— 41. Ներսէս, ուսուցիչ Բարսեղ գրչի, որ օրինակեց Աւետարանը 1200 Թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 548։

— 42. Ներսէս նվիրատու ձեռագրի 1204 Թ.—Հայապ. 450։

— 43. Ներսէս քահանայ, որդի Մարիամի՝ քրոջ Ներսէս Լամբրոնացու։ Իր քեռու մահից հետո (1198 Թ) աշակերտեց Գրիգոր Սկեւռացուն, որից խնդրեց գրել նրա ներբողեանը։ Արտագրել է Լամբրոնացու Պատարագամեկնիչը՝ 1205 Թ. (Սիսուան 84 ա)։ Գրել է Լամբրոնացու վրա մի երգ՝ ըստ Զարբ. Հին դպ. 709։—Զամչ. Գ. 88. Սիսուան 84, 99. Զարբ. Հին դպր. 716. Սկեռ. լմբ. 4. Տաշեան, Ցուց. 477։

— 44. Ներսէս միաբան Սկեռոյ վանքի, ընկերակից Սամուէլ Սկեռացու, որ գրել է Ն. Լամբրոնացու վարքը (Զարբ. Հին դպր. 702)։

— 45. Ներսէս, երաժիշտ Ղազարայ վանքի 1204 Թ. (Հայապ. 449)։ Մի քանի ընկերներով գնացին Խլաթ, ուր գնեցին գերի ընկած մի մեծ Տօնական, 1206 Թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 472։

— 46. Ներսէս վարդապետ, առաջնորդ Կեչառու վանքի. հաջորդեց Գրիգոր Մոնոնիկին. անդամ Զաքարէ սպասալարի գումարած կրոնական ժողովի Անիում, «1209 Թ».—Կիր. գ. Այրարատ 262, 267։

— 47. Ներսէս վանահայր Նորսեսի անապատի, Մուշեղկայ գյուղում 1210 Թ.—Ծուրեան, Ուսում. 231. (Նույնը ունի Տաղակաթ Ա. 98, բայց ՈԺԹ=1170 թվին՝ փոխանակ ՈԾԹ=1210 Թ)։

— 48. Ներսէս, քեռորդի հայր Ցովհաննէսի և Բարսեղ վանականի. այս երկուսը Հայրապետ քահանային գրել տվին մի

Աւետարան՝ Սեբաստիա 1211 թ. բայց նրանց մահից հետո Աւետարանը ժառանգեց Ներսէսը։—Շողակաթ 198։

— 49. Ներսէս *քահանա, եղբայր Մելքիսեդեկ եպիսկոպոսի, որ Մշոյ Ս. Կարապետ վանքում մի խաչքար է կանգնեցրել 1212 թ.—Տըվըլէ, Ուղև. ի Փ-Ասիա, Վիեննա 1892, էջ 55։*

— 50. Ներսէս, *առաջնորդ Հայրավանքի. պաշտոնավարում էր Յովասափի հետ. հիշված է 1213 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 436։*

— 51. Ներսէս, *աշակերտ Թադէոս վարդապետի, որ էր միաբան Հաւուցթառի. Ներսէսը այդ ժամանակ դեռ պատանի էր 1214 թ.—Այրարատ 356, Ձեռ. Վեննա. Ա. 593։*

— 52. Ներսէս *կամ* Նորազես *քահանա Սեբաստացի, որդի Բարսեղ երեցի. գրել է մի Աւետարան 1222 թ.—Տաշեան, Ցուց. էջ 558։*

— 53. Ներսէս *եպիսկոպոս Տարօնի, 1198—1230 թվերի միջև։—Սիսուան 271 բ։*

— 54. Ներսէս *փիլիսոփա, որ Սարգսի և Ստեփաննոսի հետ կալվածներ է նվիրել Մեծարանց վանքին, 1250 թ.—Բանասէր 1901, 144։*

— 55. Ներսէս , *հայր Յոհաննէս գրչի, որ սիր Լևոնի համար օրինակեց Աւետարանը՝ Կիլիկիա 1256 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 448։*

— 56. Ներսէս , *իր կնոջ հետ միասին Լիանոսի վանքում թողել է մի արձանագրություն, 1258 թ.—Խաղբակեանք 59։*

— 57. Ներսէս, *միաբան Ակների վանից, հոգևոր եղբայր Դաւիթ Բջնեցու, որ օրինակեց Ագաթանգեղոսը 1261 թ.—հրատ. Ագաթ. 1909 թ. յոլ. էջ Լ։*

— 58. Ներսէս *Բ. կաթուղիկոս Աղուանից 1235—1261 թ. հաջորդեց իր եղբոր՝ Յովհաննէս Ե կաթուղիկոսին. նստում էր Խամշի վանքում. ինքն է որ ձեռնադրել է Հաղբատի Յովհաննէս Գ եպիսկոպոսին. 1240 թվին օծեց Գանձասարի վանքը. հրավեր ստացավ և գնաց Մուղան՝ Չարմաղանի սարի կնոջ՝ Ելթի խաթունի մոտ, որից և պատիվներ ստացավ. ստորագրել է Սսի «1243 թվի» եկեղեցական ժողովի կանոններին՝ «1246 թ». Նույն թվին այցելել է Խորանաշատի վանքը՝ Վանական վարդապետին (Արձ. Տեղեկ. Արմֆանի 1940 թ. № 4, էջ 177). Ներկա էր Վանական վարդապետի թաղման հանդեսին «1251 թ»։ Իրեն հաջորդեց Ստեփաննոս Դ կաթուղիկոսը։—Կիր. ը, իթ, լէ, խա, ծա, կա.*

Վրդ. ղև. յիշ.—սեռ. Ներսեսի՝ Կիր. լա, ծգ.—բց. ի Ներսեսէ՝ Կիր. 56.—Արձ. Շահխաթ. Բ. 371—2. Արցախ 173, 192.—ИАН 1909, 425. Ձեռ. Դաշեան, Ա. 89 բ. Ջամբռ 77։

— 59. Ներսէս գրիչ, Արքակաղնում օրինակել է մի Աւետարան 1266 թ.—Սխուեան 253 բ (բայց տես Շարժաղ)։

— 60. Ներսէս վարդապետ, վախճանված է եղել 1268 թվին և թաղվել Խոր-Վիրապում։ 1669 թվի նորոգության ժամանակ, բացվել է տապանը և դուրս է եկել վարդապետի «լիակատար պատմությունը կոնդակում» (Զքր. ագուլ. 81)։

— 61. Ներսէս եպիսկոպոս, հիշված է Արցախի Վարանդա գավառի Հացի գյուղի եկեղեցու երկու արձանագրության մէջ՝ 1270 թ.—Արցախ, էջ 125—6։

— 62. Ներսէս, հայր Բասիլ գրչի, որ Խորին անապատում (Կիլիկիա) օրինակից մի մեծ Ճառընտիր, 1270 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 235։

— 63. Ներսէս վարդապետ, առաջնորդ Թիլ ավանի եկեղեցու. գնաց Երզնկա՝ հայտնելու համար Ս. Ներսէսի մասանց գյուտը «1273 թ».—Պտմ. յյտ. Ներս. 50։

— 64. Ներսէս, որդի Յովհաննէս իշխանի Երզնկայի և թոռն Սարգիս արքեպիսկոպոսի Եկեղեաց գավառի՝ 1269 թ. (Ֆ. Մուրատ, Յայտ. յով. էջ յեէ են և Խալաթեան, Մնաց. էջ դ, ե). հիշված է 1273 թ.—Թորոս աղբ. Բ. 294 (ավելին տես Գրիգոր № 333)։

— 65. Ներսէս կրոնավոր. Մեծքարի վանքում, Թորոս սարկավագին գրել է տվել մի Աւետարան՝ 1260 թվից մի քիչ ուշ (Սխուեան 196 բ)։ Նույն Թորոս սարկավագին, իր և իր ուսուցիչ Յակոբ արքեպիսկոպոսի ծախսով, Մեծքարի վանքում գրել է տվել նաև Նոր Կտակարանը 1274 թ.—Ձեռ. Կես. ածած. 63 ա։

— 66. Տէր Ներսէս Տէր Մուքիասեանց, շինել է Արցախի Ջրաբերդ գավառի Դաստագիւլ գեղի եկեղեցին 1276 թ.—Արցախ, էջ 233։

— 67. Ներսէս սարկավագ, գրիչ. օրինակել է Յովհաննէս Սարկաւագի երկերը 1279 թ.—Ձեռ. Էջմ. № 540։

— 68. Ներսէս վարդապետ, որ իրեն և իր աշակերտ Եսայիի համար Լուսեր գրչին գրել տվեց Եզնիկը, 1280 թ.—տես իմ Թնն. և հմմտ. Եզնկայ, էջ 4, 7։ [Իրավունք ունինք կարծելու որ այս Ներսէսը Գլաձորեցին է (№ 70) և այն Եսային էլ Նչեցին]։

— 69. Ներսես եպիսկոպոս Ամարասի. ուխտել է եկել և նվերներ արել Գանձասարի վանքին՝ 1282 թ.—Արցախ 178։

— 70. Ներսէս վարդապետ Գլաձորեցի. ծնված էր Մուշում, ուստի կոչվում է նաև Մշեցի և Տարոնեցի. սովորեց Մշոյ Առաքելոց կամ Ղազարու վանքում. հմուտ հունարէն և լատիններէն լեզուներին։ Այնուհետև աշակերտեց Գլաձորայ վանքի Վարդան վարդապետին, որի մահից հետո, նստավ նրա աթոռը, և գավազան ստանալով՝ ուսուցանում էր Գլաձորի դպրոցում։ Իր աշակերտներից են Եսայի Նչեցին, որ ապա հաջորդեց իրեն (Զարբ. Հին դպր. 733), Ստեփաննոս Օրբելեան (Հայապատ. 492), Յովհաննէս Արճիշեցի և Մխիթար Սասնեցի։ Մեռել է «1284 Թ» և անցել է Յայսմաւուրքի մեջ։—Յայսմ. փետր. 6, 11. Մկ. մեծոփ. 29. Առաք. պատմ. 339. Մ. մաշտ. 336բ. Նօտարք 29. Տաշեան, Ցուց. 359.—սեռ. Ներսէսի՝ Յայսմ. փետր. 11.— Ներսիսի՝ Պարգ. 695.—բց. ի Ներսիսէ՝ Օրբ. հ։—Նույն Գլաձորումն է արտագրված Վիեննայի № 571 ձեռագիրը՝ 1283|4 թվին, ուր և հիշատակված Ներսէսը Գլաձորեցին է (Տաշեան, Ցուց. 834, 1039 և Ակինեան, Եփր. գծ. էջ 4).—Զարբ. Հին դպր. 767—Տ։—Ծանոթ. Ազգապ. 1696 Ներսէս Գլաձորեցուն և Ներսէս Մշեցուն տարբեր անձեր է համարում։—Ներսէս Գլաձորեցու շիրմի մասին տես Ոսկեան 135բ։—Տես և Ներսէս № 68։

— 71. Ներսէս քահանա, որի տապանաքարը գտնվեց Ախալքալաքի բերդի պեղումների ժամանակ, 1294 թվից։—Ազգահանդ. Ա. 138։

— 72. Ներսէս քահանա, վաղամեռիկ եղավ 1295 թ. գերեզմանը գտնվում է Թանատի վանքում.—Ոսկեան 124, Արար. 1889, 100։

— 73. Ներսէս քահանա, եղբայր Յովհաննէս գրչի, աշակերտ Թորոս քահանայի՝ Խորին անապատում 1295 թ.—Տաշեան, Ցուց. էջ 817։

— 74. Ներսէս եպիսկոպոս, որի խնդրանոք Յովհաննէս քահանան օրինակեց Աստուածաշունչը 1297 թ.—Ձեռ. Կարին. 10։

— 75. Ներսէս եպիսկոպոս Տարոնեցի, որի գերեզմանը գտնվում է Խոր-Վիրապում, Վարդան Արևելցու շիրմի մոտ (ԺԳ դար).—Այրարատ 438։

— 76. Ներսէս գրիչ. խնդրանոք Ստեփաննոս Գոյներիցանցի օրինակեց Ոսկեփորիկը (ԺԳ դար).—Ձեռ. Վիեն. № 1150 (Սարգիսեան, Ուագր. Ներած. էջ կզ)։

— 77. Ներսէս վարդապետ Ցռնուսի Ս. Կարապետ վանքի. Վահկայի թագավորական գրատան մեջ գտավ և օրինակեց Անդ-

րէ եպիսկոպոսի Մեկնութիւն Յայտնութեան Յովհաննու, որ թարգմանել էր Ն. Լամբրոնացին (ԺԳ դար).—Տաշեան, Ցուց. 265—6, 804։

— 78. Ներսէս սարկավագ՝ Իտալիոյ Փէրուժ (Perugia) քաղաքի հայ եկեղեցու, 1301 թ.—Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 342 ա)։

— 79. Ներսէս քահանա արքայեղբայր, որդի Լևոն Գ-ի և եղբայր Հեթում Բ-ի. արքունիքի հուզմունքներից և դավերից հեռու՝ սիրեց արվեստը. հավանաբար միաբան Արքակաղնի վանքի. հազիվ քահանայացած՝ մեռավ 22 տարեկան հասակում, թողնելով նշանավոր երաժիշտի համբավ. ծն. 1279 թ (Ձեռ. Օշ. 100 ա), † «1301 թ»։ (Ալիշան՝ Սիսուան, էջ Ը կոչում է Ներսէս Ռուբէն, իսկ Սիսուան 517 ա կոչում է Ներսէս Պատուելի)։—Յիշատ. Karst, Դատաստ. էջ ե. Պատմ. լմբ. 243. Պատմ. կիլ. 212. Սամ. անեց. շար. 153. Տաշեան, Ցուց. 906, 1135 գ. (Ջամչ. Գ. 279 չի հիշում իբր քահանա և դնում է մեռած 1278 թ)։

— 80. Ներսէս, որդի Սիր Գրիգորի և թոռն Ստեփաննոս արքեպիսկոպոսին Տարսոնի. վաղամեռիկ եղավ 1302 թ.—Սիսուան 74։

— 81. Ներսէս արքեպիսկոպոս, առաջնորդ Երզնկայի. հիշվում է 1289 թ. (Թորոս աղբ. Բ. 298), իր սեփական մի հիշատակարանում 1291 թ. (Հացունի, Կարևոր խնդ. 266). սրա ժամանակն էր, որ եվրոպացի նշանավոր ճանապարհորդ Marco Polo անցավ Երզնկայից՝ 1300 թ. (Յուշիկք, Բ. 467). հիշված է նաև 1302 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 516)։ Սարգիս նշանավոր արքեպիսկոպոսի թոռն է. վերջին անգամ հիշվում է 1304 թ. (Թորոս աղբ. Բ. 421)։

— 82. Ներսէս գրիչ. Վժանի անապատում, Սարգիս միայնավորի համար օրինակել է մի Աւետարան 1304 թ. (Ձեռ. Սևան. 8 բ, Սմբատեանց՝ Գեղարքունի 396). նույն թվին օրինակել է նաև Մայր Մաշտոցը (Ձեռ. Կարին. 138=Ձեռ. էջմ. № 973)։

— 83. Ներսէս կրոնավոր, հիշված է Կաֆայում (Ղրիմ), 1305 թ. (տես Աւետիք № 29).— Ձեռ. Վենետ. Բ. 511։

— 84. Ներսէս եպիսկոպոս Նէոկեսարիոյ, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Ջամչ. Գ. 309, Ազգապ. 1785։

— 85. Ներսէս եպիսկոպոս Տիանայ, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Ջամչ. Գ. 309, Ազգապ. 1785։

— 86. Ներսէս եպիսկոպոս Կամախի կամ Անւոյ, անդամ

Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Զամչ. Գ. 309, Justi 224 բ. Ազգապ. 1786։

— 87. Ներսէս գրիչ. օրինակել է Շարակնոցը՝ Թորոս վարդապետի համար, 1312 թ.— Manus. brit. mus. 95 ա։

— 88. Ներսէս գրիչ. Սկեռայ վանքի առաջնորդ Պեհենցի Կոստանդին եպիսկոպոսի հրամանով գրեց մի Մայր Մաշտոց, 1314 թ.—Սեդրակեան, Հայ. եկեղ. պատկերազարդութիւնը, էջ 103։

— 89. Ներսէս, առաջնորդ Գռներոյ վանքի. հաջորդեց Յովհաննէս արքայեղբոր 1316 թ.—Զարբ. Հին դպր. 712, Սիսուան, էջ 147։

— 90. Ներսէս, որդի Աւետիք քահանայի, որ Հարք գավառի Դանէլանք գյուղում օրինակել տվեց Աւետարանը՝ Յովհաննէս քահանային, 1316 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 464։

— 91. Ներսէս քահանա, աշխատակցությամբ Մովսէսի գրել է Գիրք Թղթոցի, Կնիք հաւատոյ և Կանոնագրքի մի ժողովածու, 1316 թ.— Տեղեկ. Արմֆանի, 1940, № 3, էջ 41։

— 92. Ներսէս քահանա, գրիչ. օրինակել է «Վասն սապաբիղաց» բնագիրը, 1316 թ.—Ըստ Լ. Մելիքսեթ-բէկի, Արմֆանի տեղեկ. 1940, № 3 և Աշ. Աբրահամեան, Շիրակացու մատեն. 88։

— 93. Ներսէս եպիսկոպոս Մոլևան վանքի (Բարձրբերդ). անդամ Ատանայի եկեղեցական ժողովի 1317 թ.—Զամչ. Գ. 314, Սիսուան 142, Ազգապ. 1818։

— 94. Ներսէս, թոռն գրիչ Սիր Գրիգորի՝ որդւոյ Ստեփաննոս արքեպիսկոպոսի Տարսոնի. ծնվել է 1318 թ.— Սիսուան 74 բ ծան։

— 95. Ներսէս քահանա, գրիչ. Եղվարդեցի Ազիզբէգի և նրա կնոջ՝ Վախախի համար օրինակեց Աւետարանը, 1318 թ.— Ձեռ. Կարին. 17։

— 96. Ներսէս որդի Շիրինշահի, ազգական Համազասպի, որ էր առաջնորդ Յովհաննավանքի։ Ներսէսը նախապես ճգնավոր էր նույն վանքում. գնում էր երախաներ և կրթելով նրանց՝ հոգևոր սպասավորություն էր տալիս։ Եղավ առաջնորդ Յովհաննավանքի և այդ միջոցին զանազան ձեռագրեր արտագրել տվեց (1318 թ).—Զքր. սարկ. Գ. 30. Այրարատ 172։

— 97. Ներսէս քահանա, որդիքն են Ստեփաննոս, Մարտիրոս և Կարապետ. Ապահունեաց Արճէ գյուղում, Յովհաննէս քահանայէն (անունը կասկածելի) գրել տվեց մի Աւետարան 1321 թ.—Ձեռ. Վաղ. 167։

— 98. Ներսէս քահանա, ստացավ մի Աւետարան, որ գրված էր Պէշգինա Գոմեր գյուղում 1322 թ.— Բարխուտ. Արցախ 47։

— 99. Ներսէս քահանա, եղբայր Յովհաննէս գրչի, որ Մաշկևորի անապատում օրինակեց Շարակնոցը 1322 թ.— Ձեռ. Սանաս. 14 բ։

— 100. Ներսէս գրիչ. Ապահունեաց գավառի Մանձկերտ քաղաքում օրինակեց Ճաշոցը՝ 1323 թ.—Սմբատեանց, Երնջակ, էջ 201։

— 101. Ներսէս քահանա Կամախեցի, հայր Մովսէս (№ 57) Երզնկացու, որ †1323 թ.—Հայապ. 508, Ազգապ. 1796։

— 102. Ներսէս «հայրապետ», հիշված է 1324 թ. (ՁՀԳ, սխալ տպված ՋՀԳ) . աղբյուրն է Նաթանեան, Արտօսր 147—150, որից Հայապ. 269, որ համարում է կաթուղիկոս Աղթամարի, իսկ Ակինեան, Գաղն. 55 համարում է աթոռակից Զաքարիա կաթուղիկոսի կամ առաջնորդ Մոկաց։

— 103. Ներսէս գրիչ. օրինակեց Աւետարանը Մխիթար քահանայի համար, 1325 թ.— Թորոս աղբ. Բ. 295։

— 104. Ներսէս, հայր Սերովբէի, որ Ակների վանքում օրինակեց Նարեկը 1326 թ.—Սիսուան 155 ա։

— 105. Ներսէս, կուսակրոն ընմական քահանա, որդի Վահրամ քահանայի և քեռորդի Յովհաննէս գրչի, որ գրեց նրա համար Մանրուսմունքը, 1328 թ.—Manus. brit. mus. 87 ա։

— 106. Ներսէս քահանա, ստացավ Ժ դարում գրված մի Աւետարան, որ նորոգեց 1251 թ. ապա ավելացրեց մի հիշատակարան 1328 թ.—Ձեռ. Սանաս. 9 բ։

— 107. Ներսէս քահանա անապատական, հոգևոր հայր և ուսուցիչ Յովհաննէս գրչի, որ Ներսէս վարդապետի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1328 թ.—Manus. brit. mus. 87 ա։

— 108. Ներսէս քահանա, մեծ հայր Ներսէս վարդապետի, որ Յովհաննէս գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը՝ 1328 թ.— Manus. brit. mus. 87 ա։

— 109. Ներսէս, սպասավոր բանի, Փոսի վանքում օրինակեց Աւետարանը՝ Գրիգոր քահանայի համար, 1329 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1924, 518)։

— 110. Ներսէս վարդապետ Տարօնացի կամ Սասնեցի. (գրված է խառնակ ձևով՝ Տարոնի Սանասու գավառից, ըստ Գալանոսի «ի Թարսոն գաւառէ», ըստ Ձամչ. Գ. 327 «ի Թարխոն գեղջէ», Սիսական 384ա «ի Տարսոնէ»), Սասնոյ Կոռ գյուղից,

որդի Վահրամի, նախապես միաբան Ղազարայ վանքի. ապա անցավ Գլաձորի վանքը, ուր 7 տարի աշակերտեց Եսայի Նչեցուն. ապա եկավ Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսի մոտ, դարձավ ունիթոռական վարդապետ, միաբան Քռնիի վանքի «1330 թ»։ Փափագ ունենալով ձեռք բերել մի օրինակ Աստուածաշունչ, գնաց Թաւրիզ մեծ նեղութեամբ, դրամ հավաքելով թուղթ գնեց և Գլաձորում, Յովհաննէս Մշեցու միջնորդությամբ վարձեց երկու գրիչ՝ Եփրեմ և Դաւիթ, որոնք օրինակեցին Աստուածաշունչը 1500 դրամ վարձով։ Բայց Դաւիթը փողասեր մարդ լինելով՝ նորից խլեց Ներսէսից 300 դրամ (1332 թ).— Մխական 134, 375, 384 ա. Ձեռ. Ներս. 32 բ. Ձեռ. Վեննա. Ա. 126—7. Հայապ. 546. Ազգապ. 1845։

— 111. Ներսէս աբեղա, երևի գրիչ կամ փորագրիչն է Տաթևի մի արձանագրության, 1332 թ.—Ազգագր. հանդ. Գ. 141։

— 112. Ներսէս աբեղա Գանկոցի, թուղթ էր կոկում Ներսէս աբեղայի համար, երբ սա օրինակում էր Ճառընտիրը՝ Երուսաղէմում, 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 348։

— 113. Ներսէս աբեղա, գրիչ. օրինակեց Աւետարանը Մելիքշահ Թիլուխարձեցու խնդրանոք, Եկեղեաց գավառում, 1335 թ.—Bodleian 5։

— 114. Ներսէս, մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձեանում օրինակեց Աւետարանը՝ 1336 թ.— Նաթանեան, Արտօսր Հյստնի 152։

— 115. Ներսէս գրիչ, օրինակել է Խոսրով Անձևացու Մեկնութիւն պատարագի, 1336 թ.—Ձեռ. Վիննա. Բ. 291։

— 116. Ներսէս րաբունապետ, որդի Գրիգորի, մերձավոր Սիւնեաց Սարգիս մետրապոլիտի, 1337 թ.— Ձեռ. Բեռլինի, 27 ա (հրատարակիչը՝ Ն. Քարամեանց, սխալմամբ կարծում է գրիչ. մինչդեռ գրիչն է Աւագ)։

— 117. Ներսէս քահանա, գրիչ. օրինակել է Խաղգիրքը 1337 թ.—Ձեռ. Կարին. 41։ Այլ է № 119։

— 118. Ներսէս սարկավագ, ստացավ Թուղթք Պօղոսի, Թուղթք Կաթուղիկեայց և Գործք առաքելոց, որ գրեց իր հոգևոր եղբայր Սարգիս գրիչը 1338 թ.— Թորոս աղբ. Բ. 462։

— 119. Ներսէս գրիչ. օրինակել է Խաղգիրքը Եկեղեաց գավառում, 1339 թ.—Ձեռ. Կարին. 41։ Այլ է № 117։

— 120. Ներսէս քահանա, որդի Գրիգորիս քահանայի և

եղբայր Թորոս գավազանակիր վարդապետի. ստացավ Մանրուսմունքը 1340 թ.—Տաշեան, Ցուց. 499։

— 121. Ներսէս աբեղա Կրակացի, որդի Օտարշահի, «յազգէ Հոմձնձնից և Կառաֆաւստնից», գրիչ. Երուսաղեմի Հրեշտակապետաց վանքում, Յովհաննէս աթոռակալի քույր Մարեմթագի հորդորով օրինակից մի Ճառընտիր, 1335 թ. (Մխուան 319 ա, Տաթև տարեց. 1925, 291)։ Իր կողմից ավելացրել է «Բան վասն ողորմութեան» և Աբգարի և Ադդէի մասին մի սուտ պատմություն։ Ունի երկար հիշատակարան և զանազան կատակաբանություններ։ Իրեն ակնարկելով տալիս է նաև Կրակացոց մասին հետևյալ առակը՝ ռամիկ լեզվով. «Ո՛վ եղբարք, յորժամ հանդիպիք սպալի, նա դուք ուղղեցէք սիրով և մի՛ նզովելով, զի ըղուղս Կրակցի է։ Ձի վարդապետ մի յղրկեց զաշակերտն՝ թէ գնա գլուխ գնէ։ Նա գնաց գնեց ու կերաւ զականջն ու զլեզուն ու զըղուղն, ու երեք զգանգն առջեն եդիր։ Նա հարցաւ, թէ ճեր է ականջն.—Նա ասաց թէ Ականջ չունէր, խուլ էր։—Ո՞ւր է լեզուն։—Լեզու չունէր, լեզատ էր։—Ո՞ւր է ըղուղն։—Ի Կրակայն էր արծել, ըղուղ չունէր»։—Իր մասին մի միջադեպ էլ կա հիշատակարանի վերջում։ Գրիգորէս Խարտբերդցին գնաց տէր Ծովլին Ոսկընցու մոտ և մատնեց թե Կարապետ փիլիսոփա Խարտբերդցին և քո Ներսէս Կրակացին ուրբաթ և չորեքշաբթի չեն տոնում, ինչպես և հունաց Ս. Կարապետը չտոնեցին։ Ծովլինը չորս աբեղա ուղարկեց, որոնք եկան երկուսին էլ ձերբակալեցին, սենյակի բերբը դուրս թափեցին, վեղարները խլեցին և իրենց էլ բանտարկեցին՝ իբրև հակաքաղկեդոնական (Ջեռ. Վենետ. Բ. 330, 346—350)։—Նույն Ներսէսը օրինակել է նաև մի կիսատ Հին կտակարան՝ 1341 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 148—150)։

— 122. Ներսէս սարկավագ, աշակերտ Յովհաննէս փիլիսոփայի. «ընդ հովանեաւ Ս. Յակոբայ Կապոսի» օրինակեց Շարակնոցը 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։

— 123. Ներսէս եպիսկոպոս Կապտնի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ջամչ. Գ. 341, Ազգապ. 1569, Մխուան 192 ա)։

— 124. Ներսէս վարդապետ Գոսինանդացի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։

— 125. Ներսէս եպիսկոպոս, կրոնավոր Յակոբեան ուխտից, քարոզիչ, գիտեր հայերեն և լատիներեն. պապը հայազգի ասպետ Կոստանդին Կարսիլլէի հետ միասին ուղարկեց Կիպրոս, որպեսզի

եկեղեցական հասույթները ստանալով՝ իբրև նպաստ տանեն Կոստանդին Դ Թագավորին, բայց ոչինչ չստացան, 1345 թ։— Դարդել 47, Բակուրան՝ Կիպրոս էջ. 117։

— 126. Ներսէս Պաղոն կամ Պալինեց, Սսեցի էր, եղավ եպիսկոպոս Ուրմիայի՝ 1336 թ. ունիթոռական քարոզչության համար գնաց Կիլիկիա և խռովություն գցելով ժողովուրդի մեջ, բռնվեց ու վտարվեց։ Սիմէոն Պէկի հետ գնաց Ավինիոն՝ Բենեդիկտոս ԺԲ պապի մոտ և ներկայացրեց նրան 117 ամբաստանության մի ցուցակ՝ հայ եկեղեցու մոլորությունների մասին։ Հայերը գումարեցին Սսի ժողովը և մի առ մի պատասխանեցին այդ ամբաստանության («1343 թ»)։ Ազգապատում 1871—1903 տալիս է թարգմանաբար այդ բոլոր ամբաստանությունները և նրանց պատասխանը։— Թարգմանել է Ֆրա Մարթինի «Հռովմի կայսերաց և պապերի ժամանակագրութիւնը» (1348 թ)։—Տալիս է Կիլիկիայի մասին զանազան պատմական տեղեկություններ, օր. մի հատված Սիսուան 392։—Չամչ. Գ. 330, 340, Հայապ. 122, Ազգապ. (անդ)։—Թորգոմեան REA 6, 25 ասում է որ գրել է նաև Կիլիկիայի ջերմուկների (հանքային ջրերի) մասին մի աշխատություն, որ այժմ կորած է։—Զարբ. Նոր դպր. 13, 159—162։

— 127. Ներսէս, գրիչ. օրինակեց Մայր Մաշտոցը՝ Տիւրիկ գավառի Աւթմնայ վանքում, 1348 թվին, ժանտախտի տարին.— Թորոս աղբ. Բ. 307։

— 128. Ներսէս, որդի Գրիգորի, եղբայր Ստեփանոս քահանայի, որ մի հին Աւետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.—Manus. brit. mus. 8 բ։

— 129. Ներսէս կրոնավոր Սեբաստացի. գրիչ. օրինակեց Ստեփանու ճառերը 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107։

— 130. Ներսէս, որդի Գրիգոր քահանայի, վանահայր և առաջնորդ Երուսաղէմի Ս. Փրկիչ վանքի. Կիրակոս դպչին գրել տվեց Աստուածաշունչը 1363 թ.—Ձեռ. Վասպ. 18։

— 131. Ներսէս, առաջնորդ կամ վանահայր Կիլիկիոյ Ս. Գէորգ վանքի։ Ասպատակների ձեռքով ավերված ու կողոպտված վանքերի ու եկեղեցիների վերաշինության համար, իր հետ վերցնելով Յակոբ անուն վանականին, ժողովարարության դուրս եկավ Եվրոպա և 1364 թվին հասավ Լոնդոն։ Անգլիոյ Եդուարդ Գ. Թագավորը արտոնագիր տվեց նրան՝ ամբողջ մի տարի շրջե-

*լու Անգլիա և իր հպատակներից գրամ հավաքելու։ Արտոնագիրը (լատիներեն) տպված է Սիսուան 410։*

— 132. Ներսէս *եպիսկոպոս Սիւնեաց, հիշված է Ցախաքարի մի արձանագրության մեջ 1367 թ.—Սիսական 156։ (Ըստ Ալիշանի սրա նկարն է թերևս դրված Սիսական, էջ 20 «Տէր Ներսէս, ի թուին ՉՁԶ»=1337)։*

— 133. Ներսէս *միաբան Ցախաքարի վանքի 1367 թ.—Սիսական 156։*

— 134. Ներսէս *Փոլատ (պրս. «պողպատ»). կաթողիկոս Աղթամարի, որ ըստ Հուաք. 40, յաջորդն է Դաւիթ Բ-ի և նախորդն է Զաքարիա Նահատակի, իսկ էջ 60 ցանկում հաջորդ Սամուէլի և նախորդ Աբրահամ Ա-ի։ Ակինեան, Գաւազանագիրք 52 և 64—67, ուրիշ հեղինակներից առնելով՝ անվստահությամբ հիշում է կամ աթոռակից Զաքարիայի Ա 1307—1315 թ., կամ մրցակից Դաւիթ Բ-ի, որից փորձում է խլել աթոռը 1363 թվին, բայց չի հաջողվում։ Օրմանեան, Ազգապատում 1932 դնում է Ներսէս Փոլատին կաթողիկոս մինչև 1378 թ., երբ հաջորդում է նրան Զաքարիա նահատակ։ Բայց գրքի վերջում (էջ ԾՀԲ, Աղթամարի կաթողիկոսների ցուցակի մեջ չի էլ հիշում Ներսէս Փոլատին և դնում է Դաւիթ Բ 1346—1368? և նրան անմիջական հաջորդ՝ Զաքարիա Նահատակ 1369—1393։—Նօտարք, էջ 3, կոչում է Ներսէս Բ, որ նախորդն է Նահատակ Զաքարիա կաթողիկոսի և նստել է մինչև 1369 թ։ Ամենից ստույգ տեղեկությունը տալիս է Ձեռ. Վասպ. 116, ըստ որի Ներսէս կաթողիկոսը 1294 թվին «դեռ ևս (՝այսինքն՝ նոր էր) հաստատեալ յաթոռ հայրապետութեան»։*

— 135. Ներսէս*, հայր Յովհաննէս Ալենախ եպիսկոպոսի Տարօնոյ, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։*

— 136. Ներսէս *աբեղա Մելիտինեցի, հիշված 1372 թ.—* Manus. brit. mus. *89 բ։*

— 137. Ներսէս *ստացող, իր եղբոր՝ Ստեփաննոսին գրել տըվեց մի Աւետարան, Դարանաղեաց (Կամախ) Աւագ վանքում, 1372 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45։*

— 138. Ներսէս *երեց, որդի Յովհաննէսի. գրիչ. Թաւրիզում իր հորեղբայր Տէր Յովհաննէսի խնդրանոք օրինակեց Նարեկը. 1377 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 54 բ։*

— 139. Ներսէս *ավագ սարկավագ, որ Թէոդորոս կաթողի-*

կոսի կողմից. ուղարկվեց իբրև նվիրակ Լեհահայոց 1383 թ.— Կամենից 219։

— 140. Ներսէս աղուաշ, գրիչ. Սամուէլ կրոնավորի համար օրինակեց Եւագրը 1384 թ.— Սարգսեան, Եւագր, Ներած. ճիբ։

— 141. Ներսէս քահանա Բաղբերունեաց գավառի Զարիշատ գյուղի. սրա ուխտական զավակն է Յովհաննէս վարդապետ, որ հիմնեց Մեծոփի դպրոցը «1391 թ».—Մեծոփ. 54. Ազգապ. 1983։

— 142. Ներսէս Արճիշեցի, եպիսկոպոս Մեծոփայ վանքի. Լէնկթիմուրի արշավանքի ժամանակ փախավ ապաստանեց Մըշոյ Ս. Կարապետի վանքը (1387 թ). մխիթարում և քաջալերում էր Արճիշեցի փախստականներին։ Ինքն է ձեռնադրել Յովհաննէս վարդապետ Մեծոփեցուն, որ բացավ Մեծոփի դպրոցը «1391 թ»։—Մեծոփ. 22, 54. Ազգապ. 1973, 1984։

— 143. Ներսէս քահանա, միաբան Ծպատի անապատի Ամենափրկիչ եկեղեցու, 1395 թ.— Ձեռ. Վասպ. 234։

— 144. Ներսէս, որդի Օտարշահի, գրիչ. Գամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը՝ Ասատ միայնակեցի համար, 1397 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 1277, 1284։

— 145. Ներսէս վարդապետ Բաղիշեցի. հաւաքել է Վարդանի առակները (ԺԴ դար).—Տաշեան, Ցուց. 664։

— 146. Ներսէս քահանա, գրիչ. օրինակել է Սաղմոսը (ԺԴ դար).—Ձեռագիրը երկրորդ անգամ կազմված է 1586 թ.—Manus. bibl. nat. էջ 1։

— 147. Ներսէս կաթուղիկոս Աղթամարի. ըստ Հաւաք. 40 հաջորդել է Զաքարիա Նահատակ († 1393) կաթուղիկոսին, որի հորեղբորորդին էր և նախորդն է Դաւիթ Գ-ի։ Շատախում գետն ընկնելով խեղդվել է։ Օրմանեան և Ակինեան չեն ճանաչում և Զաքարիա Նահատակի անմիջական հաջորդն են դնում Դաւիթ Գ։—Հաւաք. 61 ցանկում դրված է Ներսէս Գ. իբր հաջորդ Բարսեղ Բ-ի և նախորդ Յովարի։ (Կեղծիք)։

— 148. Ներսէս Բ, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Սարգիս Գ-ի և նախորդ Գրիգոր Ե-ի (ԺԴ դար).— Հաւաք. 61 (կեղծիք)։

— 149. Ներսէս «Նորաբողբոջ սարկաւագ» 1402 թ. Նախապես կոչվում էր Թաչիկ. իր մասին տես Զաքարիա № 49.—Ձեռ. Վասպ. 289։

— 150. Ներսէս երեց, որդի Ցետկարի. մայրն է Մարթայ. Երուսաղէմում օրինակեց Գանձարանը, 1402 թ.—Նոտարք 19։

— 151. Ներսէս վարդապետ, ծերունի առաջնորդ Խիզանի Գամաղիէլ վանքի, 1407 թ.—Նոտարք 26։ (Հմմտ. № 153)։

— 152. Ներսէս կրօնավոր, որդի Յովհաննէսի. մայրն է Աւագտիկին. եղբայրներն են Ստեփաննոս քահանա և Աւետիս վարդապետ. երեքն էլ միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի. հիշված են 1402, 1413 և 1420 թվերին։—Նոտարք 17, 42, 43, 63։

— 153. Ներսէս քահանա, շինել է մի ջրհոր՝ Բագուի Բզովնա գյուղում, 1421 թ.—Սմբատեանց, Սաղխան 173։

— 154. Ներսէս րաբունի, առաջնորդ Գամաղիէլի վանքի, 1427 թ.—Նոտարք 83։ (Հմմտ. վերը № 151)։

— 155. Ներսէս փիլիսոփա՝ Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583։

— 156. Ներսէս մահտասի, նորոգեց, կազմեց և մի հիշատակարան գրեց այն Աւետարանի մեջ, որ Հայրապետ կրօնավորը գնեց 1431 թ.—Նոտարք 97։

— 157. Ներսէս աբեղա, որդի Սարգսի. գնեց Թովմա Մեծոփեցուն և նրա աշակերտ Մկրտիչ, Յովհաննէս և Զաքարիա վարդապետներին գրել տվեց Ժամագիրքը՝ 1432 թ. և Պատարագամատոյցը 1427 թ. Մեծոփում և Ուրծայում (Ձեռ. Մխիթ. 19—20)։—Նույն է Ներսէս աբեղա Մեծոփեցին, որ արտագրել է Պատարագամատոյցը 1427—32 թվերին (Տաշեան, Ցուցակ 686)։ Տես և Ձեռ. Վիեն. 15 բ, ուր հիշվում է Թովմայի աշակերտ Ներսէս վարդապետի նախագաղափար Ժամագիրքը։

— 158. Ներսէս կրօնավոր, Թովմաս կրօնավորի հետ ստացավ Մաթէոս քահանայի օրինակած Ժողովածուն, որ միասին նորոգեցին և կազմեցին՝ 1432 թ.—Manus. bibl. nat. էջ 155։

— 159. Ներսէս քահանա, որդի Ուփիկի. մայրն է Թաճխաթուն. իր եղբայրների (Գրիգոր, Յորդանան և Ստեփաննոս) հետ Ուրանց գյուղում, Թումայ կրօնավորին գրել տվեց մի Աւետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364—6։

— 160. Ներսէս «ղեռաբոյս», երեք եղբորորդին էր Յովհաննէս սարկավագի, որ Արղնոյ Բագուր գյուղում օրինակեց Մաշտոցը 1434 թ.—Թորոս աղբ. Բ. 413։

— 161. Ներսէս քահանա, որդի Շնաֆոր պարոնի, Սեբաստիայում գրել տվեց մի Ճաշոց 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243—4։

— 162. Ներսէս քահանա, հայր Բարթուղիմէոս Առաքելի

վանուց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ ստացավ մի Յայսմաւուրք 1438 թ.—Ջեռ. Թաւր. 41։

— 163. **Ներսէս** վարդապետ, հայ թարգման Ֆլորենտիայի պապական ժողովի պատգամավորների. մասնակցել է ժողովի նիստերին, որի վճիռներն էլ լատիներենից հայերենի թարգմանելով ստորագրեց։ Որանով հայ եկեղեցին ուրանում է իր դավանանքը և ընդունում է լատին դավանանքը, որով հրաժարվելով իր անկախությունից դառնում է հլու հպատակ Հռոմի պապին։ Ներսէսի անունը հիշված է միայն պապական հրովարտակում «1439 թ».—Զամչ. Գ. 481, Պալճեան 93, 134, 137։

— 164. **Ներսէս** աբեղա, Երզնկայի Աւագ վանքում, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 165. **Ներսէս** կրոնավոր, միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի. գրել է մի Յայսմաւուրք, 1446 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 166. **Ներսէս** քահանա, մի խումբ գրիչների գրել տվեց Յայսմաւուրքը և նվիրեց Նորգեղկայ Ս. Կիրակոս վանքին (Երզնկա), 1446 թ.—Նոտարք 148—9, 151։

— 167. **Ներսէս** աբեղա, մասնակցեց նախորդ Յայսմաւուրքի խմբական օրինակության, որ կազմակերպեց Ներսէս քահանան Երզնկայում 1446 թ.—Նոտարք 149։

— 168. **Ներսէս** սարկավագ, որդի Յակոբ քահանայի, եղբայր Յովհաննէս քահանա գրչի (№ 1094), որ Թուրվանդա տիկնոջ համար սկսեց մի Աւետարան արտագրել 1448 թ։ Հաջորդ օրը մեռավ իր եղբայրը Ներսէս, որի համար հետևյալ սրտառուչ տողերն է նվիրում գրիչը.—«Սկիզբն արարի սուրբ աւետարանիս ի ՊՂԷ ամէն, յաւուր չորեքշաբթի յարութեան Զատկին, որ և ի միւս աւուրն սուգ տրտմութեան և դառնակսկիծ աղէտ եհաս ինձ և ծերացեալ ծնաւղի իմոյ։ Վասն զի հրաման եհաս յԱրարչէն փոխիլ առ Տէր լիրգահատար եղբաւր իմոյ հարազատ՝ Ներսէսի, 20 ամեայ, լի շնորհաւք սարկաւագ, լցեալ աստուածային իմաստութեամբն, խոնարհ և հեզ բարուք, քաղցրատես և սիրուն յաչս ամենեցուն. և ես առաւել Արարչին իւրոյ, նման սրբոյն Ստեփաննոսի նախասարկաւագին։ Վասն որոյ ոչ արժան համարեցաւ զայնպիսի պատուական եղբայրս ինձ մեղաւորիս. այլ փոխեաց աստի, ի դառն և մեղսասէր աշխարհէս, ուր ինքն կամեցաւ։ Բայց զի ժեպէտ և նորա հանգիստ էր և ընդ հրեշտակս ցնծութիւն՝ այնպիսի անմեղութեամբ մահն, այլ ծնաւղին իւրոյ և ինձ անչափ տրտմութիւն և դառն կսկիծ։ Վասն որոյ յոյժ

տրտմութեամբ և արտասուալից աչօք գրեցի»։—Ձեռ. Վասպ. 402 (ցուցակը տես Յովհաննէս № 1094)։

— 169. Ներսէս վարդապետ, առաջնորդ Արպելանայ ուխտին, 1449 թ.—Նոտարք 161, Manus. brit. mus. 95 բ։

— 170. Ներսէս քահանա, մեծ հայր Վարդան գրակալի, որ Արճէշում, Յովհաննէս գրչին գրել տվեց Աւետարանը 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 171. Ներսէս սարկավագ, եղբոր կամ քրոջ որդի Կարապետ միայնակեցի, որ Ցիպնայ-Դաստակ վանքում գրել տվեց մի Աւետարան 1450 թ.—Ձեռ. Վասպ. 405։

— 172. Ներսէս, եղբայր Կարապետ միայնակեցի, որ Ցիպնայ Դաստակ վանքում գրել տվեց մի Աւետարան 1450 թ.—Ձեռ. Վասպ. 405։

— 173. Ներսէս կրոնավոր, միաբան Խլաթի Ս. Յովհաննէս վանքի, 1450 թ.—Նոտարք 164։

— 174. Ներսէս, հայր Առաքել Բաղիշեցի տաղասացի. հիշված է 1453 թ.—Տաշեան, Ցուց. 795, Հայապ. 126։

— 175. Ներսէս, որդի Ստեփանոսի, եղբայր Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։

— 176. Ներսէս, որդի Յովանէսի՝ հօրեղբոր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 582։

— 177. Ներսէս սարկավագ, հանգուցյալ միաբան մի վանքի, որի անունը չէ հիշատակված 1456 թ.—Ձեռ. Վասպ. 426։

— 178. Ներսէս վարդապետ, որ Վանում, Վարդան երեցին գրել տվեց մի Ճաշոց 1458 թ.—Նոտարք 190։

— 179. Ներսէս սարկավագ, որդի Յակոբ քահանայի, մայրն է Սոլչուկ խաթուն, եղբայրն է Յովհաննէս քահանա գրչի, որ հիշում է Ներսէսին իբր դպիր 1443 թ. իսկ իբրև վաղամեռիկ սարկավագ, Բաղէշում, 1459 թ.—Նոտարք 132, 191։

— 180. Ներսէս արքեպիսկոպոս, որդի Գուրջիբէկի, մայրն է Էմնայ խաթուն, եղբայր Ստեփաննոս Գ կաթուղիկոսի Աղթամարայ։ Հոգևոր մայրն էր Փայլակ խաթունն։ Դեռ աբեղա էր, երբ օրինակեց Աղթամարում Աւետարանը 1448 թ., ապա 1457 թ, ապա 1460 թ. և ապա 1461 թ. ավելի ուշ դարձել է եպիսկոպոս։—Նոտարք 159, 185, 196. Ձեռ. Վասպ. 433—4, 436։—

*Հիշված է. Թորոս աղբ. Բ. 446 նաև ՋԽԴ=1495 թ. որ Ակինեան, Գաւզնգիրք 115 ուղղում է ՋԺԴ=1465։*

— 181. Ներսէս *եպիսկոպոս, որդի Ստեփաննոս քահանայի. Տիւրիկում, Զաքարիա քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 51։*

— 182. Ներսէս *«բանասէր», «սպասաւոր բանի», գրել է մի տաղ (ուղերձ) Յովհաննէս եպիսկոպոսի նահատակութեան վրա 1463 թ. (հրատ. Նոտարք 213—4)։ Հրատարակիչը՝ Փիրղալէմեան, կարծում է թե այս Ներսէսը Աղթամարցի Ներսէս եպիսկոպոսն է (աշակերտ Թովմա Մինասենց վարդապետի), ընտիր գրիչ և գանձասաց, որ ծաղկեց Աղթամարում, Զաքարիա Գ կաթուղիկոսի ժամանակ։*

— 183. Ներսէս *սարկավագ, որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ Արծկէում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Ձեռ. Վիեն. Ա. 621։*

— 184. Ներսէս, *մեկն է նրանցից, որ Խորձենայ Ծլպաշի վանքում Ստեփաննոս եպիսկոպոսին գրել տվին մի Աւետարան 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։*

— 185. Ներսէս *քահանա, կինն է Խաթուն Մելիք. ծնողներն են գրիչ և տաղասաց Յակոբ Նաւրաբենցի, որ հիշում է նրան՝ արդեն իբրև վախճանեալ 1464 թ.—Նոտարք 219։*

— 186. Ներսէս *վարդապետ, գրիչ. օրինակել է մի Մաշտոց, որ Սամուէլ մահտեսին նվիրել է Յովհաննավանքին, 1464 թ.—Այրարատ 172։*

— 187. Ներսէս *արքեպիսկոպոս Անկիւրիոյ, հիշված 1447 թ.—հաջորդել է Յովսէփ արքեպիսկոպոսին և իրեն էլ հաջորդել է Աբրահամ արքեպիսկոպոս 1466 թ.—Հացունի, Կարևոր խնդ. էջ 271։*

— 188. Ներսէս *հէրպետ Առբերդոյ վանից 1466 թ.—Նոտարք 225։*

— 189. Տէր Ներսէս, *որի «առաջնորդութեամբ» Գանձասարի վանքին մի հող են նվիրել Այդին և Խիմշայ՝ որդիք Աթաբակի 1467 թ.—Շահխ. Բ. 375, Ջալալ. Ա. 185, Նոտարք 229։*

— 190. Ներսէս *փոքր երեց, միաբան Գամաղիէլի վանից, 1468—9 թ.—Ձեռ. Վասպ. 452, 455։*

— 191. Ներսէս *աբեղա, մահտեսի, որդի Աստուածատուր քահանայի, պատճառ եղավ որ Ստեփանոս գրիչը Տիվրիկի Վա-*

տըր գյուղում տրտագրել մի Ավետարան, 1469 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 364։

— 192. Ներսէս քահանա Բիւրականի, 1469 թ.—Ձեռ. Վենետ Բ. 1114։

— 193. Ներսէս ոմն հիշված Բիւրականում 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 194. Ներսէս առաջնորդ Եկեղեաց գավառի Կայլիփոսի վանքից, հիշված է 1470 և 1473 թ.— Թորոս աղբ. Բ. 305, 328։ (Հմմտ. № 210)։

— 195. Ներսէս քահանա Ամասիացի. Պոլսում, Սմբրզովլաթ բժշկի խնդիրքով օրինակեց Միխայէլ Ասորու ժամանակագրությունը 1480 թ.—Միխ աս. էջ ա։

— 196. Ներսէս եպիսկոպոս Տիւրիկի՝ 1480 թ.—Թորոս աղբ. Ա. 231։

— 197. Ներսէս Գ կաթուղիկոս Աղուանից. հաջորդեց Արիստակէս Ա-ին 1478 թ. (հաստատեցաւ յաթոռն իւր ՋԻէ). իրեն էլ հաջորդեց Շմաւոն Ա-ը 1481 թ.— Ջամբռ 78, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 17, Ձեռ. Դաշեան, Ա. 89 բ։

— 198. Ներսէս ոմն, որ հիշված է Ահարոն քահանայի հետ մի խաչքարի արձանագրության մեջ 1481 թ.— Ազգագր. հանդ. Է, 50։

— 199. Ներսէս կրոնավոր, նվիրակ Սարգիս կաթուղիկոսի ի Կամենից՝ 1485 թ.—Կամենից, էջ 135։

— 200. Ներսէս եպիսկոպոս Սևանի, որդի Դանիէլ վարդապետի և ուսուցիչ Աբրահամ քանդակագործի, որ ծաղկեց Սևանի դուռը 1486 թ.—Յովսէփեան՝ Անահիտ 1932, էջ 25 (տվելին տես Աբրահամ № 87), Սմբատեանց՝ Գեղարքունի 120։

— 201. Ներսէս, որդի Ոստանի Աւետիս քահանայի 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 202. Ներսէս քահանա Ոստանի 1486 թ.— Ձեռ. Վասպ. էջ 502։

— 203. Ներսէս աբեղա, գրիչ. իր առաջին գործն է եղել օրինակել մի Ավետարան՝ «Սսիլ մելիք տատի» համար, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 240։

— 204. Ներսէս արքեպիսկոպոս, որդի Գուրջիբէկի, եղբայր Ստեփաննոս Դ (1465—89) կաթուղիկոսի Աղթամարայ։ Իր եղբոր հետ միասին սովորել է իր մորեղբայր Թովմա վարդապետ Մինասենցի մոտ, որ նշանավոր գրիչ էր։ Այս Ներսէսն էլ գրած

ունի երեք Աւետարան՝ 1448, 1457 և 1458 թ. Աղթամարում և մի Մաշտոց թագաւորօրհնէք (Ակինեան՝ Գւզնգիրք 108—9, 118)։ Ըստ Եզգալ. 2201, 2211—2 հաջորդեց իր եղբոր Ստեփաննոսին, իբրև կաթողիկոս Աղթամարի, պահակալելով «1487 թ» (կամ քիչ հետո) և կարճ կյանք ունեցավ։ (Չի ընդունում Ակինեան, Գւզնգիրք 120)։

— 205. Ներսէս եպիսկոպոս, առաջնորդ Կարնոյ 1487—88 թ.— Բօսեան, Բարձր Հայք, Ա. 103։

— 206. Ներսէս մալազ, թուղթ էր կոկում Բաբերդի Բերդակ անապատում և օգնեց Մովսէս աբեղային՝ գրելու Յայսմաւուրքը, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

— 207. Ներսէս երեց, «խարազնազգեաց հգնաւոր, ծաղկեալ ալեաւք», միաբան Սեբաստիոյ Ս. Նշան վանքի, 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 240։

— 208. Ներսէս քահանա Բաբերդցի, գրել ավեց մի Յայսմաւուրք՝ Մովսէս աբեղային և նվիրեց Բաբերդի Ս. Աստուածածին եկեղեցուն, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

— 209. Ներսէս քահանա, որդի Եզգանբաղշի և եղբայր խոջա Ղուրաթի, որ Արաշ գյուղաքաղաքում գրել ավեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

— 210. Ներսէս վարդապետ Համշէնցի, առաջնորդ Եկեղեաց գավառի Կապոսի անապատի, 1495 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 622։ (Հմմտ. № 194)։

— 211. Ներսէս, որդի Մաթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել ավեց մի Աւետարան, 1496 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— 212. Տէր Ներսէս «փիլիսոփայ» (իմա երաժիշտ)։ հորեղբայր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել ավեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ. երբ Ներսէսը արդեն մեռած էր.— ՀԱ 1887, 56 բ։

— 213. Ներսէս, կինն է Յուլթլումելիք. ծնողներն են նշանավոր տաղասաց Առաքել Բաղիշեցու (ԺԵ դար), № 77։— Ձեռ. Հալէպի, Ա. 104 բ։

— 214. Ներսէս Դ. կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Յակոբ Բ-ի և նախորդ Սարգիս Դ-ի (ԺԵ դար)։— Հաւաք. 61 (կեղծիք)։

— 215. Ներսէս, որդի Ստեփանոս քահանայի և թոռն Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել ավեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

— 216. **Ներսէս**, *առաջնորդ Գանձասարի, հիշված է 1467 թ, 1471 թ, 1493 թ, 1495 թ, 1500 թ։—Շահխաթ. Բ. 374, 375, Նոտարք 228, Արցախ 177 (դնում է 1495 թ), 178—9։*

— 217. **Ներսէս**, *աթոռակալ Եղիշէ Բ. կաթողիկոսի՝ «1506—7 թ».—Առաք. պատմ. 337։ Ջամչ. Գ. 509 այս Ներսէսը համարում է Աղթամարի Ստեփաննոս Դ կաթողիկոսի (1465—89) եղբայրը. (Նույնը տես և Ակինեան՝ Գաւազանագիրք 118)։*

— 218. **Ներսէս**, *կաթողիկոս Աղթամարի, հիշված 1534 թ. Մոկսում գրված մի հիշատակարանում ՋՀԳ=1534 թ. «ի հայրապետութեան Տ. Ներսէսի և յառաջնորդութեան Զաքարիայի» (տես Նաթանեան, Արտօսր 148) (եթե սակայն հայրապետեան այստեղ վանահայր չէ)։*

— 219. **Ներսէս** *կաթողիկոս Սսոյ, մեռել է 1541 թ. և թաղվել Սեբաստիա. գերեզմանը վերանորոգվել է ՌՄՂ=1841 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սեբ. 98։*

— 220. **Ներսէս Ե**, *կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Ստեփաննոս Ը.ի և նախորդ Գրիգոր Ը-ի (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։*

— 221. **Ներսէս** *տաղասաց ԺԶ դարում (այլ է Ներսէս Բեղլուն).—Յուշիկք Բ, 125։*

— 222. **Ներսէս** *վարդապետ Մատաղ, աշակերտ Գրիգոր Ջորթան Արճիշեցու և ուսուցիչ Ներսէս Բաղիշեցու (ԺԶ դար).—Առաք. պատմ. 301, 340, Թորոս աղբ. Բ. 483։*

— 223. **Ներսէս** *վրդ. Բաղիշեցի, աշակերտ Ներսէս Մատաղի և ուսուցիչ Ներսէս Ամկեցու (ԺԶ դար. շուրջ 1540 թ.).—Առաք. պատմ. 301, 340, Թորոս աղբ. Բ. 483.—ունինք սրանից մի տաղ՝ 1618 թուից, որ տես Ջեռ. Հալէպի, Բ. 63 բ։ (Ջեռ. Վեննա. Բ. 944 կան երեք տաղեր իր անունով, որոնցից երկուսը 1617 թվից)։*

— 224. **Ներսէս** *վրդ. Ամկեցի, աշակերտ Ներսէս Բաղիշեցու և ուսուցիչ Յովհաննէս (№ 1323) Բրդուտ Ոստանցու (ԺԶ դար, շուրջ 1570 թ).—Առաք. պատմ. 301, 340, Թորոս աղբ. Բ. էջ 483։*

— 225. **Ներսէս** *վարդապետ Մոկացի, մականուն* Բեղլու *(«խոշոր բեղեր ունեցող»), Ասկնջաւս գյուղից. տաղասաց. աշակերտեց Բարսեղ Գաւառցուն. ուսավ Ամրդոլու վանքում արտաքին փիլիսոփայական ուսմունքները. հաջորդեց իր ուսուցչին* (1615 թ), *ապա քաշվեց Սիւնեաց երկրի Հարանց անապատը,*

ուր ուսուցանում էր։ Այնուհետև գնաց հիմնեց Լիմ անապատը, ուր և մեռավ 1627 թ.։ Ունի Ոտանաւոր ողբերգութիւն (Ձեռ. Կարին. էջ 4). իր տաղերից մի նմուշ տես Այրարատ 393, 428։ Նշանավոր է իր մի տաղը «վիճաբանութիւն երկնի և երկրի», որի մեջ յաղթութիւնը երկիրն է տանում։ Գրել է նաև Նկարագրութիւն պատկերի Տիրամօրն Հոգեաց վանաց և հոսանաց Տիգրիս գետոյ, որից մի հատված տես Հայապատում 51, Յուշիկք Ա. 308—310։ Ունի նաև Գովեստ որք եղին սկիզբն Անապատի (Հայապ. 618), Պատմութիւն առմանն Երուսաղէմի ի Սալահադինայ (Ջամչ. Գ. 565)։ Անշուշտ նույնից է «Աղօթք առանձնակի սրտահառաչ ձայնիւ պաղատանք արարեալ Ներսէս վարդապետի ի Լիմ անապատն» (Ձեռ. Սևան. 37 ա)։— Իր կյանքը Առաք. պատմ. 192—3, 198, 301—9, Սիսական 248։ Իր տաղերի ցուցակը և երկու մեծ տաղ հրատարակեց Նորայր վրդ. Ծովական, «Էջմիածին» 1944, № 10—12, էջ 32—35։

— 226. Ներսէս Սեբաստացի, կաթողիկոս Սսոյ «1648—1653 թ». նախապես առաջնորդ էր Սեբաստիոյ 1637 թ. հաջորդեց Սիմէոնին. իր կաթողիկոսության ժամանակ Էջմիածնի Փիլիպպոս կաթողիկոսը գնաց Երուսաղէմ և այնտեղ հրավիրելով նաև Ներսէսին, գումարեց եկեղեցական ժողով, Սսոյ և Էջմիածնի աթոռների իրավասությունը որոշելու համար «1652 թ»։— Առաք. պատմ. 254—7, 320. Ձեռ. Հալէպի, Բ. 100 ա (ասում է թե ՌՃԳ=1654 թվին! Հալէպ էր գնացել. նաև Ձեռ. Հալէպի, Ա 128 ա 1654 թվին Ներսէսը դեռ կենդանի է հիշվում և գովաբանվում. ուստի Ազգապատումի տված 1653 թիվը պետք է դարձնել 1654 թ). Ձեռ. Սեբ.=ՀԱ 1922, 464 և 468—471։

— 227. Ներսէս կաթողիկոս Աղուանից, հիշված է 1666 և 1667 թվերին (Ձեռ. Դաղեան, Բ. 42 ա). տարբեր է նախորդից, որ բաժանված է մի դարու անջրպետով։

— 228. Ներսէս Զ. կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Յովհաննէս Ը-ի և նախորդ Ստեփաննոս Թ-ի (ԺԷ դար).—Հուշար. 63 (կեղծիք)։

— 229. Ներսէս վարդապետ Երևանցի, Ուրբանեան դպրոցի աշակերտներից էր. երբ ավարտեց, Պրոպագանդայի հրամանով գնաց Լեհաստան և Լեմբերգում, Նիկոլ Թորոսովիչից եպիսկոպոս ձեռնադրվեց, ըստ որում Հռոմում հայածէս եպիսկոպոս չըկար։ Հռոմ վերադառնալու ժամանակ, մեռում է Վիեննայում, ուր այն ժամանակ ժանտախտի սաստիկ համաճարակ կար։ Ներսէսը

*անվախ կատարում է իր քահանայական պաշտոնը ժամատանից վտարվածների մեջ։ Սրա համար իբրև վարձատրություն նշանակվում է Բենեֆիցիատոս (ժառանգավոր) աթոռակալ Վիեննայի Ս. Ստեփաննոս Մայր եկեղեցու։ Այս միջոցին Բուդապեշտը Օսմանեան իշխանության տակ էր. Գաբրիէլ անուն մի հայ նկարիչ թղթակցում էր Վիեննայի Ներսէս վարդապետի հետ հայերեն լեզվով և տաճիկ բանակի զինվորական գաղտնիքները հաղորդում նրան, իսկ նա էլ թարգմանում և հանձնում Լէոպոլդ կայսեր։ Կայսրը այս տեղեկության շնորհիվ կարողացավ գրավել Բուդապեշտը 1686 թ. և իբր վարձատրություն իր ծառայության, Ներսէս վարդապետին տվեց պարոնություն և կարգեց պալատի երեց կամ կապելլան, ապա Ս. Ստեփաննոս եկեղեցու կանոնիկոս։ Քրիստոնյա դարձրել և մկրտել է 12,000 թուրք գերի։ Մեռել է 1704 թ։— Ալպօյաճեան, Առաքելութիւն ի Հապէշ. 66 (ուր նշանակված են նաև աղբյուրները)։—Անշուշտ սա է որ հիշված է Սիսական 461 բ։*

— 230. Ներսէս *վրդ. Գալաթցի, աշակերտ Մատթէոս Սարըբի, հաջորդեց Գալուստ Կայծակին և վարեց Պոլսի պատրիարքական աթոռը՝ Աւետիքի աքսորի ժամանակ («1704 թ»).—Ազգապ. 2725։*

— 231. Ներսէս *Դ. Գանձակեցի, կաթողիկոս Աղվանից. ազգականն էր Երիցմանկանց Սիմոն Խասարաշէնցի կաթողիկոսի, որ հակաթոռն էր Գանձասարի։ Երբ մեռավ Սիմոնը, նրան հաջորդեց այս Ներսէսը (1706 թ), իբրև հակաթոռ Գանձասարի Եսայի կաթողիկոսի Հասան-Ջալալեանց։ Երկար կռիվներից հետո հաշտություն կայացաւ այն պայմանով, որ Եսայիի մահից հետո գահակալէ Ներսէսը, իսկ կաթողիկոսությունը ընդհանրապես մնա Եսայիի ազգականներին իբր ժառանգություն։ Երբ Եսային մեռաւ (1728 թ.), նրան հաջորդեց այս Ներսէսը, որ նույնպես մասնակցեց Ղարաբաղի ազատագրական շարժման։ 1739 թ. գնաց էջմիածին և Ղազար Ջահկեցի կաթողիկոսից ներում ստանալով իշխեց մինչև իր մահը՝ 1763 թ.—Աբր. կրետ. 64, 67, 73, 74. Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 34, 44, 51, 52, 111, 114, 116. Ազգապ. 2955. Ձեռ. Դաղեան, Բ. 20 ա, 26 ա, 46 ա (հիշված 1738, 1754 և 1763 թվերին). Լէօ, Հյկ. տպ. Բ. 297։ Ջամբռ 81—86. Արցախ 43 և 227 (յիշ. 1724 և 1742 թ). Ձեռ. Թաւր. 81 բ (յիշ. 1725 թ)։*

— 232. Ներսէս *Ե Աշտարակեցի, կաթողիկոս հայոց «1843*

—1857 *թ». ծնվել էր «1770 թ». եղել էր առաջնորդ Տփղիսի 1814 թ. հիմնեց Ներսիսեան դպրոցը. ռուս-պարսկական պատերազմի ժամանակ ազգու մասնակցություն ցույց տվեց՝ Ռուսաց հաղթության մեջ տեսնելով հայ ազգի փրկությունը, հորդոր կարդաց հայ ժողովրդին և ինքն էլ անձամբ հայ կամավորների գլուխն անցած կռվի դուրս եկավ Պարսից դեմ «1828 թ»։ Հաղթական պատերազմից հետո, երբ կազմվեց Հայկական նահանգը, ինքն էր որ միտք յղացավ դատարկ երկիրը լցնել ներգաղթի միջոցով։ Իր քարոզիչների շնորհիվ 40,000 հայ Պարսկաստանից և 90,000 հայ էլ Կարնո շրջանից Կովկաս գաղթեցին (1828—9 թ)։ Հալածվելով Պասկևիչ զորավարից՝ իբրև աքսորական առաջնորդ նշանակվեց Բեսարաբիո թեմի։ Ընտրվեց կաթողիկոս հայոց և էջմիածինը աշխատեց բարեկարգել. մինչև անգամ շաքարի և մետաքսի գործարան հիմնեց։ Ինքն է տնկել էջմիածնի անտառը և շինել Ներսիսեան լիճը։ Մեռավ 1857 թ. 86 տարեկան հասակում, թողնելով իր ետևից մեծ և ազգասեր հայ գործիչի համբավը։—Ազգապ. 3765—3978։*

— **233.** Ներսէս *Վարժապետեան, Պոլսի Խասգիւղ թաղից. պատրիարք Պոլսոյ, հաջորդեց Մկրտիչ Խրիմեանին 1874 թ. հիմնեց Պոլսի Կեդրոնական վարժարանը, որի երախտապարտ սաներից մեկն էլ տողերիս գրողն է. ընտրվեց կաթողիկոս էջմիածնի, բայց մահը վրա հասնելով խափանվեց. †1884 թ։—Ազգապ. 4322։*

— **234.** Ներսէս *Մեծոփեցի, ծայրագույն վարդապետ. հիշված է Մ. մաշտ. էջ 330 ա. հայտնի չէ թե ով է և ինչ ժամանակի մարդ է։*

*ՆԵՐՔՆԻՔ, *տր. անսովոր անուն, որի ձևը անստույգ, թվականն էլ անհայտ է։ Ըստ իս* Նէքնէք *անվան մի ուրիշ տարբերակն է։ Սրան ապացույց եմ համարում այն, որ* Նէքմատ *անունն էլ գրված է* Ներքեմատ *(տես* Մերկեռ № *2)։ Մի անգամ միայն ունինք հիշատակված՝*

— Ներքնիք, *որդի Վառուգի, իր Աւագպարոն որդու հետ մի այգի է նվիրել Գոշավանքին.—անթվական արձ. Ազգագր. հանդ. ժ. 22 (առաջին երկու անունների ընթերցումը կասկածելի)։*

*ՆԵՒԶՈՒՀՈՒՐ *(կամ* Նեվզուհուր*), իգ. <պրս. نو* nev*«նոր» + արաբ. ظهور* zuhūr *«երևան գալ, առաջ գալ, պատահել, ծագել» բառերից (ակնարկելով մանկան ծնունդը)։ Այսպիսի անուն չեմ տեսած, բայց մի անգամ հիշված կա* Նեվզուհուր *ոմն, որին ձոն-*

ված է Ֆենըլոնի «Յաղագս Դաստիարակութեան աղջկանց» գիրքը, թրգմ. Ա. Գալֆայեանի, Փարիզ 1856։

*ՆԵՒՐԻԿ, իգ. գործածական էր Պոլսում, անցյալ դարում։ Մէնէվիշեանը (Վիեննայի Մխիթարեան) այս անունը հանում էր Մինևեր < արաբ. منور Munevver անունից, որ նույնպես գործածական էր Պոլսում. իբրև թե Մի նախածանցը կրճատված և վերջում ավելացած իկ փաղաքշական մասնիկը։

*ՆԵՒՐՈՒԶ, ար. < պրս. نوروز naurūz, nevruz «նոր օր, ամանոր» բառից։ Հիշատակված է նախ 1653 թ. (Երեմ. չէլ. օրագր. 43) Նավռօզ ձևով. կա նաև Նարվուզ ձևով՝ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վիեննա. Ա. 777). անշուշտ գործածական էր Պոլսում, ըստ որում ունինք սրանից Նևրուզեան ազգանունը։

* ՆԵՔԱՄԱԴ, ար. < պրս. نیک nēk, nīk «բարի» + آمد āmad «եկավ» բառերից (իբր թե բարի եկավ, բարի գալուստ. հմմտ. Նեքնեք և Դրաստամատ անունները)։ Հիշատակված է ժԵ դարում։

— 1. Նեքամատ, որդի Նազարեթի և հորեղբայր տանուտեր Յովհաննէսի, որ Խլաթում գրել տվեց մի Աւետարան 1433 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 2. Նեքամատ, որդի Աւագ քահանայի և թոռ Մերչերի, նշանավոր ճարտարապետ. էր գործերից է հատկապես Ամիդի Ս. Թէոդորոս եկեղեցին, որ ավարտեց 1447 թ.—Հայապ. 574, Արրտ. 1898, 48 ա (տես և Մերկեր. № 2)։

— 3. Նեքամադ, որդի Աստուածատուրի և թոռ Մելքիսեթ երեցի, որ Աւան գյուղում օրինակեց Գանձարանը, 1453 թ.— Bodleian 134։

— 4. Նեքամատ, հիշված է 1389 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.— Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 760)։

*ՆԵՔՏԱՌ, իգ. գործածական էր Պոլսում, անցյալ դարում. գրական ձևը դրվում էր Նեքտառինէ. հմմտ. Նեքտառինէ կույս Աղեքսանդրացի նահատակուհի (†շուրջ 307 թ. (Յայսմ.=Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ջ. 306)։ Կա և Նեքտառիոս կամ Նեքտառիոս հայրապետ Հռովմայ։ Անշուշտ Նեքտառ անունն էլ պետք էր ենթադրել հուն. νέκταρ «աստուածըմպելիք, նեկտար» բառից. բայց Նեքտառինէ ըստ Աւգեր. Ջ. 314 միայն հայոց է հատուկ. հույն և լատին համապատասխան ձևն է Կատարինէ. որով Նեքտառինէ համարվում է վրիպակ գրչության արդյունք։

*ՆԷԳՕԼՍԱՆ, ար. անսովոր անուն. մի անգամ գտնում եմ

հիշատակված ԺԴ/ԺԵ դարում գրված անթվական մի ձեռագրում (Ձեռ. Լվով.=ՀԱ 1937, 131)։ Որովհետև ձեռագիրը Լվովից է, չեմ համարում Թրք. بولمق bulmaq «գտնել» բայից, այլ Խթր. بولمق bolmaq «լինել, դառնալ» բայից և մեկնում եմ < ne «ինչ»+ bolsan «լինես, դառնաս»։

*ՆԷՔՆԷՔ, ար. <պրս. نیک nîk, nēk «լավ, բարի» բառից կրկնությամբ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԴ դարում։

— Նէքնէք պարոն, որդի Վասակի, մայրն է Թամար. կինն է Սուրուխ. զավակներն են Աւագ պարոն, Շահապադին, Աղիզ-տիկին. Բերկրիում, Խաչեր քահանային գրել տվեց մի Աւետարան, որ նվիրեց Աղթամարի վանքին 1307 թ։—Ձեռ. Վասպ. 151—4։

*ՆԻԱԶ, իգ. <պրս. نیاز Niyāz անունից, որ բուն նշանակում է «աղաչանք»։ Հմմտ. Niyāz Թուրք՝ սպանող Jāma-ի (Բունդեհեշ), Niyāz բանաստեղծ Շիրազեցի (Justi, 229 բ), Նիյազի բէյ՝ Օսմանեան հեղափոխական գործիչներից (1908 թ). են։ Գտնում ենք հիշատակված 1570 ական թվերին (Սիսական 69), և մի անգամ էլ 1656 թ. (Տաշեան, Ցուց. 1039)։ Սրանից է՝

*ՆԻԱԶԲԷԿ, ար. հիշատակված 1575 թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 809, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 138)։

*ՆԻԳԱՐ, ար. և իգ. <պրս. نگار nigār «նկար, պատկեր» բառից. Հմմտ. Nigārī գրական անուն Միրզա Մոհամմեդ բանաստեղծի (Justi 229 բ)։ Այժմ մեր մեջ գործածական է իբր իգական անուն։

— 1. Նիգար, թվի թե կինն է հիւսն Կարապետի և քեռակին խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Ցովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 439։

— 2. Նիգար, կին Ջանիբէկի և մայր Կիրակոս (№ 141) քահանայի Ջօշկանց, որ օրինակեց Ճառընտիրը Բաղէշում, 1467 թ.—Նօտարք 230։ (Ձեռ. Վասպ. 115—6 նույնը դնում է 1487 թ)։

— 3. Նիգար, կին Շապանի և մայր Եղիա երեցի, որ օրինակեց Աւետարանը՝ Բաջթաղուց Խողանավար գյուղում, 1490 թ.—Ձեռ. Սևան. 5 բ։

— 4. Նիգար, եղբայր Խուդադարի, որ ստացավ մի Աւետարան, Խիզան 1497 թ.—Տաշեան, Ցուց. 285։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են՝ Նիգար, իգ. 1603 թ. (Ձեռ. Սևան. 7 ա), 1644 թ. (Ձեռ. Վասպ. 276), 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 ա) են։

*ՆԻԳԱՐԽԱԹՈՒՆ, իգ. <նախորդից. հիշատակված է անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Վասպ. 416)։

*ՆԻԳԱՐՄԵԼԻՔ, իգ. <պրս. نگار nigār «պատկեր»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից. ամբողջն է nigār-i-melek «հրեշտակի պատկեր»։ Մի անգամ հիշատակված է անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Վասպ. 144)։

*ՆԻԳԱՐՓԱՇԱ, իգ. <նույն Նիգար անունից+թրք. paša։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Նիգարփաշա, մորաքույր Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ. կղզում գրել տվեց մի Ցայսմաւուրք 1457 թ.—Ջեռ. Թաւր. 103 բ։

— Ավելի ուշ հիշատակված են Նիգարփաշա 1523 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 717), 1618 թ. (անդ 594)։

*ՆԻԿԱՆՈՐԱ, ար. <հուն. Νικάνωρ անունից, որ բուն նշանակում է «այրահաղթ»։ Այս անունով հայտնի է Ցայսմաւուրքում Նիկանովր նախասարկավագը։ Մի անգամ հիշատակված է մեր մեջ ԺԱ դարում և մի անգամ էլ ուշ ժամանակ հիշատակված է Պոլսում (տես Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 306 և 331)։

— Նիկանորա, քահանա էր Թոնդրակեցոց աղանդից. մկրտվեց իր ընկեր Պողիկարպոսի հետ և այս անունն ստացավ (ԺԱ դար).—Մագ. Թղ. կէ։

*ՆԻԿԵՏԱՍ, ար. <հուն. Νικήτας կամ Νικήτης անունից, որ բուն նշանակում է «հաղթական»։ Մեր մեջ չի գործածված. այս անունով ունինք՝

— 1. Նիկիտաս, հորեղբորորդի Հերակլ Ա կայսեր հռոմաց. իր կյանքը տես Հերակլ № 1 (610 թ.)։

— 2. Նիկետ, որդի Արտավազդի, որ Կոստանդին Կոպրոնիմոս կայսեր ձեռքից խլեց Բյուզանդական գահը 741 թ. հոր ձեռքով նշանակվեց սպարապետ իր բանակի. պատերազմեց Կոպրոնիմոսի դեմ, բայց հաղթվելով Նիկոմիդիայի մոտ, կայսեր հրամանով կախաղան բարձրացվեց 742 թ։—Չամչ. Բ. 405։

— 3. Նիկետաս, հայրն է Վարդ Փոկաս պատրիկի և սրա քրոջ՝ Մարիամի։ Չմշկիկը նախ քան կայսր դառնալը ամուսնացել էր այս Մարիամի հետ, որ մի որդի ընծայեց նրան՝ Յովհաննէս անունով, բայց ինքը ծաղիկ հասակում մեռնելով՝ դահակից չեղավ իր ամուսնուն, որ կայսր դարձավ 969 թ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 131։

* **ՆԻԿԵՓՈՐ**, *ար.* <*հուն.* Νικηφόρος (>*լտ.* Nicephorus, *ֆրանս.* Nicephore) *անունից, որ բուն նշանակում է «հաղթություն բերող, հաղթական» (համազորն է լտ.* Victor, *պրս.* Պերոզ)։ *Այս անունով հայտնի են Նիկեփոր Ա կայսր հունաց 802—811, Նիկեփոր Բ կայսր հունաց 963—969, Նիկեփոր Գ կայսր հունաց 1078—1081 թ., Ս. Նիկեփոր պատրիարք Կոստանդնուպոլսոյ 806—815 թ։*

— 1. Նիկեփոր *պատրիկ, հայր Փիլիպպիկոս Վարդան հայազգի կայսեր հունաց «711 թ».—Ցուցիկք, Բ. 336։*

— 2. Նիկեփոր, *որդի Արտաւազդ կայսեր և եղբայր Նիկետի, որ տես վերը։ Երևի կայսերակից էր իր հոր, որովհետև միասին դրամ են կտրել։ Հաղթվեց Կոստանդին Կոպրոնիմոս կայսրից և նրա հրամանով կուրացվեց 743 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Ա. 398։*

— 3. Նիկեփորոս *Բ Փոկաս, կայսր հունաց 963—969 թ. Վարդ պատրիկի որդին էր. եղավ զորավար հունական բանակի և այնպիսի քաջություններ գործեց Արաբների դեմ պատերազմներում, որ ժողովուրդը բազմաթիվ երգեր հորինեց նրա մասին և կոչում էր նրան «աստղ առաւօտեան, ծագող արեգակ, պատուհաս Սարակինոսաց»։ Ռոմանոս Բ կայսեր կինը՝ Թէոփանէ կայսրուհին սիրահարվեց նրան, և թունավորելով իր ամուսնուն՝ ամուսնացավ Նիկեփորոսի հետ և նրան կայսր դարձրեց։ Բայց վեց տարի հետո, նրանից էլ ձանձրանալով՝ միացավ Յովհաննէս Զմշկիկ զորավարի հետ, Նիկեփորոսին սպանել տվեց և Զմշկիկին կայսր հռչակեց «969 թ»։—Այս Նիկեփորոսը գրել է ռազմագիտական մի գիրք, որի մեջ խոսում է հայ զինվորների հատկության մասին, գովելով նրանց իբրև քաջ հարձակող, բայց պարսավում է նրանց իբրև թույլ պահակ։—Ազգապ. 1086, 1126, Տէր Սահակեան, Հայ կայսերք Բ. 135—151, 157—168, 215—234։*

— 4. Նիկեփոր, *որդի Լեոն (№ 5) Փոկասի՝ եղբոր Նիկեփորոս Բ Փոկաս կայսեր։ Երբ Զմշկիկը սպանելով այս վերջինին՝ գահ բարձրացավ «969 թ», այս Նիկեփորին էլ (կայսեր եղբորորդուն) աքսորեց Իմբրոս կղզին 970 թ. բայց նա փախավ Թրակիա և իր հոր՝ Լեոնի հետ ապստամբություն կազմակերպեց Զմշկիկի դեմ։ Մատնվեց և կուրացմամբ պատժվեց։ Վարդ Փոկասը տարիներ հետո ավելի մեծ ապստամբություն կազմակերպեց Վասիլ Բ. կայսեր դեմ, բայց կայսրը Ռուսաց օգնությամբ հաղթեց նրան, Վարդը թունավորմամբ սպանվեց, իսկ կույր*

Նիկեփորը բանտարկվեց (989 թ.)։—Տէր Սահակեան, Հայ Կայսերք, Բ. 179—181, 264։

— 5. Նիկիփոր, որդի Վարդ Փոկասի (նշանավոր ապստամբի), թոռն Լևոն (№ 5)՝ Փոկասի, եղբորորդի Նիկեփորի (№ 4) և եղբորթոռ Նիկեփորոս Բ (№ 3) կայսեր։ Իր հոր մահվան վրեժը լուծելու համար, ապստամբեց Վասիլ Բ կայսեր դեմ, միանալով Սեբաստիոյ Սենեքերիմ թագավորի հետ, բայց դավաճան մի ընկերոջ ձեռքով դաշունահար սպանվեց 1022 թ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 267—9։

— 6. Նիկեփօռ, պարոն և տեր Վօռկիսոյ. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 112, Միսուան 471 (դնում է իշխան Վէտին և Վէռըսկու)։

— 7. Նիկեփօռ պարոն, եղբայր Կոստանդինի՝ տեառն Լամբռունոյ. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։—Սմբ. պատմ. 112։

*ՆԻԿՈԴԻՄՈՍ, ար. <հուն. Νικόδημος անունից, որ բուն նշանակում է «հաղթող գավառի կամ ժողովրդի»։ Այս անունով հայտնի է Փարիսեցի Նիկոդիմոսը, որ հավատաց Յիսուսին և նրա մարմինը իջեցրեց խաչից ու թաղեց (Յհ. ԺԹ. 39)։ Մեր մեջ ընդհանրապես գործածական չէ. հիշված կա այս անունով մի կաթոլիկ հայ 1781 թ. (Պէրպէրեան, Պատմ. հայոց, էջ 3)։

*ՆԻԿՈՂԱՅՈՍ, ար. <հուն. Νικόλαος (կրճատ Νικόλας) անունից, որ բուն նշանակում է «ժողովրդահաղթ»։ Այլ ձևերն են լտ. Nicolaus, գերմ. Nicolaus, Klas, ֆրանս. Nicolas, անգլ. Nicholas, Nick, ռուս. Николай, փղքշ. Коля են։ Այս անունով հայտնի են՝ Նիկողայոս Դամասկացի, պերիպատիկյան փիլիսոփայ՝ ժամանակակից Օգոստոս կայսեր, Նիկողայոս մեծ հայրապետ Միւռոնայ Լիկէացւոց, որին տոնում է Հայոց եկեղեցին (ունի գանձեր, տաղեր, աղոթքներ, շարական), Նիկողայոս անունով 5 պապ Հռովմայ (Նիկողայոս Ա սուրբ 858—867 թ., Նիկողայոս Բ 1059—1061 թ, Նիկողայոս Գ 1277—1280 թ, Նիկողայոս Դ 1288—1292 թ, Նիկողայոս Ե 1447—1455 թ). շատ տարածված է սլավ ժողովուրդների մեջ. այսպես Նիկոլա Ա կայսր Ռուսաց 1825—1855 թ, որ գրավեց Երևանը 1828 թ., Նիկոլա Բ կայսր Ռուսաց 1894—1917 թ։ Գործածվել է մեր մեջ սկսած ԺԳ դարից և մինչև այժմ էլ կենդանի է։ Բուն ձևն է Նիկողայոս, կրճատ Նիկողոս, Նիկօ, օտարաձև Նիկոլ, փղքշ. ռուս. Կոլյա։ Անսովոր

ձևեր են Նիւկուղայոս 1633 թ. (Ձեռ. Վասպ. 884), Նիւկիւղայոս 1739 թ. (անդ 1041), մյուսները տես տակը:

— 1. Նիկաւլ, հօրեղբայր Յովհաննէս գրչի, որ Դրազարկում օրինակեց Տաղարանը՝ 1241 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1066, Սիսուան 233 բ:

— 2. Նիկողոս Այասցի, որի տանը բնակվել են շատ Ջենովացի վաճառականներ, 1274 թ.— Սիսուան 394 բ:

— 3. Նիկաւլայոս, որդի Բասիլ քահանայի, քեռորդի Կոստանդին Բ. կաթուղիկոսի. ստացել է Պատարագամատոյցը (Զարբ. Թրգմ. 265). ունի մի գրչագիր Մաշտոց՝ ԺԳ դարի վերջից (Վենետ. № 1411):—Հացունի, Պատմ. տարազի, էջ 321:

— 4. Նիկողայոս քահանա, գրիչ. օրինակել է մի ժողովածու (ԺԳ դար).—Manus. bibl. nat. 70:

— 5. Նիկողայոս եպիսկոպոս Կիպրոսի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի, «1307 թ.»—Ազգապ. 1785:

— 6. Նիկաւլայոս քահանա Անարզաբայի Ս. Աստուածածին եկեղեցու. գրիչ. օրինակել է Պատարագամատոյցը՝ 1314 թ.— Manus. bibl. nat. էջ 41, REA 2, 283, Գաթրըճեան՝ Պատարագամատոյցք 83, Սիսուան 243 ա, Զարբ. Թրգմ. 265:

— 7. Նիկօղոս, միաբան Խորձեանք Խլպաշի վանից, 1336 թ. —Նաթանեան, Արտօսր Հայաստանի 152: (Հմմտ. № 22):

— 8. Նիկողայոս հայ, Թվլի դեսպան, իր ընկերներով այցելել է Ֆլամանների Պրիւժ քաղաքը 1369 թ.—Սիսուան 359 ծան.

— 9. Նիկեղոս (կամ Նիկողայոս) աբեղա, որդի Եփրեմ քահանայի. Վանում Յովհաննէս երեցին գրել տվեց Վարդանգիրքը (Եղիշէի Պատմ. Վարդանանց) և նվիրեց Խառաբաստայ վանքին 1381 թ.—Թորոս աղբ. Բ. 334:

— 10. Նիկողայոս, եղբայր Վարդան քահանայի, որ Երզընկայում գնեց մի Աւետարան՝ Խոսրովի որդի Վարդան քահանայից, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46:

— 11. Նիկողոս, մերձավոր Վարդան քահանայի (որդւոյ Խոսրովի), որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան և վաճառեց մի ուրիշ Վարդան քահանայի, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45:

— 12. Նիկողայոս, կնքավորն է եղբօր Հայրապետ կրօնավորի, որ գնեց և կազմել տվեց մի Աւետարան, 1431 թ.—Նոտարք 98:

— 13. Նիկողայոս, եղբայր Ոնոփրիոս քահանայի, հօրեղ-

բայր Մկրտիչ քահանայի Արճիշեցւոյ, որ գրել տվեց մի Ճաշոց 1441 թ.— Թորոս աղբ. Ա. 222։

— 14. Նիկողայոս, դատավոր Հայոց Լեհաստանի, 1444 թ.— REA 7, 71։

— 15. Նիկողայոս, Մեծոփայ վանքի վանահայր Թովմա պատմիչի աշակերտներից, հիշված 1445 թ.—Նոտարք 147։

— 16. Նիկողոս աբեղա, միաբան Մշոյ Ս. Յովհաննու՝ վանից. ուրիշ բազմաթիվ կրոնավորների հետ եկավ Էջմիածին, միաբանակից Կարապետ աբեղային ձեռնադրել տալու համար առաջնորդ Եղրդուտի, 1445 թ.—Նոտարք 142։

— 17. Նիկօլ պարոն, վկա Իլվովի Դաւիթ վաճառականի կտակի, 1450 թ.—Բժշկեան, Ճնպրհ. ի Լեհ. 115>Նոտարք 163։

— 18. Նիկողոս իշխան, մնում է իր տապանաքարը Զ= 1451 թ. Ամասիայի Ս. Նիկողայոս եկեղեցում (հաղորդեց Կարապետ Գաղազեան, Ամասիայից 1912 թ. ապրիլ 12)։—Զ տառից հետո մի բան պակաս է երևում։

— 19. Նիկողայոս քահանա, մեծ հայր տանուտեր Կիւրեղի, որ Նիկողայոս եպիսկոպոսին Ախքերմանում օրինակել տվեց Ճաշոցը, 1460 թ.—REA 10, 64։

— 20. Նիկողայոս, որդի տանուտեր Կիւրեղի, որ Ախքերմանում, Նիկողայոս եպիսկոպոսին օրինակել տվեց Ճաշոցը՝ 1460 թ.—REA 10, 64։

— 21. Նիկոլ պարոն, տանուտեր Լեհահայոց 1463 թ.—տես Բժշկեան, Ճնպրհ. ի Լեհ. 87> Նոտարք 210։

— 22. Նիկողոս կրոնավոր, միաբան Խորձեանի Խլպաշի վանքի 1464 թ.—Նոտարք 218, Թորոս աղբ. Բ. 341։ (Հմմտ. № 7)։

— 23. Նիկողայոս, որդի Վարդան երեց գրչի, որ Վանում օրինակեց Աւետարանը Շահփաշայի պատվերով. Նիկողայոսն էլ օգնում էր իր հոր՝ թուղթ կոկելով. հիշված է նաև 1452—3 թվին, երբ դեռ սարկավագ էր։ Այս հիշատակված է իբրև քահանա՝ գրիչ 1465 թ.—Ձեռ. Վասպ. 138, Նոտարք 169, 171, 172, 232։

— 24. Նիկողոս, հայր Մալհամի և ազգական Սելչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

— 25. Նիկողոս քահանա, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց ժողովածու քերթուածոց, 1469 թ.— Ձեռ. Վեննա. Բ. 1114։

— 26. Nicolo, մին այն չորս դեսպաններից, որ Ուզուն Հա-

սան՝ Պարսից թագավորը ուղարկեց Վենետիկ և Հռոմ (1469—70 թ), դաշնակցելու համար նրանց հետ՝ ընդդեմ Օսմանցոց (Յակոբեան, Ուղեգրութ. Ա. 156)։

— 27. Նիկ աւլ, որդի Փանիկի և հորեղբայր Խոջաշահի, որ Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.— Rapport Belgique 34։

— 28. Նիկողայոս եպիսկոպոս Ախքիրմանի, որդի Սիմէոն երեցի. Ախքիրմանում, տանուտեր Գիւրեղի համար օրինակեց մի ճաշոց՝ 1459—60 թվերին (REA 10, 61—62). գրել է նաև Երուսաղէմի սրբավայրերի մի ցուցակը 1483 թ.—Հայապ. 75։

— 29. Նիկողայոս եպիսկոպոս, Արծկէի վանքում գրեց Աւետարանը՝ տանուտեր Ղարիբշահի խնդրանոք, նրա որդի վաղամեռիկ Փաշիկի հիշատակին, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— 30. Նիկողայոս արքեպիսկոպոս, առաջնորդ Անկիւրիոյ, հաջորդելով Աբրահամ արքեպիսկոպոսին, իր օծումն ստացավ Էջմիածնում 1469թ. նորոգեց նույն քաղաքի Կարմիր վանքը «1486 թ.»—Ազգապ. 2187. Հացունի, Կարևոր խնդ. 271, Ալպօյաճեան՝ Պատմ. հայ կես. Ա. 583։—Այնուհետև ընտրվել է պատրիարք Կոստանդնուպոլսի և գահակալել է «1477—1489 թ» հաջորդելով Յովակիմ պատրիարքին։—Ձեռ. Հալէպի, Բ. 38 ա, Ամիրտ. անգ. 2. Ազգապ. 2187։

— 31. Նիկողայոս Սատամպոլցի, գրեց «Ողբ առման Կիպրոսի ի Թուրքաց» 1570 թ. հրատարակեց Ակինեան, Անահիտ 1931 թ. № 5—6, էջ 69—72, հանելով Վիեննայի Մխիթարեանց № 1002 ձեռագրից. նրանից էլ արտատպեց Բակ. «Հայ—Կիպրոս», էջ 262—4։

— 32. Նիկոլ Փրա, կաթոլիկ քահանա. ուղեկից եղավ Օգոստինոս Բաջեցուն դեպի Եւրոպա. մեռավ Ռուսաստանի Կալուգա քաղաքում 1609 թ.—Օգոստ. բաջ. 10, 11.—սեռ. Նիկոլին՝ անդ 8։

— 33. Նիկողայոս մանուկ Տիգրանակերտցի, 15 տարեկան գեղեցիկ պատանի էր. շուկայում երկու Թուրք՝ Մահմետ անունով սկսեցին լրբաբանել նրա հետ, պատանին սկսեց հայհոյել երկու Մահմետներին էլ. նրանք դիմեցին դատավորին և փաշային՝ չարախոսելով թե պատանին հայհոյել է Մահմետ մարգարեին. երկու սուտ վկա հաստատեցին նրանց խոսքը. դատավորը և փաշան առաջարկեցին պատանուն ուրանալ հավատքը, խոստանալով տալ նրան գեղեցիկ կին, հարստություն, իշխանություն և ամեն բարիք. մինչև իսկ փաշան խոստացավ որդեգրել

*նրան։ Բայց պատանին մերժեց ամեն ինչ և հաստատ մնաց իր հավատքին։ Տարին հրապարակը, ոտքերը և ձեռքերը կացինով ջարդեցին. մարմնի կոճղը արյունաթաթախ փոխադրեցին իր տունը, ուր երեք օր տանջվելուց հետո՝ մեռավ անմեղ նահատակ պատանին «1642 թ»։—Առաք. պատմ. խդ>Նոր վկ. 449—454։*

— 34. Նիկոլ *Թորոսովիչ, արքեպիսկոպոս Հայոց Լեհաստանի. կաշառքով եպիսկոպոս օծվեց Մելքիսեթ կաթողիկոսի ձեռքով Իլվով քաղաքում, հակառակ ժողովրդի կամքին «1626 թ»։ Ժողովուրդը խորշեց նրանից և եկեղեցուց դուրս վռնտեց։ Նիկոլը դիմեց ճիզվիթներին, ընդունեց կաթոլիկությունը և իր հոտն էլ կաթոլիկ դարձնելու խոստումով, նրանց միջոցով և զինվորական օգնությամբ բռնի խլեց եկեղեցիները, գրավեց դանձերն ու կալվածները, որ սկսավ ծախել և շռայլ ու անառակ կյանքով վատնել։ 24 տարի ամբողջ՝ ժողովուրդը առանց եկեղեցու և առանց ծխականության մնալուց հետո, ստիպվեց ընդունել Նիկոլին։ Եվ այսպես Նիկոլը կամաց կամաց հայ ժողովրդը կաթոլիկության առաջնորդեց, որով և ամբողջ Լեհաստանի հայությունը ստարացավ ու լեհ դարձավ։—Մեռել է «1681 թ»։—Սամ. անեց. շար. 178—9. Առաք. պատմ. գլ. ԻԸ, 174, 259, 314, 495, 499. Ալիշան՝ Կամենից 126—7, 138—143, 202—14. Ջամչ. Գ. 630—643։*

— 35. Նիկողայոս *Պրուսացի, մականունն* Այվազ. *աղքատ դարբին էր Պրուսայում, գեղեցիկ բարձրահասակ երիտասարդ լինելով, տաճիկները շարունակ հորդորում էին նրան մահմեդական դառնալ, խոստանալով ամեն տեսակ բարիք։ Միշտ էլ մերժում ստանալով՝ չարախոսեցին դատավորի մոտ, որ արդեն հավատքը ուրացել է և այժմ հետ է դառնում։ Նիկողայոսը հաստատուն մնաց իր կրոնին։ Վճռեցին գլխատել։ Հրապարակում երկու դահիճ փոխ առ փոխ սրի հարվածներով չէին կարողանում գլխատել նրան. դանակով գառան նման մորթեցին անմեղ նահատակին 1694 թ.—Նոր վկ. 531—538, Ազգապ. 2746։*

— 36. Նիկողայոս *Սպարկերտցի, կաթողիկոս Աղթամարի «1736—1751 թ». հաջորդեց Բաղդասարին. Սպարկերտի Լուսր գյուղից էր, Սևոնց Գրիգորի տնից, իմաստուն, հեզոր և կրոնագետ մարդ էր։ Ուզեց ընդարձակել Աղթամարի թեմը և կարողացավ Սուլթանից հրաման բերել թե Վան, Բաղեշ, Մուշ և սրանց շրջականները պատկանում են Աղթամարին։ Այս հրամանագիրն ստանալուց հետո, բռնում է Էջմիածնի նվիրակ Ցովհաննես վարդապետին, նրա հավաքած դրամները գրավում և իրեն*

էլ վանում։ Էջմիածնի Ղազար կաթողիկոսը բողոքում է Պոլիս, նոր հրաման հանում Սուլթանից՝ թե այդ վայրերը պատկանում են Էջմիածնին, կողոպտված գումարը յետ է առնում և Նիկողայոս կաթողիկոսին նզովում (1746)։ Աղթամարցիք նեղը մնացած, նյութական ծանր կացության մեջ ընկած, հանրագրով դիմում են Ղազարին և Նիկողայոսին էլ Էջմիածին ուղարկելով, խոստանում են հպատակվել Էջմիածնին։ Ղազարը բանադրանքը վերացնում է և պայման է դնում, որ այնուհետև Աղթամարի կաթողիկոսները Էջմիածնում օծվին (Ակինեան, Գաւազանագիրք 149—151 և Հաւաք. 64)։ Հաւաքարանը, էջ 47—55 տալիս է նաև Աղթամարի հայրերի քանակը, որ Նիկողայոս կաթողիկոսը ժողովով որոշել է 1742 թվին։—Հաւաք. 3, 83, Ջամբռ 95, Ազգապ. 2954—5։

— 37. Նիկողայոս գրիչ, տաղասաց ԺԸ դարում.—Տաշեան, Ցուց. 866։

— 38. Նիկողայոս Կիւլէսէրեան, մոր կողմից Աջպահեան, առաջնորդ Բերիոյ (Հալէպ)։ ինքնագլուխ օծվեց կաթողիկոս Սսոյ, իբրև հաջորդ Կիրակոսի «1866 թ», կոչվելով Կիրակոս Գ. Աջպահեան (№ 166)։ Ազգային վարչությունը բռնի բերել տվեց նրան Պոլիս և ուղարկեց Արմաշի վանքը «1871 թ»։— Ազգապ. 4129, 4269։

*ՆԻԿՈՆ, ար. <հուն. Νίκων անունից, որ բուն նշանակում է «հաղթություն»։ Մեր մեջ չի գործածված այս անունը. կա միայն՝

— 1. Նիկոն Պոնտացի, մականունն է մետանոյիտես «ապաշխարեցէ՛ք» (այս բառը այնքան էր կրկնում իր քարոզների մեջ, որ իրեն մականուն դարձրին)։ Համարվում է հայ. ծնվել է Պոնտոսում, հայ նախարարական տոհմից. 12 տարի սովորել է Պափլագոնիոյ Ոսկեքար վանքում. հետո գնացել է Հայաստան և երկար տարիներ քարոզելով՝ շատ հայեր հունադավան է դարձրել։ Երբ Նիկեփոր Փոկաս հայազգի զորավարը Կրետէ կղզին գրավեց (960 թ), Նիկոնը իսկույն գնաց այնտեղ, 20 տարի քարոզեց և ամբողջ կղզին, որ մահմեդական էր, քրիստոնյա դարձրեց։ Քարոզել է նաև Յունաստանում և մեռել է Պելոպոնէսում 998 թ։ Ընդունված է իբրև սուրբ՝ հույն և լատին եկեղեցիներում. տոնվում է նոյ. 26-ին։ Թողել է հունարեն լեզվով երկու գիրք՝ հայոց կրոնի դեմ. «Ընդդէմ ամբարիշտ կրօնից Հայոց» և «Կարգաւորութիւն վասն դարձին Հայոց»։—Ջամչ. Բ. 1024—7 (հա-

*մարում է խարդախանք), Ազգագ. 1186. Տէր Սահակեան՝ Հայ կայսերք, Բ. 113—4։*

*ՆԻԿՈՐՈՁՈՆ, *ար. <անշուշտ հունարէն է, բայց մայր ձեն ինձ անհայտ է։ Մի անգամ հիշատակված է՝*

Նիկաւրաւզաւն, *որդի Թռանկի, հիշված է Տրապիզոնի Ամենափրկիչ վանքի անթվական մի արձանագրության մեջ։— Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 87։*

*ՆԻՆԱ, *իգ. <ֆրանս.* Nina *անունից. նորամուտ անուն։*

*ՆԻՈՓՈՐԱ, *իգ. <հուն. ենթադրյալ* *Νεόφορος, Νεόφορα *ձևից, որ բուն նշանակում է «նորաբեր»։ Այս անունով ունինք միայն՝*

— Նիոփորա *(վրաց.* Նիափորա, var. Միափորա) *Դունեցի, պառավ հայուհի, ապրում էր Երուսաղէմում. նրա մոտ երկու տարի ծառայեց* Նունէ *առաքելուհին, Վրաց, սովորեց մի քիչ հայերեն և Հայաստանի ու Վրաստանի մասին տեղեկություն ստացավ.— սեռ.* Նիոփորայ՝ *Պատմ. վր, ը. Վրաց ադր. Ա. 22, 169, 172։*

**ՆԻԻԿԱՆԼԱՅ,** *անստույգ ընթերցվածով մի անուն, 1492 թվից մի գերեզմանաքարի վրա (Բարխուտ. Աղուանից երկ. Ա. 202—3)։*

†**ՆՇԱՆ,** *ար. <հյ.* Նշան *բառից. ակնարկությամբ խաչի նշանի, ուր զանազան տեսակներն են Վարագայ Ս. Նշան, Սեբաստիոյ Ս. Նշան, Հացունեաց Ս. Նշան ևն։ Գործածական է այժմ, որից նաև* Նշանեան *ազգանունը։* Նշան *անվան հնագույն վկայությունններն են՝ Պալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցու մի արձանագրությունը 1730 թ. (Բանասէր 1899, էջ 127) և 1772 թ. (Ազգ. մատ. ՀԸ, էջ 349)։*

***ՆՇԱՆԳԱՅ,** *իգ?<պրս.* نشانگاه nišāngah *«նետի նպատակ». մի անգամ գտնում եմ հիշատակված Դարբանդում, Պողոս-Բուլաղի գերեզմանատան մեջ, մի տապանի վրա, 1321 թ։— Բարխուտ. Աղվ. երկիր, Ա. էջ 109—110. (Կասկածելի)։*

†**ՆՇԱՆՈՒՀԻ,** *իգ. <հյ.* Նշան *անվան իգականից կազմված կեղծ, նորահնար և անսովոր անուն։*

**ՆՇԱԻՈՐ,** *իգ. երևի սխալ է գրված, փոխանակ* Շնաւոր= Շնորհաւոր. *մի անգամ գտնում եմ հիշատակված 1557 թ. (Ջեռ. Սանաս. 13 բ)։*

**ՆՇՆԱՅ,** *իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված ունինք՝*

— Նշնայ, կին Շաբի, իշխանի Գողթան գավառի (Ա դար)։— Օրբ. ե։

ՆՇՈԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Նշու խաթուն, դուստր Թալայի. մնում է իր տապանաքարը Մարմաշէնում 1342 թվից.—Շիրակ 149 (անվանս երկրորդ տառը կասկածելի)։

*ՆՈՅ, ար. <եբր. נח Noxa անվան հուն. Nῶε տառադարձությունից. մյուսներն ունին ասոր. Nōx, լտ. Noah, ֆրանս. Noe, արաբ. نوح Nūḥ են ձևերով (Հիւբշ. 335)։ Այս անունը հները մեկնում էին եբր. «հանգիստ». այսպես՝ «եբրայեցւոց լեզուաւն կոչի Նոյ, իսկ հայովս հանգիստ կամ արդար» (Փիլ. իմաստ. 39). «Նոյ՝ հանգիստ» (Տաթև. հարց. 299)։ Նոր քննիչները համեմատում են հին բաբել. Nuḫija անվան հետ (Gesenius 495): Ewald, Gesch. d. Volks Isr. I. 360 դնում է կորած nax արմատից, իբր «նոր, նորոգիչ»։ Այս անունով հայտնի է Ս. Գրքում Նոյ նահապետը, որ ազատվել է իր տապանով մեծ ջրհեղեղից։—Հայերենում Նոյ բառը ոմանք հնչում են no, իսկ ընդհանրապես noy (ինչպես խոյ)։ Անսովոր անուն է. այժմ անգործածական։

— 1. Նոյ միայնակեաց Սիոնի լեռան վրա, Վայոց ձորում. տեսիլքով գուշակեց Ստեփաննոս Սիւնեցու եղերական մահը և նրան իբրև պատիժ՝ Վայոց ձորի գլխին գալիք պատուհասը «735 թ»։—Կղկնտ. Գ. ժզ. Հիր. 41. Յայսմ. յուլ. 24. Այրիվ. 21 աբ.— Նու՝ Օրբ. լ.—սեռ. Նուի՝ Օրբ. լ։

— Ավելի ուշ հիշատակված են Նոյ 1654 թ. (Ջեռ. Վասպ. 290), Նոյ երեց 1666 թ. (Rapport Arm. էջ 13), Նոյ երեց 1695 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 131)։

*ՆՈՅԵՄԶԱՐ, իգ. համարվում է Նոյ նահապետի կնոջ անունը։ Նոյի կինը իր ժամանակի բոլոր աղջիկների մեջ միակ մաքուր կույսն էր՝ ըստ Անկ. գիրք հին կտ. 322 (գրված է Նոյեմզառա). մեռավ ու թաղվեց Հայաստանում՝ Մարանդ կոչված տեղը (այժմ Պարսկաստանի Ատրպատականում, Թաւրիզ տանող ճանապարհի վրա)։ Այս պատճառով էլ այդ տեղը ստուգաբանում էին «մայր անդ»! (Զամչ. Ա. 57)։ Տես նաև Սամ. անեց. 6. Մխ. անեց. բ. Յայսմ. մայ. 17 (բցռ. ի Նոյեմզարայ). իսկ Տաթև. հարց. 299 Նոյի կնոջը կոչում է Զարա: Ըստ Պարսից՝ Նոյի կինը կոչվում է واهلة Vāhala. տես ԳԴ, էջ 521 բ. «Վահէլէ. է անուն կնոջ նահապետին Նոյի, զոր մեք կոչեմք Նոյեմզար»։ Այս անու-

նը այժմ գործածական է մեր մէջ (Պոլսում)․ հնագոյն հիշատակութիւնը գտնում եմ 1694 թ․ (Այրարատ 236)․ հիշված է նաև Ներքին Ագուլիսի անթվական մի արձանագրության մեջ Նոյեմզար կոյս (Ազգագր․ հանդ․ ԺԱ․ 313)։ Գգվական կամ կրճատ ձևով ասում ենք Նեմզար, Նեմզուր: Տես և Նոյեմի:

*ՆՈՑԵՄԻ, իգ․ <եբր․ נָעֳמִי Nāʿāmī անվան հունական տառադարձություններից։ Հունարենի արդի ձևն է Νωεμίν, բայց եղել են նաև Νοομμει, Νωεμειν և Νοομι ձևերը, որոնց հետ կարող էր լինել նաև Νοεμι, ինչպես պահանջում է հայերենը։ Անգլիական պաշտոնական ձևն է Naomi, ինչպես ունի Ս․ Գրքի New York 1894 թվի հրատարակությունը։ Հայերենում ընդունված ձևն է Նոյեմի (իսկ բողոքականների աշխ․ հրատ․ Պոլիս 1906 ունի Նոեմի և գրբ․ հրատ․ Պոլիս 1895 Նոոմի)։ Եբրայական բառը ծագում է נעם nʿm «բարի, քաղցր, հաճելի» արմատից և նշանակում է «քաղցրութիւն իմ» (Gesenius 509—510): Դրա համար էլ Հռութ․ Ա․ 20 ասում է․ «Մի՛ կոչէք զիս Նոոմին, այլ կոչեցէք զիս Դառնացեալ»։ Նոյեմի անունը անցյալ դարում գործածական էր Պոլսում․ կրճատ ձևն էր Նոյեմ․ այս ձևերը կենդանի են այժմ էլ։ Նոյի կնոջ անունն է ըստ Վարդանի և այլոց (Սարգիսեան, Ուս․ հին կտ․ 446 ծան․)․ ըստ այսմ շփոթված է Նոյեմզար անվան հետ, որ բոլորովին տարբեր է։ Գտնում եմ Նոյամի ձևով 1658 թ․ (Ձեռ․ Նոր-Բայազ․ 5 բ)։

*ՆՈՑԻԿ, ար․ <Նոյ անվան գգվականն է․ մի անգամ գտնում եմ հիշատակված 1727 թ․ (Ձեռ․ Հալէպի, Բ․ 120 բ)։ Նույն անձի պապն էլ կոչվում է Նոյ (քահանա)։

*ՆՈՑՆ, ար․ ասորական անուն է․ հմմտ․ Նունոս եպիսկոպոս Կոկիսոնի (Միխ․ աս․ էջ 238), Նոյնոս եպիսկոպոս Սելևկիոյ՝ Զ դար (Միխ․ աս․ 237), Նունոս եպիսկոպոս Անտիոքի (Ցայսմ․ յունիս 9)․ սրանց հետ նույն են եբր․ נון Nūn կամ Nōn, բաբել․ Nūnā, Nūniya անունները, որոնց բուն նշանակությունն է «ձուկ»․ հմմտ․ եբր․ נון nūn, ասուր․ nūnu, ասոր․ نونا nūnā, արաբ․ نون nūn «ձուկ», ասոր․ نونسا nūnāsā «ձկնիկ» (Gesenius 492)։ Եբր․ անունը տառադարձված է հուն․ Ναυή> հյ․ Նաւէ, որ Մովսէսի հաջորդ Ցեսուի հայրն է (Ցեսու Նաւեայ)․ բայց և Νούν> հյ․ Նուն․ այսպես՝ Նուն, որդի Եղիսամայ, Եփրեմի ցեղից (Ա․ Մնաց․ Է, 27)։ Տես նաև Նունէ:

— 1․ Նոյն իշխան Միւս Ծոփաց․ ուղեկից եղավ Ներսէս Մեծին, կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ»․—Բուզ․ Դ․ գ։

— 2. Նուն եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Անանիայի (Ժ դար).—Օրբ. ժԹ, հա։

— 3. Նոյն, թերևս անունն է մի նշանավոր կրոնավորի, որ հայ արհղաներից հալածվելով մեռավ (Ժ դար). «Զհրեշտակաձևման այրն զՏէր՝ Նոյն անհանգիստ հալածանօք վախճանեցուցին» Փարպ. Թղ. էջ 202։ Ձեռագիրն ունի զտէր Նոյն։ (Վերջակետով)՝ հրատարակիչները համուկ անուն են դնում Տէր. վերջակետի պատճառով ավելի հավանական է ենթադրել ըստ † Աբրահամ Զամինեանի «զտէր Նոյն» (տես Արրտ. 1911, 229)։

† ՆՈՐԱԶՆ, ար. <հյ. նոր և ազն բառերից. ինչպես ունինք Հայկազն։ Մի անգամ գտնում եմ հիշված Յս. որդի, տպ. 1643, էջ 395, ստացողի հիշատակարանում. «ծնօղաց իմոց. նորազին (զ տառը ստուգել եմ) և շահփաշին»։ (Այժմ պատկանում է Երեվանի Կուլտ. պատմ. Ինստիտուտին, № 213)։ Նույն տեղը հիշված են նաև Վարդեր, Հայպատ, Վարդոսկի անունները։

† ՆՈՐԱՄԱՅՐ, իգ. <հյ. նոր և մայր բառերից. նորակերտ անուն. լսել եմ Պարսկաստանում։

† ՆՈՐԱՄԻՐ, ար. <հյ. նոր+արաբ. امیر amīr «իշխան» բառերից, ինչպես կան Նորշահ, Նորպարոն անունները։ Մի անգամ ունինք՝

— Նորամիր, հայր Յովհաննէսի, որ գնեց և ազատեց գերի ընկած մի Աւետարան 1433 Թ.—Ձեռ. Վասպ. 364։

† ՆՈՐԱՅՐ, ար. <հյ. նոր+այր «մարդ» բառերից, իբր թրգմ. հուն. Νέανδρος անվան։ Հնում անսովոր էր. բայց իբր անձնանվան օրինակ հիշված է Թր. քեր. 16, Խոր. քեր. 172, Սիւն. քեր. 205։ Այժմ սովորական գործածություն ունի։

— Նորայր, նահապետ Հայկազանց, հաջորդեց Շաւարշին, Ն. Բ. 1326 Թ. (ըստ Զամչ.).—Խոր. Ա. ժԹ. Կղկնտ. Ա. ժե. Շիր. քրոն. 31 (Նորայն). Մագ. Թղ. ժԹ (վասն զի նոր այրութիւն ցուցանէր). Սամ. անեց. 45. Մխ. անեց. գ. Վրդ. է. Մխ. այրիվ. 18,50. Մին. համդ. 9.—(Յհ. կԹղ. բ. դնում է հաջորդ Առնակի. այսպես է նաև Վրդ.).—Նուարար՝ Վրաց. աղբ. Ա. 74։

† ՆՈՐԱՊԵՏ, ար. <հյ. նոր+պետ բառերից, ինչպես կա օտար բառով Նորամիր։ Մի անգամ հիշատակված է՝

— Նորապետ ոՃ, նախ քան 1420 թիվը գրված մի ձեռագրում (Տաշեան, Ցուց. 666)։

† ՆՈՐԱՏՈՒՆԿ, ար. <հյ. նոր և տունկ բառերից, իբր թրգմ. հուն. Νεόφυτος անվան. հմմտ. «Վկայաբանութիւն սրբոյն Նեո-

փիտոսի որ թարգմանի ի հայ լեզու՝ Նորատունկ» (Ձեռ. Վենետ. Բ. 129)։ Այս ձևով հիշված է 1589 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167), 1621 թ. (Ձեռ. Վասպ. 860), 1659 թ. (Սմբատեանց, Գեղարք. 406). կրճատ ձևով՝ Նորտունկ, Նորդունկ 1628 և 1664 թ. (Տաշեան, Ցուց. 517, 922), Նորտուկ՝ որ հիշված է 1477 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 220)։ Սրանից է Նորատունկեան ազգանունը։ Անվանս հնագույն հիշատակությունն է՝

— Նորտունկ (առանց ա ձայնավորի), պարոն), որդի Կիրակոսի. գնի միջնորդ եղավ տանուտեր Էգիլշահի և Ցովհաննէս դեչի միջև, Արծկէ 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

† ՆՈՐԱՐԵԻ, ար. <հյ. նոր+արև բառերից. հնագույն հիշատակությունը ԺԴ դարից. սրանից է Նորարևեան ազգանունը։

— 1. Նորարև ոմն, հիշված է 1343 թ.—Տաշեան, Ցուց. էջ 489։

— 2. Նորարև ոմն հիշված է նաև ԺԷ դարի կեսին՝ Դրնզ. էջ 487։

† ՆՈՐԱԽԱԳ, ար. <հյ. նոր և աւագ բառերից. համազորն է Նորապետ։ Հիշված է իբր գրիչ Տաշեան, Ցուց. էջ 1136 գ ցանկում, բայց չկա նշանակյալ 558 էջում, ինչպես նաև իգ—լ ընդհանուր աղյուսակում։

† ՆՈՐԷՍ, ար. <հյ. նոր բառից՝ ինչ որ -էս մասնիկով. հիշատակված է 1652 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 740)։

† ՆՈՐԻ, ար. <հյ. նոր բառից. երևի կրճատված է Նորիկ ձևից. հիշատակված է 1710 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 329 բ)։

† ՆՈՐԻԿ, ար. <հյ. նոր բառից՝ -իկ փաղաքշական մասնիկով։ Հնագույն հիշատակությունն է՝

— 1. Նորիկ Գանձակեցի, գնեց մի Աւետարան՝ Շահանշահի որդի Խութլուշահից՝ իր որդի Ցովհաննէսի համար, որ պատրաստվում էր քահանայության, 1350 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 388)։

— Ավելի ուշ են Նորիկ 1746 թ. (Ոսկեան՝ Եղիա Մուշեղեան, էջ 5), Նորիկ՝ 1488 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 492)։

† ՆՈՐԻՆ, ար. անշուշտ հյ. նոր բառից՝ -ին մասնիկով ? հիշատակված է մի անգամ, անթվական մի հիշատակարանում (Bodleian 201)։

† ՆՈՐԽԱԹՈՒՆ, *իգ. <հյ.* Նոր+խաթուն *բառերից, ինչպես կա* Նորտիկին։ *Հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում։*

— 1. Նորխաթուն, *դուստր Դանիէլի և քույր Մարգարէ գրչի, որ Բերդձոր գյուղում օրինակել է Հին կտակարանը, 1337 թ.—Տաշեան, Ցուց. 696 ա։*

— 2. Նորխաթուն, *կին Գրիգոր քահանայի և մայր Մարգարէ քահանայի, որ Բալուի Նեխրի գյուղում օրինակեց Ավետարանը՝ 1475 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 624։*

— *Ավելի ուշ հիշատակված ունինք* Նորխաթուն *1695 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 42 բ):*

† ՆՈՐՀԱՏ, *ար. <հյ.* Նոր+հատ *(հատիկ) բառերից. գործածվել է ԺԴ դարից սկսած. սրանից է* Նորհատեան *(շրջված* Նահըրտաեան*) ազգանունը։*

— 1. Նորհատ, *որդի Մարտիրոսի. հիշված է 1420 թվից առաջ գրված մի ձեռագրում.—Տաշեան, Ցուց. 666։*

— 2. Նորհատ *քահանա, նորոգեց Ժ դարում գրված մի Ավետարանի կազմը. թվականն անհայտ.—Ձեռ. Սանաս. 9 ա։*

— 3. Նորհատ, *հիշված է Գոհարի և Տիկնացի հետ իբրև նվիրատու Արջոյառիճի վանքին.—Անթվական Արձ. Շիրակ 123։*

— 4. Նորհատ *հիշված է նաև 1659 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 546։*

† ՆՈՐՄԱՆՈՒԿ, *ար. <հյ.* Նոր+մանուկ *բառերից. մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում և մի անգամ էլ կըրճատ* Նորման *ձևով ԺԷ դարում։*

— 1. Նորմանուկ, *որդի Յովանէսի. Տիվրիկի Վաւարա գյուղում Ստեփանոս հայրապետին գրել տվեց մի Ավետարան, որ նվիրեց Ավագվանքին, 1469 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 751=Թորոս աղբ. Բ. 363։*

— 2. Նորման, *հիշված է 1605 թվին.—Դրնդ. 79։*

† ՆՈՐՇԱՀ, *ար. <հյ.* Նոր+*պրս.* شاه šāh *«թագավոր» բառերից. հմմտ.* Նորամիր, Նորպարոն. *հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում։*

— 1. Նորշահ, *ազգական Թաւուն միայնակյացի, որ գրել տվեց մի Ավետարան, 1330 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 770։*

— 2. Նորշահ, *որդի Իսրայէլ քահանայի, որ Մոկաց Փասայ վանքում օրինակեց Ավետարանը 1455 թ.—Նօտարք 179։*

— *Ունինք նաև հիշված* Նորշահ *1609 թ.* (Manus. bibl. nat. *34), և անթվական՝ Լազարեան Ճեմարանի Ավետարանում, էջ 110 բ և Ձեռ. Վասպ. 186։*

ՆՈՐՈԳԷՍ, ար. ծագումն ինձ անհայտ. արդյոք հյ. նոր կամ նորոգ բառից է։ Հիշատակված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Նորոգէս, որդի Յովհաննէս քահանայի, որ Մխնեաց Բարաղնիս վանքում գրել տվեց մի Աւետարան 1280 թ.—Ձեռ. Վասպ. 104։

— 2. Նորոգէս միայնակյաց, Մուշում, Թորոս գրչին գրել տվեց Նոր-Կտակարանը՝ 1284 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 810։

— 3. Նորոգէ (առանց ս վերջածանցի) քահանա, գրիչ կամ ստացող Աւետարանի, Ատանայի Բաղնեկունք գյուղում, 1292 թ.—Թորոս աղբ. Բ. 436։

— 4. Նորոգէս (սեռ. Նորոգիսի), ստացող. իր եղբորորդի Անանիային գրել տվեց մի ժողովածու, Եկեղեաց գավառի Ս. Կիրակոս անապատում, 1364 թ.—Ձեռ. Վիեն. 17 բ։

— 5. Նորոգէս, հիշված է առանց թվականի՝ Ձեռ. Վենետ. Բ. 36։

† ՆՈՐՈՒԿ, ար. < հյ. նոր բառից,-ուկ փաղաքշական մասնիկով. համմ. Նորիկ։ Հիշատակված է մի անգամ 1824 թ. տես Իգնատ. դկ. 500 (տպագրության հիշատակարանում)։

* ՆՈՐՈՒԶ, ար. < պրս. نوروز Novrūz անվան մի ուրիշ գավառական ձևն է. ավելին տես վերը՝ Նաւռուզ։ Այս ձևի տակ հիշատակված է մի անգամ 1463 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 133)։

† ՆՈՐՊԱՐՈՆ, ար. < հյ. նոր և պարոն ձևերից. համմ. Նորաւագ, Նորշահ անունները։ Սրա իգականն է Նորխաթուն։ Հիշատակված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Նորպարոն, որդի Գրիգորի և եղբայր կոչկակար Մարտիրոսի, որ Աշոտաց երկրի Անկիւնաց վանքում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588, Արարատ 52։

— Ավելի ուշ հիշատակված են Նորպարոն 1564 թ. (Տաշեան, Ցուց. 848) և 1609 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 473)։

ՆՈՐՎԱ (սեռական հոլով է. սեռն ու ծագումը անհայտ). հիշատակված է մի անգամ Ներքին Ագուլիսի 1478 թվի մի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. ԺԱ, 313)։

† ՆՈՐՎԱՐԴ, ար. < հյ. նոր և վարդ բառերից. գեղեցիկ անուն, որ հիշատակված է ԺԸ դարում (Ձեռ. Աբգ. յովհ. 164)։

† ՆՈՐՏԻԿԻՆ, իգ. < հյ. նոր և տիկին բառերից, հոմանիշն է Նորխաթուն. հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Նորտիկին, կին Խաչատուրի, «ասպնջականի» Յոհան

վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, 4 ա։

— 2. Նորտիկին, ժերձավոր Ստեփաննոս գրչի, որ Մոկաց Ծպատի վանքում օրինակեց Մայր Մաշտոցը 1369 թ.—Թորոս աղբ. Բ. 427։

— 3. Նորտիկին, կին Մոմեղէնի և մայր տանուտեր Թաթարբէգի, որ Նարեկ գյուղում, Պսակ կամ Իղիտ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Նոտարք 61, Ձեռ. Վասպ. էջ 325։

— 4. Նորտիկին, դուստր Ստեփաննոսի՝ եղբոր Թումայ կրոնավորի, որ Ծպատ անապատում գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 332։

— Ավելի ուշ հիշատակված են Նորտիկին 1604 թ. (Ձեռ. Վասպ. 816) և 1311 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 74 ա)։

*ՆՈՒԱՐԴ, իգ. < կամ պրս. نورد navard «ընծա, պարգև» բառից և կամ ավելի լավ՝ نو nav «նոր»+ ورد vard «վարդ», իբր «նորավարդ, նորածիլ՝ նորաբաց վարդ». հմմտ. զնդ. nava «նոր»+ varəd «աճիլ, բուսնիլ», զնդ. Hvarəδi մի կնոջ անուն, որ Justi 140 ա մեկնում է իբր զնդ. hu-varəδi «լավ աճած», իսկ Bartholomae 1849 «արևի հայացք ունեցող» (hvarə «արև» բառից)։ Justi 230 բ մեր Նուարդ անունը մեկնում է պրս. navard «հաճելի, սիրելի»։ Այս անունը ավանդված է մեզ մի անգամ շատ հնուց, երկրորդ անգամ ԺԲ դարում և ուրիշ վկայություն չունի։ Այժմ դարձել է շատ սովորական և մեր գեղեցիկ ու սիրելի անուններից մեկն է։

— 1. Նուարդ, Արա գեղեցկի կինը, որին չդավաճանելու համար Արան մերժեց Ասորեստանյաց Շամիրամ առասպելական թագուհու սէրը, դուրս եկավ նրա դեմ պատերազմի, ուր և սպանվեց.—ըց. ի Նուարդայ՝ Խոր. Ա. ի։ (Արա գեղեցկի և Նուարդի մասին մի սիրուն պոեմա ունի Նար-պէյ, Ստուերք Հայկականք, Պոլիս 1874, էջ 22—34)։

— 2. Նվարդ, կին Շէկի և մայր Աստուածատուրի, որ մի այգի և մի հնձան է նվիրել Հառիճի վանքին, 1196 թ.—Շիրակ, էջ 159։

*ՆՈՒԲԱՐ, ար. և իգ. < պրս. نوبر navbar, nōbar, nubar «նորահաս պտուղ, առաջին պտուղ» ձևից, որ կազմված է պրս.

պ. nav «նոր»+պ. bar «պտուղ» բառերից։ Հիշատակված է ԺԵ դարից սկսած և մինչև այսօր էլ գործածական է։

— 1. Նուբար, զավակ Սելջուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

— 2. Նուպար, դուստր Ստեփանոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Ավետարան, 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։

— 3. Նուվբար, կին Մկրտիչի և մայր Վրթանէս Արևելցի աբեղայի (Արարատեան գավառից), որ Երուսաղէմում օրինակեց Գանձարանը 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

— 4. Նուբկար, կին Ջանփաշայի՝ հորեղբոր Յովհաննէս վարդապետի, որ գրել տվեց Սանահինում մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ. այդ թվին Նուբկարն արդեն մեռած էր.—ՀԱ 1887, էջ 56 բ։

— Ավելի ուշ հիշատակված են Նուբար իգ. 1533 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 717), 1557 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 529), 1595 թ. (Տաշեան, Ցուց. 749), 1682 թ. (Ձեռ. Վասպ. 580), 1709 թ. (Ձեռ. Վասպ. 265), Նումբար իգ. 1794 թ. (անդ 207)։

— 5. Նուբար, ազգական Զաքեդուրի Թորոս իշխանի, որի մահվանից հետո հաջորդեց նրան 1724 թ. Յաթմալի խանը արշավեց նրա վրա, բայց Նուբարը իր բանակով գնաց նրա դեմ, Յաթմալին փախեցավ և ետ քաշվեց.—Ջամչ. Գ. 788։

† ՆՈՒԷՐ, ար. < հյ. Նուէր բառից. Հմմտ. Պարգեւ և Ընծայ համանիշ անունները. մի անգամ հիշված է ԺԳ դարում (եթե ստույգ է), իսկ այժմ նորոգվելով դարձել է իգ. անուն Արևմտահայոց մեջ (Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Ա. 1125), իսկ իբրև ար. անուն Արևելահայոց մեջ։

— Նուէր, հայր Միրանի, որ իբրև վկա հիշվում է Բեթեվանի արձանագրության մեջ, 1274 թ.—Manus. brit. mus. 295 ա (ընթերցումը ստույգ չէ)։

† ՆՈՒԷՐԻԿ, իգ. նորակերտ անուն, որ գործածվում է Պոլսում։

ՆՈՒԹԷԿ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է 1655 թվի մի արձանագրության մեջ (Այրարատ 340)։

ՆՈՒԼՈՒՆ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է՝

— Նուլուն (ևս Նուլունս), կին Հասանի. նվերներ է արել Արատէսի վանքին.—անթվ. Արձ. Սիսական 143։

ՆՈՒԿԶԱՐ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է ԺԷ դարում (Զքր. սարկ. Ա. 75) և երկու անգամ էլ երկու անթվական հիշատակությանց մեջ՝ Ջեռ. Թաւր. 67 բ և Արցախ 227։— Կարծում եմ նույն է և Նունզար. սեռն անհայտ. հիշված է մի գերեզմանաքարի վրա 1369 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. էջ 202—3։

ՆՈՒՂԱԼ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է մի անգամ 1579 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմանատանց, էջ 12 ա)։ Հմմտ. Մուղոլ։

ՆՈՒՂԴԱՅ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է երկու անգամ ԺԴ դարում։

— 1. Նուղդայ, դուստր Զաքարիայի. ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղդայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 2. Նուղտան, կին Գէորգ երեցի, որ Երզնկայում օրինակեց Ճաշոցը 1391 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։ (Ասում է «կենակցի մերոյ կարճահասակի Նուղտան կոչեցելոյ և զաւակի իւրոյ Էլմուղպա փոխեցելոյն առ Քրիստոս և առ դրան տաճարիս են սոքա հանգուցեալ». սրանից հետևցնում եմ որ կարճահասակ նշանակում է այստեղ «վաղամեռիկ» և թե կինն ու զավակը վաղամեռիկ են եղել)։

ՆՈՒՂՄԱՅ, ար. հիշված է որոշյալ Նուղմէն ձևով՝ անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Հալէպի, Ա. 133 բ)։ Նույն է նաև Նումայ (որոշյալ Նումէն ձևով) իգ? հիշատակված 1681 թ. (անդ 186)։

*ՆՈՒՆԷ, իգ. <ասոր. Նոյն, Նուն կամ Նունոս անվան իգականն է։ Գործածական էր Հունաց մեջ. հմմտ. Նունէ՝ մայր Ս. Նիկողայոս Զմիւռնիացի հայրապետի (Յայսմ. դեկտ. 11), Նունէ՝ մայր Ս. Գրիգոր Աստուածաբանի (Յայսմ. յնվ. 25)։ Կա նաև Նունիճա նահատակուհի հելլադացի (Յայսմ. տես Տաշեան, Ցուց. 83 ևն)։ Ոմանք էլ մեկնում են եգիպտ. Նոն «մաքուր, սուրբ»։ Մեր մեջ չէ գործածված. Մագ. քեր. 246 հիշում է իբրև օրինակ կոչականի՝ Ո՜ Նունի։ Այժմ սովորական անուն է և հատկապես գործածվում է փաղաքշական Նունիկ ձևով։ Կա նաև ռուսական ձևով գգվական Նունուշա։ Զարմանալի է Նունիկեան ազգանունը 1839 թ. (Տաշեան, Ցուց. 936)։

— 1. Նունէ, Հռիփսիմեան կույսերից մեկը, որ անցավ Վրաստան և այնտեղ տարածեց քրիստոնեությունը։ Կոչվում է

«առաքելուհի Վրացս։—Խոր. Բ. ձգ (2 ձեռ. Նունի), ղա. Նոր ժող. Գ. 25.—Նունի (ուղղական հոլով!) Փ. Մոկր. իգ. Ցայսմ. հոկտ. 5, 6, 29. Տաթև. հարց. 589.—սեռ. Նունեայ՝ Խոր. Բ. ձգ. Ասող. Բ. ա. Վրդ. կդ. ծշ. 501. Ցայսմ. հոկտ. 6, 29, մրտ. 30. Մխ. այրիվ. 60, 62.—Նունէի՝ Խոր. Բ. ձգ. Ուխտ. Բ. կէ. Թղթ. դաշ. 21, 25. Մեսր. եր. 39. Ցայսմ. հոկտ. 29.—(հիշատակությունները ամբողջական չեն).—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 130—140, ՀԱ 1937, 87—103.—ըստ Ալիշան, Արշալ. քրիստ. 136 օտարները կոչում են Թէոգնոստա (որ է հուն. «աստուածածանոթ».—վրաց. կոչվում է Նինօ Վրաց աղբ. Ա. 18—23, Բ. 37, 98, 103—4։

— 2. Մեր մեջ (իբրև հայոց անուն) հնում գործածված է մի անգամ սեռ. Նունիայ ձևով՝ 1590 թ. (Մխսուան 537 բ)։

ՆՈՒՆՈՒԽԱՆ, ար. երևի անձնանուն էր, որից ունինք Նունուխանեան ազգանունը։

† ՆՈՒՆՈՒՖԱՐ, ար. և իգ. <հյ. Նունուփար ծաղկանունից, որ պարսկերենից փոխառյալ բառ է և ավանդված է բազմազան ձևերով, որ տես տակը։ Կա նաև Իսլամների մոտ. ինչ. Nilufer՝ Տաճկաց սուլթան Օրխանի (1326—1360 թ) կինը։ Հնագույն հիշատակությունը մեր մեջ 1428 թվից է. ընդհանրապես իգական է, բայց կա և արական. ինչ. Նինիփար 1469 թ., Նանափար ոմն 1710 թ. այժմ գործածական է միայն իբրև իգական։

— 1. Նունուփար, կին տանուտեր Մկրտչի, որ Կողուց վանքում ստացավ մի Աւետարան 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583—4։

— 2. Նիփար, (իմա Նինիփար), մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 3. Նօնօփար, դուստր կամ եղբոր դուստր տանուտեր Սահակի, որ Խիզանում գրել ավեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։

— Ավելի ուշ ավանդված են Լալիփար իգ. 1567 թ. (Ձեռ. Թաւր. 75 ա), Լիլիփար իգ. 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա), Լիլիֆար իգ. 1603 թ. (Ձեռ. Սևան. 7 ա, Սմբատեանց՝ Երնջակ 214), Նունուփար իգ. 1621 թ. (Թորոս աղբ. Բ. 425), Լոլէփար իգ. 1690 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 49 բ), Նանափար մզգեսի, ար! 1710 թ. (Տաշեան, Ցուց. 504), Նծնօփար իգ. 1756 թ. (Ձեռ. Վասպ. 313), Լուլափար իգ. անթվական (Ձեռ. Ագուլ.=Արրատ. 1911, 462)։—Տես և Լիլիփար։

† ՆՈՒՇԻԿ, իգ. < ըստ իս Նուշ «բադամ» բառից. հմմտ.

Նուշուշար. բայց հետո շփոթվելով ուրիշ անունների հետ՝ դարձել է Նուշիրվան անվան կրճատ ձևը (այսպես է Սեբաստիա) և կամ Արշանուշ անվան կրճատումը (այսպես Երևան)։ Նուշիկ անվան հնագույն հիշատակությունը ԺԴ դարից է և այժմ էլ գործածական է։ Սրա գգվականն էլ է Նշէ կամ Նշօ (տես Սովետ. Հայաստ. 1945 թ. մրտ. 13, էջ 2, սյունակ 2-րդ)։

— 1. Նուշիկ (սեռ. Նուշկան), կին Աւետիք քահանայի, որ Հարք գավառի Դոնեվանք գյուղում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1316 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 464։

— 2. Նուշիկ, Թվլի դուստր Զաքարի (№ 94), կինն է Աղազարի, որ Երնջակ գավառի Շոռոթ գյուղում մի խաչքար է կանգնեցրել նրանց հիշատակին 1493 թ.—Սիսական 356, Սեդրակեան՝ Հնութ. Երնջակու 124։

— Ավելի ուշ հիշատակված են Նուշիկ (սեռ. Նուշկէն) 1601 թ. (Ձեռ. Վասպ. 798) և ԺԵ դարից հետո, էջմ. Գև № 127 ձեռագրում (հրատր. Ազատ. 1909 թ. յոջ. էջ ծ)։

* ՆՈՒՇԻՋԱՆ, իգ. < պրս. نوش nūš «քաղցր ըմպելիք» + جان ǰān «հոգի» բառերից, այն է «հոգու անուշ ըմպելիք»։ Գտնում եմ գործածված երկու անգամ, մեկը Նուշիջան ձևով, անթվական (Ձեռ. Վասպ. 450), մյուսը Նոշիջան ձևով 1554 թ. (անդ 98)։

* ՆՈՒՇԻՐՎԱՆ, ար. < պրս. نوشیروان Nōšīrvān կամ Nūšīrvān անունից։ Այս անունով հայտնի է Պարսից Խոսրով Ա արդարասեր Թագավորը (531—579 թ), որի տիտղոսն էր։ Հին ձևն է պրս. Anōšarvān, հայերեն տառադարձված Անուշըռուան (Սեբ.), որ բուն նշանակում է «անմահ հոգի»։ Հմմտ. պազ. anōšruān, պհլ. anōšak-ruvān, որ է զնդ. anaošō—urvānəm, կազմված anaoša «անմահ» և urvan «հոգի» բառերից (Հիւբշ. 20, Justi 17 բ)։ Մեր մեջ գտնում եմ գործածված մի անգամ՝

— 1. Նշրվան, մերձավոր Ասլպէկի, որ Բալուի Նեխրի գյուղում ստացավ մի Ավետարան՝ 1475 թ.— Ձեռ. Վիեննա. Ա. էջ 624։

— Ուրիշ անգամ չէ գործածված. բայց այժմ կենդանի է Սեբաստիայում Նուշէրէվան ձևով, իբրև իգական անուն, որի փաղաքշականն էլ է Նուշիկ։

† ՆՈՒՇՈՒՇԱՐ (սեռը հայտնի չէ) < հյ. նուշ + շարք բառերից, իբր թե «շարոցի համար թելի վրա շարված նուշի շարք»։ Գտնում եմ մի անգամ հիշատակված ԺԵ—ԺԶ դարի մի ձեռագրում (Տաշեան, Ցուց. 996)։

* ՆՈՒՍՐԱԹ, իգ. < արաբ. نصرت Nuṣrat անձնանունից, որ

բուն նշանակում է «օգնություն. 2. հաղթություն» (որ է victoria)։ Այս անունով գտնում եմ մեր մեջ՝

— 1. Նիւսրաթ, դուստր Հուռումի և քույր Յովհաննէս քահանա Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.— Ջեռ. Դաղիան, Ա. 27 բ։

— 2. Նուսրաթ, իգ.? հիշված է 1581 թ.— Թորոս աղբ. Բ. էջ 430։

— 3. Նուսրաթ, կին Յոհանիկի, հիշված անթվական մի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարքունիք 313)։

*ՆՈՒՐԱԴԻՆ, ար. Հարաբ. نورالدين Nūr-ad-dīn անունից, որ նշանակում է բուն «լույս կրոնի»։ Սովորական անուն է Իսլամների մոտ. օր. Նուրէդդին՝ սուլթան Հալէպի, որի մոտ ծառայություն էր մտել Մլեհը (№ 7)։ Հիշատակված է մեր մեջ ԺԳ—ԺԶ դարերում։ Այս անունից է կազմված Նուրատինեան ազգանունը (Ազգաց. 3041), որ ենթադրել է տալիս Նուրդին ձևը։

— 1. Նորադին, հիշված է Սասնայի և Քամիթարի հետ՝ Տուտիկ իշխանի գամբարանի արձանագրության մեջ. Թվի թե երեքն էլ նրա որդիքն են, որոնք «անհետ կորեան ի ձեռս անաւրինաց», 1241 թ.—Ազգագր. հանդ. Է, 342 (Բոլչալուի Յովհաննաձորի Կողէս գյուղում)։

— 2. Նուրադին քոթիթ, կնքահայր (տամղաճի) Անի քաղաքի. իր ընկերներով այցելել է Անին և կնիքի հարկը ջնջել է՝ 1250 թ.—Արձ. Շիրակ 62, 101։

— 3. Նուրադին, եղբայր Սեֆեդին Ա իշխանի Աղթամարի և Կուռճիբէգի, հորեղբայր Աղթամարի Ստեփաննոս և Զաքարիա կաթողիկոսների. վերջինիս ինքը օծել տվեց 1296 թ.—Արծր. յաւել. Ակինեան՝ Գաղնգիրք 45։

— 4. Նորատին, մերձավոր Յովհաննէ՞ս գրչի, որ Վարագայ վանքում օրինակեց երկհատոր մեծադիր մի Ճառընտիր 1399 թ. —Թորոս աղբ. Բ. 429։

— 5. Նուրադդին, հայ կաթոլիկ իշխան Մակուի. ընդունելով մահմեդականությունը՝ հաստատվեց իր իշխանության մեջ Լանկթամուրի (†1405 թ) ձեռքով (Յակոբեան՝ Ուղեգրութ. Ա. 113, 120)։

— 6. Նուրատին, հիշված է Խրիմից բերված մի խաչքարի արձանագրության մեջ (որ այժմ ագուցված է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի պատին), 1417 թ.—Ազգագր. հանդ. Է, էջ 71։

— 7. Նուրադին, որդի Ցխսայի, եղբայր Ներսէս քահանայի,

հորեղբայր Բարթուղիմէոս առաքյալի վանքի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ գրել տվեց մի Ցայսմաւուրք 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41 ա։

— Տ. Նուրադին, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— Ավելի ուշ հիշատակված է Նուրադին 1521—29 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 382)։

*ՆՈՒՐԱԼԻ, ար. <արաբ. نور nūr «լույս»+ علی ʿAlī «Ալի» անունից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1603 թ. (Матер. Арх. Кавк. III, 99—100)։

*ՆՈՒՐԱՄԻՐ, ար. <արաբ. نور nūr «լույս»+ امیر amīr «իշխան» բառերից։ Գտնում եմ մի անգամ հիշատակված 1707—8 թ. (Ձեռ. Վասպ. 1028)։

*ՆՈՒՐԱՅ, իգ. ? <արաբ. نور nūr «լույս» բառից. մի անգամ ունինք հիշատակված՝

— Նուրայ Կռնիռապատցի, որ օգնեց գնելու մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

*ՆՈՒՐԱՆՍԹԻ, իգ. <արաբ نورانی nūrānī «լուսավոր, լուսեղեն»+ ستی sittī «տիկին» բառերից, որ և համապատասխանում է Լոյսխաթուն, Լուսբիբա, Լուսիկ, Նուրբիբէ անուններին։ Հիշատակված է մի անգամ ԺԳ դարում։

— Նուրանսթի, դուստր Աղատտիկնոջ. երկուսն էլ դրամապես օժանդակում էին Գրիգոր գրչին, որ օրինակում էր Աւետարանը՝ Կարինում 1230 թ. այս թվին էլ մեռավ Նուրանսթին.—Ձեռ. Վենետ. Ա. 573։

*ՆՈՒՐԱՆՓԱՇԱ, իգ. <արաբ. نورانی nūrānī «լուսավոր, լուսեղեն»+ پاشا paša բառերից։ Հիշատակված եմ գտնում մի անգամ 1605 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 316)։—Հմմտ. Նուրիփաշա։

ՆՈՒՐԱՑԻԱՆ (սեռ. Նուրացիանին), իգ. ծագումն անստույգ. հիշված եմ գտնում անթվական մի խաչքարի արձանագրության մեջ՝ Արցախ 267։

*ՆՈՒՐԲԷԳ, ար. <արաբ. نور nūr «լույս» + թրք. بك beg բառերից. ամբողջը դառնում է «Լուսպարոն»։ Հիշատակված է մի անգամ 1624 թ. (Տաշեան, Ցուց. 718 և Կամենից 177)։ Սրանից է Նուրբէգեան ազգանունը, որ կա Նոր-Նախիջևանում։

*ՆՈՒՐԲԻԲԷ, իգ. <արաբ. نور nūr «լույս»+թթր. بکه bike

«տիկին» բառերից (համմտ. Նուրանարի). Հիշատակված եմ գտնում Նիւրպիէն ձևով 1695 թ. (Ձեռ. Վասպ. 982) և Նուրպիէն ձևով 1709 թ. (Ակինեան, Մատեն. հետազ. Դ. էջ 174)։

*ՆՈՒՐ-ԵՈՒՍՈՒՖ, ար. <արաբ. نور nūr «լույս»+يوسف Yūsuf «Յովսէփ» անուններից։ Այս անունով հայտնի է՝

— Նուր-Եուսուֆ, ածխագործ, ըստ Hammer Osm. պատմ. Ե. էջ 246 հայ էր. բնակվում էր Գերմանիկուպոլսում (Էրմէնէկ), որ Ռումի Սելջուկ Սուլթան Ալայէդդին Քէյ Քոբաթ Ա. խլեց Կիլիկիոյ հայ թագավորությունից 1228 թ.։ Հաճախ գնում էր Գարաման՝ ածուխ ծախելու. քիչ քիչ հարստացավ։ Սրա երկու որդիները՝ Գարաման և Օնկսուզ կամ Փօնսուղ, թաթարների արշավանքների վրդովմունքից օգտվելով, ավազակային խմբեր կազմեցին և սկսեցին այս ու այն կողմ բռնանալ։ Տիրեցին Սելեվկիային. Ալայէդդին սուլթանը հաստատեց այս իշխանությունը, իսկ Աւէտտին Քայ Քաուսը նրանց երեց եղբոր՝ Գարամանին տվեց Գերմանիկուպոլիսը (1257—8 թ) և այսպիսով առաջացավ Գարամանցոց ցեղապետությունը.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 567։

*ՆՈՒՐԻ, ար. և իգ. <արաբ. نوری nūrī «լուսավոր, լուսեղեն» բառից. Իսլամների (Տաճիկների) մոտ այժմ գործածական է իբրև արական անուն, իսկ Քրդերի մոտ իբրև իգական անուն։ Մեր մեջ իբրև արական գործածված ունինք Նուրի 1635 թ. (Rapport Belgique 137), 1677 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 36 բ), 1678 թ. (Սխտական 333), 1687 թ. (անդ 22 աբ), անթվական, բայց ԺԷ դարից (Զքր. ագուլ. 141), 1642 թվից ուշ (Ձեռ. Վենետ. Ա. 333)։ Սրանից է Նուրեանն ազգանունը։ Իբրև իգական հիշատակված են Նուրէ՝ 1763 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 42 բ), 1796 թ. (Էֆիմ. 448), Նուրէ՝ 1680 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 162)։ Անցյալ դարում գործածական էր Պոլսում փաղաքշական ձևով Նուրիկ կամ Նուրիցա (երկուսն էլ իգական), իսկ ԺԸ դարից կա Նուրի խաթուն †1738 թ. (Մէնէվիշեան, Ազգաբ. Տիւզեանց, էջ 10)։ Տես և առանձին Նուրիկ, Նուրիխաթուն։

*ՆՈՒՐԻԽԱԹՈՒՆ, իգ. <արաբ. نوری nūrī «լուսավոր» բառից+խաթուն։ Հիշատակված է ԺԵ դարից՝

— Նուրի-խաթուն, հանգուցյալ դուստր Ղարիբշահի № 4 (ուր տես իր գերդաստանը), որ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— Ավելի ուշ Նուրխաթուն ձևով 1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 229 ա) և Նուրի խաթուն ձևով 1738 թ. (տես Նուրի)։

*ՆՈՒՐԻԽԱՆ, իգ. <նույն Նուրի անունից+խան «իշխան». ենթադրվում է որ արական անուն էր, որից կազմված է Նուրիխանեան ազգանունը։ Շատ գործածական է իբր իգական. այսպես՝ Նուրիխան 1582 թ. (Ձեռ. Վասպ. 698), 1606 թ? կամ ավելի ուշ (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 85), 1621 թ. (Ձեռ. Վասպ. 867), Նուրխան 1658 թ. (ՀԱ 1894, 51 բ), Նուրիխան 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ), 1688 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 41 բ), անթվական (Ձեռ. Վասպ. 273)։

*ՆՈՒՐԻԿ, իգ. <Նուրի անվան փաղաքշականն է. հիշատակված է 1766 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 89). ավելին տես Նուրի։

*ՆՈՒՐԻՋԱՆ, ար. <արաբ. نور nūr «լույս»+պրս. جان ǰān «հոգի» բառերից, այն է «հոգու լույսը»։ Հիշատակված է նախ ԺԵ դարում։

— 1. Նուրիճան, որդի Սաւլաթմիշի. Ազուլիսում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Ցայսմաւուրք 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։

—Ավելի ուշ հիշատակված են՝ Նուրիջան 1521—9 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 382), 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), 1575 թ. (Rapport Belgique 24), 1597 թ. (Ձեռ. Վասպ. 215), Նուրիճան՝ 1578 թ. (Սիսական 412), 1605 թ. (Թորոս աղբ. Բ. 439), Նուրիջան 1613 թ. (Տաշեան, Ցուց. 584), 1620 թ. (Առաք. պատմ. 125), 1689 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 31 ա)։ Սրանից է Նուրիջանեան ազգանունը։

*ՆՈՒՐԻՓԱՇԱ, իգ. <նույն Նուրի անունից+փաշա։ Հմմտ. Նուրանփաշա։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԵ դարում։

— Նուրիփաշա, կին խոջա Միրիջանի, որ Աղթամարում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

*ՆՈՒՐՄԵԼԷՔ, իգ. <արաբ. نور nūr «լույս»+ملك melek «հրեշտակ» բառերից, իբր «լուսեղեն հրեշտակ»։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Նուրմելիք, դուստր Ամիրի և քույր Ստեփաննոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։

— 2. Նուրմելիք, կին Վարդերեսի. երկուսով մի աղբյուր են շինել Թէոդոսիայի Ս. Ստեփաննոս եկեղեցու կողքին 1491 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 355։

— 3. Նուրմելիք, հիշված է նաև անթվ. մի արձանագրության մեջ, որ պահվում է Թէոդոսիայի թանգարանում (Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 38)։

— Ավելի ուշ ժամանակից ունինք Նուրմելիք 1538 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 535) և անթվական (Ձեռ. Վասպ. 618)։

*ՆՈՒՐՄՀԱԼ, իգ. <արաբ. نور nūr «լույս»+محل maḥal «տեղ, վայր»! բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1609 թ. (Bodleian 110)։

*ՆՈՒՐՆՈՒՐ, ար. <արաբ. نور nūr «լույս» բառի կրկնությամբ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1523 թ. (Ձեռ. Կես. ածած. 47 բ)։

*ՆՈՒՐՈՒՄ, ար. և իգ. <արաբ. نور nūr «լույս»+թրք. -m ստացական հոդով. որով nūrum լինում է «լույսս, լուսիկս» (աչքիս լույսը ասելու պես)։ Իբրև ար. հիշված է 1506 թ. (Տաշեան, Ցուց. 7 բ), իբրև իգ. 1653 թ. (Ձեռ. Թաւր. 44 բ)։

*ՆՈՒՐՋՀԱՆ, իգ. <արաբ. نور nūr «լույս»+պրս. جهان ǰihān «աշխարհ» բառերից, իբր թե nūr-i-ǰihān «լույս աշխարհի», ինչպես կա և Գուլջիհան «աշխարհի վարդը»։ Հիշատակված եմ գտնում մի անգամ ԺԵ դարում։

—1. Նուրջիհան, կին Ցախրիկի և մայր Մելքիսեթ երեցի, որ օրինակեց Գանձարանը՝ Աւան գյուղում, 1453 թ.—Bodleian, էջ 134։

*ՆՈՒՐՍԹԻ, իգ. <արաբ. نور nūr «լույս»+ست sitti «տիկին» բառերից, որով համապատասխանում է Լույսխաթուն, Լուսբիքա, Նուրբիքե, Նուրխաթուն անուններին։ Տես և Նուրանսթի։ Հիշատակված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Նուրսթի (սեռ. Նուրսթէ ձևով), մերձավոր Առիւծի Հոգեորեանց, որ իր կնոջ՝ Սեդայի հետ նորոգել է Հոռոմոսի խանգարված առվի ջուրը և մի կրպակ է նվիրել վանքին, 1251 թ.—Արձ. Շիրակ 25։

— 2. Նուսթի, մերձավոր Սարգիս աբեղայի, որ Գլաձորում օրինակեց Ոսկեփորիկը, 1317 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 857։

— 3. Նուրսթի, կին Շահնշահի, որ Գողթան գավառում Թումայ Արճիշեցուն գրել տվեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, էջ 387)։

— 4. Նուրսքէ (տր. հոլով), կին Ճոն Մխիթարի որդի Առիւծի, որ արտեր է նվիրել Արջոյ առիճ վանքին.—անթվ. Արձ. Շիրակ 123։

— 5. Նուրսքի, կին Արտաւանի. մի վարագույր են նվիրել Հառիճի եկեղեցուն.—անթվ. Արձ. Շիրակ 162 (տես Արտաւան № 8)։

— 6. Նուսքի տին, որի անթվական տապանաքարը գտնվում է Հաղբատի գերեզմանատանում (Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23)։

— 7. Նուսքէ (սեռ. հոլով), դուստր Բուզուքանի և քույր Խութլու խաթունի (№ 1), որ շինեց Հոռոմոսի երեք եկեղեցիները և վանքին նվիրեց Շաւթա գյուղը (ԺԳ դարի սկիզբը).—Անթվ. Արձ. Շիրակ 21։

*ՆՈՒՐՎԵՐՏԻ, ար. <արաբ. نور nūr «լույս»+թրք. ویردی verdi «տվեց» բառերից։ (Արու երախան ծնվեց և ծնողների աչքին լույս տվեց)։ Գտնում եմ մի անգամ հիշատակված 1661 թ. (Այրարատ 350)։

*ՆՈՔԱՐ, ար. <պրս. نوکر nūkar «ծառա, սպասավոր» բառից (անշուշտ մի որևէ սրբի)։ Իբրև անձնանուն մի անգամ հիշատակված եմ գտնում ԺԳ դարից։

— Նօֆար, պապ Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Ղրիմ) օրինակել տվեց Աստուածաշունչը 1325 թ.—Ձեռ. Վասպ. էջ 7։

*ՆՌԱՆԱՅ, իգ. <արաբ. رعنا raʿnā «գեղեցիկ, սիրուն» բառից, որի վրա ավելի ընդարձակ տես Ըռանա: Նույնի վրա ավելանալով Ն նախաձայնը՝ կազմվել է Նռանայ, որի հայտնի թվականն է ԺԷ դար։ Այս անունով է կոչվում Դաւիթ (№ 250) Սալաձորեցի երգչի (ԺԷ դար) աղջիկը։ Մի անգամ էլ հիշատակված կա Նռանա խաթուն, 1479 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 328)։ Նույնից եմ կարծում նաև կրճատ Նռօ ձևը, իգ. 1635 թ. (Ձեռ. Վասպ. 888)։ Տես և հաջորդը։

*ՆՌՆԵԿ, իգ. Նախորդ անվան գգվական ձևն եմ համարում։ Հիշատակված է մի անգամ, 1686 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թեհր. 8 բ=ՀԱ 1935, 399)։

*ՆՍԷՖ, իգ. ուզում էի հանել արաբ. نصف niṣf «կես» բառից (իբր թե կինը ամուսնու կեսն է)։ Բայց ստիպված եմ դնել արաբ. انصاف inṣāf «խիղճ, արդարամտություն, կարեկցություն, գութ»

բառից, որովհետև այս բառը ճիշտ այս իմաստով և այս ձևով է գործածում օր. Ազարիա Սասնեցին իր Ողբի մեջ. «Նախ առաջին (Ջալալիներից) էր Ապուսէֆ, որ զԹոնուս քանդեց տանց Նըսէֆ» (տես Ակինեան, Մատեն. հետազ. Դ. էջ 298)։ Ավելացնեմ որ Ազարիայի մոր անունն էլ Նսէֆ էր (տես անդ, էջ 242՝ 1609 թ)։ Նսէֆ անվան հնագույն հիշատակությունը ԺԵ դարից է։

—1. Նսէֆ, դուստր տանուտէր Դաւթի, որ Թացու գյուղում գրել տվեց մի Աւետարան 1437 թ.—Ձեռ. Վասպ. 379։

— Ավելի ուշ հիշատակված են Նսէֆ 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), Նըսէֆ 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), Նըսէֆ 1589 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167), Նսէֆ 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ), 1666 թ. (Ձեռ. Սանաս. 5 բ), 1677 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 34 բ), իսկ անթվական են՝ Նսէփ (հնագույն գրչությամբ՝ Ձեռ. Նոր-Բայազ, 51 ա), Նսէֆ 1686-ից ուշ (Ձեռ. Թեհր. Ցաբ=ՀԱ 1935, 399), և Ձեռ. Վենետ. Բ. 793։

*ՆՐՋԻՍ, իգ. <արաբ. نرجس narǰis «նարգիզ ծաղիկը». այս անունով հայտնի է՝

— 1. Նրջիս, չորրորդ դուստր Մեծն Սարգսի, քույր Զաքարէ սպասալարի և Իւանէ աթաբէգի. համանօրեն Դսեղի Մամիկոնեանց հարսն էր և անզավակ մեռավ (ԺԳ դար).—Խաղբակեանք 16, Հայապ. 447, Շիրակ 162—3։ Սրա հետ նույն պետք է դնել՝

— 2. Նրջեիս, քույր պարոն Զաքարէի և պարոն Իւանէի. ինքն էլ կոչված է պարոն. եղել է ճգնավոր և թաղվել է Սանահինում. հիշում է անթվական արձանագրությամբ տապանաքարը։—Սրձ. Ազգագր. հանդ. Գ. 298 և Է, 389։

— 3. Նցիս (այսպես գրված փոխանակ Նրցիս), Մրէնի մի հոյակապ, բայց անթվական խաչքարի արձանագրության մեջ (Շիրակ 141 <Սարգիսեան, Տեղագր. 199)։

ՆՓԱՂՀԱԾ, ար. անստույգ ընթերցվածով անստվոր անուն. այն է՝

— Նփաղեաճ, եղբայր Սիրունիկի՝ կնոջ Սասնայ իշխանի, որ Փառխոսում մի խաչքար է կանգնեցրել իր գերդաստանի հիշատակին 1481 թ.—Արցախ 307։

# Շ

ՇԱԲ, ար. ծագումն անհայտ։

— Շաբ, իշխան Գողթն գավառի, Բարթուղիմէոս առաքյալի քարոզության ժամանակ (Ա դար).—Օրբ. ե (կոչված է Շաբ կամ Շաբիթ՝ Ալիշան, Սիսական 310 բ և Արշալ. քրիստ. էջ 33)։

* ՇԱԲԱԹ, ար. Հասոր. šabbəθā «շաբաթ օրը» բառից, որ գործածվում է Ասորիների մեջ նաև իբրև անձնանուն. ինչ. Bar-šabbəθā=Բարշաբաթ։ Օրը իբրև անուն գործածելու համար հմմտ. նաև Ուրբաթ, Կիրակի, Կիրակոս (Հիւբշ. 295—6)։ Տես նաև Շամբիթ, Շամբատ:

— 1. Շաբաթ, իշխան Գողթան գավառի. օգնեց Ս. Մեսրոպին՝ ջնջելու համար նույն գավառի հեթանոսական մնացորդները.— սեռ. Շաբաթայ՝ Կոր. էջ 14 (տպ. 1854 Շամբիթ).—ուղ. Շաբիթ՝ Խոր. Գ. խէ.—Շամբիթ՝ Փ. կոր. 7.—սեռ. Շաբիթայ՝ Խոր. Գ. կ.—ուղ. Շաբիթայ՝ Օրբ. ի.—սեռ. Շաբիթայի՝ Օրբ. ժդ։

ՇԱԲԱՑ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է (անհայտ թվականով) Սմբատեանց՝ Գեղարք. 569։

* ՇԱԲԱՆ, ար. Հարաբ. شعبان ša'bān ամսանունից, որ իսլամների մոտ էլ իբրև անձնանուն գործածական է. օր. Աշրաֆ-Շաբան՝ Եգիպտոսի սուլթանը, որ վերջ տվեց Հայոց Ռուբինեան թագավորության (1375 թ), Շապան տանէրկ ոմն 1657 թ. (Երեմ. չէլ. օրագր. 236)։ Մեր մեջ հիշատակված է նախ ԺԵ դարից. ավելի ուշ՝ ԺԷ դարից (Զքր. սգուլ. 76). կա և Շապան ոմն 1684 թ. (Արցախ 147). այժմ էլ գործածական է Ղարաբաղում։ Սրանից է Շապանեան ազգանունը (Տաճկաստանում)։

— 1. Շապան, հայր Եղիա երեցի. որ օրինակեց Աւետարանը՝ Բաղչթաղուց Խոզանավար գյուղում, 1490 թ.—Ձեռ. Սեւան. 5 բ։

* ՇԱԴԻ, իգ. Հպրս. شادی šādī «ուրախություն» բառից, որ իսլամների մոտ էլ գործածվում է իբրև անձնանուն, բայց արական սեռի։ Օր. Շադի՝ որդի Մրվանի, քուրդ, ծնվել է Դուինում, պապն է Սալահադդինի։ Justi 270 հիշում է 9 անձ, որոնց վերջինն է Շադի խան՝ զորավար Դեհլիի Մուհամմէդ շահի (1553 թ.)։ Հիշատակված են մեր մեջ ԺԵ դարում՝ երեք անձինք։

— 1. Շատի, կոնիռապացի երկու անձինք, որոնք օգնեցին գնելու մի Աւետարան, 1435 թ։—Ձեռ. Թաւր. 13 ա։

— 2. Շադի կամ Շատի, *դուստր Ամիր-Հասանի և քույր պարոն Ամիրդոլի, որ Խլաթում գրել ավեց մի Ճաշոց 1450 թ.— հիշված է նաև 1455 թ.—Նոտարք 164, 178։*

* *ՇԱԴԻԼԱՑ, ար. <թրք.* شادیله šadile *«ուրախությամբ» ձևից, որ նախորդի գործիական հոլովն է։ Հիշատակված է մի անգամ 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 73 ա։*

* *ՇԱԴԻՆ, ար. <կրճատ ձևն է հյ.* Շամշադին *անվան, որ ծագում է արաբ.* شمس الدین šams-ad-dīn *«արեգակն կրոնի» անունից։ Այս անունով գիտենք միայն՝*

— 1. Շադին (var. Բադին), *հայ իշխան Տփղիսում. երբ Թաթարաց Արղուն խանը մտավ Տփղիս, նրան դիմավորող շքախմբի մեջ հիշվում է հատկապես այս իշխանը (Վրաց աղբ. Բ. էջ 59)։*

— 2. Շատինպէկ, *հայր պարոն Վարդի, որ Պոլսում, Ամիրդովլաթ բժշկին գրել ավեց Բժշկարանը՝ 1459 թ։—Ամիրտ. օգ. բժշ. էջ ԽԴ (*-պէկ *ձևից հետևում է, որ ամբողջը պետք է կարդալ* Շադինբէկ*)։*

* *ՇԱԴԻՓԱՇԱ, իգ. <նույն* Շադի *անունից+*փաշա *պատվանունով. մի անգամ դանում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 642—3)։*

* *ՇԱԶԻԿ, իգ. <պրս.* شاز šāz *«ուրախ» բառից (որ նույն է* شاد šād *հոմանիշի հետ)+հյ.* իկ *գգվական մասնիկով։ Գործածական էր անցյալ դարում Պոլսում. հմմտ. «Բերկրուհի»։*

* *ՇԱԼԱՄ, իգ. <ասոր.* ܫܠܡܐ šlāmā *«խաղաղություն, հաշտություն, ողջույն, բարև»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված ժէ դարում (Ձեռ. Վասպ. 1022)։*

*ՇԱԼՈՒԷ, ՇԱԼՈՒԷՆ կամ ՇԱԼՎԱ, ար. ծագումն ինձ անհայտ։*

— 1. Շալվա *Ախալցխացի, եղբայր Իւանէի (№ 4). Վրաց ծառայության էր և ստացել էր մանդատուրթուխուցէսի տիտղոսը. մասնակցեց Թամար թագուհու զինվորական արշավանքներին և հատկապես Կարսի գրավման (Վրաց աղբ. Բ. 21, 52)։ Ջալալէդդինի դեմ արշավանքի ժամանակ (1224 թ) Դուինի և Ամբերդի առաջ Վրացիք հաղթվեցին ու փախան, Շալվան գերի բռնվեց, իսկ Իվանէն Գառնիի այրերում քարերով ջարդվեց։—* Շալուէ՝ *Միխ. աս. իը (=իէ).—սեռ.* Շոլուէի՝ *Կիր. բ.—*Շալուայի՝ *Միխ. աս. իը (=իէ)։*

— 2. Շալուէ ոմն, դէտ Իւանէ աթաբէկի բանակի՝ Թուրքաց դեմ պատերազմում (1198 թ).—Օրբ. կե։

— 3. Շալուէ, որդի մեծին Շալուէի (կամ Շաղուէի). (ըստ Զամչ. Գ. 217 որդի Սարգիս Խաչենեցու). շատ ժամանակ մնաց Իկոնիայի սուլթանի ծառայության մեջ և նրա բանակում կռվում էր Թաթարների, Վրաց ու Հայոց միացյալ բանակի դեմ՝ Կարնոյ և Երզնկայի շուրջը (1240 թ).—սեռ. Շալուէի կամ Շաղուէի՝ Մաղաք. աբ. 14 (իսկ տպ. Երուսաղէմի, էջ 24 միշտ Շալուէի. չունի Շաղուէի)։

— 4. Շալուէ «երանելի և սուրբ րաբունի» ի Դաւրէժ, ուր ներկա էր Սմբատ Օրբելեան իշխանի մահվան «1273 թ».—Թվի տարբ.—Օրբ. կե։

— 5. Շալուէն (սեռ. Շալուէնայ), եղբայր Պօղոս երեցի, որ ստացավ Վենետիկի Դ մեծ Ճառընտիրը, հավանաբար ԺԳ դար։—Ձեռ. Վենետ. Բ. 132։

— 6. Շալվա ոմն նվիրատու հիշված է Գոշավանքի անթվական մի արձանագրության մեջ (Աշխարհ. հանդ. Ժ, 25)։

— 7. Շալուէ, իշխանաց իշխան, որդի մեծ իշխան Սարգսի և թոռն Բուղլախի, «այր բարեպաշտօն, քրիստոսադաւան և ուղղափառ, այր հնկայազօր ի մրցմունս պատերազմաց, դիւցազնական ի յաղատաց և պայազատ ի յիշխանաց, ի յազանց և ի տոհմէ ասքանազեան սեռից». մայրն է Թամթա (սեռ. Թամթին), եղբայրներն են Գրիգոր և Փանուէլ, քույրերը Սիթխաթուն և Թենիկ, կինն էր Դովլաթխաթուն, որի մահից հետո ամուսնացավ Գուլփաշայի հետ. որդին է Դաւիթ։ Այրարատյան գավառի Սերկևլի գյուղում, Վրաստանի Թմոքոյ դղեակից Յովհաննէս միայնակեցին գրել տվեց մի Ճառընտիր, 1441 թ.—Արար. Ազաթ. 1909 թ. յուլ. էջ ԽԸ—ԽԹ։

* ՇԱՀ, ար. <պրս. شاه šāh անունից, որ սովորական է Պարսից մեջ (Justi 271—2 հիշում է 18 անուն). բուն իմաստն է «թագավոր», բայց հաճախ կրճատ ձեն է šāhdōst, šāhmardān կամ նման մի անվան, որոնք բոլոր ծագում են նույն šāh «թագավոր» բառից (Հիւբշ. 58)։

— 1. Շահ, խոռապետ արքունի, մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ).—Եղիշ. 77, Ազգապ. 371 (կարելի էր հասկանալ շահրխոռապետ՝ իբր պաշտոնի անունով. բայց անծանոթ են համարում Հիւբշ. 58 և Justi 271 բ)։

— 2. Շահ, հայր Սարգսի, որ ստացավ մի Ավետարան 1315 թ.—Տաշեան Ցուց. 934 բ։

— 3. Շահ Օրբելեան, թոռն Բուրթելի, որդի Սմբատի և եղբայր Պեշգինէի. եղբոր մահից («1438 թ») հետո, հետամուտ չեղավ Սիւնեաց ժառանգությունը ձեռք ձգելու, որով Օրբելեանց իշխանությունը վերջացավ։—Մեծոփ. 119. Սիսական 96 բ. Ազգապ. 2068. (Զամչ. Գ. 471 գրում է Մնաշահ)։

— 4. Շահ, հանգուցյալ հորեղբայր Զաքարայ արեղայի, որ Երզնկայում գնեց Ցակոբ քահանայից մի Շարակնոց, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 5. Շահ... նախատառերն են անվան մի քարտաշի, որ քանդակել է Տեղերի մի արձանագրությունը՝ 1274 թ.—Բանաս. 1903, 29։

*ՇԱՀԱԶԻԶ, ար. <պրս. شاه šāh «թագավոր»+արաբ. عزيز ʿazīz «սիրելի» բառերից, իբր «թագավորի սիրեցյալը»։ Հնագույն հիշատակությունը 1607 թվից է (Ձեռ. Դաշեան, Բ. 32 ա)։ Սրանից է Շահազիզ(եան) ազգանունը (Կովկաս)։

*ՇԱՀԱԼԱՄ, իգ. <պրս. شاه šāh «թագավոր»+արաբ. عالم ʿālam «աշխարհ» բառերից և նշանակում է «թագավոր աշխարհի»։ Իբրև իգ. գտնում եմ 1535 թ. (Ձեռ. Թաւր. 88 ա) և անթվական՝ անդ 109 ա։ Բայց թվի թե արական է 1600 թ. (Սըմբատեանց՝ Երնջակ 147)։ Շահալամ անունը ըստ իմաստի կարող էր թե՛ իգական լինել և թե մանավանդ արական։ Ուստի սրա կրճատ ձևն եմ համարում Շահլամ, որից կազմվել է Շահլամեան ազգանունը (Կովկաս)։

*ՇԱՀԱԿ, ար. <Շահ անվան փաղաքշականը կամ պհլ. *Šahrak >պրս. Šahrak (հույն տառադարձությամբ Σατράκης) անունից (Հիւբշ. 58)։ Գործածական է նաև Պարսից մեջ. համմտ. Šāhak Թուրք մտերիմ Մութայիմ խալիֆայի (862—6 թ), Šāhak հայր Kušājim († 961 թ) արաբ ջբանաստեղծի են (Justi, էջ 272 բ)։

— 1. Շահակ իշխան Արծրունի, հաջորդ Պերոզի (Ն. Ք. Բ. դար).—Արծր. Ա. գ։

— 2. Շահակ կամ Կիրակոս, եպիսկոպոս Տայոց՝ 370 թ.—Զամչ. Ա. 448 (ուղղել Շահապ, տես Կիրակոս № 2)։

— 3. Շահակ Ա Մանազկերտցի, Աղբիանոսի ցեղից. Մանազկերտի և Հարքի եպիսկոպոսն էր. ըստ Ազգապ. 161—2 Փառէն կաթողիկոսի մահից հետո («352 թ») մի քանի ամիս

նստավ տեղակալ, մինչև որ գահ բարձրացավ Ներսէսը «353 թ»։ Ներսէսի մահից հետո հաջորդեց նրան իբրև կաթուղիկոս հայոց «373—377 թ»․ Բուզանդի մոտ կոչված է Յուսիկ, որ համարվում է Յուսիկ Բ (տես անդ)։—Բուզ. Գ. ժէ. Խոր. Գ. լթ. Եղն. եր. 267—8. Փ֊ընպ. 270. Ցհ. կթղ. ժգ. Ասող. Բ. ա. Արծր. Ա. ժա. Գամ. ներս. 27. Մխ. անեց. դ. Կիր. 13. Վրդ. իդ (հրատ. էմինի՝ Սահակ). Սամ. անեց. 67. Մխ. այրիվ. 20. Օրբ. հա.—սեռ. Շահակայ՝ Բուզ. Գ. ժէ. Խոր. Գ. խա. Մխ. անեց. դ. Ասող. Բ. ա. Արծր. Ա. ժա. Կիր. 13, 14. Գամ. ներս. 28. Սամ. անեց. 67. Օրբ. հա.—գրված է Սահակ՝ Ցհ. կթղ. հյր. 273. Միխ. աս. իթ(=իը). Վրաց աղբ. Ա 77 (նույնպես Սահակ).—սեռ. Սահակայ՝ Խոր. Գ. լթ. Միխ. աս. իթ (=իը)։

— 4. Շահակ եպիսկոպոս Արտազի 723 թ. սրա օրով եղավ Թադէոս առաքյալի, Սանդուխտ կույսի և ուրիշների նշխարաց գյուտը. (ըստ հրատ. Սոփ. Ը. ծան. 32)։

— 5. Շահակ Բ Կորճայ, կաթուղիկոս հայոց, հաջորդեց Զաւէն Մանազկերտցուն, որ մեռել էր «381 թվին».—Բուզ. Զ. գ.—սեռ. Շահակայ՝ Բուզ. Զ. գ, դ։ (Աղգապ. 244 չի ընդունում սրան իբրև կաթուղիկոս հայոց, այլ թերևս Կորճայքի եպիսկոպոսապետ)։

— 6. Շահակ, որդի Աղբարոսի, որ նրա հիշատակին մի խաչ է կանգնեցրել Հերհեր գյուղում 1291 թ.—Սխսական 117։

*ՇԱՀԱՂԱ, իգ. < պրս. شاه šāh «թագավոր» + آغا āγā «իշխան» բառերից։ Հիշված է մի անգամ ԺԳ դարում։

— 1. Շահաղայ, կին Կիրակոսի՝ բարեկամի Աւետիս քահանայի, որ գրեց մի Շարակնոց 1258 թ.—Սմբատեանց՝ Երընջակ 229։

— Ավելի ուշ հիշատակված են 1628 թ. (Տաշեան, Ցուց. 708=Կամենից 180), Շախաղա՝ 1642 թ. (Զեռ. Վասպ, 766), Շահաղա 1680 թ. (Զեռ. Նոր-Բայազ. 24 ա)։

*ՇԱՀԱՄԲԱՐ, իգ. < պրս. شاه šāh «արքայ»+արաբ. عنبر ʻanbar «յամբար ծաղիկը» բառերից (այն է՝ արքայական յամբար ծաղիկ)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1739 թ. (Զեռ. Վասպ. 1041)։ Սրա կրճատ ձևն է Շամբար անթվ. բայց 1596 թվից ուշ (Զեռ. Վասպ. 751)։

*ՇԱՀԱՄԻՐ, ար. < պրս. شاه šāh «թագավոր»+արաբ. امير amīr «իշխան» բառերից։ Հնագույն գործածությունը ԺԵ դարից է։ Հակադիր ձևն է Ամիրշահ, որ տես առանձին։ Կա նաև Շահ-

միր, որ կարող է մեր մեջ կրճատված լինել և կամ պրս. شـ mīr «իշխան» ձևից կազմված լինել՝ փոխանակ amīr։ Բայց ունինք նաև Շամիր, որ կարող է լինել Շահմիր-ից ավելի կրճատ մի ձև, բայց նաև բոլորովին առանձին անուն, քանի որ կա արաբ. شامر Šāmir ար. անձնանունը (Իբն-ի Բատուտա II, էջ 1. Թերևս شمر šmr «գործունյա և փորձառու լինել» արմատից, Կամուս Թրք. Թրգմ. Ա. 924, ուր չկա հիշված այս անունը)։ Սրանցից են Շահամիրեան, Շամիրեան ազգանունները, ինչպես նաև Շամիրխանեան (վերջինս տես Սովետ. Հայաս. 1948, սեպտ. 21, էջ 2, սյունակ 5)։

— 1. Շահամիր պարոն, որդի Բախթիարի, գրել տվեց Սարգիս վարդապետին մի Ավետարան, որ նվիրեց (Սեբաստիայի) Հրեշտակապետ վանքին, 1487 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 264)։

— Ավելի ուշ հիշատակված են Շահամիր 1560 թ. (Տաշեան, Ցուց. 314), 1656 թ. (Երեմ. չէլ. օրագր. 164), Շայամիր 1689 թ. (Ձեռ. Վասպ. 973), Շահմիր 1671 թ. (Տաշեան, Ցուց. 870), Շամիր 1708 թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 429), Շամիրխան (Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 258), Ջուղայեցի Սուլթանի որդի Շահմիր, որին տրված հրովարտակը Վրաց Հերակլ Թագավորից 1786 թ. տես Բանասէր 1899, 244։ Հիշելի է հատկապես՝

— 2. Շամիր Շահամիրեան, հնդկահայ նշանավոր գործիչ, հեղինակ «Որոգայթ փառաց» գրքի. կենսագրությունը ընդարձակ տես Լէօ, Հայկ. տպագր. Բ. 478—571, նաև Գուշակեան, Հնդկահայք, էջ 48—51։

ՇԱՀԱՅ, իգ. երևի կրճատ ձևն է Շահ- բառով սկսող մի անվան. մի անգամ հիշատակված է ԺԳ դարում՝

— Շահայ, կին Կիրակոսի և մայր Երեմիա քահանայի, որ Լևոն դպրին օրինակել տվեց իր ուսուցիչ Գէորգ Լամբրոնացու կազմած Մեկնութիւն Եսայեայ գործը, 1295 թ.—Սիսուան 103 բ։

* ՇԱՀԱՆ, ար. կրճատ ձևն է Շահանշահ անվան, որ տես առանձին։

— 1. Շահան, որդի Ապիրատի, եղբայր Ներսէս Շնորհալու և Գրիգոր Գ կաթողիկոսի. հայրն է Գրիգոր Զ Ապիրատ կաթողիկոսի, որ գահակալեց «1194—1203 թ».—Ջամչ. Գ. 18 են. կոչվում է նաև Զօրավար, որ տես։

— 2. Շահան, հիշված է մի խաչքարի արձանագրության մեջ 1290 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 548։

— 3. Շահան իշխան Կոռիկոսի. ամուսին Փեննայի՝ դստեր Լևոն Զ-ի. Լևոնի հետ գերի գնաց և բանտարկվեց Կահիրէում. փախավ բանտից և գնաց Պարիզ, ուր մեծ աշխատանքով հաջողեցրեց Լևոնի ազատությունը Եգիպտոսից. մեռավ Պարիզում 1391 թ.—Զամչ. Գ. 359, Ցուցիկք Բ. 567։ (Ըստ Ազգապ. 1965 այս տեղեկությունը անճիշտ է. Լևոնի ազատության համար աշխատողը եղել է ֆրանսիացի Դարդել քահանան, որ Լևոնի խոստովանահայրն էր և գրեց Լևոնի ընդարձակ կենսագրությունը. տես նաև Բասմաջեան, Լևոն Ե. էջ 41)։

— 4. Շահան-Դագիկ, շինեց Ագարակայ Ս. Խաչ վանքը, Շահապունեաց ձորում, 1451 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 485։

— 5. Շըհան, մր. հիշված է 1665 թ.—Թորոս աղբ. Բ. 411։

*ՇԱՀԱՆԱՑ, իգ. < պրս. شاهانه šāhāna «թագավորական» բառից. հիշատակված է 1621 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1866), 1658 և 1664 թ. (Ջեռ. Կես. ածած. 54 աբ, 57 ա)։

*ՇԱՀԱՆԴՈՒԽՏ, իգ. < իրան. شاه šāh «թագավոր» բառից հոգն. شاهان šāhān+دخت duxt «դուստր» բառերից, որով Շահանդուխտ լինում է «թագավորների դուստր» (Հիւբշ. 38, 58)։ Անցյալ դարում, Պոլսում դեռ գործածական էր այս անունը և հնչըվում էր Շահանբուխ: Ավելի հնուց էլ գրված ունինք Շամանդուխ 1647 թ. (Թորոս աղբ. Ա. 220), Շամանդուխ 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, 93, 94), Շամադուխ 1682 թ. (Ջեռ. Վեննա. Ա. էջ 391)։

— 1. Շահանդուխտ, չքնաղագեղ դուստր Աղուանից Վարազ-Տրդատ իշխանի. հարս էր գնում մի հայ իշխանի. Տաթևի մոտ գարանակալ Պարսիկներ հարձակվեցին՝ առևանգելու համար։ Շահանդուխտը իր պատիվը կյանքից բարձր գնահատելով, նրանց ձեռքը չընկնելու համար, ժայռից ցած գցեց իրեն. բայց անվնաս մնաց ու ազատվեց։ Իբրև նշան շնորհակալության, այնտեղ մի մատուռ շինեց, ուր 30 տարի ճգնեց ու մեռավ (Թ դար)։—Օրբ. լե.—տես. Շահանդխտոյ՝ Օրբ. լե։—Հմմտ. Manus. bibl. nat. էջ 103։ Իր մասին հրաշապատում մի գրվածք տես Ջեռ. Վեննա. Բ. 1008։

— 2. Շահանդուխտ, դուստր Աղվանից Սևադա իշխանի, կին Սմբատ Ա. Թագավորի Սիւնեաց՝ որդւոյ Սահակայ՝ թոռին Փիլիպպէի Ա. մայր Վասակ Թագավորի Սիւնեաց և Սևադայի։ Սիւնեաց առաջին թագուհին է։ Նվիրեց Տաթևին Տեղ գյուղը (998 թ), շինեց Վաղանդնոյ վանքը (1000 թ), որի Արձ. տես

Սիսական 524—5 և ուր թաղվեց ինքը։ Մահից մի քանի տարի ուշ (1006 թ) որդին Սևադայ նույն վանքը նոր շինություններով հարստացրեց։—Օրբ. ծգ, ծդ.—սեռ. Շահանդխտոյ՝ Օրբ. խէ, ծգ, ծդ։

— 3. Շահանդուխտ Թագուհի, դուստր Աղվանից թագավորազն Սևադայի, քույր Սենեքերիմ Ա թագավորի Սիւնեաց, կին Գրիգոր թագավորի Սիւնեաց՝ որդւոյ Աշոտի։ Անժառանգ լինելով՝ իր քրոջ՝ Կատայի (№ 2) հետ շինեց Ս. Աստուածածինը (Վահանայ վանք, Ձորք գավառում, Կապանի մոտ) 1086 թ. (Արձ. Սիսական 296)։ Մեռել է 1116 թ։—Օրբ. ծը—կ.—սեռ. Շահանդխտոյ՝ Օրբ. խդ, ծը, ծթ։

— 4. Շահանդուխտ, դուստր Զօրավար-Շահանի, քույր Գրիգոր Զ Ապիրատ կաթողիկոսի, կին Օշին Բ Լամբրոնացու և մայր Ներսէս Լամբրոնացու (որ ծնվեց 1153 թ)։ Որդու ձեռքով ընդունեց կրոնական կոչում և վանք մտավ։—Պտմ. լմբ. 234. կոչվում էր նաև Մարիամ (Տաշեան, Ցուց. 638) կամ պարզապես Սևաստուհի՝ Փ. Մուրատ, Ցայտ, յովհ. էջ ժգ։—Զարբ. Թրգմ. էջ 464։

— 5. Շահանդուխտ, կին Գերգ փառաշի (նկարիչ) և մայր Գրիգոր և Վարդան քահանաների, երկուսն էլ Գանձասարի վանքի միաբան, որոնք գնեցին մի Աւետարան՝ 1237 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 53։

— 6. Շահանդուխտ, կին Կոստանդին Հռիփսիմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց մի Աւետարան, 1269 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 656։

— 7. Շահանդուխտ, դուստր Կոստանդին Լամբրոնացու և քույր Օշին մարաջախտի, մայր Լևոնի. հիշված է 1274 թ.—ՀԱ 1898, 246 և 248։

— 8. Շահանդուխտ, կին Կոստանդին պայլի, մայր Սմբատ գունդստապլի. մեռած էր 1278 թվին.—Զարբ. Հին դպր. 93, Հայապ. 488, Ձեռ. Միւնխ. 8 ա. Սիսուան 146 բ, 424։

— 9. Շահանդուխտ, դուստր Կոստանդին քահանայի և քույր նույնանուն Կոստանդին քահանայի, որ Մլեճի վանքում գրել տվեց Պրոխորոն գիրքը, 1307 թ.—Manus. brit. mus. 242 բ, Սիսուան 74։

— 10. Շահանդուխտ, դուստր Գունդստապլի հայոց. մայրն է Զապլուն իշխանուհի, որ ստացավ մի Աւետարան 1309 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 519)։

— 11. Շահանդուխտ, մայր Միսակի և Սարգսի. հիշված են Տաթևի մի կիսատ արձանագրության մեջ (որից ոչինչ չի հասկացվում), 1316 թ.—Ազգագր. հանդ. Գ. 141.

— 12. Շահանդուխտ, կին Բարսեղ երէցորդու, որ Հալէպում գնեց մի հին Աւետարան, 1323 թ.—Ձեռ. Կես. ածած. 64 բ.

— 13. Շահանդուխտ, դուստր Էրկիլի և քույր Զաքարայ աբեղայի, որ Երզնկայում, Յակոբ քահանայից գնեց մի Շարակնոց, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ.

— 14. Շահանդուխտ, կին Սարգիս երեցի, որ Ասիլմելիք տար տիկնոջից նվեր ստացավ մի Աւետարան 1488 թ.—Ձեռ. Վասպ. 242,

— 15. Շահանդուխտ, ազգական Համանգուլ կույսի, որ Այրի վանքում, Ստեփան աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304.

*ՇԱՀԱՆՇԱՀ, ար.<պրս. شاهانشاه šāhānšāh անունից, որ բուն նշանակում է «թագավորաց թագավոր, արքայից արքա». Սովորական անուն է Պարսից մեջ. օր. Շահանշահ՝ եղբայր Խլիճասլանի (1165 թ), Շահանշահ՝ էմիր Անիի, վռնտվեց Վրաց ձեռքով 1174 թ., Շահանշահ՝ եղբայր Սուլթան Սալահադինի †1148 թ. են (տես Justi 273). Գրվում է նաև Շահնշահ, Շահինշահ, նաև Շանշի և կրճատ Շահան, որոնք տես առանձին. Սեռ. Շանշի ձևի համար օր. Ես Սէյդիս որդի պարոն Շանշին (Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա, 137), որից և Շանշեան ազգանունը.—Շատ կրճատ ձև է Շանշէն (Ժէ դար)՝ Ձեռ. Վասպ. 1022.—Տես նաև Շամշայ:

— 1. Շահանշահ, հիշված է Կուաշի 981 թվի արձանագրության մեջ. արդյոք Սմբատ Բ թագավորի տիտղոսն է թե վանքին նվիրատու Աշոտ անուն մի իշխանի որդին կամ այլ մերձավորը.—Այրար. 145=Բանաս. 1903, 27.

— 2. Շահնշահ, թագավոր Վասպուրականի, որդի և հաջորդ Աբուսահլի (Ժ դար).—Վրդ. ծա.

— 3. Շահանշահ, որից հողեր է գնել Մարկոս վանահայրը և նվիրել է Բագարանի Մայր եկեղեցուն, 1034 թ.—Արձ. Այրար. 66, 67 (հայտնի չէ թե այս Շահանշահը Յովհաննէս-Սմբատ թագավորն է, թե այլ ոմն).

— 4. Շահնշահ, Աբուլ-Կասիմ Շահնշահ, մականունը Էլ-մէլիք-էլ-Աֆդալ (الافضل), որդի և հաջորդ Բադր-էլ-Ջամալ Ամիր-

էլ-Ջույուշի։ 30 տարի վարեց Եգիպտոսի վեզիրության պաշտոնը՝ երեք խալիֆաների օրով։ Երբ Մուսթանսիր խալիֆան մեռավ, իշխանությունը անցավ նրա երեց եղբայր Նիզարին։ Շահընշահը չէր սիրում նրան. ուստի գահ բարձրացրեց նրա կրտսեր որդի Միւսթաալին։ Նիզարը զայրացավ, փախավ Ալեքսանդրիա, և թուրք կառավարիչ Իֆթիքինի հետ միացած՝ իրեն խալիֆա հռչակեց։ Շահնշահը գնաց, երկուսին էլ բռնեց և սպանեց։ Սոքման-բին-Օրթուկի ձեռքով գրավել է Երուսաղեմը (1098 թվին), որ ապա Եվրոպացիք գրավեցին։ Անհուն հարստության տեր էր. թողել է վեց միլիոն դինար հնչուն դրամ, 500 սնտուկ հագուստ են։ Սրով սպանվեց 1122 թ. Ամէր խալիֆայի ձեռքով, որ վախենում էր նրա փառքից և իշխանությունից։ Իր որդին է Աբու-Ալի-Ահմեդ-բին-Շահնշահ, որ տես Ա հտ. էջ 23։—Աբուսահլ, էջ 41—44, 67, Ալիշան՝ Շնորհ. 169, Իպն-Խալլիքան 139, 147—150, 285։

— 5. Շահինշահ «որդի Գրիգորի, թոռն Կատակալոս հճւյն զորավարի՝ որդւոյ Կամենի մեծի, ի Դեգհաց գաւառ, ի մեծ ամրոցն, որ կոչի Սաղուկ». ամուսնացավ Կատայի հետ, որ էր դուստրը Վիգեն իշխանի Սասնոյ (1160-ական թ.)— Թորոս աղբ. Բ. 313, 315. Հայապ. 394—5։

— 6. Շահնշահ կոչված է Զաքարէ մեծ սպասալարի հայրը՝ Սարգիս իշխանաց իշխանը † 1187 թ. (Արձ. Այրարատ 67)։

— 7. Շահնշահ իշխան Սասնոյ, որդի Զորտուանէլ Գ-ի՝ որդւոյ Վիգեն իշխանի Սասնոյ. մայրն է Վանենի, որ Գրիգոր Գ Պահլաւունի կաթողիկոսի և Ներսէս Շնորհալու Վասիլ եղբոր աղջիկն էր։ Իր եղբայրներն են Վասիլ և Թոռնիկ Բ։ Նվաճվեց Շահի-Արմէն Բէկ-Դամուրից 1185 թ։ Չորս տարի անց՝ գաղթեց Կիլիկիա և Լևոն Բ-ից ստացավ Սելևկիան (1189 թ)։ Նշանված էր Ռուբէն Բ-ի դուստր Փիլիպպինէի հետ։ Մեռավ 1193 թ։ Նկարը տես Ճանիկեան, Հնութ. Անիայ 77։—Վրդ. հր. Սմբ. պատմ. 105. Թորոս աղբ. Բ. 312. Հայապ. 391, 394. Շնորհ. և պրգյ. էջ 107։

— 8. Շահնշահ, որդի Օշին Բ Լամբրոնացու և եղբայր Ներսէս Լամբրոնացու. ծնվել է 1153 թվից ուշ. պարոն և տեր Լուլվայ բերդի, որ շինեց և ամրացրեց 1196 թվից քիչ առաջ։ Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».— ռուղ. Շահնշահ՝ Հմբ. օր. 4.— Շահինշահ՝ Սմբ. պատմ. 112.—սեռ. Շահնշահի՝ Պատմ. լմբ. 234.—գրծ. Շահանշահիւ՝ Յ. Մուրատ,

Յայտ. յովհ. էջ ժբ։—Աթան. յոշ. ժդ. Սիսուան 114. Զարբ. Թրգմ. 464, 513, 607, 754։

— 9. Շահանշահ աթապակ, հիշված է Յովհաննավանքի անթվական մի արձանագրության մեջ (ԺԲ դար).—Զքր. պատմ. Գ. 22=Շահխաթ. Բ. 106։—Արդյոք հաջորդն է։

— 10. Շահնշահ Ա, որդի Զաքարէ ամիրսպասալարի, որդւոյ Սարգսի իշխանաց իշխանի։ Իր բուն անունն էլ Սարգիս էր (Յովսէփեան՝ Խաղբակեանք 13)։ Հաջորդեց իր հորը, որ մեռել էր «1212 թ». այդ միջոցին նա 5 տարեկան էր (ուստի ծնվել է 1207 թ)։ Դաստիարակվելով իր հորեղբոր Իւանէի և նրա կնոջ Խոշաքի ձեռքով, հետևեց հունադավանության։ Թամարա թագուհին տվեց նրան Անին, կոչելով մանդատուրթուխուցէս։ Մեր մեջ կոչված է ամիրսպասալար տիտղոսով (այսպես Օձուն գյուղի 1224 թվի մի արձանագրության մեջ՝ Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 82)։ Կոչված է նաև «թագաւոր» (տես Արձ. Արրտ. 1904, 990)։ Գնաց թաթարների մոտ և հաշտության դաշինք կնքելով ստացավ Անին։ Դամասկոսից Ղարախանը 60,000 զորքով արշավեց նրա վրա. Շահնշահը գնաց նրա դեմ, կոտորեց նրա բանակը և մինչև Խլաթ հալածեց։ Մտնելով թաթարների բանակը՝ արշավեց մինչև Նփրկերտ (Մուֆարղին)։ Լսելով իր երեց որդու՝ Զաքարէի (№ 17) դառն մահը թաթարաց ձեռքով «1261 թ», ինքն էլ մեռավ սրտի ցավից Օձուն գյուղում և թաղվեց Քոբայրում «1261 թ»։ Ամուսնացած էր Սաթունի դուստր Նազուտի (կամ Նազովդի) հետ և ուներ 5 որդի. Զաքարէ, Աւագ Սարգիս, Արտաշիր, Իւանէ և Աղբուղա։—Շահանշահ՝ Օրբ. կե. Մխ. այրիվ. 80. Զքր. սարկ. Գ. 12, 24.—Շահնշահ՝ Կիր. 56, զ, իգ, իե, իէ, լթ, լգ, լը, կա, կբ. Վրդ. ձգ, ղգ. Օրբ. ժմ. 25, 26.—սեռ. Շահանշահի՝ Օրբ. կդ. Օրբ. ժմ. 27. Զքր. սարկ. Գ. 14.—Շահնշահի՝ Կիր. ի, իգ, իդ, իէ, լդ, խե, ծը, կա, կբ. Վրդ. ղգ. Անանուն ժմ. 23.—Շահանշահեան տուն՝ Օրբ. կե.—տես և Ուղեգրութ. 19, 23.—Հաճախ հիշված է Արձանագրութեանց մեջ. այսպես՝ Այրարատ 61, 62, 67, 141, 162, 168—170, 263, 273, 337, 341. Սիսական 46, 186. Շիրակ 10, 20, 24, 28, 62, 116, 127—8, 139, 150, 161. Զքր. պատմ. Գ. 16, 17, 18. Շահխաթ. Բ. 370=Արցախ 366. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 27, 28, 38, 54, 72, 102. Յարութիւնեան՝ Ներս. դպ. Ա. ճնպրհ. 72. Բանաս. 1903, 26. Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 14.—գրված է Շահշահ՝ Այրրատ.

62=64.—შაჰნშაჰი կոչված է վրաց. შინა, შალვა կամ შანშე. այսպես Վրաց աղբ. Բ. 24, 51—57, 59, 61, 63։

— 11. შაჰნშაჰ, որդի Տիրինի և եղբայր գրիչ Յովհաննէս սարկավագի, որ Երզնկայում օրինակեց «Առ որս» գիրքը 1266 թ.—Տողակաթ 201։

— 12. შაჰნშაჰ, որդի Ջոհիի (գրված է սխտ. Ջոհէ), կանգնեցրել է մի խաչքար՝ Ալիղըրըղ (Նոր-Բայազիտ) գյուղի մոտ, 1270 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 544։

— 13. შაჰინშაჰ, գրիչ. օրինակել է Երզնկայում, ստացող Ահարոնի համար՝ Եւագրի գործերը. 1298 թ.—Manus. bibl. nat. էջ 56։

— 14. შაჰნშაჰ Բ. ամիրսպասալար, որդի Իւանէ Բ-ի և թոռն Շահնշահ Ա-ի. եղբայրներն են Աղբուղա, Արտաշիր, Վահրամ և Ջաղա աթաբակ. կինն է Խուանդզէ (որ էր դուստր Սամշադին Սահիբ-Դիւանի). մեռել է 1320 թ. հիշված է մի քանի արձանագրությանց մեջ. Շիրակ 62, 74, 79, 120, Այրարատ 61, 141, 162.—սխտ. შაჲინში՝ Շիրակ 28։—Նույն պիտի լինի შაჰანშაჰ որդի Իւանէի, ազգական Շահանշահ իշխանի Սասնոյ, հայր Վրաց Երկայնաբազուկ սպասալարի (Justi 273 բ)։—Նույն է դարձյալ შაჰანშაჰ Բ թոռնորդի Զաքարէ ամիրսպասալարի. մեռել է 1320 թ. ըստ Հայաստ. 447. որի հետ նույն պիտի լինին «Շահնշահն ի Վրաց», որ 1300 թվին Ղազան խանի հետ արշավել է Եգիպտոս (ըստ Անանուն ժմ. 29) և შაჰნ...՝ հիշված Արձ. 1299 թվից (Այրարատ 61)։—Վերջապես նույն է შაჰინშაჰ, մեծ պարոն և իշխանաց իշխան, որ հիշված է Աղբուղայի հետ՝ 1296 թվի մի արձանագրության մեջ (Արար. 1898, 442)։ Իսկ մի ուրիշ արձանագրության մեջ՝ Աղբուղան կոչում է իրեն «որդի Իւանէի, որդւոյ մեծին Շահնշահի» 1304 թ. (Այրարատ 159=Բանաս. 1903, 30)։

— 15. შაჰანშაჰ (შანში), որդի Աղբուղայի և Սիթի խաթունի. ազգական Շահնշահ Բ ամիրսպասալարի (ըստ Justi 273 բ)։

— 16. შაჰინშაჰ, որդի Ջալալի, թոռն Տարսայիճի, եղբայր Ելիկումի, Աղբուղայի և Տարսայիճ-Ստեփաննոսի՝ արքեպիսկոպոսի Սիւնեաց. հիշված է 1314 թ. թվի թե արդեն մեռած էր 1331 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 30 ա, Սմբատեանց՝ Երընջակ 151։

— 17. შაჰნშაჰ (գրված შახნშახ.), Գողթան գավառի

*Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել է տվել մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, էջ 387)։*

— 18. Շահնշահ Գ. *աթաբակ, որդի Զազա Աթաբակի, թոռն Իւանէ Բ-ի և թոռնորդի Շահնշահ Ա-ի. հիշված է Բջնիի արձանագրության մեջ 1356 թ. (Այրրտ. 273—4, Շիրակ 175, Հայապ. 447)։—Սրա հետ նույն պիտի լինի՝*

— 19. Շահնշահ *պարոն, սպասալար և աթաբակ Անւոյ՝ 1357 թ. կամ ավելի առաջ. Թուրքերի արշավանքից հաղել ազատվեց ու փախավ.—Այրարատ 112։*

— 20. Շահնշահ, *հայր Ցակոբ Կաֆացու, որ շինել է Իլվովի հայոց քարաշեն եկեղեցին, 1363 թ.—Կամենից 131, Ազգապ. էջ 2175։*

— 21. Շահինշահ, *գրել է տվել մի Աւետարան 1378 թ.—Տաշեան, Ցուց. 692։*

— 22. Շահանշայ, *որդի Հասանի Դոփեան, թոռան թոռն է Խաչենի Գրիգոր Բարի իշխանի. իր հոր և եղբայրների հետ սպանվել է Լանկթամուրի արշավանքին 1387 թ։ Սրանից է սկսվում Դոփեան ցեղի Ուլուբէկեանց ճյուղը.—Ջեռ. Դաղեան, Ա. 89 ր, Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 45։ Տես և հաջորդը։*

— 23. Շանշի, *Ծարի իշխաններից, որդի Հասանի՝ ուղւոյ Դոփի. հիշված 1411 թ.—Նոտարք 40, Արցախ 208, Շահխաթ. Բ. 359.—Երևի նույն է № 25։*

— 24. Շահանշահ, *որդի Սարգսի և եղբայր Ներսէս աբեղայի, որ Ուրծայ վանքում գրել տվեց Պատարագամատոյցը՝ 1427 թ.—Ձեռ. Մխւնխ. 20 բ։*

— 25. Շանշի *պարոն, քաջ և հաղթող զորավար, պարոն և տեր Փոքր-Սիւնեաց Ականոյ, Հաթերքոյ, Հանդաբերդոյ, Ծովակին Գեղամայ մինչ ի Շաղվաքայ. սրա որդին է Սայտի, որ Ծարի վանքում կանգնեցրել է մի խաչքար հոր հիշատակին 1430 թ.—Շահխ. Բ. 365՝>Նոտարք 94, Արցախ 408։—Երևի նույն է № 23։*

— 26. Շահանշա, *որդի Մէրաբի և թոռ Արղութի. իշխան Խաչենի. հիշված է 1456 թ.—Արձ. Արցախ. 187, Նոտարք 187։*

— 27. Շանշի, *տնտես Խորոտկայ վանից. հիշված է 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։*

* ՇԱՀԱՊ, *ար.< արաբ.* شهاب Šahāb *անձնանունից, որի բուն նշանակությունն է «ասուպ»։ Հայերենում խառնվել է* շահապ *«իշխան» բառի հետ և նրա ձևն ստացել։*

— 1. Շահապ Արծրունի, հավատքը չուրանալով նահատակվեց Բաղդադում 852 թ.—Ազգապ. 941։

— 2. Շահապ իշխան Արծրունեաց, հիշված է Հռիփսիմէ արքայադստեր կեղծ կտակագրում, 981 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 424։—Տես և Շապուհ։

— 3. Շահաք պարոն, որդի Ջանտէրի. Խրիմում Սիմէոն գրչին օրինակել տվեց մի Ցայսմաւուրք, 1316 թ.—Manus. bibl. nat. էջ 100։

— 4. Շահապ, որդի Թովմայի և տարաժամ հանգուցյալ եղբայր Կարապետ կրոնավորի (№ 79), որ գրեց մի Աւետարան 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 5. Շահապ Կոնիապատցի. օգնեց գնելու մի Աւետարան 1435 թ.— Ձեռ. Թաւր. 13 ա։

— 6· Շահապ, մերձավոր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 582։

— 7. Շախաբ, քրոջ որդի Վարդան աբեղայի, որ Խաչատուր աբեղային գրել տվեց մի Աւետարան, Կտուց անապատում, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 8. Շահաբ, որդի Դանիէլի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Ամ գյուղում օրինակեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— Մի անգամ էլ գտնում եմ սեռ. Շահապի ձեով 1511 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 350, Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 41։

* ՇԱՀԱՊԱԴԻՆ, ար. < արաբ. شهاب الدين Šahāb-ad-dīn «ասուպ կրոնի» ձեից։

— 1 Շիհաբէդդին Աբի-Սաիդ Թողրուլ, հայազգի սպիտակամորթ մի գերի էր, ազնիվ բարքով և գովելի վարքով օժտված։ Նա խնամակալ էր կարգված Հալէբի սուլթան էլ-Մէլիք-էլ-Ազիզ-Աբուլ-Մուզաֆֆար-Մուհամմէդ-բին-էլ-Մէլիք-էզ-Զահիր-բին-էս-Սուլթան-Սալահէդդինի, երբ նա դեռ մանուկ էր։ Այս պաշտոնը կոչվում է Աթաբէկ։ Մեռավ Հալէբում 1233 թվին և թաղվեց Հանէֆիների դպրոցում.—Իբն Խալլիքան, էջ 328։

— 2. Շաճապադին, զավակ պարոն Նէքնէքի, որ Բերկրիում, Խաչեր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 151 (պետք է ուղղել Շահապադին)։

— 3. Շապադին, որդի Յովաննէսի, կինն է Աւագխաթուն,

որդին Ցովաննէս. մեծ նվերներ է արել Անիի Առաքելոց եկեղեցուն, 1348 թ.—Արձ. Շիրակ 63։

ՇԱՀԱԳՏՈՒ, մր. ծագումն անհայտ. արդյոք պետք է կարդալ Շահ-Աբդ-ուլ։

— Շահապտու, զավակ Բայրամի. մայրն է Ջահվիլ, որ Մուղնիում, Մկրտիչ երեցին գրել տվեց մի Գանձարան, 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

* ՇԱՀԱՍԼԱՆ, ար.<պրս. شاه šāh «թագավոր»+թրք. آسلان aslan «առյուծ» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1749 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 450։

ՇԱՀԱՍԼՈՒՄ, իգ? ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1662 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 653)։

† ՇԱՀԱՍԳՐԱՄ <հյ. համանուն ծաղկի անունից. երևի գործածական էր իբրև անձնանուն (իգակմն), որից Շահասպրամեց ազգանունը (Ակնում), հիշատակված 1729 թ.— տես Թորգոմեան, Սասմպօլոյ պատմ. Բ. 665։

* ՇԱՀԱՍՏԱՆ, իգ. որ և գրված է Շահրիստան, Շահստան, զանազան տարբերակներով. ըստ ձևի ծագում է պրս. شارستان šahristān «մեծ քաղաք» բառից, որի հին հյ. ձևն է հինց շահաստան. բայց ինչ կապ ունի «մեծ քաղաք» իմաստը իգական անվան հետ։ Justi-ի մոտ չգտա ոչ մի անուն, որ հիշեցներ այս բառը։ Գործածված է մեր մեջ 1200 թվից մինչև ԺԷ դար։

— 1. Շահաստան, դուստր Գրիգորի և քույր Բարսեղի, որ օրինակեց Աւետարանը՝ 1200 թ.— Ձեռ. Վեննա. Ա. 548։

— 2. Շախըստան, կին Գրիգորի. ծնողներն են խոջա Զօզի, որ գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 513—4 (էջ 516 սխալ տպված Շախստան)։

— 3. Շահստան, մայր Աստուածատուրի և Շաքարի, տատ Դովլաթխաթունի, որ Աղթամարում գրել տվեց Աւետարանը, Հայրապետ աբեղային, 1490 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 12։

— 4. Շահստան, դուստր Աստուածատուրի և հորեղբորաղջիկ Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը Հայրապետ աբեղային, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

— 5. Շահստան, զավակ Վարդանի, որ Շատախում, Իսրայէլ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1491 թ.— Ձեռ. Վասպ. էջ 517։

— Ավելի ուշ հիշատակված են Շահրիստան 1564 թ. (Տաշեան, Ցուց. 848), Շահըստան 1578 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925,

472), Շահրիստան 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 91 ա), 1627 թ. («Էջմիածին» 1944 թ. № 1, էջ 37 բ), 1769 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 688), առանց թվականի են Շահրիստան (Ձեռ. Վենետ. Բ. 682, Ձեռ. Վասպ. 618), Շարոստան (Ձեռ. Վասպ. 237), և ամենից նորաձև՝ Շեհրիստան 1693 թ. (Ձեռ. Վասպ. 980)։

ՇԱՀԱՏ, սեռն ու ծագումը անհայտ. հիշատակված է 1477 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.— Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 222)։

* ՇԱՀԱՐԳՈՒԼ, իգ. < պրս. شهر šahr «քաղաք» և گل gul «վարդ» բառերից, իբր քաղաքի վարդը». մի անգամ գտնում եմ հիշատակված՝ Շեհարկիւլ ձևով՝ 1702 թ.— Manus. brit. mus. էջ 168 բ։

* ՇԱՀԱԽՈՐ, ար. չեմ կարծում թե ծագած լինի հյ. շահաւոր «շահաւետ» բառից, այլ ձևափոխված է պրս. شاهوار šāhvār բառից, որ է «գոհար խոշոր և անհման. և թագավորի արքայավայելչ». Մի անգամ գտնում եմ հիշատակված 1548 թ. (Արցախ 110)։

* ՇԱՀԲԱԿԻ, որ և Շահբեկի, ար. և իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+ بگ beg «իշխան» բառերից, հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում զանազան տարբերակներով. այսպես Շահպեկի իգ. 1675 թ. (Ձեռ. Թաւր. 81 բ), Շահբեկի իգ. անթվ. (Ձեռ. Նոր-Բայազ. 43 բ), Շահպեկ իգ. 1724 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 35 ա), ար. անթվ. բայց 1475-ից ուշ (Ձեռ. Մաղն. 35), Շաղբեկի իգ.? 1596 թ. (Ձեռ. Վասպ. 243), իգ. 1684 թ. (անդ 966), Շաղբեկ իգ. 1632 (անդ 40), անթվ. Շաղբեկի՝ իգ. (Ձեռ. Վասպ. 466)։ Նույն անունը գրված է Շահիպեկ 1626 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32 բ)։

* ՇԱՀԲԱԶ, ար. < պրս. شهباز Šahbāz անունից, որի բուն նշանակությունն է «արքայական բազե, մի տեսակ մեծ բազե» (սրա համազորն է Շահեն)։ Հմմտ. Šāhbāz աֆղան, Դելհիի սուլթան Սելիմի քրոջ ամուսինը (ԺԶ դար), Šāhbāz խան, մոնղոլ զորավար (Justi 274 ա)։ Մեր մեջ հնագույն հիշատակությունն է 1683 թ. (Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1517), ավելի ուշ են 1721 թ. (Շահազիզ, Պատմ. պատկ. 100), 1801 թ. (Տաշեան, Ցուց. 916 բ)։ Սրանից է Շահբազեան ազգանունը։

* ՇԱՀԲԱՆԴԱ, ար. < պրս. شاهبنده Šāhbanda անունից, որ բուն նշանակում է «թագավորի ծառան»։ Հմմտ. Šāhbanda խան՝ զորավար Շահաբասի՝ 1626 թ. (Justi 274 բ)։ Մեր մեջ հիշատակված է Էջմ. № 1754 ձեռագրում (ԺԷ դար) Շահպենտե ձե-

վով. հրատ. Ազատ. 1909 թ. յուշ. էջ ծա (տես և Շնորհաւոր)- գրված Շահզադէ՝ 1617 թ. (Արցախ 186)։

* ՇԱՀԲՈՒԼԱՆ, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+թրք. بولان bulan «գտնող, որ գտնում է» բառերից (իբր թե նա որ թագավորին պիտի գտնի)։ Հիշատակված է մի անգամ Շահպուլան ձևով՝ ԺԶ դարում կամ ավելի ուշ (Ձեռ. հես. սարգ. 11 ա) և մի անգամ էլ Շահպուլայ ձևով՝ 1651) թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, էջ 576)։

* ՇԱՀԳԵԼԴԻ կամ ՇԱՀԳԵԱԼԴԻ, ար. < պրս. شاه šāh «թագավոր»+թրք. گلدی geldi «եկավ» բառերից։ Երևի ար. անձնանուն էր, որից կազմվել է Շահգելդեան ազգանունը (Կովկաս)։— Անունը տրված պիտի լինի այնպիսի մի զուգադիպությամբ, երբ երախայի ծնունդը պատահել է շահի մի քաղաք այցելելու ժամանակ։

* ՇԱՀԳԻԴԱՆ, ար. < պրս. شاه šāh «թագավոր»+թրք. گیدن gidan «գնացող» բառերից. Թվի թե ար. անուն էր, որից կազմվել է Շահգիդանեան ազգանունը (Կովկաս)։— Նախորդի ճիշտ հակառակն է. անունը դրված պիտի լինի այնպիսի մի զուգադիպությամբ, երբ երախայի ծնունդը պատահել է շահի քաղաքից մեկնելու ժամանակ։

* ՇԱՀԳՈՒԼ, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+گل gul «վարդ» բառերից, իբր «արքայավարդ, թագավորական վարդ»։ Հիշված է 1552 թ. (Ձեռ. Վասպ. 654), 1585 թ. (Թորոս աղբ. Բ. 368), Շահկուլ 1609 թ. (Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 242), Շաղգուլ 1666 թ. (Ձեռ. Վասպ. 926), Շահգուլ 1671 թ. (Ձեռ. Ագուլ.=Արարատ. 1911, 314), ԺԷ դարից (Տաշեան, Ցուց. 531, Ձեռ. Թաւր. 132 բ)։—Հմմտ. Շահղուլ։

* ՇԱՀԴԱՆԱ, իգ. < պրս. شاهدانه šāhdāna «խոշոր և պատվական մարգարիտ»։ Հիշված կա Պարսից մեջ նույնի փաղաքշականը՝ Šāhdānekeh (Justi 274 ա)։ Մեր մեջ հիշված է Շահդանա ձևով 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), Շեհտէնէ 1736 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 37). այժմ էլ գործածական է Շահդանա ձևով։

ՇԱՀԴԻՇԱ (հոլով՝ Շահդիշէն), իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք ԺԵ դարից՝

— Շահդիշա, կին, որ միանալով Աղութ խաթունի հետ, Վանում գրել տվին Վարդան երեցին մի Աւետարան, 1460 թ։— Արցախ 139։

† ՇԱՀԵՐ, ար. < հյ. շահ բառի հոգնակին է. հիշված է ԺԲ դարից սկսած։

— 1. Շահեր, եղբայր Սարգիս վարդապետի՝ հոգևոր ծնողի Սահակ քահանա Անեցու, որ ստացավ Գետաշենի Ավետարանը 1211 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 43։

— 2. Շախեր, որդի Օտարշահի և եղբայր Ներսէս գրչի, որ Գամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը Աստղ միայնակեցի համար, 1397 թ. երբ Շախերը մեռած էր։—Ձեռ. Վենետ. Բ. 1286։

— 3. Շահեր հիշված է նաև Բագնայրի մի արձանագրության մեջ (Շիրակ 122) Զ.. թվին, տասնավորն ու միավորը կտրած, ուստի ավելի ուշ քան 1251 թիվը։

— Շահեր անունը հիշված է անթվ. մի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարք. 307) և Շախեր ձևով Ձեռ. Թաւր. 73 բ։

ՇԱՀԵՐՇ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է՝

— Շահերշ, եղբայր Սարգսի. որդիքն են Սաթունի. մի կալված են նվիրել Հերհերի եկեղեցուն 1326 թ.—Միսակեան 115։

* ՇԱՀԶԱԴԱ, իգ. < պրս. شاهزاده šāh-zāda «արքայածին» բառից. իբրև արական հիշված է Պարսից մեջ Šāzāt (կնիք), Šāhzād որդի Ղազնևի Ֆէրռուխզադի (ԺԲ դար), Շահզադէի Շահքայիբ՝ բանաստեղծ (Justi 279 ա)։ Մեր մեջ իգական է և հիշատակված է նախ ԺԵ դարում. ապա հաճախ ԺԶ—ԺԸ դարերում։

— 1. Շահզատա, դուստր Եղիա երէցի, որ օրինակեց Ավետարանը՝ Բալթաղուց Խողանավար գյուղում, 1490 թ.—Ձեռ. Սևան. 5 բ։

— 2. Շահզադա, եղբորթոռ Լիանոսի՝ որ ստացավ մի Ավետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Շահզադա 1544 թ. (Ձեռ. Վասպ. 286), 1555 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 335), Շողզադա 1569 թ. (Ձեռ. Վասպ. 134), Շահզադա 1578 թ. (անդ 9), Շաղզադա 1588 թ. (անդ 709), Շահզադա 1602 թ. (Ձեռ. Հալէպի, Ա 81 բ), Շաղզադէ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 442), 1603 թ. (Ձեռ. Սևան 7 ա՝ գրված սեռ. Շաղզադին), Շահզադա 1615 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 41), 1619 թ. (անդ ՀԱ 1925, 47), 1629 թ. (Կնիք հաւ. յոյ. IV), 1632 թ. (Ձեռ. Թաւր. 33 բ).

*1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 228 բ), 1644 թ. (Ձեռ. Սեբ=ՀԱ 1926, 334, Տաշեան՝ Ցուց. 584), 1647 թ. (Տաշեան՝ Ցուց. 497), 1651 թ. (Ձեռ. Վասպ. 200), գրված* Շաղզայդա *1650 թ. (անդ 458) ևն ևն, 1772 թ. (Չերիմ տէր Բօտեան՝ Հայք ի Զմիւռ. Բ. 88), գործածական էր դեռ անցյալ դարում (անդ Ա 286)։*

**ՇԱՀԶԱՄԱՆ, իգ. < պրս.* شاهزمان Šāhzamān *անունից, որ նշանակում է «ժամանակի թագավորը». հմմտ.* Šāhzamān *եղբայր Շահրիարի Սասանեան, թագավոր Սամարղանդի* (Justi *279 ա)։ Մեր մեջ հիշատակված է ԺԷ դարում.* Շայիզաման *1613 թ. (Ձեռ. Վասպ. 846),* Շայիզարման *1613 թ. (անդ 410),* Շաղզաման *1613 թ. (Տաշեան՝ Ցուց. 584),* Շահզաման *(Ջամբռ 188, Փիլիպպոս կաթողիկոսի ժամանակ 1633—55. կա և Չքր. սարկ. Բ. 139), 1663 թ. (Ձեռ. Վասպ. 922),* Շահիզաման *1668 թ. (անդ էջ 392)։*

*ՇԱՀԷ, ար. ծագումն անորոշ. մի անգամ ունինք՝*

— Շահէ *եպիսկոպոս Ամատունեաց. ժամանակակից Բաբգէն («490—516 թ») կաթողիկոսի.—բց.* ի Շահէ՝ *Գիրք Թղ. ը։*

**ՇԱՀԷՆ, ար. < պհլ.* Šāhēn, *պրս.* Šāhīn *անունից, որ բուն նշանակում է «մեծ և սպիտակ բազե» (տես և* Բազ*)։ Այս անունով հայտնի են* Σάηνος *թագավոր Բակտրիայ,* Šāhēn *պատգամավոր Պարսից Խոսրով Բ թագավորի (Սեբ. Կղկնտ. Տաբարի),* Šāhīn *եպիսկոպոս ասորի (Հիւբշ. 59, 210,* Justi *274),* Šāhīn *զորավար Մութամիդ խալիֆայի (Թ դար),* Šāhīn *դուստր Յազկերտ Գ-ի։ Հայոց մեջ հնագույն ձևն էր* Շահէն, *նոր ժամանակներում դարձել է* Շահին, *որից* Շահինեան *ազգանունը։ Այլ է* Շահան։ *Անցյալ դարում Պոլսում գործածվում էր* Շահին *իբրև իգ. անուն, անշուշտ փոխանակ* Շահ անդուխտ:

— 1. Շահէն *եպիսկոպոս, առաջնորդ Արտազի «124—150 թ». հաջորդեց Մուշէի.—Չքր. եպս. 260, Արրտ. 1868 դեկտ. էջ 102։*

— 2. Շահէն *իշխան Անձևացեաց, մին է Յուսիկ կաթողիկոսի ուղեկիցներից՝ Կեսարիա ձեռնադրության գնալու ժամանակ «341 թ».—Բուզ. Գ. ժբ։*

— 3. Շահէն *Մամիկոնեան,* զորավար, *մին է Ներսէս կաթողիկոսի ուղեկիցներից՝ Կեսարիա ձեռնադրության գնալու ժամանակ «353 թ».—Մեսր. եր. 24։*

— 4. Շահէն *եպիսկոպոս Արտազի. գործակցեց Կիրակոս աբե-*

ղային՝ Թադէոս առաքյալի և Սանդուխտ կույսի մասանց գյուղի մեջ 723 թ.—Ցայսմ. մայ. 30։

— 5. Շահեն աղա, որի հիշատակին կանգնեցրած է մի խաչքար Բաղաքիկում (Գողթն գավառ), 1441 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ. 315։

— Ավելի ուշ հիշատակված են՝ Շահեն 1636 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 355 բ), Շահին 1657 թ. (Երևմ. չէլ. օրագր. 239), Շայեն 1682 թ. (Ձեռ. Վասպ. 957), Շահին 1695 թ. (Ձեռ. Հալէպի Ա. 42 բ), Շահեն վարդապետ 1753 թ. (Ձեռ. Վասպ. 658), Շային անթվ. (անդ 751), Շահին 1808 (անդ 360)։

— Իբր իգ. ունինք Շահեն 1533 թ. (Ձեռ. Վեննա. Ա. էջ 622)։

— 6. Շահեն անունով մի վարդապետ հիշված է նաև Արցախի Հացի գյուղի եկեղեցում (Արցախ 125—6), անթվական մի արձանագրության մեջ, ուր Բարխուտ. ուզում է կարդալ Ջ=1551 թվականը, բայց սխալ է. պետք է կարդալ միայն Ջ. «Ջշահէն վարդապետ եկեղեցոյս յիշեցէք ի Տէր»։

*ՇԱՀԻԴՄԵԼԻՔ, իգ. < պրս. իբր شاهد ملك šāhid-i-melik «թագավորի գեղեցկուհին». մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, 1311 թվից ուշ (Ձեռ. Թաւր. 71 բ)։

*ՇԱՀԻԿ, ար. < կրճատ ձևն է Շահեն անվան, որ տես։

— 1. Շահիկ, հայր Վարդի. երկուսով իրենց շինած տունն ու բակը նվիրել են Անիի Ս. Փրկիչ եկեղեցուն 1041 թ.—Շիրակ, էջ 85։

— 2. Շախիկ քահանա, որ Թումայ քահանայի հետ միասին մի Աւետարան գրել տվեց Ցովսիան գրչին, Տարբերունեաց Բերդակ գյուղում, 1306 թ.—Ձեռ. Վասպ. 149։

— 3. Շահիկ պարոն, հայր Վահրամի, որ Բռնակոթ գեղի առաջնորդն էր. մեռել է 1326 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 176։

— 4. Շահիկ, վանահայր Ցիպնայ Ս. Ստեփաննոս վանքի (Արծկէ). իր անունով մի խաչքար կա 1393 թ, որ թերևս իր մահվան տարեթիվն է.—Նոտարք, էջ 1։

— 5. Շահիկ, նոր հանգուցյալ միաբան մի վանքի, որի անունը չէ հիշված, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 426։

— Ավելի ուշ են սեռ. Շախկեն 1651 թ. (Ձեռ. Վասպ. 200), Շահիկ 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 ա).—սեռ. Շահկանն՝ անթվ. բայց հին (Շիրակ 120)։

— Իբրև իգ. ունինք Շահիկ՝ 1602 թվից ուշ (Ձեռ. Վեննա. Ա. 246), 1677 թվից ուշ (Ձեռ. Նոր-Բայազ. 35 ա)։ Այս դեպքում պետք է համարել Շահանդուխտ կամ նման մի անվան կրճատ ձևը։

*ՇԱՀԻՆԱՐ, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+نار nār «նուռ» բառերից (իբրև նաև ամենաընտիր տեսակը)։ Անթվական հիշատակություններ են Շայինար՝ Ձեռ. Վասպ. 144, Շահինար՝ Ձեռ. Վեննա. Ա. 418, Թորոս աղբ. Բ. 367. իբրև արական է հիշված Շահինար՝ անթվ. (Ձեռ. Մաղն. 35, ավելի ուշ քան 1475 թ)։ Որոշ թվականով են՝

— 1. Շահենար (կարդա Շահինար), որին հոգեմայր է ընդունել Ալանի որդի պանդուխտ Սարգիսը և մի խաչքար է կանգնեցրել նրա հիշատակին, Խաչենի Կոճողոտ գյուղում, 1249 թ.— Արցախ 190։

— 2. Շահնար, կին Ջունդի. միասին մի Ավետարան են գրել տվել Թաթարաց արշավանքի ժամանակ և նվիրել X վանքին.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 94։

— 3. Շայնիար! իգ. 1507 թ. (Ձեռ. Վասպ. 623)։

*ՇԱՀԻՇԱՆ, իգ. պետք է կարդալ Շահինշահ. դուստր Գրիգոր (№ 120) Ապուհամզա Արծրունու, որ նվաճվեց Գագիկ Արծրունուց և իր այս աղջկան կին տալով նրան՝ բարեկամացան (Ժ դար).—Ձեռ. Վեննա. Բ. 1171։

*ՇԱՀԻՋԱՆ, ար. և իգ. < պրս. شاهجان šāh-i-ǰān «հոգու թագավորը». ճիշտ թվականով են Շահիջան ար! 1511 թ. (Արցախ 406), 1605 թ. (Manus, brit. mus. 71 ա), Շահիջան, ար! 1661 թ. (Արցախ 260), անհայտ թվով՝ Շահիջան իգ. (1578-ից ուշ՝ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472), 1680-ից ուշ՝ Սուրիահայ տարեց. 1925, էջ 107։

*ՇԱՀԻՍԼԻՄ, իգ. արդյոք شاهاسلام šāh-i-islām «թագավոր մահմեդականների»? անորոշ ձևով գրված է՝ Շահիսլիմ՝ անթվ. բայց 1427-ից ուշ (Ձեռ. Վեննա. Ա. 414) և Շայիսլի՝ անթվ. (Ձեռ. Վասպ. 450)։

ՇԱՀԻՐԷՏ, ար. (ձևն ու ծագումը անհայտ)։

— Շահիրետ, Վայոց ձորեցի, մասնակից եղավ Եղեգեաց վկայարանի շինության «468 թ».—Օրբ. ժը (այլ ձ. Ջարիհետ)։

ՇԱՀԼԻ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է 1536 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 340 բ)։ Սրա հետ նույն է՝

**ՇԱՀԼԻԼ** կամ **ՇԱԼԻԼ**, ար. հիշված 1585 թ. (Ձեռ. Վասպ. 699, 702)։

**ՇԱՀԼՄԲԱԹ**, իգ. ծագումն ինձ անհայտ։

— Շահլմբաթ, կին Թումայի. ծնողներն են Մկրտիչ աբեղայի (№ 157), որ Աղթամարում օրինակեց մի Գանձարան, 1466 թ.—Նոտարք 224։

**ՇԱՀԼՈՐ**, մր. ծագումն անհայտ։

— Շահլոր, որի թոռը Որոտ՝ հիշվում է իբր վկա, Բնթեւանի արձանագրության մեջ, 1274 թ.—Manus. brit. mus. 295 ա (ընթերցումը անստույգ է)։

* **ՇԱՀԽԱԹՈՒՆ**, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+ خاتون xatun «տիկին» բառերից, որով պիտի նշանակեր «շահի խաթունը, թագուհի»։ Ըստ իմաստի իգական է, որից կա նաև Շահխաթունեան ազգանունը (Կովկաս)։ Ավելին տես Շախաթուն:

* **ՇԱՀԽԱՆՈՒՄ**, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+ خانم xanum «տիկին» բառերից, այն է «թագուհի»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1744 թ. (Կարապետ եպս.՝ Դոփեանք 193)։ Գործածվում է նաև այժմ. օր. Սովետ. Հյաս. 1943, դեկտ. 8, վերջին սյունակ։

* **ՇԱՀՂՈՒԲԱԹ**, ար. < պրս. شاه قباد Šāh-Qobād «արքայն Կաւատ» բառն է, ինչպես կա և Բէյ-Քուբաթ (ծագումը տես Justi 160 բ)։ Կրճատվելով դարձել է Շաղուբաթ, Շաղբաթ, որից և Շաղբաթեան ազգանունը (Տփղիս)։ Նույն է սրա հետ նաև Շահուբաթ՝ որդի Սքանդարի (Մեծոփ. 107)։

— 1. Շաղուբաթ, իշխան Առնեղի (այժմ Փաշաքենդ՝ Գեղարքունիք), շինել է մի եկեղեցի նույն գյուղում, 898 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 500։

— 2. Շահուբադ, որդի Անտոնի՝ եղբոր խոջա Ջաւզի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

— 3. Շահղուբաթ, ոսկերիչ, զարդարել է մի Աւետարան, որ նվիրված է Մշու Ս. Կարապետ վանքին, 1496 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 43, 45։—Նույն է թվում սրա հետ Շահղուբաթ Բաղիշեցի, ոսկերիչ, հիշված 1502 թ. որի հայրն է Աստուածատուր ոսկերիչ, որ Կարապետ (№ 285) վրդ. Բաղիշեցի տաղասացի եղբայրն էր և նախ քան 1502 թիվը նահատակվեց Մշու դաշտում, հարամիներից։—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 313, ՀԱ 1937, 320։

— 4. Շաղուբաք *աղա, տանուտէր Գաւառի (Նոր-Բայազիտի), 1504 թ. Յիշում է իր խաչքարը.—Սմբատեանց, Գեղարքունի 58։ Նոյնը Սիսական 44 դնում է 1534 թ (սխալը առաջացել է Ծ և Զ տառերից)։*

— *Աւելի ուշ հիշատակված են՝ նաև հետևյալ տնձնավորութիւնները.*—Շահղուպաք՝ *1513 թ. (Օրբ. ժմ. յաւել. 46=Սիսական 34 ա),* Շաղուբատ *1528 թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 532),* Շաղուբաք *1534 թ. (Տեղեկ. գիտ. և արվ. Ինստիտ. № 2, էջ 215, նոյնը Սմբատեանց՝ Գեղարք. 58),* Շաղուպաք *1549 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 31 բ),* Շահղուբաք *1574 թ. (Կրպտ. եպս.՝ Դօփեանք 105),* Շաղուբաք *1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 91 ա), 1645 թ. (Ձեռ. Վասպ. 606),* Շաղաբաք՝ *Ձեռ. Վասպ. 852, ամենակրճատ* Շաղբաք *ձևն ունի Ձեռ. Վասպ. 393 անթվ։ Սրա նախավոր ձևն է* Շահպատ *1655 թ. (Արցախ 116)։*

* *ՇԱՀՂՈՒԼ, ար. <պրս.* شاه šāh *«թագավոր»+թրք.* قول qul *«ծառա, ստրուկ» բառերից, իբր «արքայի ծառան». գործածական էր նաև Պարսից մեջ. ինչ.* Շահղուլի *բէկ՝ տիրող Արարատեան երկրի, 1694 թ.* (ZAPh *2, 295)։ Մեր մեջ մի անգամ գըտնում եմ հիշատակված 1544 թ. (Սմբատեանց, Գեղարք. 492). սրանից է* Շահղուլեան *ազգանունը, որ հիշատակված է ԺԹ դար, (Ազգ. մատ. հտ. ՀԸ, 115). այժմ էլ կա* Շախուլեան։—*Հմմտ. նաև* Շահզուլ։

† *ՇԱՀՄԱՄ, իգ. <պրս.* šāh *«թագավոր»+հյ.* մամ *«մայր, տատ» բառերից։ հիշատակված է ԺԳ դարից։*

— 1. Շահմամ, *որի հիշատակին պատարագ է նշանակում Խծկօնքի վանքում Աբրահամ երեցը 1233 թ.—Շիրակ 128։*

— 2. Շահմամ, *կին կաշեգործ Քոթիթի. երկուսով կալվածներ են նվիրել Հոռոմոսի վանքին.—անթվ. Արձ. Շիրակ 21։*

* *ՇԱՀՄԱՆԱՆԴ, իգ. <պրս.* شاه šāh *«թագավոր»+* مانند mānand *«նման» բառերից, իբրև «արքայանման»։ Հիշատակված է մի անգամ այս ձևով 1696 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 544) և մի անգամ էլ* Շահմէնէնտ *ձևով 1744 թ. (անդ 1925, 578)։*

* *ՇԱՀՄԱՋՈՒԹ, մր. <պրս.* شاه šāh *«թագավոր»+արաբ.* موجود mavǰūd *«գտնված, ներկա» բառերից (հմմտ. վերը* Շահգելդի*)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվ. բայց 1327-ից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, էջ 462)։*

*ՇԱՀՄԱՐ, իգ. <Թեև շատ նման է հնչում պրս.* شاهمار šāh-

mār «մեծ օձ» բառին, բայց անհնարին է որ մեկի անունը, մանավանդ կնոջ, «մեծ օձ» լինի։ Ուստի ենթադրում եմ որ պետք է կարդալ Շահմամ կամ մի ուրիշ բան (ԱՐ=ԱՄ). բառի մոտ դրված է երեք կետ, ուստի թերի մաս ունի։ Հիշված է մի անգամ 1548 թ. (Արցախ 110)։

*ՇԱՀՄԵԼԷՔ, իգ. <պրս. شاه šāh «թագավոր»+արաբ. ملک melek «հրեշտակ» բառերից։ Սրանից տարբեր է Շահմելիք, որ արական է և կազմված է šāh «թագավոր»+արաբ. ملک melik «իշխան» բառերից։ Այնուհետև առաջինը խառնվել է երկրորդի հետ և գործածվում է թե՛ ար. և թե իգ. հմմտ. Šāhmalik իշխան Խուարէզմի (1038 թ), Ամիր Շահմալիք՝ կուսակալ Խուարեզմի՝ Շահռուխի օրով (1412 թ)։ Գործածական է նաև Նեստորականների մեջ թե՛ ար. և թե իգ. (Justi 275 բ)։ Նույն անվան հակադիրն է Մելիքշահ, որով կազմության կողմից նույնանում են Շահսուլթան և Սուլթանշահ անունների հետ։ Սակայն ունինք նաև Շարմելէք և Շարմելիք ձևերը, որոնք նախորդ անունների աղավաղ ձևերն են ըստ իս, բայց ստացել են այնպիսի կերպարանք, որ իբր թե شهر šahr «քաղաք» բառից են կազմված։ Մենք այստեղ դնում ենք բոլոր այս ձևերը՝ ժամանակագրական կարգով, նախ իգ. Շահմելէք, ապա ար. Շահմելիք։

— 1. Շարմելէք, կին տանուտեր Մարտիրոս Շատախեցու (Մոկաց երկրից), որ Ծղատի անապատում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1395 թ.—Ձեռ. Վասպ. 231—4։

— 2. Շարմելիք, կին Կիրակոս քահանայի, որ Ոստանում Թումա քահանային գրել տվեց մի Ավետարան 1414 թ.—Ձեռ. Վասպ. 300։

— 3. Շայմելեք, հարսն հեւսն Յովհաննէսի, որ Աղէթում գրել տվեց մի Ճաշոց, 1421 թ.—Ձեռ. Թավր. 111 բ։

— 4. Շարմելիք, դուստր Խաթունի, որ Աղթամարում, Թումայ գրչին գրել տվեց մի Ավետարան 1425 թ.—Ձեռ. Վասպ. էջ 352։

— 5. Շարմելէք, հանգուցյալ քույր Էվատշահի (№ 3), որ Ոստանում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան 1428 թ.—Ձեռ. Վասպ. 355։

— 6. Շայմելիք, կին Ոնոփրիոս քահանայի և մայր Մկրտիչ քահանա Արճիշեցու, որ գրել տվեց մի Ճաշոց, 1441 թ.—Թորոս աղբ. Ա. 222։

— 7. Շալմելիք, դուստր Մկրտիչ քահանայի և քույր տա-

նուտեր Յովհաննէսի, որ Խլաթում գրել տվեց մի Աւետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 8. Շահմելիք խաթուն, որի հիշատակին կա մի խաչքար Գանձակի Սուլուկ գյուղի հին վանքում, 1447 թ.—Արցախ 270։

— 9. Շահմելիք, կին Սուլէյմանշահի և տատ Ամիրդօլի, որ Խլաթում գրել տվեց մի Ճաշոց 1450 թ.—Նօտարք 164։

— 10. Շահմելիք, հարսն է Յովհաննէս քահանայի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

— 11. Շահմելիք, կինն է Եղիսաբեթ (№ 18). ծնողներն են Առոմի (№ 56) Շահմելիքենց, որ Աղթամարում գրել տվեց մի Ճառընտիր 1461 թ.—Նօտարք 200։

— 12. Շահմելիք, դուստր Ստեփաննոսի և քույր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232։

— 13. Շահմելիք, հորաքույր տանուտեր Յովհաննէսի՝ մերձավորի Յովհաննէս քահանայի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 14. Շահմելիք, դուստր Յովհաննէսի և քույր Ջուլալ տիկնոջ, որ Գրիգոր արեղային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։

— 15. Շահմելիք, կին Թումայի և մայր Բարխըշայի, Խդըրշայի և Առոմի, երեքն էլ խոջա և տանուտեր Վանում, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 495—6։

— 16. Շահմելիք, կին Յովհաննէսի և մայր տանուտեր Ղարիպշահի (№ 4), որ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— 17. Շահմելիք, կին Յոհանէսի, եղբոր Հայրապետ աբեղայի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։

— Ավելի ուշ եղած հիշատակություններ են՝ Շահմելիք 1536 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 340 բ), 1668 թ. (անդ 160), 1681 թ. (անդ 186 բ), անթվ. (Թորոս աղբ. Բ. 369) են։

* ՇԱՀՄԵԼԻՔ, ար. սրա մասին տես Շահմելիք։

— 1. Շահմելիք, որդի Շահինշահի, թոռն Վիգէն իշխանի Սասնոյ, ի զատերէն հաստ, որ էր քույր Զորտուանէլի Գ † 1165 թ.—Թորոս աղբ. Բ. 313, Հայապ. 394։

— 2. Շահմելիք հոնիռապատցի, ազգական Արիստակէս եբե-

ցի, որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 բ։

— 3. Շահմելիք, որդի Կիրակոսի և եղբայր Կոստանդի, որ Նւզոկեայում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 133)։

— 4. Շահմելիք, ար. մի կաթսա նվիրեց Խուռնավիլի վանքին, Մանուէլ սարկավագի ձեռքով, 1493 թ.—Թորոս աղբ. Ա. 217։

*ՇԱՀՄԻՐԱՆ, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+میران mīrān «իշխաններ» ձևից. նշանակում է «թագաւոր իշխանաց». կա նաև սրա հակադիրը՝ Միրանշահ, որ սակայն արական է, հիշված է մի անգամ 1661 թ. (Ձեռ. Թաւր. 65 ա)։ Սրանից է ձևացած նաև Շահրիման, որ տես առանձին։

*ՇԱՀՄՈՒՐԱԴ, ար. < պրս. شاه‌مراد šāh Murād «Մուրադ թագավոր» ձևից, ինչպես կա Շահղուբաթ «թագավոր կաւատ» և նախորդի հակադարձը՝ Մուրադշահ։ Օսմանցոց Սուլթան Մուրադի անունից է կազմված։ Մի ժամանակ գործածական անուն է եղել, որից ունինք Շախմուրադ՝ անթվ. (Ձեռ. Վասպ. 570), Շահմուրադ ոՑ Ագուլեցի 1662 թ. (Սխսական 330) և Շահմուրադեան ազգանունը (Մուշ)։

*ՇԱՀՆԱԲԱԹ, իգ. < պրս. šāh «թագավոր»+Նաբաթ անունից, որ առանձին էլ գործածական է։ Հիշված է այս ձևով 1660 թ. (Ձեռ. Վասպ. 554), ԺԷ դարում (Ջքր. սարկ. Գ. 45), Շահնիբաթ, սեռն ու թիվը անհայտ (Ձեռ. Վասպ. 717). որից ունինք այժմ Շահնաբաթեան ազգանունը (Կովկաս)։

*ՇԱՀՆԱԴԱՐ, ար. տարբեր արտասանությունն է Շահնազար անվան, որ տես։

— Շահնադար, որդի Սուլթանի՝ եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

*ՇԱՀՆԱԶ, իգ. < պրս. شاهناز šāh+nāz բառերից և նշանակում է «արքայական նազանք ունեցող»։ Իբրև իգ. անձնանուն գործածված է Պարսից մեջ Ժ դարում (Justi 276 ա)։ Մեր մեջ հիշատակված է 1503 թ. (Ձեռ. Վասպ. 128), 1701 թ. (Bodleian 207), 1724 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 35 ա) և անթվ. (Ձեռ. Վեննա. Ա. 640)։

*ՇԱՀՆԱԶԱՐ, ար. < պրս. شاه «թագավոր»+արաբ. نظر nazar «հայացք» բառերից. իբր «նա որի վրա թագավորի հայացքն է ընկել, որ թագավորի հայացքին է արժանացել»։ Հնագույն հիշատակություններն են 1574 թ. (Կրպտ. եպս.՝ Դոփեանք 120),

1581 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա), 1597 թ. (Ձեռ. Սևան. 11 ա), 1606 թ. (Առաք. պատմ. 69 և Սիսական 72), Շահնայզար և Շահնազար (արդյոք դիտմամբ են այսպես աղավաղել, իբր «շան հիվանդություն») (Ձեռ. Վասպ. 859—860)։ Սրանից է Շահնազարյան ազգանունը, որ շատ տարածված է Կովկասում։ Նույն անվան տարբեր արտասանությունն է Շահնադար, որ տես առանձին։

— Մելիք Շահնազար, Վարանդայի մելիք Յուսէփի որդին էր և եղբայր մելիք Յովսէփի, որ Նադիրշահի հրամանով նշանակված էր Վարանդայի մելիք։ Իր ձեռքով սպանեց իր եղբորը և նրա ընտանիքը և խլեց Վարանդայի մելիքությունը։ Այս ապօրինի արարքի վրա Ղարաբաղի մնացյալ չորս մելիքները միացած, արշավեցին Վարանդա, գյուղերը ավարի տվին և մելիքին պաշարեցին Ավետարանոց գյուղում։ Մելիք Շահնազարը տեսնելով որ անհնար է կռվել այդ չորսի դեմ, միացավ Ջվանշիրցի Թուրք ավազակների առաջնորդ Փանահ խանի հետ, որ վաղուց թշնամացած էր նույն մելիքների հետ։ Կռիվը հաջողությամբ առաջ տանելու համար հիմնեցին Շուշվա ամուր բերդը (1752), ուր ամրացած Փանահ խանը՝ մելիք Շահնազարի հետ, մի կողմից նվաճեց Թուրք ցեղերին, մյուս կողմից կռվում էր շարունակ հայ մելիքների միացյալ ուժի դեմ։ Կռիվը տևեց 20 տարի։ Ղարաբաղը ավերվեց։ Մելիքները դիմեցին Վրաց Թեյմուրազ իշխանին. հայ-վրացական միացյալ բանակը Ասկերանի ճակատամարտում հաղթեց և մելիք Շահնազարն ու Փանահ խանը գերի ընկան. բայց Թեյմուրազ իշխանը խաբեց հայերին, և հակառակ իրենց պայմանի՝ չհանձնեց մելիք Շահնազարին և Փանահ խանին մելիքների ձեռքը, այլ մեծ փրկանք ստանալու հույսով՝ հետը տարավ Վրաստան։ Սրա վրա մելիքները դիմեցին Շիրվանի կառավարիչ Հաջի-Չելեբիին և նրա հետ միացած, արշավեցին Վրաց վրա, հաղթեցին նրանց, Ղազախն ու Շամշադինը անցան, ամեն տեղ թալանեցին, բայց չկարողացան ձեռք բերել մելիք Շահնազարին և Փանահ խանին, որոնց Թեյմուրազը փրկանքով արձակել էր։ Գանձակի Շահվերդի խանը, որ Ջրաբերդի մելիք Աղամի բարեկամն էր ու նրան երախտապարտ, միջամտեց և մելիք Շահնազարին ու Փանահ խանին հաշտեցրեց չորս մելիքների հետ։ Փանահ խանի որդին Իբրահիմ Պարսկաստանում Քէրիմ խանի մոտ պատանդ էր։ Փանահ խանը գնաց նրա ազատությունը խնդրելու։ Բայց երկու տարի մնալով Պարս-

կաստան, ոչ միայն չկարողացավ ազատել նրան, այլ և ինքն էլ արգելվեց վերադառնալ Ղարաբաղ։ Այն ժամանակ Փանահ խանը խորամանկությամբ մեռած ձևացավ, դագաղը մտավ և իրա-յինների միջոցով խնդրեց որ դագաղը հայրենիք փոխադրեն։ Քերիմ խանը հասկանալով խորամանկությունը, թույլատրեց, միայն թե հրամայեց որ զմռսեն դիակը, որպեսզի ճանապարհին չհոտի։ ...Այսպես սպանվեց Փանահ խանը։ Նրա մահից հե-տո՝ Քերիմ խանը Իբրահիմին խանության տիտղոս տալով՝ Ղարաբաղ արձակեց։ Մելիք Շահնազարը Իբրահիմ խանի հետ էլ բարեկամություն հաստատեց և իր աղջիկը Հիւրիզադ՝ նրան կնության տվավ։ Այս արարքը պատճառ դարձավ նոր պա-տերազմի մի կողմից մելիք Շահնազարի և Իբրահիմ խա-նի և մյուս կողմից հայ մելիքների և մանավանդ Դիզակի մելիք Եսայու միջև, որ Հիւրիզադի պապն էր։ Իբրահի-մը կարողացավ նրանց բոլորին վտարել երկրից և Ղարաբաղի մելիքությանց վերջ տվավ։ Մնաց միայն Վարանդայի Մելիք-Շահնազարը, որ մեռավ 1791 թ. Մահվանից քիչ առաջ զգալով ազգին հասցրած իր բոլոր չարիքների մեծությունը, իր մեղքը քավելու համար ձեռնարկեց շինել Ամարասը, բայց դեռ չվերջացը-րած մահը վրա հասավ։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 69—160։

*ՇԱՀՆԻ, ար. < թերևս պրս. شاهانی šāhānī «արքայական» բառից. հիշատակված է 1723 թ. (Նս. կթղ. 47) և 1724 թ. (Ձեռ. Դաղեան, թ. 35 ա՝ տպ. Շահնի)։

*ՇԱՀՆԻԱԹ, մր. < ըստ իս պրս. شاه šāh «թագավոր»+ արաբ. عنایت ʿināyat «ողորմություն» բառից. հմմտ. Ինիաթ ա-նունը որ այս վերջինից է կազմված. ըստ այսմ Շահնիաթ նշա-նակում է «շահի ողորմությունը». մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։

— Շահնիաթ, զավակ խոջա Ատոմի, որ իր երկու եղբայր-ների (խոջա Քարիմշա և խոջա Խզրշա) հետ, Վանում, Աղարիա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

*ՇԱՀՆԻԳԱՐ, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+ نگار nigār «նկար, պատկեր» բառերից, իբր «արքայանկար, այն որի դեմքը թագավորին է նման»։ Հիշատակված է 1621 թ. (Ձեռ. Հալէպի, թ. 133 ա), 1635 թ. (Ձեռ. Վասպ. 885), Շախնիգար 1642 թ. (անդ 765), Շահնիկար 1668 թ. (Թորոս աղբ. Բ. 440), ԺԵ դա-րից ուշ՝ անթվ. (Տաշեան, Ցուց. 51 բ)։

*ՇԱՀՆՈՒԲԱՐ, իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+ نوبار nūbār

«նորահաս պտուղ» բառերից, իբր թե «արքային մատուցանելու նուբար»։ Հիշատակված եմ գտնում մի անգամ 1477 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 220) և մի անգամ էլ սխալագիր Շահումբար ձևով՝ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 442)։

*ՇԱՀՆՈՒԻԼ, իգ. (սեռն անհայտ). < պրս. شاه šāh «թագավոր»+արաբ. نول navl կամ نوال navāl «պարգև, շնորհ, կերակուր» բառերից, իբրև «արքային մատուցանելու պարգև»։ Մի անգամ հիշատակված է 1544 թ. (Ձեռ. Վասպ. 286՝ Շ(ա)խնուիլ ձևով)։

*ՇԱՀՈՅ, ար. < պրս. شاهو Šāhū անունից, օր. Շահուափզան իշխան, որ ապստամբեց Մոլթանում՝ ԺԴ դար։ Հիւբշ. 58 պրս. šāhōl համարում է փաղաքշական ձև՝ Շահդոստ, Շահմարդան և նման անունների. ինչ. Šāhūī որդի Haftwād-ի, պատերազմեց Արտաշիր Սասանեանի դեմ (Շահն. հտ. 5, էջ 252), Šāhūī ոմն իմաստուն (Շահն. հտ. 6, էջ 319) և ուրիշներ (տես Justi 278 բ)։ Բայց կա և պրս. شاهو Šāhū «մեծ և աննման գոհար»։ Անշուշտ մեր մեջ գործածական անուն էր Շահոյ, որից և Շահոյեան ազգանունը։

*ՇԱՀՈՒՄ, ար. և իգ. < պրս. شاه šāh «թագավոր»+թրք. -ımստացական հոդը, իբր «շահս, թագավորս». Հմմտ. Բէգում, Մելքում (=Մելիքում), Թաջում, Աղամ, Դադամ են անունները։ Իբրև իգ. հնագույն հիշատակությունը 1437 թվից է և գնում է մինչև ԺԷ դար. նաև այսօր էլ գործածական է։ Իսկ իբրև ար. գտնում եմ 1456 և 1504 թվերին։ Զանազանության համար ընտեղծվել են Շահումխաթուն և Շահումաղա ձևերը, որոնք տես տակը։ Սրանից է Շահումեան ազգանունը։

— 1. Շահում, կին Մելքիսեթի, որդւոյ Խաչատուրի՝ եղբոր տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 380։

— 2. Շահում (հավանաբար արական), որդի Մուրատի և եղբայր Վրթանէս քահանայի, որ Թովմա աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 31 ա։

— 3. Շահում, հարսն Գրիգորի, 1458 թ.—տես Փաշամելէք։

— 4. Շահում, կին Սուլթանշահի՝ եղբոր Էգլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 473։

— 5. Շահում (սեռն անհայտ), մեռել է 1498 թ. Յուում է

զամբանը Շամախիի Առուշանայ գյուղում։— Բարխուտ. Աղուանից երկ. 202—3։

— 6. Շահում, դուստր Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— 7. Շահում խաթուն, կին Իսկէնդէրի՝ որդւոյ Սմբատ թագաւորի (1466). մայրն է Գրիգորիս Ա. Աղթամարցի բանաստեղծ կաթուղիկոսի. մեռել է նախ քան 1534 թ.— Ակինեան՝ Գաւազանագիրք 108, 125։

— Ավելի ուշ ժամանակից հիշատակված են Շահում իգ. 1503 թ. (Ձեռ. Վասպ. 127), Շահում ար. 1504 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 31 բ), Շայում խաթուն 1509 թ? (Ձեռ. Վասպ. 640), Շահում (սեռն անհայտ) 1513 թ. (Սմբատեանց՝ Սաղիան 186), Շահում իգ. 1548 թ. (Ձեռ. Մանաս. 25 բ), 1575 թ. (Թորոս աղբ. Բ. 410), Շայում իգ. 1575 թ. (Ձեռ. Վասպ. 210), Շահում իգ. 1581 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32 ա), 1585 թ. (Ձեռ. Վասպ. 650, երկու անձ իգ.), 1617 թ. (Տաշեան, Ցուց. 482)։ Ավելի հին է 1497 թ. (անդ 284), բայց կասկածելի է իբր նոր հավելում։ Մի քիչ այլափոխյալ ձև ունին Շայիմ խաթուն (Ձեռ. Վասպ. 656 անթվ.), Շահում ար. (Ջամբռ 205, Եղիազար կաթուղիկոսից 55 տարի առաջ, շուրջ 1627 թ), կրճատ ձևով Շհօ իգ. 1658 թ. (Արցախ 74)։

* ՇԱՀՈՒՄԱՂԱ, իգ. < նույն Շահում անունից + աղա։ Հիշված է 1645 թ.՝ Շահումաղա կին Մկրտիչ քահանայի (Ձեռ. Մաղն. էջ 3), իգ. 1647 թ. (Ձեռ. Վասպ. 906), իգ. 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 653), և անհայտ թվականով՝ երկու իգ. Bodleian 147 և Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ։— Այս բոլորի մեջ աղա իբրև իգ. զարմանալի չէ, որովհետև միայն Տաճիկների մոտ աղա հատուկ է արական սեռին, իսկ Պարսիկների մոտ նաև իգ. պատվանուն է։

ՇԱՀՊԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք՝

— Շահպան, պարոն ոմն, հիշված է Սպիտակաւոր վանքի մի արձանագրության մեջ 1494 թ.—Խաղբակեանք 237 (համարում է Պռօշեան տոհմից)։

Շահպատ տես Շնորհաւոր։

† ՇԱՀՊԱՐՈՆ, ար. < պրս. šāh «թագավոր» + հյ. պարոն բառերից բարդված։ Սրանից է Շահպարոնեան ազգանունը (Նոր-Նախիջևան)։

— 1. Շահպարոն, հայր Ցովհաննէս քահանայի, որ Խար-

բերդում Ցակոբ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Bodleian 8։

— 2. Շահպարոն, քեռայր Ջահվիլի, որ Մուղնիում ստացավ մի Գանձարան, 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

— 3. Շահպարոն, որդի Աղիլշահի. երկուսով մի Ցայսմաւուրք նվիրեցին Սակաաբերդի եկեղեցուն 1491 թ.—Այրարատ, էջ 443։

— Ավելի ուշ հիշատակված է 1638 թ. (Ձեռ. Վասպ. 895)։

ՇԱՀՊԹԱՆ, սեռն ու ծագումը անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված ԺԶ դարում.—Ձեռ. Սանաս. 24 ա։

*ՇԱՀՌՈՒԽ, ար. < պրս. šāhrux անունից, որով հայտնի է Շահռուխ՝ Լէնկթիմուրի որդին, որ իշխեց 1408—1447 թ. ըստ Justi 277 բ կազմված է պրս. شاه šāh «թագավոր»+رخ rux «հերոս, հսկա» բառերից (բայց կա նաև rux «հսկայամարմին և հաղթանդամ առասպելական մի թռչուն» (ԳԴ)։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ՝ ար. Շահռուղ ձևով, անթվական, բայց 1476 թվից ուշ (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339)։ Իսկ իգ. սեռով՝ Շահռուղ 1509 թ. (Ձեռ. Վասպ. 641), Շայքռուղ, Շաքռուղ 1552 թ. (անդ 653), իսկ Շաւքռուխ՝ սեռն ու թիվը անհայտ (անդ 642—3)։

*ՇԱՀՌՕՋ, իգ. և հայտնի չէ թե արդյոք պետք է կարդալ Շահռօղ և միացնել նախորդի հետ։

— Շահռօղ, դուստր Ամիրբէկի և քույր մահտեսի Շահփաշայի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1453 թ.—Նոտարք 171, Ձեռ. Վասպ. 136։

*ՇԱՀՍԵԴԱ, սեռն անհայտ. < պրս. شاه šāh «թագավոր»+արաբ. صدا seda «ձայն» բառերից. իբր «նա որ արքայական ձայն ունի»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1798 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 76 բ Շահսեդա ձևով)։

*ՇԱՀՍՈՒԱՐ, ար. < պրս. Šāhsuvār անունից, որ նշանակում է «արքա ձիավոր, ամենալավ ձիավորը». հմմտ. Շահսուար՝ իշխող Մարաշի և Ալպիստանի, աներ Սուլթան Մէհէմմէդ Բ-ի, † 1470, Շահսուար փաշա Սէլիմ Ա-ի (ԺԶ դար), Շահ սուար՝ կուսակալ Բոսնիոյ 1585 թ., նաև Շահսուվար սուլթան, ռուս կին, մայր Օսման Գ. սուլթանի՝ † 1756 թ. (Justi 278 բ)։ Մեր մեջ հիշատակված է երկու անթվական հիշատակարանում, մեկը՝ Շահսուար ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա, 1490 թվից ուշ), մյուսը Շաղսուար ձևով (Ձեռ. Վասպ. 441)։

*ՇԱՀՍՈՒԼԹԱՆ, իգ. <պրս. šāh և արաբ. سلطان sultān հոմանիշներից. սրա հակադիրը՝ Սուլթանշահ արական է։

— Շահսուլթան, առաջին կին Մարտիրոսի՝ որդւոյ խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 441։

— Ավելի ուշ հիշատակված են Շախսուլթան 1525 թ. (Ձեռ. Վասպ. 417—8), Շահսուլթան 1534 թ. (Միսակյան 44), 1602 թ. (Վասպ. 802), 1604 թ. (անդ 813), Շաղսօլթան 1610 թ. (անդ 838), Շահսուլթան 1640 թ. (Տաշեան, Ցուց. 703 և Ձեռ. Վասպ. էջ 898)։

* ՇԱՀՎԱԼԱԴ, ար. <պրս. šāh «թագավոր»+արաբ. ولد valad «որդի» բառերից, իբր «արքայորդի». հմմտ. Շահզադա։ Հիշված է մի անգամ ԺԸ դարից հետո (Տաշեան, Ցուց. 880)։

*ՇԱՀՎԱԼԻ, ար. <պրս. šāh «թագավոր»+արաբ. ولی vali, veli «տեր, պաշտպան» բառերից, իբր նա, որի տերն ու պաշտպանը թագավորն է։ Կազմության համար հմմտ. Խանդվելի։ Հիշատակված է Շահվելի ձևով 1609 թ. (Զքր. սարկ. Գ. 22) և Շահվալի ձևով 1627 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395)։ Օրանից է Շահվելունց ազգանունը 1748 թ. (Տաշեան, Ցուց. 1007)։

*ՇԱՀՎԵՐԴԻ, ար. <պրս. šāhverdi անունից, որ կազմված է պրս. šāh+թրք. وردی verdi «տվեց» բառերից, իբր «արքայատուր»։ Հմմտ. Շահվերդի բէգ բանաստեղծ, Շահվերդի Շիրազեցի գրիչ (1536 թ.) Justi 279 ա. մեր մեջ հիշատակված է ԺԷ դարից՝ Զքր. ագուլ. 72, Շահվերտի որդ. † 1648 թ. (Թորգոմեան, Սսամ. պատմ. Բ. 597), 1662 թ. (Միսակյան 481), 1672 թ. (Սմբատեանց՝ Երնջակ 12)։ Սրանից է Շահվերդեան ազգանունը։

† ՇԱՀՏԻԿԻՆ, իգ. <պրս. šāh «թագավոր»+հյ. տիկին բառերից, իբրև «շահի տիկին լինելու արժանի, թագուհի», ինչպես կա Շահպարոն։ Հիշատակված է մի անգամ ԺԵ դարում։

— Շահտիկին, դուստր Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում Դաւիթ գրչին գրել տվեց մի Ճաշոց 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243—4։

ՇԱՀՐԱ, իգ. ծագումն ինձ անհայտ (արդյոք šāh-i Rey Ռեյ քաղաքի շահը)։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում երկու անգամ. առաջինն է Շահրէ 1542 թ. Յովասափ Սեբաստացի տաղասացի կնոջ անունն է (Տաշեան, Ցուց. 488), երկրորդն է Շախրա 1630 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 118 բ)։

*ՇԱՀՐԱՄԻՐ, ար. <պրս. شهر šahr «քաղաք»+արաբ. امیر

amīr «իշխան» բառերից, այն է «իշխան քաղաքի»։ Մի անգամ գործածված է 1595 թ. (Ձեռ. Վասպ. 746) և մի անգամ էլ ուշ ժամանակի անթվական մի ձեռագրում (Ձեռ. Նոր. Բայազ. 39 ա)։ Մի անգամ էլ ունինք Շահրխմի ձևով 1725 թ. (Ձեռ. Վասպ 29), որ կարծում եմ թե Շահրեմիր ձևից է կրճատված։

*** ՇԱՀՐԻ**, ար. կա Շեհրի ձևով Պոլսում՝ ԺԷ դարից (Զամչ. Գ. 672, Ազգապ. 2518). անշուշտ կրճատ ձևն է Շահրիար, Շահրամիր կամ նման մի անվան։

*** ՇԱՀՐԻԱՐ**, ար. <պրս. شهریار šahriār «թագավոր» բառից, որ Պարսից մեջ էլ անձնանուն է. ինչ. Շահրիար՝ որդի Խոսրով Փարվեզ թագավորի (Շահն. հտ. 7, էջ 325) և ուրիշ 50 զանազան անձինք՝ մինչև արդի շրջանը, որ տես Justi 174—5։ Մեր մեջ գործածված է ԺԵ— ԺԷ դարերում։

— 1. Շահրիար, որդի Ամիրալիի՝ հորեղբոր Ամիրդոլի, որ Խլաթում գրել տվեց մի Ճաշոց 1450 թ.—Նոտարք 164։

— 2. Շահրիար, քեռու որդին է Շահփաշայի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1453 թ.—Նոտարք 171, Ձեռ. Վասպ. էջ 136։

— 3. Շահրիար ոմն հիշատակագիր 1497 թ.— Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45։

— Ավելի ուշ հիշատակված են 1595 թ. (Ձեռ. Վասպ. 744), 1629 թ. (իբրև «պապ, մեծ հայր», ուստի ԺԶ դարից. ՀԱ 1913, 693), 1656 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 604), 1657 թ. (Տաշեան, Ցուց. էջ 811)։

*** ՇԱՀՐԻԲԷԿ**, ար. <պրս. شهر šahr «քաղաք»+beg բառերից, իբր թե քաղաքի բէգը. հիշված եմ գտնում մի անգամ ԺԷ դարում (Ձեռ. Դաղեան, Ա. 55 բ)։

*** ՇԱՀՐԻԳԻԽԼ**, իգ. <պրս. شهر šahr «քաղաք»+گل gul «վարդ» բառերից, իբր «քաղաքի վարդը». մի անգամ հիշված է անթվական մի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարք. 262)։

*** ՇԱՀՐԻԿ**, իգ. և ար. ենթադրում եմ որ Շահրիմահ, Շահրիար կամ նման մի անվան կրճատ և գգվական ձևն է։ Իբր արական գործածության համար ունինք միայն Շահրիկեան ազգանունը (Տրապիզոն). իսկ իբր իգ. ունինք ավանդված ԺԴ դարից՝

— Շահրիկ, կին Մովսէս քահանայի, որ նորոգեց Գետաշէնի Աւետարանը 1383 թ.—Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 44։

*** ՇԱՀՐԻՄԱՆ**, ար. ծագումն անհայտ է. չգիտե Justi. բայց

ունի Šahrīrāmān անունը (էջ 277 ա), որից կարող էր արագաբանությամբ ծագել մեր ձևը։ Սակայն որովհետև այս անունը շատ հազվագյուտ է (միայն մի անգամ է հիշատակված), լավագույն եմ համարում ձևացած դնել տեղափոխությամբ Շահմիրան անունից, որ տես վերը առանձին։ Սրանից է Շահրիմանեան ազգանունը։

— 1. Շահրիման Թլկուրանցի, տանուտեր և առաջավոր Ամիթի հայոց. մեծապես նպաստեց Հայոց Ս. Թէոդորոս եկեղեցու շինության 1447 թ.—Արրտ. 1898, 48 ա, Հայապ. 574։

— 2. Շահըրման, որդի Սիրունի և եղբայր Գուլշատ խաթունի (№ 3), որ Արծկէում, Ներսեսենց Յակոբ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1464 թ.—Նոտարք 219։

— 3. Շահրիման, տանուտեր Թուրկուրանի, նահատակվեց «1580 թ».—ընդարձակ տես Մարգարայ № 59։

* ՇԱՀՐԻՆԱԶ, իգ. <պրս. شهرناز Šahrnāz անունից. այս անունով հայտնի է Ջեմշիդի քույրը, որին «ածեալ էր Զէհաք յամուսնութիւն ինքեան» (ԳԴ)։ Այս անունը, որ տալիս է Ֆիրդուսին, ըստ Justi 293 ա սխալ ընթերցմամբ առաջացել է պհլ. Savaṅhawāč ձևից, որ և Saṅhawāz>արաբ. سنواز Snwāz և նշանակում է «օգտակար խոսքեր ասող»։ Ֆիրդուսին սխալվել է հատկապես պհլ. n և w շփոթելով իրար հետ, որովհետև միևնույն ձևով են գրվում։—Ըստ Թէոդիկի, անցյալ դարում գործածական է եղել Պոլսում այս անունը Շեհրինազ ձևով։

Շահրիստան տես Շահաստան։

Շահփալ տես Շահփար։

* ՇԱՀՓԱՇԱ, իգ. <պրս. šāh և թրք. paša պատվանունների բարդությամբ, ինչպես ունինք Շահմելիք, Շահսուլթան, Շահպարոն, Շահամիր և նմանները։

— 1. Շահփաշայ, կին Մուրատբախշի, որդւոյ Աբդուլմսեհի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. Արրտ. 1911, 461։

— 2. Շախփաշայ, կին նահատակ Աստուածատուր քահանայի, որ Վանում գրել տվեց մի Գանձարան 1448 թ. այս Գանձարանը ապա գերի ընկավ և Շահփաշան երկու գրիվ ցորեն տալով ազատեց գերությունից։—Նոտարք 158։

— 3. Շահփաշա, որդի! Ամիրբէկի, մայրն է Սայմէլիք. կինն է Ջէտիլ փաշա. մահտեսի էր. Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Նոտարք 171, Ձեռ. Վասպ. 136—7։

— 4. Շաճփաշա, դուստր Մկրտիչի և քույր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 5. Շախփաշա, երկու վաղամեռիկ հանգուցյալ դստերք տանուտեր Ղարիպշահի (№ 4), որ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Շաճփաշա՝ 1542 թ. (Տաշեան, Ցուց. 488. Յովասափ Սեբաստացի տաղասացի մայրն է. նույնը հիշում է Յ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ ի), գրված է ըստ Վանեցոց արտասանության Շախփաշա (Տաշեան, Ցուց, 531), որից Շաղփաշա 1581 թ. (Ձեռ. Վասպ. 465 և 695), Շաճփաշա 1589 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167 բ), Շաղփաշա 1594 թ. (Ձեռ. Վասպ. 736 են)։

* ՇԱՀՓԱՐԻ, իգ. <պրս. شهپری šāhparī «յամբար կոչված անուշահոտ ծաղիկը». հիշատակված է 1609 թ. (Bodleian 110), 1634 թ. (Ձեռ. Վասպ. 884), 1724 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 35 ա), 1747 թ. (Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, 222), 1801 թ. (Ձեռ. Բուլղ. =ՀԱ 1937, 577), դարձել է Շաճփալ 1670 թ. (Ձեռ. Վասպ. էջ 938)։

* ՇԱՂԱԹ, ար. համարում եմ Շաղաւաք բառից կրճատված. տես անդ։

— Շաղաք, որդի խոջա Յովհաննէսի, հորեղբորորդւոյ խոջա Յովսէփի, որ Տարօնի իշխանն էր և Մուշում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

ՇԱՂԱԿՈՒԿ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք հիշված՝

— Շաղակո՞ւկ (սեռ. Շաղակկոյ), կին Խորէնի և մայր Հայրապետի, որ իր ծնողների հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Փառիսոսում, 1271 թ.—Արձ. Արցախ 307։

ՇԱՂԱՄԱՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1538 թվից ուշ գրված մի ձեռագրում (Ձեռ. Վենետ. Բ. 536)։

* ՇԱՂԱՒԱԹ, ար. <արաբ. شفقت šafaqat «գութ, կարեկցություն» բառից (Պարսկաստանում հնչվում է šafaγat)։ Հայերենում ղ և ւ տեղափոխվել են։ Հնագույն հիշատակությունը 1549 թ. (Ձեռ. Վասպ. 651), որից հետո ունինք 1552 թ. (անդ 654), 1575 թ. (Rapport Belgique 24), 1574 թ. (Ալիշան, Հայ-Վենետ. 294 և Սիսական 411 բ, տպված է Շաւալաք Ջուղայեցի

ոՖ, որ պետք է ուղղել Շաւաղաթ, ուր գեռ դ և ւ տեղափոխված չեն), Շաղուաթ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 808), Շաղաւաթ 1605 թ. (Դրնգ. 77), 1606 թ. (սեռ. Շաղաւթի՝ Ձեռ. Թաւր. 21  բ), 1611 թ. (Ձեռ. Վասպ. 844), 1615 թ. (անդ. 794), 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 բ), 1638 թ. (Ձեռ. Վասպ. 895), 1645 թ. (անդ 295), 1648 թ. (անդ 436), այլ գրչութեամբ և անթվ. Շաղօաթ (անդ 392), Շաղայաթ (անդ 394), Շաւղաթ (անդ 643)։ Սրա կրճատ կոչական ձեն եմ համարում Շաղօ տր. հիշված 1707 թ. (Ձեռ. Վասպ. 507) և անթվ. (անդ 419 և 550)։ Տես նաև Շաղաթ։

† ՇԱՂԻԿ, իգ. փաղաքշականն է Շաղոսկի անվան. այսպես Աթանաս գրչի մայրը մերթ կոչվում է Շաղոսկի և մերթ Շաղիկ՝ անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1418 թվից հետո (Ձեռ. Նոր-Բայազ. 33—34)։ Հիշատակված օրինակների մեջ սակայն Շաղիկ արական է. այսպես՝ Շաղիկ տր. 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 91 բ), 1638 թ. (Ձեռ. Վասպ. 895, ուր ասված է «պատիկ Շաղիկն»), 1653 թ. (Թորոս աղբ. Ա. 121)։ Սրանից հետևում է, որ Շաղիկ նաև Շաղաւաթ տր. անվան փաղաքշականն է։ Այժմ գործածական է Պոլսում Շաղիկ միայն իբր իգ. և ամբողջական անուն։

*ՇԱՂԻՏԱ, ար. <ասոր. Šallīṭā անունից (Հիւբշ. 296), որի բուն նշանակությունն է «կարող, թույլատրելի, օրինական» (Brock. Lex. syr. 377 բ), նաև „magistratus, praefectus", որ հյ. թարգմանված է «յառաջամարտիկ» (Ցես. ժ. 24)։

— Շաղիտա, ասորի, Ամիդ քաղաքից, աշակերտ Դանիէլ քորեպիսկոպոսի, որի ձեռքով նշանակվեց վարդապետ Կորդուաց. Ներսէս Մեծն կարգեց նրան մենաստանների տեսուչ. ճգնում էր Առիւծ լեռան մեջ, երբ տեսիլքով հայտնվեց իրեն Մեծն Ներսէսի մահը «373 թ»։ Տփղիսի մեջ ընկղմվելով մեռավ։—Բուզ. Գ. ժդ. Ե. իե, իզ. Խոր. Գ. ի. Մեսր. եր. 113. Ցայսմ. նոյ. 19, փետր. 3.— Շաղիտայս, Շաղիտայն՝ Բուզ. Ե. իե, իզ.—սեռ. Շաղիտայ՝ Բուզ. Ե. իե (ցանկում Շաղիտայի). Ցայսմ. փետ. 3.— Շաղիտայի՝ Բուզ. Ե. իզ, իէ. Ցայսմ. փետ. 3.—Ըստ Ակինեան, Մատեն. հետազ. Բ. 142 սա է Ս. Շաղիտա ասորի, որ գործել է Դ դարում ի Բեթ Կարդու. վարքը տես Bedjan, Acta mart. et sanct. 1, 424—465։

† ՇԱՂՈՍԿԻ, իգ. <հյ. շաղ+ոսկի բառերից. (իբր նա որի գլխին ոսկի է շաղած. դեղին ոսկեգույն մազերի համար է ասված)։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերում։

— 1. Շաղոսկի, *դուստր Գալուստի և քույր Զանղուրբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Ավետարան՝ 1495 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 135։*

— *Ավելի ուշ ունինք՝ 1671 թ. (տես իմ Քնն. և Համմտ. Եզնկայ, էջ 5), 1686 թ. (Խաղբակեանք 255), 1702 թ. (*Manus. brit. mus. *168 բ) և անթվ. Ձեռ. Նոր-Բայազ. 33—34, ուր ունինք նաև սրա փաղաքշական ձևը՝* Շաղիկ, *որ տես առանձին։*

**ՇԱՂՈՒԲԱՐ**, *իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է Ձեռ. Վասպ. 344, անթվ.։*

**ՇԱՂՈՒԹՂՎԷ**, *իգ. անշուշտ խանգարված ձև է. հիշված է 1587 թ. (*Bodleian *107)։*

† **ՇԱՄԱՄ**, *իգ. <հյ.* շամամ *պտղանունից. գործածական է ԺԴ դարից մինչև այժմ. կրճատ ձևն է* Շամի *(Զանգեզուր)։*

— 1. Շամամ, *կին Սարգսի և մայր Խաչատուր գրչի՝ 1312 թ.—Տաշեան, Ցուց. 524 բ։*

— 2. Շամամ, *հիշված է մի խաչքարի վրա 1336 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 448։*

— 3. Շամամ, *քույր Իշխանի և հորաքույր Մկրտիչ կուսակրոն քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Ավետարան, 1344 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։*

— 4. Շամամ, *կին Խաչերեսի և մեծ մայր (տատ) Թադէոս (№ 44) փիլիսոփայի, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան, 1392 թ.—Ձեռ. Վասպ. 226, 228։*

— 5. Շամամ, *հանգուցյալ կին Խաչատուր քահանայի և մայր Դավիթ քահանայի, որ Արճէշում օրինակեց Ավետարանը 1455 թ.—Նոտարք 177։*

— 6. Շամամ, *դուստր տանուտեր Աստուածատուրի, որ Բերդաձորում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։*

— 7. Շամամ, *դուստր Ասիլմելիք տատի, որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Սարգիս երեցին, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 241։*

— 8. Շամամ, *կին Աստուածատուրի՝ հորեղբոր Վարդանի, որ Շատախում, Իսրայէլ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1491 թ.—Ձեռ. Վասպ. 517։*

— 9. Շամամ, *կին Մկրտիչ քահանայի, մայր Յովհաննէս քահանա գրչի, Որճոկ 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284։*

— 10. Շամամ, *կին Մկրտիչ քահանայի և մայր Յովհան-*

նէս քահանայի, որ Խիզանում, Ռուզ տիկնոջ պատվերով գրեց մի Ավետարան, 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

— Շամամ ավանդված է նաև 1627 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 544)։

ՇԱՄԱՑ, ար. ծագումն անհայտ։

— Շամայ ազգապետ աղվան, Վաչագան Գ Թագավորի օրով (Զ դար).—Կանոն. 197, Կղկնտ. Ա իզ (Շահն. ունի Ղամա. Տաշեան՝ Ցուց. 654 Շամա բեկուր)։

ՇԱՄԱՆԴՈՒԽՏ, իգ. <անշուշտ ծագում է Շաման ար. անունից+պրս. دخت duxt «աղջիկ». բայց անծանոթ է Շաման։ Պրս. կա شامان šāmān «չափ», شمان šamān «լացող, ողբացող, հեծվացող», որոնք հարմար չեն արական անվան։ Մի անգամ ունինք՝

—Շամանդուխտ, կին Բերոյի, մայր Պապոյնի, Արճ. Հաղբատի 1655 թ.—Justi 281 բ։

ՇԱՄԱՍ, իգ. ծագումն անհայտ, եթե Շամամ անունը չէ։ Հիշատակված է մի անգամ 1575 թ. (Թորոս աղբ. Բ. 410)։

*ՇԱՄԲԱԹ կամ ՇԱՄԲԱՏ, ար. ըստ Խոր. Բ. կգ (որից նաև Մխ. անեց. իա, Սամ. անեց. 46) նախկին Բագրատունեան, այն է հրէական անուն է, որ ապա դարձավ Սմբատ։ Իբրև հրէական անուն գիտե նաև Միխ. աս. 101։ Ըստ իս ասոր. Šabbəϑā անունն է, որ տվել է հյ. Շաբաթ (տես այս անունը)։ Ասորական կրկնակ բաղաձայնները թեև սովորաբար վերածվում են հյ. մի բաղաձայնի, բայց մի քանի շատ հին փոխառությանց մեջ դառնում են ռնգական+բաղաձայն. այսպես են քանքար, թանգար, շամփուր, անգամ, մանգաղ, ծնծղայ։ Ըստ այսմ Շամբաթ ներկայացընում է ասոր. Šabbəϑā անվան շատ ավելի հին մի ձևը քան Շաբաթ։ Իսկ Շամբատ ձևի մեջ տ գիտմամբ է դրված՝ հարմարելու համար Սմբատ անվան վերջաձայնին։

—Շամբաթ, հրեայ իշխան, որին Հրաչեայ հայկազն թագավորը (ըստ Զամչ. Ա. 10 Հայկակ Բ) գերի բերելով Երուսաղէմից, բնակեցրեց Հայաստանում։ Սրանից սերվեց Բագրատունի նախարարական տոհմը.—Խոր. Ա. իբ. Յհ. կթղ. գ. Մխ. անեց. գ (քիչ հետո Սմբատ). Կղկնտ. Ա. գ (նույնը Շահն. հրատ. Շբաթ). Մագ. թղ. հգ. Սամ. անեց. 45.— Շամբատ՝ Ուխտ. Ա. իգ. Մխ. անեց. ա, գ.—բց. ի Շամբաթայ՝ Յհ. կթղ. գ.—սեռ. Շամբատայ՝ Ասող. Ա. ե.—Սմպատայ՝ Վրդ. ժգ։ (Սույն Շամբատի ազգաբանությունը ըստ Իգնատիոս վարդապետի Մեկն. ղուկ. տես Զամչ. Ա. 182)։

Շամբար *տես* Շահամբար:

*ՇԱՄԲԻԹ, *ար. համեմատությամբ Շամբաթի նույն է* Շաբաթ, Շաբիթ *անունների հետ, որոնք տես առանձին։*

— Շամբիթ *Արծրունի, որդի Վահանի (Ն. Ք.˙Ա դար).— Արծր. Ա. զ։*

*ՇԱՄԷ, իգ. ծագումն անորոշ. հիշատակված է միայն Ջեռ. Հայէպի Ա. 275 բ (առանց թվականի)։*

**ՇԱՄԻԼ, ար. <արաբ.* شمیل Šamīl *կամ* شامل Šāmil *անուններից, որի բուն նշանակությունն է «Բեւաբէից փչող քամին» (Կամուս, Թրք. Թրգմ. Գ. 258—260)։ Այս անունով հայտնի եղավ Լեզգիների քաջ առաջնորդ շէյխ Շամիլը, որ Ղունիբ ամրոցում ամրացած՝ երկար տարիներ կռվում էր Ռուսաց դեմ։ Իր կինն էր* Աննա *հայուհին (տես անդ)։ Արղութեան Երկայնաբազուկ զորավարը 1859-ին գրավեց Ղունիբը և Շամիլին գերի վերցրեց։—* Շամիլ *անունը հայոց մեջ լսել եմ Ղարաբաղում։ Նկատենք սակայն որ շէյխ Շամիլի անունը գրվում է* شمویل Šamūīl *ձևով (տես* Чичагов, Шамиль на Кавказе и в России, СП. *1889 գրքի սկզբում դրված նկարի տակի ստորագրությունը՝ հակառակ դիրքով տպված)։ Սրանից կարելի է թերևս հետևցնել թե Շամիլ անունը Իսմայէլից է առաջանում կամ է Սամուէլ=Շմուէլ։*

**ՇԱՄԻԿ, իգ. <ծանոթ* Շամիրամ *կամ* Շամամ *անվան փաղաքշականն է։ Հիշատակված է 1589 թ. (Ջեռ. Հայէպի Ա. 167 բ) և անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1495 թվից ուշ (Թորոս աղբ. Բ. 276)։*

Շամիր *տես* Շահամիր:

**ՇԱՄԻՐԱՄ, իգ. <Ասորեստանեան առասպելական մի անվան ասոր.* Šamīrām *ձևից (Հիւբշ. 296)։ Շամիրամը Ասորեստանցոց Շամշի-Ադադ թագավորի սիրուհին էր, որ նրա մահից հետո եղավ խնամակալ Ասորեստանեան պետության և Շամշի-Ադադի փոքրահասակ որդու՝ Ադադ-Նիրարիի։ Երբ Ադադ-Նիրարին չափահաս դարձավ, ուզեց ազատվել Շամիրամից, սպանել տալով նրան։ Բայց չկար մեկը, որ չհաղթվեր Շամիրամի հրապույրներից, բացի մի ներքինիից։ Ադադ-Նիրարին այս ներքինիին հանձնեց Շամիրամին, որպեսզի սպանի։ Շամիրամը փախավ և անձնասպանություն գործելով՝ աղավնիի փոխվեց, երկինք վերացավ և աստվածուհի դարձավ։ Այս անունը գործածված է Ս. Գրքում եբր.* שְׁמִירָמוֹת Šəmīrāmōth *ձևով (Ա. Մնաց. ԺԵ 18, 20 և ԺԶ 5), որ է թալմ.* שְׁמִירָמוֹת Šəmiramōth,

*ասոր.* Šammuramat *իգական անունը, որ բուն նշանակում է «իմ անունն է բարձրությունն»։ Ս. Գրքի հույն թարգմանության մեջ տառադարձված է* Σεμιραμώθ, *որից և հյ.* Սամիրամովք: *Խորենացու մոտ Շամիրամը Ասորեստանցոց վավաշոտ թագուհին է, որ հաղթեց ողջախոհ Արային և նվաճեց Հայաստանը։ Իր ձեռակերտն է Վան քաղաքը, որ իր անունով կոչվել է* Շամիրամակերտ *(Կամուս, Թրք. թրգմ. Ա. 924 կոչում է* شمیران Šamīrān, *ինչպես գիտե նաև Շահն. հտ. 5, էջ 433)։ Շամիրամի և Արայի առասպելի մանրամասն վերլուծումը տես Աբեղյան, Հայ ժող. առասպ. 511—549։—Այս անունը հիշատակված է հայոց մեջ ԺԵ դարից և այժմ էլ գործածական է։*

— 1. Շամիրամ, *թոռն տանուտեր Առաքելի, որ Գամաղիելի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան 1469 թ.—Ջեռ. Վասպ. 455։*

— *Մի անգամ էլ հիշատակված է 1747 թ. (Ջեռ. Ագուլ.= Արրտ. 1911, 222)։*

*** ՇԱՄԼՈՒ**, *ար. < Թրք.* شاملو šamlu *«Դամասկոսցի» բառից։ Գտնում եմ մի անգամ հիշված Տաշեան, Ցուց. 456 բ՝* Շամլու *ոն, որ օրինակել է Սաղմոսարանը, Սեբաստիա 1643 թ։ Նույն անձը 5 տարի հետո (1648 թ)․ դարձյալ Սեբաստիայում, օրինակել է Շարակնոցը (*Rapport Belgique *142)։*

— *Ուրիշ* Շամլու *անունով անձեր են՝ 1652 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 739), 1654 թ. (Ջեռ. Մեր.=ՀԱ 1926, 341), 1655 թ. (Թորոս աղբ. Բ. 372), 1656 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 604), 1663 թ. (Ջեռ. Մեր.=ՀԱ 1926, 336), 1664 թ. (անդ 1926, 551), 1666 թ. (անդ 1927, 37)։*

*** ՇԱՄԽԱԹՈՒՆ**, *իգ. < կարելի է բացատրել նախ իբր Շամի (Դամասկոսի)* խաթուն *և երկրորդ՝ արաբ.* شمس šams *«արեգակ» բառից, իբրև կրճատ ձև* Շամսախաթուն *կամ* Շամսխաթուն *անունների, որոնք իրոք էլ ավանդված են (շ-ի համար հմմտ.* Շամշադին*)։ Միջին ձևերը՝* Շամշախաթուն *և* Շամէխաթուն, Շամէխաթուն *ավելի հավանական են դարձնում երկրորդ ենթադրությունը։*

— 1. Շամքխաթուն, *դուստր Փարոնպապի, կին Առաջպարոնի և մայր Դշխուն տիկնոջ, որ Ասպաւերուկ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ջեռ. Մեր. (ՀԱ 1925, 132)։*

— 2. Շամքխաթուն, *կին Փարոնպապի և մայր Դշխունի,*

որ Ասպաւերուկ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.— Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 132)։

— 3. Շամէ խաթուն, դուստր Աստուածատուրի և քույր պարոն Ֆրանճի, որ Հալէպում գրել տվեց մի Աւետարան 1478 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

— Ավելի ուշ ժամանակից են Շամխաթուն 1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 229 ա), 1649 թ. (Ձեռ. Կես. սարգ. 13 ա), 1662 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 13), 1664 թ. (անդ 1924, 517), անթվական են Ձեռ. Թաւր. 74 ա և Ձեռ. Մաղն. 35, Ազգագր. հանդ. Է, էջ 56։

**ՇԱՄԽԻՆՇԱ**, ար. < թվի թե Շամախու շահ (թագավոր) ձևից է համառոտված և կամ Շահինշահ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 74 ա), որ գրված է 1311-ից հետո։

***ՇԱՄՇԱԳՐԱՄ**, ար. < ասոր. Šmšgrm անունից, որ և տառադարձված է Σαμψιγέραμος, Σαμψικέραμος (ըստ Ստրաբոնի՝ նախարար կամ արքայ Եմեսացւոց).— կա նաև Բարդածանի մոտ Շամշիգրամ ոճ (Հիւբշ. 289, Ալիշան՝ Լաբուբ. ծան. 4)։

— Շամշագրամ, նահապետ Ասպահունեաց, որին Եդեսիայի Աբգար թագավորը պատգամավոր ուղարկեց Մարինոսի մոտ.— Խոր. Բ. լ. Ցհ. կթղ. գ. Մխ. անեց. ժբ. Ասող. Ա. ե. Վրդ. ժգ.— գրված Շամշագրատ (երկաթագիր Մ և Տ տառերի նմանության պատճառով) Ուխտ. Ա. լբ։— Լաբուբնայի մոտ, էջ 2, հիշված է իբր իշխան Աբգարի, ասորի. Խորենացին հայացրել է. Ալիշան՝ անդ, ծան. 4 նույնացնում է Ստրաբոնի Σαμψικέραμος-ի հետ, նախարար կամ արքայ Եմեսացւոց, «ոչ շատ երիցագոյն ժամանակաւ քան զԱբգարն». և որովհետև նրա երկիրը կոչվում էր Ապամեա, ուստի Խորենացին շինել է Ապահունիք:

***ՇԱՄՇԱԴԻՆ**, ար. < արաբ. شمس الدين Šams-ad-dīn անունից, որ նշանակում է «արեգակն հաւատոյ»։ Բառը հայերենում դարձել է նախ Շամսադին (համմ. Նասրադին, երկու դ-ից մին պահված ) և ապա ս—շ բաղաձայնների նույնացմամբ՝ Շամշադին։ Այսպես են կոչում նույն իսկ օտարներին. ինչ. Շամշատին ամիրայ Բաղէշի՝ 1421 թ. (Նոր վկ. 234), Շամշադին ամիր Քըրդաց 1455 թ. (Նոտարք 182) են։ Այս անվան հետ նույն են Շամշադին գավառը և կրճատ Շադին անունը՝ որ տես։ Բայց տարբեր է Շատին, որից Շատինեան ազգանունը։— Շամշադին անունը գործածված է մեր մեջ ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Շամշադին Սահիպդիւան, որդի Աւագի (յետոյ կնո-ջէ), որդւոյ Իւանէ Ա աթաբէգի. հիշված է 1262 թ. (Շիրակ 62 ա). այս Շամշադինի դուստրն է Խուանդզայ, որ էր կին Շահըն-շահ Բ ամիրսպասալարի †1320 թ.—Արձ. Շիրակ 62։

— 2. Շամշատին խոճա, նորոգել է Տրապիզոնի Զարխա-փան եկեղեցին՝ իր կնոջ, Աւնոյի և պարոն Խաչատուրի հետ, 1431 թ.— Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 81։

— 3. Շամշատին, պարոն, հաֆայի մոտ Ս. Անտոն վան-քում գրել տվեց Քրիստոսատուր գրչին Տաղաչափութիւնք Շը-նորհալւոյ՝ 1432 թ.— Տաշեան, Ցուց. 1016։

— 4. Շամշադին, որդի Սելչուկ խաթունի, որ Հայրապետ-քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

— Ավելի ուշ հիշված ունինք 1506 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 79 բ), 1627 թ. (Ձեռ. Թաւր. 3 բ) և անհայտ թվականով անդ՝ 73 ա, 74 ա։

*ՇԱՄՇԱԶԱՄԱՆ, ար. < արաբ. شمس زمان šams-i-zamān «արե-գակն ժամանակիս» ձևից. մեր մեջ հիշատակված է մի անգամ, որ է՝

— Շամշայզամայ, զավակ Անտոնի՝ եղբոր խոջա Զաւզի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.— Ձեռ. Վասպ. 515 (ըստ վերնոյն պետք է կարդալ Շամշիզաման)։

*ՇԱՄՇԱԽԱԹՈՒՆ, իգ. < արաբ. شمس šams «արեգակ»+ խաթուն բառերից. տես և վերը Շամխաթուն։ Կարելի էր դնել նաև ասոր. šamšā «արեգակ» բառից, բայց որովհետև ԺԴ դա-րում ասորերենը ազդեցութիւն չունէր մեր վրա, ուստի մնում է արաբերենը, մանավանդ որ ավանդված են նաև Շամսխաթուն և Շամսախաթուն ձևերը։— Բոլորի կրճատ ձևն է Շամշայ, որ տես առանձին։

— 1. Շամշախաթուն, կին Արղուլմեհի՝ որդւոյ տանուտեր (Զ)ատար Մկրտիչի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 461։

— 2. Շամշախաթուն, դուստր Զաքարիայի և քույր հարա-պետ կրոնավորի, որ Սղկայու վանքում, օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 849։

— 3. Շամշայ խաթուն, քեռ աղջիկ տեր Ստեփաննոսի կամ քրոջ թոռ Զաքարիա կաթուղիկոսի Աղթամարայ. ամուսնացավ մի թուրքի հետ. † ԺԴ դար.—տես. Շամշայ խաթունենին՝ Արծր. յաւել։

— 4. Շամշախաթուն, դուստր Ստեփաննոսի, քույր Աստ-

քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։

— 5. Շամշայ խաթուն, կին Թօղանի. ծնողներն են Փաշայի, որ Թովմա Առաքելոյ վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463—4։

— Ավելի ուշ հիշատակված է Շամշախաթուն 1701 թ. (Ձեռ. Վասպ. 1027) և անթվ.՝ Ձեռ. Թաւր. 73 բ։

*ՇԱՄՇԱՑ, իգ. կրճատ ձևն է Շամշախաթուն անվան, որ տես վերը։ Նույնը դարձել է նաև Շամշի:

— 1. Շամշփ, կին Ստեփաննոսի. ծնողներն են Թովմա Մեծոփեցու. հայրը մեռել է 1406 թ. իսկ մայրը դեռ ողջ է այդ թվին (տես Սիսական 240 բ Թովմա Մեծոփեցու ձեռագիր հիշատակարանի նմանահանությունը)։

— 2. Շոմշա, դուստր Յովհաննէսի և քույր Վարդան կրոնավորի, որ Թումայ արեղային գրել տվեց մի Ավետարան, Աղթամար 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 3. Շամշայ, դուստր Ավետիսի, քույր հիւսն Յովհաննէս Ամիրզայի, որ ստացավ մի Ավետարան 1421 թ.—Ձեռ. Թաւր. 113 աբ (սեռ. Շամշի ձևով)։

— 4. Շամշի, դուստր Ավետիսի և քույր հիւսն Յովհաննէսի, որ գրել տվեց մի Ճաշոց, Աղէթ 1421 թ.—Ձեռ. Թաւր. 113 ա։

— 5. Շամշայ, մորաքույր բրուտ տանուտեր Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. էջ 370։

— 6. Շամշին (սեռ.), սեռն անհայտ. զավակ Ամիրմելիքի՝ ուսուցչի Յովհաննէս կրոնավորի (№ 978), որ գրել տվեց մի Ավետարան 1445 թ.—Նոտարք 147։

— 7. Շամշայ, դուստր Յովանէսի՝ եղբոր Թումայի, որ Ներսէս արեղային գրել տվեց մի Ավետարան, Աղթամար 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։

*ՇԱՄՇԻԿ, սեռն անհայտ. կրճատ և փաղաքշական ձևն է Շամշայ անվան. հիշված է մի անգամ 1663 թ. (Bodleian 253)։

*ՇԱՄՇԻՂԱՄԱՐ, իգ. < արաբ. شمس و قمر šams-u-qamar «արև և լուսին» ձևից։ Այս ձևով կա՝

— 1. Շամշիղամար, դուստր Բաղդասարի, իր քրոջ Մուղալ խաթունի հետ միասին, Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Ավետարան, 1461 թ.—Արցախ 139։

— Նոյն անունը ունինք մի անգամ էլ Շամշիխամար ձևով՝ 1620 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 250։

*ՇԱՄՈՒՆ, ար. ծագումը տես Շմաւոն. մեր մէջ սովորական չէ այս ասորական ձևը. կայ միայն Շամուն ոմն Սեբաստացի (Ձեռ. Վենետ. Ա. 248), թիւը անհայտ, բայց 1476 թվից բավական ուշ։

*ՇԱՄՈՒՆԷ, իգ. նախորդի իգականն է. այս անունով հայտնի է Շամունէ՝ մայր եօթն Մակաբայեցի եղբարց։ Մեր մէջ հնում գործածված չէ. վերջին ժամանակներս երբեմն գործածվում էր։

*ՇԱՄՍ, ար. < արաբ. شمس šams «արև» բառից. հիշված ունինք՝

— 1. Շամս, տաղասաց ԺԶ դարու.—Յուշիկք, Բ. 125։

— 2. Շամս, 1608 թ. (Ձեռ. Վասպ. 824)։

*ՇԱՄՍԽԱԹՈՒՆ, իգ. < արաբ. شمس šams «արև»+խաթուն բառերից. ավելին տես Շամխաթուն, Շամշայ։

— Շամսխաթուն կամ Շամսախաթուն, կինն է նշանավոր գրիչ Դանիէլ քահանայի, որ տես № 30. սրա զավակներն են Ստեփաննոս կրոնավոր, Յովաննէս, Զաքարիա սարկավագ, մյուս Զաքարիա, Կարապետ, Արմանի խաթուն և Վարդան կրոնավոր. սրանք հիշված են 1418—1437 թվերին։ որդիներից Վարդան և Զաքարիա հիշված են իբրև թուղթ կոկող և օգնական իրենց հոր։ Երկու Զաքարիաները միասին հիշված են Ձեռ. Վասպ. 383, առաջինը՝ Զաքարիա սարկավագը արդեն մեռած էր 1436 թ. ըստ այսմ վերը Զաքարիա № 54 (ուղղել որդի Թումա գրչի եղբոր Դանիէլ քահանայի) և № 66 պետք է միացնել. իսկ № 71 թողնել առանձին։—Ձեռ. Վասպ. 311, 366, 375, 383 (վերջինս սխալ գրված Համաս խաթուն, որ տես Գ հատորում, էջ 26. ուղղել Շամսօ կամ Շամսա)։

*ՇԱՄՕ, ար. կրճատ ձևն է Շամշադին անվան, որ տես։ Հիշված է իբրև քրդի անուն 1437 թ. (Նոտարք 112)։ Մեր մէջ հիշատակված է մի անգամ ԺԵ դար։

— Շամօ, հայր տանուտեր Ղազարի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1418 թ.—Նոտարք 57, Ձեռ. Վասպ. 307 և 309։

ՇԱՅԱՄ, իգ. ծագումն անորոշ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1717 թ. (Կրպտ. եպս.՝ Դօփեանք 156)։

*ՇԱՆՇԻ, ար. կենդանի է այժմ Շամախիում (Սմբատեանց՝ Սաղիան 281). ընդարձակ տես Շահանշահ։

*ՇԱՆՈՒՇ, իգ. < համարում եմ կրճատ ձևը Արշանոյշ անվան. մի անգամ հիշատակված եմ գտնում 1218 թվին. ավելին տես Խաչերես № 2։

ՇԱՇ, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Շաշ, եղբայր Մխիթարի և Դեղի, որոնք մի խաչքար են կանգնեցրել նրա հիշատակին, Վերին Ալտա 1262 թ.— Խաղբակեանք 134, Միսական 175.

— 2. Շաշ միայնակեաց, իր եղբայր Մաթուսի հետ մեծ աշխատությամբ շինեցին Հերհերի Ս. Գէորգ մատուռը 1297 թ. —Արձ. Միսական 112, Արրտ. 1889, 331։

— 3. Շաշի անստույգ ձևով հիշված է ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7 ա)։

*ՇԱՇԼՈՒ, իգ. համարում եմ թրք. sačlu «վարսավոր, ծամավոր, լավ մազեր ունեցող» իգական անունից, որ այժմ էլ գործածական է Թուրքերի մեջ։ Հայոց մոտ լսել եմ Ղարաբաղում։

*ՇԱՊՈՒՀ, ար. < պհլ. Šāhpuhr, պրս. Šāpūr անունից, որ տառադարձված է հուն. Σαπώρης, Σαβώρης, լտ. Sapor, Sapores, ասոր. Šāwōr, արաբ. Šābūr. բուն նշանակությունն է «արքայորդի» և ծագում է հպրս. xšāyaϑiyahyā+puϑra > պրս. šāh «թագավոր»+pūr «որդի» բառերից։ Հայերենի հնագույն ձևն է Շապուրհ, որ իբր տարբերակ գտնում ենք տեղ տեղ. ինչ. Մերշապուրհ, Գունդի Շապուրհ (Հիւբշ. 60)։ Շատ գործածական էր հին Պարսից մեջ. օր. Շապուհ Ա. որդի Արտաշրի Սասանեան (Շահն. հտ. 5, էջ 310), Շապուհ Բ. թագավոր Սասանեան (անդ 339), Շապուհ Գ. որդի Շապուհի (անդ 388), Շապուհ նկարիչ Խոսրով Բ-ի ժամանակ, Sābūr որդի Սահլի՝ բժշկապետ †869 թ-ին (Justi 284—7)։ Մեր մեջ այժմ քիչ գործածական է. անցյալ դարում կար Պոլսում և հնչվում էր Շապուխ։

— 1. Շապուհ եպիսկոպոս Արծրունեաց, Մեծն Ներսէսի շքախմբի անդամներից էր՝ Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ».—Մեսր. եր. 26։

— 2. Շապուհ թագավոր հայոց, «415—419 թ». Պարսից Յազկերտ Ա թագավորի որդին էր, որին նա նշանակեց Հայոց թագավոր՝ Խոսրով Գ-ի մահից հետո, նպատակ ունենալով պարսկացնել հայերին։ Հայերը անարգանքով վարվեցին նրա հետ, Շա-

*պուհը փախավ Պարսկաստան, Ներսէս Ճիճրակացին հարձակվեց Նրա բանակի վրա, ջարդեց ու Հայաստանից դուրս քշեց։ Քիչ հետո Շապուհը սպանվեց Պարսկաստանում «420 թ»։—Փարպ. Խոր. են, Մխ. այրիվ. 19, Սիմ. ապար. 34, Ջամչ. Ա. 497—502, Վրաց աղբ. Բ. 96։*

— 3. Շապուհ, *թոռն Շաբիթայ իշխանի Գողթան, եղբայր Վասակի, որ և կոչվում է Գիւտ վանահայր (Զ դար).—Օրբ. ի (ավելին տես Գիւտ № 6)։*

— 4. Շապուհ *Ամատունի, մին այն երեք իշխաններից, որոնք Արաբների առաջին արշավանքի գույժը Դուին հասցրին «640 թ».—Սեբ. խ։*

— 5. Շապուհ, *կուսակալ Փոքր Հայոց, հույներից հեռանալով՝ ընդունեց արաբական գերիշխանությունը՝ Մուավիէ ամիրապետի ժամանակ «661 թ»։—Ջամչ. Բ. 358։ Սրա հետ երևի նույն է՝*

— 6. Շապուհ *Ամատունի, զորավար արեմտյան Հայոց 667 թ. ապստամբեց Կոստանդ Բ. կայսեր դեմ, բայց ձիուց ընկնելով մեռավ։—Ցուշիկք, Բ. 335։*

— 7. Շապուհ, *եղբայր Սամուէլի, մասնակցեց Բագրևանդի պատերազմին՝ Մուշեղի հետ, ուր Սամուէլը ընկավ, բայց Շապուհը ազատվեց («775 թ»).—Վրդ. խա։*

— 8. Շապուհ *Ամատունի, Արաբներից նեղվելով, 12,000 հայոց գլուխն անցած՝ գաղթեց Պոնտոս. Արաբները ընկան նրա ետևից, բայց հաղթվեցին «788 թ»։—Ղև. խբ. Ասող. Բ. դ։*

— 9. Շապուհ *Մամիկոնեան, երեց որդի Մուշեղ Մամիկոնեանի, եղբայր Վարդի, ազատվեցին Բագրևանդի ճակատամարտից, ուր Մուշեղ ընկավ քաջությամբ «775 թ». ապաստանեցին Մերուժան Արծրունու մոտ, որ երկուսին էլ սպանեց «789 թ»։—Վրդ. խա.—Ջամչ. Բ. 415, Ազգապ. 890, 908։*

— 10. Շապուհ *Բագրատունի, որդի Սմբատ սպարապետի, եղբայր Աշոտ Մսակերի և հայր Աշոտ ապիհիպատի (833—842) և պապ Շապուհ պատմագրի։ Ազատվեց Բագրևանդի ճակատամարտից «775 թ» և ընկավ Սևադայի դեմ մղված պատերազմում «822 թ»։—Վրդ. խա, խբ.—սեռ.* Շապհոյ՝ *Ասող. Բ. գ. Վրդ. խբ.—Ջամչ. Բ. 415, 428, Ազգապ. 890, 921։—Սրա հետ անշուշտ նույն է, ինչպես ընդունած է նաև Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 174՝*

— 11. Շապուհ *Բագրատունի, որի հրամանով գրեց Ղևոնդը*

իր Պատմութիւնը, որ հասցնում է մինչև 790 թիվը.—սեռ. Շապհոյ՝ Ղև. խբ։

— 12. Շապուհ իշխան (աղվան թե պարսիկ), որ դավաճանությամբ սպանեց Ստեփաննոս Աբլասադին 830 թ.— Կղկնտ. Գ. ի։

— 13. Շապուհ Սիւնի, որի որդիքը՝ Հուռ, Բուրդոյ և Խոսրով, Սիւնեաց ազատներ, հիշված են իբրև վկա Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Շապուհոյ՝ Օրբ. լը։

— 14. Շապուհ, հայր Հասանի, որ իբր վկա հիշված է Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Շապուհոյ՝ Օրբ. լը։

— 15. Շապուհ Արծրունի, նահատակվեց Բաղդադում 851 թ. —Կղկնտ. Գ. իա. Մխ. այրիվ. 69։

— 16. Շապուհ Գնունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին Բուղայի դեմ «852 թ».—Արծր. Գ. դ։

— 17. Շապուհ Բագրատունի, եղբայր Աշոտ Ա-ի՝ «†890 թ». — Արծր. Գ. ժթ, ի, իբ. Վրդ. իբ.—սեռ. Շապհոյ՝ Յհ. կթղ. ւ. Արծր. Գ. իբ, իե։—Տես և № 21։

— 18. Շապուհ Բագրատունի, որդի Աշոտ ասպետապատրիկի. Աշոտ Մսակերի եղբոր՝ Շապուհի թոռն է. պատմաբան. գրել է Աշոտ Ա.-ի պատմութիւնը՝ նրա որդի Դաւիթի (№ 51) խնդրանոք։ Դաւիթը մեռել է 903—914 թվերի միջև. Աշոտ Ա-ն էլ գահակալեց «885 թ». ուստի Պատմությունը հասած պիտի լինի գոնե մինչև այս թվականը։ Նշանավոր է այս գիրքը նրանով, որ գրված է ժամանակի աշխարհաբար լեզվով։ Այս հույժ ցանկալի գիրքը հասած չէ մեզ (այս անունով Մեսրոպ եպիսկոպոսի հրատարակած Պատմութիւնը սրան չի պատկանում, այլ որևէ անծանոթ Արծրունի հեղինակի)։ Իր Պատմության մասերից է համարվում «Յաղագս թագին երանելոյն Կոստանդիանոսի». հմմտ. Ծռաքաղ 1861—2, էջ 127—9։ Ունի նաև մի փոքր գրութիւն՝ «Բան վասն պահոց»?—Կիր. 3. Սամ. անեց. 83. Մխ. այրիվ. 37, 70. Արծր. Գ. ի? Եա. կթղ. էջ ը.—սեռ. Շապհոյ՝ բց. ի Շապհոյ՝ Ուխտ. Ա. հե. Շապհ. 247—8. Յհ. կթղ. յոջ. իդ, իէ, իթ. Ասող. Ա. ա, բ, գ. Սամ. անեց. 3. Մխ. անեց. ե.—Շափոյ՝ (փխ. Շապհոյ. ինչ. սեպհական > սեփական) Ուխտ. Ա. հե.—Շապուհի՝ Կիր. 44։— Զարբ. Հին դպր. 503—6. Աթան. յոջ. էջ. հ (գրված է Շապուհ պատմագիր, որ է Որմբլզաֆբադայ սարատելատին և այլոց Ս. նահատակաց, որ ի թուին ԳՃԲ=853). տես Հայապ. 80. Սուտ-Շապհ. յոջ. (էջ 1—34). Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 167—225։

— 19. Շապուհ երեց, պարսատիկով կռվելով Արաբների արշավանքին՝ նահատակվեց Ժիրաքի կոտորածին Ուշտունիքում «852 թ».—Արծր. Գ. բ։

— 20. Շապուհ Ամատունի, մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ». իր երկու եղբայրների՝ Վահանի և Սարայի հետ՝ միացան Գագիկ Արծրունուն և սպանեցին Գագիկ Ապումրուանին «895 թ». վիրավորվեց Վասպուրականի Գուրգէն իշխանի դեմ մղած պատերազմում (Թ դար).— Արծր. Բ. գ. Գ. ժգ, իդ, իե. Ազգապ. 1009.— պետք է վերաքննել ժամանակը, որովհետև միևնույն անձը չի կարող կռվել թե 851 թվին և թե 44 տարի անց՝ 895 թվին։

— 21. Շապուհ իշխան Մոկաց. հաշտեցրեց Վասպուրականի Աշոտ իշխանին Գուրգէն Ապուպելճի հետ (Թ դար).— Արծր. Գ. ժէ։ (Ըստ Մարքվարտ, Բագր. 67 Սմբատ Խոստովանողի որդին է և եղբայր Աշոտ Ա-ի. տես վերը № 17)։

— 22. Շապուհ Բագրատունի, կրտսեր որդի Աշոտ Ա-ի և եղբայր Սմբատ Ա թագավորի. սպարապետ Հայոց. կոչում է իրեն «տէրանց տէր». «886 թվին» գնաց կարգադրելու Գրիգոր Դերենիկի ժառանգների հարցը. իր քրոջ՝ Մարիամ Սիւնեաց տիկնոջ ձեռքով շինեց Վանեվանից Ս. Գրիգոր եկեղեցին 903 թ. որա արձանագրությունը՝ որ ավանդում է Օրբ. լզ. նոր ընդօրինակությամբ տես Շահխաթ. Բ. 251, որից Սիսական 60։ Մեռավ Սմբատի («† 914 թ») կենդանության ժամանակ։ Իր որդին է Աշոտ բռնավորը. մի աղջիկը Տարոնի Դաւիթ Բագրատունի իշխանի որդու կինն էր, մյուսը Ափշին ոստիկանի.— Յհ. կթղ. լզ. լթ. Ասող. Գ. գ. Օրբ. լզ.— տես. Շապհոյ՝ Յհ. կթղ. յոջ. լզ. լե, լթ. Ասող. Գ. գ. Օրբ. լէ.—Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 142։

— 23. Շապուհ իշխան Արծրունեաց, հիշված է Աշոտ Գ Ողորմածի կեղծ նվիրագրում, 976 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 419, Արրտ. 1868, 33 ա։ Տես և Շահապ։

— 24. Շապուհ Անկէացի, որդի Շերեփի, եղբայր Թադէոս և Յիսէ բերդապահների. մեռավ Ճուաշ գավառում՝ Պարսից սպասավորներին վանելու ժամանակ (Ժ դար).— տես. Շապհոյ՝ Արծր. Գ. ժթ։

— 25. Շապուհ որդի Մայմանկի. ապստամբելով Գագիկ Արծրունու դեմ՝ տիրեց Ճահուկ գավառին, նվաճվեց և հնազանդվեց (Ժ դար).— Արծր. Դ. գ.— տես. Շապհոյ՝ Արծր. Դ. գ։

— 26. Շապուհ *քահանա, որի որդին Մարկոս վանահայրը գնեց Շահանշահից հողեր և նվիրեց Բագարանի Մայր եկեղեցուն, 1034 թ.— Արձ. Այրարատ 66։*

— 27. Շապուհ *զորավար Սենեքերիմ Արծրունի թագավորի. դեմ դուրս եկավ Թուրքերի առաջին արշավանքին «1021 թ», բայց անհաջող։ Երբ հունաց բանակը եկավ Սեբաստիա, պատժելու Ատոմ թագավորին, Շապուհը ուզեց դեմ դնել, բայց Ատոմը չթողեց «1051 թ»։— Ուռհ. 47, 48, 83. Ցայսմ. յունիս 1.— սեռ.* Շապհոյ՝ *Ուռհ. 48։*

— 28. Շապուհիկ *(սեռ.* Շապհկան*), որդի Գարբանիէլի, արշակունեան պահլաւունի, իշխանաց իշխան, հողեր է գնել և նվիրել Սանահնի վանքին 1061 թ.—Արձ.* Justi *287, Ազգ. հանդ. Գ. էջ 297։*

— 29. Շապուհ *կրոնավոր, Սևորդեաց նահանգից. նրան է գրում Մագիստրոսը իր* ծթ *նամակը (ԺԱ դար).—Մագ. Թղ.* ծթ։

— 30. Շապուհ *փորագրիչ, որ քանդակել է մի խաչքար՝ Առաքելի հիշատակին, Վայոց ձորի Սայլան գյուղում 1222 թ.— Սիսական 129։*

— 31. Շապուհ, *Ցիննեից գյուղից. որդի Վարդազատի. մերձավոր ժահանեսի Պօղոսի, որ Ջերմաձորում գրել տվեց մի Ավետարան 1451 թ.— Նոտարք 168։*

*ՇԱՌ, որ. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝*

— Շառ *(սեռ.* Շառայ*), ջրմուղ է շինել տվել Անապատի եկեղեցու համար 1253 թ.—Արձ. Տեղեկ. Արմֆանի 1940 թ. № 4, էջ 173։*

*†ՇԱՏԱՂԷԿ, որ. < հյ.* շատ+աղեկ *բառերից բարդված. մի անգամ հիշատակված ունինք՝*

— Շատաղեկ, *որ նվերներ է արել Հառիճի վանքին 1235 թ.—Արձ. Շիրակ 159 (Արձ. անթվական, բայց վանահոր թվականն է շուրջ 1235 թ)։*

**ՇԱՏԱՆ, որ. < պրս.* شادان šādān *«ուրախ» բառից, որ սովորական անուն էր Պարսից մեջ՝ սկսած պահլավական շրջանից.* Justi *270 հիշում է 20 անձ. որ.* Šādān *պատմիչ ոմն, որ հիշված է Շահն. հտ. 6, էջ 356. մեր մեջ ավանդված չէ, բայց կա* Շատանեան *ազգանունը։*

*†ՇԱՏԱՐԵՒ, որ. <հյ.* շատ+արև *բառերից. բուն նշանակում է «երկարակեաց», ինչպես կա նրա հակադարձը՝ Արեւշատ։*

Սրանից է Շատարևեանց ազգանունը, ինչպես կա Արևշատեանց։

— 1. Շատարև, հորեղբորորդի տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 2. Շատարև, վաղամեռիկ որդի Ստեփանոսի՝ եղբորորդւոյ նույն տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 3. Շատարև, կինն է Նազխաթուն. ծնողներն են տանուտեր Առաքելի, որ Գամաղիելի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453։

—Ավելի ուշ հիշատակված են 1502 թ- (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 375), շուրջ 1586 թ. (Սիսուան 536 բ), 1595 թ. (Manus. brit. mus. 181 ա), 1621 թ. (Շահազիզ, Հին Երևանը 74, սխալ տպ. Շատարին), 1666 թ. (Ձեռ. Հալեպի, Բ. 8 ա)։

**†ՇԱՏԵՄԱՅՐ**, իգ. <հյ. շատ+մայր բառերից, իբր «բազում երախաների մայր»։ Կա մի անգամ՝

— Շատեմայր Կոնիռապատցի, օգնեց գնելու մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

**†ՇԱՏԵՐ**, սեռն անհայտ. < անշուշտ հյ. շատ բառի հոգնակիից, իբրև մաղթանք շատ տարիներ ապրելու։ Մի անգամ ունինք՝

— Շատեր, Թվի զավակ «պազազ Արէքսի, որ շինեց Սեբաստիոյ Դուրա գեղի եկեղեցին 1280 թ.—Արձ. որ հաղորդեց ինձ † Կ. Գաբրիկեան, 1912 ապր. 14։

**ՇԱՏԻ**, ար. ծագումն ինձ անհայտ. Թվի թե պրս. شادی šādī «ուրախություն» բառից է, արևմտյան տառադարձությամբ։

— Շատի, հայր Եղիշէ երեցի, որ Աղվանից Մաթէոս կաթուղիկոսից գնեց մի Աւետարան, 1438 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. էջ 44 ա։

**ՇԱՏԻՆ**, ար. ծագումն ինձ անհայտ. տարբեր է Շամշադին անունից՝ դ բաղաձայնի պատճառով։ Ենթադրում եմ Շատինեանց ազգանունից (Կովկաս). բայց ունինք նաև Շատին անունը, եթե վերջաձայնը որոշիչ հոդ չէ (հմմտ. Շատի)։

— Շատին, թոռ Սարգսի՝ հոգևոր զավակի Քաւուն միայնակեցի, որ գրել տվեց մի Աւետարան 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

**ՇԱՏԻՇ**, ար. ծագումն ինձ անհայտ. ունինք մի անգամ՝

— Շատիշ (սեռ. Շատիշին), ազգական Հայրապետ կրոնա-

վորի, որ Ջորոյ վանքում (Բաղբերունիք) գրել տվեց մի Ավետարան, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 691։

† ՇԱՏԼՈՅՍ, ար. <հյ. շատ և լոյս բառերից. իբր թե ավետիք տալու պես, աչքդ լոյս։ Հիշատակված է ԺԳ—ԺԵ դար. կա նաև Շատլոյսեանց ազգանունը՝ Այրարատ 258 (անթվ. Արձ)։

— 1. Շատլոյս, սեռ. Շատլոյսի, մի ձեռատունկ այգի է նվիրել Նորավանքին 1256 թ.—Արձ. Սիսական 199։

— 2. Շատլուս, հայր Սիրմայի՝ կնոջ Խութլուշայի, որ գրել տվեց մի Ավետարան, 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 78։

— 3. Շատլուս, կինն է Խաթունշահ. ծնողներն են Յովհաննէս վարդապետի (№ 916), որ սկսեց օրինակել Ավետարանը, բայց չավարտած վախճանվեց եղավ 1439 թ.—Ձեռ. Վասպ. 379։

† ՇԱՏՈՒԿ, ար. < կրճատ և փաղաքշական ձևն է Շատլոյս կամ Շատարև անվան։ Հիշված եմ գտնում մի անգամ 1666 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 8 ա)։

† ՇԱՐ, իգ. <հյ. շար բառից, ինչպես ունինք Նուշուշար. Երևանի բարբառով շար նշանակում է «մրգի շարան կամ ընկույզի միջուկի շարան՝ շուջուխ պատրաստելու համար»։

— Շար, կին Թորոսի և մայր Վարդան քահանայի, որ ստացավ մի Ավետարան 1280—1320 թվերին.—Ձեռ. Թաւր. 27 բ։

*ՇԱՐԱԲ, սեռն անհայտ. թվի արաբ. شراب šarāb «գինի» բառից. մի անգամ հիշատակված եմ գտնում անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1327 թվից ուշ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 462։—Տառուչգը տես Շարաֆ։

ՇԱՐԱՑ, ար. <դնում են պրս. šara «շատակեր» բառից. բայց այս դեպքում սպասելի էր հյ. Շարակ։—Գարամանլեան ՀԱ 1931, 713 համեմատում է սումեր. Շարա աստուծու անվան հետ։ Մի անգամ միայն ունինք՝

— 1. Շարայ Հայկազն, որդի Արամայիս նահապետի. նշանավոր էր իր շատակերությամբ. հայրը ուղարկեց նրան մի բերրի գավառ, որպեսզի իր շատակերության հագուրդ գտնի այնտեղ։ Գավառը իր անունով կոչվեց Շիրակ։ Իր վրա է շինված հայկական ամենահին առածը՝ «Թէ քո Շարայի որկորն է, մեր Շիրակայ ամբարքն չեն»։—Խոր. Ա. ժբ. Ուխտ. Ա. ժզ. Մինհամդ. 4. Սամ. անեց. 42.—սեռ. Շարայի, Խոր. Ա. ժբ. Բ. դ, գ. Ասող. Ա. ե. Վրդ. ժդ (հրատր. Էմինի՝ Շարայ). Ողբ եդես. 134. Սամ. անեց. 48։—Ալիշան, Հյատն. յաջ. քան, էջ 164 ասում է թե հետին գրիչներից ոմանք Շարայի փոխարեն դնում են եր-

կու անուն՝ Շարա և Սազ. ոմանք էլ այս երկուսը միացնելով գրում են Շարազ։

— 2. Շարայ անունը գտնում ենք մի անգամ էլ ԺԳ դարում, այն է՝

— Շարայ (ասում է «Ես Շարէս»), նվերներ է արել Տեղերի եկեղեցուն 1234 թ.—Արձ. Բանաս. 1903, 29։

ՇԱՐԱՆԴՈՒԽՏ, իգ. երկրորդ մասը հայտնի է որ պրս. duxt «աղջիկ» բառն է. բայց անծանոթ է մնում առաջինը։ Այժմ կենդանի և գործածված անուն է. գտնում եմ հիշված Սովետ. Հայաս. 1945 թ. մայ. 23, էջ 1, սյունակ 5։

ՇԱՐԱՇԱՆ, ար. ծագումն անհայտ։ Հայտնի է միայն՝

— Շարաշան, Սանասարի ցեղից. նշանակվեց Վաղարշակի կողմից մեծ բդեշխ Ասորեստանի սահմանի վրա, պարգև ստանալով Արձն և շրջակայքը.—Խոր. Բ. ը. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 49.—սեռ. Շարաշանայ՝ Վրդ. ժդ (ըստ Էմինի հրատ. իսկ ըստ Վենետիկի՝ Շարշանայ)։

*ՇԱՐԱՊԽԱՆ, ար. պետք է համարել իհարկե Շարափխան <արաբ. شرف šaraf «փառք» բառից, որ տես տակը Շարաֆ։ Հիշատակված է 1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 474).—Նույնի հետ հմմտ. նաև Շարաւ։

ՇԱՐԱՍՊ, ար. ծագումն անհայտ. (Justi 288 ա համարում է Շաւասպ անվան տարբերակը, որ շատ հեշտ բացատրություն է)։ Այս անունով ունինք մեր պատմության մեջ՝

— Շարասպ, Թագավոր Ծոփաց աշխարհի, Սելևկեանց ժամանակ, Ն. Ք. Գ դար (Լէօ Ա. 379)։

*ՇԱՐԱՒ, իգ. <արաբ. شرف šaraf «փառք» բառից, որ տես Շարաֆ։ Հիշատակված են այս ձևով՝

— 1. Շարաւ խաթուն, կինն է Կարապետ (№ 204) Մանկարոնի և դուստր Փաշայ տիկնոջ, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 2. Շարաւ խաթուն, հիշատակված է 1525 թ. (Ձեռ. Վասպ. 417, ուր նույնը էջ 418 գրված է Շարօ խաթուն)։

— Նույն անվան մի ուրիշ ձևն է՝

— 3. Շառաւ, «ծաղկեալ դաւակ» Աննայի, հանգուցյալ դստեր խոջա Յովսէփի, որ էր իշխան Տարօնոյ և Մուշում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 262։

*ՇԱՐԱՓՇԱՀ, ար. <արաբ. شرف šaraf «փառք»+պրս. شاه šāh «թագավոր». հիշատակված է ԺԳ դարում։

— Շարափշահ, *որդի Ապիրատ Պահլաւունու, եղբայր Սարգիս եպիսկոպոսի, կինն է Թագուհի (№ 5), աղջիկն է Թայիկ՝ որ էր կին Սասնայի՝ որդւոյ իշխանաց իշխան Խուռասի. ջաղացներ և մարգ է նվիրել Բագնայրին 1234 թ. հիշված է նաև 1262 թ.— Արձ. Շիրակ 118, 119. Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 17. Ալիշան, Շնորհ. էջ 14 (գրում է* Շարապշահ, *ինչպես գրված է Թայիկ Թագուհու Արձանագրության մեջ 1269 թ. Շիրակ 28)։*

*ՇԱՐԱՖ, *ար. Հարաբ.* شرف šaraf *«փառք, պատիվ» բառից. այս ձևով իբրև անձնանուն հիշատակված է 1547 թ. (ՀԱ 1937, 323), 1656 թ. (Երևմ. չէլ. օրագր. 218), բայց գրված է նաև* Շարաւ, Շառաւ, *որոնք տես։ Ունինք նաև* Շարաբ *ձևը, որ թեև շատ նման է արաբ.* شراب šarāb *«գինի» բառին, բայց նույնպես պետք է դնել այստեղ։*

* ՇԱՐԲԱԹ, *իգ. Հարաբ.* شربت šarbat *«օշարակ» բառից։ Հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում, այսպես* Շարբաթ *1586 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ), 1654 թ. (Ձեռ. Վասպ. 916),* Շարպաթ *1657 թ. (անդ 835), 1668 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 296),* Շարբաթ *1749 թ. (անդ 450), անթվ. (Ձեռ. Վասպ. 643, Ձեռ. Թաւր. 59 ա)։*

ՇԱՐԻԲԷԳ, *ար. թվի թե նախատառը վրիպակ է. սրանից ունինք միայն՝*

— Շարիբէգ, *որդի Տուլախի, որ դեռ նորափեսա էր և վաղամեռիկ եղավ. իր եղբայրը՝ տանուտեր Մարտիրոս, նրա հիշատակին գրել տվեց մի Աւետարան, Սարգիս վրդ Անիձորացի գրչին և նվիրեց Փողիկ գյուղի Ս. Սարգիս եկեղեցուն, 1489 թ.— ՀԱ 1894, 51—52։*

*ՇԱՐԽԱԹՈՒՆ, *իգ. ծագումը կարծում եմ որ պետք է լինի* Շահխաթուն, *այն է «Թագուհի», ինչպես որ իրոք էլ ունինք* Շահխաթուն *1511 թ. (Ձեռ. Վասպ. 645), և սրանից* Շահխաթունեան *ազգանունը (Կովկաս)։ Բայց ունինք նաև* Շարխաթուն *1589 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167 բ), 1683 թ. (Ձեռ. Կես. ածած. 55 բ), վերջապես* Շարխաթուն *ոմն, կին Աթանէսի, Կարնեցի (ԺԷ—ԺԸ դար)՝ Տաշեան, Ցուց. 736 բ։ Սրանք բոլոր կարող էին ձևափոխված լինել* Շահ *բառից. բայց կա նաև* Շար *իգ. անունը 1280—1320 թվերի միջև (տես վերը* Շար*), որից կարելի էր կազմել* Շարխաթուն, *մանավանդ որ ունինք ԺԳ դարից՝*

— Շարխաթուն, *դուստր Սարգսի և քույր Աղութ խաթունի, որ Վարդան երեցին մի Աւետարան գրել տվեց Վարագայ վանքում, 1260 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա։*

Շարխօշ *տես* Սարխօշ։

†ՇԱՐՄԱՂ, իգ. Հյ. շարմաղ բառից, այսպես կոչված դեմքի մաքուր սպիտակության պատճառով։ Մի անգամ գործածված եմ գտնում՝

— 1. Շարմաղ, կին Վարդան Կողեռնի, հիշված 1266 թ. Արքայակաղնի վանքում։ —Սիսուան 253 բ (սրանց հետ միասին հիշված են նաև Մովսէս որդի Ղազարայ, Գրիգոր Պետրոս և Ներսէս գրիչ, բոլորն էլ իբր նույն 1266 թվի ձեռագրից։ Բայց երևում է որ թյուրիմացության արդյունք է։ Նույն ձեռագիրը ընդարձակ նկարագրում է Թորոս աղբ. Ա. 183—9, բայց այս անունները չկան այնտեղ։ Ձեռագրի գրիչն էլ Թորոսն է և ոչ Ներսէս։ Ենթադրում եմ որ այդ կտորը տարբեր մի տեղից է, որ Ալիշանը սխալմամբ կցել է 1266 թվի Աւետարանին)։

†ՇԱՐՄԻԼԵԼԻԿ, իգ. Հյ. գւռ. շար մի լ/իլիկ «մանրիկ պտուղների մի շարք». մի անգամ ունինք հիշատակված՝

— Շարմիլելիկ, դուստր տանուտեր Ղազարի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 308։

†ՇԱՐՄԻԿ, իգ. գգվական ձեն է Շարմաղ կամ Շարմիլելիկ և կամ նման մի անվան. հիշատակված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (ԺԷ դար, Ձեռ. Սանաս. 7 բ)։

ՇԱՐՈՅ, ար. ծագումը անհայտ. մի անգամ ունինք ԺԳ դարից՝

— Շարոյ, որդի Ոսկեանի, որ կանգնեցրել է մի խաչքար, Տողագայ վանքում 1261 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 512։

ՇԱՐՈՒԿ, որ. անշուշտ կրճատ ձեն է Շար վանկով սկսող մի անվան. հիշատակված է մի անգամ 1710 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1925, 580)։

*ՇԱՐՈՒՀԻ, իգ. այս անունը գործածված է Ա. Թագ. Բ. 16 ուղ. Շարուհեա ձևով և քիչ հետո սեռ. Շարուհեայ. գործածված է նաև Բ. Թագ. մի քանի գլուխներում։ Դավթի քույրն է և մի քանի նշանավոր զորավարների մայրը։ Եբր. ձեն է צרויה ṣəruyā, որ ծագում է צרה ṣrh «երկունքի ցավ» արմատից։ Հունարեն տառադարձված է ուղ. և սեռ. Σαρουία, որ չգիտեմ ինչպես Σ վերածելով Շ, դարձրել են Շարուհեա։ Ավելի ուշ հետևցնելով սեռ. Շարուհեայ ձևից, ուղղականը շինել են Շարուհի, մինչդեռ ուղղականն է հենց Շարուհեա։ Այս անսովոր անունը մեր մեջ էլ մտնելով տվել է՝

— Շարուհի, կին Աւթաշէրի և մայր Ջէսարի, որ Երնջակի

*Նորակերտ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1357 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1925, 126)։*

**ՇԱՐՈՒՐ**, *իգ. ծագումն ինձ անհայտ. որովհետև անկարելի է կարծել, թե առաջացած լինի հյ.* շարոյր *«կնիք կուսության» բառից և կամ* Շարուր *տեղանունից։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1589 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167 բ)։*

**ՇԱՐՕ**, *իգ. անշուշտ կրճատ ձևն է* Շարխաթուն, Շարմաղ, Շարունի *կամ նման մի անվան։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվ. (Ձեռ. Վասպ. 699)։—Տես* Շարաւ № 2։

***ՇԱՒԱՍՊ**, *ար. < իրան.* *Šāvāsp *անունից. հմմտ. զնդ.* Syāvaspi *և սանս.* Çyāvāçva *անձնանունները. Պարսից մեջ կա միայն* Šawāsf *եղբայր Աֆրասիաբի. կազմված են* syāva *«սեաւ»+* aspa *«ասպ, ձի» բառերից և նշանակում են «սևաձի, նա որ սև ձիեր ունի». իրան.* sy>š *բարբառային ձևերից է. հմմտ.* Շաւարշ, Շաւարշան *(Հիւբշ. 61,* Justi *300)։—Այս բառի ստուգաբանությունն է ենթադրում Խոր. Գ. ծէ (Շաւասպ Արծրունու) հատվածը.—«Ծանուցեմ և զիս* արքայորդի (=Շապուհ) *ի սերմանէ Սանասարայ և ունիմ իշխանութիւն ընդ եղբարս քո զբարձն արքայի համբուրել՝* որպէս և անուանակոչեցեալս եմ*»։—Ուրեմն ըստ Խոր.* Շաւասպ *նշանակում է «արքայի բարձը համբուրող»։*

— 1. Շաւասպ *Արծրունի, հաջորդ Գողեանի (Ն. Բ. Գ. դար).—Արծր. Ա. գ։*

— 2. Շաւասպ *Արծրունի, որդի Վաչէի. մանկիկ էր երբ ազատվեց Տիրան Բ-ի («339—350 թ») կոտորածից և Մամիկոնեանների մոտ մեծանալով՝ փեսայացավ նրանց։—Բուզ. Գ. ժը. Դ. ժգ. Արծր. Ա. ժ.—սեռ. եզ. (ի)* Շաւասպայ՝ *Բուզ. Դ. ժգ. Արծր. Ա. ժ։*

— 3. Շաւասպ *Արծրունի, մականախաղում անարգեց Շապուհ թագավորին («415—419 թ»), անցավ կայսեր ծառայության և կարգվեց հազարապետ Յունահայոց.—Արծր. Ա. ժա.—սեռ.* Շաւասպայ՝ *Խոր. Գ. ծե. Արծր. Ա. ժա։*

— 4. Շաւասպ *Արծրունի, Յազկերտ Բ-ի ձեռքով բանտարկված նախարարներից մին «452 թ».—Փարպ. խէ. Եղիշ. 150։—Նույն է անշուշտ՝*

— 5. Շաւասպ *Արծրունի, որդի Մերշապուհի, հորեղբայր Աղան Արծրունու. ուրացավ իր կրոնը և Դուինում ատրուշան կանգնեցրեց. Վարդան Մամիկոնեանը սրով սպանեց նրան «450 թ».—*

Յհ. կթղ. ժե. Արծր. Բ. ա. Վրդ. իէ. Նհպտք. 92. Զուգ. 45.—սեռ. Շաւասպայ՝ Արծր. Բ. ա։

*ՇԱՒԱՐՇ, ար. <իրան. *Šāvarš անունից. հմմտ. զնդ. Syāvaršan, պազ. Syavaxš, փարսի Sīāvuxš, պհլ. Siyāvaxš, պրս. Siyāvaxš, Siyāvaš, Siyāvuš անունը։ Այս անունով էր կոչվում Քէյքաւուս թագավորի որդին (Շահն. հտ. 2, էջ 158), որ անմեղ սպանվեց Աֆրասիաբի հրամանով. իր գլխատման տեղում բուսավ շաւարշարիւն ծաղիկը (էջ 327). հմմտ. նաև Šāwuš որդի Սախրի, թագավոր Խուարէզմի, Siāwāš սուլթան, կուսակալ Դերբենդի (1634 թ) են։ Շատ ավելի նոր շրջանից՝ Սիաւուշ փաշա, վէզիր տաճկաց 1650 թ. (Երեմ. չէլ. օրագր. 20)։ Յն. տառադարձված է Σάβαρις։ Կազմված է syava «սև» + aršan «արու, հատկապես արու ձի» բառերից և նշանակում է «սևայովատակ, նա որ սև արու ձիեր ունի»։— sy >š, ինչպես և rš, xš, š զանազան իրանական բարբառների ձևեր են. հմմտ. նաև Շաւասպ (Հիւբշ. 61, Justi 300, Bartholomae 1631)։—Այս բառի քմահաճ ստուգաբանությունը տալիս է Մագ. թղ. ժթ. «Շաւարշ ըստ պարսկականին շարի բաշ՝ միշտ ուրախ թարգմանեալ» (ուզում է ասել šād bāš)։—Նույն անունից ուշ ժամանակ ձևացել է Շիօշ, որ տես։

— 1. Շաւարշ Հայկազն, նահապետ Հայկազանց, հաջորդ Առնակի. Ն.Ք. 1332 թ (ըստ Զամչ.) շինեց Շաւարշան քաղաքը (ըստ Ալիշան, Յուշիկք Ա. 240).—Խոր. Ա. ժթ. Կղկնտ. Ա. ժե. Սամ. անեց. 45. Մխ. անեց. գ. Միհ. համդ. 9. Վրաց պղբ. Ա. 74. —Շաւաշ՝ Շիր. քրոն. 31. Մխ. այրիվ. 18, 50։

— 2. Շաւարշ Բ. հայկազն, հաջորդեց Զարմայրին երկու տարվա անիշխանությունից հետո՝ Ն. Ք. 1180 թ. (ըստ Զամչ.—չունի Խոր)։—Սրանց մասին տես Ալիշան, Հյստ. 201։

— 3. Շաւարշ թագավոր Հայկազանց, հաջորդ Սարհանգի՝ ըստ Սեբ. Ս. (էջ 6, գրված Շաւաշ), Սիմ. ապար. 19։

— 4. Շաւարշ, կրտսեր որդի թագավորի Հայոց. և եղբայր Տիգրանի. Կիւրոսը գերեց նրանց՝ Հայաստան արշավելու ժամանակ (Ն. Ք. Դ դար).—Քսենոփոն, Կիւրոպեդ. Գ. 1 (§ 2), Σάβαρις ձևով։—Զամչ. Ա. 186, Ալիշան՝ Հյստ. 246, Այրարատ 557։

— 5. Շաւարշ Արծրունի, հաջորդ Աստղի, Ալեքսանդր Մակեդոնացու մահից (323) հետո.—Արծր. Ա. դ։

— 6. Շաւարշ եպիսկոպոս Աղուանից. կառավարեց Արտաշէ

թեմը, իբրև հաջորդ Շահէնի, «151—171 թ».—Զքր. եպս. 280, Արրտ. 1868 դեկտ. էջ 102։

— 7. Շաւարշ Արծրունի, հաջորդ Համազասպի, ժամանակակից Տիրան Ա-ի (131—132 թ. ըստ Զամչ.)—Արծր. Ա. ը։

— 8. Շաւարշ, որդի Սպանդարատ Կամսարականի. հորն ու Գաղաւոն եղբոր հետ ազատվելով Արշակ Բ-ի կոտորածից, փախավ Յունաստան։ Երբ Պարսիկները գերի էին տանում Խոսրով Գ-ին, Պարգև Ամատունու հետ 700 հոգով հարձակվեց նրանց վրա՝ ազատելու համար թագավորին. բայց այդտեղ գտավ իր մահը «389 թ».—Խոր. Գ. ծ.—սեռ. Շաւարշայ՝ Խոր. Գ. ծ.—գրծ. Շաւարշաւ՝ Խոր. Գ. լա—Կոգեան, Կծսրկնները 91—96։

* ՇԱՖԵԱԹ, իգ. < արաբ. شفاعت šafāʿat «բարեխոսություն» բառից։ Մի անգամ հիշատակված է 1464 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 117 ա)։

ՇԱՖՈՒՐ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված՝

— Շաւուր, եղբայր Ապիրատի և Աւելդատի. առաջին երկուսը երեք որդեն մեռած էին և Ապիրատը նրանց հիշատակին շինեց Խորանաշատում մի խորան 1220 թ.—Արցախ 323։

† ՇԱՔԱՐ, ար. և իգ. < հյ. շաքար բառից. Պարսից մեջ էլ ունինք Շաքար՝ երկրորդական կին Խոսրով Բ-ի (Justi 279 ա)։ Մեր մեջ այժմ գործածական է Ղարաբաղում իբր իգ. և Տփղիսում իբր ար., որից և Շաքարեան ազգանունը։ Հնից ավանդված է սկսած ԺԳ դարից՝ Շաքար, Շաքարբէգ, Շաքարխաթուն ձևերով, իսկ Շաքարշահ տես առանձին։

— 1. Շաքար, կին Գէորգի. միասին մի հող են նվիրել Հաւուցթառի վանքին, 1293 թ.—Արձ. Այրարատ 355 և Արրտ. 1871, էջ 330։

— 2. Շաքար, մերձավոր Թումայ և Հայրապետ քահանաների, որոնք Զաքարիա գրչին գրել տվին մի Աւետարան 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։

— 3. Շաքար խաթուն 1313 թ. տես Լոյս № 1։

— 4. Շաքար հավատավոր (կրոնավորուհի), հոգևոր դուստր Վարդիշխան քահանայի, որ Երուսաղէմում, Ստեփան Երկայն գրչին գրել տվեց մի Աւետարան, որի գրչության օգնում էր նաև Շաքարը՝ թուղթ կոկելով, 1321 թ.—Թորոս աղբ. Բ. 344—5։

— 5. Շաքար բէկ, որդի տանուտեր (Զ)ատար Մկրտիչի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460)։

— 6. Շաֆար, կին Հասան Մերգինցու, որ գնեց գերի ընկած մի Ճառընտիր, 1377 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 65 (տպ. Ջաֆար, որ ըստ իս այսպես պետք է ուղղել)։

— 7. Շաֆար (խաթուն), դուստր Մկրտիչի և քույր Ստեփանոս միայնակեցի, որ Աղթամարում գրել տվեց Ճառընտիրը, 1389 թ.—Ձեռ. Ազուլ. (Արար. 1911, 759, 764)։

— 8. Շաֆար խաթուն, որ «արեան մերձաւոր և յոյժ երախտաւոր» է եղել Կարապետ (№ 101) գրչին, որ օրինակեց Աւետարանը Աղթամարում, 1392 թ.—Ձեռ. Վասպ. 228։

— 9. Շաֆար, կին Ատոմի և մայր Աստուածատուրի, որ օրինակեց Ոսկեփորիկը 1403 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 932։

— 10. Շաֆար որ. ամն, կինն է Մարիամ. գրել տվեց մի Աւետարան՝ «Գաւառս» երկրում, 1418 թ.—Նոտարք 56։

— 11. Շաֆար խաթուն, կին Յովհաննէս քահանայի (№ 790), որ Տշող գյուղում գրել տվեց մի Ճառընտիր 1419 թ.—Նոտարք, էջ 59։

— 12. Շաֆար, կին Աստուածատուրի, մայր Թումայ կրօնավորի (№ 92)՝ հանգուցյալ հոգևոր որդու Վարդան աբեղայի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 324։

— 13. Շաֆարխաթուն, ազգական տանուտեր Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. էջ 370։

— 14. Շաֆարբեկ, ազգական նույն տանուտեր Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. էջ 370։

— 15. Շաֆար, կին Պարոնի. ծնողներն են տանուտեր Մկրտիչի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան 1441 թ.—Ձեռ. Վասպ. 382։

— 16. Շաֆար, դուստր Պետրոսի, քույր Դովլաթ խաթունի՝ կնոջ տանուտեր Ատոմի, որ Ոստանում գրել տվեց մի Գանձարան 1441 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։

— 17. Շաֆար, կին պարոն Կոստանդի, որ Եւդոկիայում, Անդրէաս երեցին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 133։

— 18. Շաֆար, մեծ պապ խոջա Խդրշահի, որ Վանում, Ազարիա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 19. Շաfար, հայր Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը՝ Հայրապետ աբեղային, 1490 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 12 ա։

— 20. Շաfար, ար. այլ ազգական նույն անձի, 1490 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 12 ա։

— 21. Շաfար, ազգական տանուտէր Պետրոսի, որ ստացավ մի Աւետարան՝ գրված Զաքարիա գրչի ձեռքով, Վանում, 1495 թ. —Թորոս աղբ. Բ. 276։

— 22. Շաfար, հայրն է Ատոմի՝ ամուսնու Հաբիբ (№ 3) տիկնոջ, որ Մարգարայ գրչին գրել տվեց մի Աւետարան, Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.— Ձեռ. Վասպ. 526, 528։

* ՇԱՖԱՐՇԱՀ, ար. <նույն Շաfար անունից+շահ պատվանունով։ Մի անգամ հիշատակված է ԺԵ դարում։

— Շաfարշահ, հոգևոր հայր Գրիգոր աբեղայի, որ օրինակեց Ցայսմաւուրքը Ագուլիսում, 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ, էջ 301։

ՇԱՖՏՈՒԹ ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1389 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.— Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 759)։

ՇԵԴՆԻԱՄ (ցանկում Շիզնաս), իգ. հիշված 1581 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա)—երկու ձևերից մրն է ստույգ։

* ՇԵԽ, որ և Շեխի, ար. <արաբ. شيخ šeyx «ծերունի, կրոնական աստիճան» բառից։ Հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում. այսպես՝ Շեխի 1593 թ. (Ձեռ Ագուլ.=Արար. 1911, 562), Շեխի՝ 1666 թ. (Ձեռ. Վասպ. 924), Շեխի 1708 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 45 ա), Շեխ 1708 թ.(Սմբատեանց՝ Գեղարք. 613), Շեխ անթվ. (Ձեռ. Վասպ. 571)։ Տես և հաջորդները։—Շեխեանց ազգանունը գտնում ենք 1221 թ. (Շիրակ 128)։

* ՇԵԽԱՄԻՐ, ար. <նույն Շեխ անունից + արաբ. امير amīr «իշխան». մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Բ. 622)։

* ՇԵԽԻՋԱՆ, ար. <նույն Շեխի անունից + ջան փաղաքշականով։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Շ՛իխիճան 1534 թ. (Ձեռ. Վասպ. 649), Շեխիջան՝ 1549 թ. (անդ 652), Շ՛իխիճան 1646 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 722), Շեհիջան՝ հիշատակված է երկիցս անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. էջ 462)։

* ՇԵԽՈՒՄ, սեռն անհայտ (երևի ար.) <նույն Շեխ անու-

նից՝ Թրք.-ստ ածանցական հողով, իբր «շեխս, իմ շեխը»։ Մի անգամ հիշատակված է Շիխում ձևով՝ 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 653)։

* **ՇԵՀՐԻ**, ար. < պրս. شهری šehrī «քաղաքացի» բառից. մի անգամ հիշատակված եմ գտնում 1656 թ. (Երևմ. չէլ. օրագր. էջ 201)։

* **ՇԵՐ**, իգ. պրս. شیر šīr «կաթ» բառից (և ոչ թե šīr «առյուծ», որ վայել է իբր ար. տես Շէր)։

— Շեր, դուստր խոջա Ջաւղի, որ Յովհաննէս արեղային գրել տվեց մի Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

† **ՇԵՐԱՄ**, ար. < հյ. շերամ «մետաքսի որդը» բառից. Նորահնար անուն է։ Հիշված կա նաև Շարամ (Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 232, 234). բայց արդյոք նույն է։

**ՇԵՐԱՆ**, ար. ծագումն անհայտ. տես և հաջորդը։

— Շերան Անեցի, օգնել է Առաքել (№ 11) աբեղա Անեցուն թարգմանելու արաբերենից մի երազահան՝ 1222 թ.—տես Լ. Խաչիկեան (Ն. Մառի… կաբինետի աշխտ. № 2, էջ 185, Վ. Աբրահամեան, Արհեստները (Երևան 1946), էջ 46։

**ՇԵՐԱՆԻԿ**, ար. Նախորդի փաղաքշականն է։

— 1. Շերանիկ, հայր Արասի՝ որ հիշվում է որպես վկա Տաթևի 881 թվի կալվածագրում.—սեռ. Շերանկին՝ Օրբ. լթ։

— 2. Շերանիկ (սեռ. Շերանկանն), հայր Ասլանի, որ իր կնոջ՝ Աստւշահի հետ կալվածներ է նվիրել Հոռոմոսի վանքին 1231 թ.— Շիրակ 20։

— 3. Շերանիկ (սեռ. Շերանկանն), զինվորական, որ կալված է նվիրել Հոռոմոսի վանքին. նմանապես իր կինը՝ Մարիամ.—Անթվ. Արձ. Շիրակ 24։

† **ՇԵՐԱՍՑ**, ար. հիշատակված է մի անգամ Անիի 1291 թվի մի արձանագրության մեջ, հետևյալ ձևով. «Ես Մխիթար որդի Շերասցի որդի Ջուսի Միսալուքենց»… (Շիրակ 86)։ Անշուշտ սեռական է, ուստի ուղղականը համարում եմ Շերասաց «երգիչ, երգասաց». այս բառը անձնանուն է թէ մականուն կամ տիտղոս։

**ՇԵՐԵՆԻԿ**, ար. < պետք է նույն կարծել նախորդ Շերանիկ ձևի հետ։

— Շերենիկ ոմն, ձկնորս, հիշված է 1211 թվի մի ձեռագրում, ուր և իր նկարը.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 47։

**ՇԵՐԵՓ**, ար. < հյ. շերեփ բառի՞ց?

— Շերեփ Ակէացի, որի որդիքը՝ Ցիսէ և Թադէոս բերդապահ էին Վանայ բերդում (Թ. դար).— սեռ. Շերեփայ՝ Արծր. Գ. իը, իթ.— Շերեփեան՝ Արծր. Գ. իթ.— Շերեփեանց՝ Արծր. Գ. իթ։

* ՇԵՐԻԿ (կա միայն սեռ. Շերկան), ար. < հայաձև փաղաքշականն է Շէր անվան, որ տես վարը։

— Շերիկ, հայր Յովսիան գրչի, որ Հազարակն գյուղում, Հայրապետ քահանայի համար գրեց մի Աւետարան, 1316 թ.— Ձեռ. Վաստ. 166։

*ՇԵՐՈՅ, ար. < պհլ. Šērōe, պրս. Šērōī անունից, որի տառադարձություններն են հուն. Σιρόης, ասոր. Šīrōi, արաբ. Šīrai։ Գրականն է šēr «առյուծ» բառով սկսվող մի անվան. ինչ, Šēr-āzād «առյուծազատ», Šēr—gīr «առյուծ բռնող», Šēr—mard «առյուծամարդ», Šēr—šāh «առյուծ արքայ» են (Հիւբշ. 61, Justi 297 ա)։ Այս անունով ծանոթ են Šīrūi զորավար Փերիգունի (Տաճն. հտ. 1, էջ 137), Շիրուի որդի Բահրամի՝ զորավար Նուշիրվանի (Տաճն. հտ. 6, էջ 159), Շիրուի, որ և Կաւատ, որդի Խոսրով Փարվիզի (Տաճն. հտ. 7, էջ 225)։

— 1. Շերոյ, որդի Վնդոյի, պարսիկ (ըստ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 302 հայազգի) մոգպետի Դուինի տորուշանում. կախվեց Բաջն Վարդան Մամիկոնեանի ձեռքով «450 թ».— Ցհ. կթղ. ժե. Վրդ. իէ.—Շիրոյ՝ Նհպտք, 92, են։

— 2. Շերոյ ի Մերդանշահեան, իշխան աղուան (է դար).— հրտր. Սամ. անեց. 286։

— 3. Շերոյ ապիհիւպատ պատրիկ, մեծ իշխան Աղուանից և տեր Գարդմանի, հակառակ կանգնեց Աղուանից Ներսէս կաթուղիկոսին, որ հարել էր քաղկեդոնության և ամիրապետի հրամանով շղթայեց նրան («713 թ»)։ Արաբների ձեռքով գերի տարվեց Տարօն և Ասորիք.—Կղկնտ. Գ. գ, ե, ը, ժ, ժէ. հրտր. Սամ. անեց. 286։

*ՇԵՐՊԱՐԻՔ, ար. < պրս. شیر šēr, šīr «առյուծ»+باریك bārīk «բարակ» բառերից?

— 1. Շերպարիք, որդի Սադունի և հայր Սադունի, որ Սասունի իշխանն էր (ԺԳ դար).—հմյ է.—սեռ. Շերպարըքի՝ Կիր. ծթ։

— 2. Շերպարիք կամ Գայլ Շերպարիք, որդի Դաւիթ իշխանի Շոթոռկանց. Վահանաւոր գյուղի կեսը նվիրել են Խծկոնից վանքին 1214 թ.—Այրարատ 112, Շողակաթ 182, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 33։

— Հիշված է նաև անթվական մի արձանագրության մեջ սեռ. Շըռքֆին! ձևով (Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 179)։

†ՇԷԿ, ար. < հյ. շէկ բառից (հմմտ. Սարուխան, Սարիբէկ, Սարը, Դեղին անունները)։

— 1. Շէկ (սեռ. Շիկին), հայր Աստուածատուրի, որ մի այգի և մի հնձան է նվիրել Հառիճի վանքին 1196 թ.— Շիրակ. էջ 159։

— 2. Շէկ հիշված է նաև 1508 թ. (Ձեռ. Վասպ. 635)։

Շէհտէնն տես Շահդան։

† ՇԷՆՏԻԿԻՆ, իգ. < հյ. շէն «ուրախ»+տիկին բառերից։

— Շէնտիկին, կին Թաւաքալ Հալէպցու, որ գնեց գերի ընկած մի Աւետարան, 1400 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 402։

— Հիշված է նաև 1681 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1879)։

*ՇԷՐ, ար. < պրս. شیر šīr «առյուծ» բառից. մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակարանում, որ սակայն գըրված է 1321 թվից ուշ։—Թորոս աղբ. Բ. 346։

*ՇԷՐԱՄԻՐ, ար. < պրս. شیر šīr «առյուծ»+արաբ. امیر amīr «իշխան» բառերից. մի անգամ հիշատակված է 1620 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 25 բ)։

*ՇԷՐԱՆՇԱՀ, ար. < պրս. شیرانشاه Šērānšāh անունից, որ նշանակում է բուն «առյուծների թագավոր»։ Justi 295ա հիշում է այս անունով երեք պարսիկ, որոնց վերջինը 1473 թ։—Մեր մեջ մի անգամ ունինք հիշատակված Գոշավանքի անթվական մի արձանագրության մեջ (Արցախ 354, Ազգագր. հանդ. Ժ. 37)։

*ՇԷՐԲԷԿ, ար. < պրս. شیر šēr «առյուծ»+թրք. بگ beg «իշխան» բառերից։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես Շէրբէկի՝ 1594 թ. (Ձեռ. Վասպ. 737), Շէրբէկ 1640 թ. (անդ 900), 1648 թ. (անդ 910)։

† ՇԻԴԱՐ ար. < հյ. շիդար «խենթ, գիժ» բառից, որ սեռական փոխառություն է։

— Շիդար, որդի Արտաւազդ Բ-ի, թագավոր Հայոց. առասպելյալ անձ, որի մասին տես վերը հտ. Ա, էջ 312։ Արտաւազդի առասպելի ընդարձակ ուսումնասիրությունն ունի Աբեղեան, Հայ ժող. առասպ. էջ 338—379. Ցայժմուրքի հատվածը (երկու օրինակ) տես Ձեռ. Հալէպի Ա. 294 և 332. տես նաև Դրնդ. 208։ —Այս բոլորի վրա ավելացրու Վանակ. տարեմ. 166 ա «Որդի

մի էր նորա (Արտաշէսի) Արտաւազդ անուն, բախած ի մանկութենէ, զոր Շիդարն կոչեն»:

ՇԻԹՈՍ, ար? ծագումն անհայտ. իբր անձնանուն ստացողի հիշված է Տաշեան, Ցուց. 472 և 1137 (ԺԵ դար). բայց կասկածելի է և այլուստ անհայտ:

*ՇԻՂԱ, ար. < լտ. Silvanus անունից, որ թե Անտառների աստուծու անունն է և թե սովորական անձնանուն: Ծագում է լտ. silva «անտառ» բառից: Սրա կրճատ ձևն է համարվում Շիղա: Այս անունով հայտնի է Պողոս առաքյալի ընկերներից մեկը: Ս. Գրքում գործածված են երկու ձևերն էլ՝ Շիղա Գծ. ժե. 22 և Սիղուանոս Բ. կոր. Ա. 19: Մեր կյանքում երկուսն էլ անսովոր են մնացել: Առաջինից կա՝

— Շիղա, հիշված է անթվական մի խաչքարի վրա, որ գտնվում է Թազագյուղում (Նոր-Բայազետ).— Սմբատեանց, Գեղարքունի 520:

ՇԻՏԱՆ, ար. թերևս անձնանուն էր և սրանից է ձևացած Շիտանեան ազգանունը (Վան).— հմմտ. Շատան:

*ՇԻՐԱԶ, իգ. և ար. կարող է ունենալ երկու ծագում. նախ Պարսկաստանի شیراز Šīrāz նշանավոր քաղաքի անունից և երկրորդ՝ կրճատված Šīrāzād անունից: Այս վերջինը նշանակում է բուն «ազատ իբրև առյուծ» և հիշված է 637 թ. (Justi 295 բ). հմմտ. Šīraz անունը, որ կրճատ ձևն է համարվում Šērzād (առյուծածին) անվան (Justi 298 ա): Տես նաև տակը Շիրազար: Առաջին ծագումը հարմար է տալ իգական ձևին (որ և Շիրազխաթուն), իսկ երկրորդը արականին:

— 1. Շիրազխաթուն, որ և Շիրազմամա, դուստր Ասլանի, կին Ենդուբէկի. նորոգել տվեց մի հին Աւետարան, 1470 թ.— Թորոս աղբ. Բ. 355—6:

— 2. Շիրազ, փեսա Ղարիպ խաթունի, որ Գողթան գավառի Փուսայ անապատում գրել տվեց մի Աւետարան 1489 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 276:

— Ավելի ուշ հիշատակված են Շէրազ իգ. 1511 թ. (Ձեռ. Վասպ. 645), Շիրազ իգ. 1516 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 567), 1650 թ. (Տաշեան, Ցուց. 934), 1656 թ. (Ձեռ. Թաւր. 7 բ):

*ՇԻՐԱԶԱՐ, ար. < պրս. Šīrāzād «ազատ առյուծ» անունից (տես վերը Շիրազ բառի տակ). վերջաձայնի փոփոխության համար հմմտ. Արտաշատ < Արտաշար:

— Շիրազար մր., իր ամուսին Աղչայի և Սթաիկի հետ

նվերներ են արել Տեղերի եկեղեցուն, 1274 թ.—Արձ. ZAPh 2, 46=Բանաս. 1903, 29։

†ՇԻՐԱԿ, տր. <Ենթադրաբար կազմված Շիրակ տեղանունից։

— Շիրակ թագավոր Բագրատունի, որ հիմնել է Անին և Բագրատունեաց թագավորությունը (իմա Աշոտ Ա).—Աբր. կրետ. 101։—Իսկ «Այս են քաղաքք և շինողք նոցին» ZAPh 1, 190 գրում է «Շիրակ արքա զՇիրակ շինեաց»։

— Հմմտ. նաև Առաք. պատմ. 340 «Յովհաննէս որ մականուն Շիրակ ասի»։

*ՇԻՐԱՆՇԱՀ, տր. <պրս. شیرانشاه Šīrānšāh անունից, որ բուն նշանակում է «առյուծների արքա»։ Սրանից է ծագել Շիրանշահեանց իշխանական տունը, որ նստում էր Մեծկողմանց երկրում ԺԳ դար։—Բարխուտ. Պատմ. Աղվ. 145։

*ՇԻՐԱՔ, տր. <պրս. شیرک šīrak «փոքր առյուծ» ենթադրյալ ձևից, որ شیر šīr բառի նվազականն է։ Այս բառը Պարսից մեջ էլ իբրև անձնանուն գործածվել է, որից փոխառյալ է սոր. Śērag, Šīrag՝ մի վեզիրի անունը՝ Կալիլակ և Դամնակ վեպում (Justi 295 ա)։ Հիշատակված է մեր մեջ ԺԷ դարից. այսպես՝ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 802), 1604 թ. (Թորոս աղբ. Բ. 267, ուր միասին հիշվում են Ձիրաք, Շիրաք և Միրաք եղբայրները), 1621 թ. («Էջմիածին», 1944, № 1, էջ 37 ա), 1628 թ. (Առաք. պատմ. 182, խօջայ Շիրաքն և խօջայ Միրաքն), 1645 թ. (Ձեռ. Վասպ. 606), 1647 թ. (անդ. 269), 1751 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 17 բ, դարձյալ՝ Շիրաք, Միրաք, Ձիրաք), և անթվ. (Ձեռ. Վասպ. էջ 548)։

*ՇԻՐԻՆ, տր. և իգ. <պրս. شیرین šīrīn «քաղցր» բառից, որ Պարսից մեջ էլ տր. և իգ. անձնանուն է (Հիւբշ. 62, Justi 302—3)։ Պարսից մեջ հիշված են Շիրին՝ կին Խոսրով Փարվիզի (Շահն. հտ. 7, էջ 215), Շիրին բեգ՝ էմիր Թիմուրի, Մահմմեդ Շիրին՝ միստիկ †1406 թ, Շիրին խոջա †1521 թ. և վերջապես Շիրին՝ Ֆարհադի նշանավոր սիրուհին, որի սիրով վառված՝ սարը ծակեց։ Տես նաև հաջորդ անունները։

— 1. Շիրին, դուստր Խոսրով Բ Կոտակի «330—339». փոքր էր, երբ մեռավ հայրը (339 թ). Պարսից Խոսրով թագավորը սիրահարվեց Շիրինի վրա.—ըստ Վրաց աղբ. Բ. 95 (սրանց ընդարձակ վեպը պիտի հրատարակվի նույն գրքի Դ հատորում)։

— 2. Շիրին, հայր գրիչ Յովհաննէս սարկավագի, որ օրի-

նակեց Երզնկայում «Առ որս» գիրքը, 1266 թ.—Շողակաթ 201, Տաշեան, Ցուց. 552։

— 3. Շիրին խաթուն, իշխանավոր կին, որ Պայալու խաթունի, Թուղթայի, Թալայի, Խոջայի և Ղայիրի հետ ներել է Հռիփսիմէի բամբակի հարկը՝ 1296 թ.—Արձ. Արար. 1898, 442։

— 4. Շիրին, հիշված է մի գերեզմանաքարի վրա 1304 թ.—Սմբատեանց, Գեղարքունի, 550։

— 5. Շիրին, որդի Օտարշահի և եղբայր Ներսէս գրչի, որ Գամաղիէլի վանքում օրինակեց Ճառընտիրը՝ Աստղ միայնակեցի համար, 1397 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1286։

— 6. Շիրին, որդի Աբրահամի և եղբայր տանուտեր Դանիէլի, որ Աղթամարում Զաքարայ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234, 239։

— 7. Շիրին, ի Տիոյ (գյուղ Խիզանի), հայր Կիրակոսի, որ իր կնոջ՝ Նազխաթունի հետ միասին դրամով օգնեց Յովհաննէս Հաւատորին՝ արտագրելու համար Գր. Տաթևացու Քարոզգիրքը Խիզանի Ս. Խաչ վանքում, 1413 թ.—Նոտարք 43։

— 8. Շիրին խաթուն, դուստր Ամիր-Հասանի և քույր պարոն Ամիրգոլի, որ Խլաթում գրել տվեց մի Ճաշոց 1450 թ.—հիշված է նաև 1455 թ.—Նոտարք 164, 178։

— 9. Շիրին, եղբայր Անդրէաս քահանայի Կեսարիոյ Մանտիսոն գյուղի. իրենց Յայսմաւուրքը տվին Յովանէս աբեղային՝ արտագրելու համար, 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 10. Շիրին, հորեղբայր Սիրատանի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— Ավելի ուշ հիշատակված են Շիրին աբ. 1505 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 335), Շիրին քահանա՝ 1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 314), Շիրին իգ. 1599 թ. (Ձեռ. Վասպ. 756), 1629 թ. (Կնիք հաւ. յոյ. էջ IV), 1677 թ. (Թորոս աղբ. Բ. 454)։

— 11. Շիրին ճարտարապետ, եպարքոսի կողմից նշանակված էր արքունի շինվածների վերակացու 1735 թ.—Ջամբ. Գ. էջ 807։

*ՇԻՐԻՆԲԱՇԻ, իգ. < պրս. شیرین širīn «քաղցր»+թրք. باش baš «գլուխ» բառերից, իբր «քաղցրների գլխավորը»։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1575 թ. (Կրպտ. եպս.՝ Դօփեանք 137, Սմբատեանց՝ Գեղարք. 809, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 27)։

*ՇԻՐԻՆՇԱՀ, ար. <նախորդ Շիրին անունից +շահ պատվական մասնիկով։

— 1. Շիրինշահ, հիշված 1279 թ.—Միսաքյան 149 (կասկածելի)։

— 2. Շիրինշահ, հայր Ներսեսի, որ Յովհաննավանից առաջնորդն էր 1318 թ.—Այրարատ 172։

— 3. Շիրինշահ, որդի Ումեկի, եղբայր Խոսրովշահի, որ Բարերդում ստացավ մի հին Ավետարան և նորոգել տվեց 1346 թ.—ՀԱ 1926, էջ 344։

— 4. Շիրինշահ, հայր Գրիգորի, որ Եղեգիսում մի խաչքար է կանգնեցրել իր կնոջ և զավակների հիշատակին, 1379 թ.—Միսաքյան 149։

— 5. Շիրինշահ, տանուտեր Բերկրիի. հիշված 1422 թ.—Ցեռ. Վասպ. 350։

*ՇԻՐԽԱԹՈՒՆ, իգ. <պրս. شیر šīr «կաթ» բառից (տես և Շեր)։ Հիշատակված է 1554 թ. (Manus. brit. mus. 193 ա)։

*ՇԻՐՄԱԶԱՆ, ար. <պրս. Šermazan անունից, որ նշանակում է «առյուծի ողնաշար ունեցող» (ըստ Justi 296—7. բայց գրված է شر šer և ոչ թե شیر šīr. իսկ mazan «ողնաշար» չեմ գտնում ԳԴ-ի բառարանում)։ Այս անունով հայտնի են Šermazan հայր Ĵastān զորավարի, որ ապստամբելով ուզում էր անկախ պետություն հիմնել Հայաստանում՝ Թ դար (Justi 114 ա), Šermazan ազնվական ի Թարթլի, սպանված Պարսիկներից 1551 թ, Šermazan պաշտոնյա Կախեթի Ալեքսանդր թագավորի (1594—1603 թ. Justi 296 բ) ևն։ Մեր մեջ այս անունը հիշված է ԺԷ դարում և այժմ էլ գործածական է։ Սրանից է Շիրմազանյան ազգանունը։ Բուն անունը Շէրմէզէն ձևով հիշված է 1650 թվի մի կոնդակում (Manus. brit. mus. 264 ա) և Շէրմազան ձևով՝ 1661 թ. Ջեռ. Ագուլ. (Արար. 1911, 119)։

*ՇԻՐՎԱՆ, ար. <պրս. شیروان Šīrwān անունից, որ ըստ Justi 303 ա նշանակում է «առյուծ պահող, առյուծապան» և հիշատակված է Պարսից մեջ ԺԱ դարում։—Ըստ այսմ կապ չունի Նուշիրվան անվան հետ, իսկ Շիրվան գավառի մասին տես Շիրվանշահ։ Հնագույն հիշատակությունն է՝

— Շրուան կամ Շիրվան, Ծար գյուղի իշխաններից մեկը, Դոփեան տոհմից. հիշված է 1411 թ.—Նոտարք 39, 40, հմմտ. նաև՝ Դոփեանք 185։

— Ավելի ուշ հիշատակված են Շիրվան՝ 1617 թ. (Ճանիկ-

տան, Հնութ. Ակնայ 82), 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 334), Շրվան 1659 թ. (Երեմ. չէլ. օրագր. 336), 1660 թ. (Ազգապ. 2530), Շիրվան 1789 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 562), անթվ. (1311 թվից ուշ՝ Ձեռ. Թաւր. 72 բ) և Շիրվանդ ձևով՝ անթվ. (Սմբատեանց, Գեղարք. 291)։

*ՇԻՐՎԱՆՇԱՀ, ար. Հպրս. Širwānšāh ձևից. ըստ Justi 303 ա սա մի տիտղոս է, որ կրում էր Շիրվան (Շամախի) նահանգի առաջին իշխանը (շուրջ 532—579 թ.)։ Բուն անունը հայտնի չէ. բնականաբար նահանգի անունից է և նշանակում է «Շիրվանի թագավոր»։ Բայց Շիրվանշահ այնուհետև դարձել է անուն. այսպես էր կոչվում ըստ Justi Բէյ Բուռուսի պալատում Ծուրդավենդի էմիրը (թվականը չի դրած)։ Justi այս անունը մի կողմից կցում է Šērān-šāh (առյուծների արքայ) անվան հետ և մյուս կողմից šīrwān «առյուծ պահող» անվան հետ։ Մեր մեջ հիշատակված ունինք երկու անգամ։

— 1. Շրվանշահ, իբրև պարոն հիշված է աթապակ Շահանշահի հետ Յովհաննավանքի անթվական մի արձանագրության մեջ (ԺԲ դար).—Ջքր. պատմ. Գ. 22=Շահխաթ. Բ. 106։

— 2. Շրուանշա, որդի Հասանի, որ իր երեք որդիներով սպանվեց Լէնկթիմուրից 1384 թ.—Հայապ. 529։

— Այս անվան գործածությունը սակայն տեղի է տալիս մտածելու, որ Շիրվան անվան հիշատակություններից ոմանք էլ Շիրվանշահի կրճատ ձևն են, որով նույնանում են Շիրվան նահանգի անվան հետ, ինչպես որ մեր մեծ գրողներից մեկն էլ իրեն ծածկանուն դրեց Շիրվանզադե, որ է ծնունդ Շիրվանի (Շամախի)։

*ՇԻՐՓԱԼԱՆԳ, ար. Հպրս. شیر šīr «առյուծ» + پلنگ palang «վագր» բառերից։ Իբրև անձնանուն չէ ավանդված, այլ կա սրանից Շիրփալանգեան ազգանունը՝ հիշված 1714 թ. (Տաշեան. Ցուց. 709). հայտնի չէ միայն՝ թե սա իրոք ազգանուն էր թե մականուն։

*ՇԻՕՇ, ար. Հպրս. Սիաւուշ=Շաւարշ անունից ձևացած։ Սրանից ունինք՝

— 1. Շիօշ խոճա Ջուղայեցի, Շահաբբասի կողմից ուղարկվեց իբրև դեսպան Իտալիա 1607 թ.—Սիսական 419 ա, 442 բ։

— 2. Շիօշբէգ, հայր Յովսէփ արքեպիսկոպոսի Արղութեանց (ԺԸ դար. տես Շահազիզ, Պատմ. պատկ. 78 (երկիցս), որի դեմ Ազգապ. 3202 գրում է վրիպակով Շիրշ)

ՇԽՈՒԿ, ար. ծագումը անհայտ. հիշված է մի անգամ 1640 թ.

Գոլսում (Տաշեան, Ցուց. 703. մի անգամ գրված Շխուկ, ապա Շղխուկ, ցանկում Շխուկ):

**ՇՂԵԼ**, ար. ծագումն անհայտ. մի անգամ ունինք՝

— Շղել. գնել է մի կալված և նվիրել Թաչենի Կոշիկ անապատին, ի հիշատակ իրեն, իր կնոջ և իր որդի Թուչախի (տես Թոչախ № 2). Արձ. (անհայտ թվականով, ԺԳ դար) տես Արցախ 169։

***ՇՄԱԻՈՆ**, ար. Հեբր. שִׁמְעוֹן Šim'on անվան ասոր. Šem'ōn տառադարձությունից ձևացած։ Նույնի հունարենն է Συμεών, Σίμων, որոնք տալիս են հյ. Սիմեոն, Սիմոն (տես անգ)։ Ասորականի և հունականի խառնուրդ ձև է Շիմոն Բ. մակ. Ժ. 19, ԺԳ. 3, 4, 7, Շիմոնեան Բ. մակ. Ժ. 20, ինչպես որ այժմ էլ ունինք Սիմաւոն՝ խառնուրդ Սիմոն և Շմաւոն ձևերի (Հիւբշ. 297)։ Եբր. բառը ծագում է šm'=ասոր. šm'=արաբ. — sm'=ասուր. šemū «լսել, հնազանդիլ» արմատից և բուն նշանակում է «լսող».—Ծնաւ երկրորդ որդի Յակոբայ և ասէ. Զի լուաւ Տէր եթէ ատեցեալ եմ և յաւել ինձ զսա. և կոչեաց զանուն նորա Շմաւոն» (Ծն. իթ. 33).—Շմաւոն կոչիլն թարգմանի լսող (Տաթև. ամ. 650).—Սիմոնն հնազանդութիւն թարգմանի (Երս. մրկ. 252).—Սիմոնն թարգմանի հնազանդ (Երս. մրկ. 341).—Վայ քեզ, ոչ Սիմոն, այսինքն ոչ հնազանդ (Մոլութ. 295 ա).—Սիմոնն թարգմանի հնազանդ. Առաք. 460 բ և 469 ա.—Շմաւոնի որ թարգմանի հնազանդ. Առաք. 464 ա.—Սիմոն այսինքն հնազանդ. Առաք. 464 ա.—Համմտ. նաև բաբել. Samahūnu անունը։ Նույն արմատից ծագած այլ անուններ են Իսմայել են (Gesenius 846-7)։—Շմաւոն անունով հայտնի անձնավորություններ են՝ Շմաւոն որդի Յակոբ նահապետի Հրէից, Շմաւոն առաքեալ (որ և Սիմէոն նախանձայոյզ), մի քանի նահատակներ Յայսմաւուրքում։—Այժմ Շմաւոն և Սիմեոն համարվում են բոլորովին տարբեր անուններ և նրանց նույնությունը բոլորովին աննկատելի է դարձել։ Շմաւոն անվան գգվականն է Շումիկ, նրանից է Շմաւոնեան ազգանունը։

— 1. Շմաւոն իշխան Անձևացի. անդամ Արտաշատի ժողովի «449 թ». մին այն նախարարներից, որոնք Յազկերտի դուռը կանչվեցին և առերես ուրանալով արձակվեցին։ Մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ)։ Բանտարկվեց Պարսկաստանում 12 տարի և ապա արձակվեց «462 թ»։—Եղիշ. 33, 77, 150. Փարպ. իգ, իե, խը, խէ. Յայսմ. օգ. 7։

— 2. Շմաւոն նախարար հայ, Պարսից Խոսրով թագավորի կողմից նշանակվեց արքունի ոսկեհանքերի վերակացու. դավաճանությամբ անցավ հունաց կողմը և հանքի ոսկին էլ նրանց հանձնեց։ Յուստինիանոս կայսեր կողմից նշանակվեց Բարձր Հայոց կառավարիչ. բռնագրավեց Վարազ անուն մի իշխանի որդոց կալվածները, որից զայրացած նրանք հարձակվեցին Շմաւոնի վրա և սպանեցին (534 թ)։—Չամչ. Բ. 241 (ըստ Պրոկոպիոսի). Տեղեկ. համալս. № 1, էջ 60, 66 կոչում է Սիմէոն, ոսկեհանքը դնում է Տայքում և Սիմէոնին էլ համարում է Մամիկոնեան, ինչպես որ Վահանն էր նույն ոսկեհանքի կառավարիչ 481 թվին։

— 3. Շմաւոն եպիսկոպոս Անձևացեաց (Ե դար).—Հիշում է Արծր. Ա. ժա (թվի թե նախորդն է (№ 1) և իշխանը սխալմամբ եպիսկոպոս է կարծել։

— 4. Շմաւոն քորեպիսկոպոս Ծախի, անդամ Աղուէնի ժողովի՝ Վաչագան Գ Աղուանից թագավորի օրով (Զ դար).—Կաղկնտ. Ա. իզ, Կանոն. 192։

— 5. Շմաւոն իշխան հայ, որին հանձնեցին Առաջին խաչակիրները Ալփիա բերդը (Կեսարիան գրավելուց ավելի առաջ) 1097 թ.—Սիսուան 129 բ։

— 6. Շմաւոն իշխան Անձևացեաց, որի հրամանով գրվել է Եղիշէի Անձևացեաց օրինակը (տես Գալֆայեան, հրատ. Եղիշէի, Թէոդոսիա 1861, էջ գ—ե.—ըստ Ակինեան՝ Եղիշէ, Ա. 108—9 կեղծիք է)։

— 7. Շմաւոն. նվերներ է արել Կոթաքար=Ներքին Ադիաման (Նոր-Բայազետ) գյուղի հին վանքին, 1275 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 533։

— 8. Շմաւոն. եղբայր Հայրապետի, որ Պետրոսի վանքի առաջնորդն էր և շինեց Ս. Աստուածածնի եկեղեցին 1201 թ.—Արցախ 362։

— 9. Շմաւոն գրիչ, Շահապունեաց Ոծոփի վանքում գրեց Աւետարանը՝ 1292 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 132, Խաղբակեանք 153, 182։

— 10. Շմաւոն քահանա. իր եղբոր Քահանայի հետ ուսանում և սնվում էին Թեղենեաց վանքում՝ իրենց հորեղբոր Նահապետի մոտ։ Քահանան սկսեց օրինակել Աւետարանը. դեռ կիսատ էր՝ մեռավ. Շմաւոն քահանան նույնը գրել և ավարտել տվեց Դաւիթ կրոնավորին, 1295 թ.—Manus. brit. mus. 16։

— 11. Շմաւոն եպիսկոպոս Օձայի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Ազգապ. 1786։

— 12. Շմաւոն եպիսկոպոս Տաթևի. հիշված է Տաթևի մի արձանագրության մեջ՝ 1332 թ.—Ազգագր. հանդ. Գ. 141։

— 13. Շմաւոն կամ Սիմէոն, արքեպիսկոպոս Սեբաստիոյ. ընտրվեց 1338 թվին, իբրև հաջորդ Ստեփաննոսի. ներկա եղավ Սսի եկեղեցական ժողովին (1342 թ), որից հետո վերադարձավ իր աթոռը. մեռավ ու թաղվեց Ս. Նշանի վանքում, 1369 թ.—Դիւան Ժ. 393> Macler REA 5, 151։

— 14. Շմաւոն ոմն հիշատակագիր, 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։

— 15. Շմաւոն վարդապետ, աթոռակալ էր Վաղաղնի Ս. Կարապետի վանքում, 1438 թ.—Արձ. Սիսական 525, Ազգագր. հանդ. Գ. 153։

— 16. Շմաւոն վարդապետ աթոռոյն Ստաթէի առաքելոյ, անդամ Էջմիածնի մեծ ժողովի «1441 թ». հակառակորդ կանգնեց Կիրակոս կաթողիկոս Վիրապեցուն, որին և տապալեցին։—Մեծոփ. յիշատ. ա, գ. Դրնդ. 314. Տաշեան, Ցուց. 294 բ, Նոտարք էջ 122։

— 17. Շմաւոն րաբունապետ Անգեղակոթ գյուղում, հիշված 1450 թ.—Սիսական 212 բ։

— 18. Շմաւոն եպիսկոպոս, իր ձեռքով կանգնեցրել է մի խաչքար Զոլախաչ գյուղում (Նոր-Բայազիտ), 1451 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 546։

— 19. Շմաւոն եպիսկոպոս Նորավանից, 1456 թ.—Զարբ. Թրգ. 727։

— 20. Շմաւոն վարդապետ, մեկն է Արիստակէս կաթողիկոսի ընտրողներից «1465 թ».—Կամենից 226։

— 21. Շմաւոն աթոռակալ Թադէոս առաքյալի վանքի 1465 թ.—Սմբատեանց՝ Գեղա̈րքունի 302։

— 22. Շմաւոն փակակալ Ագուլիսի եկեղեցիների 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 300։

— 23. Շմաւոն Ա կաթողիկոս Աղուանից, հաջորդել է Ներսէս Գ-ին՝ 1481 թ. Մատթէոս կաթողիկոսի եղբորորդին էր. գահակալել է 1481—82 թ. Նրան հաջորդեցին իրար ետևից՝ Թովմա Ա և Առաքել.—Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 18, Ջամբռ 78։

— 24. Շմաւոն վարդապետ, առաջնորդ Տաթևի, որին հա-

ջորդեց իր եղբորորդին Ստեփաննոս արքեպիսկոպոս 1483 թ.— Նոր վկ. 313։

— 25. Շմաւոն կաթուղիկոս, հիշված է 1486 թ. տես Ջեռ. Նոր-Բայազ. էջ 11 ա. բայց այս թվին այս անունով կաթողիկոս չկա ոչ մի աթոռում։

— 26. Շմաւոն աբեղա, աշակերտ Մաթէոս վարդապետի ուսուցչի Մխիթար գրչի, որ օրինակեց Ցայսմաւուրքը՝ Սեբաստիոյ Կոլտուն գյուղում, 1487 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։— Երևի նույն անձն է՝

— 27. Շմաւոն աբեղա՝ միաբան Սեբաստիոյ Ս. Նշան վանքի, 1489 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239։

— 28. Շմաւոն Բ Քոլատակեցի, կաթուղիկոս Աղուանից հաջորդեց Յովհաննէս Ե-ին, 1587 թ. և մեռավ 1611 թ.—իրեն հաջորդեց Առիստակէս Գ Քոլատակեցին.—Ջամբռ 78, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 62. Ջեռ. Դավեան Ա. 89 բ։

ՇՄԷԼ, իգ. ծագումն անհայտ. հիշված է 1689 թ. (Bodleian 164), Շըմէլ 1692 թ. հրատ. Ազատ. 1909, յոյ. էջ ժզ=Ջեռ. Էջմ. Գև. № 613 (ժէ դար)։

ՇՄՈՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշված է 1629 թ. (Ջեռ. Վասպ. 38)։

*ՇՄՈՒԷԼ, ար. < եբր. שְׁמוּאֵל Šəmūēl անվան սուր. Šmūēl տառադարձությունից։ Նույն անվան հույն ձևն է Σαμουήλ, որից էլ տառադարձված է հյ. Սամուէլ։ Այսպեսով Շմուէլ և Սամուէլ նույն անուններ են, ինչպես Շմաւոն և Սիմէոն։ Ս. Գրքի հունական օրինակի թարգմանությունից հետո տարածվել է Սամուէլ ձևը. բայց տեղ տեղ մնում է Շմուէլ. այսպես Սամուէլ մարգարէի համար գործածված է Շմուէլ ձևը՝ Եփր. մատ. Ա. 168, Բ. 32 են (Հիւբշ. 297)։— Այս անվան ստուգաբանությունը տալիս է Ա. Թագ. ա. 20. «Եւ կոչեաց զանուն նորա Սամուէլ. ասէ՝ Զի ի Տեառնէ (Աստուծոյ զօրութեանց) խնդրեցի զսա» (իբր թե արմատը šal «խնդրել»+ēl «յԱստուծոյ»)։ Հմմտ. նաև Արշար. 39 «Սամուէլ որ ասի տուրք Աստուծոյ. և էջ 40 Սամուէլ որ թարգմանի յուր Աստուծոյ... Սամուէլ լուր Աստուծոյ»։

— Շմուէլ ասորի, կաթուղիկոսակից կարգվեց Ս. Սահակի՝ Պարսից Վռամ թագավորի ձեռքով. անարժանությամբ վարեց իր պաշտոնը «432—437 թ»։— Շմուէլ՝ Խոր. Գ. կե. կզ. Յհ. կթզ. ժդ. Ասող. Բ. ա. Արծր. Դ. ժբ. Կիր. 19. Սամ. անեց. 70. Պատմ. սահ. 32, 33.— Շամուէլ՝ Փարպ. ժե.— Սամուէլ՝ Արծր. Ա. ժա.—

Սամուէլ Մուշեցի՝ Վրաց աղբ. Ա. 77.— Շմէլ՝ Մեծոփ. յիշ. գ. սեռ. Շմուէլի՝ Խոր. Գ. կզ.— գրծ. Շմուէլաւ՝ Խոր. Գ. կե (ցանկում՝ Շմուէլիւ)։

**ՇՆԳԻՆ**, ար. < ծագումն ինձ անհայտ. որովհետև անհնարին է ընդունել, որ շուն և գին բառերից կազմված լինի։ Միանգամ ունինք՝

— Շնգին Արծրունի, Յազկերտ Բ-ի հրամանով բանտարկված նախարարներից մին «452 թ».— Եղիշ. 150. Փարպ. խէ (Ձեռ. Շնդին, որ ընդունել է Ջամչ. Գ. 176 (ցանկում. իսկ Աղվալ. 383 և ուրիշներ գնում են Շնգին)։

†**ՇՆՈՐՀԱՒՈՐ**, ար. և իգ. < հյ. շնորհաւոր բառից. համեմ. հյ. Շնորհք, Շնորհիկ, հուն. Χαρισιάδης, Χαρίξενος, Χαρίκλεια, Χαρικλῆς, Χαρικράτης, Χαρίλαος, Χαριμένης, լտ. Gratia, Gratus, Gratina, Gratianensis, Gratidius, Gratius, Gratianus, իտալ. Graziella (Լամարտինի նշանավոր վեպի հերոսուհին) են։ Մին. համդ. 85 ասում է «Գրատիանոս՝ որ թարգմանի Շնորհազարդ»։ Մեր մեջ այս անունը հիշատակված է ԺԳ դարից սկսած և ստացել է բազմազան ժողովրդական ձևեր. ինչ. Շնհաւոր, Շնովեր, Շնոհւոր, Շնոեոր, Շնովոր, Շնոփոր, Շնօփոր, Շնահւոր, Շնոխուր, Շնոխոր, Շնփոր են, որ տես ցածը։

— 1. Շնորհաւոր Տփխիսեցի, որդի Եղիազարի, իր ամուսին Ռուսուդանի և իր երկու որդիների՝ Դաւիթի և Սարգսի հետ 100 դահեկան են նվիրել Հաղբատի ժամատան շինության համար 1253 թ.—Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 29։

— 2. Շնորհաւոր, որդի Սարավանի, եղբայր Մկրտչի. հարուստ վաճառական. առաջնորդեց Վարդան վարդապետին՝ Հուլավու խանի մոտ «1264 թ».— Կիր. ծե. Վրդ. ղգ։ (Ըստ այլոց կոչվում էր Շահպատ՝ Զարբ. Հին դպր. 738= Շահպատին, Ս. առաք. պամ. 482)։

— 3. Շնոհաւոր, ազգատիկ կին, որ «մի անասնիկ ունէր ծննդական և զայն՝ վասն բարի յուսոյն իւրոյ՝ յօգնութիւն ետ գրոցս», այն է մի ճաշընտրի, որ Բասիլ գրիչը գրեց Խորնի վանքում (Սիս), 1270 թ.—Սիսուան 152 ա։

— 4. Շնօհորիկ, դուստր Վահրամի. մանկահասակ վախճանվեց իր քրոջ՝ Թամամի հետ. կսկծալին Վահրամ (հայրն է անշուշտ) կանգնեցրեց մի խաչքար 1282 թ.— Արձ. Այրարատ 125, Բանաս. 1901, էջ 132—3 (քարը բերված է Սուրմալուի Խալֆալու գյուղից Վաղարշապատ)։

— 5. Շնհաւոր աղբար, քարագործ վարպետ. շինել է մի խաչքար Ախտայում 1263 թ. և մի մեծ խաչքար էլ Մարտիրոս գյուղում 1283 թ.—Սիսական 175—6. Խաղբակեանք 127, 130։

— 6. Շնորհաւոր քահանա, նվերներ է արել Սիւնեաց Նորավանից վանքին (ԺԳ դար).—Օրբ. կդ։

— 7. Շնոհվոր տիկին, մերձավոր Թումայ և Հայրապետ քահանաների, որոնք Զաքարիա գրչին գրել տվին մի Աւետարան 1304 թ.—Ջեռ. Վասպ. 143։

— 8. Շնոփոր իշխան, որդի պարոն Փառնքի. Արճէշում գրել տվեց մի Աւետարան՝ Սիմէոն գրչին, 1304 թ.—Ջեռ. Վասպ. 145—6։

— 9. Շնափոր տիկին, կին Գրիգոր Խուցէսի (№ 400), մայր Պարոնի, որ նորոգեց Բաղնայրի նշանավոր Աւետարանը 1308 թ.—Խաղբակեանք 15։

— 10. Շնոխվոր կին, օգնեց Տէր քահանային՝ գրելու համար Աւետարանը 1311 թ.—Ջեռ. Թաւր. 70—71։

— 11. Շնահվոր, հայր Լոյսի, որ նրա հիշատակին նվերներ է արել Աւանի Ս. Յովհաննէս եկեղեցուն 1313 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 255։

— 12. Շնորհաւոր տիկին, ստացող Աւետարանի 1315 թ?—Տաշեան, Ցուց. 934։

— 13. Շնոհոր տիկին, կին Ղարահայի և մայր Կարապետ քահանայի, որ Նախիջևանում գրել տվեց մի Աւետարան, 1324 թ.—Ջեռ. Վասպ. 170։

— 14. Շնոֆոր, հորեղբայր Պարոնշահի, որ Բղնունեաց Աղէթ գյուղում (տես Թաթուլ № 10) գրել տվեց մի Աւետարան, 1329 թ.—Ջեռ. Վասպ. 179։

— 15. Շնոհփոր, կին Աւտարշահի Հովծեծենց և մայր Ներսէս աբեղայի Կրակացւոյ, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 347 և Ա 150։

— 16. Շնորհովոր, կին Մարտիրոսի և մայր Մարկոս (№ 23) հայրապետի, որ Խիզանում, Հովհաննես գրչին գրել տվեց մի Աւետարան, 1336 թ.—Ջեռ. Վասպ. 194։

— 17. Շնոֆոր, կին Գրիգոր քահանայի և մայր Ներսէս վանահոր, որ Երուսաղէմում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1363 թ.—Ջեռ. Վասպ. 18։

— 18. Շնոհոր, կին Հայրապետի և մայր Տիրացու կրոնա-

վորի, Շուշանց գյուղում, հիշված են Յովհաննէս (№ 685) գրչի հետ, որ օրինակեց Ճառընտիրը 1399 թ.—Թորոս աղբ. Բ 429։

— 19. Շնահաւորիկ ոմն, միաբան Մեծկողմանց վանքի (ԺԴ դար).—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45, 61։

— 20. Շնոհվոր, դուստր Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 277։

— 21. Շնոմխոր Հալէպցի, դուստր Թաւաքալ Հալէպցու 1400 թ.—տես Թաւաքալ № 3։

— 22. Շնոհուոր, կին Գորգի և մայր Դաւիթի, որ գնեց մի հին Աւետարան, 1407 թ.—Ջեռ. Վասպ. 165։

— 23. Շնոփհոր, կին տանուտեր Յովհաննէսի, որ Վանում ստացավ մի Մաշտոց 1418 թ.—Տաշեան, Ցուց. 383 բ։

— 24. Շնախավոր տիկին, Նարեկի վանքում, Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1419 թ.—Ջեռ. Վասպ. 319։

— 25. Շնորհուոր, կին Առաքելի (№ 55) և մայր Գոհարի (№ 10)՝ կնոջ Թումայի, եղբորորդու Թաթարբէկի, որ Նարեկում գրել տվեց մի Աւետարան 1420 թ.—Ջեռ. Վասպ. 326։

— 26. Շնոմհոր տիկին, կին Թումայի. ծնողներն են Ստեփանոս կրոնավորի, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ջեռ. Վասպ. 340։

— 27. Շնոհփոր, դուստր Աւետիսի և քույր հյուսն Յովհաննէսի, որ գրել տվեց մի Ճաշոց, Աղէթում, 1421 թ.—Ջեռ. Թաւր. 113 ա։

— 28. Շնոփոր խաթուն, կին Էվաչայի, որ Տրապիզոնում գնեց մի հին Աւետարան 1425 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 485։

— 29. Շնորհաւոր, քույր տանուտէր Մկրտչի, որ Կողուց վանքում ստացավ մի Ճառընտիր, 1428 թ.—Տաշեան, Ցուց. էջ 583։

— 30. Շնոհոր, կին Թումայի. ծնողներն են Ստեփաննոս կրոնավորի, որ Խոսրովայ վանքում, Վարդան գրչին գրել տվեց մի Աւետարան 1430 թ.—Նոտարք 94, Ջեռ. Վասպ. 358։

— 31. Շնոհուոր, քույր Հայրապետ կրոնավորի, որ գնեց մի հին Աւետարան, 1431 թ.—Նոտարք 97։

— 32. Շնոփոր, դուստր Անդրէասի և քույր Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Աւետարան, 1431 թ.— Ջեռ. Վենետ. Ա. 663։

— 33. Շնոհւոր, կին Սարգսի և մայր Ներսէս աբեղայի, որ

Մեծոփայ վանքում գրել տվեց մի Ժամագիրք, 1432 թ.—Ձեռ. Միւնխ. 19 ա, 20 բ։

— 34. Շնով, դուստր Թումայի և քույր տանուտեր Ստեփաննոսի, որ Կարապետ գրչին գրել տվեց Վանում մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 35. Շնոփոր, դուստր Շնոփորի և քույր Ներսէս քահանայի, որ գրել տվեց մի Ճաշոց Սեբաստիայում, 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243։

— 36. Շնոփոր պարոն, հայր Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում Դաւիթ գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243։

— 37. Շնըփոր, կին Մարկոս քահանայի (№ 32), որի համար իր հայրը գնեց մի հին Աւետարան 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 83բ։

— 38. Շնաևոր, կին ...մուրի և մայր տանուտեր Ատոմի, որ Ոստանում գրել տվեց մի Գանձարան, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։

— 39. Շնոհվօր, կին Բաղդասարի. ծնողներն են Յովհաննէս կրոնավորի (№ 975), մականուն Բըծոնց, որ մի Մաշտոց գրել տվեց և նվիրեց Ս. Յակոբայ վանքին, 1445 թ.— Նոտարք 136։

— 40. Շնոհվօր, կին Բէլունցի, գրել տվեց մի Աւետարան՝ Աղթամար 1446 թ.— Նոտարք 153։

— 41. Շնոհոր, կին Ամիրշահի, ծնողներն են Իսրայէլ գրչի, որ օրինակեց Աւետարանը Մոկաց Փասավանք գյուղում, 1447 թ.—Նոտարք 156։ (Նույնը ունի Ձեռ. Վասպ. 400, բայց գրում է մի անգամ Շնորհք, երկրորդ անգամ Շնորհ)։

— 42. Շնախոր, կին Ստեփանոսի և մայր Աղնայ գյուղի տանուտեր Թովմայի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1447 թ.— Նոտարք 156 (Շնոհոր), Ձեռ. Վասպ. 397 (Շնախոր) և 400 (գրում է Շնորհք, որ սխալ է և որի դեմ Նոտարք ունի Շնոհոր)։

— 43. Շնահոր, մայր Աստուածատուր քահանայի, որ Վանում գրել տվեց մի Գանձարան, ինքն էլ նահատակվեց անհավատներից 1448 թ.— Նոտարք 158։

— 44. Շնոյփոր պարոն, հորեղբայր Մովսէս աբեղայի, որ Գղնձայգոյ Աւագ անապատում օրինակեց Աւետարանը 1451 թ.— Ձեռ. Վասպ. 408։

— 45. Շնոփոր, *Թութլուպէի մերձավորներից, հիշված է Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցու մի արձանագրության մեջ 1451 թ.*—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. *էջ 36։*

— 46. Շնորհւոր, *դուստր Մարտիրոսի և քույր տանուտեր Մանկատաւայի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։*

— 47. Շնոխվոր, *մերձավոր Փաշամելէքի, 1458 թ. ավելին տես անդ.—Ձեռ. Վասպ. 428։*

— 48. Շնոփոր *խաթուն, կին Յովհաննէսի, մի խաչքար են կանգնեցրել 1458 թ. այժմ ագուցված է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի պատի մեջ.— Ազգագր. հանդ. Է. 71։*

— 49. Շնահվոր *խաթուն, կին պարոն Զաքարի և մայր Արգլաղիղի, որ Ոստանի տանուտերն էր. շինեց մի եկեղեցի, փրկանքով ազատեց մի ճաշոց 1459 թ.—Նոտարք 194։*

— 50. Շնահոր, *կին Հաշտուրի. ծնողներն են Թումայի, որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1460 թ.— Ձեռ. Վասպ. 433։*

— 51. Շնաւհւոր, *կին Գրիգորի և մայր տանուտեր Յովհաննէսի (№ 1079), որ գնեց մի հին Աւետարան, 1461 թ.—Ձեռ. Վասպ. 226։*

— 52. Շնուխւոր, *կին Բուրգեայշի. ծնողներն են Սիոն միակեցի, որ Վարդան գրչին գրել տվեց մի Աւետարան, Կողուց վանքում, 1461 թ.—Նոտարք 198։*

— 53. Շնորհաւոր *պարոն, հայր Անդրէաս երեցի, որ Նեղոկիայում օրինակեց մի Աւետարան 1463 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 133։*

— 54. Շնոփոր, *կին Նորմանուկի, որ Տիվրիկի Վաւտըռ գյուղում գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Աւագվանքին, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 363։*

— 55. Շնահոր, *քույր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։*

— 56. Շնաւոր. *կին Ասլանի և մայր Շիրազխաթուն տիկնոջ, որ նորոգել տվեց մի հին Աւետարան՝ 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։*

— 57. Շնովոր, *կին Գրիգորի և մայր կոշկակար Մարտիրոսի, որ Աշոտայ երկրի Անկիւնաց վանքում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588։*

— 58. Շնորհւոր, մորաքոյր Կիրակոս կրոնաւորի, որ Եկեղեաց գաւառի Կայիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 59. Շնահոր, կին ժամհար Մկրտչի. ծնողներն են աղքատ Յովսէփի, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 478։

— 60. Շնոփոր, մերձավոր Ցակոբի, որ Երզնկայում ստացավ մի Աւետարան, 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 61. Շնոհուոր, դուստր Աստուածատուրի և քույր պարոն Ֆրանճի, որ Հալէպում գրել տվեց մի Աւետարան 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96բ։

— 62. Շնոհւոր, կին Միրիշիկի և մայր Յովհաննէս և Ստեփաննոս եպիսկոպոսների, Պռօշեանց ցեղից, հիշված 1475—8 թվերին։— Խաղբակեանք 234։

— 63. Շնուոր պարոն, որդի էլպաշի էմին պէկի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. Հայ Կես. Բ. 1848։

— 64. Շնոհւոր, դուստր Յովհաննիսի և քույր Զանվիլի՝ որ Մուղնիում Մկրտիչ երեցին գրել տվեց մի Գանձարան 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25ա։

— 65. Շնոփորպարոն, հայր Գրիգոր քահանայի, որ Սեբաստիայում Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան 1485 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։

— 66. Շնախոր, կին տանուտեր Ղարիպշահի (№ 4), որ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— 67. Շնոփոր, մահտեսի, պարոն, պարտիզպան, որդի Թաղէոսի, կինն է Դեսպինա. Սեբաստիոյ Կովտուն գյուղում, Մխիթար գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1487 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։

— 68. Շնոհոր պարոն, մերձավոր Աստուածատուրի, որ գնեց մի հին Աւետարան 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։

— 69. Շնօհօր, կին Մկրտիչ քահանայի. ծնողներն են Մարգարա գրչի, որ Աղբակի Էրնկանի գյուղում օրինակեց Աւետարանը 1490 թ.—Ձեռ. Վասպ. 512։

— 70. Շնորհաւոր, Բաքերդի Խայիք գյուղից, այրի կին, որի պատիվը արատավորել էր ուզում մի քուրդ. եղբայրը դաշունահար սպանեց նրան. Շնորհաւորը իր եղբորը չմատնելով

հանցանքը իր վրա վերցրեց. և մերժելով մահմեդական դառնալ՝ նահատակվեց «1494 թ».—Նոր վկ. 333—8, Չբր. սարկ. Բ. 125—6, Ազգապ. 2216.— Շնոհփոր՝ Ցայսմ. հոկտ. 31.— սեռ. Շնոհփորի՝ անգ։

— 71. Շնհաւոր, որդի Աթաբագի, եղբայր Սպահանի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, Սաղմոսավանքում 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։

— 72. Շնոհեոր, դուստր Աւագ կամ Տէրաւագ քահանայի, որ Երուսաղէմում գրել տվեց մի Գանձարան 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

— 73. Շնոխաւոր, դուստր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 74. Շնախոր, կին Մկրտիչ քահանայի և մայր Մարգարայ գրչի, որ Աղբակի Երնկանի գյուղում օրինակեց Աւետարանը 1498 թ.—Ձեռ. Վասպ. 528։

— 75. Շնոհոր, դուստր Շաքարի և քույր Ատոմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526, 528։

— Ավելի ուշ հիշատակված են Շնփոր իգ. 1557 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 76 բ), Շնորհւոր իգ. 1625 թ. (Թորոս աղբ. Բ. 372)։

† ՇՆՈՐՀԱԽՈՐՇԱՀ, ար. <Նախորդ անուններից+շահ պատվանունով. մի անգամ հիշատակված է ԺԴ դարից.

— Շնոփորշահ, նշանավոր փորագրիչ վարպետ, որ Թէոդոսիայում, ժողովրդական նվիրատվությամբ շինել է Ս. Սարգիս տաճարի ընկուզե դուռը 1371 թ., որ ապա փոխադրել են Ս. Հրեշտակապետ եկեղեցին։—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 351, Кучук—Иоаннесов, Стар. арм. над. 37։

† ՇՆՈՐՀԻԿ, իգ. <հյ. շնորհ բառից -իկ փաղաքշական մասնիկով. Նորակերտ անուն, որ Շնորհէ ար. անունից զանազանվելու համար ստացել է նույն մասնիկը։

† ՇՆՈՐՀՏԻԿԻՆ, իգ. <հյ. շնորհ+տիկին բառերից. վերջին բառը դրված է զանազանելու համար Շնորհէ ար. անունից։

— 1. Շնորհտիկէն, որ և Շնոփոր տիկին, դուստր Ապրէլուսի, որ ստացավ մի Աւետարան, 1347 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 462—5)։

— 2. Շնոխտիկին, անթվ. մի հիշատակության մեջ, որ գրված է 1311 թվից ուշ (Ձեռ. Թաւր. 74 ա)։

— 3. Շնորհտիկին, *որի սեռականն է* Շնորտիկնան *ձևը՝ գործածված մի անգամ 1642 թվից ուշ՝ Ջեռ. Վասպ. 766։*

† ՇՆՈՐՀՔ, *ար. <հյ.* շնորհք *բառից. գործածական էր դեռ անցյալ դարում Պոլսում։ Հնապես իգական էր, ինչպես երևում է 1447 թվի մի հիշատակությունից (Ջեռ. Վասպ. 400, տես վերը* Շնորհաւոր *№ 41)։ Այսպես նաև* Շնորհ՝ *Ջեռ. Թաւր. 74 ա անթվ. մի հիշատակության մեջ, ուր իրեն կոչում է «դտերայ-մէրս Շնորք», այսինքն ինձ «Շնորհքիս, որ քահանա որդի ունիմ»։ Իբրև ար. գործածության ապացույց են* Շնորհք *ամիրան, որ 1790 թվին բաց արեց Պոլսի զանազան թաղերում առաջին հայ վարժարանները և մի դպրոց էլ աղջկանց համար, և* Շնորհ *արեղա 1810 թ. (Նոր վկ. 671)։*

ՇՆՋԽՈՒՆ *(սեռ.* Շնչխունին*). սեռն ու թվականը, ինչպես նաև ծագումը անհայտ. մի անգամ ունի Ջեռ. Վասպ. 259։*

ՇՈԹՈՌԻԿ *կամ* Շոքռիկ, *ար. ծագումն անհայտ (արդյոք կապ ունի՞ պրս.* šutur *«ուղտ», ինչպես կա* Կոզեոն*). շատ անսովոր անուն, որ գործածված եմ գտնում ԺԳ—ԺԴ դարերում։*

— 1. Շոքռռիկ, *հայրն է Գրիգորի և պապն է Դաւիթ իշխանաց իշխանի, որ կոչվում է «որդի Գրիգորի Շոթռռկանց», 1210-36 թվերին (տես Դաւիթ № 106)։—Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 31—33, Այրարատ 67, Շիրակ 127, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 27։*

—2. Շոքռիկ, *որդի Նաթէլի Վայոց ձորեցի և եղբայր Եսագարի. հիշված են 1334 թ.—Թորոս աղբ. Բ. 375։*

* ՇՈՀՐԱԹ, *ար. <արաբ* شهرة šohrat *«հռչակ, համբավ» բառից. մի անգամ մեր մեջ իբրև անձնանուն գործածված եմ գտնում* Շորհաթ *ձևով, 1701 թ. (Ժանիկեան, Հնութ. Ակնայ, էջ 100)։*

† ՇՈՂԱԿԱԹ, *իգ. <հյ.* շող+կաթել *բառերից. ակնարկությամբ համանուն տաճարի, որ շինվեց Վաղարշապատում, այնտեղ ուր Հռիփսիմյանց նահատակների վրա շող էր կաթել։ Հնագույն գործածությունը գտնում եմ 1620 թ. (Ջեռ. Վասպ. 199) և 1647 թ. (անգ. 269), բայց երկուսն էլ ար! (վերջինը գրված* Շաղակաթ*)։ Այժմ միայն իգական է և նրա փաղաքշականն է համարվում* Շողիկ, Շողօ*։ Իգական գործածությունը գտնում եմ 1797 թ. (Ջեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 121)։*

† ՇՈՂԵՐ, *իգ.<հյ.* շող *բառի հոգնակիից. գործածական է այժմ. հնից վկայություն չունիմ. տես և* Շողիկ։

† ՇՈՂԻԿ, իգ. <հյ. շող բառից՝ -իկ փաղաքշականով։ Համարվում է մերթ առանձին անուն և մերթ Շողակաթ և Շողեր անունների գգվական ձևը։ Հնագույն հիշատակությունը ԺԲ դարից է։ Գործածական է մինչև այժմ և սրա կրճատ էլ լինում է Շողի, որ գործածական է Ղարաբաղում։

— Շողիկ անթվ. հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 33 բ), կրճատ ձևով Շոխօ (Ձեռ. Վասպ. 699, անթվ.)—Շողիկ անվան սեռականն եմ կարծում Շօխկեն ձևը, 1688 թ. (Ձեռ. Վասպ. 1020, բայց թվի ար!)։

† ՇՈՂՄԵԼԻՔ, իգ. <հյ. շող+արաբ. melik «իշխան» կամ melek «հրեշտակ» բառերից։ Հիշատակված եմ գտնում միայն մի անգամ ԺԵ դարից.

— Շողմելիք, կին Ստեփաննոսի և մայր Թուրվանդի՝ կնոջ Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

† ՇՈՂՏԻԿԻՆ, իգ. <հյ. շող և տիկին բառերից. հիշատակված է մի անգամ ԺԴ դարում։

— Շողտիկին, կին Կիրակոսի և մայր պարոն Յովանէսի, որ Կարապետ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Թորոս աղբ. Բ. 355։

† ՇՈՒՇԱՆ, իգ. <հյ. շուշան ծաղկանունից, որ ասորական կամ պահլավական փոխառություն է և ըստ այսմ զուգադրվում է ասոր. Šōšan և պհլ. Šōšan անուններին (=հուն. Σουσάννα կամ Σωσάννα)։ Այս անունով հայտնի է Շուշան (հուն. Σωσάννα), Յովակիմ անուն հրէի կինը, որին սարապարտ մահվան դատապարտեցին հրէից դատավորները և որին Դանիէլ մարգարեն ազատեց (Դան. ժգ. 1—64)։ Նոր կտակարանում հայտնի է Շուշան (հուն. Σουσάννα), կին բարեպաշտ, հետևող Յիսուսի (Ղկ. ը. 3)։ Պարսից մեջ էլ ունինք سوسنک Sūsanak (=Շուշանիկ), գյուղացի ջաղացպանի աղջիկ, որ Բահրամ Գուրի կինը դարձավ (Շահն. հտ. 5, էջ 474)։ (Հիւբշ. 298)։ Ավանդված է Ե դարից և մինչև այժմ էլ գործածական է՝ Շուշան, Շուշանիկ, Շուշիկ ձևերով։—Վրաց. ևս կա Շուշանիկ։—Հյ. Շուշիկ ձևը գտնում եմ է դար և ապա 1677 թ. (Ձեռ. Ն-Բայազ, 36 բ)։

— 1. Շուշան, կին Ս. Սահակի (զուտ ենթադրություն է, ըստ Ազգապ. 258)։

— 2. Շուշան, դուստր Ս. Սահակի և մայր Քաջն Վարդանի.—սեռ. Շուշանայ՝ Նհպտք. 91։

— 3. Շուշան, դուստր Մեծն Վարդանի. ծնվել է «409 Թ». կոչվում էր նաև Վարդուհի կամ Վարդանուհի. ամուսնացավ Վրաց Աշուշա բդեշխի որդի Վազգէնի հետ, որ կրակապաշտությունն ընդունելով՝ չարաչար տանջանքներով նահատակեց նրան «470 Թ»։—Ըստ Ն. Մառի կա վրացերեն «Վկայաբանութիւն Շուշանկան, դստերն Վարդանայ», ինչպես ունինք և հայերեն (տպ. Սոփերք Թ, Վենետ. 1853)։— Շուշան կամ Շուշանիկ՝ Յայսմ. դեկտ. 25, մրտ. 30. Վկ. շուշ. 11; 50, 51, 54, 55. Մխ. այրիվ. 62.—սեռ. Շուշանայ՝ Ուխտ. Բ. ժը, կէ. Ճշ. 644. Յայսմ. դեկտ. 25, մրտ. 30.— Շուշանկան՝ Գիրք Թղ. խգ, ծդ.—Շուշանկանն՝ Վկ. շուշ. 10, 12, 47, 50, 51, 55. Ուխտ. Բ. խգ, ծը, կէ, հ.— Շուշանկայ՝ Ուխտ. Բ. ծդ, կէ. Վկ. շուշ. 49. Գիրք Թղ. ծա.— բցռ. ի Շուշանկանէ՝ Ուխտ. Բ. խը, խթ. Գիրք Թղ. ծա։—Տես և Վարդենի—Կիւլէսէրեան՝ Եղիշէ 380—4, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 63—67, Յուշիկք Ա. 373—404. Վրաց աղբ. Ա. 7—15, 21, 37, 193—4.—Թվում է թե իր անունով մի գերեզման էլ կա Հաղբատում (Նոտարք 112)։

— 4. Շուշանիկ, ըստ Զամչ. Գ. 176 (ցանկում) Ծուրտաւի առաջին եպիսկոպոսն է, որ հորինել է հայերեն լեզվով ժամակարգություն (Զամչ. Բ. 303) Ծուրտաւի ժողովուրդի համար։ Զամչեանի աղբյուրն է անշուշտ Գիրք Թղ. էջ 164, էջ 178 և էջ 194 դրված խոսքերը. «Զպաշտաւնն հայերէն սրբոյ Շուշանկան զկարգաւորեալն՝ լսեմ թէ ի բաց փոխեցէք».—«Եպիսկոպոսունք որ ի Ծուրտաւ լեալ են, ի սրբոյն Շուշանկանէ և այսր, Ափոց, Գառնիկ, Սահակ...».—«Եւ զպաշտաւնն հայերէն զոր սրբոյն Շուշանկան էր կարգաւորեալ... ի բաց փոխեաց»։ Առհասարակ մեր մեջ ընդունված է, որ այս Շուշանիկը Վարդանի դուստրն է, նահատակուհի, որի պաշտամունքը ընդունված է նաև Վրաց մեջ։ Ծուրտաւի առաջին եպիսկոպոսն է Ափոց (որ տես վերը). Շուշանիկի անունը հիշված է ժամանակը որոշելու համար. նահատակվել է 470 Թ. Ափոցն էլ նստել է շուրջ 480 Թ. եթե Շուշանիկի համար չի ասված սրբուհի, պատճառն այն է որ -ուհի իգական մասնիկը հնապես գործածական չէր։

— 5. Շուշանիկ Թագուհի Աղուանից, կին Վաչագան Գ. Բարեպաշտ Թագավորի Աղուանից (Զ. դար).—Կղկնտ. Ա. ժթ։

— 6. Շուշիկ տիկին, դուստր Վարդի և Թոռն Քաջն Վարդանի, միհրանեան տոհմից՝ տէրանց Գարդմանի (Է դար).— Կղկնտ. Բ. ժէ։

— 7. Շուշան, հիշված է Բագարանի արձանագրության մեջ 628 թ.—Կոգեան, Կմարկնները 177։

— 8. Շուշան, տիկին Կամսարական, դուստր Վահան պատրիկի և կին Ներսեհ Կամսարականի՝ իշխանին Շիրակայ (ըստ Մարքվարտ, Բագր. էջ 20)։ Վարդանակերտի պատերազմից ազատված արաբներին հյուրընկալեց, խնամեց և հասցրեց ամիրապետին «703 թ»։ Ապերախտ արաբները գերի տարին նրան Միջագետքի Խառան քաղաքը, ուր հավատքը չուրանալով բանտարկվեց և տանջանքներին չդիմանալով մեռավ «708 թ»։ Եղբայրը՝ Գագիկ Նահապետ քրոջ հիշատակին կանգնեցրեց Վարդանակերտի եկեղեցին։—Ղև. ը.—Արձ. Այրարատ 56, 138, Շողակաթ 173. Տաշեան՝ Ցուց. 656, Ազգապ. 807, Կոգեան՝ Կամարկնները 153—5։

— 9. Շուշան Մամիկոնեան, կին Արտաւազդ Կամսարական ապահիւպատ պատրիկի և իշխանի Հայոց, որդւոյ Հրահատի, որդւոյ Ներսեհ պատրիկի։ Շուշանի և Արտաւազդի գերեզմանը գտնվում է Նախճաւան գյուղի եկեղեցում, Ը դարի առաջին քառորդից։—Արձ. Շիրակ 136 և 174, Շողակաթ 176, Կոգեան՝ Կմարկնները 164-6։

— 10. Շուշան, իշխանուհի Սիւնեաց, կին Աշոտի (№ 29), որդւոյ Փիլիպպէի և մայր Սմբատ Սիւնիի. վերաշինեց Խոտակերաց վանքը (910 թ), որ իր ամուսինն էր շինել, բայց երկրաշարժից կործանվել էր (Արձ. 910 թվից տես Օրբ. խգ և Սիսական 169—170)։ Երնջակի առմամբ գերի ընկավ Յուսուփ ոստիկանի ձեռքը և մեռավ բանտում «914 թ».—Օրբ. լէ.—տես. Շուշանայ՝ Օրբ. խ, խգ։

— 11. Շուշան, Թագուհի հայոց, կին Յովհաննէս-Սմբատ Թագավորի. իր անունով կա Էջմիածնի Թանգարանում արծաթյա մի խաչ, երկաթագիր արձանագրությամբ 966 թ. հրատր. Շահխաթ. Բ. 308, Սիսական 518. լավագույնն է Բասմաջեան, Բանաս. 1902, 98, ուր ցույց է տրված թե այդ արձանագրությունը կեղծիք է։

— 12. Շուշան կամ Շուշիկ, Հայոց տիկնաց տիկին, կին Գրիգոր Համզայի Պահլաւունւոյ, որ էր հայր Վահրամի, Ապլխարիբի, Համզա մանուկի և Նահապետ Վասակ զորավար Պահլաւունու, պապ Գրիգոր Մագիստրոսի, որով Շուշան տիկինը լինում է Մագիստրոսի տատը։ Շուշանը ծնվել է 952 թ., այրիացել է 982 թ. երեսնամյա հասակում։ Անիի Ապուղամրենց եկեղե-

ցուն նվիրել է մի խանութ 995 թ. (Արձ. Շիրակ 52—53)։ Իր որդի Վահրամ իշխանաց իշխանի հետ կառուցել է Մարմաշենի վանքը 986—1029 թ, երբ 77 տարեկան էր (Արձ. Շիրակ 148)։ —Մեռել է նախ քան 1040 թ. որովհետև, այս թվին իր որդի Ապլղարիպը հանգուցյալ մոր հիշատակին պատարագ է հաստատում (Արձ. Շիրակ 53)։—Մագ. Թղ. ժա և յոզ. էջ ժե—ժզ, Ալիշան, Շնորհ. էջ 12 (տախտակը)։

— 13. Շուշան, դուստր Օշին Բ Լամբրոնացու, կրտսեր քույր Ներսէս Լամբրոնացու. ծնվել է 1153 թվից հետո. եղավ կրոնավորուհի.—գրծ. Շուշանաւ՝ Պատմ. լմբ. 234, Հայապ. 418։

— 14. Շուշան, որդի Ստեփանոսի. Մանազկերտի Խաղղուղջ գյուղի Ս. Սիոն և Ս. Գէորգ եկեղեցու Աւետարանը գողացել էին «յաւուրս Պենտեկոստէիցն, յամսեան սահմի, որ օր ժԾ էր ամսոյն. և խափանեցին զկարգացմունս և զժամատեղն և զքահանայս տրտմեցուցին»։ Այս Շուշանը «մեծաւ ջանիւ յերևան եհան ի յաւազակացն», 1171 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 545։

— 15. Շուշիկ, կին Վասակի. ծնողներն են Յովհաննէսի, որ թե նրանց և թե իր մյուս հանգուցյալ եղբայրների՝ Հասանի և Վաչէի հիշատակին շինեց Մակարավանքի մատուռը 1198 թ.—Արցախ 375։

— 16. Շուշիկ, կին Վահրամի. ծնողներն են Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի, որ գահակալեց 1221 թ, ուստի ծնունդը ընկնում է ԺԲ դար.—Նաթանեան՝ Տեղեկ. Սեբաստ. 83, Թորոս աղբ. Ա. 187 (անդ Բ. 359 Շաղիկ վրիպակ է ձեռագրի Ղ=ւշ), Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա, Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 333, Ձեռ. Վիեննա. Ա. 652, Ազգապ. 5527։

— 17. Շուշիկ, կին Պետրոսի և մայր Հասանի (№ 34), որ մի կամար է կանգնեցրել իր հանգուցյալ հոր հիշատակին՝ Խաթրավանքում 1215 թ.—Արցախ 194։

— 18. Շուշան կին Եղիշէ քահանայի և մայր Պետրոս երեցի, որ Նիկոպոլսի Խաւմ քաղաքում օրինակեց Աւետարանը, 1223 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 422։

— 19. Շուշիկ (տես. Շուշկանն), կին Ճուճայի և մայր Քափիկի, որ էր զորավար ամիրսպասալար Շահնշահի և կալվածներ է նվիրել Խծկոնքին 1230 թ.—Շիրակ 128։

— 20. Շուշիկ, կին Խոսրովի՝ որդւոյ Վահրամ Լոռեցու- այր ու կին կալվածներ են նվիրել Հոռոմոսի վանքին 1231 թ.—Շիրակ 21։

— 21. Շուշանիկ դուստր Վահրամի և քույր Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի, հիշված է 1256 և 1262 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սերաստ. 83, Ձեռ. Մեր.=ՀԱ 1924, 333, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա, Թորոս աղբ. Ա. 187, Ազգապ. 5527։

— 22. Շուշանիկ, դուստր Գորգ քահանայի՝ եղբոր Կոստանդին Ա կաթուղիկոսի, քույր Թորոս քահանայի Հռոմկլայեցւոյ. հիշված է 1262 թ.— Նաթանեան, Տեղեկ. Սերաստ. 83, Թորոս աղբ. Ա. 188, Ձեռ. Մեր. (ՀԱ 1924, 333)։

— 23. Շուշան, դուստր նույն Թորոս քահանայի, հիշված 1256 և 1262 թ. (անդ), նաև Ձեռ. Հալէպի, Բ. 140ա, Ձեռ. Մեր. (ՀԱ 1924, 333)։

— 24. Շուշիկ (տես. Շուշկան), կին Զաքարիա բժշկի և մայր Բլ-Հասան բժշկի, որ Հոռոմոսի վանքին կալված ու ջաղաց է նվիրել 1273 թ.—Շիրակ 22 բ։

— 25. Շուշան, կին Տիվրիկցի Ներկարար Գրիգորի և մայր Գրիգոր! աբեղայի (№ 640), որ օրինակեց Աւետարանը Փրկչի վանքում, 1280 թ.—Թորոս աղբ. Ա. 216։—Այս մինույնը ունի Ձեռ. Վասպ. 448—9, բայց դնում է 1467 թ. երկու հարյուր տարվա տարբերությունը առաջանում է Զ=Ջ թվականից։

— 26. Շուշան, քույր Իւանէ և Զաքարէ սպասալարների. մյուս քույրերն են Խորիշահ և Նանա. ամուսնացավ Դաւիթ իշխանի հետ, որից ծնավ Գրիգոր Դօփեանց (ԺԳ դար).—Ջամչ. Գ. 185 (գրում է Շուշէն)։—Շիրակ 175 տախտակում շատ տարբեր է։

— 27. Շուշան, կին Թադէոս քահանայի, որ հիշվում է 1409 և 1413 թվերին (տես № 56)։—Ձեռ. Հալէպի, Ա. 269։

— 28. Շուշան, դուստր կամ եղբոր դուստր Սահակի, որ Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։

— 29. Շուշան, կին Խաչատուրի (№ 126) և մայր Ասիլ մելիք տատի (տես հավելվածը), որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան 1488 թ.—Ձեռ. Վասպ. 240։

— 30. Շուշան, դուստր խոջա Ջաւզի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

— 31. Շուշան, դուստր Բաշխիի. գրիչ. իր եղբոր Արիստակէս վարդապետի համար օրինակեց «Իմաստութիւն Առակացն Սողոմոնի, Յոբայ են», Երնջակ գավառի Շորոթ գյուղում, 1666 թ.—Սմբատեանց, Երնջակ 283։

*ՇՈՒՓՀԱՂԻՇՈՅ, ար.<ասոր. شوبخاليشوع Šūwxālīšō‘ անունից

(Հիւբշ. 298), որ ծագում է ܫܘܒܚܐ šūwxā «փառք»+Išō‘ «Յիսուս» բառերից և նշանակում է «փառք Յիսուսին»։

— 1. Շուփհաղիշոյ արքեպիսկոպոս Աղուանից, եղավ կաթողիկոս Աղուանից՝ իբրև հաջորդ Գրիգորիս Ա. կաթողիկոսի.— Կղկնտ. Գ. իդ (հրատ. Էմինի Շուփհաղիշու, հրատ. Շահն. Շուփաղիշոյ). Մխ. այրիվ. 24.—տես և Ջամբռ 75, որ հերքում է Շուփհաղիշոյ կաթողիկոսի գոյությունը Եղիշէ առաքյալից հետո և Գրիգորիսից առաջ։

— 2. Շուփհաղիշոյ արքեպիսկոպոս Պարտաւի. մասնակցեց Դուինի «506 թ» եկեղեցական ժողովին, որ գումարել էր հայոց Բաբկէն Ա կաթողիկոսը. անդամ Աղուէնի ժողովի, Վաչագան Գ-ի օրով (Զ դար).-- Կանոն. 192, Կղկնտ. Ա. իզ, իղ (հրատ. Շահն. Շուփհաղիշոյ, հրատ. Էմինի՝ Շուփհաղիշայ), Կիր. ը։— Մխ. այրիվ. 63 հիշում է 500 թվին՝ կոչելով «սուրբն Շուփհաղիշոյ», բայց կաթողիկոսների ցանկում չի դնում։ Բարխուտ. Պատմ. Աղուանից 80՝ համարում է աշակերտ Յովհան Մանդակունու և օծված կաթողիկոս՝ Բաբկէնի ձեռքով։

*ՇՈՒՔՐԱՆ, իգ. < արաբ. شكران šukrān «երախտագիտություն» բառից. իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԶ դարերում։

— 1. Շուքրան խաթուն, Երուսաղէմում 1333 թվին գրված մի Ճաշոց նորից կազմել տվեց 1371 թ.—REA 10,57։

— 2. Շուքրան, Զորեհանգիստ Լուսաւորչի վանքին նվիրեց 200 սպիտակ՝ 1429 թ.— Նոտարք 92։

— 3. Շուքրան խաթուն, կին Պարոնի. ծնողներն են տանուտեր Սադաղայի, որ իր մոր հետ միասին մի Աւետարան գրել տվեց Թումայ քահանային և նվիրեց Աղթամարի վանքին 1476 թ.—Ջեռ. Վասպ. 480—1։

— 4. Շուքրան իբր տր. հիշված է 1593 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 194) և վրիպակ գրչությամբ՝ Շուքան, իգ. 1552 թ. (Ջեռ. Վասպ. 654)։ Կա նաև Շիւքր տր. (< արաբ. شكرى šukrī), վաճառական Ջինաստանի Պեկին քաղաքում, ԺԸ դարի կեսին (Սիսական 468)։

*ՇՕՀ, իգ. < ենթադրում եմ որ պետք է կարդալ նախ Շաւհ, ապա ըստ Վանեցոց հնչման Շաւխ, որով կցել արաբ. شوق šavq բառին, որ հնչվում է šafq, Պոլսի բարբառով շաֆխ և Թուրքերենում ստացել է «ցոլք, փայլ, նշույլ» իմաստը։ Մի անգամ հիշատակված է 1690 թ. (Ջեռ. Վասպ. 973)։

# Ո

ՈԳՈՒՀԻ, իգ. ծագումն անհայտ, ըստ որում բուն ձևն էլ անստույգ է. ստույգ է միայն —ուհի իգական վերջավորությունը։

— 1. Ոգուճի, քույր Սանատրուկ («38—68 թ») թագավորի. Բարթուղիմէոս առաքյալի քարոզությամբ հավատաց և նահատակվեց։—Ոգոհի՝ Անկ. գիրք առաք. 353, 357 (այլ ձ. Աւագուհի, Ոգողուճի, Աւգոհի). Վկ. բարթ. 26, 30. Վրք. և վկ. ա. 209, 211.— Ագրուհի՝ Անկ. գիրք առաք. 364.— Ագուրհի՝ Անկ. գիրք առաք. 363.—Հացունի, Կարևոր խնդ. 126։

— 2. Ոգուճի (Չամչ. Ա. 366 գրում է նաև Ռոգոհի), մայր Գրիգոր Լուսաւորչի.—Ցայսմ. նոյ. 18 ևն.—սեռ. Ոգուճեայ՝ Տաթև. ձմ. դզ. ամ. 421.— Ոգոհեայ՝ Վրդն. լս. 80. Մխ. այրիվ. 60։

— 3. Ոգոճի, դուստր Ռստակէս քահանայի, 1619 թ.— Ձեռ. Թաւր. 68ա։

*ՈԼԻՄՊԻՈԴՈՐ, ար. < հուն. 'Ολυμπιόδωρος անունից, որ կազմված է "Ολυμπος լեռան անունից (որ աստվածների բնակավայրն էր)+δῶρον «տուրք, պարգև» բառից։ Ալիշան, Հյսդ. յոբ. քան, էջ 57—58 համարում է հայ. «Ոլոմպիոդոր՝ յունանուն բայց հայազգի»։ Սակայն նրա հայ լինելու մասին ոչ մի ապացույց կամ վկայություն չի տալիս, բացի այն որ նա տալիս է հին հայոց մասին տեղեկություններ (Խոր. Ա. գ. Բ. հզ)։

ՈԼՏԻՆ? (կա միայն սեռ. Ոլտճին). ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է՝

— Ոլտինն, Կարսի պարիսպները շինողներից մեկը, 1234 թ.—Արձ. Այրրտ. 85, Կրպէ՝ Կարս քղ. 26։

ՈԽԹՈԳ (var. Ոխյթոգ), իգ. ծագումն անհայտ, ըստ որում գրչությունն էլ անստույգ է։ Մի անգամ ունինք՝

— Ոխթոգ, կին Սմբատի՝ որդւոյ Լիպարիտի Օրբելեանց. Սմբատը գերի էր Եգիպտոսում, ազատվեց ու վերադարձավ. երկու տարուց կինը մեռավ. Սմբատը հողեր նվիրեց Հերհերի վանքին 1317 թ.—Սիսական 114։

*ՈՂՈՄՊԻԱԴԱՑ, իգ.<հուն. 'Ολυμπιάς, սեռ.—άδος անունից, որ բուն նշանակում է «Ողիւմպոս լեռան վրա բնակող նիմֆա»։ Այս անունով հայտնի է Ոլիմպիաս՝ կին Փիլիպպոսի և մայր Մեծն Աղեքսանդր Մակեդոնացու—Օլոմպիա ձևով իբրև

իգ. անուն հիշված է 1796 թ. (Էֆիմ. 448). բայց գուցե իբրև օտար: Հնից ունինք միայն՝

— 1. Ողոմպիադայ թագուհի Հայոց. հունաց կայսերական տնից էր. դուստր Աբլաբիոս անձնապահապետի և Կոստանդ կայսեր հանգուցյալ եղբոր՝ Կոստասի նշանածը: Ամուսնացավ Արշակ Բ («350—368 թ») թագավորի հետ: Peeters REA 1, 23 ամուսնությունը դնում է ճիշտ 360 թ. (ըստ Ամմիանոսի): Բայց Ողոմպիադան չսիրեց Արշակին, ասելով որ «թաւ է մարմնով և թուխ է գիմօք»: Այս պատճառով Արշակը մի երկրորդ կին էլ առավ՝ Փառանձեմ Սյունի, որ նախանձելով Ողոմպիադային, թունավորեց նրան «360 թ»:—Խոր. Գ. իա.—Ողիմպի, Ողեմբի, Ողոմբի, Ողոմպի՝ Բուզ. Դ. ժե (որոշիչ հոլով՝ Ողիմպին են).—Ողոմպիա՝ Մեսր. եր. 50—51.—Ոլոմպիա՝ Նոր ժղ. Գ. 58.—սեռ. Ողոմպիադայ՝ Խոր. Գ. իգ.—Ողոմպինոյն՝ Բուզ. Դ. ժե.—տր. Ողոմպիայ՝ Բուզ. Դ. ժե.—Ողոմպի՝ Մեսր. եր. 51: (Զամչ. գրում է Ոլոմպիադա, Ուլումպիադա):

— 2. Ուլումբայ (գրված հոլով՝ Ուլումբին), դուստր Ռըստակէս քահանայի, 1619 թ.—Ձեռ. Թաւր. 68 ա:

ՈՄԱԼ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1503 թ. (Ձեռ. Վասպ. 280):

* ՈՆՈՓՐԻՈՍ, ար. անշուշտ հունարեն բառ է. մեր մեջ գրված է նաև Աւնոփրիոս, Աւնոֆրիոս, Օնոֆրիոս են ձևերով. բուն հունական ձևը ինձ հայտնի չէ. ամենից հարմարն է երևում οἰνοφόρος «գինեբեր»: Այս անունով հայտնի է Ոնոփրիոս անապատականը, որի կյանքը անցել է Հարանց վարքի և Յայսմաւուրքի մեջ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Գ. 443): Մեր մեջ քիչ է գործածված. հնագույն գործածությունը ԺԳ° դարից է. մյուսները ԺԶ—ԺԷ դար: Հայտնի էր մեր դարում Խրիմեցի բանաստեղծ †Ոնոփրիոս Անոփեանը:

— 1. Ոնոփրիոս եպիսկոպոս, առաջնորդ Ամթայ. ստացավ Լամբրոնացու գործերը (Ձեռ. Վենետ. № 396).—ԺԳ դմր. տես Լմբ. առակ. 129:

— 2. Ոնոփրիոս, միաբան Պառուագրակ վանից, «հոգևոր հայրն մեր, որ բազում աշխատեցաւ և ուսոյց և սնոյց զմեզ» (միաբաններին), 1421 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 313: Հմմտ. վարը № 4:

— 3. Աւնոփրիոս քահանա, հայր Մկրտիչ քահանայի Ար-

հիշեցուոյ, որ գրել տվեց մի ճաշոց, 1441 թ. (տես Մկրտիչ քհ. № 119).—Թորոս աղբ. Ա. 222։

— 4. Ոնոփրիոս վանահայր, հորեղբայր Կարապետ (№ 211) վանահոր, որ Պառուագրակի վանքում օրինակեց Աւետարանը, 1454 թ. երբ Ոնոփրիոսը մեռած էր.—Rapport Belgique 97, Նոտարք 176, Թորոս աղբ. Բ. 376։ Հմմտ. № 2։

— 5. Ոնոփրիոս կրոնավոր, գրիչ. Կեղոյ Խլպաշի Ս. Կարապետ վանքում օրինակեց Աւետարանը, 1456 թ.—Նոտարք 183։

— 6. Օնոբրիոս Ախքիրմանցի, որդի Սիմէոն երեցի և եղբայր Նիկողայոս եպիսկոպոսի Ախքիրմանի. արդեն մեռած էր 1459 թ.—REA 10, 63։

— 7. Աւնոփրիոս, հանգուցյալ հոգևոր եղբայր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձեանի Խլպաշի վանքում օրինակեց մի Աւետարան 1464 թ.—Նաթանեան, Արտօսր Հյստնի 152, Թորոս աղբ. Բ. 341> Նոտարք 218 (Նաթանեանը դնում է ՉՁԵ=1336 թ)։

— 8. Ոնոփրիոս քահանա, ուսուցիչ Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկիւնեաց վանքում օրինակեց Աւետարանը, 1477 թ. այս թվին Ոնոփրիոսը արդեն մեռած էր.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 220)։

— Ավելի ուշ հիշատակված են՝ Ոնոփրիոս ՝ հայր Մատթէոս արքեպիսկոպոսի Յովհաննավանից, ԺԶ դար (Այրարատ 172),— 1613 թվից հետո (Տաշեան, Ցուց. 344),— Ոնոփրիոս աբեղա Կամենիցի՝ 1627 թ. (Առաք. պատմ. 282)— Ոնոփրիոս եպիսկոպոս Լեհահայոց 1651 թ. (Ազգապ. 2457),—Ոնոփրիոս Կարկուտ՝ առաջնորդ Տիգրանակերտի 1662 թ. (Թորոս աղբ. Բ. 439),— Օնօփրիոս եպիսկոպոս Լէապօլսոյ՝ 1669 թ. (Տաշեան, Ցուց. 907), —Օնոփրիոս (ցանկում Օնոփրիանոս) Երևանցի, վանահայր Սեւանի, առաջնորդ Տիգրանակերտի, ընբոստացավ կաթուղիկոսի դեմ և բանտարկվելով մեռավ՝ 1650 թ? (տես Ջքր. սարկ. Բ. ԼԸ, ԼԹ, խդ և Սիսական 88)։ Պոլսում գործածվել է անցյալ դարում՝ Հոնոփ ձևով (ըստ Թէոդիկի, Պոլսի հայերը)։

* ՈՉՈՊԻՆՏՐ, պր.<վրաց. օչոպինտրէ «պան, անտառների ոգին» (Ջուբինով 1001)։

— Ոչոպինտր, հայր Գաբրիէլի, որ էր զորավար Տայոց Դաւիթ կիւրապաղատի (Ժ դար).—հմյ է.—սեռ. Ոչոպընտրայ՝ Ասող. Գ. խա.—Զոպնդարայ՝ Մխ. այրիվ. 72։

† ՈՍԿԱՆ, պր. < հյ. ոսկի բառից, իբր Ոսկեանէ. տես Ոսկի.

գործածվում է նաև այժմ և հնչվում է Օսկան. սրանից է Ոսկանյան ազգանունը։

— 1. Ոսկան ճգնավոր արքելական Անտիոքում. մոլեռանդ հայ-հոռոմ, որին Ն. Լամբրոնացին (†1198 թ) մի թուղթ գրեցտպված է Երուսաղեմ 1842 թ., կից «Խորհրդածութեան Ս. Պատարագի»․—Զարբ. Թրգմ. 221։

— 2. Տէր Ոսկան, հիշված է Վանի Կուռուբաշ գյուղի մոտ Ս. Գէորգ մատրան մեջ գտնված մի խաչքարի վրա, 1214 թ.—Ազգագր. հանդ. ԻԱ, էջ 86։

— 3. Ոսկան վարդապետ, գրիչ. Գլաձորում օրինակեց մի Աւետարան 1334 թ. (ժամանակակից է հիշում Հեթում Բ-ին և Գրիգոր կաթուղիկոսին. բայց ոչ մեկը ճիշտ չէ)։—Թորոս աղբ. Բ. 375։

— 4. Ոսկանց, եղբոր դուստր?! Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11ա։

— 5. Ոսկան 1511 թ. (Ձեռ. Վասպ. 645)։

— 6. ՈսկանԷ՞ս (սեռ. ՈսկանԷսին), ար. հիշված է 1557 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 8ա։

— 7. Ոսկան վարդապետ Երևանցի. ծնվել է Սպահան «1614 թ». աշակերտ Խաչատուր Կեսարացու. Փիլիպպոս կաթուղիկոսը հրավիրեց նրան էջմիածին և Ուշիի վանքը նրան հանձնեց։ Այստեղ ծանոթացավ Պօղոս Պիրոմալլի լատին կրոնավորի հետ և նրանից սովորեց լատին լեզուն։ Եղբայրը՝ Երևանցի վաճառական Աւետիսը՝ իր վրա վերցրած լինելով Մատթէոս Ծարեցու տպարանը Ամստերդամում (սկսված «1658 թ»), Ոսկանին հրավիրեց այնտեղ։ Հրատարակեց Աստուածաշունչը (1668 թ), Առաքել Դաւրիժեցու Պատմութիւնը (1669 թ), Աղուէսագիրքը և այլն, ընդամենը 19 գիրք։ Այնուհետև Ոսկանը անցավ Լիվոռնո, ուր տպեց ևս 2 գիրք (1670 թ), ապա Մարսէյլ (1673 թ). բայց արդեն չդիմանալով պապական գրաքննության չարիքներին, մեռավ Մարսէյլում «1674 թ»։ Հայ տպագրության ռահվիրա և մեծ գործիչներից մեկն է. իր ազգականները և իր ծառայողները իրանից հետո շարունակեցին իր գործը ավելի հաջողությամբ և տպարաններ բացին Մարսէյլ, Պոլիս, Ամստերդամ, Վենետիկ և ն։ Թողել է նաև լատին լեզվով վիճակագրություն հայ եկեղեցու թեմերի, որի ամփոփումը տալիս է Ազգապ. 2546—9։—Զամչ. Գ. 660. Զարբ. Նոր մատեն. 297—329, Առաք. պատ. 270. Զուղ.

121—2, Այրարատ 181, Աղգապ. 2538—2549, Լէօ, Հայկ. տպ. Ա. էջ 153—184 (ընդարձակ)։

†ՈՍԿԵԱԿ, ար. < հյ. ոսկի բառի կամ անվան փաղաքշականն է։

— 1. Ոսկեակ, ազգական Յովհաննէս (№ 873) կրոնավորի, որ գնեց մի հին Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 204։

— 2. Ոսկեակ կամ Ոսկեկ, իբր իգ. հիշված է 1591 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 7 բ), 1636 թ. (անդ. Ա. 355 բ), 1735 թ. (Ձեռ. Վասպ. 546), 1779 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 358 ա), և 1686 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թեհր. 8բ=ՀԱ 1935, 399)· վերջինը իբրև փաղաքշական ձևը՝ Ոսկեխատ անվան։ Ունինք դարձյալ Ոսկիկ 1648 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 38բ) և անթվ. (Թորոս աղբ. Բ. 361)։

†ՈՍԿԵԳՈՅՆ, ար. < հյ. ոսկի+գոյն բառերից (մազերի գույնից առնելով)։

— Ոսկեգոյն, քեռորդի Կարապետ Դերջանցու, որ օրինակեց Բարոզգիրքը, Հերմոնի վանքում, 1421 թ.— Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82բ)։

†ՈՍԿԵԹԵԼ, իգ. < հյ. ոսկի+թել բառերից· իբր թե «ոսկեթել մազերով»· այս անունով եղել է մի անհայտ նահատակուհի (Արցախ 293 > Նոր վկ. 696)։

†ՈՍԿԵԹՈՒՓ, իգ. < հյ. ոսկի+թուփ բառերից· մի անգամ ունինք հիշատակված՝

— Ոսկեթուփ, կին շահնա Յովհաննէսի (1420 թվից առաջ).—Տաշեան, Ցուց. 666բ։

†ՈՍԿԵԾԱՄ, իգ. < հյ. ոսկի+ծամ «վարս, մազ» բառերից· ենթադրվում է «Ոսկեծամի կունտ խաչ» տեղանունից, 1104 թ.—Հայապ. 396։ (Բայց կա նաև Տուպրիլի աները, «որոյ անունն ոսկեծամ Թարգմանիւր» 1054 թ. (Զամչ. Բ. 956)։

†ՈՍԿԵՀԱՆ, իգ. < հյ. ոսկի+հան բառերից, իմաստը շատ պարզ չէ· մի անգամ հիշված եմ գտնում 1582 թ. (Manus. brit. mus. 39բ, տպ. Ոսկեկան)։

†ՈՍԿԵՀԱՏ, իգ. < հյ. ոսկի+հատ բառերից· իբր թե «ոսկու հատը, ճիշտ ոսկու նման»։ Որ և Ոսկիհատ։ Կենդանի անուն է նաև այժմ։

— 1. Ոսկեհատ, կին Յովհաննէս քահանայի, որ Սուրմարի քաղաքում, Ծերուն գրչին գրել տվեց մի Աւետարան 1296 թ.— Ձեռ. Վասպ. 121—2։

— 2. Ոսկեհատ *անունով երկու կին հիշված են 1420 թվից առաջ (Տաշեան, Ցուց. 665—6)։*

— 3. Ոսկէհատ, *հիշված է Թէոդոսիայի Ս. Աստուածածին եկեղեցու մի խաչքարի վրա 1472 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. էջ 353։*

— 4. Ոսկիհատ, *կին Ղազարի, ծնողներն են Մելքիսեթ գրչի, որ Հալէպում, պարոն Ֆարաճի պատվերով գրեց մի Աւետարան 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96բ։*

— *Ավելի ուշ ունինք* Ոսկիհատ *1508 թ. (Ձեռ. Վասպ. 634),* Ոսկեհատ *1561 թ. (Ձեռ. Կես. ածած. 51ա), 1585 թ. (Ձեռ. Վասպ. 704), 1591 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 10ա),* Ոսկիհատ *1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 474),* Ոսկեհատ *1660 թ. (Ձեռ. Վասպ. 554),* Ոսկուհատ *1693 թ. (անդ 336)։*

†*ՈՍԿԵՀԵՐ, ար. և իգ.*<*հյ.* ոսկի+հեր *բառերից (ոսկեգույն դեղին մազեր ունենալու պատճառով)։*

— 1. Ոսկեհեր, *հայր Գէորգ կրոնավորի, որ ստացավ Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու՝ 1363 թ.— Սմբատեանց՝ Երընջակ 228։*

— 2. Ոսկեհեր *ոմն, իգ. հիշված 1420 թվից առաջ (Տաշեան, Ցուց. 666)։*

— 3. Ոսկեհեր *քահանա, շինեց Ս. Ղազարի տաճարը, որի համար գրել տվեց մի Աւետարան՝ 1492 թ. (Գ. Կարապետեան, Հնգ. յիշատ. Սամաթիոյ 41)։*

— 4. Ոսկեհեր *քահանա ոմն, հիշված 1526 թ.— Ձեռ. Կես. ածած. 70բ)։*

†*ՈՍԿԵՎԱՆ (կամ* Ոսկւան*), ար.*<*հյ.* ոսկի+վա°ն(f) *բառերից. իմաստը որոշ չէ։ Հիշատակված է ԺԳ—ԺԵ դարերում։*

— Ոսկւան, *կանգնեցրել է մի խաչքար իր և իր ամուսնու հիշատակին՝ Շողագայ վանքի մոտ, 1261 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 512։*

— *Ավելի ուշ հիշատակված ունինք* Ոսկւան *կամ* Ոսկեվան, *եղբայր Յովհաննէս վարդապետ Բրգուտենցի † 1589 (ՀԱ 1937, 210),* Ոսկեվան *1601 թ. (Ձեռ. Վասպ. 794), անթվական՝* Ոսկւան, *երեք անգամ հիշված (Ձեռ. Վասպ. 767—8),* Ոսկեվան՝ Manus. brit. mus. *25բ։*

†*ՈՍԿԵՏԻԿԻՆ, իգ.*<*հյ.* ոսկի+տիկին *բառերից։ Գործածված է ԺԳ—ԺԶ դարերում։*

— 1. Ոսկետիկին, կին Դաւիթի և մայր Հեթում քահանայի Յովհաննավանից, 1318 թ.—Այրարատ 172։

— 2. Ոսկետիկին կամ Ոսկիտիկին, դուստր Սիմէոնի և քույր Թովմա (№ 165) Մինասենց նշանավոր գրչի (որ արտագրել է զանազան Աւետարաններ Աղթամարում՝ 1420—44 թվերին)․ կինն է Խաչատուրի կամ Խաչիկի և մայր Հայրապետ աբեղայի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը 1444 թ. և 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12բ, Ձեռ. Վասպ. 388, 393, Նոտարք 146, Ակինեան՝ Գաւազանագիրք 110։

— 3. Ոսկետիկին, քույր Առաքել եպիսկոպոսի, որ ստացավ մի Յայսմաւուրք 1591 թ.—Տաշեան, Ցուց. 568։

† ՈՍԿԵՏՈՒՆԿ, ար. <հյ. ոսկի+տունկ բառերից, ինչպես ունինք Նորատունկ․ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Ոսկետունկ, «դեռաբուսիկ որդի» Զորայի, որ Կոնթեր գյուղում Երեմիա գրչին գրել տվեց մի Մաշտոց 1474 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339։

— 2. Ոսկետունկ հիշատակված է նաև մի քանի անթվական հիշատակարաններում. այսպես՝ Ոսկէտունկ՝ Թորոս աղբ. Բ. 366, Ոսկետունկ՝ Ձեռ. Վեննա. Ա. 492 (1488-ից ուշ) և Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 378 (1548-ից ուշ)։

† ՈՍԿԻ, ար. և իգ. <հյ. ոսկի բառից, իբր թրգմ. հուն. Χρυσιάς, Χρύσης, Χρύσιλλα, Χρῦσις, Χρυσος են անունների, որոնք բոլոր ծագում են χρυσός «ոսկի» բառից։

— 1. Ոսկի, գլխավորն է Ս. Ոսկեանց, որոնք Թադէոս առաքյալի աշակերտներն էին, ազգաւ հռովմայեցի, և բնակվում էին Եփրատի ակունքի մոտ։ Նահատակվեցին Արտաշէս Բ. թագավորի օրով (107 թ. ըստ Զամչ. Ա. 343 և Աւգեր. Լիակ. վրք. արբ. Բ. 127)։— Յհ. կթղ. Է. Վկ. սուք. 33. Յայսմ. օգոստ. 27, սեպտ. 19.—Ոսկեանք, սեռ. Ոսկեանց՝ Յհ։ կթղ. Է. Ուխտ. Ռ. խբ. Վկ. ոսկ. 59. Շար. իա, ղբ, էջ 459. Տաթև. ձմ. խե. Մ. մաշտ. 326 բ. Ճշ. 72. Պարգ. 691. Ժմ. 947. Յայսմ. օգոստ. 27, սեպտ. 19, նոյ. 1. Առաք. պամ. 214.— հույն բառով՝ Խռիւսի՝ Յայսմ. սեպտ. 19. Վկ. ոսկ. 59, 62.—Քռիւսի՝ Արծր. Ա. ը.—Քռիւսեանք՝ Սամ. 36.— Ոսկեանց վարքը տես Սոփերք ԺԹ, 59—66 (որ և թարգմանված է վրացերեն՝ ըստ Մառի)։ Տես և Հացունի, Կարևոր խնդ. 127—8։—Ոսկեանք ձևից է առաջացած Ոսկան անունը, որ տես առանձին։

— 2. Ոսկի, դուստր Մուսէ կամ Մովսէս իշխանի Աղուա-

նից. Թոռն Եսայի Ապումուսէի և քույր Գագիկ Թագավորի Աղուանից։ Կառուցել է մի տաճար ՆԽԹ=1000 թվին, որի արձանագրությունը տես Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 131 և Արցախ, էջ 79—80։

— 3. Ոսկի, կին Խոսրովի և մայր Գէորգ քահանայի, որ Արգելանի վանքում մի Աւետարան գրել տվեց Յակոբ կրոնավորին, 1251 թ.—Ձեռ. Վասպ. 87։

— 4. Ոսկի, դուստր Յովաննէսի և քույր Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, 460։

— 5. Ոսկի, կին Վարդանի, որ 1304 թվին գրված մի Աւետարան ձեռք բերեց և կազմել տվեց 1374 թ.—Ձեռ. Վասպ. էջ 143—4։

— 6. Ոսկի, կին Թումայ անուն անձի. ունէին մի ձեռագիր Աւետարան, որ շնորհեցին Վարդան աբեղային՝ արտագրելու նպատակով, Ծպատի անապատում, Թովմա կրոնավորի (№ 96) համար, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 332։

— 7. Ոսկի, դուստր Պօղոս քահանայի և քույր Թումայ եպիսկոպոսի, որ Բուխտանից երկրի առաջնորդն էր 1428 թ.—Նոտարք 90։

— 8. Ոսկի, կին Յոհաննէսի և մայր Մարգարէ (№ 41) բեղմնավոր գրչի, որ գրել է 1441—63 թվերին. մայրը հիշված է այս թվերին՝ Նոտարք 124 և Ձեռ. Վասպ. 445։

— 9. Ոսկի, կին Յովհաննէսի և մայր Խաչատուր քահանայի, որ իր Դաւիթ նորընծայ որդու համար սկսեց օրինակել Աւետարանը, բայց շուտով մեռնելով՝ որդին լրացրեց, Արճէշ 1455 թ.—Նոտարք 177։

— 10. Ոսկի, կին Ստեփաննոսի և մայր Խարիբ խաթունի, որ իր ամուսին Ատոմի հետ մի Աւետարան գրել տվեց Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 528։

— 11. Ոսկի՝ իբրև արական անուն հիշված է ավելի ուշ՝ 1526 թ. (և իւր ուստերն Ոսկիին).—Ձեռ. Կես. ածած. 70ա (ցանկի մէջ, էջ 74 ա, սխալմամբ նշանակված է իգական անուն)։—Թերևս ար. է նաև Ոսկի 1604 թ. (Ձեռ. Վասպ. 816), որովհետև բոլոր հարակիցները ար. են։

— 12. Ոսկի՝ իբրև իգական անուն, ավելի ուշ հիշատակված է 1536 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 340), 1585 թ. (Ձեռ. Վասպ. 699), 1596 թ. (Ձեռ. Թաւր. 76 ա), Ոսկիխաթուն 1608 թ. (Ձեռ.

*Վասպ. 831)*, Ոսկի *1627 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395), 1656 թ. (Ձեռ. Վեննետ. Ա. 604), 1661 թ. (Տաշեան, Ցուց. 341) և այժմ էլ կենդանի է միայն իբր իգ. անուն։*

† *ՈՍԿԻԳՈՒԼ, իգ. < հյ.* ոսկի+*պրս.* گل gul *«վարդ» բառերից։ Գործածական անուն է այժմ Զանգեզուրում։*

† *ՈՍԿԻՀԱՏԻԿ, իգ. < հյ.* ոսկի+հատիկ *բառերից. հիշված է 1631 թ.* (Bodleian *139, գրված* Ոսկիատիկ*). համտ. նաև* Ոսկեհատ. *տարբեր է* Ոսկիտատիկ։

† *ՈՍԿԻՆԱՆԱ, իգ. < հյ.* ոսկի+*թրք.* nänä *«մայրիկ» բառերից. հիշված եմ գտնում 1794 թ.—Ձեռ. Արգ. յուշ. էջ 170—171։*

† *ՈՍԿԻՆԱՐ, իգ. < հյ.* ոսկի+*արաբ.* نار nār *«կրակ» բառերից, իբր «ոսկեհուր»։ Հիշված է 1732 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 317), անթվական՝ Ձեռ. Նոր-Բայազ. 34 բ (ուր ապա դառնում է* Ոսկի*). կենդանի է նաև այժմ։ Տրապիզոնում կա* Ոսկինարեան *ազգանունը։*

† *ՈՍԿԻՏԱՏԻԿ, իգ. < հյ.* ոսկի+տատիկ *բառերից. մանկիկը նման է եղել իր* Ոսկի *մեծ մորը։ Հիշված է ԺԸ դարում* (Bodleian *167).—այլ է* Ոսկիհատիկ։

† *ՈՍԿՈՒՄ, տր. < անշուշտ* ոսկի *բառից, բայց վերջավորությունը անսովոր է. համտ.* Շահում, Գուլում *ևն։ Հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 109 բ։*

† *ՈՍՏԱՆ, տր. < հյ.* ոստան *«արքունիք» բառից. հիշված է մի հիշատակարանում, որի թվականն է Պ(Զ?) =1431?*— Rapport Belgique *115։*

† *ՈՍՏԱՆԻԿ, ար. < հյ.* ոստանիկ *«արքունի, ազնվական» բառից. նորահնար անուն էր անցյալ դարում։*

† *ՈՍՏԻԿ. իգ? < հյ.* ոստ *«ճյուղ» բառի փաղաքշականից. հիշված է ԺԶ դարում (Ձեռ. Սանաս. 7բ)։*

† *ՈՎՍԱՆՆԱ, իգ. < հյ.* ովսաննա *«օրհներգություն» բառից, որ եբրայական փոխառություն է, Իբրև Մարիամ Աստուածածնի մոր անունը հիշված է Անկ. գիրք նոր կտ. էջ 237—240 ևն, մինչ այլուստ գիտենք, որ նրա անունը* Աննա *էր։ Իբրև իգական անուն հնագույն հիշատակությունը մեր մեջ 1775 թվից է (Տաշեան, Ցուց. 924՝ գրված* Յովսաննա*)։ Բայց ավելի հնից կա* Ովսաննեան *ազգանունը (տես* Յակոբ № *174, վարդապետ Ովսաննացի, Ովսանանց կամ Յովսանանց † 1428 թ)։ Այժմ գործածական է միայն իբրև իգ. և կրճատ ձևն էլ է* Օսան, Օսիկ։

* *ՈՎՍԷԷ, ար. < եբր.* הושע Hoše'a *անվան հուն.* 'Ωσηέ

տառադարձությունից (լատ. Hoseas)։ Ծագում է եբր. ישע is' արմատից, որ նշանակում է «օգնել, ազատել, փրկել» (Gesenius 177, 325—6)։ Այս անունը մեր մեջ գործածված չէ. հիշված կա միայն Յովսէ վարդապետ ոմն, 1809 թ. (Զեռ. Դաղեան, Բ. 19 բ), որ եթե վրիպակ չէ՝ փոխանակ Յովսէփ, պետք է հասկանալ Ովսէէ։ Այս անունով հայտնի է 12 փոքր մարգարեներից մեկը։

* ՈՎՐԵՍՏԷՍ, ար. < հուն. Ὀρέστης անձնանունից, որ ծագում է ὄρος «սար, լեռ» բառից և նշանակում է բուն «լեռնական»։ Այս անունով հայտնի են Ագամեմնոնի որդին և ուրիշներ։ Մեր մեջ գործածված չէ. կա միայն մի նահատակ, որ տես տակը։ Անցյալ դարում հազվագյուտ գործածություն ուներ Պոլսում։

— Ովրեստէս կամ Առեստէս, Սեբաստացի հայ. քաջ և գեղեցիկ զինվորական էր և ծառայում էր հռոմեական բանակում։ Աչքի ընկավ իր ճարպիկ զինավարժությամբ։ Դատավորը մրցանքի միջոցին նրա ծոցում նկատելով մի խաչ, իմացավ որ քրիստոնյա է։ Հավատքը չուրանալու պատճառով չարչարանքով նահատակեց նրան (Դ դար)։—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 508։

* ՈՎՖԱՏԱՐ, ար. < պրս. وفادار vefādār «հավատարիմ, խոստմնապահ, հաստատամիտ» բառից։ Անսովոր անուն է։ Մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակության մեջ, որ սակայն 1365 թվից ուշ է։—Զեռ. Վենետ. Ա. 614։

† ՈՏՆԱՄՈՒՐ, ար. < հյ. ոտն+ամուր բառերից. հիշատակված է միայն մի անգամ՝

— Ոտնամուր, մերձավոր Ուխտիս վարդապետ Անեցու, որ նվերներ է արել Հոռոմոսի վանքին և պատարագ ստացել թե իր և թե Ոտնամուրի համար՝ 1250 թ.—Արձ. Շիրակ 24։

* ՈՏՐԻՈՍ, ար. < փռյուգական անուն է. հմմտ. Ὀτρεύς, Ὀτρῆος Թագավոր Փռյուգացոց (ըստ Հոմերոսի Իլիականի)։ Այս անունով ունինք մեր մեջ՝

— Ոտրիոս եպիսկոպոս Փոքր—Հայոց (հունարեն տառադարձված է Ὀτρήϊος). իր ընկերների հետ միասին գրեց Լևոն կայսեր (457—474 թ) և ընդունեց Քաղկեդոնի դավանանքը (Տաշեան. Ցուց, 109ա)։ Հմմտ. Ոտրիւոս եպիսկոպոս Մելիտինեոյ Հայոց (Սոկր. 420)։

† ՈՐԴԵԱԿ, ար. < հյ. որդեակ բառից, որ որդի բառի փաղաքշականն է. հմմտ. Բալա, Որդի անունները։

— 1. Որդեակ, վանքերից Փարպոյ. ստորագրում է այն ձևա-

նարկին, որ ավին Հունահայերը Աբրահամ կաթողիկոսին՝ խոստանալով հավատարիմ մնալ հայոց դավանանքին «607 թ».— Ուխտ. Բ. լէ, Գիրք թղ. խ։

— 2. Որդեկ երեց Կողբեցի, որդի Դուքի, թոռն Պառաւ Երեցի, Կողբում ունեցած իր այգին և տունը նվիրել է Արջոյ առիճին, իր, իր մոր՝ Թագուհու և իր կնոջ՝ Մամաթէի հիշատակին, 1289 թ.—Արձ. Շիրակ 123, Այրարատ 120։

† ՈՐԴԻ, ար. < հյ. որդի բառից. տես Որդեակ և Որդիք։

— Որդի Դիմաքսեան, կուսակից Վահան Մամիկոնեանի. նահատակվեց Խոսրովակերտի պատերազմում «483 թ.»—Փարպ. հը։

† ՈՐԴԻՔ, ար. < Նախորդ Որդի անվան հոգնակի ձևից. գործածական էր Պոլսում, անցյալ դարում. հնագույն հիշատակությունը գտնում եմ 1860 թվին՝ Պէրպ. Պատմ. հայոց 388։ Հոգնակին առաջացել է ակնարկությամբ «Որդիք Զեբեդեայ», կամ մանավանդ «Որդիք և թոռունք Լուսաւորչի» ձևերից։ Համմ. Որդի, Որդեակ, Որդոց։

† ՈՐԴՈՑ. ար. < հյ. Որդի բառի յգ. սեռ. որդ(ւ)ոց ձևից, ակնարկությամբ «Որդւոցն Որոտման», ըստ Նախորդի։ Իբրև անձնանուն գտնում եմ գործածված ԺԶ դարում (Տաշեան, Ցուց. 883բ).—Տաշեանը հասարակ անուն է կարծել անուշադրությամբ։

* ՈՐՄԶԴԱՅ, ար. < պհլ. *Ormizd, Hormizd, հպրս. Ahuramazdā «Արամազդ» ձևից։

— Որմզդայ, եպիսկոպոս Փոքր-Հայքի, իր ընկերակից ուրիշ եպիսկոպոսների հետ Լևոն կայսեր (457—474 թ) գրեց թուղթ դավանության Քաղկեդոնի ժողովի (Տաշեան, Ցուց. 109 ա)։

* ՈՐՄԶԴԱՏ, ար. < պհլ. *Ormizdāt անունից, որից փոխառյալ է նաև ասոր. Hormizdāḏ. սրա հպրս. ձևը պիտի լինեը *Ahuramazdādāta «Արամազդի տվածը» (Հիւբշ. 62)։ Կա օր. Որմզդատ՝ եղբայր Պարսից Պերոզ թագավորի. Hormizdād պարսիկ ոմն քրիստոնյա՝ Ե դար (Justi 10ա)։

— Որմզդատ, անծանօթ ոմն, որի քույրը՝ Աննա, Բարթուղիմէոս առաքյալի ձեռքով նշանակվեց իբր Հոգեաց վանքի մեծավորուհի (Ա դար).— սեռ. Որմզդատայ՝ Խոր. պատմ. ածած. 295։—Աւրմզդայ՝ Հայապ. 53։

* ՈՐՄԻԶԴ, ար. < պհլ. *Ormizd, Hormizd=պրս. ارمزد Urmuzd ձևից։ Ավելի ընդարձակ տես Արամազդ։ Իբր անձնանուն Պարսից մեջ ունինք Ormuzd Ա. որդի Շապուհի, թագավոր Սա-

սանեան (Շահն. հտ. 5, էջ 317), լտ. Hormisdas, Որմիզդ Բ որդի Ներսեհի, թագավոր Սասանեան (անդ, էջ 336), Որմիզդ Գ (հտ. 6, էջ 68), Որմիզդ Դ. (անդ 437)։ Գործածված է միայն Ագաթ. 778 իբրև անուն աստուծոյ. «Դիւան գրչի Որմզդի»։ Իսկ իբրև անձնանուն՝ այնպես տարածված չէ ինչպես Պարսից մեջ. կա միայն՝

— Որմիզդ (Հորմիզդես), առաջնորդ Կոմանայի Երկրորդ Հայոց։—Հացունի, Կարևոր խնդ. 116։

ՈՐՈԶ, ար. ծագումն անհայտ։ Կա Որոզիոս=լտ. Orosius, ֆրանս. Orose անունով քրիստոնյա հռովմայեցի պատմիչ Ե դարից (Չամչ. Ա. 26).—այլ է հուն. 'Ορσέας արական անունը։

— Որոզ թագավոր Աղուանից. հարձակվեց Պոմպէոսի վրա՝ ազատելու համար ձերբակալված Տիգրան փոքրին, բայց հաղթըվեց (65 թ)։—Լէօ, Ա. 422։

* ՈՐՈՆԴԷՍ, ար. ծագումը տես Երուանդ։

— 1. Որոնդես, պարսիկ. փեսա թագավորի Պարսից. սատրապ Հայաստանի, Քսենոփոնի (†352 թ) ժամանակ։

— 2. Որոնդես (իբր հյ. Հրանդ), թագավոր Հայոց, հաջորդ Արդուարդի, Սելևկեանց գերիշխանության տակ (247 թ)։—Դրդչ. Քնն. պատմ. Ա. 79.—Չամչ. Ա. 130 դնում է Ն. Ք. 284 թ. և տալիս է նրան 45 տարի իշխանություն, այն է մինչև 239 թ. (Չամչ. Ա. 203)։

ՈՐՈՏ, ար. (ընթերցվածը անստույգ է, ուստի ծագումն էլ անհայտ)։

— Որոտ, թոռն Շահլորի, հիշվում է իբր վկա Քեթևանի արձանագրության մեջ, 1274 թ.— Manus. brit. mus. 295 ա. Միսական 232 բ և Օրբելեան, հրտր. 1911, էջ 418 դնում են «Որոտշահ՝ Լորայ թոռն». իսկ տպ. Մոսկուա 1861, էջ 306 այս տողը չունի։

'ΟΡΟΙ'ΤΗΣ հայ, որ Արշակի հետ գնաց Krates և Ismenodoros փիլիսոփաների մոտ (290 թ!).—Justi 234բ, որ մեկնում է իբրև իրան. hu «գեղեցիկ»+պրս. rīdak «տղա, երիտասարդ»։ [Կարելի էր բառը ուղղել 'Ορόντης, բայց նույն անունով կա նաև մի պարսիկ կուսակալ Սարդիկէում]։

* ՈՒԱՍԼԱՑ, իգ. < արաբ. واصلة vāṣila «սիրածին միացած (կին)»։ Մի անգամ հիշատակված է՝

— Ուասլայ խաթուն, հիշված է մի խաչքարի վրա՝ Արգաղի վանքում, 1304 թ.—Խաղբակեանք 42, Միսական 118։

ՈՒԶ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Ուզ, Շիրանշահեան տոհմից, իշխան Մեծկողմանց, հայր Հասանի, որ Կեսարիայից բերել տվեց մի Աւետարան և նվիրեց Եղիշէ Առաքյալի վանքին 1266 թ.— Բարխուտ. Պատմ. Աղուանից 145, Արցախ 227։

† ՈՒԶԻԿ, իգ. < հյ. ուզել բայից. իբր թե «ուզելու, սիրելի, սիրված»։ Մի անգամ ունինք՝

— Ուզիկ, կին Տարոնեցի, նվիրատու ձեռագրի, 1204 թ.— Հայապ. 450։

* ՈՒԶՈՒՆ, ար. < Թրք. اوزون uzun «երկար» բառից (եթե սակայն մականուն չէ)։ Հիշատակված է մի անգամ 1578 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472)։

† ՈՒԼԻԿ, իգ. < հյ. ուլ բառի փաղաքշականն է։ Գործածական է այժմ գյուղական վայրերում։

* ՈՒԼԻՋԱՆ, ար. < Թրք. اولو ulu «մեծ, բարձր» բառից + ջան փաղաքշականով։ Հիշված եմ գտնում 1633 թ. (Ձեռ. Վասպ. 882—3)։

* ՈՒԼՈՒ, ար. ծագումը տես նախորդը. մի անգամ հիշված է 1577 թ.—Ձեռ. Վասպ. 687։ Ավելի հնից ունինք՝

— Ուլու, կին Պարոնի, որ նորոգեց Բագնայրի նշանավոր Աւետարանը 1308 թ.—Խաղբակեանք 15։

* ՈՒԼՈՒԲԱԲ, ար. < Թրք. اولو ulu «մեծ» + بابا baba «հայրիկ» բառերից։ Երևի անձնանուն էր, որից առաջացել է Ուլուբաբեան ազգանունը (Կովկաս)։ Իրոք էլ ունինք՝

— Ուլուպապ, որդի Նուրիճանի, որ Ագուլիսում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։

* ՈՒԼՈՒԲԷԳ, ար. < Թրք. اولو ulu «մեծ» + beg բառերից, իբր «մեծ իշխան». իբրև ար. անձնանուն գործածական է նաև թաթարների մոտ։ Այսպես՝ հայտնի է Ուլուղբեկ (Թրք. اولو ulu = Թթր. اولوغ uluγ), որդի Շահռուխի և թոռն Լենկթիմուրի. նախապես Սմրղանդի խանն էր, ապա նստավ Խորասան և եղավ թագավոր Պարսից՝ 1437 թ. (Ջամչ. Գ. 470)։ Մեր մեջ հիշատակված է ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Ուլուբեկ, հիշված է Շամախու Վանքաշէն գյուղի մի դամբանի արձանագրության մեջ 1299 թ.—Բարխուտ. Աղվ. երկիր 204—6։

— 2. Ուլուբեկ, որդի Մէճլիսի, թոռն Ջալալի, կալված է

նվիրել Գանձասարի վանքին 1407 թ. և վկա է կանգնում 1458 թ.—Շահխաթ. Ա. 210> Նոտարք 25, Ջալալ. Բ. 244 >Նոտարք 187, Շահխաթ. Բ. 374։

— 3. Ուլուպակ, փեսա Խըրշահի, որ Կեսարիայում Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— Ավելի ուշ հիշատակված ունինք Ուլուբեգ 1504 թ. (Տաշեան, Ցուց. 55), 1507 թ. (Կամենից 161), 1519 թ. (Բարխուտ. Աղվանից երկ. 10), անթվ. (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 16), 1626 թ. Սիսական 144 և Ձեռ. Դաշեան, Բ. 32 բ (գրված է Ցուլոյպէկ, յուլուպէկ):—Այլ ոճ † 1680 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. էջ 25 բ)։

* ՈՒԼՈՒԲԻՔԱ, իգ. <Թրք. اولو ulu+թթր. بکا bika «տիկին» բառերից։ Հիշատակված է մի անգամ Ձեռ. Վեննա. Բ. 868, Ուլուպիքա ձևով, առանց թվականի։

* ՈՒԼՈՒԽԱԹՈՒՆ, իգ. <Թրք. اولو ulu «մեծ»+խաթուն բառերից, իբրև «մեծ տիկին», ինչպես նախորդը։ Հիշատակված է ԺԴ—ԺԸ դար։

— 1. Ուլուխաթուն, կին Հռոմ երեցի. մի այգի է նվիրել Ուշիի Ս. Սարգիս վանքին, 1329 թ.—Արձ. Այրարատ 181, Շահխաթ. Բ. 119։

— 2. Ուլուխաթուն, կին Բանէրգէսի. ծնողներն են Աստուածատուր և Յովհաննէս եղբայրների, որոնք ազատեցին գերի ընկած մի Աւետարան և նվիրեցին Տկուց վանքին 1422 թ.—Նոտարք 69։

— 3. Ուլուխաթուն, դուստր Պետրոս քահանայի և երիցակին հանգուցյալ Աւետիք քահանայի (№ 66, որ ոչ թե իր տաներեց քահանան էր, այլ իր ամուսինը), որի հոգու համար գնեց Կաֆայում մի Աւետարան 500 սպիտակի, 1437 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 238։

— 4. Ուլուխաթուն, կին Սողոմոնի. ծնողներն են Սարգիս աբեղայի, որ ստացավ ու նորոգեց մի հին Աւետարան 1444 թ.—Ձեռ. Վասպ. 112 (Լալայեանը երկու հիշատակարան իրար է խառնել)։

— 5. Ուլուխաթուն, դուստր Էտիլշահի և քույր Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 6. Ուլուխաթուն, պարոն! (տիտղոս է) Նորոգեց Գետա-

չէնի նշանավոր Աւետարանը 1497 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 45, 61։

— Ավելի ուշ հիշատակված են Ուլուխաթունն 1545 թ. (Արձ. Սիսական 111), 1563 թ. (Ձեռ. Դադեան, Բ 49 բ), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 690), 1578 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 438, համենից 164), անթվ. (Ձեռ. Թաւր. 43 ա), ժԸ դար (Bodleian 167)։

* ՈՒԼՈՒԽԱՆ, ար. <Թրք. اولو ulu «մեծ»+xan բառերից, իբր «մեծ իշխան»։ Հիշատակված է մեր մեջ ժԶ—ժէ դարերում։ Այսպես Ուլուղան իգ! 1525 թ. (Ձեռ. Վասպ. 417), Ուլուխան 1653 թ. (Սմբատեանց, Գեղարք. 620), 1654 թ. (Bodleian 117), 1655 թ. (Բարխուտ. Աղուանից երկ. 192), 1656 թ. (Շահազիզ, Հին Երևանը 88), 1659 թ. (Արցախ 241), 1674 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 46 բ), 1699 թ. (Ձեռ. Սևան. 17 ա), բոլորն էլ ար. բացի առաջինից։

* ՈՒԼՈՒԽՈՋԱ, ար. <Թրք. اولو ulu «մեծ»+պրս. خواجه xāje, xoǰa «խոջա» բառից։ Իբրև անձնանուն հիշված է ժԵ և ժԶ դարերում։

— 1. Ուլու խոջա, որդի Աւետիսի և հանգուցյալ եղբայր խոջա Միրիջանի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 2. Ուլուխոջա, որդի նույն խոջա Միրիջանի, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— Ավելի ուշ է Ուլուխոջա 1580 թ. (Ձեռ. Վասպ. 32)։

ՈՒԼՈՒՍ, ար. և իգ. ծագումն ինձ անհայտ. հիշատակված է Ուլուս ոմն սարկավագ 1577 թ. (Ձեռ. Վասպ. 687) և Ուլուս իգ. 1581 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32 ա)։ Սրանից է նաև՝

— Ուլուսբէգ, որդի Ջումա Բ-ի, Գոօշեանց ցեղից, հիշված է 1476 թ.—Խաղբակեանք 236։

* ՈՒԼՈՒՍՈՒԼԹԱՆ, իգ. <Թրք. اولو ulu «մեծ»+արաբ. سلطان sultān բառերից։ Հիշատակված է ժէ դարում (Մառ, Ամառն. ուղև. 87)։

† ՈՒԽՏԱՆԷՍ, ար. <հյ. ուխտ բառից, բայց անհայտ է -անէս վերջավորությունը։

— 1. Ուխտանէս, վանահայր Դարունից վանքի, ստորագրում է այն ձեռնարկին, որ եպիսկոպոսներն ու վանահայրերը տվին Աբրահամ կաթողիկոսին «607 թ».—Գիրք թղ. 151 (Գիրք Թղթոցում չկա. բայց հիշում է Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Գ. 20 ա. անշուշտ հանել է մի ուրիշ անտիպ աղբյուրից)։

— 2. Ուխտանէս, *կաթուղիկոս Աղուանից, հաջորդեց Յովհան Բ-ի և նստավ 671—683 թ. իրեն էլ հաջորդեց Եղիազարը։— Կղկնտ. Բ. լ—լը, խզ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Ջամբռ 69. Հայապ. 384.—սեռ.* Ուխտանէսի՝ *Կղկնտ. Բ. իբ, իթ, լբ։*

— 3. Ուխտանէս *եպիսկոպոս Սեբաստիոյ (ըստ Կիր. Ուռհայի). պատմիչ. իր ուսուցիչ Անանիա Նարեկացու խնդրանոք գրել է պատմական մի գրվածք, որ բաղկացած է եղել երեք մասից. Ա. Պատմութիւն Հայոց. Բ. Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց. Գ. Մկրտութիւն ազգին Ծաղաց։ Այս աշխատությունը գրված էր Ժ դարում և ըստ քննության Ակինեանի՝ հատկապես 987 թվականին։ Մեզ հասել է գրքի կեսը միայն. այն է Ա մասը և Բ մասի առաջին կեսը. Գ մասը ամբողջովին կորած է։ Հրատարակված է Վղրշպտ. 1871՝ սխալաշատ տպագրությամբ։ Առաջին մասը առանձին կարևորություն չունի. Բ մասը Թղթոց գրքից է քաղված ամբողջությամբ, հետևաբար նույնպես առանձին կարևորություն չունի։ Շատ հետաքրքիր պիտի լիներ Գ մասը, որ է Յունադավան հայոց (Հայ-հոռոմների) դարձի պատմությունը՝ Սմբատ Թագավորի օրով։—Ուխտ. Ա. ա. Օրբ. իե. Մխ. այրիվ. 37, 71. Այրիվ. 19 ա. Կիր. 4, 26. Եա. կթղ. էջ թ.—*Ուխքանէս՝ *Վրդ. ժթ.—սեռ.* Ուխտանէսի՝ *Օրբ. իե.—բցռ.* յՈւխտանէսէ՝ *Օրբ. իդ.—Զարբ. Հին դպր. 555—560։— Իր մասին ամենալավ քննությունը տես Ակինեան՝ Կիւրիոն կթղ. էջ 47—81։*

— 4. Ուխտանէս, *եղբայր Վրդանէս եպիսկոպոսի, որ շինեց Գտչի վանքը՝ 1241—8 թ.—Արցախ 81։*

† *ՈՒԽՏԱՏՈՒՐ, ար.* <*հյ.* ուխտ + տուր *բառերից, իբրև «ուխտով տրված իրեն, ուխտական զավակ». հմմտ.* Աստուածատուր, Տիրատուր, Խաչատուր, Գրիգորատուր, Վիրապատուր: *Մի անգամ միայն հիշատակված է Ը դարում։*

— Ուխտատուր, *վանական Թալինի մայր եկեղեցու. իր եղբոր՝ Տուտիի հետ շինեց Թալինի աղբյուրը՝ 783 թ.—Արձ. Այրարատ 139, Շողակաթ 176։*

† *ՈՒԽՏԻԿ, ար. կրճատ ձեն է* Ուխտանէս *կամ* Ուխտատուր *անվան։*

— Ուխտիկ, *որի դուստրը՝ Մարգարիտ կանգնեցրել է մի խաչքար՝ իրայնոց հիշատակին. Մլգնաբերդի (Գանձակ) սարում, 1155 թ.—Արցախ 292, Ազգագր. հանդ. Ե. 310։*

*ՈՒՂԻՊ, ար. ծագումն անշուշտ օտար է. Gutschmidt համարում է հուն. Ὀλύμπιος «Ոլիմպիական» ձևից։

— Ուղիպ քուրմ Հանիի, «գրող մեհենական պատմութեանց». ժամանակակից էր Արտաշէս Բ-ի, որ ըստ Զամչ. թագավորել է 88—129 թ.—Խոր. Բ. խը. Զարբ. Հին դպր. 175։

*ՈՒՂՈՒԶ, ար. <Թրք. չաղաթ. اوغوز uγuz, oγuz «պարզամիտ, միամիտ, ազնիւ, ուժեղ, կոպիտ». նաև Մոնղոլ մի խանի անունն է (Будагов, I. 142 ա)։ Մեր մեջ հիշատակված ունինք Ուղուզխան 1576 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա։

*ՈՒՂՈՒԼՄԻՇ, ար. (գրված կամ տպված վրիպակով Ուղուլմիշ) <Թրք. թթր. اوغماق uγmaq, oγmaq «շփել, տրորել, աղալ, շփոթել» (Будагов, I. 141 բ) բայի կրավորական անց. դերբայի ձևն եմ համարում։ Մի անգամ ունինք՝

— Ուղուլմիշ ոմն, որ Խաչենի Մեծարանց վանքին նվերներ է արել 1293 թ.—Բանաս. 1901, 137։

*ՈՒՂՈՒՐ, իգ. <Թրք. اوغور uγur «բարեհաջողութեան» բառից։ Հիշատակված է 1530 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունի 447), 1596 թ. (Ձեռ. Վասպ. 748), 1602 թ. (Գեղարքունի 494), 1680 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 25 բ, գրված Ուղուր), 1736 թ. (անդ 21 բ)։ Տես նաև հաջորդները։

*ՈՒՂՈՒՐԻԿ, իգ. <Նախորդ անվան փաղաքշականից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Bodleian 148)։ Սրանից է Ուղուրիկեան ազգանունը։

*ՈՒՂՈՒՐԼՈՒ, ար. և իգ. <Թրք. اوغورلو uγurlu «բարեհաջող» բառից։ Թուրքերի մեջ էլ գործածվել է իբր անձնանուն. ինչ. Ուղուրլու խան Գանձակի՝ 1730-ական թվերին (Բարխուտ. Պատմ. Աղվանից, Բ. 47)։ Մեր մեջ հիշատակված ունինք՝ Ուղուրլու, ար. 1654 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ կես. Բ. 1864), ար. 1660 թ. (Ձեռ. Վասպ. 553, գրված Եղորլու), իգ. 1689 թ. (Bodleian 163), 1701 թ. (անդ 207), անթվական (Ձեռ. Վենետ. Բ. 1013)։ Վերջին երեքը իգական են։ Սրանից է Ուղուրլեան ազգանունը։

*ՈՒՂՈՒՐՍՈՒԼԹԱՆ, իգ. հիշատակված է 1581 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 32 ա՝ Ցիւղուրսուլթան ձևով) և 1597 թ. (Ձեռ. Սևան. 11 ա՝ Իւղուր սուլթան ձևով)։

† ՈՒՂՏԻԿԱՆ, ար. անհարմար համարելով դնել հյ. ուղտ բառից, կարծում եմ որ պետք է համարել Ուխտիկ անունից, որ տես վերը։ Մի անգամ ունինք՝

— Ուղտիկոկ, հայրն է Ապրելի, որ մի խաչ է գնել ու հաստատել Արցախի Կուսապատ գյուղի եկեղեցու դռան գլուխը՝ 1241 թ.—Արցախ 216։

*ՈՒՄԱՄ, իգ. <արաբ. امم umam «ժողովուրդներ» բառից, որ անկանոն հոգնակին է امت ummat «ժողովուրդ, ազգ» բառի։ Սակայն այս անունը կրճատ ձևն է Սթըլումամ «տիկին ազգաց» անվան, որ տես առանձին։ Ումամ հիշատակված եմ գտնում մի անգամ 1672 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 62)։

*ՈՒՄԲԻԿ, ար. կրճատ ձևն է Ումբրիշատ անվան, որ տես։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 393), ուր քիչ հետո նույնը դառնում է Ումիրշատ։

*ՈՒՄԲՐԻՇԱՏ, իգ. <արաբ. عمر ʻumr «կյանք» բառից, որ մեր բարբառներում նաև ումբր ձևն է ստացած։ Բարդության երկրորդ եզրն է շատ, որ կարելի է հասկանալ թե հյ. շատ (ինչ. Արեշատ) և թե պրս. شاد šād «ուրախ»։ Ուրեմն բառը նշանակում է «կյանքը շատ, երկար» կամ «կյանքն ուրախ»։ Հիշատակված է Ամիրտ. անգ. էջ 624 հիշատակարանում և Կամենից 174 Ըմպրիշատ ձևով, 1617 թ. իսկ անթվական մի հիշատակարանում էլ (Ձեռ. Վասպ. 393) Ումիրշատ, ուր նույնը կրճատ ձևով գրվում է նաև Ումբիկ (տես նախորդը)։

† ՈՒՄԻԿ, ար. <միջ. հյ. ումեկ, ժղ. ումիկ «հույս» բառից, որ իմ Գւռ. բառարանում դրել եմ փոխառյալ պրս. امید umīd հոմանիշից. բայց հայտնի չէ թե ինչպես d կարող էր դառնալ կ։ Ումիկ, Ումէկ, Ումեկ ձևերով գործածված է իբրև անձնանուն ԺԳ—ԺԵ դարերում։ Սրանից է Ումիկեանց ազգանունը (Տփղիս)։

— 1. Ումիկ կամ Ումէկ, որդի Ճարի, բարեգործ հարուստ հայ վաճառական, որ ազատվելով Կարնոյ կոտորածից, հաստատվեց Տփղիսում։ Կոչված է մեծ պարոն։ Եղավ հայր Վրաց Դավիթ թագավորի, և Թաթարաց խանից պատիվ ստացավ։ Թաթարները կոչում էին նրան Ասիլ։ Տփղիսում շինել է Մայդանի Ս. Գէորգ հայ եկեղեցին՝ 1251 թ. 40,000 դուկատով գնել է Գետիկ վանքը 1242—50 թ։ Իր առաջին կինն է Թագուհի (№ 10), իր երկրորդ կինն է Մամախաթուն՝ դուստր Հասան Ջալալ Դօլա իշխանի Խաչենոյ. իր որդիներն են՝ Ճար, Քարիմադին և Վախթանկ։ Մեռել է 1267 թ. ըստ Օրբ. ժմ. 26.—Ումէկ՝ Կիր. ծե.—Ումեկ՝ Անանուն ժմ. 21, 24. Վրդ. ձը.—Ոմէկ՝ Երզն. երկն. յոչ.—Ումեկ՝ Արձ. 1280 թ. (Շահխաթ. Բ. 373), Ումիկ՝ Արձ. 1283 թ. (Շահ-

*խաթ. Բ. 367—8, Արցախ 350 և 353, Ազգագր. հանդ. Ժ. 25, 28 և 35).—սեռ.* Ոմեկայ՝ *Երզն. երկն. յոշ. Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 7—9. Արձ. Սմբատեանց՝ Գեղարք. 174։*

— 2. Ումեկ, *ազգական Բաւուն միայնակյացի, որ գրել ավեց մի Աւետարան, 1330 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 770։*

— 3. Ումեկ *Խանականցի, ազգական Ներսէս վարդապետ Սասնեցու, նվիրատու ձեռագրի 1332 թ.—Հայապ. 546։*

— 4. Ումեկ! *պարոն, հայրն է պարոն Վախթանկի, որ մեռել է Եղեգիսում 1344 թ.— Սիսական 149։*

— 5. Ումիկ, *հայր Խոսրովշահի, որ Բաբերդում ստացավ մի հին Աւետարան և նորոգել ավեց՝ 1346 թ.—ՀԱ 1926, էջ 344։*

— 6. Ումեկ *քահանա, կինն է Մինայ. ծնողներն են Աւետիք քահանայի, որ Բարսեղ քահանային գրել ավեց մի Աւետարան 1480 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 68 բ։*

— 7. Ումիկ, *հիշված է նաև անթվական, բայց բավական հին մի արձանագրության մեջ՝ Ազգագր. հանդ. Է, 338—9։*

* *ՈՒՄԻՏ, ար.* < *պրս.* امید umīd *«հույս» բառից։ Իբրև անձնանուն հիշատակված է ԺԴ—ԺԸ դարերում։ Սրանից է* Ումուտեան *ազգանունը՝ Սիսական 454 ա (Թրք.* umud *հոմանիշից)։*

— 1. Ումէտ, *տանուտեր Հայոց Իլվովի. եղբորը՝ Անպէտի հետ գնացել էր Սիս, 1388 թ.—Ալիշան, Կամենից, էջ 11։*

— 2. Ումիտ, *հիշված է Շամախու Առուշանայ շէնի Ճղպորի գերեզմանատան մեջ մի դամբանի վրա, 1499 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. 202—3։*

— *Ավելի ուշ հիշատակություններ են* Ումիտ *1545 թ. (Արցախ 139),* Ումետ *1576 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1925, 470),* Ումիտ *օղլու Սիմոն եպիսկոպոս 1730ական թ. (Գալէմքեարեան, Կենսագր. Սարգ. եպս. 180),* Ումիտ *1757 թ. (Քօսեան, Հայք ի Ջմիւռն. Ա. 311, տապանաքարի վրա)։*

* *ՈՒՄՐԻՋԱՆ, ար.* < *արաբ.* عمر umr *«կյանք»+պրս.* جان ǰān *«հոգի, հոգյակ» բառերից։ Հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում։ Այսպես՝* Ումրիջան *1549 թ. (Ջեռ. Վասպ. 652), 1554 թ. (Ջեռ. Վասպ. 98),* Ումիրջան *1606 թ.? (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 85),* Յումրիճան *1683 թ. (անդ 96), 1730 թ. (անդ 82)։*

* *ՈՒՆՃՈՒԲԷԿ, ար.* < *Թրք.* انجو inǰu *«մարգարիտ»+*beg *բառերից։ Հիշված է մի անգամ ԺԵ դարում։ Ավելի ճիշտը տես Ինջիբէկ։*

— Ունճուբէկ, *մերձավոր կամ ազգական Շիրազմամայի, որ*

նորոգել տվեց մի հին Ավետարան 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 356։

— Ավելի ուշ Ունջուբեկ ձևով՝ 1569 թ.—Ջեռ. Վասպ. 671։

**ՈՒՇԻԱՆ**, ար. ծագումը անհայտ. մի անգամ հիշված է 1549 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 445։

**ՈՒՋԱԼԲԷԳ**, ար. ծագումը ինձ անհայտ. հիշված է Ջիրախյու գյուղի (Վայոց ձոր) անթվական մի դամբանի վրա (Սիսական 108)։

†**ՈՒՌԻՋԱՆ**, մր. <հյ. ուռի ծառի անունից+ջան փաղաքշականով. հիշված է մի անգամ 1749 թ. (Ջեռ. Դաշեան, Բ. 14 բ)։

**ՈՒՌՆԱՅՐ**, ար. (Justi 334 ա մեկնում է հյ. ուռն+այր բառերից. իբր թե «մուրճով զինված մարդ». հմմտ. պհլ. kōpīn, արաբ. ʿamūd)։

— 1. Ուռնայր Ա. Թագավոր Աղուանից. Պարսից Շապուհ Թագավորի քեռայրն էր. եկավ Հայաստան, քրիստոնյա դարձավ, մկրտվեց Լուսավորչից և քրիստոնեությունը տարածեց Աղուանքում.—Կղկնտ. Ա. ը—ժա. Կիր. ը. Թղթ. դաշ. 15. Անան. աշխ. 136 բ. Մխ. այրիվ. 23, 60.—սեռ. Ուռնայրի՝ Կղկնտ. Ա. թ, ժա. Կիր. ը. Անան. աշխ. 136 ա. Օրբ. ծա։

— 2. Ուռնայր Բ. Թագավոր Աղուանից. հաջորդեց Վաչէ Ա-ին. Պարսից հետ միացած ճակատեց Հայոց Պապ «368—374 թ» թագավորի դեմ. գերի բռնվեց Մուշեղ Մամիկոնեանից, որ վեհանձնաբար ազատ արձակեց նրան.—Բուզ. Ե. դ, ե, լե. Խոր. Գ. լէ. Մեսր. եր. 70, 81. Կղկնտ. Ա. ժգ, ժե.—սեռ. Ուռնայրի՝ Բուզ. Ե. դ, ե. Կղկնտ. Ա. ժգ. Մեսր. եր. 79։

— 3. Ուռնայր, անհայտ ոմն, որ շինել է Մելիտինէ քաղաքը (ըստ Այս են քաղաքք և շինողք նոցին ZAPh 1, 190)։

***ՈՒՌՈՒՄԲԷԿ**, ար. <Թրք. روم rum (ժղ. ուռում) «հույն»++beg բառերից, իբր «հունական իշխան». հիշված է մի անգամ 1619 թ. (Տաշեան, Ցուց. 970)։ Հմմտ. Թաքարբեկ, խրմպէ (=Խրիմբէկ), Գուրջիբեգ, և այլն։

***ՈՒՌՈՒՄՇԱՀ**, իգ. <Թրք. روم rum (ժղ. ուռում) «հույն»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից։ Մի անգամ ունինք՝

— Ուռումշայ, բարեպաշտ կին, «որ սակաւ ինչ արծաթով օգնական» եղավ արծաթապատ կազմել տալու համար Մշոյ Ղազարու կամ Առաքելոց վանքի մի հին Ավետարանը, որ կազմեց Կարապետ Բաղիշեցին, 1496 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 312=ՀԱ 1937, 320։

*ՈՒՍԼՈՒ, *իգ. <թրք.* اوصلو uslu *«խելոք, խելացի». գործածված է ԺԸ դարում. ըստ Թէոդիկ, Պոլսի հայեվարը, էջ 1740 գործածական է եղել հին ժամանակ Պոլսում՝* Ուսուլ *ձևով։ Տես և* Ուսլում *և* Ուսլուն:

— Ուսլու, *դուստր Անդրէասի և քույր Մեծխաթունի, որ Երզնկայում գրել տվեց մի Ավետարան, 1431 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 663։*

*ՈՒՍԼՈՒԲԷԿ, *ար. <նախորդ* Ուսլու *բառից*+beg. *ավանդված է ԺԳ և ԺԶ դարերից՝*

— 1. Ուսլու բէկ, *որդի (հոգէորդի՞) Սիմէոն արքեպիսկոպոսի, որ էր առաջնորդ Մալաթիայի, 1254 թ.—Թորոս աղբ. Ա. էջ 327։*

— 2. Ուսլուպէյ *1502 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 375)։*

*ՈՒՍԼՈՒԽԱԹՈՒՆ, *իգ. <նույն* Ուսլու *անունից*+խաթուն: *Հիշատակված է ԺԴ և ԺԸ դարերում։*

— 1. Ուսլու խաթուն, *կին տանուտեր (Ջ)ատար Մկրտիչի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 461։*

— 2. Ուսուլ !խաթուն, *կին Ամիր Սարգսի և մայր Էվատշայի, որ Ոստանում ստացավ մի Ավետարան 1428 թ.—Ձեռ. Վասպ. 355։*

*ՈՒՍԼՈՒՄ, *իգ. <նույն* Ուսլու *անունից*+*թրք.* ım *ստացական հոդով, իբր «խելոքս»։ Հիշատակված է ԺԸ դարում։*

— Ուսլում, *դուստր Թուլուխի և քույր Յովհաննէս (№ 825) քահանայի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան 1422 թ.— Նոտարք 69։*

— *Անհայտ թվականով՝ Ձեռ. Վասպ. 416։*

*ՈՒՍԼՈՒՄԵԼԷՔ, *իգ. <նույն* Ուսլու *բառից*+*արաբ.* ملك melek *«հրեշտակ». գործածված է ԺԴ—ԺԸ դարերում։ Տես և* Ուսլունմելէք:

— 1. Ուսլումել/իք, *հարսն կամ քեռեկին Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան, շուրջ 1358 թ.— Ձեռ. Թաւր. 28 բ։*

— 2. Ուսլու (՝մելէք), *դուստր Մկրտիչի և քույր Ստեփանոս միայնակեացի, որ Աղթամարում գրել տվեց Ճառընտիրը՝ 1389 թվին.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 759, 764։*

— 3. Ուսլու մելիք, *սանամայր Մկրտիչ քահանա Արճիշեցու, որ գրել տվեց մի Ճաշոց, 1441 թ.—Թորոս աղբ. Ա. 223։*

— 4. Ուսլու մէլիք, կին Ամիրբէկի, որ Արճէշում գրել տվեց մի Ավետարան, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 424։

*ՈՒՍԼՈՒՆ, իգ. (հոլովված է սեռ. Ուսլունին), նույն է Ուսլու անվան հետ, ն ավելորդ հավելվածով։

— 1. Ուսլուն, դուստր Յովհաննէսի և քույր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— Հիշված է նաև 1521—29 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 382) և Անկ. գիրք հին կտ. 364 (թվականն անհայտ)։

*ՈՒՍԼՈՒՆՄԵԼԷՔ տես Ուսլումէլիք։

— 1. Ուսլուն մէլիք, դուստր Իգդիշի և կին Սատմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։

— 2. Ուսլունմէլիք, կին Յովհաննէս տանուտերի, որ Մոկաց Փառավանքում գրել տվեց մի Ավետարան 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

* ՈՒՍՈՒՓ, ՈՒՍՈՒՖ. այս ձևերը գործածված են ուշ ժամանակ. օր. այս երկու ձևով միասին՝ անթվ. Ձեռ. Վասպ. 440։ Ավելին տես Յովսէփ։

ՈՒՏՈՅ, ար. ծագումն անհայտ։

— Ուտոյ, քորեպիսկոպոս Աղվանից, անդամ Աղվենի ժողովի. ժամանակակից Վաչագան Գ բարեպաշտի (Զ դար)։— «Անանիա և Սահակ և Ուտոյ քորեպիսկոպոսք». այսպես ունի հրատ. Էջմին. իսկ] տպ. Շահնազարեան առնում է իբր տեղանուն և գրում է. «Անանիա և Սահակ՝ Ուտւոյ քորեպիսկոպոսք»։

†ՈՒՐԱԽ, ար. < հյ. ուրախ բառից. հմմտ. հյ. Զուարթ, պրս. خرم Xurram, հուն. Իլարիոն հոմանիշ անունները։ Մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ ավելացրած է 1441 թվին գրված մի Ժամագրքում (Ձեռ. Թավր. 59 ա)։ Սրանից է Ուրախեան ազգանունը։

ՈՒՐԱՑԻԼ, ար. անստույգ անուն. մի անգամ հիշատակված է 1740 թ.—Ալպօյաճեան. Պատմ. հայ Կես. Բ. 1896։

ՈՒՐԱՆՇԱՀ, ար. ծագումն անորոշ. (Ալիշան ուզում է կարդալ Միրանշահ, որով այս անստույգ անունը ջնջվում է)։ Մի անգամ ունինք՝

— Ուրանշահ, հայր Խուրշիթի, որ մի հող է նվիրել Ս. Մամաս վանքին 1291 թ.—Արձ. Սիսական 163։

† *ՈՒՐԲԱԹ, ար. < հյ.* ուրբաթ *օրվա անունից. հմմտ.* Շաբաթ *և* Կիրակոս *անձնանունները. կազմված է թարգմանաբար հուն.* Պարասկևի *անունից. հմմտ. Յայսմ. յունիս 16. «Բոյր ևս Պարասկևի, որ է Ուրբաթ» (սրբուհի Աղեքսանդրացի)։*

— Ուրբաթ *երեց Այրմանուշայ, անգամ Աղուէնի ժողովի, Վաչագան Գ Թագավորի օրով (Զ դար).—Կղկնտ. Ա. իգ. Կանոն. 192 (Տաշեան,. Ցուց. 653 բ գրում է «Ուրբաթայր՝ Մանուշէից երեց)։*

† *ՈՒՐԲԱԹԻԿ, ար. <նախորդի փաղաքշականից. հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 242)։*

* *ՈՒՐԴՈՒ, իգ. < հնդ.* Ուրդու *բառից, որով կոչվում է Հինդուստանի լեզուն։ Մի անգամ հիշված է անթվական մի հիշատակության մեջ, որ սակայն 1421 թվից ուշ է (Ձեռ. Վասպ. էջ 363)։*

Ուրուշան *տես* Ռուշան:

*ՈՒՐՏՈՒՐԻՏԱՅ, իգ. ծագումն անհայտ։*

— Ուրտուրիտայ *կամ* Ոտուրտա, *կին պարոն Սէնոպ Սահմադինի, որ գնել է Մրենը և վերացրել հացի ու խաղողի հարկերը, 1284 և 1288 թ.--Արձ. Շիրակ 140։*

*ՈՒՓԻՐԱ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է ԺԳ դարում՝*

— Ուփիրա, *կին Շիրին Երզնկացու և մայր Յովհաննէս սարկավագ գրչի, 1266 թ.--Տաշեան, Ցուց. 552։*

*ՈՒՔԱՆ, ար. ծագումն անհայտ։ Հիշատակված է Ժ—ԺԴ դարերում։ Որից Ուքանանց ազգանունը՝ հիշված 1283 թ. Յովհաննավանքի մի արձանագրության մեջ՝ Ջքր. պատմ. Գ. 19, Այրարատ, էջ 170։*

— 1. Ուքան, *հիշված է 996 թվին՝ Հաղբատի մի արձանագրության մեջ. սրա որդիներից (Ուքանի որդեացէն) հողեր է գնել Տրիթվասան (№ 1) արքայորդին և նվիրել Հաղբատի վանքին 996 թ.—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 23։*

— 2. Ուքան, *հայր Սմբատի և պապ Նաջմադինի. վերջինիս որդիներն են Սմբատ և Վահրամ. երեքով միասին գերեզմանատեղ են գնել Հաղբատում, 1211 թ.—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 57, Ազգագր. հանդ. Է, 405։ (Թերևս սա է «Սմբատ որդի Ուքանայ» անթվական գերեզմանը՝ Հաղբատում. տես Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկ. անդ 22—23)։*

— 3. Ուքան, *պարոն, Պապքանի հետ դրամով օժանդակեց*

*մագաղաթ գնելու և նկարազարդելու այն Աւետարանը, որ օրինակեց Հայրապետ քահանան, Սեբաստիա 1211 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 12 բ, Շողակաթ 198։ (Պապքան անվան հետ միացյալ հիշատակությունը նույնացնում է Ուքան № 8-ի հետ, եթե թվականի տարբերությունը չխանգարի)։*

— 4. Ուքան, *որդի Քուրդի Ուքանանց, եղբայր Սմբատի և հայր Դաւթի։ Իր եղբայր Սմբատի հետ շինել է Հաղբատի մի եկեղեցին, որ Քուրդն էր սկսել, բայց չվերջացրած մեռել էր, 1220 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 45, 58։*

— 5. Ուքան, *իշխում էր Արցախի Ջրաբերդ գավառում, Փախրադինի ամիրայության ժամանակ, 1260 թ.—Արձ. Արցախ, էջ 222։*

— 6. Ուքան *մանուկն Հասանայ, Խաչենի իշխան Հասան-Ջալալ-Դօլայի ցեղից, հիշված է 1249 թվի արձանագրության մեջ՝ Արցախ 189=Արար. 1896, 234։ Նույն է արդյոք՝*

— 7. Ուքան, *որդի Հասան-Ջալալ-Դօլայի, որ նահատակվեց 1261 թ. և եղբայր Աթաբակի.—Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. էջ 143, 203։*

— 8. Ուքան *Քարիմադին, եղբայրն է Պապքան Վախրադին. երկուսն էլ որդիք Սարգսի և Թոռն* Հօգոյն! *սրանց հարսն է Դապտայ խաթուն, որ է կին Մերչոյի. նվերներ են արել Խաչենի Մեծարանց վանքին 1252 թ. (գրված* Ոքան). *միասին շինել են Շիրակի Կարմիր վանքը 1271 թ. և կալվածներ նվիրել Հոռոմոսի վանքին 1274 թ.—Արձ. Շիրակ 170, 173, լավագույնը Ռստան 1911, 234, Բանասէր 1901, 136, Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 13 բ։—Հմմտ.* Ուքան № 3։

— 9. Ուքան *(կամ Ջուրջին Ուքան), որդի Վասակի և եղբայր Հասանի (№ 47), որ նրա հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Արցախի Դահրա գյուղում, 1276 թ.—Արձ. Արցախ 156։*

— 10. Ուքան, *որդի Վասակի և եղբայր Վահրամ սպարապետ Շահուռնեցու. շփոթելով Վահրամի Ուքան անուն որդու հետ՝ չի հիշատակում Սիսական 116 ճյուղագրության մեջ։ Ըստ իս պետք է զանազանել իրարից։ Արձանագրությունն ասում է. «..Վարհամայ որդւոյ Վասակայ Թոռն մեծին Մագիստրոսի և բարեպաշտուհւոյ Սանդղտոյ ամուսնոյ իւրոյ և գեղեցիկ պտղոյ* Ցոցա *Ուքանայ և քաջազաւրին և մեծ սպարապետին Վարհամայ և քրիստոսասէր մաւրն իւրոյ Մամքանայ և բարետոհմիկ աւրիորդ ամուսնոյն իւրոյ Գոնցային... և զարմիցն իւրեանց Ուքանայ, Հա-*

սանայ»։ Ասելով պաղոյ նոցա Ուքանայ և Վարհամայ, ենթադրում է որ երկուսը եղբայր են. ապա հիշում է Մամքան մորը, ապա կնոջը՝ Գոնցային և ապա միայն զարմիցն՝ Ուքանայ, Հասանայ։ Պատարագներն էլ հիշելիս՝ Ուքանին (եղբորը) տալիս է 4 պատարագ, Մամքանին (մորը) նույնպես 4, իսկ Հասանին չկա, ուրեմն մյուս որդուն՝ Ուքանին էլ չկա։ Սրանից կարելի է հետևցնել որ Մամքանը և եղբայր Ուքանը մեռած էին 1283 թվին, իսկ Հասան և Ուքան (որդին) կենդանի։—Արձ. Սիսական 114, Արրտ. 1889, 322։

— 11. Ուքան, որի դուստրն է Արուս խաթուն՝ կին Հասանի (Տայիր), † 1283 թ.—Այրարատ 253։

— 12. Ուքան, հայր Թաջերի (№ 3—4. որոնք պետք է միացնել), որ էր կին Հասան կամ Ամիր-Հասան Ս. սպարապետի հայոց, որդւոյ Պռօշի՝ մեծ իշխանին Խաչենի, որ † 1292 թ. հիշված է 1300—7 թվերին։—Սիսական 121, Այրարատ 269։

— 13. Ուքան, որդի Վահրամի, Շահունեցի տեր, հողեր է նվիրել Թանատի վանքին Չ=1251 թվից ուշ.—Արձ. Սիսական 122 (գրված է թվ. Չ, բայց հաջորդ տառերը կտրած են)։ Ուստի սրա հետ պետք է նույնացնել՝

— 14. Ուքան, որդի Վահրամ սպարապետի Շահունեցւոյ. հիշված է 1283 թ և 1297 թ։ Իսկ 1310 թվին էլ իբրև պարոն Հերհերի՝ իր Հասան և Ամաղին եղբայրների հետ.— Սիսական 112, 114—7, Արրտ. 1889, 322, 331, 286, տես և Հասան № 60, Վահրամ սպարապետ Շահունեցի։

— 15. Ուքան, պարոն, «քաջն ի զօրականս», որի դամբանը գտնվում է Ցախաքարում, 1326 թ.—Սիսական 156, Արրտ. 1888, էջ 304 և 1889, էջ 327 (ուր Բոջբերունին համարում է սրան Հերհերի արձանագրության մեջ հիշված Ուքանը, որ է № 14, իսկ Ալիշան՝ Խաչենի իշխանազուններից մեկը։

— 16. Ուղան, որի հիշատակին մի խաչքար կա Ցղնա գյուղում, 1434 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, 321—2 (պետք է կարդալ Ուքան):

— 17. Ուքան, որդի Վահրամի, եղբայր Սմբատի. մի այգի են նվիրել Շատի վանքին. (անթվ. Արձ. Սիսական 159)։

ՈՒՔՈՍ, ար. ծագումն ինձ անհայտ. թերևս պետք է կարդալ Ուքան:

— Ուքոս, որդի Նաթելի, հիշված է Վայոց ձորի Գլաձոր վանքում, 1334 թ.—Թորոս աղբ. Բ. 375։

**ՈՒՖԻԿ**, *ար. ծագումն ինձ անհայտ. ունենք մի անգամ ԺԵ դարից։*

— Ուփիկ, *կինն է Թաջխաթուն, ծնողներն են Ներսէս քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան, Ուրանց գյուղում, 1433 թ.— Ձեռ. Վասպ. 364—6։*

**ՈՓԱՐ**, *ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք՝*

— Ոփար *տաղասաց ԺԸ դարու. ունի Տաղ ի վերայ Աստուածածնի (Տաշեան, Ցուց. 986)։*

***ՈՓԷՈՍ**, *ար. <հուն.* ὁ Θεός *«Ո՜վ Աստուած» բացագանչությունից, որ գործածական էր ժամերգության մեջ (տես Արմ. Բռ.* պռօսէօբէօս *բառի տակ)։ Մեր մեջ* ϑ *դարձել է* փ=φ *բյուզանդական արտասանության համեմատ, ինչ որ սովորական է ռուսերենում։*

— Ոփէոս *երեց, հիշված է իբրև վկա անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1331 թվից ուշ։— Ձեռ. Վասպ. 176։*

# Չ

***ՉԱԼԱԲԻ**, *ար. <թրք.* چلبی čelebi *բառից, որ քրիստոնյաներին տրված պատվանուն է։ Հիշատակված է իբրև անձնանուն 1601 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 25 բ), 1627 թ. (Ձեռ. Ներս. 40), անթվական (ԺԵ դարից ուշ) մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 34 բ)։*

***ՉԱԼԱՂԱՆ**, *ար. <թրք.* چالاغان čalaγan *«խայթիչ, խածնող. 2. կատաղի (շուն). 3 եղինձ» (Զ. Կարապետեան, Օսմ. բռ. 279)։ Մի անգամ իբրև անձնանուն հիշատակված է 1737 թ. (Արցախ, էջ 161)։*

***ՉԱԼԱՔ**, *ար. <պրս.* چالاک čālāk *«յոյժ արագ (ԳԴ), արագ, աշխույժ, ճարպիկ»* (Будагов, I. 462.). *Իբրև անձնանուն գործածված է մի անգամ 1671 թ. (Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, 314, որ և Սմբատեանց, Երնջակ 305)։*

***ՉԱԼԷԽ**, *ար. <թթր.* چالق čaləq *«ճարպիկ, արագաշարժ, եռանդուն, մի քիչ խենթուկ, համարձակ»։*

— Չալէխ, *անհայտ թվականով հիշված է մի խաչքարի վրա, որ գտնվում է Թանատի վանքի մոտ՝ Արգազի ճամբին.— Սիսական 124, Արար. 1889, 108, Խաղբակեանք 43։*

*ՉԱԽԱՐՈՒՆ, մր. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ անթվական մի արձանագրության մեջ.—Սմբատեանց, Գեղարքունի 498։

*ՉԱՂԱՐ, ար. <Թրք. چاقر čaqər (ժղ. čaγər) «խաժ աչքերով»։ Սրանից է նաև «Չաղար Ս. Նշան» անուն վանքը։

— 1. Չաղար, կինն է Բարախաթուն, որդին է Ալանկի, որ մեռել է 1326 թ.—Ազգագր. հանդ. Գ. 168 (Սիսիանի Նաիճի գյուղում)։

— 2. Չաղար, անթվական մի հիշատակարանում (Հրատ. Բանասէր 1899, էջ 129)։

ՉԱՂՕ, մր. արդյոք նախորդի կոչականն է. մի անգամ հիշված է 1810 թ. (Ջեռ. Վասպ. 291)։

ՉԱՄԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է անթվական մի հիշատակարանում (Bodleian 194).—Ինձ թվում է թե պետք է ուղղել Չամաճ:

ՉԱՄԲԷՔ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է ԺԵ դար։

— Չամբէք, կողակից Բլչին, հիշված է Խրիմից բերված մի խաչքարի վրա, որ այժմ ագուցված է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի պատում, 1453 թ.—Ազգագր. հանդ. Է, 71։

ՉԱՆՎԼԱ, ծագումն անհայտ. երևի ընթերցումն էլ անստույգ. մի անգամ հիշված է Ներքին Ագուլիսում, մի խաչքարի արձանագրության մեջ 1478 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ. 313։

ՉԱՍՈՒԲԱՑ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշված է ԺԳ դարից՝

— Չասուբայ, ամիր, որ կանգնեցրել է մի խաչքար Ելլիջա գյուղում 1256 թ.—Սմբատեանց, Գեղարք. 293։

*ՉԱՐԽԻԿ, ար. <պրս. چرخ čarx «ճախարակ», նաև «երկընքի անիվը, երկինք, բախտ» բառից։ Մի անգամ հիշատակված ունինք՝

— Չարխիկ, որդի Ջումիի, եղբայր Արղութի, Թոռան Թոռ Գռօչի՝ մեծ իշխանի Խաչենոյ. մեռած նախ քան 1385 թ.—Այրարատ 269, Հայաստ. 529 (մահացած Լենկթիմուրի արշավանքին)։

ՉԱՐՄԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշված է ԺԴ դարում, (Թերևս կարդալ Չարմաճ)։

— Չարմաճ Ծարեցի, հայր Խատայի, որ վկա է գրված մի Աւետարանի գնման, 1356 թ.—Արցախ 261։

*ՉԱՐՈՒԽ, ար. <Թրք. چارق čarəq (ժղ. čarux) «տրեխ»—բայց այսքան հասարակ մի առարկայի անուն կարող էր անձնանուն դառնալ։ Հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում։

— Չարուխ, որդի Առաքել՝ Կախմխեցու, որ գերի ընկած մի Աւետարան փրկեց ու նորոգեց 1383 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— Ավելի ուշ հիշված են Չարուխ, մելիք Մակուի 1574 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 13 ա) և Չարուխ ոմն Վանեցի, 1658 թ. (Թորոս աղբ. Բ. 278)։

*ՉԵՍԱՐ, ար. <լտ. Caesar անվան իտալական չեզար ձևից։ Այս բառը բուն նշանակում է «փորը ճղելով ծնված մորից» և նախապես Յուլիոսի (կեսարի) մականունն էր։ Յուլիոսը դարձավ մեծ թագավոր և իր մականունն էլ ստացավ այս իմաստը (կեսար, կայսր)։ Հիշատակված է երկու անգամ ԺԴ դարում։

— 1. Չեսար Օրբելեան, իշխան, որդի իշխանաց իշխան Սմբատի, մայրն է Անա, պապն է Իւանէ, եղբայրներն են Բուրթել, Սմբատ և Ելիկում, կինն է Խորիշահ, որդիքն են Սարգիս, Յովհաննէս, Բուրդ, Վարդան և Իւանէ. հիշված է նախ 1311 թ. շինել է Վայոց ձորի հոգետունը, որ այժմ կոչվում է Սելիմի քարվանսարա, 1332 թ. կենդանի է դեռ իբրև իշխան 1349 թ.—Սիսական 92 (ազգատոհմի ծառը), 161, 164 և 201, Խաղբակեանք 40։

— 2. Ջեսար, պարոն, որդի Աւթաշէրի, Երնջակի Նորակերտ գյուղում Գաւազան քահանայէն գրել տվեց մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ, 1925, 126—7)։

*ՉԷԼՏՐՈՒՏԻ, իգ. <մեկնում եմ իբր պրս. چهل čehl «քառասուն»+ درود drūd «գովասանք, դրվատիք». այսինքն «նա որ քառասուն գովասանքի է արժանի»։ Մի անգամ ունինք ԺԹ դարում!

— Չէլտրուտի, կին Անկիւրացի Կարապետի, 1810 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1921, 486)։

ՉԻՀԱ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Չիհա (որոշիչ հոլով Չիհան). հիշված է մի անգամ ԺԷ դարու մի հիշատակութեան մէջ (Սեբաստիայում).—Ձեռ. Սանաս. 8 բ։

*ՉԻՄԱՆ, իգ. <պրս. چمن čemen, Թրք. čimen «դալար խոտ, մարգ, մարգագետին». իբրև անձնանուն հիշված է ԺԵ դարում։

— Չիման, կին Ջօրայի, որ Կոնթեր գյուղում Երեմիա գրչին գրել ավեց մի Մաշտոց 1474 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339։

*ՉԻՆԱՐ, իգ. <պրս. և Թրք. چنار činār «սօսի» բառից։ Հիշված է ԺԵ—ԺԸ դարերում։

— Չինար, դուստր տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում գրել ավեց մի Աւետարան. 1437 թ.—Ձեռ. Վասպ. 378։

— Ավելի ուշ հիշված ունինք 1609 թ. (Ձեռ. Վասպ. 834), 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 բ), 1701 թ. (Ձեռ. Վասպ. 206)։

*ՉԻՆԻ, իգ. <պրս. چینی čīnī «չինական, Չինաստանցի» բառից. հիշատակված է ԺԷ դարում և այժմ էլ գործածվում է Ղարաբաղում։ Այսպես՝ Չինի 1610 թ. (Ձեռ. Կես. ածած. 52 ա բ=Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1866), 1619 թ. (Ձեռ. Թաւր. 81 ա)։ Սրանից է՝

*ՉԻՆԻԽԱՆ, իգ. <պրս. چینی čīnī «Չինաստանցի, չինական»+xān «իշխան». հիշատակված է նույնպես ԺԷ դարում. այսպես՝ 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 734), 1678 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 2 բ)։

*ՉԻՉԱՔ, իգ. <Թրք. چیچك čiček «ծաղիկ» բառից, ինչպես որ հյ. ծաղիկ բառն էլ դարձել է իգ. անձնանուն։ Չիչաք հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում և այժմ էլ գործածական է։

— 1. Չիչաք, հիշված է մի խաչքարի վրա, 1336 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 448։

— 2. Չիչաք, բարեպաշտ կին, որ «սակաւ ինչ արծաթով օգնական» եղավ՝ արծաթապատ կազմել տալու համար մի հին Աւետարան, որ կազմեց Կարապետ Բաղիշեցին Մշոյ Առաքելոց կամ Ղազարու վանքում, 1496 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 312, ՀԱ 1937, 320։

— 3. Չիչագ, կին Էլբէգի, եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում Յովհաննէս Արծկեցուն գրել ավեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սեան. 18։

— 4. Չիյաք, դուստր Խաչատուրի, որ գրել ավեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— Ավելի ուշ հիշատակված է Չիչաք 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ)։

ՉԽԻ, սեռական հոլովն է. ուղղականը հայտնի չէ. սրա որդին Սարգիս՝ մի այգի է նվիրել Հաղբատի գրատան 1179 թ. կամ ավելի ուշ։—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 49։

†ՉՆԱՇԽԱՐՀԻԿ, իգ. <հյ. նույն բառից, որ նշանակում է «աշխարհում նմանը չգտնված (գեղեցիկ)»․ նորահնար անուն, որ գործածական է Լենինականում են։ (Տես օր. Սովետ. Հայաստ. 1948 թ. հունիս 13, էջ ա, սյունակ 5-րդ)։

*ՉՈԲԱՆ, ար. <Թրք. چوبان čoban «հովիվ» բառից (բուն ծագումն է պրս. شبان šubān <պհլ. šu-pān, այն է հպրս. *fšu-pāna «ոչխարի պահապան, ոչխարապահ»)։ Հիշատակված է իբրև անձնանուն մի անգամ 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Թաւր. 73 ա, ჯაუპან ձևով)։

ՋՈՐՏՈՒԱՆԷԼ, ար. թվի թե վրացական անուն է. հմմտ. ჯორტუანელ' քեռորդի Լիպարիտ Թագավորի Վրաց (Ուռհ. 107)։

— 1. ჯორტუანელ Ա. որդի Թոռնիկ Ա-ի. կինն է Մարիամ. թերևս սա այն Ζουρβανέλης պրոտոսպաթարն է, որին Վրաց կյուրապաղատը դեսպան ուղարկեց Կոստանդին Ծիրանածին (913—959) կայսեր։ Ջորտուանէլի եղբայրներն են Ապուհարպ և Աբշուշայ. որդիներն են Թոռնիկ Բ, Վարազվաչէ Ա, Բագարատ Ա, Աշուշայ Բ և Ապուհարպ Բ։—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 60։

— 2. ჯორტუანელ Գ. որդի Վարազվաչէ Ա-ի. Տայոց Թոռնիկեանց տոհմից. Թոռնիկ Բ վանականի եղբորորդին է. 977 և 981 թվերին հիշված է իբր զորավար՝ հունական և վրացական տիտղոսներով։ Միացել էր Վարդ Սկլերոսի ապստամբության հունաց Վասիլ Բ կայսեր դեմ 976—8 թ. Վարդի փախուստից հետո, Ջորտուանէլը բռնացել էր Դերջանի և Տարոնի կողմերը։ Կայսրը ուղարկեց նրա դեմ Ժան պատրիկին, որ երկու անգամ նրա դեմ ճակատելուց հետո, սպանեց նրան Դերջանի գավառի Բագառճոյ դաշտում՝ 990 թ. (Ասող. Գ. իէ)։—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. էջ 66—67, որ միացնում է սրա հետ՝

— 3. ჯორტუანელ, ազատ, օգնական Վասակ Պահլաւունի սպարապետի՝ Թուրքերի դեմ պատերազմում, 1020 թ.—Ուռհ. 12.—გიორგ ჯორტუანელ' Սմբ. պատմ. 29. Հայապ. 391։—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 67 գուշակած է որ Ուռհ. 12 «Գորգ և Ջորտուանէլ» պետք է կարդալ «Գորգ, որ և Ջորտուանէլ». սրանով Գորգ (№ 4) միանում է սրա հետ։ Տարբերությունն այն է, որ Ակինեան դեպքը դնում է 970/2 թ. մինչդեռ Ուռհայեցին դնում է 1020 թ. երբ Ջորտուանէլ Գ որդի Վարազվաչէի արդեն մեռած էր։

— 4. ჯორტუანელ Դ պատրիկ, եղբորորդի Ցոհ. Թոռնիկ Բ վանականի, թոռն Ջորտուանէլ Ա-ի, Տայոց Թոռնիկեանց տոհ-

մից (Ժ դար).—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. էջ 71։ Գտնվում էր այն բանակի մեջ, որ կայսեր կողմից ուղարկվեց Եգիպտացոց դեմ, Անտիոքի առաջ։ Հույները հաղթեցին և Եգիպտացոց ջնջեցին, բայց ավարը իրենց մեջ բաժանելու ժամանակ, Եգիպտացիք հանկարծ ետ դարձան, հույներին կոտորեցին, զորավարին սպանեցին և Զորտուանէլին էլ գերի տարին (988 Թ)։—Ասող Գ. լէ։

— 5. Զորտուանէլ Բ. Թոռն է Ապուհարբ Ա-ի և Թոռնորդի Թոռնիկ Ա-ի. հոր անունը չէ հիշված. Տայոց իշխանն էր. սպանվեց սլավ և տայեցի զինվորների մի բողխումի ժամանակ, 1000 Թ.—Ասող. Գ. խգ. Զամչ. Բ. 882։ Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 61 (հայ է վրաց դավանությամբ)։

— 6. Զորտուանէլ Ե. Տայոց Թոռնիկեանց ցեղից. հայրանունը հայտնի չէ. մայրը Վրաց Լիպարիտ քաջ իշխանի քույրն էր. հունաց բանակով ամրացան Կապուտռու բերդը. այլազգիները եկան պաշարեցին բերդը. Լիպարիտ չուզեց դուրս գալ. Զորտուանէլը գիշերանց առյուծի պես հարձակվեց նրանց վրա, հաղթեց ու վտարեց. բայց ինքն էլ մի պատահական նետի հարվածին զոհ գնաց (1049/50 Թ.)—Ուռհ. էջ 107 ըստ Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 73։

— 7. Զորտուանէլ Մամիկոնեան, իշխան Սասնոյ. հունարենից թարգմանել է տվել և իր ձեռքով օրինակել Լուսաւորչի գրած Պարգևագիր Մշոյ Առաքելոց վանից, 1079 Թ.—Ալիշան, Արշալ. քրիստ. 202 (իհարկե կեղծիք)։

— 8. Զորտուանէլ Բ Մամիկոնեան, որդի Թոռնիկ Ա-ի (№ 7) և հայր Վիգէնի. իշխան Սասնոյ. իր եղբայրն է Վասակ. մանուկ էին «1075 թվին», երբ մեռավ իրենց հայրը՝ Թոռնիկը.—Ուռհ. 210, Թորոս աղբ. Բ. 309. Ճանիկեան՝ Հնութ. Ակնայ 77։

— 9. Զորտուանէլ Մամիկոնեան, որդի Տաճատի, իշխան Տարօնի. հունաց կայսեր օգնությամբ վանեց Արաբների արշավանքները և պահեց երկիրը խաղաղության մեջ (1104 Թ)։ Իր կտակը Մշոյ Ղազարու վանքի առաջնորդ Պօղոս վարդապետի անունով տես Հայապ. 396—7 և Ջեռ. Վենետ. Բ. 474։ Սրա հետ նույն է ուրեմն Զորտուանէլ Ծովերբախտոս, իշխան Սասնոյ, որի հրամանով Պօղոս վարդապետ Ղազարու վանից գրեց իր թուղթը 1101 թվին։—Տարօն. Ա. § 2, որ և Զորտվանէլ՝ Տարօն. Բ. § 14։

— 10. Զորտուանէլ Գ. որդի Վիգէն իշխանի Սասնոյ, Թոռն Զորտուանէլ Բ-ի. ամուսնացավ Գրիգորիս Գ կաթուղիկոսի Վա-

սիլ եղբոր Վանենի անուն աղջկա հետ. իր որդիքն են Վասիլ, Շահինշահ և Թոռնիկ. մեռավ երիտասարդ հասակում 1165 թ. և թաղվեց Վանդիր վանքում.—Թորոս աղբար. Բ. 311—4, Հայապ. 391—4, Հնութ. Ակնայ. 77։

— 11. Ճորտուանել, իշխան Սասնոյ, որի որդիքը՝ Հեթում և Շահնշահ գաղթեցին Կիլիկիա 1189 թվին և խնամացան Լեոն Բ-ի հետ. ամուսնացած էր Գրիգոր կաթուղիկոսի քրոջ հետ.—անս. Ճորտուանելի՝ Սմբ. պատմ. 105։

ՉՈՐՏՈՒԱՆԻԿ, ար. Նախորդի փաղաքշականն է. մի անգամ ունինք՝

— Զորտուանիկ կամ Զօրտուանէկ, հայր Յովանէի, որ կանգնեցրել է անթվական մի խաչքար՝ Անիի Ս. Լուսաւորիչ եկեղեցում, նույնը նաև Կարնոյ Գարարղ գյուղից քիչ հեռու, Ղուշչի գյուղի ճամբի վրա.—Սարգիսեան, Տեղագր. 79, Շիրակ 79, Արրտ. 1872, 320։

ՉՈՒՆԱԿ, ար. ծագումն անհայտ։

— Զունակ կաթուղիկոս հայոց, նստավ Արշակ Բ թագավորի հրամանով՝ Մեծն Ներսէսի փոխարեն, նրա բացակայության ժամանակ «359—363 թ»։ Օծման մասնակցեցին միայն Աղձնեաց ու Կորդուաց եպիսկոպոսները։ Զգոն մարդ էր. բայց թագավորի բոլոր արարքներին հավանություն էր տալիս։ Մասնակցեց Անտիոքի ժողովին, որ դաւմարեց Յովիանոս կայսրը և ուր ընդունվեց Նիկիական հանգանակը 363 թ։—Բուզ. Դ. ժե (2 անգամ Զունակ և 2 անգամ Զոնակ ձևով)։ — Զունակ՝ Մեսր. եր. 66. Վրդ. իդ. Միխ. աս. իթ (=իը). Մխ. այրիվ. 20.—Զոնակ՝ Մեծոփ. յիշ. գ. (Ազգապ. 187 կարծում է թե Զունակը Շահակ Մանազկերտցին է, որ Ներսէսից առաջ էլ տեղակալ էր և հետո էլ միայն տեղակալի պաշտոն էր վարում. ՇԱՀԱԿ սխալմամբ կարդացվել է ՉՈՆԱԿ)։

ՉՈՒՏԱՍ, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Զուտաս, մի այգի է նվիրել Հոռոմոսի վանքին 986 թ.—Սարգիսեան, Տեղագր. 167>Շիրակ 32։

— 2. Զուտաս ոմն, որի թոռը՝ Գրիգոր հիշատակված է Շորագալի Նախճաւան գյուղի Ս. Ստեփաննոս եկեղեցու արձանագրության մեջ՝ 1035 թ.—Շիրակ 136։

*ՉՈՓԼՈՒ, ար. <Թրք. چپلو čöplü «աղբոտ, խոլիվոտ» բառից։ Մի անգամ ունինք՝

— Չօփլու *խոճայ, իբրև վկա ստորագրում է մի կտակագրի, 1461 թ.*—Manus. brit. mus. *31ա։*

*ՉՈՔԻՆ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ հիշատակված է՝*

— Չոքին, *եղբայր թե մերձավոր Ներսէս վանահոր, որ Երուսաղէմում գրել տվեց մի Աստուածաշունչ 1363 թ.—Ձեռ. Վասպ. էջ 18։*

**ՉՐԱԽ, ար. <պրս.* چراغ čirāγ *«ճրագ» բառից, որ թրքական գործածության մեջ դարձել է* چراق čraq *(ժղ.* չրախ) *և նշանակում է «աշակերտ». Իբրև անձնանուն հիշված է մի անգամ 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646)։*

## Պ

*ՊԱԼԱԿԻԴՈՍ, ար. անշուշտ աղավաղված հունական անուն է։ Մի անգամ ունինք՝*

— Պալակիդոս *իշխան. կույր էր և բժշկվեց Երզնկայում, Ս. Թէոդորոս վկայի շիրմի վրա. Թվականն անհայտ։—Յայսմ. մայ. 11։*

Պալի *տես* Բալի։

*ՊԱԼՈՆ, ար. ծագումն ինձ անհայտ։*

— Պալոն *ոմն Աստապատցի, որդի Հայրապետի. Թուած է իր դամբանը 1673 թ.—Սիսական 511բ, 512ա։*

*ՊԱԽԱ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք՝*

— Պախա *հայր Շահնուրի, որ նրա հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Արցախի Ղաւախան գյուղում, 1548 թ.—Արձ. Արցախ 110։*

*ՊԱԽԸՐ, ար. < Թերևս Թրք.* باقر baqər *(ժղ.* բախըր) *«պղինձ» բառից։ Մի անգամ ունինք՝*

— Պախըր, *որդի Սարգսի. հիշված է մի անգամ Ամասիայի Ս. Նիկողայոս եկեղեցու մի արձանագրության մեջ, 1521 թ.—Հաղորդեց Ամասիայից Կարապետ Գազազեան 1912 թ. ապր. 12։ «Պախըրին» բառը գրված է դժվարընթեռնելի փակագրով։*

*ՊԱԾԱԾ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք՝*

— Պածած *իշխան, որդի Հիպարիտի. կինն է Դուքայ «յաղգէ Մամիկոնեանց». Լուսաւորչի ճկույթը նվիրաբերել են Հաղբատի վանքին 1280 թ. իր անթվական դամբանը գտնվում է*

Հայրապետ.— Բժշկեան, Ճանապ. Լեհ. 79, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 40. Justi 246ա։

ՊԱՇՆԱԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ թվի թէ ԺԵ դարից է (Ձեռ. Վասպ. 56)։

ՊԱԿԱԻՇ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է 1595 թ? (Ձեռ. Վենետ. Ա. 695)։

Պակէ տես Ամբակում № 2։

* ՊԱԿԻՍ, իգ. (իմա Բեգխուլթան, որ տես)։ Այս ձևով ավանդված է 1596 թ. (Ձեռ. Թաւր. 76ա։

* ՊԱՀԼԱԻ, ար. < կրճատված է ամբողջ Պահլաւունի տոհմանունից, որ փոխառյալ է պրս. پهلوی Pahlavī ձևից։ Իբրև անձնանուն հիշված է մի անգամ անթվական մի խաչքարի վրա (Սմբատեանց՝ Գեղարք. 507)։

ՊԱՂԱՔ (կամ ՊԱՊԱՔ). ար. ձևն անորոշ։ Մի անգամ հիշատակված է՝

— Պաղաք (կամ Պապաք), որ իր եղբոր՝ Գրիգորի հետ մի խաչքար է կանգնեցրել Թոդան գյուղում, իրենց ծնողների հիշատակին 1308 թ.—Ազգագր. հանդ. Ե. 334, Արցախ 252։

* ՊԱՂՏԻՆ, ար. < հֆրանս. Balduin > ֆրանս. Baudouin անունից. ըստ այսմ պետք է կարդալ Բալդին, հին տառադարձությամբ՝ Բաղդին։ Այս անունով հայտնի են մի խումբ լատին կայսրներ Պոլսում և Եւրոպացի թագավորներ Երուսաղէմում։ Ամենից նշանավորներն են Baudouin I, չորրորդ խաչակրության առաջնորդը, կայսր Պոլսի 1204—5 թ. և Baudouin II կայսր Պոլսի 1228—1261 թ։

— 1. Սիր Պաղտին Ֆունդստապլ, սպարապետ Լևոն Բ-ի. Թերևս լատին. գնաց գրավելու Պոականայ բերդը, բայց չկարողացավ և սպանվեց 1188 թ։ Երկու տարի հետո Լևոնը գրավեց նույն բերդը.— Սմբ. պատմ. 105, 137։

— 2. Պաղտին, պարոն և տեր Ընկուզուտի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111։

— 3. Պաղտին, պարոն, «տէր Անդուշծին և Կուպային». ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».— Սմբ. պատմ. 112։

— 4. Պաղտին արքայազն իշխան, հայրապետ Բարսեղ քահանայի և Սմբատ իշխանի. ունի Թուղթ առ Վարդան (Այգեկցի)։

որ նրան ի պատասխան գրեց իր 22 խրատական ճառերը 1212 թ.—Զարբ. Հին դպր. 745—6, 752, 789. Տաշեան, Ժղվ. ատակաց Վարդանայ 58. Ճանիկեան, Հնութ. Ակնայ 80—81։

— 5. Պաղտին արքայեղբայր, որդի Կոստանդին պայլի և եղբայր Հեթում Ա թագավորի, ապա դարձաւ արքեպիսկոպոս Գռներոյ վանքի՝ Յովհաննէս (№ 361) արքայեղբայր անունով (տես անդ). † «1289 թ».—Մխուան 144, Հայապ. 488. Ազգապ. 1656. Տաշեան, Ցուց. 635։

— 6. Պաղտին Նղրցի, սպարապետ, իշխանաց իշխան և մարաջախտ թագավորության հայոց. համարվում է թոռն արքայահայր Կոստանդին պայլի (№ 57), ըստ Մխուան 149 ա, 411բ։ Կոստանդին պայլի որդին է համանուն Կոստանդին տեր Նղրի (№ 92), որի որդիներն են սույն Պաղտին մարաջախտը, Վասակ և Հեթում ջամբոլայ։ Պաղտինը ամուսնացավ Մարիանէի հետ, որ էր դուստր Լևոնի՝ որդւոյ Սմբատ Գունդստապլի։ Ունեցավ երկու որդի՝ Կոստանդին և Ճուֆրէ. վերջինը մեռավ երիտասարդ հասակում (1358 թ), իսկ առաջինը դարձավ թագավոր՝ Կոստանդին Դ անունով (№ 144)։ Իր սեփական բերդն էր Բարձրբերդը, բայց նստում էր Տարսոնում, ուր շինեց մի եկեղեցի և գրքերով ու անոթներով ապահովեց (Մխսուան 274ա)։ Խորնի վանքի վանահոր՝ Կոստանդինին (№ 115) հանձնեց Սմբատ Գունդստապլի Ճաշոցն ու Տարեգիրքը՝ նորոգելու և լրացնելու համար։ Լևոն Դ-ի կողմից, 1307 թվին, Թորոս երաժշտի (№ 87 և 122) և Լևոն սպայի հետ դեսպան գնաց Անգլիոյ Եդուարդ Ա թագավորին։ Վերադարձին մեռած գտավ Լևոն Դ թագավորին, որին հաջորդեց Օշինը։ Օշին պայլի և Կոստանդին Գունդստապլի հետ խնամակալ եղավ մանկահասակ Լևոն Ե թագավորին («1320 թ»)։ Երբ Հալէպի ամիրա՝ Ալթուն-Բուղան հաշտության դաշնագիրը դրժելով հարձակվեց Կիլիկիա, Պաղտին մարաջախտը Վասիլ Թղթագրի հետ դեսպան ուղարկվեց Եգիպտոս։ Հալէպից անցնելու ժամանակ ամիրան խաբեությամբ բռնեց նրանց և բանտարկեց։ Պաղտինը 7 ամիս չարչարվելուց հետո մեռավ բանտում 1336 թվին։ Մարմինը փոխադրեցին Ակների վանքը։— Սմբ. պատմ. 137, Մին. համդ. 50, Դարդել 28, 31, 52 (կոչում է Baldin կամ Balduin և համարում է եղբայր Կոստանդինի). Զարբ. Հին դպր. 773, Թրգմ. 197. Մխուան 149, 154, 412—3, 485. Հայապ. 112. Ազգապ. 1834. Յովսէփեան՝ Մի էջ հայ արուեստի 18. Շահազիզ՝ Պատմ.

պատկ. 117—8.—սեռ. Պաղղնի՝ Նհպտք. 107։—Պաղտինի մասին մի հիշատակութիւն տես Բասմաջեան, Լեոն 27 ծան. ուր 1345 թվին արդեն վախճանված է կոչվում։

— 7. Պաղտին, հայր Գրիգորի, որ նորոգեց Անցմնցուկ գետի կամուրջը 1450/60 թ.—Սիսուան 538ա։

— 8. Պաղտօն, որի որդին կողոպտվեց Սսում՝ Թուրքմանների արշավանքի ժամանակ, 1461 թ.—Սիսուան 544բ։

ՊԱՃՈՒԿ, ար. ծագումն անհայտ։

— Պաճուկ ի Մարդպետական գնդէն. պատգամավոր ուղարկվեց Վահան Մամիկոնեանի կողմից բանակցելու համար Նիխորի հետ «484 թ».—Փարպ. գ։

† ՊԱՃՈՅՃ, ար. < հյ. պաճոյճ «զարդ, զարդարանք» բառից. համտ. Զարդ, Զարդար անունները։

— Պաճոյճ, Թագավոր Հայկազն, հաջորդեց Փառնուասին, Ն. Ք. 665 թ. (ըստ Զամչ. Ա. 101).— Խոր. Ա. իբ. Կղկնտ. Ա. ժե. Ցհ. կԹղ. գ. Մագ. Թղ. ժԹ. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 46. Վրդ. է. Մխ. այրիվ. 18, 54. Մին. համդ. 11.— Պաճոճ՝ Ուխտ. Ա.իգ.—Պաճույճ՝ Վրաց պատմ. Ա. 74։

ՊԱՅԵԱԹ, ար. ծագումն անհայտ. արդյոք Թրք. بيات bayát «հին, օթեկ, քարթու» բառից է։

— Պայեաք ոմն, որի գերեզմանը գտնվում է Դարբանդում, Պօղոս Բուլաղի գերեզմանատան մեջ.— Բարխուտ. Աղվ. երկ. 109 (թվականը սխալ գրված Ի=571 թ)։

ՊԱՅԻԿ, ար. ծագումն անորոշ։

— Պայիկ? (հիշված է սեռ. Պայկանն ձևով), հայր Դէշի, որ կնքահար (դամղաչի) էր Անիում և մի քանի հարկեր է ներել— Անթվ. Արձ. Շիրակ 62։

† ՊԱՅԾԱՌ, իգ. < հյ. պայծառ «լուսավոր, փայլուն» բառից. համտ. լտ. Clara, ֆրանս. Claire, իտալ. Chiara, Chiaretta, ռուս. Светлана, որոնք բոլոր նշանակում են «պայծառ» և իգական անուններ են։ Գործածական էր անցյալ դարում Պոլսում և այլուր։ Փաղաքշական ձևն է Պայծիկ։ Մի անգամ հիշատակված է՝

— Պոծառ, դուստր Բարսեղ երեցի և քույր Ներսէս քահանայի, որ օրինակեց Աւետարանը՝ Սեբաստիա 1222 թ.— Տաշեան, Ցուց. 558—9 (ցանկում սխալ տպված 358—9)։

ՊԱՆԱՃ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ ունինք՝

— Պանան, որդի Լիպարիտի. գերեզմանը իր տապանագրով գտնվում է Հաղբատում ԺԱ—ԺԳ դարերից.— Տաշեան, Ցուց. էջ 984։

ՊԱՆԴ, ար. ծագումն անհայտ. մի անգամ ունինք՝

— Պանդ կաթուղիկոս Աղուանից, հաջորդ Մովսէսի (Ի դար).— Կղկնտ. Գ. իդ (հրտր. Շահն. պանտ).— Մխ. այրիվ. 24.—Պանտ՝ Կիր.ը։

ՊԱՆԴՈՒՆՏ, ար. (արդյոք պետք է կարդալ Պանդուխտ). մի անգամ հիշատակված է՝

— Պանդունտ, ուխտի եկավ Արտավազդայ վանքը՝ Թամամի հետ և մի այգի նվիրեց, շուրջ 1224 թ.— Սմբատեանց, Գեղարքունի 365։

ՊԱՆՈՆ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է՝

— Պանոն ճգնավոր Աղուան ազգից, շինեց Երուսաղէմում Պանդավանքը՝ Զիթենեաց լեռան արևելյան կողմը.— Կղկնտ. Բ. ծբ։

ՊԱՆՈՒՍ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է՝

— Պանուս, եղբայր պատրոնաց պատրոն Վահրամ աթաբէգի, որ հիշում է նրան իր մի արձանագրության մեջ, 1336 թ.— ավելին տես Իմնա։

ՊԱՆՉԻ, ար. ծագումն անհայտ և անսովոր անուն. հիշված է մի անգամ սեռ. Պանչէ ձևով, անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վեննա. Ա. 778։

* ՊԱՆՏԱԼԷՈՆ, ար. < հուն Πανταλέων անունից, որ բուն նշանակում է «ամենառյուծ»։ Այս անունով հայտնի են Պանտալէոն՝ եղբայր Կրեսոսի, մի բռնակալ, մի աթենացի, մի Ետոլիացի՝ բարեկամ Եւմենէս թագավորի և ուրիշներ։ Ցայսմաւուրքի մեջ ունինք Պանտալէոն բժիշկը (Աւգեր. Լիակ. վրք. Զ. 488)։

— 1. Պանդալէոն, որդի Աղուանից Վաչագան Գ բարեպաշտ թագավորի և Շուշանիկ թագուհու (Զ. դար).— Կղկնտ. Ա. ժթ։

— 2. Պանդալեոն քահանա, որ «Հայոց Աբուսահլ Համազասպ տիեզերակալ արքայից արքայի»! հրամանով գնաց Բիւզանդիոն (ՆԾԴ=1005 թ) և Ս. Սոփիա եկեղեցու արկղներից հանելով հունարենից հայերենի թարգմանեց «Պատմութիւն գիւտի մասին Ս. առաքելոյն Պետրոսի», օգնությամբ Յովսէփ անուն անձի, որ անշուշտ հույն էր։— Տաշեան, Ցուց. 13—14. Հայապ. 85 և 295—9։ (Այս ճոճռան անունով անձը պետք է հասկանալ Աբուսահլ (№ 1) թագավոր Արծրունի, որ նստել է «953—69 թ»։ Ուստի այն ՆԾԴ=1005 թիվը պետք է ուղղել ՆԺԴ=965, որ

Աբուսահլի Թվականն է իրոք։ Այսպես ունի նաև Հայապ. 296։ Նույն պատմության այլ տարբերակը տես Լևոն (№ 6) վրդ. Իմաստասէր։

* ՊԱՊ, ար. < պհլ. Pāp-ī անունից, որից տառադարձված են ասոր. Pāpā և լտ. Papa (գրված Para Ամմիանոսի մոտ), հմմտ. Pāpi որդի Pūs-ի, կնիք սասանեան (Justi 241 ա), Bābā կամ Pāpā պարթև իշխան՝ վասալ Արտաւան Ե-ի ևն. ասոր. Mār. Pāpā կաթուղիկոս Տիզբոնի՝ Դ դար (REA 1,27)։ Սրանից է նաև Պապաէ։ Բուն նշանակում է «հայր», որից և հյ. պապ (Հիւբշ. 65)։

— 1. Պապ, որդի Յուսիկ կաթուղիկոսի. ծն. «313 թ». իր անարժան վարքի համար շանթահար մեռավ «349 թ».— Բուզ. Գ. ե, ժգ, ժե, ժթ. Խոր. Գ. ժզ. Յհ. կթղ. ժա. Մեսր. եր. 11. Քհնպ. 270. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 61. Կիր. 11. Վրդ. իբ.— սեռ. Պապայ՝ Բուզ. Գ. ժե, ժթ։

— 2. Պապ, թագավոր հայոց «368—374 թ». Արշակ Բ-ի և Փառանձեմի որդին էր (ըստ Ազգապ. 203 Ոլիմպիադա թագուհու). մանուկ ժամանակ պատանդ գնաց Պոլիս «364 թ» և բնակություն ստացավ Նէոկեսարիա քաղաքը։ Հորը գերությունից հետո նույն կորքով դարձավ Հայաստան և վտարելով Պարսիկներին՝ նստավ հորը գահը «369 թ»։ Սանձեց կաթուղիկոսական իշխանության գերիշխան լինելու ոտնձգությունները և հայոց եկեղեցին Կեսարիայի թեմից անկախ հրատարակեց։ Ապստամբեց Վաղէս կայսեր դեմ և նրա հրամանով խարդախությամբ սպանվեց խնջույքի ժամանակ «374 թ»։— Բուզ. Դ. ժե, խդ, ծե. Ե. ա—գ. իբ—իդ, իթ, լա, լբ, լե. Սեբ. 11, 18. Խոր. Գ. իդ, իթ, լե—լթ. Կղկնտ. Ա. ժգ. Յհ. կթղ. ժբ, ժգ. Արծր. Ա. ժա. Մեսր. եր. 50, 68—70, 72—74, 80—85, 116—8. Ասող. Բ. ա. Վրթ. քերթ. պտկ. 306. Շնորհ. վիպ. 808, 821. Պամ. ներս. 12, 18, 20, 27. Մխ. անեց. իբ, իգ. Կիր. 13. Վրդ. իգ, իդ. Օրբ. ը. Սամ. անեց. 67. Եզն. եր. 267. Սմբ. պտմ. 78. Մխ. այրիվ. 18. Մին. համդ. 24, 25, 88. Յայսմ. նոյ. 19. Ջքր. սարկ. Ա. 3. Նհպտք. 90.— սեռ. Պապայ՝ Բուզ. Դ. խդ, ծե. Ե. ա—դ, դ, ժթ, իբ—իդ, և—լբ, լդ, լե, լէ, լը. Փարպ. (ա), Խոր. Գ. իթ, լ, լե—խա. Կղկնտ. Ա. ժգ. Վրթ. քերթ. պտկ. 307. Յհ. կթղ. ժգ. Արծր. Ա. ժա. Մեսր. եր. 81, 117—8, 120, 123. Պամ. ներս. 20. Ասող. Բ. ա. Շնորհ. վիպ. 869, 894. Միխ. աս. իթ (=իը). Մխ. անեց. իբ, իգ. Կիր. 14. Նհպտք. 91. Մին. համդ. 26. Վրդ. իդ. Զուղ. 42.— Ջարբ. Հին դպր. 466—7. Վրաց աղբ. Ա. 75, Բ. 95.— Հիշատակ-

ված է նաև Ս. Բարսեղի Թղթերի մեջ. տես Կիւրեղ և Փաւստոս անունների տակ։— Իր վրա ընդարձակ պատմական վեպ գրեց Ստ. Զորյան, Երևան 1944 թ։

— 3. Պապ Բ. Թագավոր Հայոց, տարբեր է առաջինից. Վարազդատի որդին էր. ուներ ևս երկու եղբայր՝ Արշակ և Վաղարշակ անունով. երեքը միասին թագավորեցին Վարազդատից հետո.— Վրաց աղբ. Բ. 96 (սխալ և շփոթ)։

— 4. Պապ Արտակունեաց, որդի Բաբոցի, ոստանիկ. կուսակից Վահան Մամիկոնեանի. մասնակցեց Ներսեհապատի պատերազմին «482 թ».—Փարպ. հա.—սեռ. Պապայ՝ անդ։

— 5. Պապ Բագրատունի, որդի Աշոտ ասպետի և թոռն Սմբատ Վրկան մարզպանի. Պարսից Խոսրով Բ Թագավորը (590—628 թ) Պարսկաստան հրավիրեց նրան և պաշտոն տվեց։— Սեբ. ժթ։

— 6. Պապ Անձևացի, իշխան, ժամանակակից Աշոտ Գ «954—977 թ» Ողորմածի։— Ուռհ. 28։

— 7. Պապ երեց, ազգական Աբրահամ երեցի, որ իրայնոց հոգուն երկու նորաշէն տուն և երկու խանութ է նվիրել Խծկօնքի վանքին, 1233 թ.—Շիրակ 128։

— 8. Պապ, քահանա Կարնոյ, հորեղբայր Կարնոյ առաջնորդ՝ Գրիգոր (№ 425) Նահատակ եպիսկոպոսի. ձերբակալեցին սրա հետ և բռնի Թլփատելով մահմեդական դարձրին «1321 թ»։— Նոր վկ. 123, Ազգապ. 1838։

— 9. Պապ. այս անունը հիշված է Ծղուկ գավառի Բնունիս գյուղում Օրբէլ մանուկի մահարձանի վրա, 1331 թ. ըստ Ազգագր. հանդ. Գ. 178, որ սակայն չունի Սիսական 216։

— 10. Պապ, որդի Համզայի, որ կանգնեցրել է մի խաչքար նրա գերեզմանի վրա Գանձակի Փիփ գյուղում 1473 թ.— Արցախ 299 > Ազգագր. հանդ. Ե. 312։

— 11. Պապ տնտես Ագուլեաց եկեղեցու 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 300։

— 12. Պապ, որդի Սրապիոնի, Կալերցի. Զաֆիղուրի իշխան Թորոսի ձեռքով կարգվեց իշխան Կենաւուզի (Դաւիթ բէգի ապստամբության ժամանակ)։ Օգնական գնաց Նուպարի և վանեց Ֆաթալի խանի արշավանքը (1724 թ)։ Վախենալով Օրդուպատցոց արշավանքից, փախավ Սաֆիղուլի խանի ձեռքից. վրա հասավ Դաւիթը, Թշնամուն փախցրեց և Պապին գլխատեց։— Չամչ. Գ. 788, Սիսական 288ա։

— Պապ անունը հիշված է ավելի ուշ 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310) և 1666 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 37)։

* **ՊԱՊԱ**, ար. նույն է նախորդի հետ. գործածական է այժմ էլ Կովկասում. հնագույն հիշատակությունը ԺԳ դարից է։

— 1. Պապա, հայր Սիպղաքծս սարկավագի, որ Մուղնիում մի խաչքար է կանգնեցրել 1280 թ.— Այրարատ 184։

— 2. Պապա, հայր Այվատի, Անկյուրացի, որ Պոլսի առաջին հայ գաղթականներից է, 1453 թ.— Տաշեան, Ցուց. 895։

— 3. Տէր Պապա, հիշված է 1461 թվի մի խաչքարի վրա, որ այժմ ագուցված է Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի պատում։— Ազգագր. հանդ. Է. 72։ (Խրիմի բարբառով Տէրպապա կամ տէրպա նշանակում է սակայն «քահանա»)։

— 4. Մի ուրիշ Տէրպապ էլ հիշված է նույն վանքի պատին ագուցված այլ խաչքարի արձանագրության մեջ 1480 թ.— Ազգագր. հանդ. Է. 72։

— Ավելի ուշ Պապօ ձևով հիշված է 1707 թ. (Ձեռ. Վասպ. 508), և 1683 թ. կամ ավելի ուշ (Ձեռ. Թաւր. 98բ)։

* **ՊԱՊԱՂԱ**, ար. կազմված է նույն Պապ անունից՝ աղա տիտղոսով։ Հիշված է ԺԷ դար (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1922, 470)։ Սրա հակագիրն է Աղաբաբ, որ տես։

**ՊԱՊԱՆ**, ար. ծագումն անորոշ. թվի թե կրճատումն է Պապանուն անվան. գործածական է նաև այժմ (Կովկաս)։ Հին հիշատակությունն է՝

— 1. Պապան, հայր Թամամի՝ կնոջ Հազարշահ Շիկրակեցու, 1313 թ. (յիշ. ИАН 1911, էջ 1300)։

— Պապան, հիշված է նաև անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 51բ)։

† **ՊԱՊԱՆՈՒՆ**, ար. կազմված է հյ. պապ+անուն բառերից, իբր թե երախան կոչվել է պապի անունով։

— 1. Պապանուն, 30 օրինակ Յայսմաւուրք գրեց Պօղոս քահանա Սեբաստացու տրամադրության տակ, նա էլ նրանց համեմատությամբ կազմեց մի Յայսմաւուրք, օգնությամբ Խաչատուր Սիւնեցու (ԺԲ դար).— Manus. bibl. nat. էջ 99։

— 2. Պապանուն, միաբան Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 3. Պապանուն Կեսարացի, հայր Պարոնի, որ հիշված է 1275 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 872։

— 4. Պապանուն, որդի Գրիգոր գրչի. օգնում էր իր հոր՝ ար-

տագրելու ժամանակ Տօնականը՝ կաֆա 1305 թ.— Ձեռ. Վենետ. Բ. էջ 512։

— Պապաճուճ հիշված է նաև Ձեռ. Վենետ.Ա. 166, Ձեռ. Վասպ. 8 (անթվական)։

* ՊԱՊԱԿ, ար. < կազմված է պհլ. Pāp «հայր» > Պապ անվան փաղաքշական Pāpak ձևից, որի հունարեն տառադարձությունն է Παπακου (սեռական հոլով)։ Նույնի պարսիկ ձևն է پابك Pābak, որից էլ փոխառյալ է արաբ. بابك Bābak անունը։ Հմմտ. Pāpak հայր Արտաշիր Ա Սասանեան թագավորի, Bābek-al-Xurramī Առանցի (Հայաստան), հնարեց մի նոր աղանդ, որի նպատակն էր Իսլամը հաշտեցնել Իրանական հավատալիքների հետ և ազատել Պարսկաստանը արաբական լծից (†837)։ Այս անունով ուրիշ անձեր տես Justi 242 (Հիւբշ. 66)։

— 1. Պապաք, որդի Վասակի Խաղբակեան, թոռն Հաղբակ Բ-ի և եղբայր Հասան-Պռոշի և Մկդեմի, եղբորորդի Գրիգոր Հաղբակեան Խաչենեցի նահատակի։ Խաչէնի իշխանական տնից։ մեռել է «1222 թ», Ղփչախների պատերազմում, Գանձակի մոտ— հիր. ժ > Նոր վկ. 97. Վրդ. ձգ. Մխ. այրիվ. 80.— տես. Պապաքի՝ հիր. ժը.—Այրարատ 268—9։

— 2. Պապաք, հայր Մխիթար քահանայի, որ Որոտանի Աղէտու վանքում գրեց մի Աւետարան, 1296 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 200։

— 3. Պապաք, որդի Հասան-Պռոշ իշխանի. թոռնորդի Հաղբակ Բ-ի և եղբայր Մկդեմի, Ամիր-Հասանի և Վասակի. իբրև իշխանակից իր հոր՝ հիշվում է 1220 թվի մի արձանագրության մեջ (գրված Բաքաք)։ Նվիրներ է արել Վեդիի մոտ Աղբիլխա գյուղի եկեղեցու երկու արձանագրությանց մեջ (Խաղբակեանք 79)։ Երբ մեռավ Պռոշը (1284 թ), նրա երկու որդիքը՝ Պապաք և Ամիր-Հասան Ա ժառանգեցին աթոռը. առաջինը իբրև ավագ իշխանապետ։ Երկուսն էլ կոչված են սպարապետ։ Պապաքը իր կնոջ՝ Թուզուքանի հետ Գեղարդում փորել է տվել մի ժամատուն 1288 թ։ Իր եղբորորդի Էաչիի հետ ստորագրում է Գրիգոր է (№ 391) Անաւարզեցի կաթուղիկոսի դեմ գումարված ժողովի ձեռնարկին (1295/6 թ)։ Մեռել է անզավակ՝ հավանօրեն 1298—9 թ։—Արձ. Շահխաթ. Ա. 65, Բ. 365. Սիսական 120, 174—6. Այրարատ 268—9, 339, 342. Արրտ. 1871, 92 և 1889, 102. Խաղբակեանք 79, 137—146.—տես. Պապաքի՝ հիր. ծը։

— 4. Պապաք, որդի Ամիր-Հասան Ա իշխանի Պռոշեանց,

թոռ Պռօշի և թոռան թոռ Հաղբակ Բ-ի, եղբայր Էաչիի (ԺԳ դար).—այսպես ըստ Ալիշանի տախտակի (Այրարատ 268—9), իսկ Ցովսէփեան, Խաղբակեանք (տախտակում) չգիտէ այսպիսի անձ։ Պէտք է նույնացնել № 3-ի հետ. սխալը բխում է նրանից, որ Օրբ. կը Պապաք և Էաչի կոչում է «որդիք բարեպաշտ իշխանին Պռօշայ», որով երկուսը դառնում են եղբայր։

— 5. Պապաք, իր Գրիգոր եղբոր հետ միասին՝ երկուսով մի խաչքար են կանգնեցրել Մանաշիթ գյուղում, 1308 թ.—Արցախ 252։

— 6. Պապաք ոմն. հիշված է Խրիմի Ս. Խաչ վանքի մի արձանագրության մեջ 1511 թ. (Խ. Ստեփանէ՝ Ղրիմի Ս. Խաչ 11, Բժշկեան, Ճանապ. Լեհ. 350, Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 41):

— 7. Բաբաք, հայր և թոռ, երկու հոգի հիշված են 1609 թ?—Ձեռ. Վենետ. Բ. 1013։

— 8. Բեքիկ, հայր Սարգիս եպիսկոպոսի Արղութեան (ԺԷ դար).—տես Մառ, Ամառն. ուղև. 87։

— 9. Բաբաք հիշված կա նաև ԺԸ դարում (Bodleian 167)։

† ՊԱՊԻ, ար. < հյ. պապ «հայր կամ մեծ հայր» բառից՝ կոչականի ձևով. հիշված է 1661 թ. (Ձեռ. Ազուլ.=Արար. 1911, էջ 119)։

* ՊԱՊԻԱՍ, ար. նույն Պապ անվան հունական ձևն է։

— Պապիաս, եպիսկոպոս Երիզայ քաղաքի (Παπίας ἐπίσκοπος Ἐρίζης կամ Ἐριζῶν), անդամ Քաղկեդոնի ժողովի (451 թ).—Փալճեան 14, Զամչ. Բ. 133, Հացունի, Կարևոր խնդ. 352։

— Պապաս, հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 767։

† ՊԱՊԻԿ, ար. < հյ. պապ «մեծ հայր» բառի փաղաքշական է։ Սրանից է և Պապիկեան ազգանունը։ Հիշատակված ունինք Պապիկ 1623 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46), 1652 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 740), 1758 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 14ա), ԺԸ դար (Տաշեան, Ցուց. 356), 1824 թ. (Ձեռ. Վասպ. 208), սեռ. Պապկեն ձևով 1633 թ. (Ձեռ. Վասպ. 882)։ Անորոշ թվականով է՝

— Պապիկ որդի Արզուի. հիշված է Շնհեր գյուղի մի արձանագրության մեջ, որի թվականից հարյուրավորը կորած է։ —Սիսական 158։

ՊԱՊԿԱՆԷՍ, սեռն ու ծագումը անհայտ. հիշատակված է

անթվական, բայց 1469 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Վաստ. 457)։

† ՊԱՊՂՈՒԼ, ար. ծագած է հյ. պապ+թրք. قول qul «ծառա, ստրուկ» բառից, իբր «պապի ծառան»։ Հիշված է մի անգամ 1695 թ. (Միսակյան 304բ)։

† ՊԱՊՈՒԿ, ար. < հյ. պապ «մեծ հայր» բառի փաղաքշականն է, ճիշտ ինչպես Պապիկ, միայն մասնիկի տարբերությամբ։

— 1. Պապուկ, որդի խոջա Յովհաննէսի, որ ժառանգեց Տարօնի իշխան իր հորեղբորորդի խոջա Յովսէփի Մուշում գրել տված Աւետարանը 1488 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

— 2. Պապուկ սարկավագ, գրիչ. Աշոտին գյուղում օրինակել է Շարականը՝ 1580 թ.—Ձեռ. Կարին. 175։

— Ավելի ուշ հիշատակված է 1710 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925. 580), 1721 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1886) և անթվական մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 366)։

† ՊԱՊՈՒՄ, ար. < հյ. պապ «մեծ հայր» բառից, որ զարմանալի կերպով ստացել է թրք.-ում ստացական մասնիկը, իբր «պապս»։ Գտնում ենք հիշատակված 1581 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32ա), 1674 թ. (անդ՝ Բ. 46բ), 1694 թ. (անդ՝ Բ. 13բ) և անթվ. (Ձեռ. Վաստ. 787)։

= ՊԱՊՔԱՆ, ար. < պրս. بابکان Babkān անունից, որով հայտնի է Սասանեան հարստության հիմնադիր Արտաշիրը։

— 1. Պապքան, որ Ուքանի հետ օժանդակեց դրամով գրիչ Հայրապետ քահանային գնելու մագաղաթ և նկարազարդելու իր օրինակած Աւետարանը՝ Սեբաստիա 1211 թ.—Յովսէփեան, Շաղակաթ 198, Նիւթեր և ուս. Ա. 12 բ։ Սրա հետ հմմտ.

— 2. Պապքան Վախրադին, որդի Սարգսի և թոռ Հոգոյ. իր եղբայր Ուքան Քարիմադինի հետ նվերներ են արել զանազան վանքերի, որոնց արձանագրությունները 1252, 1268, 1271, 1274 թվերից՝ տես Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 13, Բանաս. 1901, 136։ Ավելին. տես Ուքան № 8։— Նույն է թվում նախորդի հետ՝ ըստ Յովսէփեան, անդ։

† ՊԱՌԱՒ, ար. < հյ. պառաւ բառից, ինչպես որ ունինք Ծեր և Հալւորակ անունները։

— Պառաւ երեց, հայր Դուքթի և պապ Կողբեցի Որդեկ երեցի, որ Կողբում ունեցած տունն ու այգին նվիրել է Արջոյ Առիճի վանքին 1289 թ.—Շիրակ 123, Այրարատ 120։

**ՊԱՍ**, *իգ. ձեն անստույգ, ուստի և ծագումն անհայտ անուն. հիշված է մի անգամ 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 350)։*

ΠΑΣΑΓΝΑΘΗΣ, *հայազգի պատրիկ Կոստանդին կայսեր (641—668) օրով.*—Justi 244բ։

† **ՊԱՍՏԵՂ**, *մր. <* հյ. պաստեղ *բառից պիտի լինի. մի անգամ ունինք՝*

— Պաստեղ *(գրված է «մեք արտամիվ Պաստեղս...»), իր մի քանի ընկերների հետ նվերներ է արել Հաղբատի վանքին.— Անթվ. Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 30։*

**ՊԱՍՔԱՄ**, *ար. ծագումն անհայտ։*

— Պասքամ, *թոռն Հայկակ նահապետի Հայկազանց (Թվի Հայկակ Բ), որից Տորք, որից էլ սերել է Անգեղ տան նախարարությունը.—սեռ.* Պասքամայ՝ *Խոր. Ա. իգ. Բ. ը. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 46, 49։*

† **ՊԱՏՈՒԱԿԱՆ**, *ար. և իգ. <* հյ. պատուական *բառից. Զաքարիա պատմիչը, տպ. Վղրշպտ. Բ. էջ 126—8 համապատասխան է գնում* Ազիզ *անվան. «Ազիզ... որ թարգմանի Պատուական»։ Գործածական է նաև այժմ, որից* Պատուականեան *ազգանունը։*

— 1. Պատուական *քահանա, գրել տվեց Գրիգոր կրոնավորին մի Ավետարան՝ 1227 թ.—Թորոս աղբ. Բ. 366 (անունը ուղղակի չի հիշված, այլ այսպես. «պատուականն ի քահանայս անուամբ և արդեամբ»)։*

— 2. Պատուական *քահանա, գրել տվեց մի Ավետարան 1232 թ.—Կրպտ. եպս.՝ Դոփեանք 53։*

— 3. Պատուական, *սարկավագ Երզնկայի Թիլ ավանի եկեղեցում. տեսիլքով հայտնվեց իրեն և գտավ Մեծն Ներսէս կաթուղիկոսի անհայտացած գերեզմանը «1273 թ».— Պամ. ցյտ. Ներս. 46։*

— 4. Պատուական, *որդի Ջամէնտիկինի՝ հորաքրոջ Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Խրիմ) գրել տվեց մի Աստուածաշունչ 1352 թ.— Ձեռ. Վասպ. 7։*

— 5. Պատուական, *հայր Երզնկացի ոսկերիչ Յովհաննէսի, որ Արճէշում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 367։*

— 6. Պատուական, *մայրենի մեծ հայր Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Ավետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։*

— *Ավելի ուշ հիշատակված են* Պատուական *1618 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 125բ), 1694 թ. (Ձեռ. Վասպ. 980)։*

— 7. Պատուական, դուստր Խաչիկի, Վայոց ձորի Արփա գյուղից. նշանվեց Միրզան անուն երիտասարդի հետ, որից առանց ամուսնության ունեցավ որդի։ Նախիջևանի Սուլթան-Մուրատ խանը ուզեց բռնել Միրզանին, բայց նա փախավ Արարատի Նորագավիթ գյուղը։ Այն ժամանակ բռնեց Պատուականին և պահանջեց մահմեդական դառնալ։ Հակառակ տանջանքների՝ չուրանալով իր հավատը, կախեցին նրան մզկիթի աշտարակի գլխից և ապա չվանը կտրելով՝ վայր գցեցին։ Նահատակին թաղեցին մեծ պատվով 1669 թ.— Զքր. սարկ. Բ. 126—8 > Նոր վկ. 488—9. հմմտ. նաև Սիսական 184, ուր նահատակության թիվը սխալմամբ նշանակված է 1679։

ՊԱՏՐԱՆ, ար. ծագումը անհայտ. ավանդված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Պատրան, եղբայր Յովհաննէս տանուտէրի, որ Շեղգինայ գյուղից էր և գրել տվեց մի Յայսմաւուրք Սեբաստիա, 1469 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 11։

— 2. Պատրան, որի հիշատակին մի խաչքար է ագուցված Ամասիայի Ս. Աստուածածին եկեղեցու պատին՝ 1504 թ.— Հաղորդեց Ամասիայից Կարապետ Գազազեան 1912 թ. ապր. 12։

— Ավելի ուշ հիշատակված է Պատրան 1543 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1925, 377)։— Սրանց հետ թերևս նույն է՝.

— 3. Պատրաս ար. Թվականն անհայտ մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 62)։

† ՊԱՏՐԻԱՐՔ, ար. < հյ. պատրիարք բառից, որ հունական փոխառություն է. հմմտ. Պատրիկ։ Այս անունով ունինք միայն՝

— Պատրիարք, մեծ իշխան Տայոց Դաւիթ կիւրապաղատի. մեռավ մի ուրիշ ազգի հետ ընդհարման միջոցին, 1000 թ. ըստ Զամչ. Բ. 882.— Ասող. Գ. խգ։

† ՊԱՏՐԻԿ, ար. թեև կա հուն. Πατρίκιος անձնանունը (որից և Պատրիկոս վկա Յայսմաւուրքի մեջ), բայց որովհետև Պատրիկ անունը մեր մեջ հազիվ Է դարից է սկսում, ուստի ծագում է հյ. պատրիկ (իշխանական աստիճան) բառից, որ դարձյալ հունական փոխառություն է։

— 1. Պատրիկ ի Բամզխտան, իշխան աղուան (Է դար).— Հրար. Սամ. անեց. 286։

— 2. Պատրիկ Բարոյեան, իշխան աղուան. Աղուանից Թագավորական ցեղից (706 թ).— Կղկնտ. Գ. ը, ժ։

— 3. Պատրիկ Անձևացի. մասնակցեց Մուշեղի և Գուրգենի պատերազմներին՝ Բուղայի դեմ «851 թ».— Արծր. Բ. գ. Գ. գ։

— 4. Պատրիկ Գնունի. մասնակցեց Գուրգենի պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ».— Արծր. Գ. դ։

— 5. Պատրիկ քարգործ (քարտաշ), իր կնոջ Թամարի (№ 12) հետ հիշատակված է այն Աւետարանում, որ գնեց Մարտիրոս քահանան 1410 թ?—Ջեռ. Վասպ. 164։

— 6. Պատրիկ ոմն, հիշված 1420 թվից առաջ (Տաշեան, Ցուց. 666)։

— 7. Պատրիկ, Եղնովտայ գյուղից. տնով տեղով հեռսի տակ մնաց 1500 թ.—Տաշեան, Ցուց. 486։

† ՊԱՏՐՈՆ, ար. < հյ. պատրոն բառից, որ սակայն օտար փոխառություն է։ Հիշված է մի անգամ ԺԵ դարից։

— Պատրոն Բջնեցի, ընծայեց մի Աւետարան Աշտարակի եկեղեցիներին 1478 թ.— Այրարատ 187, 274։

† ՊԱՏՐՈՆԻԿ, ար. Նախորդի փաղաքշական ձևն է։

— Պատրոնիկ, հայր Վահրամ իշխանի, որ օգնեց շինելու Թեղենեաց վանքի գավիթը 1167 թ.— Խաղբակեանք 158։

[ՊԱՐԱՆՍՄ, ար. հիշված է 1649 թ. ՀԱ 1899, էջ 269 բ «զՊարանսմն» ձևով. հայտնապես վրիպակ է. բայց ինչ է ճիշտ ձևը։]

† ՊԱՐԳԵՒ, ար. < հյ. պարգև բառից. հմմտ. Ընծայ։ Գործածական է նաև այժմ և հատկապես Արևմտահայոց մեջ։

— 1. Պարգև Գնունի, նախարարազն ճգնավոր, որ տեսիլքով իմացավ թե Մեծն Ներսեսը կաթուղիկոս պիտի ընտրվի «353 թ»։ —Մեսր. եր. 15։

— 2. Պարգև իշխան Ամատունի, մին այն նախարարներից, որոնք Մեծն Ներսեսին ուղեկցեցին Կեսարիա օծման գնալու ժամանակ «353 թ»։—Բուզ. Դ. դ։

— 3. Պարգև Ամատունի, որ Շաւարշ Կամսարականի հետ 700 հոգով հարձակվեց Պարսից վրա, ազատելու համար գերի բռնված Խոսրով Գ թագավորին, բայց բռնվելով տիկ հանվեց «389 թ».— Խոր. Գ. ծ.—սեռ. Պարգևայ՝ անդ։

— 4. Պարգև Արծրունի. մին է Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից «452 թ».—Եղիշ. 150. Փարպ. խէ։

— 5. Պարգև եպիսկոպոս Հարքայ, Ներսես կաթուղիկոսի («548—557 թ») և ուրիշ եպիսկոպոսների հետ միասին ստորա-

գրում է այն երկու Թղթերին, որոնք գրվեցին Նեստորականների դեմ։— Գիրք Թղ. ժէ.—ըց. ի Պարգևեայ՝ Գիրք Թղ. ժզ։

† ՊԱՐԳԵՒԻՑԱ, իգ. < հյ. Պարգև անունից՝ -իցա իգականակերտ մասնիկով. գործածական էր Պոլսում, իբրև նորաձևար անուն։

† ՊԱՐԶԻԿ, իգ. < հյ. պարզ բառից, իբրև «պարզասէր աղջիկ». Նորաձևար անուն։

† ՊԱՐԷՏ, ար. < հյ. պարետ «վերակացու, հսկող» բառից։ Մի անգամ ունինք՝

— Պարետ, նահապետ Հայկազանց, հաջորդեց Անուշավանին, Ն. Ք. 1662 Թ. ըստ Չամչ.— Խոր. Ա. ժԹ. Կղկնտ. Ա. ժե (հրատ. Էմինի՝ Փարետ). Մխ. անեց. գ. Մաղ. Թղ. ժԹ. Վրդ. Է. Մխ. այրիվ. 17. Մին. համդ. 9.— Պարետ՝ Յհ. կթղ. ր. Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 47.— Պատեր՝ Վրաց պտմ. Ա. 74.— տես և Ալիշան, Հյստ. 202։

* ՊԱՐԹԱՄԱՍԻՐ, ար. տառադարձված է հուն. Παρθαμάσιρις, լտ. Parthamasire, որ Justi 244ա հանում է իրան. parϑama, պհլ. pahlūm «լավագույն» բառից։

— Պարթամասիր, որդի Բակուրի՝ եղբոր Խոսրով Ա թագավորի Պարթևաց, որի կողմից նշանակվեց թագավոր Հայոց, վտարելով Աշխադարին (109 Թ)։ Տրայիանոս կայսրը արշավեց Հայաստան և երկիրը հռովմեական նահանգ դարձրեց։ Պարթամասիրը սպանվեց պատերազմում (115 Թ).— Գրգչ. Քնն. պատմ. Բ. 253—6, 288. Justi 244ա. ըստ Լէօ Ա. 472—3 նստել է 110—114Թ։

* ՊԱՐԹԱՄԱՍՊԱՏ, ար. տառադարձված է հուն. Παρθαμασπάτης. ըստ Justi 244ա < իրան. parϑama «լավագույն» բառից, իբրև «իշխաններից լավագույնը»։

— Պարթամասպատ, որդի Աշխադարի. Տրայիանոս կայսեր կողմից նշանակվեց թագավոր Պարթևաց. Տրայիանոսի մահից հետո մերժվելով Պարթևներից՝ եղավ թագավոր Հայոց, հաճությամբ Ադրիանոս կայսեր և գահակալեց 118—139 Թ։— Գրգչ. Քնն. պատմ. Բ. 259։

† ՊԱՐԹԵՒ, ար. < ծագում է պարթև ազգի անունից, որ հայերենում դարձել է ածական՝ «բարձրահասակ, հաղթահասակ, հաղթանդամ» իմաստով։ Նորակերտ անուն է, որից և Պարթևեան ազգանունը։ Կա նաև իգ. (Սովետ. Հյստ. 1945 Թ. մրտ. 31, էջ բ)։

ՊԱՐԻՔ, հիշված է անթվական մի արձանագրության մեջ, Աղցադր. հանդ. Գ. 160։

**ՊԱՐԽԱՍ**, *ար. հիշված է մի անգամ* Պարխաս խուպինան *ձևով Արաշ գյուղի անթվական մի արձանագրության մեջ (Բարխուտ. Աղուանից երկ. 282)։ Տես վերը՝* խուբիցան։

† **ՊԱՐԿԵՇՏ**, *ար. < հյ.* պարկեշտ *«համեստ» բառից։ Հիշված է մի անգամ՝*

— Պարկեշտ *երեց, սուրբ մարդ էր. Թաղվեց Բջնիի մատ. գերեզմանը դարձավ ուխտատեղի, որի վրա նախանձելով Իւանէ աթաբեգի կինը, դին հանեց այրեց և մի շուն մորթելով՝ նույն տեղը թաղեց (1225 թ).—Վրդ. ձե. Միխ. աս. (իը)։*

† **ՊԱՐԿԺԱԿ**, *ար. < հյ.* պարկուճ *«կճեպ, կեղև» բառի նվազականից?*

— Պարկճակ, *նշանավոր վարդապետ (ԺԱ դար).—Ուռհ. 179։*

**ՊԱՐՆԷՎԱՏ**, *ար. ծագումն անհայտ. կա մի անգամ՝*

— Պարնէվատ *ոմն, որ շինել է Խիզան քաղաքի բերդից դուրս գտնված Ս. Յարութիւն եկեղեցին.—անթվ. Արձ. տես Նաթանեան, Արտօսր Հյաս. 194։*

† **ՊԱՐՈՅՐ**, *ար. < հյ.* պարոյր *«շրջան, պտույտ» բառից. հին անուն, որ վերակենդանացավ անցյալ դարում։*

— 1. Պարոյր, *առաջին թագավոր Հայկազն. հաջորդեց Սկայորդիին Ն.Ք. 748 թ. (ըստ Չամչ.) միացավ Մարաց Կիաքսար և Բաբելացոց Նաբուպալասար թագավորներին և միասին առին Նինուէն և Ասորեստանցոց պետության վերջ տվին (606 թ)։ Այս օգնության փոխարեն Պարոյրը թագ ստացավ (Ն. Ք. 743 թ)։—Խոր. Ա. իա, իբ. Կղկնտ. Ա. ժե. Ուխտ. Ա. ժթ, իդ. Ցհ. կթղ. բ, գ. Արծր. Ա. դ. Մաղ. թղ. ժթ. Մխ. անեց. գ, դ. Սամ. անեց. 29, 45, 46. Մխ. այրիվ. 18, 53. Շնորհ. վիպ. 142. Մին. համգ. 10. Ջուղ. 18.—սեռ.* Պորուրայ՝ *Ցհ. կթղ. գ. Ասող. Գ. խզ. Մին. համգ. 10.—* Պարոյրայ՝ *Ցհ. կթղ. գ. Ուխտ. Ա. իդ. Կղկնտ. Ա. գ. (հրտր. Շահն. սխալմամբ* Պարոյր). *Մխ. անեց. Ա. գ. Սամ. անեց. 45, 46. Վրդ. է (հրտր. Էմինի՝* Պարոյրոյ). *Ջուղ. 17.—* Պարոյրի՝ *Պտմ. լմբ. 239.— բցռ.* ի Պարոյրէ՝ *Սասն. 18։— Ալիշան՝ Հյստ. 201 և 225 խոսում է Պարոյրի թվականի մասին և հայտնում է թէ անանուն ոմն վարդապետ և հետին ժամանակներից Եղիա Զմիւռնացի Պարոյրին կոչում են ուրիշ անունով Արտաշէս։*

— 2. Պարոյր *, հունական ձևով գրված* Προαιρέσιος = Պրոյերեսիոս *Հայկազն. Փոքր-Հայքից էր, քրիստոնյա ծնողների զավակ, ծն. 276—7 թ. սովորեց Անտիոքում. 308 թվին գնաց Ա-*

թէնք և աշակերտից նշանավոր հռետոր Յուլիանոսին, որին և հաջորդեց: Աղքատ գիտնական էր. իր շուրջը խմբվեց հայ ուսանողություն, որի հոգին ու պահապան հրեշտակը դարձավ: Այնքան առաջ գնաց հռետորական ասպարեզում, որ Հռոմում իր արձանը կանգնեցրին՝ կոչելով նրան «թագավոր ճարտասանության» (Regina rerum Roma regi eloquentiae): Իր աշակերտներից են Ս. Բարսեղ Կեսարացին և Գրիգոր աստուածաբանը: Եվնապիոս հույնը գրել է նրա կենսագրությունը:— Զարբ. Հին դպր. 256—265. Լէօ Ա. 572: (Անունը հունարեն բառ է, որ նշանակում է «նախընտրություն, կանխամտածություն, նպատակ, ժառանգություն, մինչև անգամ՝ փիլիսոփայական վարդապետություն»: Ջունի Ջամչ.: Զարբ. դարձրել է հյ. Պարոյր, իսկ Ալիշան՝ Այրարատ 94 բ Բրոյերես կամ Փառերես: Այս բոլորը կեղծ հարմարանքներ են):—Րաֆֆին գրել է մի փոքր վեպ նրա անունով (Թիֆլիս 1895):

† ՊԱՐՈՆ, ար. < հյ. պարոն բառից, որ եվրոպական փոխառություն է. նախ իշխանական աստիճան էր, ապա եղավ Ռուբինյան արքայորդիների տիտղոս, հետո դարձավ հասարակ պատվանուն, այժմ էլ վերացված է: Սրանից է Պարոնեան ազգանունը: Իբրև անձնանուն ամենահին հիշատակությունը ԺԳ դարից է: Տես նաև Պարոնիկ, Պարոնակ, Պարոնտեր, Պարոնլույս են:

— 1. Պարոն Կեսարացի, որդի Պապանունի, հիշված է 1275 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 872:

— 2. Պարոն Անեցի, որդի Գրիգոր Խուցէսի. մայրն է Շնափոր. կինն է Ուլու. անդրանիկ որդին Դաւիթ. Պարոնի եղբայրն է Ասիլ (№ 1). Նորոգել է Բագնայրի նշանավոր Աւետարանը 1308 թ.— Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 16, Ձեռ. Կարին. 16, Խաղբակեանք 15:

— 3. Պարոն, ամուսին Ղփչախի՝ քրոջ տանուտեր բրուտ Յովհաննէսի, որ Վանում մի Աւետարան գրել տվեց Կարապետ քահանա գրչին, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370:

— 4. Պարոն, որդի տանուտեր Մկրտիչի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1441 թ.-- Ձեռ. Վասպ. 382:

— 5. Պարոն, որդի Քուքի և եղբայր Մկրտիչ կրոնավորի, որ Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք 1446 թ.— Նոտարք 151:

— 6. Պարոն, կինն է Շուքրան. ծնողներն են տանուտեր

Սպաղայի, որ Աղթամարում, Թումայ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1476 թ.— Ձեռ. Վասպ. 480—1։

— Ավելի ուշ հիշատակված են Պարոն 1605 թ. (Դրնդ. 72), 1618 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 125ա), 1622 թ. (անդ. 291բ), 1657 թ. (Տաշեան, Ցուց. 355), 1662 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1929, 13)։ Անթվական են Ձեռ. Նոր-Բայազ. 31բ, Ձեռ. Վեննա. Բ. 726. բայց սրանցից ավելի կարևոր է՝

— 7. Պարոն տաղասաց (Պորգ. 716, ուր Պատարագի Գոհանամքի մոտ մի ձեռ. գտնում է իբրև հեղինակի հիշատակություն «ի Պարոնէ Հայոց»)։

† ՊԱՐՈՆԱԿ, ար. < Պարոն անվան փաղաքշականն է. տես և Պարոնիկ։

— 1. Պարոնակ, եղբայր Վարդանի, որ նրա համար օրինակեց մի Ճաշական, 1359 թ.—Rapport Belgique 107։

— 2. Պարոնակ, տանուտեր Կամախի Կախմխի գյուղի, 1383 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 79ա։

† ՊԱՐՈՆԱՂԱ, ար. < Պարոն անունից+աղա պատվանունով։ Հիշված է 1551 թ. (Արցախ 270), և մի անգամ էլ անթվ. բայց 1437 թվից ուշ մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 378)։

† ՊԱՐՈՆԱՒԱԳ, ար. բարդված Պարոն և աւագ բառերից։

— Պարոնաւագ, հայր Ամիրբէկի, որ Արճէշի Գայթիս գյուղում, Մինաս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 424։

† ՊԱՐՈՆԲԱԲԱ, ար. < Պարոն+թրք. baba «հայր, հայրիկ» բառերից բարդված։ Հիշատակված է մի անգամ 1609 թ. (Bodleian 109)։

† ՊԱՐՈՆԲԷԳ ար. < Պարոն+թրք. beg «իշխան» բառերից բարդված։ Հիշված է մի անգամ 1661 թ. (Ձեռ. Թաւր. 65բ)։

† ՊԱՐՈՆԻԿ, ար. < Պարոն անվան փաղաքշականն է, որ և Պարոնակ, որ տես վերը։ Սրանից է Պարոնիկեան ազգանունը։

— 1. Պարոնիկ, եղբայր Խաչատուր գրչի, որ Լիմ անապատում օրինակեց Ավետարանը 1301 թ.—Ձեռ. Վասպ. 140։

— 2. Պարոնիկ միակեց, սպասավոր՝ Իտալիոյ Փէրուժ (Perugia) քաղաքի հայ եկեղեցու, 1301 թ.— Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 342ա)։

— 3. Պարոնիկ, ազգական Բաւուն միայնակյացի, որ գրել տվեց մի Ավետարան, 1330 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 770։

— 4. Պարոնիկ, որդի Յովհաննէսի. նորընծա սարկավագ էր և հայրը նրա համար Աստուածատուր գրչին գրել տվեց Սաղմոսը, 1488 թ.—Bodleian 16։

— 5. Պարոնիկ, հողեր է նվիրել Արջոյառիճի վանքին.— Անթվ. Արձ. Շիրակ 123։

— Ավելի ուշ հիշված կա Պարոնիկ 1580 թ. (Ձեռ. Վասպ. 32) և ԺԷ դարի կեսին (Դրնգ. 487)։

† ՊԱՐՈՆԼՈՅՍ, ար. < հյ. պարոն+լոյս բառերից, ինչպես կա նաև հակադիր ձևով՝ Լոյսպարոն և կիսարար ձևով Ամիր-Լոյս։

— 1. Պարոնլոյս, մերձավոր Սարգիս աբեղայի, որ Գլաձորում օրինակեց Ոսկեփորիկը, 1317 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 858, Սիսական 133բ։

— 2. Պարընլոս, եղբայր Թանկխաթունի և քեռի Կարապետ գրչի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, 1389 թվին. այս թվին էլ մեռավ Պարոնլոյսը.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 3. Պարոնլոյս մահտեսի, միաբան Ոստանի Պալկի վանից, 1444 թ.— Ձեռ. Նոր-Բայազ. 41բ։

— 4. Պարոնլոյս, կինն է Բաֆուր. ծնողներն են Սարգսի, որ Բաղէշում, Կիրակոս քահանային գրել տվեց մի Աւետարան 1454 թ.— Նոտարք 173։

— 5. Պարոնլուս Նահատակ 1567 թ. տես Լոյսպարոն, ուր ավելացրու. Ձեռ. Հալէպի, Ա. 105բ և Նոտարք 227։

— Պարոնլուս, անթվ. (Ձեռ. Վասպ. 284)։

† ՊԱՐՈՆԽՈՇ, ար. < հյ. պարոն+պրս. خوش xōš «քաղցր, անուշ» բառերից. հիշված է ԺԵ? դարու անթվական մի հիշատակարանում.—Bodleian 32։

† ՊԱՐՈՆՆԱՆ, իգ. < հյ. պարոն (իբրև տիտղոս)+Նան «տատ» բառերից. հիշատակված է 1754 թ. (Արցախ 160) և անթվ. մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 32 ա)։— Համմ. Պարոնպապ։

† ՊԱՐՈՆՇԱՀ, ար. < հյ. պարոն+պրս. شاه šāh «թագավոր» բառերից, ինչպես որ կա նաև սրա հակադիր ձևը՝ Շահպարոն։ Հիշատակված է ԺԳ—ԺԵ դարերում։

— 1. Պարոնշահ, որդի Ղազարի և եղբայր Ստեփաննոս քահանայի, որ Մխիթար վարդապետից գնեց մի Աւետարան, որ նա գրել էր Մեծոփայ վանքում, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 156։

— 2. Պարոնշահ 1313 թ.—տես Լոյս № 1։

— 3. Պարոնշահ, որդի Մարտիրոսի, մայրն է Փոքրտիկին,

եղբայրներն են՝ Թագաւոր և Տնիկ(՞?), հօրեղբայրներն են՝ Յակոբ, Շնոֆոր, Վահրամ և Թումա, կինն է՝ Փոփըխիկ, որդիներն են՝ Թաթուլ, Աւետուոր, Նաթանիէլ, Երանոս և պարոն Վարդ (սրա կինն է Իգդիշ № 1)։ Իր ազգական Սարգիս քահանայի խորհրդով գրել տվեց մի Աւետարան, Բղնունեաց Աղէթ (տեղը անհայտ էր, բայց որոշում է Թաթուլ № 10) գյուղում, 1329 թ.— Ձեռ. Վասպ. 179։—Տես և Թաթուլ № 10։

— 4. Պարոնշահ, պայլ Խոսրովշահի, որ ստացավ Բաբերդում մի հին Աւետարան և նորոգել տվեց 1346 թ.—ՀԱ 1926, էջ 344։

— 5. Պարոնշահ, մայրենի պապ Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բերլին, էջ 4ա։

— 6. Պարոնշահ, հոգևոր հայր Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բերլինի, 4ա։

— 7. Պարոնշահ, հայր Յովհաննէս կրոնավորի Սեբաստացւոյ, որ Խրիմի Սուրխաթ քաղաքում, Ստեփաննոս քահանային գրել տվեց Դաւթի Սահմանաց գիրքը, 1363 թ.— Manus. brit. mus. 248ա։

— 8. Պարընշահ, տանուտէր Բերկրի քաղաքի, 1422 թ.— Ձեռ. Վասպ. 350։

† ՊԱՐՈՆՊԱՊ, ար. < հյ. պարոն+պապ «մեծ հայր» բառերից բարդված. ինչպես կա նույնի իգականը՝ Պարոնմամ։

— 1. Պարոնպապ, հանգուցյալ որդի Ամիրմելիքի՝ ուսուցչի Յովհաննէս քահանայի, որ Թովմա Մեծոփեցի պատմագրի Գորգի մելիք եղբոր որդին էր և ստացավ Մեռելյարույց Աւետարանը՝ Արճէշում, 1445 թ.—Նոտարք 147։

— 2. Պարոնպապ, հայր Շամխաթունի և պապ Դշխուն տիկնոջ, որ Ասպաւերուկ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 132)։

— 3. Պարոնպապ, ամուսին Դշխունի, որ Ասպաւերուկ գյուղում Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.— Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 132)։

† ՊԱՐՈՆՍԵԹ, ար. < հյ. պարոն պատվանունից+Սեթ եբրայական անունից բարդված։

— Պարոնսեթ սարկավագ, եղբայր Ազների, որ գրել տվեց մի Աւետարան, Աշտաաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.— Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 219)։

† ՊԱՐՈՆՎԱՐԴ, *ար. < հյ.* պարոն *և* վարդ *բառերից կազմըված։ Հիշատակված է ԺԵ դարում։*

— Պարոնվարդ, *երկու Կաֆացի հայ, որոնք ստորագրում են Կաֆայեցոց դիմումին՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ (1438 թ). —Գալճեան 300։*

† ՊԱՐՈՆՏԷՐ, *ար. < հյ.* պարոն *և* տէր *բառերից կազմված։ Հիշատակված է մի անգամ ԺԵ դարում և մի անգամ էլ ԺԸ դարում։*

— 1. Պարոնտէր, *արքեպիսկոպոս Խաչենաձորի. Սարգիս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1493 թ.—Արցախ 247։*

— *Մի անգամ ևս հիշված է 1786 թ. (Ձեռ. Վաստ. 262)։*

ՊԱՐԳ, *ար. ծագումն անհայտ։*

— Պարգ, *երեց տղուան, անդամ Աղուէնի ժողովի՝ Վաչագան Գ Թագավորի օրով (Զ դար).—Կղկնտ. Ա. խզ (ըստ հրատ. Էմինի, իսկ Շահն. միացնելով հաջորդ բառի հետ՝ գրում է* Պարմիդե*)։*

* ՊԱՐՍԱՄ, *ար. < ասոր.* Barṣauma *անունից, որ նշանակում է բուն «Որդի պահոց» (> հյ.* ծոմ*)։ Հմմտ. հներից «Պարսամ, որ թարգմանի որդի պահոց» Ցայսմ. փետր. 1։ Բուն հարազատ տառադարձությունն է* Բարծումայ, *ինչպես և կա Բարծումայ ասորի, նեստորական քարոզիչ. բայց գործած է նաև* Բարսումա, *ինչպես ունինք* Բարսումա Ռաստոսոհուն՝ *գերեկից Խոռոհրուտ գյուղի, աղբյուր Խորենացու (Խոր. Բ. կԹ, հ),* Բարսումա Մելիտինեցի, *ճգնավոր, որ և Ս. Բարսամ,* Բարսումա Անտիոքացի, *և վերջապես զուտ հունական ձևի տակ՝* Բարսիմեոս, *ինչպես ունինք* Բարսիմեոս *եպիսկոպոս Եդեսացի, վկա Ցայսմավուրքում՝ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ա. 380 (Հիւբշ. 291)։ Սրանից է Պարսամեան ազգանունը։*

— 1. Պարսամ *(որ հույները Պարտան են կոչել), որդի Միրմանի, ծնվել է Աղվանից երկրի Առուծ բերդում. գնացել է Պոլիս և զինվորական ծառայության մտել. ամուսնացել է Նիկեփոր կայսեր քրոջ՝ Թէոդոսիայի հետ. գահակից է եղել Նիկեփորի որդուն և նրա մահվանից հետո, ինքնագլուխ իշխել է մինչև իր մահը (813 թ)։ Սրա որդին է Լևոն Ե Հայկազն կայսր Հունաց.— Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 201—2 (կեղծիք. Լևոնի հայրն է Վարդ, որ վերածել են Պարտանի և ապա Պարսամի)։*

— 2. Պարսամա, *որդի Փիլատոս բռնավորի. հորը ձեռքով նշա-*

նակվեց Եդեսիոյ դուքս «1083 թ». սպանեց Պառակամանոսին և նրա փոխարեն նստավ դուքս Անտիոքի 1086 թ. երբ Մելիքշահի զորավար Պուզան ամիրան պաշարեց Եդեսիան, սա փախչելով ժողովրդական խլրտումից, բերդից ցած նետվեց, որպեսզի գնա Պուզանի մոտ. բայց ողնաշարը ջարդվելով մեռավ 1087 թ. — Պարսամա (ուղ. հլ.)՝ Ուռհ. 233—4.—սեռ. Պարսամայ՝ Ուռհ. 233.— Պարսամայի՝ Ուռհ. 236. (Չամչ. Գ. 8, 12 գրում է Վարսամ).

— 3. Պարսիմո կամ Պարսամա (գրված է այս երկու ձևերով), որդի Հասանի. Օշական գյուղի ռայիսն էր և թե իր, թե եղբորը՝ Թուրսի և թե քրոջը՝ Սեդայի հիշատակին հողեր է նվիրել Արջոյառիճին 1207 թ. և Բագնայրին 1210 թ.— Արձ. Շիրակ 117, 121.

— 4. Պարսամ 1271 թ. տես Մանսուր.

— 5. Պարսեմա, իր որդի Ճաճնայի, մորն ու քույրերի հետ միասին իրենց այգին ծախել են Պետեան անուն անձին Բանաքեռում, 3200 սպիտակով, 1306 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 159, Այրարատ 298, Բանաս. 1903, 32.

— 6. Պարսամ մելիք, Վանում Ս. Թաչ վանքի Լուսաւորչի սեղանն է նորոգել 1321 թ.—Արձ. Ազգագր. հանդ. ԻԱ, 87.

— 7. Պարսամ աբեղա, Աղբրափոսում մի այգի է տնկել և նվիրել Սպիտակաւոր Ս. Աստուածածնի վանքին, 1331 թ.— Թաղբակեանք 209, Սիսական 138, Արրա. 1889, 56.

— 8. Պարսամ արքեպիսկոպոս, որի գերեզմանի վրա մի խաչքար է կանգնեցրել իր եղբորորդի Մաղաքիա եպիսկոպոսը՝ Գանձակի Փիփ գյուղում, 1457 թ.— Արցախ 301 և 311 > Ազգագր. հանդ. Ե. 311.

— 9. Պարսամ որդի Գրիգորի (1458 թ). տես Փաշամելէք.

— 10. Պարսամ, եղբորորդի Զուլալ տիկնոջ, որ Աղթամարում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.— Ջեռ. Վասպ. 459.

— 11. Պարսամ, ծաղկեց այն Աւետարանը, որ գրել էր Յակոբ աբեղան Աղթամարում, խոջա Միրիջանի համար, 1493 թ.—Ջեռ. Վասպ. 521.—Թվի թե նույն է՝

— 12. Պարսամ քահանա, գրեց, ծաղկեց և կազմեց մի Աւետարան՝ Թարէզ տիկնոջ համար 1498 թ.—Ջեռ. Վասպ. 526.

— 13. Պարսամ եպիսկոպոս Տրապիզոնցի, որդի Աստուածատուրի, առաջնորդ Իվովի, հաջորդեց Գրիգոր Վարագեցուն՝

1578 թ. տաղասաց է. ունի «Տաղ վասն ակայքի», հրատ. հանդերձ ուսումնասիրությամբ ՀԱ 1930, 590—596, Կամենից 136, Ազգապ. 2375։

— Ավելի ուշ Պարսամ անունը հիշված է 1509 թ. (Ձեռ. Վասպ. 638), 1534 թ. (անդ 649), 1552 թ. (անդ 654), 1565 թ. (անդ 663), 1568 թ. (անդ 668), 1608 թ. (Manus. brit. mus. 44ա), 1647 թ. (Ձեռ. Վասպ. 601), 1680 թ. (անդ 569), գրված է Բարսամ 1707 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 48ա)։

Պարտան տես Պարսամ։

ՊԱՐՏՈՒԿ, ար. ծագումը ինձ անհայտ. հիշված է մի անգամ ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7բ)։

* ՊԵԼՃ, ար. < արաբ. بلج Balǰ (նոր հնչումով Belǰ) անունից, որ բուն նշանակում է «ժպտադեմ, ուրախերես մարդ» (Կամուս, Թրք. թրգմ. Ա. 376)։ Տես և Ապուպելճ, որ այս անունից է կազմված։ Երկուսի մեջ էլ նկատելի է պ=b և ճ=ǰ տառադարձությունը Թ դարում, այն էլ Վասպուրականում։

— Պելճ Արծրունի, մասնակցեց Գուրգէն Արծրունու պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ»։—Արծր. Գ. գ։

Պեխտ տես Բեխդ։

ՊԵԿՆԻԿ, ար. ծագումը ինձ անհայտ։ Հիշված է երիտասարդ ոմն սարկավագ այս անունով՝ Գետաշենի Ավետարանում, 1325—83 թվերին (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44)։

* ՊԵՀՐՈԶ, ար. < պրս. بهروز beh-rōz «լավ-օր» բառերից (իբրև մաղթանք լավ օրեր տեսնելու)։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1684 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 91)։

* ՊԵՂԻԳԻԱ, իգ. < հուն. Πελαγία անունից (որից լտ. Pelagia, ռուս. Пелагия). ծագում է πελάγιος «ծովային» բառից և նշանակում է «ծովային ծիրանի խեցեմորթը»։ Այս անունով հայտնի է Պեղագիա (հյ. Պեղիգիա) վկայուհին, որի վարքը անցել է Յայսմ. և Վրք. հրց։— Գործածվում էր անցյալ դարում Պոլսում, Պեղիգ կամ Պեղիկ ձևով։

* ՊԵՄՈՒՆԴ, ար. < ֆրանս. Beaumont անունից, որ նաև տեղանուն է Ֆրանսիայում և նշանակում է «գեղեցիկ սար»։ Փոխառյալ լինելով Կիլիկեան շրջանում, գրված է արևմտյան տառադարձությամբ (փխ. Բեմունտ)։

— Պեմունդ, որդի Ջիւան կամ Կոստանդին Դ (№ 137) թագավորի Կիլիկիոյ. Լևոն Զ-ի եղբայրն է. ամուսնացավ Ռեմիի

*հետ, որ Կոստանդին Դ թագավորի քույրն է։— Սիսուան, էջ 413 և 227 բ։*

**ՊԵՆԵՂԱՍ**, *ար. ծագումն անհայտ։*

— პენეღას *կաթողիկոս Աղուանից 974—992 թ. Դարգմանի եպիսկոպոսն էր և հաջորդեց Դավիթ Է (№ 59) կաթողիկոսին.— Կղկնտ. Գ. իգ.— (հրտր. Էմինի ունի Պետրոս, ինչպես գիտեն նաև Կիր. ը, Մխ. այրիվ. 24, Հայապ. 385 (տես հատկապես Բարխուտ. Պատմ. Աղուանից 173)։*

* **ՊԵՇԳԷՆ**, *ար.* <*պրս.* Pēšgīn *անունից, որ ծագում է* [illegible] pīša *«արվեստ» բառից և հիշատակված է 1066 թվից (այսպես է մեկնում* Justi *251 բ՝ սրբագրելով հյ.* პელგინე *սխալ ընթերցվածը)։ Հյ. ունինք նաև* ბიჟგენ *և* ბიშქენ *ձևերը, որոնք չեն կարող բաժանվել սրանից։ Հմմտ. դարձյալ* თეშქენ, *որ տես վերը։*

— 1. პეშქენ *(սխալ գրված նաև* პელგენ*) Օրբելեան, որդի Բուրթել սպարապետի Հայոց և Վրաց, իշխանի տանն Սիսական, եղբայր Իվանէի. հիշված է 1334—44 թվերին.— Ձեռ. Դաղեան, Բ. 30բ, Խաղբակեանք 202, Սիսական 47, 125 բ, 202, Ձեռ. Բեռլինի 26բ, Սմբատեանց՝ Գեղարքունի 488 (1344 թվին)։*

— 2. პეშგინე *Օրբելեան, որդի Սմբատի, թոռն Բուրթելի, աներ Վրաց Ալեքսանդր Ա թագավորի, որ Սիւնեաց նահանգն էլ գրավելով՝ Պեշգինէի գերիշխանն եղավ. բայց վախենալով որ հայերը կբաժանվեն Վրաց իշխանությունից, թունավորեց Պեշգինէին և այսպեսով Օրբելեանց իշխանության վերջ տվեց «1438 թ»։—Զամչ. Գ. 470 (*პელგინე *ձևով), Մեծոփ. 117 (սեռ.* პეზგინი, *այլ ձեռ.* პეშგინი*), Սիսական 96, Հայապ. 558, Ազգապ. 2067, Նոտարք 116 (գրված է Բէշքէն և կոչված է իշխանաց իշխան Լոռիի)։*

— 3. ბიშქენ, *որդի Աւագ Եղփարգեցու և եղբայր Մանուէլ արքեպիսկոպոսի (ԺԵ դար).—Այրարատ 198։*

**ՊԵՏԱՆ**, *ար. հիշված է կաթոլիկ մի հայ 1863 թ. (Ազգապ. 4184), որից էլ կա* პეტანეან *ազգանունը 1766 թ. (Ազգ. մատ. ԾԵ 151)։*

**ՊԵՏԱՍԻՈՍ**, *ար. անշուշտ ձևափոխված բառ է, որովհետև կա հուն.* πετάσιον *«փոքրիկ լայնեզր գլխարկ մարդկանց, նաև Հերմէս աստուծու համար»։ Այս անունով կա միայն՝*

— პეტასიონ *արքայ հայոց, որին Ոլիմպիոդորոս փիլիսոփան նվիրել է մոգական արվեստի վրա մի գիրք (Դ դարի վեր-*

ջիրը).— Դուրեան, Ազգ. պատմ. 280 (կարծում է թէ Պապ Թագավորն է)։

† ՊԵՏԵՒԱՆ, ար. < հյ. ժղ. պիտեան (որ և պիտու, պիտուան) բառից, որ նշ. «պիտանի, պէտքի եկող»։

— Պետեան (կամ Պետուան), կին է Աւագ տիկին, որդիքն են Տողաւլա և ուրիշներ, որոնք չեն հիշված. մի խաչքար են կանգնեցրել Բանաքեռում 1305 թ. և մի այգի գնել Պարսեմ անուն անձից 3200 սպիտակով, նույն Բանաքեռում 1306 թ.— Շահխաթ. 153, 159, Այրարատ 297—8 (գրում է Պետեին), Բանաս. 1903, 32, Սմբատեանց՝ Գեղարքունիք 207։

* ՊԵՏՈՒԿ, ար. երևի Պետրոս անվան փաղաքշականն է. այս ձևով ունինք միայն՝

— Պետուկ Մշեցի, հայր, Հռոմի հայոց տան միաբաններից. հիշված է 1242 թ.— Թորոս աղբ. Բ. 441։

* ՊԵՏՐՈՍ, ար. < հուն. Πέτρος անունից, որ նշանակում է բուն «քար». հմմտ. Մատթ. ժզ. 18. «Երանի՜ քեզ, Սիմոն, որդի Յովնանու... զի դու ես վէմ և ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ»։ Մինչև անգամ Պետրոս անվան փոխարեն գրված է Վէմ. օր. Զի՞նչ ասաց Վէմն. ի Վիմէն զայս մի՞չ լուար (փխ. ասելու Պետրոս, ի Պետրոսէ) Արար. 1902, էջ 959—960 (Դաւիթ Հարքացու գրածից է)։ Բառիս այլ ձևերն են լտ. Petrus, գերմ. Petrus, Peter, ֆրանս. Pierre, անգլ. Peter, իտալ. Pietro, ռուս. Пётр, փղքշ. Петруша են։ Այս անունով հայտնի են Պետրոս առաքյալը, Պետրոս Աղեքսանդրացի հայրապետը, և բազմաթիվ թագավորներ Արագոնի, Պորտուգալի, Ռուսաստանի են։ Իբրև անձնանվան օրինակ հիշված է Թր.քեր. 17, Դաւ.քեր. 88, Անան.քեր. 127, Սիւն.քեր. 206, 215, 218, Տաթև. ոսկիփ. 85, 99, 459, 472, հարց. 3, 4, 74, 86, 88, 107, 136, 174, 176, 236, 312, 487, 533 և սեռ. Պետրոսի ձևով՝ Տաթև. հարց. 74, 176։— Սովորական գործածություն ունի այժմ էլ, փաղաքշական կամ կրճատ ձևերն են Պետիկ, Պետօ։ Շատ հնից ունինք Պետուկ, որ տես առանձին։ Պետիկ ձևի հնագույն հիշատակությունները են 1616 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 27), Պէտիկ 1638 (Դրնդ. 589), 1668 թ. (Թորոս աղբ. Բ. 440), կան նաև Պետրիկ անթվ. (Ձեռ. Հալէպի, Ա. 289բ), Պետոր 1666 թ. (Հայապ. 550), Պետրոսջան՝ ժէ դար (Ձեռ. էջմ. Գև. № 613)։

— 1. Պետրոս Երկաթի, Սիւնեցի ուրացյալ երեց, կուսա-

*կից և գործիք Վասակի, հակառակորդ ուխտապահների.— Եղիշ. 71, Փարպ. լզ։*

— 2. Պետրոս *Ա. կաթողիկոս Աղուանից. նստել է Աբաս (551—595) կաթողիկոսից առաջ և չէ ընդունել Քաղկեդոնի ժողովը. ուրեմն պիտի դրվի 451—551 թվերի միջև (տես և* Գրիգոր *№ 10).—Տաշեան, Ցուց. 113բ։*

— 3. Պետրոս *եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Մակարի (Զ դար). Դուինի «554 թվի» եկեղեցական ժողովի գլխավոր անդամներից էր։ Տեսնելով Հայոց կաթողիկոսության պառակտված վիճակը, կարգադրեց որ Սիւնիք Աղուաններից ստանան միւռոնը և ձեռնադրությունը։ Գրել է Գովեստ Աստուածածնի, Ճառ ի ծնունդն Քրիստոսի և ի կոյս Մարիամ եւն։ Ունի և պատմական մի գրվածք և Գովեստ Բաբիկ Սիւնւոյ, որոնք կորել են (Զարբ. Հին դպր. 409—413)։ Իր գործերի հավաքածոն հրատարակեց Գ. Տէր-Մկրտչեան, Վղրշպտ. 1902 (էջք 42), ուր հեղինակի անունը հիշված է հետևյալ տեղերում.—*Պետրոս*՝ էջ 41, 42.—սեռ.* Պետրոսի*՝ էջ 11, 22, 39, 42.—ուրիշ աղբյուրներից ունինք՝* Պետրոս՝ *Գիրք Թղ. ժէ, ժը. Ասող. Բ. բ. Վրդ. լ. Օրբ. թ, ժե, իա, իբ, իե, կը, հա. Օրբ. հկճռ. ժբ.—* Պետրոսի՝ *Ուխտ. Բ. կդ. Գիրք Թղ. ժէ. Կղկնտ. Բ. խը. Օրբ. ա, ը, թ, ժա, իա, իե. Վրդ. լ—բց.* ի Պետրոսէ՝ *Գիրք Թղ. ժզ, ժէ* bis, *ծէ։—Պետրոսի նորահայտ գործերից են՝ Յաղագս անմահութեան և մահկանացութեան մարդոյ ի գրոց Նիւսացւոյն (Ձեռ. Վենետ. Բ. 159) և Հարցմունք (Թվով 20) յաղագս մարմնաւորութեան տեառն զանազանք, Վաչագանի Աղուանից իշխանի՝ ընդ Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի և իմաստասիրի (Ձեռ. Վենետ. Բ. 284—5)։—Վրաց աղբ. Ա. 40, 79։—Ասված է Օրբ. իե թե Կիւրիոն վրաց կաթողիկոսը սպանել է Պետրոսին իր երկու սարկավագներով միասին հանդրաց լեռան մեջ։ Ըստ Ակինեան, Կիւրիոն կթղ. էջ 267—272 շփոթված է Պետրոս եպս. Գայլի հետ, որ վրացի է և այսպես է կոչված իր համարձակախոսության պատճառով։ Պատգամավոր գնաց Աբրահամ կաթողիկոսից («607—615 թ») Վրաց Կիւրիոն կաթողիկոսի մոտ (Կիր. 26)։ Հմմտ. նաև Վրաց աղբ. Ա. 115՝ Պետրոս Թափինչի մասին։*

— 4. Պետրոս, *եղբայրն է Հունաց Մօրիկ կայսեր. Պրիսկոսի փոխարեն զորավար ընտրվեց Ավարների դեմ 594—600 թ. սպանվեց Փոկասի ձեռքով Պոլսում 602 թ.— Տէր Սահակեան, Հայ Կայսերք, Ա. 303—4։*

— 5. Պետրոս, *որդի Հունաց Մօրիկ կայսեր. սպանվեց հօրը հետ Փոկասի ձեռքով 602 թ.— Տէր Սահակեան, Հայ կայսերք Ա. 305։*

— 6. Պետրոս *վանական Տկռաբերդի (706 թ).—Կղկնտ. Գ. ը։*

— 7. Պետրոս *քահանա աղուան, որ նստում էր Երուսաղէմի Պանդաւանքում (Ը դար).— Կղկնտ. Բ. ծը (հրտր. Շահն. չունի)։*

— 8. Պետրոս *երեց, հիշվում է իբրև վկա Տաթևի 881 թվի կալվածագրում.— Օրբ. լթ։*

— 9. Պետրոս *վանական Կոմախեղդի վանքի. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը։— Անան. ապստ. 134 բ։*

— 10. Պետրոս *եպիսկոպոս Գարդմանի. ձեռնադրվել էր Աղվանից Գագիկ կաթուղիկոսի ձեռքով. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը։— Անան. ապստ. 134ա։*

— 11. Պետրոս, *դրան քահանա, անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը.— Անան. ապստ. 134բ։*

— 12. Պետրոս, *գրիչ. հայր Կիրակոսի հրամանով օրինակեց Տարօնում Գր. Նիւսացու Մեկնութիւն Երգ երգոցի, 973 թ.— Ճողակաթ 189, Ջարբ. Թրգմ. 370։*

— 13. Պետրոս *Բ. կաթուղիկոս Աղուանից 974—992 թ. տես* Պետեղաս։

— 14. Պետրոս, *անծանոթ եպիսկոպոս, որ հիշատակվում է Գր. Նարեկացու Կճաւի Թղթում իբրև մեկը, որ թղթեր է գրել Քաղկեդոնականների դեմ.—տես.* Պետրոսի՝ *Գիրք Թղ. ղը։*

— 15. Պետրոս *վանահայր Խլաձորի վանքի (Դերջանում). հաջորդեց Սիմոնին. ծերության ժամանակ աչքերը վատելով՝ պաշտոնը հանձնեցին Բարսեղին (№ 8) (Ժ դար).— Ասող. Գ. է։*

— 16. Պետրոս *վանական և «հաւատոյ մեկնիչ գրոց սրբոց». Անանիա Նարեկացու հետ նստում էին Անտաք վանքում, ապա Խաւարաձոր և ապա եկան Նարեկայ վանքը (Ժ դար)։— Ասող. Գ. է. Զամչ. Բ. 824, Այրարատ 52։*

— 16 բ. Պետրոս *վարդապետ, որ վեճ է ունեցել Անանիա Նարեկացու, Սամուէլ Կամրջաձորեցու և ուրիշների հետ՝ Առաջաւորաց պահոց մասին (Ժ դար)։— Զամչ. Ա. 626։*

— 17. Պետրոս ազգական Մակար Հայկազնի, միասին ուխտի գնացին Երուսաղէմ 1000 թ.— Զամչ. Բ. 859։

— 18. Պետրոս Գետադարձ, կաթուղիկոս Հայոց «1019—1058 թ». Խաչիկ կաթուղիկոսի եղբայրն էր և Անանիա Մոկացու քեռորդին։ Ուսումը ստացել է Տրապիզոնի վանքում։ Ծերության պատճառով Սարգիս կաթուղիկոսը հրաժարվելով աթոռից՝ Պետրոսին ձեռնադրեց իրեն փոխանորդ և հաջորդ։ Գիտուն, հեղինակավոր, բայց արծաթասեր մարդ էր։ «1023 թ.» հունվարին ընդ առաջ գնաց հունաց Վասիլ կայսեր և Ճորոխ գետի վրա (ըստ Ազգապ. 1202 արդի Մաչքա) ջրօրհնեքի տոնը կատարեց, որի ժամանակ իբր թե «գետի ընթացքը դադարեցնելով» ստացավ Գետադարձ կոչումը։ Կարծվում է թե այս միջոցին Պետրոսը խոստացավ Անին կայսեր հանձնել, որի համար էլ Յովհաննէս-Սմբատ թագավորը և իշխանները թշնամացան Պետրոսի հետ և նա գնաց Սեբաստիա, ուր մնաց Սենեքերիմ թագավորի մոտ («1023—1026 թ»)։ Սենեքերիմի մահից հետո եկավ Անի, ուր մնաց «1026—1033 թ», ապա գնաց Վասպուրականի Ձորոյ վանքը «1033—1037 թ», որտեղից վերադառնալիս թագավորի հրամանով կալանավորվեց և բանտարկվեց Բջնիում «1037 թ»։ Նրա տեղ կաթուղիկոս դրվեց Դիոսկորոս եպիսկոպոսը («1037—39 թ»), ուսումնական և ճարտարախոս անձ, որ իր խստության պատճառով գահընկեց լինելով, Պետրոսը նորից գահ բարձրացավ «1039 թ»։ Անիի վաճառման և Գագիկ Բ թագավորի գահընկեցության մեջ դավաճանական դեր կատարեց Պետրոսը, որ թեև սրա համար կայսրից մեծամեծ ընծաներ ստացավ, բայց երկար չվայելեց։ Անիի հույն իշխանը քշեց նրան Արծն «1046 թ», այնտեղից էլ կալանավորվեց և տարվեց Պոլիս «1047 թ», ուր մնաց 4 տարի, մինչև «1051 թ»։ Ատոմ Արծրունու երաշխավորությամբ ազատվեց և գնաց Սեբաստիա, ուր և մեռավ «1058 թ»։ Գրել է տվել մի Աւետարան, Յուսիկ քահանային 1045 թ. (Շողակաթ 192) և մի Ճառընտիր Յովհաննու Ոսկեբերանի՝ Գէորգ (№ 36) գրչին 1046 թ. (անդ)։ Իր գործերը տես Տաշեան, Ցուց. 1143ա, Զարբ. Հին դպր. 587—8։ Իր հորինած շարականների մասին տես Ամատունի, Պարականոն շար. էջ 64—65 և 176։ Իր գերեզմանը ցույց են տալիս Սեբաստիայում (տես Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. էջ 48) և Վարագայ վանքում (Սրուանձտեանց՝ Հնոց և Նորոց 14), Սարգիսեան՝ Տեղագր. 256 և Ազգագր. հանդ. ԻԱ 62 (կեղծիք)։ Իր մի արձանագրությունը 1031 թ. տես Այրարատ

271, 1036 թ. (Շիրակ 84).—Մագ. թղ. ա, բ, ե, է, ը, կէ. Լաստ. բ, ժ, ժղ. Պարգ. 632? Շար. (սկիզբը հիշվում է հեղինակների թվում), Յայսմ. յնվ. 6, մրտ. 2, յուլ. 30. Մխ. անեց դ. Մխ. այրիվ. 21, 73. Օրբ. ժժ. 12, 13. Սամ. անեց. 105—7, 112—2. Ուռհ. 10, 50, 51, 67, 75—77, 86, 94, 104—6, 127, 137, 153—4. Միխ. աս. իթ (=իը). Գանձ. վր. ժէ. Լմբ. ճառ. 535. Կիր. 50—53, 61. Վրդ. ծբ, ծգ, ծե. Վրդ. աշխ. 514. Սմբ. պատմ. 47, 48, 53, 57, 62, 67, 71. Օրբ. հա. Տաթև. հարց. 637. Առաք. պատմ. 480—481. Մխն. հավք. 115, 118—9.—սեռ. Պետրոսի՝ Մագ. թղ. դ—գ, ը—ժ. Լաստ. բ, ժդ. Յայսմ. յնվ. 6, յուլ. 30. Վրք. շնորհ. 12, 16. Ուռհ. 50, 64, 76, 77, 102, 104—6, 137, 210, 215, 221, 241. Կիր. 51, 53, 70. Վրդ. ծգ, կ, կբ, հ. Տարօն. Բ. § 14. Սամ. անեց. 108, 112. Մխ. այրիվ. 74. Օրբ. ժժ. 13. Սմբ. պատմ. 47, 75. Առաք. պատմ. 481.— տուն Պետրոսեան՝ Շնորհ. վիպ. 1189.— բց. ի Պետրոսէ՝ Մխ. այրիվ. 75.— Ջարբ. Թրգմ. 159, 599, 604. Ալիշան, Յուշիկք Ա. 106—113։ Մի փոքր մենագրութիւն նրա մասին ունի Կ. Կոստանեան, «Տէր Պետրոս Ա. Գետադարձ», Վղրշպտ. 1897։—Ազգապ. 1189—1254։

— 19. Պետրոս եպիսկոպոս Իսլանդիոյ. իր ընկերակից Աբրահամ և Ստեփաննոս եպիսկոպոսների հետ գնաց Իսլանդիա և սկսեց քարոզել հայոց դավանանքը։ Իրենց պատվերները նվազ խիստ էին քան Isleiv եպիսկոպոսինը (1056—1080), ուստի շատեր ընդունեցին նրանց, մինչև որ Adalbert արքեպիսկոպոսը հրաման ուղարկեց և արգիլեց նրանց սրբազնագործել (Nansen, L'Arménie 305)։

— 20. Պետրոս, քեռորդի Գող Վասիլ իշխանի. նրա հետ միացած՝ ջարդեց թուրքերին «1108 թ».— Ուռհ. 307։

— 21. Պետրոս վարդապետ Մաշկևորցի. միաբան Մաշկևոր վանքի. հիշված է ԺԲ դարի առաջին քառորդին.— Ջեռ. Վենետ. Բ. 156, Սիսուան 408ա։

— 22. Պետրոս որդի Խոնթկայ (կամ Խոնդկայ), ճգնավոր վարդապետ Ազուանքում, աշակերտ Յովհաննէս Սարկաւագ վարդապետի.— Վրդ. հ. Մխ. այրիվ. 78 (դնում է 1131—41 թվերին)։

— 23. Պետրոս քահանա, կանգնեցրել է մի խաչքար Մշոյ Առաքելոց վանքում 1123 թ. և 1141 թ.—Սարգիսեան, Տեղագր. էջ 232։

— 24. Պետրոս վանահայր Հոռոմայրի (1160-ական թվերին).— Վրդ. հե։

— 25. Պետրոս, եպիսկոպոս Իսաւրիոյ. ժամանակցել հայհունական կրոնական վեճերին Ներսէս Շնորհալու ժամանակ 1170 թ.— Ազգապ. 1423։

— 26. Պետրոս երեց, իր եղբորորդիների (Յուսիկի և Սիմէոնի) հետ միասին Հոռոմոսի վանքին են նվիրել Փարըլում ունեցած իրենց մի այգին 1174 թ.— Շիրակ 21։

— 27. Պետրոս ականատես վարդապետ, որի գերեզմանը գտնվում է Արագածոտն գավառի Հոշկայ վանքում, ըստ Վրդն. աշխ. 506 (Այրարատ 145)։ Իրոք որ սրա հսկայական խաչքարը գտնվում է Հոշկից Բիւրական տանող ճանապարհի վրա, որի արձանագրությունը 1175 թվից՝ տես ZAPh 2, 44 և Բանաս. 1903, էջ 28։

— 28. Պետրոս վարդապետ Հաղբատեցի, միաբան Հաղբատի վանքի և ուսուցիչ Դաւիթ վրդ. Քոբայրեցու, որ այս Պետրոսի հորդորանքով գրեց Եսայեայ մեկնությունը, շուրջ 1170 թ. (Ոսկ. հս. յոշ. էջ ժե, Ակինեան՝ Մատեն. հետազ. Ա. 45, 50)։ Մին է այն «հիւսիսայիններից», որոնք Գրիգոր Դ Տղային գրեցին հակառակ միության խնդրին «1178 թ».— Շնորհ. Թղ. 308, Զարբ. Թրգմ. 448, Հայապ. 383։

— 29. Պետրոս Կեչառեցի, վանահայր Կեչառու վանքի. իր եղբայրն է Տէր Յովսէփ, հիշված են Գրիգոր Տղայի և Աղուանից Ստեփաննոս Գ կաթուղիկոսի օրով, ուրեմն 1173—93 թվերի շրջանում.— Արձ. Այրարատ 261—2։ (Արձանագրությունը թվական չունի. և Ալիշանը իր կողմից Գրիգորին համարում է Գրիգոր Տղան, և Ստեփաննոսին էլ Ստեփաննոս Գ կաթուղիկոս Աղուանից, որով թվականը լինում է 1173—93 շրջանում։ Բայց Սմբատեանցի մոտ (Գեղարքունի 351) թվականը կա, որ է ՇԿԳ =1114։ Այս դեպքում Գրիգորը դառնում է Գրիգոր Գ (1113—66) և Ստեփաննոսը դառնում է Ստեփաննոս Բ (1129—1131), որով Պետրոսն էլ կընկնի ճիշտ այս վերջին թվերին։ Բայց Պետրոսը հիշված է նաև 1184 թ. կամ քիչ առաջ, երբ նորոգել է Կեչառուի վանքը (Այրարատ 264—6, Հայապ. 399, Տաթև 1927, 185)։ Արձանագրության մեջ հիշված է նաև Վրաց Գէորգէ թագավորը։

— 30. Պետրոս միաբան, ծաղկող. իր օգնական Գրիգորի հետ միասին ծաղկեցին մի ընդարձակ Տօնական, որ Ստեփաննոս գրիչը օրինակել էր Տիւրիկի Նեղկուկ գյուղում, ստացող Կոստանդինի և Ղուկասի համար, 1194 թ.— Manus. bibl. nat. էջ 54, Ձեռ. Վենետ. Բ. 511։

— 31. Պետոս (*կամ Պետրոս*) *վանահայր Հոռոմոսի վանքի, հիշված 1195 թ.— Արձ. Շիրակ 22։*

— 32. Պետրոս, *«արքանեակ» հայր Գրիգորի, որի օգնությամբ Դավիթ Կիւրիկեանը շինեց Անապատի եկեղեցին 1198 թ.— Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 168 (Արձ.)։*

— 33. Պետրոս, *ուսուցիչ Յակոբ գրչի, որ օրինակեց մի Տօնական և Յայսմաւուրք, Ս. Սարգիս վանքի համար, ԺԲ դար.* — Manus. bibl. nat. *էջ 54։*

— 34. Պետրոս *վանահայր Հառիճի վանքի, հիշված 1191—1214 թ.— Արձ. Շիրակ 158—9, 160։*

— 35. Պետրոս, *եղբայր Միխէոնի, օրինակեց Ս. Եփրեմի ճառերը Ակների վանքում 1215 թ.—Սիսուան 154ա։*

— 36. Պետրոս *եպիսկոպոս Ածոպոյ վանքի (Շահապոնք). սրա մօտ Ստեփաննոս Դ եպիսկոպոս Սիւնեաց (1168—1216) գրավ էր դրել Տաթեի ականակուռ խաչը.— Օրբ. կգ։*

— 37. Պետրոս, *հայր Հասանի, որ իր հոր հիշատակին շինել է Խաթրավանքի կամարը 1215 թ.— Արցախ 194։*

— 38. Պետրոս *գրիչ. հրամանաւ Ականց կամ Ակների անապատի Թորոս վանահոր օրինակեց Սեբերիանոսի ճառերը՝ 1215 թ.— Շողակաթ 199, Ձեռ. Կարին. 76, Զարբ. Թրգմ. 688։ (Ըստ Բանասէր 1901, 42 օրինակել է Յաճախապատումը, որ սխալ պետք է լինի)։*

— 39. Պետրոս, *երիտասարդ ընմական քահանա, եղբօրորդի Թորոս Գորգացի միայնակյացի, որ Դրազարկի վանքում գրել տվեց մի Աւետարան և մեռնելու ժամանակ նրան կտակեց, 1217 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 601. Սիսուան 233ա։*

— 40. Պետրոս *քահանա Սկեռացի, միաբան Սկեռայ վանքի. ունէր երկու եղբայր՝ Իգնատիոս քահանա և Եսայի սարկավագ, որոնք մեռել էին արդեն 1205 թվին։ Ունէր նաև մի հորեղբայր՝ Յովհաննէս անուն, որ նրանց բոլորին «սնոյց և ուսոյց»։ Իր ուսուցիչն էր Յովհաննէս Տիկնազգի, որ մեռավ 1205 թ։ Այս թվին Պետրոս քահանան Սկեռայ վանքում արտագրել է իր երկու հանգուցյալ եղբայրների հիշատակին՝ «Գիրք մեկնութեան թղթոց», օգնությամբ իր մյուս հորեղբոր՝ Խաչատուրի, որ ներկ էր պատրաստում և թուղթ էր կոկում։ Այս Պետրոս քահանայի խնդրանոք է, որ Գրիգոր Սկեռացին (№ 249) գրեց «Աղօթք առ Ս. Աստուածածինն» (շուրջ 1220 թ), որից մի*

*կարճ հատված մեջ է բերում Սիսուան՝ էջ 100.— Սիսուան 101, Զարբ. Հին դպր. 718, Տաթև 1927, 188։*

— 41. **Պետրոս** *երեց, որդի Եղիշէ քահանայի. գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Հաղբպետ քահանայի համար, Նիկոպոլսի Խաւմ քաղաքում, 1223 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 422։*

— 42. **Պետրոս**, *առաջնորդ Կեչառուաց՝ 1223 թ.— Այրարատ 26։*

— 43. **Պետրոս**, *միաբան Կապոսի Ս. Լուսաւորիչ անապատի. յիշված է 1224 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 34։—Նույն է և՝*

— 44. **Պետրոս** *հայր Ս. Լուսաւորիչ անապատի՝ 1224 թ.— Ալթան. յոջ. է, Զարբ. Թրգմ. 729։*

— 45. **Պետրոս**, *իր Հայրապետ, Վարդան և Յոհան եղբայրների հետ միասին մի խաչ են կանգնեցրել իրենց մոր հոգուն, Խաչենի Խանձք գյուղում, 1230 թ.— Արցախ 159։*

— 46. **Պետրոս** *վանահայր Կեչառու վանից, 1234 թ.—Այրարատ 262 (տարբեր է նախորդ № 42 Պետրոսից)։*

— 47. **Պետրոս** *վարդապետ, սպասավոր Հաղբատի, ստացող և կազմարար. Յովհաննէս գրչին գրել տվեց Դաւիթ Անյաղթի Սահմանաց գիրքը՝ 1243 թ. (Ձեռ. Էջմ. № 1890=1848).— Մանանդեան, Յունաբ. դպր. 25, Գ. արք. Յովս. Մի էջ հայ արուեստի, էջ 5, Նիւթեր և ուս. Ա. 68 (համարում է նույն ընդ № 28 Պետրոս վրդ. Հաղբատի, որ գրել է Գրիգոր Տղային՝ 1178 թ. բայց թվականը հարմար չէ)։*

— 48. **Պետրէ** *ծինամծղաւր, յիշված է Ախտալայի մի արձանագրության մեջ, 1245 թ.— Ազգագր. հանդ. Է. 431։*

— 49. **Պետրէ**, *յիշված է Համազասպի հետ իբրև առաջնորդ Պղնձահանքի Ս. Աստուածածին վանքի 1247 թ.— Արցախ, էջ 363—4։*

— 50. **Պետրոս** *երեց, որդի Կոստանդին երեցի, նախապես բնակված էր Կատենայ անմատչելի գյուղում, իր երկու որդիների՝ Առաքելի և Կոստանդի հետ։ Սրանց կանայքն էին Արևթագուհի և Տիրուհի, որոնցից ոչ մեկը «ոչ եհաս ի բերումն զաւակի, այլ տարաժամ և դեռաբոյսք փոխեցան ի Քրիստոս և անմխիթար սուգ թողին ինձ և որդւոց իմոց»։ Կատենայից իջնելով բնակվեց Հռոմկլայ, ուր նրանց յիշատակին գրեց մի Աւետարան 1248 թ.— Թորոս աղբ. Բ. 351։ Թերևս սրա հետ նույն է՝*

— 51. **Պետրոս** *քահանա, օգնական Կիւրակոս գրչի, որ*

Հռոմկլայում օրինակեց մի գեղեցիկ Ավետարան, 1248 թ.— Ձեռ. Հալէպի, Բ. 6։

— 52. Պետրոս ոմն, որի խնդրանոք Յովհաննէս Վանական վարդապետը († 1251) գրեց «Ուրախացիր, սուրբ կուսից» շարականի տեսությունը.— Զարբ. Հին դպր. 734, Ձեռ. Թաւր. 116 բ։

— 53. Պետրոս, մերձավոր Խաչատուր գրչի, որ մի Ավետարան գրեց Կիրակոս կրոնավորի համար. Պետրոսն էլ նրան դնջուֆու տվեց գրչության համար, 1252 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 378։

— 54. Պետրոս քահանա (կամ կրոնավոր), աշակերտել է X կաթողիկոսին (անունը քերված). գրիչ Կոստանդին քահանային գրել տվեց մի Աստուածաշունչ, որի համար օժանդակեց նաև Յակոբ Կլայեցի կաթողիկոսը, 1268 թ.— Շողակաթ 202։

— 55. Պետրոս քահանա, դիտապետ, երրորդ առաջնորդ Բարձրբերդի Խորին անապատի վանուց (Կիլիկիա). հաջորդեց Երիանոսին. մեռել էր նախ քան 1270 թ.— Ձեռ Վենետ. Բ. 234, 235, 564, Սիսուան 151, Տաթև 1927, 185։

— 56. Պետրոս քահանա, թվի ուսուցիչ փոքր աշակերտաց՝ Արքայակաղնի վանքում, 1280 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 50։

— 57. Պետրոս վարդապետ, առաջնորդ էր Խորանաշատ վանքի, 1283 թ.— Շողակաթ 205։

— 58. Պետրոս վանական քահանա, շարունակեց գրել և վերջացրեց Նոր Կտակարանը, 1285 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 818։

— 59. Պետրոս որդի Սարգսի. հայր և որդի միասին շինել են մի աղբյուր և կանգնեցրել մի խաչքար Վայոց ձորի Քոմուր գյուղում 1288 թ։ Թվի թե նույն Պետրոսն է, որ Մաթէոս վարդապետի հետ միասին կանգնեցրել են Մարտիրոս գյուղում մի խաչքար 1275 թ։ Բացի սրանցից Մաթէոս վարդապետը Մարտիրոս գյուղի մոտ մի եկեղեցի է կառուցել 1286 թ. իր և Պետրոսի հիշատակին.— Սիսական 174, 176, Խաղբակեանք 129, 141։

— 60. Պետրոս ջամբռլայ հայոց թագավորության 1288 թ.— Սիսուան 485ա։

— 61. Պետրոս, գլխավորն էր Այասի մաքսատան 1288 թ. — Սիսուան 368։

— 62. Պետրոս քահանա, գրիչ. Երզնկայում օրինակեց մի Ավետարան, 1289 թ.— Թորոս աղբ. Բ. 298։

— 63. Պետրոս հայրապետ (վանահայր) Երէզ անապատի, 1295 թ.— Bodleian 123։

— 64. **Պետրոս** քահանա, եղբօրորդի և որդեգիր սան Ստեփաննոս քահանա Իկոնիացու. գրիչ. Սկեռայ վանքում օրինակեց Եսայի և Թուղթք Պօղոսի 1296 թ.— Միսուեան 106։

— 65. **Պետրոս** կրօնաւոր, Թուղթ կոկող՝ Արժենի կամ Հայոց վանքում (Կիլիկիա) 1298 թ.—Միսուեան 96, Հայապ. 503։

— 66. **Պետրոս**, առաջնորդ Վարագայ վանքի. մեռաւ տարաշխարհիկ պանդխտութեան մէջ. եղբայրը՝ Վարդան մեծ նեղութեամբ ոսկորները փոխադրեց Վարագ, ուր եղբօրորդին Խաչիկ կանգնեցրեց մի խաչքար՝ աշխատութեամբ Գորգ քահանայի, 1303 թ.— Ազգագր. հանդ. ԻԱ, 62։

— 67. **Պետրոս**, կուսակրօն քահանա, որ իր և իր եղբայր Վասիլի համար գրել տուեց մի Աւետարան Կիլիկիոյ Փոսի վանքում, 1309 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 93բ։

— 68. **Պետրոս** «կրօնաւոր քահանայ», որի խնդրանքով Կոստանդին քհ. Հեթմեցին օրինակեց Աւետարանը, Խորնի ձորում, Պերճ անապատում, 1311 թ.— Թորոս աղբ. Բ. 433։

— 69. **Պետրոս** քահանա Սեբաստացի, հայր Ստեփաննոս քահանայի, որ Սեբաստիայում օրինակեց Աստուածաշունչը, 1313 թ.— Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 70)։

— 70. **Պետրոս** եպիսկոպոս, Սարգսի հետ միասին առաջնորդ էին Վարագայ վանքում 1310 թ. (Թորոս աղբ. Բ. 411, Ջալը. Թրգմ. 196)։ Երբ Թաթար հարկահաւաքները թափեցին Վարագ և ամբողջ ժողովուրդը փախաւ, Պետրոս եպիսկոպոսը պահեց ու պահպանեց Վարագի միաբանութիւնը և չթողեց որ ցրվին (1318 թ)։— Ակինեան՝ Գւզնգիրք 53—54։

— 71. **Պետրոս** նախասարկաւագ, Սսի Ս. Նշան եկեղեցում, 1319 թ.— Միսուեան 223ա։— Թերևս նոյն անձն է՝

— 72. **Պետրոս**, «աւագ սարկաւագ». Սսում օրինակել տուեց Շարականը՝ Սարգիս քահանային, 1319 թ.— Manus. bibl. nat. էջ 32։

— 73. **Պետրոս** (Խորո)ենց? պռօքսիմոս Այասի մաքսատան, 1321 թ.— Միսուեան 368ա։

— 74. **Պետրոս** քահանա, եղբայր Պօղոս քահանայի, որ կազմեց այն Շարականը, որ գրեց Յովսէփ քահանան, Սիս 1323 թ.— Ձեռ. Մանաս. 4 ա, Միսուեան 223 ծան։

— 75. **Պետրոս**, հայր Կոստանդին քահանայի Սսոյ Ս. Նշան եկեղեցու, 1323 թ.— Միսուեան 223ա։

— 76. **Պետրոս**, որդի Կոստանդին քահանայի՝ քեռորդւոյ

Գրիգոր գրչի, որ Ակների վանքում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 1325 թ,— Սիսուան 535 ա։

— 77. Պետրոս հայր Յոհաննէս գրչի, որ Կիլիկիայում, Թանգեր տիկնոջ համար օրինակեց մի Աւետարան 1327 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 396 բ։

— 78. Պետրոս, որդի Մանուէլի և եղբայր Զաքարիա Ծործորեցի եպիսկոպոսի, որ Արտազի Թադէոս առաքյալ վանքի առաջնորդն էր և նորոգեց վանքը 1329 թ. Պետրոսն էլ օգնեց նրան դրամով։— Շահխաթ. Բ. 350, Արարատ 1898, էջ 89, Ձեռ. Սևան, 21 ա։

— 79. Պետրոս քահանա, որին հիշում է Գրիգոր գրիչը Ակներում օրինակած Ոսկեբերանի Մատթէի մեկնության հիշատակարանում, 1329 թ.— Սիսուան 155 բ։

— 80. Պետրոս, ստացող. ունէր մի օրինակ «Սանդուղք աստուածային ելից», որ գրել էր Վարդան քահանան. շնորհեց Հայրապետ գրչին՝ արտագրելու համար, Կիլիկիոյ Փասի անապատում, 1329 թ.— Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։

— 81. Պետրոս, մերձավոր Ստեփաննոս եպիսկոպոսի, որ Խորձեանում օրինակեց Աւետարանը 1336 թ.— Նաթանեան, Արտօսր Հյստնի 152։

— 82. Պետրոս Խըլտենց, պարոն և իշխան, Լևոն Ե թագավորի կողմից դեսպան գնաց Հալեպի Ալթունտաշ ամիրայի մոտ (1335 թ). այնտեղ տեսնելով գերի տարված մի Աւետարան, գնեց և բերավ Ատանա, ուր Վասիլ իշխանը վճարեց պատեկչէքը և Աւետարանը նվիրեց եկեղեցուն՝ 1336 թ.—Սիսուան 559 ա, Շահազիզ, Պատմ. պատկ. 116—8։

— 83. Պետրոս քահանա, որդի Սարգիս քահանայի. սրանց հիշատակին Վասիլ քահանան մի խաչ է կանգնեցրել Մանազկերտի Ս. Սարգիս եկեղեցում, 1339 թ.— Թորոս աղբ. Բ. 278։

— 84. Պետրոս ոմն Ունիթոռական հայ, իր անկարգ վարքի համար վռնդվեց Հայաստանից, գնաց հաստատվեց Իտալիայի Պադուա (հին Պատաւիոն) քաղաքում, ուր ձևացրեց իրեն եպիսկոպոս Նազարեթ քաղաքի և պատրիարք Երուսաղէմի։ Ամբաստանում էր հայերին իբրև եւտիքական, ակնունք և ուրացող։ Բենեդիկտոս ԺԲ պապը (1334—1342), որ նստում էր Ավինիոնում, հրամայեց Պադուայի եպիսկոպոսին՝ բանտարկել նրան.— Փափազեանց, Պատմ. եկեղ. 590։

— 85. Պետրոս վարդապետ, շինել է Նորատուսի եկեղեցին՝

ԺԴ դար. (նորոգվել է 1344 թ).— Սիսական 46, Սմբատեանց՝ Գեղարքունի 487։

— 86. **Պետրոս** վարդապետ. կանգնեցրել է մի խաչքար Գետկայ վանքում (Գոշավանքում) իր ծնողների հիշատակին 1345 թ.— Ազգագր. հանդ. Ժ, 1903, 33։

— 87. **Պետրոս** կրոնավոր, ստացավ մի Ավետարան, որի վերջին ստացողն էլ եղավ Յովհաննէս քահանա 1355 թ.—Ջեռ. Կարին. 17։

— 88. **Պետրոս**, որդի Միրանդի (կամ Միրանցի), որդւոյ Ուղուլինոյ? հայ վաճառական Իտալիոյ Պիզա քաղաքում. պետական ավագանիներից. կինն է Վալրէ (իտալուհի). Պետրոսը մեռավ 1366 թ. և իր կնոջ հետ իրենց ամբողջ հարստությունը կտակեցին շինելու համար Պիզայի մոտիկ, Val di Calce ձորակում, Certosa հոյակապ վանքը։— Սիսական 450 բ, 477 ա։— Ուղուրլեան, Պատմ. Լիվոռն. էջ 235 Միրանդը կարդում է Միհրան և այս ձևով էլ հիշում եմ վերը՝ տե. Գ. էջ 333։

— 89. **Պետրոս**, հայրապետ Ղզլտաշ վանքի (Խրիմ). սրա մոտ աշակերտել է Վարդան Բաբերդցի աբեղան՝ 10 տարի. ապա միասին շինել են նոր վանք, որ կոչվում է Պետրոսի վանք։ Այնուհետև Վարդանը գնացել է Հռոմ, ապա Երուսաղէմ, ուր գրել է մի Ավետարան 1372 թ.— Ջեռ. Վասպ. 218։

— 90. **Պետրոս** որդի Խոցադեղի, եղբայր Գրիգորի և Թոռն Շահինշահի, որ ստացավ մի Ավետարան 1378 թ.— Տաշեան, Ցուց. 692։

— 91. **Պետրոս** ավագերեց Կամախի Կախմխի գյուղի Ս. Աստուածածին եկեղեցու, 1383 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— 92. **Պետրոս** աբեղա. գրիչ. Յովհաննէս րաբունապետի համար օրինակեց Աստուածաշունչը Խիզանի Նորշինայ անապատում 1390 թ.— Ջեռ. Կարին. 11։

— 93. **Պետրոս** վարդապետ Երուսաղէմի. սրա և Վահրամ վարդապետի ջանքով ստացավ Սարգիս պատրիարքը Գողգոթայի տիրապետության հրովարտակը 1393 թ.— Ազգապ. 2015։

— 94. **Պետրոս** եպիսկոպոս, առաջնորդ Թադէոս Առաքելոյ վանից. սրանից օծվեց Կիրակոս Վիրապեցին 1397 թ. ապա կաթողիկոս.— Դրնդ. 312, Չամչ. Գ. 453, Նոտարք 8 (դնում է նույնպես ՊԽԶ=1397, բայց էջ 86 սխալվելով Դաւիթ Բաղիշեցու ցուցմունքից՝ դնում է ՊՀԶ=1427)։ Տես Պօղոս № 76։

— 95. Պետրոս, գրիչ. օրինակել է Վարդան վարդապետի «Մեկնութիւն Արարածոց» 1398 թ.— Ձեռ. Կարին. 143։

— 96. Պետրոս, որդի Անանիայի, թոռն Իվան Պահլաւունու. Մաղաքիա ավագերեցի հետ միասին շինեցին Թէոդոսիայի բերդը. ապա գնացին Աղթամար՝ իրենց ազգական Յովհաննէս վարդապետի մոտ (ԺԴ դար)։— Հայապ. 582։

— 97. Պետրոս գրիչ. օրինակել է Խորենացու Աշխարհացոյցը (ԺԴ դար).— Ա. Աբրահամեան, Խորենացու աշխարհացոյց, էջ 11։

— 98. Պետրոս աբեղա, գրիչ. օրինակեց Թուղթք Պօղոսի, Խիզան 1400 թ.— Նոտարք 11։

— 99. Պետրոս որդի Զաքարիայի, եղբայր Յովհաննէս Մշեցու, որ օրինակեց Աւետարանը՝ Ղազար երեցի համար, 1402 թ.— Manus. brit. mus. 39 ա։

— 100. Պետրոս քահանա, կազմել է մի Աւետարան, որ ապա գնել է Հնազանդ տիկինը և նվիրել Երզնկայի Խայիք գյուղի եկեղեցուն, 1404 թ.— Թորոս աղբ. Ա. 66։

— 101. Պետրոս Գ. կաթողիկոս Աղուանից, հաջորդեց Սուքիասին, մեռավ 1406 թ. և իրեն էլ հաջորդեց Կարապետը (թվականի մասին տես Սուքիաս).— Ձեռ. Դաղեան, Ա. 89բ, Ջամբռ 77,, Շահխաթ. Բ. 342—3 > Նոտարք 25, Բարխուտ. Պատմ. աղվ. էջ 209—210։

— 102. Պետրոս, մերձավոր Մարտիրոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1410 թ.— Ձեռ. Վասպ. 164։

— 103. Պետրոս, եղբայր Խորաձորու Ս. Աստուածածին վանքում, 1410 թ.— Ձեռ. Դաղեան, Բ. 51բ։

— 104. Պետրոս կրոնավոր Մոկաց Ծպառայ վանքի. «զգրելոյ տեղիքս երիտ» Կարապետ կրոնավորին՝ արտագրելու համար Ճառընտիրը՝ 1413 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 271 ա։

— 105. Պետրոս, կուսակրոն քահանա, որդի Ալեքսան քահանայի և եղբայր (կամ հորեղբայր) Յովհաննէս Հռետոր վարդապետի, որ Խիզանի Ս. Խաչ վանքում օրինակեց Ագաթանգեղոսը 1402 թ. և Գր. Տաթևացու Քարոզգիրքը 1413 թ.— Նոտարք 17, 42։

— 106. Պետրոս, այլ ոմն միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի. հիշված 1402 և 1413 թ.— Նոտարք 17, 42, 43։

— 107. Պետրոս, եղբայր Յովհաննէս քահանայի, որ օրի-

նակեց երկու Աւետարան 1409 և 1417 թ.— Ջեռ. Վաստ. 304 (տես և հաջորդը, որ նոյնն ազգականն է)։

— 108. Պետրոս քահանա, որդի Թումայի (№ 81). մայրն է Գոհար (№ 8). հօրեղբօրորդին է Յովհաննէս (№ 781) քահանայի, որ օրինակեց երկու Աւետարան 1409 և 1417 թ. վերջինը գրեց Ջերմաձորի Ակոռոյ վանքում և նրան աշխատակցեց նաև Պետրոս քահանան, 1417 թ.—Ջեռ. Վաստ. 294 և 303։

— 109. Պետրոս, որդի Մկրտիչ քահանայի, որ Բերկրիում մի Աւետարան գրել տվեց Յակոբ գրչին 1418 թ.— Նոտարք 55։

— 110. Պետրոս, վաղամեռիկ որդի տանուտեր Ղազարի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Ջեռ. Վաստ. 307։

— 111. Պետրոս կուսակրոն աբեղա, միաբան Պառուագրակ վանքի, 1421 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1927, 313։

— 112. Պետրոս կրոնավոր, ուսուցիչ Կարապետ գրչի, որ Խլաթում օրինակեց Աստուածաշունչը՝ 1418—1422 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 114։

— 113. Պետրոս որդի Մկրտիչ քահանայի, որ Բերկրի քաղաքի առաջնորդն էր. ծաղկեց այն Աւետարանը, որ Յովհաննէս կրոնավորը գրել տվեց Բերկրի քաղաքի Եղավանքում, Յակոբ աբեղային, 1422 թ.—Ջեռ. Վաստ. 350։

— 114. Պետրոս քահանա Խիզանցի, ուրացել էր հավատքը Ստեփաննոս վարդապետի հետ. հետո զղջալով ներկայացան Խիզանի դատավորին և նրա ձեռքով էլ նահատակվեցին 1424 թ. (ավելի ընդարձակ տես Ստեփաննոս վրդ.)։

— 115. Պետրոս արքեպիսկոպոս Եղեգեցի, առաջնորդ Հայոց նահանգին, 7 անգամ գնացել էր Երուսաղէմ (երևի իր եղբօրորդի Ստեփաննոս կրոնավորի հետ), ուր ստացել էր մի Աւետարան։ Վերադարձին նվիրեց իր սանամոր՝ պարոն Սիթի խաթունին (1428 թ)։ Շահռուխի սարսափից թաքցրել էին քարայրում, ուր բավական փչացել էր։ Թերին լրացնելով նորից կազմեցին 1430 թ։—Ջեռ։ Վաստ. 134—6։

— 116. Պետրոս բրուտ, որդի Կարապետի՝ եղբոր Յովհաննէս աբեղայի, որ Մոգոց Սուրբկանց գյուղում գնեց մի հին Աւետարան, 1433 թ.—Ջեռ. Վաստ. 204։

— 117. Պետրոս աբեղա, առաջնորդ Մոկաց գավառի Ս. Գէորգ վանքի, 1435 թ.—Ջեռ. Վաստ. 372։

— 118. Պետրոս քահանա, հայր Ուլուխաթուն երեցկնոջ,

որ իր հանգուցյալ ամուսին Աւետիք (№ 66) քահանայի հիշատակին գնեց մի Աւետարան, Կաֆա 1437 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 238։

— 119. Պետրոս, Նարեկցի հյուսն, որ Ոստանում, Կարապետ կրոնավորին գրել տվեց մի Գանձարան և նվիրեց Թովմա առաքյալի վանքին, 1440 թ.—Նոտարք 122։

— 120. Պետրոս կրոնավոր, միաբան Ոստանի Պոլկի վանից, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41 ա։

— 121. Պետրոս, հայր Դովլաթ խաթունի, կնոջ տանուտեր Ատոմի, որ Ոստանում գրել տվեց Գանձարանը, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։

— 122. Պետրոս Դաշտի, որ խնդրել էր Իսրայէլ գրչից արձանագրել իր անունը իր օրինակած Աւետարանում, Մոկաց Փասավանք գյուղում, 1447 թ.—Նոտարք 156, Ձեռ. Վասպ. 400։

— 123. Պետրոս կրոնավոր, գրիչ. օրինակել է Շարականը, 1447 թ.—Ձեռ. Բեռլինի, 29 բ։

— 124. Պետրոս, միաբան Ապահունեաց ուխտի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 125. Պետրոս եպիսկոպոս, շինեց Գողթնեաց Վանանդայ Ս. Խաչ վանքը (կոչված Անձրևաբեր), 1457 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 491։

— 126. Պետրոս որդի Գրիգորի 1458 թ.—տես Փաշամելէք:

— 127. Պետրոս Ախքիրմանցի, իր Պօղոս եղբոր հետ. կերակրում էին Նիկողայոս եպիսկոպոսին, երբ նա օրինակում էր Ճաշոցը՝ 1459—60 թվերին.—REA 10, 62։

— 128. Պետրոս որդի Սուլտանշահի, եղբոր Խոնձայի՝ կնոջ տանուտեր Էդիկշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 621։

— 129. Պետրոս աբեղա, միաբան Տարօնի Եղերդուտ վանքի և աշակերտ Ստեփաննոս կրոնավորի, որ նույն վանքում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Նոտարք 215։

— 130. Պետրոս քահանա, գրել տվեց Մկրտիչ անուն դըրչին մի Աւետարան 1464 թ.—Նոտարք 220։

— 131. Պետրոս, ստացողներից մեկն է այն Աւետարանի, որ օրինակեց Ստեփաննոս եպիսկոպոսը Խորձենի Խլպաշի վանքում, 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 342։

— 132. Պետրոս, հոգևոր հայր և ուսուցիչ Կարապետ քա-

հանս գրչի, որ Բերկրիում, տանուտեր Մարտիրոսի համար օրինակեց Աւետարանը, 1473 թ.—Ջեռ. Վասպ. 468։

— 133. Պետրոս Ա. պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Մեսրոպ Բ-ին, որին աթոռակից էր նախապես. գահակալեց 1461—76 թ. ըստ Աղաւնունու։

— 134. Պետրոս աբեղա, ուսուցիչ Յովհաննէս Երզնկացու, որ օրինակեց Աւետարանը՝ Կեսարիայում, 1476 թ.— Rapport Belgique 35։ Թերևս նույն է № 137։

— 135. Պետրոս ռայիս, մերձավոր Ֆարաճի, որ Հալէպում գրել տվեց մի Աւետարան 1478 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 97։

— 136. Պետրոս քահանա, հայր Մանուէլ քահանայի, որ Կուքի գյուղում օրինակեց Գանձարանը, 1478 թ.—Ջեռ. Դադեան, Ա. 39 բ, Սմբատեանց՝ Երնջակ 195։

— 137. Պետրոս աբեղա, ուսուցիչ Նաղաշ Յովհաննէս գրչի, որ օրինակեց Կեսարիայում մի Ճաշոց՝ 1481 և 1484 թ.— Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։—Թերևս նույնն է № 134։

— 138. Պետրոս Խզէլաւղլան, հայր Հռիփսիմէի, որ Մարտիրոս երեցից գնեց մի հին Աւետարան և նվիրեց Ս. Սարգիս եկեղեցուն, 1486 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 537։

— 139. Պետրոս եղբորորդի Զաքարայ աբեղայի, որ Յակոբ քահանայից գնեց Շարակնոցը, Երզնկայում, 1487 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 140. Պետրոս քահանա, հայր Գրիգոր աբեղայի, որ Բուստայ անապատում գրեց մի Աւետարան 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։

— 141. Պետրոս, հայրապետ Հաղբատի վանքի, որի դամբարանը մնում է Հաղբատում 1491 թ.—Երզնկեանց՝ Հնախտեղագր. 52, Ազգագր. հանդ. Ի, 409։

— 142. Պետրոս, եղբայր Գալուստ աբեղայի, որ Կեչառուսում օրինակեց Աւետարանը, 1491 թ.—Ջեռ. Սևան. 10 բ։

— 143. Պետրոս տանուտեր, որդի Թումայի. Ազարիա քահանային գրել տվեց Վանում մի Աւետարան, 1495 թ.—Ջեռ. Վասպ. 475—6 (Թվականը դրել է ՋԻԴ=1475, որ սխալ է, նույնը գիտե նաև Թորոս աղբ. Բ. 276, որ դնում է ՋԽԴ=1495. և այս է ստույգը, որովհետև գրված է Էջմիածնի Սարգիս կաթողիկոսի օրով. Էջմիածնում 1475 թվին Սարգիս կաթողիկոս չկա, բայց 1495 թվին կա։ Սխալ է նաև գրչի անունը, որ Ջեռ. Վասպ. գրված է Ազարիա քահանա, իսկ ըստ Թորոս աղբ. Զաքարիա է)։

— 144. Պետրոս եպիսկոպոս, որ Խորվիրապի Մանուէլ եպիսկոպոսի (№ 57), Աւետիք վարդապետ Արճիշեցու և Տիրիկցի Աստուածատուր երեցի և շատ միաբանների հետ ուխտի էին գնացել Երուսաղէմ, 1496 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 207 ա (ուղղակի չի տալիս անունը, այլ ասում է այլաբանութեամբ. «Տէր Մանուէլն յարենլեան և հայրապետ Խորվիրապեան, և համախոհ զհետ նորա եպիսկոպոս գետարգելեան. էին նոցա շատ միաբան» (ակնարկում է Պետրոս Գետադարձ կաթողիկոսին)։—Ձեռ. Հալէպի, Ա. 207 ա։

— 145. Պետրոս, որդի Կիրակոս քահանայի, որ Ամ գիւղում օրինակել տուեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 16 բ։

— 146. Պետրոս աբեղայ, ունի մի փոքր գրուածք Ողջոյնի վրայ, որ տպուած է Տաթև. ամ. էջ 737—9 և որի վերջում հիշել է իր անունը (ԺԵ դար)։

— 147. Պետրոս Բ. պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Մարտիրոս Բ Պրուսացուն և գահակալեց 1501—7 թ. (Ադաւնունի)։

— 148. Պետրոս քահանա Երզնկացի, որի խնդրանօք Ղուկաս վրդ. Կեղեցին գրեց «ոտանաւոր ի վերայ տոմարի» 1557 թ.—Տաշեան, Ցուց. 351։

— 149. Պետրոս Կարկառեցի, ծնվել է Կարկառ քաղաքում. Սրապիոն կաթողիկոսի հետ միասին աշակերտել է Ղուկաս վրդ. Կեղեցուն. 40 տարի նստել Եփրատի ափի Ս. Տիմոթէի վանքում, ուր աշակերտներ էլ հասցրեց։ Իբրև հակաթոռ կաթողիկոս Սսոյ նստել Հալէպում 7 տարի («1601—8 թ»)։ Մեռավ 1608 թ. գերեզմանը գտնվում է Հալէպում. տապանագիրն էլ տես Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 13։—Դիվն. 329—331, 351. Առաք. պատմ. 340. Տաշեան, Ցուց. 359, 455. Ձեռ. Հալէպի, Ա. 81 ա. Թորոս աղբ. Բ. 464, 484։ Ջամչ. Գ. 536։

— 150. Պետրոս հայ-կաթոլիկ քահանա, որ ուղեկից եղավ Օգոստինոս Բաջենցին Եւրոպա ուղևորության ժամանակ (1609 թ)։—Օգոստ. բաջ. 10.—տես. Պետրոսի՝ անդ 8։

— 151. Պետրոս երեց, հավատքը չուրանալու պատճառով թրատելով նահատակեցին Օվաճուք ավանում, 1657 թ.— Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. Բ. 817։

— 152. Պետրոս կաթողիկոս Աղթամարի, հաջորդած պի-

*ռի լինի Մարտիրոս Գուրջի կաթողիկոսին 1662 թ. վախճանվել է 1670 թ.—Ակինեան, Գաւազանագիրք 136։*

— 153. **Պետրոս** *Դ Խանձկեցի («ի գեղջէն Խանցկայ»), որդի Մանկասարի, աշակերտ Ղուկաս րաբունապետի, կաթողիկոս Աղուանից, հաջորդեց Գրիգորին և նստավ 1653—1675 թ. (ըստ Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 66—68). գավազանի իշխանություն ստացավ էջմիածնի Յակոբ Դ. Ջուղայեցի կաթողիկոսից 1672 թ. (ըստ Ջքր. ադուլ. 108). 1667 թվին՝ իր աշակերտ Բարսեղ եպիսկոպոսի ձեռքով հիմնարկեց Հերհեր գյուղում Ս. Գրիգորիս եկեղեցին իբրև հովարան Ամարասի և ավարտեց 1676 թ. սրա ընդարձակ արձանագրությունը տես Արցախ 104—6։ Մեռել է 1675! թ. և իրեն հաջորդել է Սիմէոն Դ կաթողիկոսը։—Ջքր. սարկ. Բ. 68—69. Ջամբռ 79—80. Ձեռ. Դադեան, Ա. 48—49 (հիշում է 1666 թ.) և Բ. 53 ա (հիշված 1671 թ.), Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ (հիշված 1655 թ. իբրև* նորընծայ *կաթողիկոս), Արցախ 42 (1663 թ), 158 (1673 թ.), 186 (1668 թ.), 253 (ՌՃԻԵ=1676 թ!), Աղվանից երկ. 175—6, 251, Պատմ. աղվ. Բ. 66—68, Եւ. կթղ. 12, Սմբատեանց՝ Սաղիան 50, կենսագրությունը տես Ձեռ. Դադեան, Ա. էջ 100 բ (1664 թվից)։*

— 154. **Պետրոս** *Սեաւ, հերձվածող կամ աղանդավոր Ջուղայեցի. էջմիածնում էր Յակոբ Դ կաթողիկոսի («1655—1680 թ») ժամանակ (ԺԷ դար).—Ջքր. սարկ. Բ. 69։*

— 155. **Պետրոս** *բժիշկ, որդի Ասար ճէռահի (ԺԷ դար).—* Manus. brit. mus. *314 բ, Թորգոմեան՝ Ներք. 27։*

— 156. **Պետրոս** *Բերիացի, որ իբրև հակաթոռ Սսոյ Սարը Մատթէոս կաթողիկոսի՝ նստել է Բերիա «1701 թ». գահակալել է մինչև «1712 թ», որից հետո վտարվել է Երուսաղէմ, ուր և մեռել է «1728 թ»։—Այս բոլորը ըստ Աճգայ. 2707, 2867։—Գտնում եմ հիշատակված իբրև կաթողիկոս Կիլիկիոյ 1710 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 330 ա)։ Այս ցուցակում (էջ 217) կա իր ձեռագիր մի հիշատակարանը, որով հայտնում է թե 1700 թվին, Կառկառ քաղաքում առաջնորդ է եղել և Հիւսնիմանսուրում ձեռք է բերել Ցոլհ. Արճիշեցու Մեկնութիւն Ս. Պատարագի մի*

---

**) Աղուանից Գրիգոր անունով կաթողիկոսների շարքը հետևյալն է. № 3 Գրիգոր Ա (Դ դար).— № 10 Գրիգոր Բ (451—552 թվերի միջև),— № 169 Գրիգորիս Գ (1139 թ.). № 585 Գրիգոր Դ Հանեցի (1441 թ.),— № 707 Գրիգոր Զ (1556—1573 թրքացած),— № 722 Գրիգոր Է (1634—1645...), որին հաջորդել է սույն Պետրոսը 1653 թ.*

օրինակը, 1708 թվին եղել է Սսոյ կաթուղիկոս, 1710 թվին եկել է Բերիա քաղաքը «և բազում անցք անցին ընդ իս. Աստուած զվերջն ի բարին կատարեսցէ»։—Ըստ Սխտեան 219 գահակալել է 1701 թ. և իրեն հաջորդել է Յովհաննէս Ե Համձեցի։ Բայց զարմանալի է որ սրանց բոլորովին հակառակ՝ Ձեռ. Հալէպի, Բ. 31 բ նույն Պետրոսին գահակալած է դնում 1608 թ. ապրիլի 29, հինգշաբթի օրը։

— 157. Պետրոս Բ Քիւթիւր, Այնթապցի. էջմիածնի նվիրակ էր. մեծամիտ և խռովարար մարդ, իր գլուխը հավաքեց Արևելցի կոչված Պարսկահայ գաղութը Պոլսում և ուզեց տապալել Յովհաննէս Կոլոտ պատրիարքին, բայց անհաջող («1737 թ»)։ Ենթարկվելով Ղազար կաթուղիկոսի ատելության, չարաչար տանջանքով բանտարկվեց Սեանում («1746 թ.»)։ Երբ Ղազար կաթուղիկոսը գահընկեց եղավ, Պետրոսը ընտրվեց իբր կաթուղիկոս («1748—9 թ.»)։ Տասը ամսից հետո Ղազարը նորից գահ բարձրացավ և Պետրոսին բանտարկեց Ջահուկի մի վանքում, ուր և սպանվեց ավազակների հարձակման ժամանակ «1750 թ».— Այրարատ 231, Ազգապ. 2906, 2967։—Նույնն է արդյոք՝

— 158. Պետրոս վարդապետ Քութուր, տաղասաց ԺԸ դարու. իր տաղերից տես Տաշեան, Ցուց. 1143 բ։

— 159. Պետրոս վրդ. Ղափանցի. տաղասաց. Արմաշի վանքի վանահայր և Նիկոմիդիոյ առաջնորդ էր. խոր ծերության մեջ մեռել է «1784 թ» (Ազգապ. 3170). ունի Երգարան (իր տաղերի հավաքածու), որ տպ. Պոլիս 1772 թ. ունի նաև «Քարոզ ի վերայ ողջունին».—Տաշեան, Ցուց. 1143 բ, Պետրոսյան՝ Հայ հին և միջ. գրակ. Բիբլ. էջ 194—5։

— 160. Պետրոս Դի-Սարգիս Գիլանենց, Ջուղայեցի հայ վաճառական, հաստատված էր Ռաշտում. հայ ազգի ազատությունը Ռուսաց առաջխաղացման մեջ տեսնելով, թողեց առևտրական ասպարեզը և նվիրվեց քաղաքականության։ Իր սեփական ծախսով կազմեց 100 զինված ձիավոր հայերից մի զորաբաժին, որ կոչվում էր «Հայկական էսկադրոն» և Ռուս զորքերի շարքում մասնակցում էր Կասպիական ծովեզրի պատերազմական գործողություններին։ Պետրոսը ինքն էլ մասնակցում էր այդ կռիվներին, որոնց մեջ էլ մահ գտավ։ Գրել է Պարսկաստանի ժամանակակից դեպքերի և ռուսաց պատերազմների շատ գնահատված յիշատակարանը (Ռաշտ 1723 թ.), Ջուղայեցոց բարբառով։ Տպված է Կռունկ ամսագրում 1863 թ. արտատպ. Թիֆլիս.

տպ. Ընֆեաճեանց. տես Լէօ, Հայկ. տպագր. հտ. Բ, էջ 329—330, 396—7։

— 161. Պետրոս, որդի Յակոբի. տաղասաց (ԺԸ դար). իր տաղերից հիշելի են՝ Պլպուլն վարդին սիրուն, Աւաղ վերայ առաւօտուն, Կռունկ ուստի՞ կուգաս են.—տես Տաշեան՝ Ցուց. 1143 բ։

— 162. Պետրոս վրդ. Աստապատցի, տաղասաց (ԺԸ դար). իր տաղերից տես Տաշեան՝ Ցուց. 1143 բ։

— 163. Պետրոս վարդապետ (ապա արքեպիսկոպոս) Աղամալեան Բերթումեանց Նախիջևանցի. գրել է Աղբիւր բացեալ Աստուածանմանութիւն, Մեկնութիւն թղթոյն Պօղոսի առ Եփեսացիս, Մեկնութիւն առակաց Աւետարանի. այս վերջինը գրել է Օշականցի Երեմիա վարդապետի խնդրանոք։ Ժամանակակից է Սիմէոն կաթուղիկոսին (ԺԸ դար)։—Տաշեան՝ Ցուց. 1142 գ. Ձեռ. Ներս. 9, 22։

— 164. Տէր Պետրոս, տաղասաց (ԺԸ դար). իր տաղերից են Առ երջանիկ Կոյսն (Ի լուսատիպ թագիւ), Առ Աստուածածին (Ի խորոց կարդալով), Աղերս անձնական (Ի մէջ մեղաց ծովուն) են.—տես Տաշեան, Ցուց. 1143 բ։

— 165. Պետրոս աբեղա, տաղասաց (ԺԸ դար). գրել է Գովեստ Էջմիածնի (Ի յարևելս պայծառ).—տես Տաշեան, Ցուց. 1143 բ։

— 166. Պետրոս Գ Եւդոկիացի, պատրիարք Երուսաղէմի «1793—1800 Թ». հաջորդեց Յովակիմ պատրիարքին. իր օրով տեղի ունեցավ Նապոլէոնի արշավանքը Եգիպտոս և Պաղեստին. այդ պատճառով թե Տաճիկները և թե Եւրոպացիք մեծամեծ նեղություններ տվին հայոց. վանքերը խլվեցին և կողոպտվեցին. շատեր բանտարկվեցին. Երուսաղէմի վանքն էլ ահագին տուգանքներ վճարեց և իր հարստությունը վատնեց։ Վշտերի տակ ընկճված մեռավ պատրիարքը Յոպպէում «1800 Թ»։ Իրեն հաջորդեց Թէոդորոս Վանեցին։—Ազգապ. 3186,

— 167. Պետրոս Նիժեցի, որդի քահանայի. հավատքի համար նահատակվեց Շուշում «1826 Թ»։—Բարխուտ. Աղվ. երկ. 266> Նոր վկ. 675. Ազգապ. 3626։

— 168. Պետրոս Գիւլպիւլ Նարեկցի, (Գիւլպիւլ «սոխակ» է կոչվել իր քաղցր ձայնի պատճառով). կաթուղիկոս Աղթամարի «1858—1864 Թ». հաջորդ Գաբրիէլի և նախորդ Խաչատուրի. հակառակ իր կամքին՝ բռնի կաթուղիկոս օծեցին. խիստ և գործունյա մարդ էր, անփառասեր և աղքատասեր. կարողացավ զսպել

-քուրդ բարբարոսներին, արհամարհելով նրանց ահն ու սպառնալիքը. Թունավորեցին իրեն, բայց նա ազատվեց։ Իրեն դավաճանեց իր հարազատը Խաչատուր եպիսկոպոս, որ կաթողիկոսի գանձապահն ու գործակալն էր։ Սա ուզելով գրավել աթոռը՝ ծովը գցեց Պետրոսին, և երբ նա կարողացավ լողալով ազատվել, մի քրդի միջոցով՝ քնած ժամանակ սպանել տվեց և ինքը ապօրինի կերպով կաթողիկոս օծվեց։—Հաւաք. 68, 56, 57, 65. Ակինեան՝ Գաւազանագիրք 180—185, Ազգապ. 3962, 4113։

ՊԵՏՐՈՒՍՈՒՏ, իգ? արտասովոր անուն. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1710 թ. (Ջեռ. Հավէպի, Ա. 329 բ)։

ՊԵՐԷ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է՝

— Պերէ երեց, պանդխտեց Կիպրոս կղզին, ուր օրինակեց մի Աւետարան՝ Հոռոմխաթունի համար 1280 թ.—ՀԱ 1937, 380։

* ՊԵՐԿԻՒԶԱՐ, իգ.<պրս. برگذار barguδār, Թրքական հնչումով bergüzar «փոքրիկ մի նվեր» բառից։ Ըստ Թէոդիկի, Պոլսի հայեվարը, էջ 1874 գործածական է եղել Պոլսում։

† ՊԵՐՃ, ար.<հյ. պերճ «փառավոր» բառից. Հայկազանց շրջանի անուն, որ վերակենդանացավ անցյալ դարում։ Այս անունով ունենք նշանավոր վիպասան Պերճ Պռոշեանը և Բեռլինի հայ պատվիրակության անդամներից Ստեփան Պերճ Պօղոս Փափազեանը։ Այս անունից կազմվեցին նաև Պերճանոյշ, Պերճուհի, Պերճիկ իգական անունները։

— 1. Պերճ Ա. նահապետ հայկազն, հաջորդ Զարմայրի.—Խոր. Ա. ժթ. Կղկնտ. Ա. ժե. Ցհ. կթգ. բ. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 18, 51. Սամ. անեց. 45. Վրդ. է. Մին. համդ. 10. Մաղ. թղ. ժթ. վերջինս տալիս է նոր տեղեկություններ որ չունի Խորենացին. «Պաճուճասէր այր և սէգ ի Սանեան նահանգէ»։—Ջամչ. Ա. 92 օգտվելով սրանից՝ կազմում է երկու Պերճ. այն է՝ Պերճ Ա, որ Սիւնեաց նահանգից էր, «այր սէգ և հզօր», որ Զարմայրից և Շաւարշ Բ-ից հետո բռնակալեց ամբողջ Հայաստանը (Ն. Ք. 1137 թ), իր իշխանությունը տարածեց հեռավոր տեղեր և նոր զինվորական կարգեր սահմանելով՝ շրջակա ազգերի սարսափը դարձավ։ Իշխեց 35 տարի և մեռավ։ Սրան հաջորդից Արբուն, նստավ 27 տարի և ապա՝

— 2. Պերճ Բ. նահապետ հայկազն, որ հաջորդեց Արբունին, իշխեց 40 տարի (Ն. Ք. 1075 թ), իր օրով գահակալեց Հրէից

Դուկիթ թագավորը. Պերճին էլ հաջորդեց Բագուկ Երկայնակեաց (50 տարի)։ Այս Պերճ Բ-ին չգիտի Խորենացին։ Սրանց մասին տես նաև Ալիշանի Հայաստ. յոլ.՝ քան 201։

†ՊԵՐՃԱՆՈՅՇ, իգ.<նախորդ Պերճ անունից՝ անոյշ իգականակերտ բառով. նշանակում է «Պերճի դուստրը». Նորահնար, բայց տարածված անուն։

†ՊԵՐՃԻԿ, իգ. կազմված է -իկ մասնիկով Պերճ անունից և փաղաքշականն է թե Պերճուհի և թե Պերճանոյշ անունների։

†ՊԵՐՃՈՒՀԻ, իգ.<հյ. Պերճ անունից՝ -ուհի իգականակերտ մասնիկով. Նորահնար, բայց տարածված անուն։

*ՊԵՐՈԶ, ար.<պրս. [illegible] Pērōz անունից, որի տառադարձությունններն են հուն. Περόζης, Περώζης, լտ. Peroses, ասոր. Pērōz, արաբ. [illegible] Fairūz։ Բուն նշանակում է «հաղթող». հմմտ. Խոր. Բ. կգ. «Եւ Պերող արքայ Պարսից ի Հռովմայեցւոց իշխանութիւնն արշաւեաց, ուստի Պերող անուանեցաւ, որ է յաղթող. քանզի յառաջ անուանիւր Վաղեգեսոս ի Յունաց լեզուն. բայց թէ Պարսք զինչ կոչեն զնա, ոչ գիտեմ»։ Այսպես նաև Ամմիանոս մեկնում է «piroses, bellorum victor յաղթող ի պատերազմունս»։ Իրոք էլ պրս. [illegible] pērōz նշանակում է «հաղթող, հաղթական», պհլ. pērōžkar, պազ. pērōžgar, պրս. [illegible] pērōzgar «հաղթական», որով այս անունը համազոր է դառնում լտ. Victor>Վիկտոր անվան։ Այս անունով հայտնի են Պարսից թագավորներից Պերոզ Ա. հաջորդեց Արտաշեսին (Խոր. Բ. կթ. ծն), Պերոզ Բ հաջորդ Յազկերտ Բ-ի (Եղիշ. Փարպ. Սեբ.), կա նաև Պերոզ վերակացու Նինուէի (Խոր. Բ. լգ), ժամանակակից Աբգարի։ Այս անունից առաջացած ձևեր են հյ. Վարազ-Պերոժ, Հրաքոտպերոժ, Սպանդարանպերոժ, Որմզդպերոժ, պրս. Պերոզ-Վռամ, Պերոզամատ, Պերոզապատ (=Pērōzābāδ), Պերոզ-Կաւատ, Պերոժ-Կաւատ (=արաբ. Fairūz-Qubād.), Rām-Pērōz, Rōšan-Pērōz, Šahrām-Pērōz, Pērōz-Šābūr (=լտ. Pirisabora), ասոր. Šahrpērōz, հուն. Χοσροπερόζης անձնանունններն ու տեղանունները (Հիւբշ. 67—68)։

— 1. Պերոզ Արծրունի, նահապետ տոհմին, հաջորդ Շաւասպի (Ն. Ք. Գ. դար).—Արծր. Ա. զ։

— 2. Պերոզ, Գարդմանցոց ցեղից, բարեկամ և մերձավոր Արշակ Գ («379—386 թ») թագավորի.—Խոր. Գ. խգ։

— 3. Պերոզ իշխան Արծրունի, Սենեքերիմի ցեղից. Սեբաստիայից գաղթում է Ակն 1350 թվերին և իր Միհրդատ որդու

սկսում է Պեռեանց տոհմը Ակնում. սրանցից առաջացավ Տատեան ամիրայական տոհմը։—Ազգագ. 3440։

* ՊԵՐՈԺԱՒՐ,ար.<Պերօզ անվան պհլ. Pērōž ձևից, որ տես վերը։ Այս անունով մի անգամ ունինք՝

— Պերոժաւր Սիւնեցի, իշխան, Վրաց Միհրան Թագավորի պալատականներից էր. Վրաց Սալոմէ Թագուհու հետ ներկա եղավ Վրաց առաքելուհի Նունէ կույսի մահվան ժամանակ և երկուսով միասին գրի առին Նունէի ինքնակենսագրությունը (332 Թ)։—Վրաց պատ. Ա. 22, 174.—հայ Թարգմանության մեջ՝ Պոմ. վր. ժա գրված է Պեյուժավր, որ հրատարակիչը ուզում է կարդալ Պերօզաւր։—Միսական 10, 523 գրում է Պեյուծավր (ցանկում Պեյուժավր) և դնում է 332 Թ։

† ՊԶՏԻԿ-ՏԱՏԻԿ, իգ.<հյ. պզտիկ «փոքր»+տատիկ «մեծ մայր» բառերից. հմմտ. Փոքրտիկին և Պստիկ-խաթուն։ Հիշատակված է երկու անգամ 1683 Թ. (Manus. brit. mus. 36 ա)։

* ՊԷԱՏՐԻՉԷ, իգ.<իտալ. Beatrice անունից, որ անմահացած է Դանտէի «Աստուածային կատակերգության» մեջ։ Սրա լատին ձևն է Beatrix, որ ծագում է լտ. beatus «երջանիկ» բառից և համազոր է հյ. Երանիկ, Երջանիկ, Երանուհի, հուն. Մակար, պրս. Բախտիար անունների հետ։ Առանցված է մեր մեջ ԺԳ դարից. իսկ անցյալ դարում ֆրանս. Béatrice ձևից փոխառնվելով Պոլսում գործածական դարձավ Պէաթրիս անունը (արեմտյան առոգանությամբ)։

— Պէադրիչէ, երկրորդ կին Կոստանդին Թագավորահոր, մայր Յովհաննէս-Պաղտին եպիսկոպոսի և քույր մայր Հեթում Ա («1226—1270 Թ») Թագավորի։—Սիսուան 76, 144 (վերջինը գրված Պիադր)։

* ՊԷՅՄԷԼԻՔ, թրք. ծագումը տես Բեգմելիք. վերի ձևով ավանդված է մի խաչքարի արձանագրության մեջ, որ գտնվում է Թէոդոսիոյ Ս. Սարգիս եկեղեցում ՈԿ=1211 Թվից (Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 35)։ Կասկածում եմ Թվականի ստուգության վրա՝ ՈԿ փխ. ՌԿ=1611)։

* ՊԻԱԹԱ, ար. Թթր. [illegible] biata (Будагов I, 8բ) բառն է և Խրիմի ու Նոր-Նախիջևանի բարբառով նշանակում է «սկեսրայր». մի անգամ հիշատակված է իբրև անձնանուն Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի պատին ագուցված մի արձանագրության մեջ՝ 1523 Թ. «Սբ խաչս բարեխաւս է Պիաթային և հայրն Սարգսին...» (Շահազիզ, Ն. Նախջ. Ս. Խաչ վանքը 11)։

ՊԻԼՈՍ, ար. ծագումն անհայտ. այս անունով հայտնի է Պիլոս, հայր Արսս Թագավորի հայոց. այս Արասը նետով զարկեց սպանեց իր պապ՝ Արբելին և գրավեց նրա գահը. բայց խղճահարությունից տանջվելով՝ գցեց իրեն գետը, որ այնուհետև կոչվեց Արաքս։ Այս ավանդությունը պատմում է Պլուտարքոս հույն պատմիչը Գետերի անվանաբանության մեջ (տես Ալիշան, Հյաս. էջ 163)։

ՊԻԾԱՆԱՑ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1603 թ. (Матер. Арх. Кавк. III, 99—100)։

ՊԻՃԻՏՈԻ, ար. ստորագրում է Լիվոռնոյի հայոց Դաշնագրին 1697 թ. (տես Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռնոյի, էջ 261). (= պրս. بیجاده bījāde հակինթ քարը ?)։

ՊԻՄ, ար.<Թերևս պրս. بیم bīm «վախ, երկյուղ» բառից. բայց այսպիսի անուն չունի Justi. իբրև անձնանուն մի անգամ գտնում ենք մեր մեջ հիշատակված՝

— Պիմ, եղբայր Վահրամ աթաբէկի, հիշված 1336 թ.— Արձ. Շիրակ 28 ը. ավելին տես Իմա։

* ՊԻՈՆ, ար.<հուն. Πίος անվան հյց. Πίον ձևից. փոխառեալ է լտ. Pius անունից, որ նշանակում է բուն «առաքինի, բարեպաշտ»։ Այս անունով հայտնի են Հռոմմայեցոց Անտոնինոս Պիոս կայսրը, 10 պապ Հռոմի, որոնցից առաջինը 158—167 թվին, և մանավանդ Պիոն քահանա նահատակ, որի վկայաբանությունը անցած է Ցայսմաւուրքի մեջ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 163)։ Այս անունը ավանդված չէ մեր մեջ և այժմ էլ գործածական չէ. բայց կա Պիոնեան ազգանունը (Սեբաստիա), որ ցույց է տալիս թե երբեմն գործածական է եղել։ Իրոք էլ Պիոն ոմն Սեբաստացի † 1860 թ. հիշված է Թորգոմեան, Սեբաստիոյ պատմ. Բ. 822։ Նույնը իբրև իգ! անուն հիշված է Սովետ. Հյաստ. 1945 թ. օգոստ. 30, էջ ա, սյունակ 6-րդ։ Բայց այս վերջինը ոչ թե նախորդ Պիոնն է, այլ ռուս. Пион «ֆրանս. pivoine» կոչված փարթամ վարդանման ծաղիկը, որ մի ժամանակ Երևանում շատ հարգ էր ստացել։

* ՊԻՍՏՈՍ, իգ.<հուն. πιστός «հավատարիմ» ձևից. բայց էապես πίστις «հավատք», որ նաև իգ. անուն է. հմմտ. Պիստիս՝ դուստր Սոփիայի, վկայուհի, որի պատմությունը անցել է Ցայսմաւուրքի մեջ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 398)։ Պոլսում գործածական էր անցյալ դարում Փիստոս ձևով (հմմտ. Թէոփիստէ)։

Այս անունն էր կրում Պետրոս Դուրեանի սիրուհին, ինչպես երևում է իր մի քառյակից.

Ես կը պաշտեմ զիմ Պիստոս,
Ինձ կը բաւէ իր սրտին
Մէկ ճառագայթը միայն
Եւ մէկ վարդն իր ժպիտին։

(Պ. Դուրյան, Երկեր, Երևան 1947, էջ 50 և հատկապես տակը գրված ծանոթությունը)։

† ՊԻՏԵՆԱՅ, ար. < հյ. ժղ. պիտենալ «պիտանի լինել, պետք գալ» բայից։ Այս անունով գիտենք միայն՝

— Պիտենայ (սեռ. հոլով), որդի Զամէնտիկինի՝ հորաքրոջ Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Ղրիմ) գրել տվեց մի Աստուածաշունչ 1352 թ.— Ձեռ. Վասպ. 7։

† ՊԻՏԵԻԱՆ, ար. < հյ. ժղ. պիտեան «պիտանի, պիտու» բառից (հմմտ. Պիտենայ անունը)։ Ըստ իս այսպես պետք է ուղղել Ցպիտվան ձևը, որ հիշված է 1608 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 695)։

ՊԻՐԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Պիրան, տեր Սիւնեաց, հաջորդեց Միհր-Արտաշրին (Է դար).— Օրբ. ժգ։

Պիրինիկ տես Պրինիքա։

† ՊԼԻԿ, ար. < Վանի բարբառով նշանակում է «փոքր դրամ»։ Այս անունով գիտենք միայն՝

— Պլիկ ոմն, որդի Պուտախի. կինն է Կուլիկ. թվականն անհայտ է։— Ձեռ. Վասպ. 618։

* ՊԼՏՈՒԽ, ար. < Թրք. bulduq «գտանք» ձևից. իբրև անձնանուն գտնում ենք՝

— Պլտուխ, հայր Դանիէլ տրեղայի. մեռած էր արդեն 1425 թ.— Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83ա)։ Այլ ոմն հիշված է նաև 1503 թ. (Ձեռ. Վասպ. 620)։

ՊԽԻԿ, իգ. ծագումն ինձ անհայտ. այս ձևը ենթադրում եմ սեռ. Պխկեն ձևից, որ երկու անգամ հիշված է 1648 թ. (Ձեռ. Վասպ. 909)։ Վանի բարբառով -իկ վերջացող մի խումբ բառեր այս ձևով են սեռ. կազմում. ինչ. պապիկ, սեռ. պապկէ, որոշիչ հոդով՝ պապկեն։

ՊՂՕՉ, իգ. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ 1613 թ. (Ձեռ. Վասպ. 845՝ հարցականով (?)։

ՊՆԻԿ, ար. ծագումն ինձ անհայտ. այս անունով հիշված է մելիք մի, 1704 թ. (Ձեռ. Դագեան, Բ. 14բ)։

*ՊՈՂԻԿԱՐՊՈՍ, ար. < հուն. Πολύκαρπος անունից, որ բուն նշանակում է «բազմապտուղ, պտղառատ, պտղաշատ»։ Այս անունով հայտնի է Ս. Պողիկարպոս (=լտ. Polycarpus, ֆրանս. Polycarpe), եպիսկոպոս Զմիւռնիոյ, նահատակված 169 թ։ Շփոթվելով Պօղոս անվան նախավանկի հետ՝ հաճախ գրվում է սխալմամբ Պօղիկարպոս։ Ըստ Հայաց. 334 սրա կրճատ ձևն է Կարպոս (տես առանձին), որի անունով մի վանք կա Երզնկայում (ժողովրդական ստուգաբանությամբ հաճախ մեկնված «կայ ի փոսի»)։

— 1. Պօղիկարպոս, գլխավորն է 7 խոտաճարակների, որոնք Պարսից Միհրան զորավարի արշավանքի ժամանակ ընդդեմ Գայլ Վահանի, նահատակվեցին Պարսից ձեռքով «604 թ»։— Մամիկ բ. Յայսմ. սեպտ. 30։

— 2. Պօղիկարպոս, առաջնորդ Արշարունեաց Կամրջաձորի վանքի. եղբայր և հաջորդ Յովհաննէսի. մասնակցեց Անիի եկեղեցական ժողովին՝ գահընկեց անելու համար Վահան կաթողիկոսին «969 թ».— Ասող. Գ. է, ը. Այրարատ 548։

— 3. Պաւղիկարպոս, վանական Սանահնի վանքի, որ ինքը սկսեց շինել 966 թ. մեռել է 970 թ.— Մովսէսեան, Լոռի Գիւր. Թգ. 23։

— 4. Պօղիկարպոս քահանա Թոնդրակեցոց աղանդից. իր ընկեր Նիկանորայի հետ եկավ մկրտվեց և այս անունն ստացավ (ԺԱ դար).— Մագ. Թղ. կէ։

— Ավելի ուշ հիշատակված է Պօլիկարբոս մի հայ կաթոլիկ, որ մեռել է 1782 թ. մնում է իր տապանաքարը (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Ա. 312)։

*ՊՈՂԻԿՏՈՍ, ար. < հուն. Πολύευκτος անունից, որ նշանակում է «շատ ցանկալի» (πολύ շատ+εὐκτός «ցանկալի» բառերից)։ Այս անունով հայտնի է՝

— Ս. Պօղիկտոս հայազգի, Մելիտինեցի (Դ Հայք), հռովմէական բանակի հարյուրապետ։ Արևելքի կուսակալ Փելիքսը շատ բարձր գնահատելով նրա արժանիքը, իր միակ աղջկան՝ Պաւլինէին ամուսնացրել էր նրա հետ։ Դեկոս կայսրը մեծ հալածանք հանեց քրիստոնյաների դեմ։ Պողիկտոսը իր ընկեր Նէարքոսի քարոզությամբ քրիստոնյա էր դարձել և քաղաքի 12 կուռքերը կործանել։ Փելիքսը շատ աշխատեց փրկել փեսին,

Պաւլինէն էլ շատ աշխատեց համոզել և ետ դարձնել իր ամուսնուն իր կրոնից, բայց ի զուր։ Պողիկտոսը նահատակվեց Մելիտինէ քաղաքում 254 կամ 259 թ. և նրա դիակի վրա իր կինն էլ քրիստոնյա դարձավ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ա. 446—461. Ցուցիկք Բ, 237—278)։— Ֆրանսիացի Corneille ունի նրա վրա մի գեղեցիկ ողբերգություն՝ Polyeucte անունով, գրված 1643 թ., հյ. թրգմ. Հ. Գ. Վ. Հ(իւրմիւզ), Պոլիկտոս հայկազն, Վենետ. 1858։ Նորերս իր մասին մի հոդված Տաթև տարեցույց 1928, էջ 225—231 և Տեղեկ. Ակադ. 1946, № 6, էջ 66 (Վ. Թերզիբաշյանի հոդվածը)։

ՊՈՂԻՒՄԻՈՍ, ար. ծագումն անհայտ։ Այս անունով հայտնի է «Թագավոր Հայոց Մեծաց», որի եղբայրը՝ Աստիադէս (կամ Աժդահակ) մորթադեծ մահվամբ նահատակեց Բարթուղիմէոս առաքյալին (Հացունի, Կարևոր խնդ. 66).— առասպել։

ՊՈՄՐՈՄ, մր. ծագումն ինձ անհայտ. հիշված է անթվական մի հիշատակարանում (ժէ դար).— Ջեռ. Մաղն. էջ 6—7։

ՊՈՎՐՈՍ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշատակված է՝

— Պովրոս մելիք Վասպուրականում. գնեց մի Աւետարան, որ արտագրել էր Ռոմանոս վարդապետը 1276 թ.— Ջեռ. Վենետ. Ա. էջ 426։

ՊՈՏՈՒՉ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ շուրջ 1550 թ. (Ջեռ. Դաղեան, Բ. 47ա)։

ՊՈՐԳԷ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք՝

— Պօրգէ իշխան Ազուանից, որ հիշված է Աշոտ Գ Ողորմածի կեղծ նվիրագրում, 976 թ.— Սմբատեանց, Երնջակ 419։

*ՊՈՒԼԷ, ար. < թթր. بوله böle «քրոջ որդի» (Будагов I, 293ա). այս անունով ունինք միայն՝

— Պուլէ, որդի Փանիկի և հորեղբայր Խզըրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.— Rapport Belgique 34։

ՊՈՒԼՏԱՃ, ար. ծագումն ինձ անհայտ. այս անունով կա միայն՝

— Պաւլտաճ, եղբայր տէր Յովհաննէսի, 160 դահեկան է տվել Հաղբատի ժամատան շինության համար։ Հիշված է Հաղբատի առաջնորդ Յովհաննէսի 1221 թվի մեծ արձանագրության տակ իբրև հավելված։ Հայտնի չէ սակայն թե Պուլտաճը այս Յովհաննէսի՞ եղբայրն է և արձանագրությունը նույն թվի՞ց է։ — Երզնկեանց, Հնախ. տեղագր. 24։

ՊՈՒՂԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. գործածական է Ղարաբաղում և տարբեր է Պուղի < Պօղոս անունից։

* ՊՈՒՂԻԿ, ար. < Պօղոս անվան փաղաքշականն է, որ ավանդված է 1513 թվից (Օրբ. ժմ. յաւել. 46 = Սիսական 34ա)։

ՊՈՒՃԱ, սեռն անհայտ. մի անգամ հիշատակված է Դարբանդի Պօղոս-Բուլաղի գերեզմանատան անթվական մի տապանագրում (Բարխուտ. Աղվ. երկ. էջ 110)։

Պուսաք տես Ապուսեք:

ՊՈՒՏԱԶԻԶ, ար. վերջին մասն է արաբ. عزيز ʻazīz, որ տես Ազիզ. հայտնի չէ միայն Պուտ։ Իբրև անձնանուն հիշված է 1663 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 537)։

Պուտախ տես Բուդաղ:

Պուրուճ տես Պրիճիթա:

ՊՌՆԴՈՒԽ, սեռն ու ծագումը անհայտ. (արդյոք Պարոճդուխտ). կա միայն Պըրըճդուխ ոմն, որի տապանաքարը մնում է Շամախու Վանքաշէն գյուղում, 1408 թվից.— Բարխուտ. Աղուանից երկ. 205։

ՊՌՕՇ, ար. ծագումն ինձ անհայտ։ Գործածված է ԺԳ—ԺԶ դարերում։

— 1. Պռօշ, թաղվել է Գանձակի եկեղեցիներից մեկում (ավելի հին քան Պռօշ իշխան որդի Վասակի).—Հայապ. 529։

— 2. Պռօշ կամ Հասան-Պռօշ, որդի Վասակ իշխանի Խաղբակեան և թոռն Հաղբակ Բ-ի. եղբայր Պապաքի և Մկդէմի. քաջ և շինարար իշխան Խաչենեցի. հաջորդեց իր հոր 1223—5 թվերին. այնքան նշանավոր հանդիսացավ, որ իր Խաղբակեան տոհմը այնուհետև կոչվեց իր անունով Պռօշեան։ Հուլաղու խանի զորավարներից մեկն էր։ ԺԳ դարի 30ական թվերից սկսած մինչև 80-ական թվերի կեսերը նա ասպարեզի վրա էր։ Մասնակցել է հայրենիքի պաշտպանության համար մղված բոլոր պատերազմներին։ Մասնակցել է Թաթարների արշավանքին՝ պաշարելու Բաղդադը։ Քաղաքը գրավելու ժամանակ՝ անդամ էր այն դեսպանության, որ գնաց Արաբների Մուսթասար խալիֆայի մոտ և պահանջեց անձնատուր լինել (1258 թ)։ Մասնակցել է նաև Նփրկերտի (կամ Մուֆարղինի) արշավանքին և այդ քաղաքի գրավման (1258—60 թ)։ Գնել է Այրիվանքը, որ նոր շինություններով զարդարել և կալվածներով ապահովել է։ Դրել է այնտեղ նաև Գեղարդը, որով և վանքը կոչվել է այնուհետև Գեղարդայ վանք։ Ինքն է շինել նաև Թանահատի վանքը։ Նվեր-

ներ է արել Խաչենի Կոշիկ անապատին (1244 թ), Դսեղի Բարձրաքաշ Ս. Աստուածածնին և Ս. Գրիգորին (1247 թ) և Կարբիի Յովհաննավանքին (1247 թ)։ Այս բոլորը հիշատակված է նույն վանքերի արձանագրությանց մեջ։ Կինն է Խութլու խաթուն (տես և Խոստաճ), որդիներն են Մկդէմ, Վասակ, Հասան և Պապաք. աղջիկն է Գոհար խաթուն։ Մեռել է 1284 թ. և թաղվել Հեչառու վանքում։ Իր ընդարձակ կենսագրությունը գրեց Գ. Յովսէփեան (այժմ կաթողիկոս Կիլիկիոյ), Խաղբակեանք, էջ 85—136 (գերդաստանը և ճյուղագրությունը տես գրքի վերջում դրված տախտակում)։— Կիր. ծը, ծթ. Մխ. այրիվ. 80, 81, 83. Միխ. աս. իը (=իէ). Օրբ. կդ, կը. Օրբ. ժմ. 28.— սեռ. Պռօշայ՝ Օրբ. կգ, կդ, կե, կը. Այրիվ. 18բ.— Հասան՝ Կիր. ժ, ծը, ծթ։— Այրարատ 268—269, 339—344, Սիսական 119, 120, 121, 137, 139, 140, 156, 174—6, Շահխաթ. Ա. 65, Բ. 365, Նոտարք 192, Արցախ 169, 205. Շողակաթ 25, 41, 45. Հայապ. 529.— Նույնպիտի լինի նաև Պռօշ իշխան Արարատի, հիշված Խոշաքի, Սագունի և Սմբատի հետ 1270 թ (Կանոն. 180, 186)։— Մահվանից հետո, 1286 թ. դեռ իբրև կենդանի! հիշատակված է Մարտիրոս գյուղի մի արձանագրության մեջ (Սիսական 176)։

— 3. Պռաւշ, որդի Խելօքի, որ Յակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան՝ Արգելանայ վանքում, 1294 թ.— Ձեռ. Վասպ. 116, 119, 120։

— 4. Պռոշ իշխան, որ հիշատակված է Նորս գյուղի մի խաչքարի արձանագրության մեջ 1326 թ.— Սիսական 486։

— 5. Պռօշ պարոն, Ծար գավառի իշխաններից. հիշված է 1411 թ.— Նոտարք 39։

— 6. Պռաւշ, մին է Խաչենի իշխաններից. հիշված է Դուրսունի տված հրամանագրում Խութավանքին 1411—30 թվերի միջև։— Շահխաթ. Բ. 359, Արցախ 208։

— Պռօշ անունը հիշատակված է նաև 1560 թ. (Խաղբակեանք 250)։

†ՊՍԱԿ, ար. < հյ. պսակ բառից, իբր թրգմ. հուն. Ստեփանոս անվան. ըստ այսմ Շնորհ. Յս. որդի (տող 449—452) գրում է Ստեփաննոս նախավկայի համար.

Եւթանց սրբոց զոր ընտրեցին,
Սարկաւագաց փոքու հօտին,
Որոց նախնի պարուց դասին,
Պսակ անունն է ընդ նորին։

— 1. Պսակ վարդապետ, Պոլսից բերավ Կիւրղի Պարապմանց գիրքը՝ Սիւնեաց Ստեփաննոս († 735) եպիսկոպոսի հրամանով.— Պրպմ. 516։

— 2. Պսակ եպիսկոպոս Սեբաստիոյ, ժամանակցեց Հռոմկլայի եկեղեցական ժողովին «1179 թ».— Շնորհ. պտճ. 199։

— 3. Պսակ անունն էր կրում մի կրոնավոր, որ ապա փոխեց և դարձրեց Իգիդ, 1420 թ.— մանրամասն տես Իգիդ։

† ՊՍԱԿՈՒՀԻ, իգ. < Նախորդ անվան իգականն է։

— Պսակուհի (կամ Ստեփանուհի), թարգմանված է հույն կամ հռոմայեցի մի նահատակուհու անվան վրայից։ Այս նահատակուհու վկայաբանությունը դեռ անտիպ է։— Ձեռ. Վեննա. Բ. էջ 7։

† ՊՍՏԻԿ, ար. < հյ. պստիկ «փոքր» բառից. հմմտ. Փոքրիկ. Փոքր-տիկին, Թրք. Küčük-xan. հիշված է 1638 թ. (Առաք. պատմ. 246)։

† ՊՍՏԻԿ ԽԱԹՈՒՆ, նույն է ինչ որ Փոքր-տիկին. հիշված է 1647 թ. (Ձեռ. Վասպ. 269), 1742 թ. (անդ 565, տպված Պստիկ խաթուն), անթվ. (անդ. 268), Պստի խաթուն, անթվ. (անդ 230), Պզտիխաթուն 1470-ից ուշ (Ձեռ. Վեննա. Ա. 589)։

† ՊՏՈՒՂ, ար. < հյ. պտուղ բառից. հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Պտուղ, գրիչ կամ փորագրիչ Անիի մի մեծ արձանագրության 1320 թ.— Շիրակ 63։

— 2. Պտուղ (սեռ. Պտղո՜), հայր Դանիէլ կրոնավորի, որի համար Գրիգոր Արծկեցին օրինակեց Աւետարանը Մաղարդի վանքում, 1427 թ.— Ձեռ. Վեննա. Ա. 414։

† ՊՏՈՒՄ, ար. < հյ. բտում կամ պտում բառից, որ է «բեւեկնի ծառը, pistacia terebinthus L». բառիս ծագումը տես Արմ. բռ. բտում ձևի տակ։ Իբրև անձնանուն հիշված է 1642 թ. Նոր-Ջուղայում (Ջքր. սարկ. Բ. 34). սրանից է Բուդումեան ազգանունը (Նոր-Բայազիտ)։

* ՊՐԻՃԻԹԱ, իգ. < լատ. Brigita (ֆրանս. Brigitte) անունից։ Այս անունով հայտնի է կաթոլիկ եկեղեցում սրբուհին Brigita (հյ. տառադարձված Պրիկիտա), կույս և աբբայուհի, պաշտպան Իռլանդիոյ, † 525 թ։ Մեր մեջ գործածված է Պերիճիտէ ձևով 1771 թ. (Տաշեան, Ցուց. 493) և կրճատ Պուրուճ ձևով՝ 1758 թ. (անդ 821)։ Հիշված է 1796 թ. էֆիմէրաէ, էջ 448 Պրիճիքա ձևով՝ իգական անունների ցանկում։ Նույն պիտի

վին նաև Պիրիճիկ իգ. անունը, որ լսել եմ Պոլսում (մի թաղու սկիզբը ծնված մի կնոջ անունն էր) և որ ձևով բոլորովին նույնացրած է թրք. birijik «մեկ հատիկ, միակ» բառի հետ (իբր թե հյ. Մեճտիկին)։ Պրիճիքա և Պիրիճիկ երկուսն էլ արևմտյան տառադարձությամբ են։

* ՊՐՈԽՈՐՈՆ, ար. < հուն. Πρόχορος (=լտ. Prochorus) անունից։ Բուն նշանակում է «պարապետ, պարի կառավարիչը, նա որ պարախմբի առջև պարում է»։ Այս անունով հայտնի է 72 աշակերտներից մեկը։ Հին ձևով տառադարձված է Պրոքորոն, որին վերագրում են Վարք Յովհաննու առաքելոյ, Հանգիստ Յովհաննու և Տեսիլ Յովհաննու։— Ըստ Զամչ. Գ. 862 այս անունը «ռամիկք բոլոխրոն կոչէին»։ (Ռուս. այժմ էլ կա Прохор).

— 1. Պրոխորոն, «դեռաբուսիկ որդի» կամ Ստեփաննոսի՝ եղբայր Վարդան քահանայի և կամ նույն Վարդան քահանայի, որ Երզնկայում գրել տվեց մի Ավետարան և վաճառեց մի ուրիշ Վարդան քահանայի, 1397 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 45։

— 2. Պրոխորոն, վարդապետ Սիլիստրեցի (կամ Ռուսճուքցի), մի քանի ազդեցիկ մարդկանց շահելով՝ Սուլթանից պատրիարքության հրովարտակ ստացավ և ուզեց տապալել Յակոբ Նալեան պատրիարքին «1749 թ»։ Ժողովուրդը մերժելով, Պրոխորոնը ենիչերիների միջոցով ուզեց տիրանալ գահին։ Սուլթանը լսեց և Պրոխորոնին աքսորեց։— Ազգապ. 2968։ (Սրա գրած մի քանի տաղերը տես Tübingen, էջ 98)։

— Այս անունով հիշատակված են նաև Պրոխորոն սարկավագ †1629 թ. (Մխուսան 536 բ), այլ ոմն 1691 թ. Սպահանում (Ձեռ. Թաւր. 10 աբ)։

* ՊՐՈԿՂ, ար. < հուն. Πρόκλος ձևից, այս էլ փոխառյալ լտ. Proculus անունից, որ ծագում է լտ. procul «հեռու» բառից և նշանակում է բուն «հորը բացակայության ժամանակ ծնված (երախա)» (իբր Ղրբ. փորամնայ)։ Հունարենից է նաև ռուս. Прокл. Այս անունը գործածված չէ մեր մեջ և այժմ էլ չկա. գիտենք միայն՝

— Պրոկղ եպիսկոպոս Արճիշոյ (Πρόκλος ἐπίσκοπος 'Αργίζης), ներկա եղավ Քաղկեդոնի ժողովին (451 թ).—Պալճեան 14, Հացունի, Կարևոր խնդ. 352։

* ՊՐՈԿՈՊԻՈՍ, ար. < հուն. Προκόπιος անունից, որից փոխառյալ են նաև լտ. Procopius, ֆրանս. Procope, ռուս. Прокофий. Նույն բառը նշանակում է բուն «առաջադեմ» և ծագում է

Προκόπτω «առաջադիմել» բայից։ Այս անունը տարածված չէ մեր մեջ. կա միայն՝

— Պրոկոպիոս, առաջնորդում էր Բուրդիկի հետ միասին՝ Լևոն Զ Իմաստասեր կայսեր բանակին, Բուլղարների դեմ պատերազմի ժամանակ. երկուսն էլ հաղթվեցին և սպանվեցին Բուլղարների ձեռքով. Պրոկոպիոսը կոչված է Կրինիդէս։— Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 361—2։

* ՊՕՂՈՍ (հին գրչությամբ Պաւղոս), ար. < հուն. Παῦλος անունից, որ փոխառյալ է լտ. Paulus, որ և Paullus անունից, և նշանակում է «փոքր, փոքրիկ, սակավիկ»։ Այսպես և սրա նվազականը՝ paululus կամ paullulus «շատ փոքր, շատ քիչ», որ նույնպես արական անձնանուն է։ Կա և սրա իգականը՝ paula, paulla «մի քիչ, փոքրիկ» և իգական անուն՝ Paula, Paulla, գրված նաև Polla։ Նախաքրիստոնեական անուն էր Հռովմայեցոց մեջ. հմմտ. Paulus Aemilius հյուպատոս հռովմայեցի, Ն. Ք. 219 և 216 թ., Paulus Aemilius Macedonicus նրա որդին, հյուպատոս Ն. Ք. 181 և 168 թ, հաղթեց Պերսէոսին։ Այս անունը նշանավոր դարձավ Պօղոս առաքյալի միջոցով և տարածվեց բոլոր քրիստոնյա ազգերի մեջ. ինչ. ֆրանս. Paul, անգլ. Paul, գերմ. Paulus, Paul, իտալ. Paolo, ռուս. Павел, փաղք. Павлуша են։ Հիշելու արժանի են Paulus Julius քերականագետ՝ Ադրիանոս կայսեր ժամանակ, Paulus Tullius բանաստեղծ, Paulus Julius խորհրդական Սեպտիմոս Սևերոսի, իրավաբան, Պօղոս անապատական Եգիպտացի († 341), Պօղոս Սամոսատցի, հերձվածող, Պօղոս Ա պապ Հռովմի՝ 757—767 թ, Պօղոս հույն բանաստեղծ և պատմաբան, գլխավոր քարտուղար Յուստինիանոս կայսեր (Զ դար), Պօղոս Ա կայսր Ռուսաց 1796—1801 թ. են։ Իբրև արանվան օրինակ հիշված է Թր. քեր. 13, 39, Դաւ. քեր. 88, 123, Անան. քեր. 139, Միւն. քեր. 196, 204, 215, 218, Համամ. քեր. 262, Տաթև. հարց. 3, 107, 236, Տաթև. ոսկիփ. 99, Առաք. պատմ. 334, Պօղոսեան՝ Միւն. քեր. 206։ Հների ստուգաբանական փորձերից են՝ «Պօղոս, որ է ընտրեալ ի բազմաց և զարմանալի բազում քարոզութեամբն. Պօղոս ընտրեալ կամ զարմանալի լսի» (Որոտնեցի. տես Նւթաղ, էջ 79 ծան). «Պօղոս թարգմանի յԵբրայեցւոց բերան փողոց, կամ ընտրեալ զարմանալի. իսկ յոյնն՝ հանգարտ, և ի լատինն՝ փոքր» Տաթև. ամ. 692 (իմա եբր. פלא pla «զարմանալի», հուն. παῦλα «դադար, հանգիստ», լտ. տես վերը)։ Այս անունը գործածված է մեր մեջ Ե դարից սկսած և

այժմ էլ շատ սովորական է՝ Պօղոս, կրճատ Պուղի (հնագույն հիշատակությունը Պուղիկ ձևով՝ ԺԵ դար տես Սիսական 34 ա), օտարաձև Փավլի ձևերով։ Հայերենից է փոխառյալ չերքեզ. Buγus արական անունը։

— 1. Պօղոս, աշակերտ Սահակի և Մեսրոպի. ուղարկվեց Դավիթ Անհաղթի, Մովսեսի, Մամբրեի և Աբրահամի հետ Պոլիս, ուսման և թարգմանության համար.— Զարբ. Հին դպր. 317. Հայապ. 195. Կոնիբիր, Բնն. դաւ. անհ. 18, 20. Ցղ. մովս. և դաւթի, էջ 45, 50, 80, 86.—սեռ. Պօղոսի՝ Ցղ. մովս. և դաւթի, էջ 51։

— 2. Պօղոս ծայրագույն վարդապետ, աշակերտ Ղազար Փարպեցու (Ե դար).— Մ. մաշտ. 336ա, Տաշեան՝ Ցուց. 1032։

— 3. Պօղոս եպիսկոպոս Գնունեաց, ժամանակակից Բաբկէն («490—516 թ») կաթուղիկոսի.—բց. ի Պօղոսէ՝ Գիրք թղ. ը։

— 4. Պօղոս երեց Գեղամայ, անդամ Աղուէնի եկեղեցական ժողովի՝ Վաչագան Գ թագավորի օրով (Զ դար).— Կղկնտ. Ա. իգ. կանոն. 192։

— 5. Պօղոս, հայրն է Հունաց Մորիկ կայսեր. ըստ հունաց՝ ազնվական էր, ըստ հայոց ավանդության՝ Օշականցի հասարակ երկրագործ. մեռել է 593 թվին։— Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 26, 297, 303--4։

— 6. Պօղոս, որդի Հունաց Մորիկ կայսեր. գլխատվեց իր հոր հետ Փոկասի ձեռքով 602 թ.-- Տէր Սահակեան, Հայ կայսերք Ա. 305։

— 7. Պօղոս Սամոսատացի, հիմնադիր Պաւլիկեան աղանդի։ Ըստ Պետրոս Սիկիլիացու՝ Կալլինիկէ անունով մանիքեցի մի կին ունեցավ երկու որդի՝ Պօղոս և Յովհան. առաջինի անունով նոր մանիքէական աղանդը կոչվեց Պաւլիկեան և Սամոսատից տարածվեց Փանարիա, որ է Եպիսպարիս։ Փոտ պատրիարքը գրում է, որ Պօղոսը հայ էր և ուներ երկու որդի՝ Գեննեսիոս և Թէոդորոս։ Պօղոսը եկավ Եպիսպարիս և տարածեց այդ աղանդը, որ իր անունով կոչվեց Պաւլիկեան։ Ոմանք ընդունում են այս կարծիքը և Պաւլիկեան աղանդի հիմնադիր Պօղոսին հայ են համարում. Չամչեանը մերժում է, ասելով որ Փոքր Հայքի օտարազգի մի բնակիչ էր այն, որին հայ են համարել։ Սարգիսեան (Ուսումնասիրութիւն Մանիքէա-Պաւղիկեան Թոնրակեցիներու աղանդին, Վենետիկ 1893, էջ 34—37 և 47--48) ընդունում է Պօղոս անունով մի հայազգի, որ Է դարի երկրորդ կեսին քա-

րոզել է այդ աղանդը, բայց նրա հիմնադիրը ինքը չէ։ Իրոք էլ «Հերձուածոց գրքում» հիշված է Պօղ ոմն Արարատցի, որ ամուսնացել է Շեթի անունով մանիքեցի կնոջ հետ և այդ աղանդը տարածել է. «Ապա կին մի Շէքի անուն՝ այնր աղանդոյն, ելեալ զկնի Թուրքացն, եկն ի Հայս, և Պօղ ոմն յԱյրարատեայ գաւառէն, որ աշակերտեալ էր սորոյն Նփրեմի, առեանգեաց զկինն, և խառնակեցաւ աղանդն ընդ քրիստոնէութիւնս» (Արրտ. 1892, էջ 113)։ Այսպես է ընդունում նաև Փափազեան, Պատմ. եկեղ. 325, որ համարում է Պօղոսին հայ աղանդապետ. ըստ արտաքին պատմութեան նորոգեց Մանիքեցոց աղանդը, որոնց գլուխ և առաջնորդ հանդիսացավ՝ Ներսէս Շինողի կաթուղիկոսութեան և Յովհաննէս Մանազկերտցու տեղապահութեան ժամանակ («653—9 թ»)։ Սրանք մերժում էին եկեղեցու խորհուրդները, սրբերի պատկերները և խաչի նշանը։ Սրանք միանալով Արաբների հետ այնքան զորացան, որ Ը և Թ դարերում Բիւզանդական պետութեան դեմ մեծ բանակ կազմեցին և խոշոր ճակատամարտներ ունեցան։

— 8. Պօղոս՝ հեղինակ Մեկնութեան Հին քերականութեան. հիշված է Համամ.քեր. 270 ի Պաւղոսէ ձևով, որ համարում են Պօղոս առաքյալը. իսկ Մանանդեան, Յունաբան դպրոց, էջ 213 ցույց է տալիս թե պետք է հասկանալ վերի ձևով։

— 9. Պօղոս վանական Աղածարայ (706 թ).—Կղկնտ. Գ. ը։

— 10. Պօղոս արմենիակ (այն է հայ-հոռոմ), սպարապետ հունաց բանակի. կռվեց արաբների դեմ և մեռավ Մելասի ճակատամարտում Մալաթիոյ և Կեսարիայի միջև (760 թ).— Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 332։

— 11. Պօղոս երեց Տէրունականի. իբրև վկա հիշվում է Տաթևի 881 թվի կալվածագրում.— Օրբ. լԹ։

— 12. Պօղոս, դրան քահանա, վանական Խանդլին վանքի, անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը.— Անան. ապստ. 134բ։

— 13. Պաւղոս, վերակացու և վանահայր Կղաւտոյ գավառի Տալաշոյ վանքի, 1018 թ.— Ջեռ. Վասպ. 76։

— 14. Պաւղոս, հայր Մելիտինէի Ս. Գրիգոր վանքի, 1057 թ.—Շողակաթ 193։

— 15. Պօղոս կաթուղիկոս Մարաշի. Վարագայ Ս. Նշան վանքի վանահայրն էր. «1085 թվին» Փիլարտոսի հրամանով կաթուղիկոս նստավ Մարաշում. մեռել է «1093 թ».—Սամ. անեց.

118. Ուռհ. 228, 229, 231, 244. Գր.եր. 374. Վրդ. կր.—սեռ. Պօղոսի՝ Ուռհ. 229։

— 16. Պօղոս եպիսկոպոս. Վարագի Ս. Նշանը տարավ Ուռհա 1092 թ.— սեռ. Պօղոսի՝ Ուռհ. 242։

— 17. Պօղոս վարդապետ Տարօնեցի. նստում էր Մշոյ Ղազարու վանքը. Սանոյ իշխան Զորտուանէլի հրամանով գրեց «Թուղթ ընդդէմ Թէոփիստէս հայ-հոռոմ փիլիսոփայի» 1101 թվին, որ ապա, խոր ծերության ժամանակ, 1122 թվին, ավելի ընդարձակելով՝ կազմեց առանձին գիրք (տպ. Պոլիս 1752)։ Մեռել է «1123 թ» և թաղվել նույն վանքում։ Իրեն են վերագրում անթվական մի դամբան (տես Սարգիսեան, Տեղագր. 232)։ Կոչված է «Մեծ իմաստասէր, այր հրաշալի, երկրորդ լուսաւորիչ»։ Ունի նաև Վերլուծութիւն կարգաց եկեղեցւոյ (Ձեռ. Վենետ. Բ. 1145), Ճառ յաղագս Քառասնորդաց պահոց, Ճառ յաղագս Առաջաւորաց պահոց։— Ուռհ. 179, 355. Տարօն. Ա. § 2, Բ. § 25.— սեռ. Պօղոսի՝ Մ. մաշտ. 260 բ. Տարօն. Ա. § 1. Մեծոփ. 38.— Զարբ. Հին դպր. 605. Զամչ. Գ. 21. Հայապ. 396 բ. Ձեռ. Վենետ. Բ. 474. Տաշեան՝ Ցուց. 1142 բ։

— 18. Պաւղոս, վանահայր Խծկօնից վանքի. նորոգել է վանքը և հանգուցյալ վանահայրերի համար քառասունքի և մատաղի օրենք է դրել 1153 թ.— Արձ. Շիրակ 127։

— 19. Պօղոս Տարսոնացի, հայ-հոռոմ քահանա Պոլսում, չարախոսում էր հայերին և խանգարում միության խնդիրը. Շնորհալին («1166—1173 թ») գրեց նրան՝ ուղղության հորդորելու համար.— Շնորհ. Թղ. 207. Ալիշան՝ Շնորհ. էջ 420։

— 20. Պօղոս վանական Հոռոմաշէն վանքի. հորդորեց Մխիթար (№ 38) Գօշին գրելու Դատաստանագիրքը (1184 թ). Մխիթարը կոչում է նրան «աշակերտ Սուրբ Գրոց»։— Մխ. դատ. նախդր. բ.—սեռ. Պօղոսի՝ անդ ժա։

— 21. Պօղոս միաբան Սաղմոսավանքի. գերի տարվեց Դուին, ուր հազիվ ազատվեց կախաղանից 1187 թ.— Միաբան, Գոր. և շմ. էջ 54։

— 22. Պօղոս վարդապետ. սրա քեռորդին էր Կարապետ եպիսկոպոսը, որ գրել տվեց մի Աւետարան՝ Կիլիկիոյ Պօղոսական անապատում, 1193 թ.— Շահազիզ, Պատմ. պատկ. 130։

— 23. Պօղոս պալատական Լևոն Բ-ի, որ դեսպան ուղարկեց նրան Պոլիս, կայսեր մոտ՝ Ներսէս Լամբրոնացու և Հալկամի հետ, «1197 թ».— Սմբ. պտմ. 109։

— 24. Պօղոս քահանա Սեբաստացի, գրիչ. օգնությամբ Խաչատուր Սիունեցու և Պապանունի, օրինակեց Ցայսմավուրքը, 30 ձեռագրերի համեմատությամբ (ԺԲ դար).— Manus. bibl. nat. էջ 99։

— 25. Պօղոս հոգևոր եղբայր Առաքել գրչի, որ օրինակեց Ավետարանը Կամխի անապատում, 1203 թ.— Ձեռ. Վեննա. Ա. էջ 420։

— 26. Պօղոս ոմն, նվիրատու ձեռագրի, Տարօնում 1204 թ. — Հայապ. 450։

— 27. Պօղոս աշակերտ Մխիթար Գոշի († 1213). մեռել էր և Մխիթարի հրաշքով հարություն առավ!!— Կիր. յաւելւ

— 28. Պօղոս վարդապետ, առաջնորդ Հաւուցթառի, 1214 թ. — Ձեռ. Վեննա. Ա. 593, Այրարատ 356։

— 29. Պօղոս վարդապետ Երուսաղէմի Ս. Յակոբայ վանքում՝ 1223 թ.— Գիրք Թղ. դե.— իր անունով կա Ս. Կույսի վրա մի տեսիլք, որ տեսել է իր աշակերտը՝ 1223 թ.— Ցայսմ. ապր. 7։

— 30. Պօղոս, աշակերտ Գրիգոր վարդապետի, որ նրա համար Սանդղուլ անապատում Գրիգորիս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1228 թ.— Սրուանձտեանց, Թորոս աղբ. Ա. 64։

— 31. Պաւղոս վարդապետ, միաբան Խծկոնից վանքի, հիշված է 1208, 1221, 1233 և 1236 թ.— Արձ. Շիրակ 128—130, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 26։

— 32. Պօղոս աշակերտ Գրիգոր «պատուաւոր վարդապետի», որոնց համար Գրիգորիս երգեցող Սսեցի գրիչը արտագրեց Ավետարանը՝ Կիլիկիոյ Անդրուլ անապատում, 1238 թ.— Սիսուան 230 ա։

— 33. Պաւղոս աբեղա, որի գերեզմանը գտնվում է Հաղբատի հասարակաց գերեզմանատան մեջ 1247 թ.— Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 63, Ազգագր. հանդ. Է, 413։

— 34. Պօղոս աբեղա Գետկայ վանքի. աշակերտ Մխիթար Գոշի. երեց եղբայր և առաջին ուսուցիչ Վանական († «1251 թ») վարդապետի.— Ցայսմ. յնվ. 31. Հայապ. 462։

— 35. Պօղոս վարդապետ, եղբորորդի Յովհ. Վանական վարդապետի. նրա հետ միասին գերի ընկավ Թաթարների ձեռքը «1236 թ». Վանականի հետ հիշված է 1244 և 1246 թվի երկու արձանագրության մեջ (Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ

175, 177)։ Վանականի մահից հետո հաջորդեց նրան՝ իբր վանահայր Խորանաշատի «1251 Թ»։—Կիր. իբ, ծա։

— 36. Պօղոս ճգնավոր և առաջնորդ Մամասայ վանքի, որ նորոգեց իր ընկեր Սէթի հետ «ի բնակալութեան Աթաբակ Իւանէի».— Օրբ. խթ. (Սիսական 163 դնում է ըստ Աբէլ վրդ. Մխիթարեանի 1251 թ)։

— 37. Պօղոս սարկավագ, եղբայր նշանավոր կազմարար Առաքելի Հնաղանդենց, որի մասին տես առանձին. 1260 և 1262 թվին Պօղոսը արդեն հիշատակվում է իբրև հանգուցյալ.—Թորոս աղբ. Ա. 189, Ջեռ. կես. ածած. 63բ, Ջեռ. Հալէպի, Ա. 55. Ջեռ. Սեբ. (ՀԱ 1942, 333), Սիսուան 298. Նաթանեան՝ Տեղեկ. Սեբաստ. 86. (ըստ Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Բ. 32 Պօղոս սարկավագը Առաքելի հայրն է)։

— 38. Պօղոս եպիսկոպոս, առաջնորդ Անդրիասեանց վանքի (Բարձրբերդ) 1244—64 թ. սրան նվիրեց Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսը իր մի սեփական Աւետարանը՝ 1264 թ.— Ջեռ. Վեննա. Ա. 652, Սիսուան 149, 150։

— 39. Պօղոս վարդապետ, գրիչ. օրինակել է Աւետարանը 1275 թ. Ծաղկոց վանքում.— Ջեռ. Կարին. 18։

— 40. Պօղոս եպիսկոպոս, առաջնորդ Փրկչի վանից. հիշված է 1280 թ.— Թորոս աղբ. Ա. 215։

— 41. Պօղոս միաբան Արքայակաղնի վանքի. բազմարդյուն գրիչ. օրինակեց Յովհ. Ոսկեբերանի «Ճառ ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ» 1273 թ. (Սիսուան 253 բ, Զարբ. Թրգմ. 472, Տաթև. 1927, 183), մի Աւետարան Դաւիթ եպիսկոպոսի համար՝ Արքայակաղնի վանքի առաջնորդ Տիրատուր արքեպիսկոպոսի հրամանով, 1280 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունի 50, 397, Ջեռ. Սեան. 8 ա), իսկ Կոստանդին քահանայի համար էլ նույն վանքում օրինակեց ու ծաղկազարդեց մի Աւետարան, 1284 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 57։

— 42. Պօղոս երեց, վերջին ստացող մի Աւետարանի 1295 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1924, 515։

— 43. Պօղոս քահանա, թուղթ էր կոկում Խաչատուր սարկավագի համար, երբ սա օրինակում էր Աւետարանը Պերճեր վանքում, 1299 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 684։

— 44. Պօղոս կրոնավոր, եղբայր Սարգիս քահանայի, որ Պերճեր վանքում, Խաչատուր սարկավագին գրել տվեց մի Աւետարան, 1299 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 684, Սիսուան 152։

— 45. Պաւղոս քահանա, որին սպանեցին Պարսիկները. Նրա քրոջ որդի Սեթը նրա հիշատակին շինեց մի եկեղեցի Վայոց ձորի Քարագլուխ գյուղում (ԺԳ դար).—Արձ. Սիսական 162։

— 46. Պօղոս վարդապետ Կիլիկեցի, միաբան Ակներ վանքի. եկավ աշակերտելու Եսայի Նչեցուն՝ Գլաձորի վանքում. օրինակեց Աւետարանը՝ Տարսայիճ—Ստեփաննոս Օրբելեանի համար, 1314 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 29 բ։

— 47. Պօղոս, հայր Մխիթար գրչի, որ Գայլաձորի վանքում օրինակեց Գիրք լուծմանցը 1315 թ.—Հայապ. 526։

— 48. Պօղոս քահանա, ուսուցիչ Աստուածատուր գրչի, որ օրինակեց Աւետարանը, 1317 թ. այս թվին Պօղոսը արդեն մեռած էր.—Manus. brit. mus. 20 բ։

— 49. Պօղոս քահանա, որդի Խաչերի, Փոսի անապատում, Ստեփաննոս գրչին գրել ավեց մի Աւետարան, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։

— 50. Պօղոս արքեպիսկոպոս հասպիական կողմանց (Սարայ քաղաք՝ Վոլգայի վրա). ստացավ մի Աւետարան 1319 թ.—Տաշեան, Ցուց. 885։

— 51. Պօղոս վարդապետ. գրիչ. Վայոց ձորում օրինակեց Աւետարանը՝ Սահակ կրօնավորի համար, 1321 թ.— Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 565)։

— 52. Պօղոս քահանա, այն Շարակնոցը՝ որ օրինակել էր Ցովսէփ քահանան Սսում, կազմեց 1322 թ.—Ձեռ. Սանաս. 4 ա։

— 53. Պօղոս Ա. (ըստ օտարաց Պետրոս), պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Դաւիթ Ա-ին և նստավ 1321—23 թ. (Աղաւնունի)։

— 54. Պօղոս քահանա, եղբայր Պետրոս քահանայի. կազմեց այն Շարականը, որ օրինակեց Սսում Ցովսէփ քահանան, 1323 թ.—Սիսուան 223 ա։

— 55. Պօղոս դեռաբույս պատանի, քեռորդի Փերճեր վանքի (Կիլիկիա) վանահայր Թուխանի. Նրա համար Կոստանդին քահանան օրինակեց Շարականը՝ նույն վանքում, 1325 թ.—Սիսուան 153 ա, REA 8, 30։

— 56. Պօղոս հովիվ, հայր Գորգի և Գրիգորի, նվիրեց 300 դրամ Գրիգորին՝ գրելու համար Աւետարանը Դրազարկի կամ Փոսի վանքում, 1325 թ.—Սիսուան 234 բ։

— 57. Պօղոս, հայր Մխիթար գրչի, որ Եկեղեաց գա-

վառի Երկայնի վանքում օրինակեց Հին Կտակարանը 1327 թ.— Ձեռ. Վեննա. Ա. 160։

— 58. Պօղոս վարդապետ, ուսուցիչ Աստուածատուր երեցի, որ օրինակեց Աւետարանը, 1327 թ.—Ձեռ. Ազուլ. (Արար. 1911, 460)։

— 59. Պօղոս որդի Ստեփաննոս քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ իր քեռորդի Ներսէս վարդապետի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1328 թ. այս թվին Պօղոսը արդեն մեռած էր «արեամբ նահատակեալ».—Manus. brit. mus. 87 ա։

— 60. Պօղոս քահանա, որին հիշում է Գրիգոր գրիչը իր օրինակած Ոսկեբերանի Մեկնութեան Մատթէի հիշատակարանում, Ակներ 1329 թ.—Սիսուան 155 բ։

— 61. Պօղոս քահանա, որդի Կարապետի, Կիլիկիայի Ս. Աստուածածին և Ս. Նշան վանքում, Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1334 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 698։

— 62. Պօղոս, որդի Մարտիրոս քահանայի. ապրում էին Երուսաղէմի Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ, 348։

— 63. Պօղոս, որդի Յովհաննէս քահանայի և եղբայր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում գրեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191։

— 64. Պօղոս եպիսկոպոս Կոկիսոնի, անդամ Սսոյ ժողովի «1343 թ»։—Ազգապ. 1869։

— 65. Պօղոս սարկավագ, որդի Թագւոր ժամկտավագի. ստացավ մի Շարակնոց 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։

— 66. Պօղոս կրոնավոր «յազնուական տոհմէ», եղբօրորդի հանգուցյալ Յովհաննէս վարդապետի, միաբան Մշոյ Առաքելոց վանքի։ Այլազգիները կողոպտեցին վանքը, 1371 թ. միաբանները փախան զանազան կողմեր, վանքի գրքերն էլ թաղելով։ 7 տարի հետք վերադարձան. Պօղոս կրոնավորը երևան հանեց մի հին ձեռագիր Աստուածաշունչ, որ շատ էր եղծվել, և իր ծախսով նորոգել տվեց Յովհաննէս գրչին 1378 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 127։

— 67. Պօղոս աբեղա Առաքելցի (Առաքել գյուղից), գրիչ. Իտալիայի Բոլոնիա քաղաքում, 1381 թ. արտագրել է լատինական Միսալը, որ Ֆրանցիսկեան Բոնիֆացիոս հայագետ վարդապետը թարգմանել էր հայերենի, 1344 թ. Ավինիոնում.—Manus. bibl. nat. էջ 47, Գաթըրճ. Պտրգմ. 472—3։

— 68. Պօղոս աբեղա, եղբօրորդի Յովհաննէս վարդապետի,

միաբան Ղազարու վանքի. նորոգել տվեց Ս. Գրքի մի ձեռագիր 1378 թ.—Հայապ. 548։

— 69. Պօղոս Ա Սսեցի, կաթողիկոս Հայոց «1374—1382 թ». հաջորդեց Կոստանդին Ե Սսեցուն. տեսավ հայոց Ռուբինեան թագավորության վախճանը և Լևոն Զ-ի հետ գերի գնաց Կահիրէ. բայց Սուլթանից արտոնություն ստացավ վերադառնալու իր աթոռը Սիս (1375 թ), ուր անցկացրեց կյանքի մնացյալ մասը. մեռավ 1382 թ. իրեն հաջորդեց Թէոդորոս Բ Կիլիկեցի։—Առաք. պատմ. 330. Ազգապ. 1937—60։

— 70. Պաւղոս, որդի Առաքելի (№ 39), որ Կամախի Կախմըխի գյուղիցն էր, ազատեց մի Աւետարան և նվիրեց նույն գյուղի եկեղեցուն 1383 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— 71. Պօղոս երեց, գրիչ. օրինակեց Նւագրը 1384 թ.—Սարգիսեան, Նւագր. ներած. էջ ճեը։

— 72. Պօղոս վարդապետ, ծախել է մի Աւետարան՝ Շահի որդի Սարգսին 1384 թ.—Տաշեան, Ցուց. 934։

— 73. Պօղոս վարդապետ, Վանի կոտորածի ժամանակ, Զաքարիա արքեպիսկոպոսի հետ միասին գերի ընկան Լենկթիմուրի ձեռքը. բայց ազատվեցին երկուսն էլ Զաղաթայ մի իշխանի բարեսրտության շնորհիվ «1387 թ».—Մեծոփ. 31, Զամչ. Գ. 425. Ազգապ. 1978։

— 74. Պաւղոս, վանահայր և առաջնորդ Վարագայ վանքի. կենդանի էր դեռ 1393 թվին. մեռել էր և նրան հաջորդել էր իր եղբայրը՝ Սահակ արդեն 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429, Նոտարք 2, 10։

— 75. Բօղէ (իմա Պօղոս), ռէս, հիշված է անթվական մի հիշատակության մեջ, որ սակայն 1353 թվից ուշ է։—Ձեռ. Թաւր. 135 բ։

— 76. Պօղոս եպիսկոպոս Արտազի. սա է որ ձեռնադրել է Կիրակոս Վիրապեցուն (ապա կաթողիկոս), «1397 թ». ըստ Ազգապ. 2114։ Բայց Զամչ. Գ. 453 կոչում է Պետրոս (Մեծոփ. յիշ. 54 Պօղոս, իսկ 88 ձ. Պետրոս)։

— 77. Պօղոս որդի Զաքարիայի, եղբայր Յովհաննէս Մշեցու, որ օրինակեց Աւետարանը՝ Ղազար երեցի համար, 1402 թ.—Manus. brit. mus. 39 ա։

— 78. Պօղոս աբեղա, որդի Քօչբէկի, մայրն է Ջոհար, միաբան Գամաղիէլ վանքի. Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Յայսմաւուրք և նվիրեց նույն վանքին, 1407 թ.

գրել է մի եղերերգություն, որ տաճկական գրաքննիչը արգելել է տպել.—Նոտարք 26—7 (համտ. № 81)։

— 79. Պօղոս, մերձավոր Մարտիրոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1410 թ.—Ջեռ. Վասպ. 164։

— 80. Պօղոս քահանա, Յովհաննէս քահանայի հետ միասին ունեին մի Ճառընտիր, որ օրինակելու համար տվին Ստեփաննոս գրչին, Տշող գյուղում, 1415 թ.—Նոտարք 45։

— 81. Պօղոս, միաբան Գամաղիէլի վանքի 1427 թ.—Նոտարք 83 (համտ. № 78)։

— 82. Պօղոս քահանա, հայր Թումայ եպիսկոպոսի, որ էր առաջնորդ Բուխտանից երկրի, 1428 թ.—Նոտարք 90։

— 83. Պօղոս Գառնեցի կամ Արարատցի, աշակերտ Գրիգոր Տաթևացու. իր դասընկեր Մատթէոսի հետ Երուսաղէմում էր. ընտրվեց իբր հաջորդ Սարգսի և նստավ պատրիարք Երուսաղէմի «1413—1418 թ», Պօղոս Բ անունով։ Յակոբ Գ կաթողիկոսի թունավորումից հետո, Գրիգոր Ը Խանձողատի ապօրինի արարքները քննելու համար, իր ընկերոջ՝ Մատթէոսի հետ ուղարկվեց Սիս «1417 թ», Գրիգորին գահազուրկ արեց և աքսորել տվեց «1418 թ»։ Իր քաղցր բնավորության պատճառով ամենքին սիրելի դառնալով՝ ընտրվեց կաթողիկոս Պօղոս Բ անունով «1418—1430 թ»։ Գնաց Երուսաղէմ ուխտի Մատթէոս վարդապետի հետ, այնտեղ Յովանէս աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք և Սամուէլ Երզնկացուն էլ մի Տարեգիրք և դարձավ Սիս 1423 թ (Սիսուան 541)։ Սսում շինեց Ս. Աննայի վանքը «1423 թ» և Արևելքից միաբաններ բերելով՝ կարգ ու կանոն մտցրեց այնտեղ։ Այդ կարգերից զայրացած լատինամոլ միաբանները թունավորելով սպանեցին նրան «1430 թ»։—Ազգապ. 2045—2064. Թորոս աղբ. Բ. 425 (հիշված է իբր կաթողիկոս 1426 թ). Առաք. պատ. 336. Նոտարք 48 (ՊԿԵ=1416 թ. սխալը Ե և Է տառերի պատճառով). Տաշեան՝ Ցուց. 359. Սամ. անեց. շար. 173—4 (տալիս է միայն 2 տարի)։

— 84. Պօղոս քահանա Խարբերդցի, գնեց մի հին Գանձարան, 1435 թ.—Manus. brit. mus. 121 բ։

— 85. Պօղոս արքեպիսկոպոս, առաջնորդ Մշոյ Առաքելոց վանքի։ Իր ժամանակ քրդերը կողոպտեցին վանքը՝ Վարդան քահանայի մատնությամբ, 1439 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 128, Հայապ. 549։

— 86. Պօղոս եպիսկոպոս սուրբ ուխտին Առաքելոց (Տի-

րինկատարի)․ Թղթակից անդամ Էջմիածնի մեծ ժողովի «1441 Թ»․—Մեծոփ․ յիշ․ ա։

— 87. Պօղոս աբեղա, կանգնեցրել է իր անունով մի խաչքար Արճէշի Արծուաբեր վանքում, 1450 Թ.—Նոտարք 163։

— 88. Պօղոս մահտեսի, հայրն է Ստեփաննոս՝ «որ կատարեցաւ յանօրինաց», մայրն է Զուհար, եղբայրներն են՝ Թումայ քահանա և Աստուածատուր «որ սրախողխող եղև յանօրինաց»․ իսկ մի ուրիշ ազգականն էլ՝ Գոհար, «քարավէժ եղև ի բերդն Զռայլուն»։ Ստեփաննոս կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, Ջերմաձորի Փոքր Ակոռի վանքում, 1451 Թ.—Նոտարք 168։

— 89. Պօղոս, առաջնորդ Եղիազարու վանքի 1453 Թ.—Նոտարք 172։

— 90. Պօղոս, որդի Աստուածատուրի և հանգուցյալ եղբայր Ղազար վարդապետի՝ ուսուցչի Պօղոս աբեղայի, որ Բաղէշում օրինակեց մի Աւետարան՝ պարոն Ամիրդօլի խնդրանօք 1455 Թ.—Նոտարք 178։

— 91. Պօղոս աբեղա, որդի Մխիթարի, մայրն է Սիրմայ, եղբայրներն են՝ Կիրակոս, Մարտիրոս և խօճա Յակոբ․ իր հոգևոր հայրը և ուսուցիչն է Ղազար վարդապետ․ պարոն Ամիրդօլի խնդրանօք օրինակեց մի Աւետարան, Բաղէշի Ամիրդօլայ վանքում, 1455 Թ.—Նոտարք 178։

— 92. Պօղոս Ախքիրմանցի, իր Պետրոս եղբոր հետ կերակրում էին Նիկողայոս եպիսկոպոսին, երբ նա գրում էր Ճաշոցը՝ 1459—60 Թվերին.—REA 10, 62։ Հմմտ. № 103։

— 93. Պօղոս վարդապետ, աշակերտ Ղազար վարդապետի, եղբայրն է Աղուպշայ։ Յովհաննէս աբեղայի հետ միասին ժողովարարութեան է գնացել Բաղէշ և արդյունքը պայմանագրով հանձնում է Ամրդօլու վանքին, 1461 Թ.—Նոտարք 198—9։

— 94. Պօղոս կրոնավոր, հօրեղբայր Անդրէաս երէցի, որ Եւդոկիայում օրինակեց մի Աւետարան, 1463 Թ։ Այս Թվին Պօղոսը մեռած էր։—Ջեռ. Սեբ. (ՀԱ 1925, 133)։

— 95. Պաւղոս, հայր Խութլու մելեքի՝ կնոջ մահտեսի Յովհաննէսի, որ Էջմիածնում փրկանքով ազատեց մի Աւետարան, 1464 Թ.—Ջեռ. Վասպ. 384։

— 96. Պօղոս, տանուտերներից մեկն է Նորագեղի, 1465 Թ.—Նոտարք 221, Այրարատ 320։

— 97. Պօղոս ժամակալ Առբերդոյ վանքի (Մոկաց գավառում), 1466 Թ.—Նոտարք 225։

— 98. Պաւղոս սարկավագ, որ Յովհաննէս եպիսկոպոսի խնդրանօք, Յակոբ քահանայի հետ միասին օրինակեցին Ճաշու գիրքը Խարբերդի Սինամուտ թաղում, 1466 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 479։

— 99. Պօղոս ոՖ, հիշված Բիւրականում, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1114։

— 100. Պօղոս եպիսկոպոս, առաջնորդ Կամախի Վարդենեաց վանքի, 1476 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 247։

— 101. Պօղոս վարդապետ, գրիչ. Մուշում, խոճա Յովսէփի համար արտագրեց Աւետարանը 1479 թ։—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, էջ 262։

— 102. Պօղոս հայրապետ, առաջնորդ Կամախի Աւագ կամ Թադէոս առաքեալի վանից, 1484 թ.—Թորոս աղբ. Բ. 302։

— 103. Պօղոս քահանա Աքքիրմանցի. դիմեց Սուլթան Բայազիտ Բ-ին և Սամաթիոյ եկեղեցու շրջափակի վերաշինութեան հրովարտակ հանեց 1485 թ.—Պ. Կարապետեան, Հնգ. յիշատ. Սամաթիոյ 38։ Հմմտ. № 92։

— 104. Պօղոս կրօնավոր, հօրեղբայր Գրիգոր քահանայի, որ Սեբաստիայում, Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան, 1485 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 598։

— 105. Պօղոս, եղբայր Գալուստ աբեղայի, որ Կեչառուսում օրինակեց Աւետարանը, 1491 թ.—Ձեռ. Սևան. 10 բ։

— 106. Պօղոս վարդապետ, ուսումնակից Աւագտէրի, որ Սարգիս վարդապետի աշակերտն էր, ապա առաջնորդ Սրկղունից Սպիտակաւոր վանքի, մեռած 1498-ից քիչ առաջ։—Խաղբակեանք 232։

— 107. Պօղոս ոՖ, գրել է «Սուղ ինչ վասն Երգոց երգոյն Սողոմոնի. Պաճար գոլով ես յիմաստնոց հանդիսի ևն».—Թվականն անհայտ է. բայց նախ քան 1625 թ.—տես Տաշեան, Ցուց. 722։

— 108. Պօղոս տաղասաց. թվականն անհայտ. բայց ԺԲ դարից ուշ.—տես Հացունի, Պատմ. տարազի 224։

— 109. Պօղոս Դաշտեցի. ունի «Խուզարարութիւն քահանայական» Ձեռ. Վեննա. № 1451.—թվականն անհայտ. տես Սարգիսեան, Եւագր. Ներած. ճձե։

— 110. Պօղոս, որդի Ումեկ քահանայի և եղբայր Աւետիք քահանայի, որ Զաքարայ երեցից գնեց մի Աւետարան 1500 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 68 բ։

— 111. Պօղոս Կարնեցի. գաղթեց ու հաստատվեց Պոլսի Սամաթիա թաղը. Նշանավոր Թրքագետ էր, որի համար էլ կոչվել է Մոլլա Պօղոս (Նաև Քիթ Պօղոս, իր քթի խոշորության համար). ԺԶ դար.—Գ. Կարապետեան, Հնգ. Ցիշատ. Սամաթ. 60։

— 112. Պօղոս վարդապետ Բարեցի կամ Մոկացի. միաբան Վարագայ վանքի, ուր աշակերտել էր Զաք Կարապետ վարդապետին։ Սրբակյաց և ուսումնական մարդ էր. քարոզելով շրջեց Թաւրիզ, Ագուլիս, Նախիջևան ևն։ Շատ տեղեր հիմնեց եկեղեցի, որոնց համար շահից էլ հրովարտակ հանեց։ Մելքիսեթ կաթուղիկոսի հալածանքին ենթարկվելով՝ քաշվեց Հարանց մեծ անապատը, ուր ճգնական կյանքով ապրելով՝ մեռավ «1621 թ»։—Առաք. պատմ. 165, 192, 198, 201—216, 222, 224, 273, 278. Հայապ. 619։ Զամչ. Գ. 566—96։

— 113. Պօղոս սարկավագ Սղերդցի. նոր ամուսնացած, քաջ ու գեղեցիկ պատանի էր։ Մահմեդականները մի նենգավորական ասորի էին թուրքացրել և հանդեսով բերել էին հայոց եկեղեցու առաջ, որպեսզի ուրացության քարը գցի եկեղեցուն։ Իրեն հետևելով մյուս տաճիկները, սկսեցին քարկոծել եկեղեցին։ Ներսում պատարագ կար, որին մասնակցում էր նաև այս Պօղոսը։ Մինչ բոլորը սարսափած սկսեցին այս ու այն կողմ փախչել, քաջ Պօղոսը դուրս վազեց, քարերով հալածեց ամբոխը և նրանց թուղն ու դրօշը խորտակեց։ Բռնեցին նրան, տարին դատավորին և հավատքը չուրանալու պատճառով ողջ ողջ այրեցին 1691 թ.—Նոր վկ. 525—7>Ազգմ. 2745։

— 114. Պօղոս բժիշկ Կարնեցի, 1714 թ.—Թորգոմեան, Ներբող 27։

— 115. Պօղոս վարդապետ Երուսաղէմացի, տաղասաց. ունի մի խումբ կրոնական տաղեր (հայերեն և թուրքերեն), ընդհանրապես Տնօրինական վայրերի մասին, որոնց գրության տարին 1717—1731 թվերի մեջ է.—Ձեռ. Հալէպի, Բ. էջ 64—66։

— 116. Պօղոս վարդապետ Վանեցի. ունի Վաղարշակերտի (Ալաշկերտ) հալածանաց ոտանավոր պատմությունը 1735 թ.—Այրարատ 532—3։

— 117. Պօղոս Երեց, տաղասաց. ունի մի տաղ Խանում Նահատակուհու վրա, որ նահատակվեց Ալաշկերտում 1755 թ. տաղի ծայրանունն է Պօղոս Էրեց. հրատարակված է Նոր վկ. 562—5։ Ունի և մի ուրիշ տաղ «Տուփ խնկալի անուշահոտ».—Տաշեան, Ցուց. 1142 ա։

— 118. Պօղոս Դ Վանեցի, պատրիարք Երուսաղէմի «1768—1775 Թ». հաջորդեց Կարապետ Գանձակեցուն. իր օրով Եգիպտոսի բանակալ Ալի բէկը Պաղեստինի վրա արշավեց, Երուսաղէմը գրավեց, վանքերին մեծ նեղություն պատճառեց («1770 Թ»)։ Երկրորդ անգամ Աբու Տահապը արշավեց Պաղեստին, բոլոր վանքերը կողոպտեց ու ավերեց։ Պօղոսը լսելով այս բոլորը, սարսափից հիվանդացավ և մի քանի օրից մեռավ «1775 Թ»։—Ազգապ. 3075. Ջամչ. Գ. 867, 877։

— 119. Պօղոս քահանա Կաղզուանցի, եղբորորդի Զաքարիա Կաղզուանցի պատրիարքի. գրել է նրա ժամանակի պատմությունը (ԺԸ դար).—Ազգապ. 3095։

— 120. Պօղոս վրդ. Մարուշեան, պատրիարք Պոլսի կաթոլիկ հայոց. հաջորդեց Անտոն Նուրիճանին՝ 1838 Թ.—Պալճեան, էջ 177։

— 121. Պօղոս Յուսուֆեան, Զմիւռնիացի. Եգիպտոսի փոխարքա Մեհմեդ-Ալի փաշայի խորհրդականը, քարտուղարը, Թարգմանն ու գանձապետն էր (1830-ական Թվերին)։ Եղավ Եգիպտոսի շինարարը. իր օրով և իր իմաստուն կառավարությամբ Եգիպտոսը և նրա հետ նաև Ֆէսը, Երջանիկ Արաբիան, Նուբիան և Եթովպիոյ մի մասը ծաղկյալ երկիրներ դարձան։ Իբր Եգիպտոսի Արտաքին գործոց պաշտոնյա դաշնագիր կնքեց Անգլիոյ հետ 1839 Թ. որով վերջ տրվեց Եգիպտական պատերազմին։—Պէրպէրեան, Պատմ. Հայոց 243, Ազգապ. 3637։

— 122. Պօղոս Գրիգորեան, Ադրիանուպոլսեցի, տգետ, նույնիսկ հայերեն չիմացող, Թուրքախոս հասարակ դերձակ էր։ Ուսման մեծ սեր ունենալով, 28 տարեկան հասակում, ծառա ու դռնապան մտավ մի վարդապետի, ապա մի վարժապետի մոտ և ինքնօգնությամբ հայերեն սովորեց։ Արաբերեն սովորելու համար Եգիպտոս գնաց և պարսկերեն սովորելու համար էլ Բաղդադ, միշտ ծառայելով իբր դերձակ։ Բաղդադում, ուր իրեն մահմեդական էր ձևացնում, այնքան սիրելի դարձավ իր արհեստապետին, որ սա ուզեց նրան փեսայացնել։ Պօղոսը իր հայ լինելը հայտնեց և փախավ Երուսաղէմ։ Այստեղ սարկավագ ձեռնադրվեց. բայց արտաքինով խեղճ ու ողորմելի, ինքն էլ համեստ ու քաշվող, մինչև իսկ վարդապետների շարքը կանգնել չէր համարձակվում։ Պատրիարքը մի օր պատահմամբ լսելով նրա պերճախոս քարոզը ուխտավորներին, կանչում է իր ներկայության, և մինչդեռ Պօղոսը սպասում էր պատիժ և հանդիմանություն,

ծաղկյա փելոնով վարձատրվում է և պատրիարքարանի քարտուղար է նշանակվում։ Այնուհետև Պողոսը իր գործունեությամբ հռչակավոր դառնալով, «1814 թ» ուղարկվում է էջմիածին՝ եպիսկոպոս ձեռնադրվելու և «1815 թվին» էլ ընտրվում Պոլսի պատրիարք։ Գահակալում է մինչև «1823 թ»։ Իր ժամանակ տեղի ունեցավ հայ և կաթոլիկ համայնքների միության փորձը (Հրաւէր սիրոյ), որ սակայն ձախող հետևանք ունեցավ։ Պողոսը գահից հրաժարվեց։ Այնուհետև ընտրվեց Երուսաղեմի պատրիարքության «ծայրագույն կառավարիչ» «1824 թ» և այս անունով եղավ պետ և վարիչ Երուսաղեմի, ցույց տալով պատրիարքներից ավելի ազդու գործունեություն։ Մեռավ «1853 թ»։ Թողել է զանազան կրոնական գործեր, որոնցից գլխավորներն են Ջանազանութիւն հինգ դարուց (հայատառ թուրքերեն, որ Խրիմեան Հայրիկը էջմիածնում թարգմանել տվեց և հրատարակեց 1901 թ. 3 հտ.) և Թանգարան խրատուց։—Ազգապ. 3894։

— 123. Պողոս Թաքթաքեան, պատրիարք Պոլսի «1863—1869 թ». հաջորդեց Սարգսին, որ հրաժարվել էր «1861 թ»։ Ժողովրդական դժգոհության պատճառով ստիպվեց հրաժարվել ինքն էլ «1869 թ»։—Ազգապ. 4084, 4163։

— 124. Պողոս Պետրոս ԺԱ Էմմանուէլեան, կաթուղիկոս կաթոլիկ Հայոց «1899—1904 թ», իբր հաջորդ Ստեփաննոս Պետրոս Ժ-ի.—Ազգապ. 5374։

— 125. Պողոս Պետրոս ԺԲ Սապպաղեան, կաթուղիկոս կաթոլիկ Հայոց. հաջորդեց Պողոս Պետրոս ԺԱ-ին «1904 թ»։—Ազգապ. 5374։

# Ջ

*ՋԱԼԱԼ, ար. և իգ. < արաբ. جلال ǰalāl անունից, որ բուն նշանակում է «փառք, վեհություն, մեծություն». հատկապես իբր անձնանուն գործածվում է جلال الدين ǰalāl-ad-dīn «փառք կրոնի»։ Սրանից է Ջալալեան ազգանունը, որ Արևմտահայոց մեջ Ճէլալեան ձևն ունի։

— 1. Ճալալ, հիշված է իր քրոջ Բաւրինայի և նրա որդի Տեառնորդու հետ՝ Աղուանից Ներսէս Բ. կաթուղիկոսի արձանագրության մեջ, Խորանաշատ 1246 թ.—Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 177։

— 2. Ջալալ մեծ իշխան Խաչենի. այս անունով պետք է հասկանանք Հասան-Ջալալ-Դոլան, որ տես վերը։— Իր անունով մի Արձ. կա Գանձասարում, թվագրված ըստ Շահխաթ. Բ. 372 ՉԾԵ=1306 թվին, իսկ ըստ Արցախ 174—5 ՉԺԵ=1266 թվին։ Երկուսն էլ սխալ են։ Շահխաթ. սխալ է, որովհետև այդ թվին ժամատունը նոր է շինվում, մինչդեռ ժամատան արձանագրությունը հայտնի կերպով ասում է թե ժամատունը արդեն շինված էր ՉԻԹ=1280 թվին։ Արցախն էլ սխալ է, որովհետև ՉԺԵ=1266 թվին Ջալալ-Դովլան արդեն մեռած էր։ Ուստի թվականը պետք է կարդալ Ե էական բայով «թուին ՉԺ Ե» (=1261)։ Ըստ այսմ արձանագրությունը Ջալալ-Դոլայի մահից միայն մի քանի ամիս առաջ է ընկնում։

— 3. Ջալալ, թվի թէ որդին է Բլ-Հասան բժշկի, որ մի կալված է նվիրել Հոռոմոսի վանքին 1273 թ.—Արձ. Շիրակ 22բ։

— 4. Ջալալ Պահլաւունի, Հայոց մեծաց պարոն, «ի զարմէ Լուսաւորչին սրբոյն Գրիգորի». սրա դուստրը (անունն անհայտ) կինն էր Օշին պայլի՝ եղբոր Հեթում Ա թագավորի և մայր Հեթում պատմիչի և Օշին իշխանի, որ սպանվեց Պիլարղուի ձեռքով «1307 թ».—Չեռ. Դաղեան, Բ. 30ա։

— 5. Ջալալ Բ, մեծ իշխան Սիւնեաց, որդի Աթաբակ Ա-ի (№ 1) և թոռն Հասան-Ջալալ-Դոլա նահատակի († 1261 թ)։ Հաջորդեց իր հոր՝ Աթաբակին, որ գահ էր բարձրացել 1261 թվին և դեռ իշխում էր 1282 թվին. իսկ 1293-ին արդեն գահակալում էր Ջալալ Բ (Բարխուտ. Պատմ. աղվ. 205, Արցախ 170, Բանաս. 1901, 137)։ Ըստ Օրբ. ժմ. 30 Աթաբակը մեռել է 1287 թ։ Ըստ այսմ Ջալալ Բ գահակալած պետք է դնել այս թվին և դեռ կենդանի էր 1311 թվին, ըստ մի Արձ. Շահխաթ. Բ. 376։ Սրա որդին է Աթաբակ Բ. (№ 2), որ կոչվել է թոռն «մեծ Աթաբեկի».- ուստի այս վերջին բառով պետք է հասկանանք Աթաբակ Ա-ը։ Ջալալը հայրն է Ազուանից Յովհաննէս (№ 1148) կաթուղիկոսի, որ գահակալեց 1441 թ. մյուս որդիներն են Աղբասան, Աթաբէգ և Ամիր-Հասան։— Չեռ. Դաղեան, Ա 89բ, Բ 30բ, Բանաս. 1901, 138, Նոտարք 187—8։ (Կասկածական է թըվում 1311-ից մինչև 1441 թ. մի սերունդի համար)։

— 6. Ջալալ, որդի Տարսայիճ իշխանի Օրբելեանց՝ իր երկրորդ կին՝ Մինայից, որ Հասան-Ջալալ-Դոլայի աղջիկն էր, որով այս Ջալալը լինում է մեծ Ջալալի աղջկաթոռը։ Ստեփաննոս մետրապոլիտ Օրբելեան պատմիչի եղբայրն է։ Երբ Ելիկում

Օրբելեանց հաջորդեց իր հօր Տարսայիճին, «1290 թ», Ջալալն էլ ստացավ Սիւնեաց երկրի մի մասի իշխանությունը։ Մեռած էր 1314 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 30ա)։ Այս Ջալալի որդիքն են Ազբուղա, Ելիկում, Շահնշահ և Տարսայիճ-Ստեփաննոս արքեպիսկոպոս Սիւնեաց։—Օրբ. կե, կթ.— սեռ. Ջալալի՝ Օրբ. կե.— բցռ. ի Ջալալէ՝ Օրբ. հ։— Ջամչ. Գ. 284. Սիսական 191 (Արձ. 1292 թ), 196 (Արձ. 1296 թ), 525։

— 7. Ջալալ, իշխան Խաչենի և Մեծկողմանց. հիշված է 1383 թ. մեռել է 1431 թ. և գերեզմանը գտնվում է Գանձասարի գավթում. մահվան թիվը տապանագրում նշանակված է ՊՁ=1431. սրա որդին է Պաստամ (հիշված 1471 թ. տես վերը Բաստամ № 1) և թոռը՝ Տուրսուն (հիշված 1493 թ. տես վերը Դուրսուն № 3)։— Արցախ 176, 178, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 44, 61 (մահվան թիվը սխալմամբ դրել է 1436), Շահխաթ. Բ. էջ 374—5։

— 8. Ջալալ, հայր Տէր Վարդանի, որ մի հող է նվիրել Գանձասարի վանքին 1443 թ.—Շահխաթ. Բ. 376, Ջալալ. Ա. 188 > Նոտարք 130։

— 9. Ջալալ բէգ պարոն, Մակուեցի, հայր Գրիգոր Ժ (№ 637) Մակուեցի կաթողիկոսի, որ գահակալել է «1443—1465 թ».— Ջամբռ 101, Ազգապ. 2129։

— 10. Ջալալ խաթուն, կին Ստեփաննոսի և մայր տանուտեր Կարապետ (№ 204) Մանկաբօնի, որ Փաշայ տիկնոջ փեսան էր և օգնեց գրչությամբ այն Աւետարանի, որ Փաշայ տիկինը գրել տվեց Վանում, 1451 թ.— Ձեռ. Վասպ. 412։

— 11. Ճալալ խոճայ, իբրև վկա ստորագրում է մի կտակագրի, 1461 թ.— Manus. brit. mus. 31ա։

— 12. Ջալալ իշխան Աղուանից, որդի Թոմասի (№ 218), հայր Ախիջանի, նստում էր Ցօրայ ամրոցում (ԺԵ դար).— Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 132, Արցախ 67, (107).

Ջանան տես Ջիհան:

*ՋԱՀԻԼ, ար. և իգ. < արաբ. جاهل ǰāhil բառից, որ բուն նշանակում է «տգետ», բայց ժողովրդական գործածության մեջ դարձել է «երիտասարդ»։ Իբր ար. հիշված է 1679 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 91), Ճըհիլ իգ. անթվ. (Թորոս աղբ. Բ. էջ 369)։

*ՋԱՄԱԼ, ար. և իգ. < արաբ. جمال ǰamāl «գեղեցկություն» բառից. գործածական է նաև Տաճկաց մեջ ǰemal ձևով իբր ար.

անուն և جمیله ǰemile ձևով իբրև իգ. անուն։ Սրանից է Ջամալեանն ազգանունը։

— Ջամալ, դուստր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան 1455 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 582։

— Ավելի ուշ հիշատակված է Ջամալ իգ. 1606 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84), Ճամալ ար. 1662 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 52), մի ուրիշը՝ 1678 թվից հետո գրված անթվ. մի հիշատակարանում (Ձեռ. Ն. Բայազ. 2բ), Ջամալ ար. 1749 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 450)։

ՋԱՅԼԱՄԱՐ, իգ. ծագումն անհայտ. այս անունով գիտենք կին մի Աժդահակի (Մուրացան) ցեղից. ժամանակակից Երուանդ Բ-ի. իր անունով է կոչվել Ջլմար ամրոցը.—Արծր. Ա. ը։

* ՋԱՆ, ար. < պրս. جان ǰān «հոգի, հոգյակ» բառից։ Կա նաև կոչ. Ջանօ 1682 թ. (Ձեռ. Վասպ. 1004) և հոգով՝ Ջանուն (կարդա Ջանօն)՝ անթվ. (անդ 774)։

— 1. Ջան տես Ամսաջան (հավելված)։

— 2. Ճան (սեռ. Ճանին), որդի Սաւղաթմիշի և եղբայր Նուրիճանի, որ Ագուլիսում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Ցայսմաւուրք 1481 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 299։

— Ավելի ուշ Ճան հիշված է 1554 թ. (Manus. brit. mus. 193 ա), 1581 թ (անդ 32 ա)։

* ՋԱՆԱԴ, ար. < արաբ. جنّت ǰannat «դրախտ» բառից։

— Ջանադ, հայր Վարդանի, որ իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թ. կալվածագրում.— սեռ. Ջանադայ՝ Օրբ. լը։

* ՋԱՆԱԶԻԶ, ար. և իգ. < պրս. جان ǰān + արաբ. عزيز ʻazīz «մաքուր, պատվական, նվիրական» բառերից։ Հիշատակված է ԺԳ—ԺԷ դարերում. կրճատ ձևերն են Ջանազ, Ջանաս, Ջնազ և Ջանօ: (Կա և Ջանասեանց ազգանունը 1490 թվից, Ագուլիսում մի խաչքարի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. ԺԱ. 302)։

— 1. Ջանաս, հայր Տուտարի, որ Հին Ղարաբուլաղ գյուղի (Դանձակ) Վերի Վանքում կանգնեցրել է մի խաչքար, 1271 թ. — Արցախ 254։

— 2. Ջանազիզ, կին Դովլաթշահի՝ որդւոյ խոջա Ջաւզի, որ գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

— 3. Ջանազիզ, քեռորդի Հարիբ տիկնոջ (№ 4), որ իր ամուսին Ասոմի հետ միասին մի Աւետարան գրել տվեց Աղբակի Երնկանի գյուղում, 1498 թ.— Ձեռ. Վասպ. 526, 528։

— Ավելի ուշ հիշատակված են Ջանազիզ ար. 1533 թ. (Ձեռ.

Վենետ. Ա. 717), 1570 թ. (Ձեռ. Վասպ. 672), 1603 թ. (անդ 845), Ջանազ իգ. 1632 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 33ա), Ջնազ 1638 թ. (Ձեռ. Վասպ. 894), անթվ. Ճանազիզ իգ. (Ձեռ. Ազուլ.= Արրտ. 1911, 760, գրված 1389 թվից ուշ), Ջանօ (Ձեռ. Վենետ. Ա. 789)։

*ՋԱՆԱՂԱ, իգ. < պրս. جان ǰān «հոգի» և آغا āγā «աղա» բառերից, իբր թե ǰān-i āγā «աղայի հոգին կամ հոգյակը»։ Հակադարձն է Աղաջան, որ սակայն աղա ձևի փաղաքշականն է։ Ջանաղա գործածված է ԺԶ—ԺԹ դարերում։ Հնագույնն է Ջանաղա 1517 թ. (Թորոս աղբ. Բ. 275), 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), 1562 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 157), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 688), 1585 թ. (Ձեռ. Վասպ. 703), 1588 թ. (անդ 708), 1602 թ. (անդ 442, 803), 1609 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 341ա), 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21բ), 1810 թ. (Ձեռ. Վասպ. 310), անթվ. (անդ 558, 643, 1013), և Ջանիաղա ձևով՝ ուշ ժամանակի մի Արձ. (Սմբատեանց, Գեղարք. 119)։ Այս բոլորը իգ. են, ար. են՝ միայն 1575 թ. (Rapport Belgique 24) և Ճանաղա 1633 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 86բ)։

*ՋԱՆԱՂԻԿ, իգ. նախորդ անվան փաղաքշականն է հյ. -իկ մասնիկով։ Հիշատակված է մի անգամ 1684 թ. (Ձեռ. Վասպ. էջ 962)։

*ՋԱՆԱՑ իգ. < պրս. جانا ǰānā «ով հոգյակ», որ ǰān բառի կոչականն է։ Մի անգամ գտնում եմ որոշիչ հոդով միասին՝ Ճանէն 1650 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 327ա)։

*ՋԱՆԱՆ, ար? < պրս. جانان ǰānān «սիրահար, տարփածու» բառից. երևի մի ժամանակ անձնանուն էր, որից Ճանանեան, Ջէնանեան ազգանունը։

*ՋԱՆԳԻ, ար. < պրս. جنگی ǰangī «պատերազմիկ» բառից. մի անգամ հիշատակված է Ջանկի ձևով 1575 թ. (Ձեռ. Վասպ. 210)։

*ՋԱՆԴԱՐ, ար. < պրս. جاندار ǰāndār «հոգու պահապան» բառից. այս ձևով հիշատակված է 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սևան. 5). իսկ ավելի հնից կա՝

— Ջանտէր, հայր պարոն Շահապի, որ Խրիմում, Սիմէոն գրչին օրինակել տվեց մի Ցայսմաւուրք 1316 թ.— Manus. bibl. nat. էջ 100։

*ՋԱՆԶԱԴԱ, իգ. < պրս. جان ǰān «հոգի»+زاده zāda «ծնված, ծնունդ» բառերից. նշանակում է «հոգու ծնունդը». մի անգամ գտնում եմ հիշված Ջանզատա ձևով 1614 թ. (Ձեռ. Թաւր. 120բ)։

*ՋԱՆԻ, տր. անշուշտ կրճատված է հաջորդ Ջանիբեկ անունից. հիշված է 1596 թ. (Ձեռ. Թաւր. 75բ), 1661 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 119), անթվ. բայց 1578-ից ուշ (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925,472), 1774 թ. (Արցախ 241)։

*ՋԱՆԻԱՐ, տր. < պրս. جان jān «հոգի»+یار yār «սիրելի, բարեկամ» բառերից, իբր «իր սիրելու հոգյակը»։ Հիշատակված է 1608 թ. (Ձեռ. Վասպ. 831)։

*ՋԱՆԻԲԷԿ, տր. և իգ. < պրս. جانبیك jān-i-beg «բէգի հոգին, այն է սիրելին» ձևից։ Իբրև անձնանուն գործածվում էր նաև Թուրքերի մեջ. օր. Ճանիբեկ՝ զորավար Թոխթամիշ խանի Խրիմու. գրավեց Թավրիզը 1380 թ. (Զամչ. Գ. 420, Մեծոփ. 14), jānbek իշխան Թուրք՝ ԺԴ դարում (Իբն-ի-Բատուտա, հտ. II, էջ 383 և 397), jānī-beg՝ կառավարիչ Սմբղանդի (Bouvat, L'empire mongol 1927, էջ 149)։ Հայերենում ունինք զանազան ձևերով. այսպես Ջանիբեկ, Ջանբեկի, Ճանիպակ, Ճանիպեկի, ևն։ Գործածված է ԺԵ—ԺԸ դարերում։ Սրանից է Ջանիբեկեան ազգանունը։

— 1. Ջանիբեկ, որդի Աւոմի (№ 50), մայրն է Փաշայ. նահատակվեց անօրէնների ձեռքով. հայրը մեռավ կսկիծից. մայրը Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան՝ որդու և ամուսնու հիշատակին, Վան 1451 թ. Ցացյալը տես Աւոմ, № 50.— Ձեռ. Վասպ. 411։

— 2. Ջանիբեկ, մին էր Նորքեղի տանուտէրներից 1465 թ. — Նոտարք 221, Այրարատ 320։

— 3. Ջանիբեկ, կինն է Նիգար. ծնողներն են Կիրակոս (№ 141) երեց Ջօշկանց գրչի, որ սկսեց արտագրել Ճառընտիրը Բաղէշում և ավարտեց Աղթամարում 1467 թ.— Նոտարք 230։

— 4. Ջանբեկ(ի), քեռին է տանուտէր Սագազայի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան 1476 թ.— Ձեռ. Վասպ. էջ 480։

— 5. Ջանբեկ, հորեղբայր Ներսէս գրչի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը 1461 թ.— Ձեռ. Վասպ. 437։

— 6. Ջանիբեկ, որդի Մարգարէի և ամուսին Սալչուկ խաթունի, որ Հայրապետ (№ 86) քահանային գրել տվեց մի Մաշտոց 1466 թ.— Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337—8։

— 7. Ջանիբեկ, որդի Թումայի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 8. Ջանիբէկ, որդի Մկրտչի և եղբայր Աղքատ Յովսէփի, որ Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, Վան 1475 թ.— Ձեռ. Վասպ. 478։

— 9. Ջանսաբէկ, քեռորդի կամ հորաքեռորդի Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.— Ձեռ. Վասպ. 488։

— 10. Ջանիբէկ, որդի Գալուստի և եղբայր Ջանղուլբանի, որ Կուքի գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1495 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 135։

— 11. Ջանիբեկ, կին! հիշված 1621 թ. (Շահազիզ, Հին Երև. 74), որի որդին էլ կոչվում էր Ջանիբեկ (անդ), ըստ Ձեռ. Էջմ. № 942. բայց կասկածում եմ, որ սխալ է արտագրված կամ տպված։

— Ուշ ժամանակից են Ջանիբէկ 1585 թ. (Ձեռ. Վասպ. 702), Ջանբէկի իգ! 1590 թ. (անդ 714), Ճանպակ ԺԸ դար (Ձեռ. Թաւր. 21բ), Ճանպէկի իգ! Ձեռ. Էջմ. № 1754 (ԺԷ դար), Ճանիբէկ՝ ԺԶ դար կամ ավելի ուշ (Տաշեան, Ցուց. 449), Ճանպէկի, իգ. ԺԷ դար (հրատ. Ազատ. 1909 թ. յուշ. էջ ծա), Ջամբէկի խաթուն ԺԷ դար (Վասպ. 829)։

*ՋԱՆԻԿ, ար. և իգ. < անշուշտ նախորդ անվան փաղաքշականն է, բայց դարձել է անկախ անուն և հատկապես գործածական է Արևմտահայոց մեջ. ինչ. Ճանիկ ամիրա, Ճանիկ Արամեան՝ նշանավոր տպագրիչ և հեղինակ Արամեան կոչված շեղատառերի։ Հնագույն հիշատակությունը Ճանիկ ար. 1503 թ. (Ձեռ. Վասպ. 280), Ջանիկ ար. ԺԶ դար կամ ավելի ուշ (տես Ձեռ. Թաւր. 22ա), իգ. սեռից էլ կա Ջանիկ 1588 թ. (Ձեռ. Վասպ. 709)։ Սրանից է Ճանիկեան ազգանունը (Արևմտահայոց մեջ)։

*ՋԱՆԻՄԱՆ, ար. < պրս. جانمن ǰaniman «իմ հոգին, իմ հոգյակը» ձևից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1632 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 33ա)։

*ՋԱՆԻՍԱՖԱՐ, ար. սարքված պիտի լինի Սաֆար անունով մեկի կողմից, որ իր որդուն անվանել է այս ձևով, իբր թե պրս. «Սաֆարի հոգյակը»։ Հիշված է մի անգամ Տաշեան, Ցուց. 368 (1616 թ)։

*ՋԱՆԼԱՂ, ար. < պրս. جان ǰān «հոգի» բառից թրք. لاق laq մասնիկով. իբր «հոգու վայրը՝ տեղը». հմմտ. قشلاق qəšlaq «ձմեռանոց» > ղըշլաղ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1638 թ. (Ձեռ. Վասպ. 896)։

*ՋԱՆԽԱԹՈՒՆ, իգ. < պրս. جان ǰān «հոգի»+խաթուն բառե-

րից։ Որովհետև Ջան գործածված է իբրև արական անուն, ուստի նույնը իգականի վերածելու համար ավելացրել են խաթուն բառը։ Հիշատակված է ԺԳ—ԺԸ դարերում։

— 1. Ջանխաթուն, կին Սարգսի և մայր Աղութ խաթունի, որ գրել տվեց մի Ավետարան՝ Վարդան երեցին, Վարագայ վանքում, 1260 թ.— Ձեռ. Դաղեան, Բ. 47ա։

— 2. Ջանխաթուն, դուստր Ավագպարոնի և Թաքան խաթունի, նվերներ է արել Յովհաննավանքին, Համազասպ եպիսկոպոսի առաջնորդության (1279—1300 թ) ժամանակ.— Ջքր. պատմ. Գ. 26, Այրարատ 171բ։

— Ջանխաթուն, իգ. հիշված ԺԸ դարում (Ձեռ. Արգ. յովհ. ձչ 164) և անթվ. Ձեռ. Վասպ. 186։

* ՋԱՆԽՈՇ, ար. և իգ. < պրս. جان ǰān «հոգի»+خوش xōš «քաղցր» բառերից. իբր թե «ծնողների հոգու համար քաղցր էակ»։ Հնագույն գործածությունը Ջանխոշ ար. 1575 թ. (Ձեռ. Վասպ. 688), ապա Ջանխօշ իգ. 1594 թ. (անդ 736), Ջանխոշ ար. անթվ. (անդ 391)։

* ՋԱՆՂՈՒԼԻ, ար.< պրս. جان ǰān «հոգի»+թրք. قولى qulə «ծառան, ստրուկը», իբր թե «նա որի հոգին հայրն ու մայրը ծառա կամ ստրուկ են»։ Հիշատակված է նախ ԺԳ դարում և ավելի ուշ՝ 1533 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 717) և 1661 թ. (Արցախ 259)։

— Ճանղուլի, որի ազալի մահվան վրա մի խոյարձան է կանգնեցրել եղբայրը՝ Փուրղուլի, Թերփ գյուղի եկեղեցու մոտ, 1264? թ.— Խաղբակեանք 49։

* ՋԱՆՂՈՒՐԲԱՆ, ար.< պրս. جان ǰān «հոգի»+արաբ. قربان qurbān «մատաղ» բառերից. իբր «այն որին ծնողները մատաղ են գնում»։ Հիշատակված եմ գտնում մի անգամ ԺԵ դարում։

— Ջանղուրբան, որդի Գալուստի. Կուքի գյուղում Մանուէլ դրչին գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.— Սմբատեանց՝ Երնջակ 135։

* ՋԱՆՄԵԼԻՔ, իգ.< պրս. جان ǰān «հոգի»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից, այն է «հոգու հրեշտակը»։ Թեև միայն մի օրինակ ունենք այս անունից, բայց կարծում եմ որ Ջանմելիք ձևից գոնե մի քանիսը պետք է սրբագրել այսպես։

— Ջանմելիք, կին Յովհաննէսի, մայրն է Գոհարմելէք, որ լինում է Յովհաննէսի զոքանչը. Յովհաննէսը եղբայրն է Թումայի, որ Աղթամարում, Ներսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1460 թ.— Ձեռ. Վասպ. 433։

*ՋԱՆՄԵԼԻՔ, իգ. < պրս. جان jān «հոգի»+արաբ. ملك melik «տէր, թագաւոր» բառերից, իբր «այն որ տէրը կամ թագաւորն է ծնողների հոգուն»։ Հիշատակված է ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Ջանմելիք, քույր Կարապետ կրոնավոր գրչի, որ Յովանէս (№ 560) անուն անձի համար օրինակեց Աւետարանը 1344 թ.— Թորոս աղբ. Բ. 355։

— 2. Ջան-մելիք, զավակ Խասրովի, որ Բռնաշէն գեղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— Ավելի ուշ հիշատակված ունինք 1626 թ. իգ. (Ձեռ. Վասպ. 872) և անթվ. երկու իգ. (անդ 545)։

*ՋԱՆՈՒՄ, ար. և իգ. < պրս. جان jān «հոգի» բառից՝ թրք.-um ստացական մասնիկով, իբր «հոգիս, հոգյակս»։ Հիշատակված ունինք Ճանում իգ. 1601 թ. (Ձեռ. Վասպ. 793) և Ջանում ար. 1629 թ. (Կամենից 182, ՀԱ 1890, 20ա)։ Սրանից է Ջանումեան (Արևմտահայոց մոտ Ճանըմեան) ազգանունը։

*ՋԱՆՍԷՎԴԱ, ար. < պրս. جان jān «հոգի»+թրք. سودا sevda «սէր» բառերից. հիշատակված է Ջանսեվդա ձևով 1610 թ. (Ձեռ. Դադեան, Ա. 9ա) և 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15ա)։

*ՋԱՆՍՈՒԼԹԱՆ, ար. և իգ. < պրս. جان jān «հոգի»+արաբ. سلطان sultān բառերից, իբր թե «ծնողների հոգու սուլթանը»։ Հիշատակված է մի անգամ իբր ար. 1614 թ. (Ձեռ. Թաւր. 120ա) և մի անգամ էլ իբր իգ. անթվ. Ջանսօլթան ձևով (Ձեռ. Վասպ. էջ 182)։

*ՋԱՆՓԱՇԱ, ար. և իգ. < պրս. جان jān «հոգի»+թրք. پاشا paša բառերից, իբր թե «ծնողների հոգու փաշան»։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Ջանփաշայ, զավակ խոջա Մուրատբախշի, 1327 թ.— Ձեռ. Ազուլ. (Արար. 1911, 461)։

— 2. Ջանփաշա, հանգուցյալ դուստր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.— Ձեռ. Վասպ. 467։

— 3. Ճանփաշայ, որդի Ասիլմելիք տիկնոջ, որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան 1488 թ.— Ձեռ. Վասպ. էջ 241։

— 4. Ճամբաշայ, որդի Թուխթենի՝ մեծ մոր Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23ա։

— 5. Ջանփաշա, կին Սուլթանշահի, որ իր երկու եղբայրների հետ միասին Ազբակի Էրնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.— Ձեռ. Վասպ. 512։

— 6. Ջանփաշա, որդի Աթաբագի և եղբայր Սպահանի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Ավետարան՝ Սաղմոսավանքում 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22բ։

— 7. Ջանփաշայ, հորեղբայր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թվին, երբ Ջանփաշան մեռած էր.— ՀԱ 1887, 56բ։

— Ավելի ուշ հիշատակված է Ճանփաշայ իգ. 1541 թ. (Նշխ. մատ. 42), Ջանփաշա իգ. 1589 թ. (հրատ. Սամ. անեց. իբ), իգ? ԺԶ դար (Ձեռ. Թաւր. 3ա), իգ? անթվ. (Ձեռ. Վասպ. 395)։

*ՋԱՆՓՈԼԱԴ, ար. < պրս. جان ǰān «հոգի, մարմին»+پولاد pōlād «պողպատ» բառերից, իբր թե պողպատյա մարմնով. բայց պրս. ǰānpūlād «է անուն դևի միոջ» (ԳԴ 275ա)։ Անշուշտ ար. անուն էր, որից և Ջանփոլադեան ազգանունը (Կովկաս). հմմտ. Ջանփոլատօղլի Ալի փաշա՝ ապստամբ Ջալալի 1603 թ. (Առաք. պատմ. 64)։

ՋԱՋ, ար. ծագումն անհայտ։

— Ջաջ Արծրունի, որդի Շամբիթի (Ն. Ք. Ա դար).— Արծր. Ա. գ։

†ՋԱՋՈՒՌ, ար. < հյ. ջաջուռ «նորածիլ բույս» բառից, ինչպես ունինք նաև Նորատունկ և հուն. Νεόφυτος, որ նույն իմաստը ունի։

— 1. Ջաջուռ Արծրունի, հաջորդ Ջաջի. ժամանակակից Արշամի. իր բարեխոսությամբ ազատեց Ենանոս Բագրատունուն (Ն. Ք. Ա դար).— Արծր. Ա գ։

— 2. Ջաջուռ Ա. (գրված նաև Ճանուռ), Խաղբակեան տոհմից, մեռել է 1173 թվին և նրա հիշատակին մի խաչքար է կանգնեցրել որդին Սրահանգ՝ Հաւապտուկ լեռան կողին.— Յովսէփեան, Խաղբակեանք 31։

— 3. Ջաջուռ, որից Իւանէ († 1231) Աթաբէգը գնել է մի հող և նվիրել Աւան գյուղին.— Արձ. տես ZAPh 2, 48։

— 4. Ջաջուռ Բ. իշխան Խաղբակեանց, որդի Խաղբակ Բ-ի, եղբայր Հասանի, Վասակի, Գրիգորի և Սբուսի. պատերազմներում զինակիցն էր իր եղբոր՝ Վասակի. իր որդիներն են Հասան, Սմբատ և Գրիգոր. աղջիկն է Վանենի, որ ամուսնացավ Արաս Սևադեանցի որդի Սուկի հետ. Սմբատը մեռավ 1224 թ. և

Հասանը 1225 թ. և Ջաջուռը կանգնեցրեց նրանց վրա մի խաչքար՝ Հավապտուկ բլրի գագաթին (Արցախի Խոխանաբերդում), որ Ջաջուռի տոհմական գերեզմանատունն էր։ Վանենին ստացավ մի Աւետարան 1224 թ. և մի ուրիշը 1232 թ. որ նվիրեց Ջաջուռի հոգուն՝ Հավապտուկ վանքին։ Սրանից երևում է որ Ջաջուռի մահը պետք է դնել 1225—32 թվերի միջոցին կամ նույն իսկ 1232 թ.— Խաղբակեանք 32—33, Արցախ 182, 184—5, Այրարատ 269, Թորոս աղբ. Բ. 272, Բարխուտ. Աղուանից երկ. 235, Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 9։

— 5. Ջաջուռ իշխան Անբերդի. իր կնոջ՝ Մամախաթուն իշխանուհու հետ Սարկաւագ գրչին գրել տվեց մի Աւետարան 1310 թ.— Ձեռ. Կարին. 17։

— 6. Ջաջուռ, իր որդի Ամիր Սմբատի հետ մի Աւետարան նվիրեց Հոռոմոսի ուխտին՝ 1347 թ.— Ցովսէփեան՝ Մի էջ հայ արվ. 37, 39։

— Ավելի ուշ Ջաջուռ անունը հիշատակված է 1592 թ. (Ձեռ. Վասպ. 731) և 1725 թ. (անդ 28)։

*ՋԱՍԻՄ, ար. մի անգամ հիշատակված է 1613 թ. սեռ. Ջասմին ձևով (Ձեռ. Վասպ. 846). ուղղականը պիտի լինի Ջասմ կամ Ջասիմ։ Առաջին ձևով ունինք հին հյ. ջասմ «եղջերվաքաղ, ուրվական», որ մի անգամ գործածված անստույգ բառ է և հարմար չէր իբրև անձնանուն գործածվելու ԺԷ դարում։ Մնում է Ջասիմ, որ համարում եմ փոխառյալ արաբ. جسيم ǰasīm «մեծ, կարևոր, հոյակապ» բառից։

*ՋԱԻԱԴ, ար. < արաբ. جواد ǰavād անունից, որ բուն նշանակում է «մեծանձն, ազնվական, առատաձեռն». հմմտ. ǰavād Թուրք իշխան՝ ԺԳ դարում (Իբն-ի Բատուտա, հտ. Բ. 345)։ Գործածական է այժմ Ղարաբաղի հայոց մեջ. ավանդված է Ջովատ ձևով Գոշավանքի անթվ. մի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. Ժ, 26)։

ՋԱԻԱԼԱ, ար. որոշիչ հոլով՝ Ջավալեն, հիշատակված 1627 թ. (Ձեռ. Վասպ. 874)։ Ծագումն ինձ անհայտ։

*ՋԱԻԱՀԻՐ, իգ. < արաբ. جواهر ǰavāhir «գոհարներ», որ جوهر ǰavhar «գոհար» բառի հոգնակին է։ Հնագույն գործածությունը ԺԸ դարից է։ Գործածական է նաև այժմ. կրճատ կամ փաղաքշական ձևերն են Ջաւօ, Ջաւիկ։

— Ջաւահիր, հանգուցյալ կին Ջանղուրբանի, որ Կուքի

գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1495 Թ.— Սմբատեանց՝ Երնջակ 135։

— Ավելի ուշ կա 1575 Թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 809), 1806 Թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 43բ)։

*ՋԱՒԱՆ, ար. գրված է Ջավան, որ արդի պրս. جوان ǰavān «երիտասարդ» ձևն է, որ այժմ մենք հնչում ենք ջիվան (բայց սա իբրև անձնանուն չի գործածվում)։ Տարբեր է Ջիւան անունը, որ տես առանձին։ Ջավան անձնանունը ավանդված է 1704 Թ. (Սմբատեանց, Գեղարք. 503)։ Շատ ավելի հին է Ջևան (սեռ. Ջևանայ), որ հիշատակված է Գանձակի Սուլուկ գյուղի մի տապանագրում, 1315 Թ. (Արցախ 270)։

*ՋԱՒԶ կամ ՋՕԶ, ար. < արաբ. جواز ǰavāz «արտոնություն, թույլտվություն» բառից։ Անսովոր անուն. մի անգամ ունինք միայն ԺԵ դարից՝

— Ջաւզ (Ջօզ) խօջա, Յովհաննէս աբեղային գրել տվեց 1490 Թ. մի Ավետարան, որ ապա նվիրվեց Անջողաց Ս. Աստուածածին եկեղեցուն։ Խօջա Ջաւզի գերդաստանն է. հայրը Գրիգոր, մայրը Շահստան, կինը Հաթուշ, աները Յովհաննէս, զոքանչը Մելիք, որդին Դովլաթշահ, եղբայրները Յովհաննէս և Անտոն. սրանցից Անտոնի կինն է Մուտամ, Յովհաննէսի որդին Դովլաթ, Ջօզի որդի Դովլաթշահի կինն է Փարիշան. Անտոնի զավակներն են՝ Ասլի, Մուրադ, Ավետ, Շահմուրադ, Շամշադամ։ Ջօզի աղջիկներն են՝ Զարմանդուխտ, Շուշան, Շեր, Մեսրի. իսկ Դովլաթշահի զավակն է Ջանազիզ։ Այս բոլորը տես Ձեռ. Վասպ. 513—6, բայց խառն և աղավաղ։

*ՋԱՒՀԱՐՏԻԿԻՆ, իգ. < արաբ. جوهر ǰavhar «գոհար» բառից. հիշված է 1311 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Թավր. 73 ա)։ Ավելի ընդարձակ տես Ջաւահիր և Ջոհար։

*ՋԱՖԱՐ, ար. < արաբ. جعفر ǰa'far անունից, որով հայտնի է Ալի մարգարեի թոռը (Ջաֆէր) և որի անունով կա առանձին մահմեդական աղանդ։ Բուն նշանակությունն է «նապաստակ»։ Մեր մեջ հիշված է 1623 թվին (Ձեռ. Կես. սարգ. 10բ) և ավելի ուշ՝ Ջաֆար իշխան Խուբեանց, Երևան 1795 Թ. (Ազգագ. 3216)։ Սրանից էլ կա՝

*ՋԱՖԱՐՇԱՀ, որ հիշված է Ցղնա գյուղի անթվական մի խաչքարի արձանագրության մեջ.—Ազգագր. հանդ. ԺԱ, 321—2։

ՋԵՐԳԱՄ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք՝

— Ջերգամ, իր որդի Ղարաքի հետ միասին նվիրատու

եղան Գտչի վանքին՝ Վրդանէս եպիսկոպոսի ժամանակ՝ 1248 թ. կամ քիչ ուշ.— Արցախ 81։

Ջեան տես Ջաւան։

* **ՋԷՅՐԱՆ**, իգ. < թրք. جيران jeyran «վիթ, եղնիկ» բառից. հնից ավանդված չէ. գործածական է այժմ։

* **ՋԷՍԱՐ** տես Ջեսար.— Ջ փխ. Ձ գրչության Կիլիկեան տառադարձության արդյունք է։

— Ջեսար, որդի Մեսարի. և եղբայր Եղիա աբեղայ Հագրութեցու, որ Ճգնաւորի քար անապատում օրինակեց Աւետարանը՝ 1428 թ.— Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 567)։

* **ՋԷՐՋԻՍ**, ար. մեր Գրիգորիս անվան արաբական ձևն է. գրված ունինք Ճերնիս 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 233ա)։

* **ՋԻԲՐԱՅԻԼ**, ար. մեր Գաբրիէլ անվան արաբական ձևն է, որ գործածվում է այժմ թե Կովկասում և թե Տաճկաստանում։ Հնից ավանդված է մի անգամ Ձեռ. Վասպ. 396 Ջպրաիլ ձևով՝ անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1444 թվից շատ ուշ և հատկապես 1639 թվից հետո։

* **ՋԻԳԱՐ**, ար. և իգ. < պրս. جگر jigar «թոք» բառից, իբրև «հոգեհատոր»։ Իբր իգ. հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 681) Ջիգար ձևով. իսկ իբր ար. ունինք Ջիկար հիշված 1615 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 47ա) և մի ուրիշը 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15ա)։

* **ՋԻԼԱՒ**, ար. և

* **ՋԻԼԱՒԽԱՆ**, ար. < արևել. թրք. جيلاو jilav «սանձ» բառից, որից կա նաև جيلاودار jilavdar «կարավանապետ» (Будагов 1, 449բ)։ Սրանից ունինք Ջիլաւեան ազգանունը (Կովկաս), որ ցույց է տալիս թե Ջիլաւ բառը նաև իբր առանձին անձնանուն գործածվել է մեր մեջ, ինչպես որ իրոք էլ ունինք հիշատակված Ջիլաւ, ար. 1634 թ. (Ձեռ. Վասպ. 884)։ Ճիլաւխան անունը հիշված է 1490 թվից ուշ գրված մի հիշատակության մեջ (Ձեռ. Սեան. 5բ)։ Վրիպակով գրված կամ տպված է Ճիլանխան 1690 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 1246)։

* **ՋԻՀԱՆ**, ար. և իգ. < պրս. جهان jihān «աշխարհ» բառից, իբր համառոտություն Ջիհանգիր, Ջիհանգուլ կամ նման մի անվան։ Նույն անունը գործածական է նաև Պարսից մեջ. ինչ. Ջահան կամ Ճիհան՝ եղբայր Իսքէնդէրի. Շահռուխը թագավոր կարգեց նրան 1435 թ. (Ազգապ. 2067)։ Մեր մեջ հիշատակված

է ԺԲ—ԺԷ դարերում և այժմ էլ գործածական է Ղարաբաղում (Ջհան ձևով իգ.)։

— 1. Ջահան իշխան, պարծենում էր թե ինքն է սպանել հիլեկէոյ Մլեհ իշխանին. ուստի Ռուբէն Բ ջրահեղձ արեց նրան «1175 թ».—Սմբ. պատմ. 103։

— 2. Ջահան կին Վիշտպի և մայր Յակոբ Երևանցու, որ ստացավ մի Ավետարան և նվիրեց Երևանի եկեղեցուն, Լէնկթիմուրի արշավանքի ժամանակ։—Շահազիզ, Հին Երևանը, էջ 203։

— 3. Ջիհան ոմն, հիշված Թէոդոսիայում մի խաչքարի արձանագրության մեջ 1496 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 350։

— 4. Ջըհան, կին Մեծատուրի և մայր Յովաննէս քահանայի, որ իր եղբոր՝ տանուտեր Յովհաննէսի հետ գրել տվեց մի Ավետարան, Մոկաց Փառավանքում, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։

—Ավելի ուշ հիշված կա Ճիհան ար. 1511 թ. (Արձ. Արցախ 406), իգ. 1548 թ. (Manus. brit. mus. 108 բ), Ջահան 1561 թ. (Սմբատեանց, Երնջակ 193), Ճիհան իգ. 1620 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 167 բ), իգ. 1629 թ. (ՀԱ 1913, 693), Ճիհան 1632 թ. (Դրնդ. 552), 1666 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 37)։

* ՋԻՀԱՆԲԱԽՇ, ար. և իգ.<պրս. جهان jihān «աշխարհ»+ بخش baxš «նվեր, պարգև» բառերից. իբր թե «նա, որին Աստված պարգև է տվել աշխարհին»։ Հիշված է ԺԵ—ԺԹ դարերում։

— 1. Ճահանբաղշ իգ. 1494 թ. կեղծված է թվում (Սմբատեանց, Երնջակ 273)։

— 2. Ջիհանբաշխ, սեռն անհայտ. հիշված է Ներքին Ագուլիսում, մի խաչքարի վրա 1497 թ. (Ազգագր. հանդ. ԺԱ. 313)։

— 3. Ջհանպախշ, հիշված է ԺԸ դարում (Ձեռ. Դաղեան, Բ։ 42 բ)։

— 4. Ջհանբախշ, որդի Ղարաբաղի մելիք Շահնազարի, մեռել է Վարանդայում 1822 թ.—Արցախ 98, Րաֆֆի՝ Խամսայի մելիքութ. 161։

* ՋԻՀԱՆԲԱԽՏ, իգ.< جهان jihān «աշխարհ» և بخت baxt «բախտ» բառերից, իբր թե «աշխարհին բախտ բերող»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1511 թ. (Ձեռ. Վասպ. 645)։

* ՋԻՀԱՆԲԷԿ, ար.<պրս. جهان jihān «աշխարհ»+թրք. beg բառերից, իբր «աշխարհի բէկը»։ Հիշված ունինք մի անգամ՝

— Ճիհանպէկ մղտեսի, իբրև վկա ստորագրում է մի կտակագրի, 1461 թ.—Manus. brit. mus. 31 ա։

*ՋԻՀԱՆԳԻՐ, ար.< جهانگیر jihāngīr «աշխարհակալ» բառից, որ Պարսից և Թուրքերի մեջ էլ իբրև անձնանուն գործածական է. օր. Ջհանգիր Թուրքմէն իշխանը, որ ԺԵ դարում նստելով Տիգրանակերտում, իշխում էր Հայաստանի հարավային մասի վրա. սրա որդին է Ուզուն-Հասան, Պարսից թագավոր, որ տիրեց ամբողջ Հայաստանին (1468 թ). Ջիհանգիր սուլթան Մողոլ, որդի և հաջորդ Աքբարի, նստավ 1605—1628 թ։ Այս անունը այժմ գործածական է Ղարաբաղի հայոց մեջ։

*ՋԻՀԱՆԳՈՒԼ, ար.<պրս. جهانگل jīhāngul «աշխարհի վարդը» ձևից. սրանից է Յուսիկ Ջահանգուլի՝ գրիչ ԺԸ դարում (Ձեռ. Դաղեան, Ա. 93 բ). սրանից է նաև Ջիհանգիւլեան ազգանունը (Վան)։

*ՋԻՀԱՆԽԱԹՈՒՆ, իգ.<պրս. جهان jīhān «աշխարհ»+խաթուն բառերից, իբր թե «աշխարհի տիկինը»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Ջհանխաթուն ձևով՝ 1399 թ. (Թորոս աղբ. Բ. 429)։

*ՋԻՀԱՆՄԵԼԻՔ, ար. և իգ. <պրս. جهان jīhān «աշխարհ»+ արաբ. ملك melīk «թագավոր» բառերից և նշանակում է «աշխարհի թագավորը». հիշատակված ունինք ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Ջխանմելիք, կին Շատլուսի և զոքանչ Թութլուշայի, որ գրել տվեց մի Աւետարան 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ. 78։

— 2. Ջհանմելիք, զոքանչ Յովհաննէս քահանայի, որ Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, Վան 1422 թ.—Նօտարք 69։

— 3. Ճիհանմելիք, կին Յակոբի, որ Երզնկայում ստացավ մի Աւետարան, 1477 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 628։

— 4. Ճիհանմելիք, սեռը անհայտ ոմն, որի հիշատակին մի խաչքար կա ագուցված Ամասիոյ Ս. Նիկողայոս եկեղեցու պատի մեջ, 1483 թ.—Հաղորդեց Ամասիայից Կարապետ Գաղաղեան, 1912 ապր. 12։

— Անհայտ թվականով են Ջիհանմելիք իգ? (Ձեռ. Վասպ. 766), 1311 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 72 բ), և Ջհանմելիք՝ Ցղնա գյուղի մի խաչքարի անթվական արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. ԺԱ 321—2)։

*ՋԻՀԱՆՇԱՀ, ար.<պրս. جهان jīhān «աշխարհ»+ شاه šāh «թագավոր» բառերից, իբր թե «աշխարհի թագավորը»։ Իբրև անձնանուն գործածված է նաև Պարսիկների մեջ. օր. Ջհանշահ՝ որդի Իբրահիմ Ղազնևի սուլթանի (1058—1099), Ջհանշահ՝ որ

Լանկթամուրի որդի Շահռուխի ձեռքով Ատրպատականի և Հայաստանի իշխան կարգվեց (ԺԵ դար)։ Մեր մեջ հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Ջհանշայ որդի Հասանի Դոփեան, թոռան թոռն է Գրիգոր բարի իշխանի Խաչենոյ. սրանով է սկսվում Դոփեան ցեղի Ջհանշեցւոց ճյուղը.—Ջեռ. Դաղեան, Ա. 89 բ, Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 45.—տես և Արցախ 208։

— 2. Ճահանշայ որդի Էտիլշահի և եղբայր Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 3. Ճահանշայ եղբորորդի նույն Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 4. Ջհանշա ամի, հիշված է Սակռաբերդում կամ Ուրծայ անապատում 1491 թ.—Այրարատ 443։

— 5. Ջհանշահ, ազատ յազգէ Դոփեայ և Հասանայ, հայր Յովհաննէս վարդապետ Ծարեցու, որ †1583 թ.—Յհնսկ. 192. Առաք. պատմ. 472.—Ջհանշահենց (ազգանուն)՝ Յհնսկ. 200։

— Ավելի ուշ հիշատակված է Ջահանշայ 1533 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 717)։

*ՋԻՀԱՆՇԻՐ, ար.<պրս. جهان ǰīhān «աշխարհ»+شیر šīr «առյուծ» բառերից, իբրև «աշխարհի առյուծը»։ Հիշատակված է 1517 թ. (Սմբատեանց՝ Գեղարք. 535)։ Սրանից շատ ավելի հին է՝

— Ջիհանշիրայ (բայց արդյոք նույն բառն է թե կազմված է պրս. شیره šīra «քաղցու» բառից, որ սակայն հարմար չէ), աներ Գրիգոր Մագիստրոսի. փոխադրեց Գր. Լուսաւորչի ծնոտը Գանձասար.—սեռ. Ջիհանշիրայի՝ Վրդն. աշխ. 508։

*ՋԻՀԱՆՓԱՇԱ, իգ.<պրս. جهان ǰīhān «աշխարհ»+پاشا paša բառերից, իբր «աշխարհի փաշան». մի անգամ գտնում եմ հիշատակված 1601 թ.—Manus. brit. mus. 252 ա։

*ՋԻՄՇԷՐ, ար.<Պարսից առասպելական թագավոր جمشید ǰemšīd-ի անունից, որ Պարսիկները մեկնում են ǰam «մեծ թագավոր» կամ ǰām «բաժակ արեգական»+šīd «արեգակ» բառերից! Այս շիդ-ը դարձել է շէր՝ կապելով شیر šīr կամ šēr «առյուծ» բառի հետ. ինչպես որ այժմ էլ դարձել է Ջումշուդ՝ նմանեցնելով Xuršīd>Xuršūd անվան։ Վերի Ջիմշէր ձևը հիշված եմ գըտ-

նում 1611 թ. (Ջեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 222)։—Ավելին տես Ջումշուդ։

ՋԻՐԱՊՇԱՀ, տր. (առաջին մասի ծագումը անհայտ է ինձ). հիշված է միայն մի անգամ 1551 թվի մի արձանագրության մեջ (Այրարատ 289)։ Նույնը առանց թվականի հիշում է Սմբատեանց, Գեղարքունիք 267 (Ջառ գյուղում), բայց գրում է Վիրապշահ։

ՋԻՐԴԱՐՄԱՆ, տր.<պրս. جکر درمان jiger-darmān ձևից եմ ենթադրում, որ է «թոքը դարմանող, բուժող» (جکر jiger բառը շատ տեղ հայոց մեջ հնչվում է ջիյէր, ճիյէր. որից հեշտությամբ կարող էր ձևանալ Ճիրդարման, ինչպես ավանդված է Ջեռ. Վաստ. 395 անթվական մի հիշատակության մեջ։

*ՋԻՒԱՆ, տր.<իտալ. Giovanni «Յովհաննէս» անունից. գործածական էր Ճիւան ձևով՝ Պոլսում, մանավանդ կաթոլիկ հայոց մեջ։ Հին հիշատակության համար հմմտ. Կոստանդին Գ (№ 137) թագավոր Կիլիկիոյ, որ կոչվել է նաև Ճիւան (Չամչ. Գ. 341)։ Ըստ այսմ տարբեր է Ջուան անունը (որ տես առանձին)։ Սրանից է Ջիւանեան (գրված Ճիւանեան ազգանունը)։ Տես նաև Ջուան։

ՋՆԱԲՈՒՂԱՑ, տր. ընթերցվածն անստույգ, ուստի ծագումն էլ անորոշ. իր անունով կա մի խաչքար Արկազում (Վայոց ձոր), 1297 թ.—Սիսական 119։

†ՋՆԴԻԿ, իգ.<միջ. հյ. ճնդիկ բառից, որ նշանակում է «զուտ սև». կենդանի է Մշ. Նբ. ճնդրեկ ձևով (տես Արմ. բռ)։ Իբրև անձնանուն հիշված է Ջնդիկ ձևով 1534 թ. Մոկսում (Նաթանեան, Արտօսր Հյաս. 148)։

*ՋՈՀԱՐ, տր.<արաբ. جوهر javhar «գոհար» բառից, որ փոխառյալ է պրս. گوهر gōhar համանիշից (տես Գոհար)։ Արաբական ձևը գործածված է մեր մեջ ԺԴ դարից և այժմ էլ գործածական է Ջաւահիր ձևով (տես այս անունը), որ նույն արաբ. javhar բառի հոգնակին է։ Ջոհար անունը գրված է մեր մեջ Ճօհար, Ջուհար, Ճուհար, Ճոհար, Ջաւհար, Ջուար (տես Ջեռ. Վաստ. 252) և նույն իսկ Ջօր ձևով, որ է Ջաւր։ Այս բոլորը տես տակը։ Ավելի ուշ ժամանակի հիշատակություններից հիշելի է Ճոհար 1554 թ. (Դրնղ. 595)։

— 1. Ճօհար քույր Սիմէոն գրչի, որ Խողկերտի կամ Խողկերտ գյուղի (Կիլիկիա) համար օրինակեց Ճաշոցը, 1335 թ.—Սիսուան 119 բ։

— 2. Ջուհար, կին Աբրահամ քահանայի, որ Հոռմկլայի Ծակաղբիւր գիւղում իր հօր՝ Հեթում քահանայից ստացաւ մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։

— 3. Ճոհար, կին Գանձիի և մայր Գրիգոր կրօնաւորի, որ Երուսաղէմում Տէր-Աւագ քահանային գրել տվեց Աւետարան-Ճաշոցը 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118 ա։

— 4. Ջօհար, կին Բօչիկի կամ Բօչքէկի և մայր Պօղոս կրօնաւորի, որ Խիզանում մի Յայսմաւուրք արտագրել տվեց և նվիրեց Գամաղիէլի վանքին 1407 թ.—Նօտարք 27։

— 5. Ջաւհար, կին Թումայի՝ որդւոյ Աստոմ քահանայի, որ Աթանան գիւղի գերի ընկած Աւետարանը 550 դահեկան փրկանքով ազատեց 1431 թ.—Ձեռ. Վասպ. 313։

— 6. Ճուհար Կոնիապատցի, կին Փողոսի և ղոքանչ Թըստակէս երեցի, որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 բ։

— 7. Ջաւր խաթուն, կին խօջա Յառուխշանի, որդւոյ Ստեփաննոսի և եղբօր Փաշայ տիկնոջ, որ իր մեռած ամուսնու և որդիների հիշատակին մի Աւետարան գրել տվեց Վան 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 8. Ջուհար, կին Ստեփաննոսի, որ անօրէններից նահատակվեց, և մայր մահդասի Պօղոսի, որ Փոքր Ակոռի վանքում, Ստեփաննոս կրօնաւորին գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Նօտարք 168։

— 9. Ջօր խաթուն, դուստր խօջա Խաչատուրի, որ Արճէշում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան 1462 թ.—Ձեռ. Վասպ. 438։

— 10. Ջուհար, կին Մատթէոս քահանայի, որ Անաւարզայում, Հայրապետ եպիսկոպոսին գրել տվեց մի Ճաշոց, 1466 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 235 բ։

— 11. Ճաւհար, դուստր պարոն Թորոսի և քոյր Էլպաշի Էմիրի, որ Կեսարիայում, Տէր Յովանէ Նաղաշին գրել տվեց մի Ճաշոց, 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։

— 12. Ջաւհար, ազգական Համանդուլ կույսի, որ Օյբէ վանքում, Ստեփան աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304։

— 13. Ջուհար կին Դաւթի և մայր Խուդադարի, որ ստացավ մի Աւետարան 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284։

— 14. Ջօհար կին Տէր Մելքիսեթի՝ եղբօր Աւետիք քա-

հանայի, որ գնեց մի Աւետարան 1500 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 68 բ (տես և խաճմեյիք)։

— Ավելի ուշ հիշատակված են Ճոհար 1662 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1928, 494), Ջուհար 1689 թ. (Թորոս աղբ. Բ. 373), Ճուհար 1703 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 364)։

*ՋՈՀԻ, ար. Հպրս. جهی juhī անունից. «Է անուն առն միոջ, որ էր առակախօս և ծաղրածու, որպէս և յաշխարհին Հոռոմոց կոչեցեալն Նասրըէտտին խօճա, որոյ պատմութեամբքն լցեալ է աշխարհ» (ԳԴ, էջ 285 ա)։ Այս անունով ունինք միայն՝

— Ջոհի, հայր Շահնշահի, որ կանգնեցրել է մի խաչքար՝ Ալիղըրըղ (Նոր-Բայազիդ) գյուղում, 1270 թ.—Սմբատեանց՝ Գեղարքունի 544։

ՋՈՆ, ար. ծագումը ինձ անհայտ։ Ունինք մի անգամ՝

— Ջոն իշխան Կորդուաց. մին այն վեց նախարարներից, որոնք ընկճեցին Աղձնեաց Բակուր բդեշխի ապստամբությունը Խոսրով Բ («330—339 թ») թագավորի դեմ.—հյց. զՋոնն՝ Բուզ. Գ. թ։

ՋՈՆՏԱՐ, ար. աղբյուրը կասկածելի լինելով՝ ծագումն էլ անստույգ է. կա պրս. جندال jundāl «Է անուն յատուկ աշակերտի մեծի փիլիսոփային, բայց անցմամբ ժամանակաց և բազում գործածութեամբ անուն եղև հետևողաց իմաստասիրութեան» (ԳԴ, էջ 286 ա)։ Տես և վերը Ջանդար անունը։ Ջոնտար հիշված է մի անգամ Շաքի գավառի Ամուր-ուան գյուղին մոտիկ Ուզունիի գերեզմանատան մեջ մի դամբանի վրա ՇԻԲ=1073! թվից (Բարխուտ. Աղվ. երկ. 215։

†ՋՈՋԻԿ, ար.<հյ. ժղ. ջոջ «մեծ» բառից, ինչպես կա Աւագ անունը։ Ըստ Ջավչ. Բ. 339 այս անունը կա նաև Վրաց մեջ։

— 1. Ջոջիկ եղբայր Վազգէնի՝ բդեշխի Վրաց՝ ամուսնու Ս. Շուշանիկի (Ե դար).—Վկ. շուշ. 22, 26, 44. Յայսմ. դեկտ. 25.—սեռ. Ջոջկայ՝ Յայսմ. մրտ. 30.—տես և Վրաց աղբ. Ա. 11։

— 2. Ջոջիկ վանեցեց Արամունից վանքի, Յունահայոց ուրիշ բազմաթիվ կրոնավորների հետ հավատարմության ստորագրություն տվեց Աբրահամ կաթողիկոսին «607 թ».—Ուխտ. Բ. լէ.—ըստ Գիրք Թղ. խ կոչվում է «Ջոջիկ Երեանից»։

— 3. Ջոջիկ իշխանաց իշխան, որին Տայոց Դավիթ կյուրապաղատը Յովհաննէս-Թոռնիկ վանականի հետ միասին ուղարկեց ապստամբ Վարդ Սկլարոսի դեմ 977 թ։—Ասող. Գ. ժե։

— 4. Ջոջիկ հիշված է նաև Երուսաղեմում, Ջքթենեաց լե-

ռան արևելյան կողմը, Ռուսաց վանքի հողերի մեջ, պեղման ժամանակ երևան եկած գամբաններից մեկի վրա, անթվական։— Արրա. 1872, 494, Տաշեան՝ Ակնարկ 137։

— Ավելի ուշ հիշատակված է Ճօճիկ, անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Վենետ. Բ. 682)։

*ՋՈՍԼԻՆ, ար.<ֆրանս. Josselin անունից. գործածված է մեր մեջ ԺԲ—ԺԴ դարերում։

— 1. Ճօսլին, բժիշկ, որդի Ահարոն բժշկի և եղբայր Ստեփաննոս բժշկի (1232 թ).— Ամիրտ. անգ. էջ 2 (գրում է Ճօշլին և չի համարում որդի Ահարոնի և եղբայր Ստեփաննոսի, այլ «տոհմանոցա»).— Ցոփանեան, Հետազոտ. Բ. 410, Ակինեան ՀԱ 1931, 708 ծ.— Բասմաջեան, Ամիրտ. անգ. յոջ. էջ իբ գնում է ՆՁԱ= 1032 թվին։

— 2. Ճօսլին, պարոն և տէր Սինոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».— Սմբ. պատ. 112։

— 3. Ճօսլին, եղբայր Վահրամ մարաջախտի՝ Լևոն Բ-ի ժամանակ.— Սիսուան 143։

— 4. Ճօսլին տեր Թիլ Համտընի, ջամբալայ հայոց թագավորության. 1218 թվին՝ Հայոց Լևոն Բ թագավորի կողմից, Հունգարացոց Անդրէաս թագավորի հետ միասին դեսպան գնաց Հունգարիա, որպեսզի թագավորի համանուն որդուն բերեր Կիլիկիա, ամուսնացնելու համար Զապէլ արքայադստեր հետ։ Բայց այս գործը չհաջողվեց։— Սիսուան 205 բ, 459 բ, 485 ա, 522 բ։

— 5. Ճօսլին մարաջախտ, մին այն իշխաններից, որոնք Զապէլի ժամանակ ապստամբելով՝ ուզում էին Կիլիկիայի թագավոր դնել Անտիոքի իշխան Ռուբէնին.— Միխ. աս. իը (=իէ)։

— 6. Ճօսլին կազմարար. կազմել է Կոստանդին Գ կաթողիկոսի սքանչելի Մայր Մաշտոցը, որ գրված է 1311 թվից քիչ առաջ.— Ձեռ. Հալէպի, Բ. 32 բ։

— 7. Ճաւշլին քահանա Երուսաղէմի Ս. Սիոնի. նոր էր մեռել 1335 թ. իր որդին է Վասիլ.— Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 8. Տէր Ճաւշլին Ոսկեւընցի, հայ է. Երուսաղէմի Ս. Յակոբի վանքի իշխանավորներից, 1335 թ. իր մասին տես Ներսէս (№ 121) Կրակացի.— Ձեռ. Վենետ. Բ. 350։

*ՋՈՒԱՆ, ար. ծագումը տես Ջիւան։

— 1. Ջուան ոմն, օգնեց ծերունի Վարդան քահանային ստանալու մի օրինակ Աւետարան 1280—1320 թվերին.— Ձեռ. Թաւր. 27 ա։

— 2. Ծոյան, թոռն Սիր Գրիգորի՝ որդւոյ Ստեփաննոս արքեպիսկոպոսի Տարսոնի. ծնվել է 1319 թ.—Սիսուան 74։

— 3. Ծուանիս գերձակ, հայր Գրիգոր Տիֆլցու, որ գրել տվեց մի Ավետարան՝ 1326 թ.—Rapport Belgique 87։

— 4. Ծուան, որդի Սրոյ տիրոջ, սպարապետ Հայոց, հաջորդեց Կոստանդին սպարապետին (ԺԴ դարի վերջը).—Սմբ. պատմ. էջ 137։

— 5. Ծիվան՝պատրոն ոմն իբրև նվիրատու հիշված է Հաղբատի անթվ. մի արձանագրության մեջ (Երզնկեանց, Հնախ. տեղագր. 41), բայց հայտնի չէ թե այստեղ է պատկանում, թե Ջիւան ձևն է։

*ՋՈՒԱՆՇԵՐԻԿ, ար.<տես հաջորդը։ Մի անգամ ավանդված է՝

— Ջուանշերիկ, որդի Վարազ-Տրդատի, Աղվանից Միհրական ցեղից։—Կղկնտ. Գ. ի։

*ՋՈՒԱՆՇԻՐ, ար.<պրս. جوانشیر ǰuvānšēr (նոր հնչումով ǰivānšīr) անունից, որ բուն նշանակում է «մատաղ առյուծ, կորյուն». կազմված է جوان ǰivān «մատաղ, երիտասարդ» և شیر šīr «առյուծ» բառերից։ Հմմտ. ǰiwānšīr որդի Խոսրով Բ արքայի Պարսից, ǰovanšīr որդի Արշիլ Բ թագավորի Վրաց (Justi 123)։ Գործածական է այժմ Ղարաբաղում։ Փաղաքշական ձևն է Ջուանշերիկ, որ տես վերը (Հիւբշ. 69)։

— 1. Ջուանշեր (var. Ջուանբեր), տէր Վասպուրականի. միացած Տրդատ. Արև, Համազասպ և Գրիգոր հայնախարարների հետ, Պարսից և Վրաց զորքով կռվեց հոնաց դեմ, առաջնորդությամբ Վրաց Վախտանգ Գուրգասար թագավորի (Ե դար).—Վրաց աղբ. Ա. 189, Պատմ. վր. ժզ։

— 2. Ջիւանշիր, որդի Վարազ-Գրիգորի, Միհրանեան տոհմից, փառավոր իշխան Աղվանից։ Գնաց Պարսկաստան և 7 տարի կռիվ մղելով Արաբների դեմ, Յազկերտ Գ թագավորից նշանակվեց Աղվանից սպարապետ։ Դառնալով Աղվանք, ապստամբեց Պարսից դեմ, քշեց նրանց բանակները և հպատակվեց Յունաց Կոստանդին կայսեր։ Վանեց Խազրաց արշավանքը։ Ամուսնացավ Հոնաց թագավորի աղջկա հետ և դաշնակցեց նրանց հետ։ Գնաց Արաբաց խալիֆայի մոտ, հպատակվեց նրան և պատիվներ ստանալով՝ վերադարձավ Աղվանք։ Երկար տարիներ խաղաղությամբ իշխելուց հետո, դավաճանությամբ սպանվեց Պարտավում (680ական թվերին)։—Ջիւանշիր՝ Կղկնտ. Բ. ժէ—ի,

ժբ, իե, լ, լա, լդ. Գ. իգ.—Ջուանշիր՝ Կղկնտ. (հրտր. Էմինի)՝ Բ. ժը, ժթ. իբ, իե—իը, լբ.—Ջուանշէր՝ Մխ. այբիվ. 23.—սեռ. Ջիւանշրի՝ Կղկնտ. Բ. ժը.—Ջուանշրի՝ Կղկնտ. Բ. ժթ (հրտր. Էմինի).—Ջիւանշիրի՝ Կղկնտ. Բ. ժթ.—իա, իդ—իէ, լ, լգ—լզ.—Ջուանշիրի՝ Կղկնտ. Բ. իգ, իը, լգ, լե. Վրդ. լե.—Ջուանշիրայ՝ Վրդ. լե (հրտր. Էմինի).—բց. ի Ջիւանշիրէ՝ Կղկնտ. Բ. ժթ, իգ. իդ։—(Կղկնտ. հրտր. Շահն. միշտ ունի Ջևանշէր, Ջևանշէրի են)։

— 3. Ջուանշիր իշխան Աղուանից, որին սպանեցին Ամեթնդուքն (Ը դար).—Կղկնտ. Գ. ժէ (հրտր. Շահն. Ջևանշէրին)։

— 4. Ջևանշէր, որդի Թէոդորոսի, ազատ Սիւնի. հիշվում է իբրև վկա՝ Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը։

— 5. Ջևանշէր իշխան Սիսական, որդի Սահակի, հայր Տիգրանի և եղբայր Արուսմանի։ Բաղաց գավառում իր Արուքս գյուղը, Սողոմոն եպիսկոպոսից խնդրելով, փոխանակեց Տաթևի կալված Բևս գյուղի հետ՝ 871 թ.—Օրբ. լթ.—սեռ. Ջևանշէրի՝ Օրբ. լթ։

— 6. Ջուանշէր ոմն. պատերազմում վիրավորեց Վասպուրականի Գուրգէն իշխանին. բայց Գուրգէնն էլ սուրով նրա աչքը հանեց (Թ դար).—Արծր. Գ. ժգ.—սեռ. Ջուանշիրայ՝ Արծր. Գ. ժգ։

— 7. Ջևանշէր Ա. իշխան Բաղաց. որդի Ջագիկի Բ. և հայր Ջագիկի Գ. պապն է հաջորդի.—սեռ. Ջևանշիրի՝ Օրբ. ծ.—Սիսական 273 դնում է 906 թ։

— 8. Ջևանշէր Բ. իշխանաց իշխան Բաղաց. որդի և հաջորդ Ջագիկի Գ. եղբայր Վահանի և պապ Վահան կաթողիկոսի։ Սրա մոտ՝ Կապանի անառիկ բերդն ապավինեց Սիւնեաց Յակոբ եպիսկոպոսը՝ փախչելով Անանիա Մոկացի («946—968 թ») կաթողիկոսից։ Անանիան շատ խնդրեց Ջուանշիրից՝ իրեն հանձնել Յակոբին, բայց նա միշտ մերժեց. ուստի նզովեց Ջուանշիրին «950 թ». բայց հետո ներեց «959 թ» և նրա որդի Վահանին եպիսկոպոս ձեռնադրեց։ Այս Ջուանշիրը նախորդի թոռն է։—Ջևանշէր՝ Օրբ. լէ, խբ, ծ, ծա, ծդ.—Ջևանշիր՝ Օրբ. ծա.—Ջուանշէր՝ Անան. ապատ. 132 ա, 141 բ.—Ջուանշիր՝ Անան. ապատ. 139 բ, 141 ա, 142 բ.—սեռ. Ջուանշէրի՝ Վրդ. խէ.—Ջուանշերի՝ Անան. ապատ. 142 բ.—Ջուանշիրի՝ Անան. ապատ. 141 ա, 143 ա. Ասող. Գ. ը. Օրբ. ծա.—Ջևանշէրի՝ Օրբ. խ, խդ.—Ջևանշիրի՝ Օրբ. ծա։—Սիսական 273 բ դնում է 911—958 թ։

— 9. Ջևանշիր իշխան Աղուանից. մասնակցեց Դաւիթ Զ

կաթուղիկոսի ընտրության «962 թ».—տես. Ջհանշիրի՝ Օրբ. ծա.

— Ուշ ժամանակից է Ջուանշիր 1512 թ. Շաքի գավառի Ամուր-Աւան գյուղի մի դամբանի վրա (Բարխուտ. Աղուանից երկ. 215)։

*ՋՈՒԱՆՔՈՅ, ար.<պրս. جوان juvān «մատաղ, փոքր» բառից. երևի թե -քոյ Աղվանից լեզվի փաղաքշական մասնիկն է։ Այս ձևով ունինք մի անգամ՝

— Ջուանքոյ սպարապետ Աղուանից (706 թ).—Կղկնտ. Գ. ը, ժ։

ՋՈՒԴԻԿ, անձն. է. թվականը անհայտ.—Ձեռ. Ազգ.=Արար. 1911, 318։

ՋՈՒՁԼԱՆ, ար. ծագումը անհայտ. անթվական, բայց 1309 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Հալէպի, Ա. 94 բ)։

*ՋՈՒԼԱԲԻ, ար.<արաբ. جلابی julābī բառից, որի ծագումն ու նշանակությունը տես Գուլաբի։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Ջուլաբի ձևով 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, 94)։

*ՋՈՒՄԱՅ (տես. Ջումի), ար.<արաբ. جمعه jum'a «ուրբաթ» օրվա անունից. ինչպես կան նաև հյ. Ուրբաթ=հուն. Պարասկևի անունները։ Հիշատակված է ԺԴ—ԺԶ դարերում։

— 1. Ջումայ Ա, որդի Ճաչէի, եղբայր Ամիր-Ասադի և Ամիր-Հասան Բ-ի, թոռն Ամիր-Հասան Ա-ի և թոռնորդի Պռօշ մեծ իշխանի Խաչենոյ։ Կինն է Խոնդզէ և որդիքն են Արղութ և Զարխիկ, որոնք մահացել են Լէնկթիմուրի արշավանքների ժամանակ։ Հիշված է 1328, 1334 թվերին։—Խաղբակեանք 200—203 և ճյուղագրական տախտակը. Այրարատ 269, Սիսական 122, Հայապ. 529. Ձեռ. Դաղեան, Բ. 30 բ։

— 2. Ջումա Բ. Պռօշեան ցեղից, պարոն և տէր Վայոց ձորի և կողմանց Սրկզօնից. սպարապետ Հայոց. սրա որդիներն են Ղալաբէգ, Թումանբէգ, Ուլուսբէգ. եղբորորդիքն են Ցոլհաննէս եպիսկոպոս Վայոց ձորի և Ստեփաննոս եպիսկոպոս։ Հիշված է 1473—6 թվերին։—Խաղբակեանք 232, 236. Այրարատ 269. Ձեռ. Դաղեան, Բ. 55 ա, Սմբատեանց՝ Երնջակ 176, Հրպտ. եպս.՝ Դոփեանք 94, 95։

— 3. Ջումա ոմն, հիշված է 1559 թ.? տես Խաղբակեանք 249։

*ՋՈՒՄԼԱՅ, իգ.<արաբ. جمله jumla «ամբողջ, բոլոր» բառից (իբր թե բոլոր գեղեցկությունները հավաքված իր մեջ)։

— Ջումլայ խաթուն, կին Խութլուշայի, «Նախնիք» տա-

ծուտեր Յովհաննէսի, որ Խլաթում գրել տուեց մի Աւետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

ՋՈՒՄՇԱՅ, ար. կասկածում եմ որ շփոթված լինի նախորդի հետ. չի խանգարում այն հանգամանքը, որ նա իգական է, սա արական. որովհետև շատ անուններ կան, որ երկսեռ են. և «բոլոր, ամբողջ» այնպիսի մի բառ է, որ համարվում է երկուսեռին էլ։ Այս ձևով ունինք միայն՝

— Ջումշայ տեր Տաշրաց. իր և իր կին Թամթայի անունով կանգնեցրել է մի խաչքար՝ հին Ղրխբուլաղ գյուղում (Նոր-Բայազիտ), 1297 թ.—Սմբատեանց, Գեղարք. 618 (բայց տես Թամթա № 5 ծանոթությունը)։

*ՋՈՒՄՇՈՒԴ; ար.<պրս. جمشید ǰamšīd անունից. ծագում է զնդ. Yima=հպրս. *Yama ձևից, որի բուն իմաստը անհայտ է (Bartholomae 1300)։ Այս անունով հայտնի են Պարսից 4-րդ թագավորը՝ որդի Թամուրասի, ǰemšīd որդի Շահմիրզայի, թագավոր Քաշմիրի 1349 թ., ǰemšīd պատոսպան՝ որդի Կաւատի 1384—1405 թ., ǰamšēd Quṭbšāh թագավոր 1543—50 թ., ǰemšīd գերի բռնեց Վրաց Սիմէոն թագավորին 1568 թ. են (Justi 145 ա)։ Այս անունը ավանդված է մեր մեջ Ջիմշիդ ձևով ԺԷ դար (Զքր. Ագուլ. 145), հայտնի է նաև մելիք Ջումշուդ հայազգի իշխանը, որ սպանեց Պարսից թագավոր Աղա-Մահմադ խանին՝ 1797 թ. (Ազգապ. 3218). տես և վերը Ջիմշէր։ Այժմ Ղարաբաղի հայոց մեջ գործածական է Ջումշուդ անունը։

*ՋՈՒՆԴ, ար.<արաբ. جند ǰund «գունդ, բանակ» բառից. մի անգամ ունինք՝

— Ջունդ (քիչ հետո Ջունդիկ), իր կնոջ՝ Շահնարի հետ մի Աւետարան գրել տվին Թաթարաց արշավանքի ժամանակ և նվիրեցին X վանքին.—Յանիկեան, Հնութ. Ակնայ 94։

†ՋՈՒՆԴԱՒԱԳ, ար.<արաբ. جند ǰund «գունդ, բանակ»+հյ. աւագ բառերից, իբր «գնդապետ»։ Մի անգամ հիշված է՝

— Ջունդաւագ որդի Ջալալի, եղբայր Խաչատուր քահանայի, որ ստացավ մի Աւետարան (ԺԵ—ԺԶ դար)։—Ձեռ. Թաւր. էջ 83 բ։

*ՋՈՒՆԴԻԿ, ար. <արաբ. جندی ǰundī «ռազմիկ, պատերազմիկ» բառից։ Մի անգամ ունինք՝

— Ջունդիկ (տես. Ջունդիկան), փորագրիչ կամ ճարտարապետ, հիշված Անիի ՈԾԵ=1206 թվի մի արձանագրության մեջ (տես ИАН 1910, էջ 1151։

*ՋՈՒՇԵՐ, ար.<պրս. جوشر ǰušīr «ոստայնանկ, ջուլհակ» բառից։ Մի անգամ հիշատակված է Շաքի գավառի Ամուր-Աւան գյուղի մի դամբանի տապանագրում, «Արտաշիր Ջուշերի որդի», 1483 թ. (Բարխուտ. Աղվ. երկ. 215). բայց արդյոք այս Ջուշերը անձնանուն է, թե հոր արհեստի անունը։

ՋՈՒՐՋ, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Ջուրջ, ազատ Բաղաց Թագավորության, Համտունեանց ցեղից. մանուկ հասակում մեռավ և թաղվեց Ճահուկում (ԺԲ դար).—Օրբ. կ.—սեռ. Ջուրջի՝ Օրբ. կ.—Ջուրջեանց՝ Օրբ. կզ.—Սիսական 479 ա։

— 2. Ջուրջ, որի մայրն է Խութլու խաթուն, հայրանունը հայտնի չէ. նվերներ է արել Նորավանքին, ինչպես երևում է իր մի թերատ արձանագրությունից, որ թեև անթվական, բայց գրված է Տարսայիճի իշխանության ժամանակ 1273—90 թ։—Սիսական 197։

— 3. Ջուրջ հայր Ամիրայ (№ 1) Արփայեցու (ԺԴ դար).—սեռ. Ջուրջի՝ Օրբ. հ։

— 4. Ջուրջ, մայրն է Գոհար խաթուն (№ 3), պապ Ամիրայի (№ 2), որ ուխտի է եկել Նորավանք և մի այգի և երեք ջորի է նվիրել 1291 թ.—Սիսական 200։

*ՋՈՒՐՋԻՆ, ար.<արաբ. جرجين ǰurǰīn, որ պրս. گرگين Gurgīn>Գուրգէն անվան արաբացյալ ձևն է։ Ավանդված է մեր մեջ ԺԴ դարից։

— Ջուրճին Ուքան, որդի Վասակի և եղբայր Հասանի, որ նրա հիշատակին կանգնեցրեց մի խաչքար Խաչենի Դահրաւ գյուղում, 1276 թ.—Արցախ 156։

ՋՐԱՍՈՆ, սեռն ու ծագումը անհայտ. հիշված է 1475 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Մաղն. 35։

ՋՐՂԱՆԲԷԹ, ար. ծագումն անհայտ. ունենք միայն՝

— Ջրղանբէք, թոռ Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել ավեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 387)։

*ՋՕՖՐԻ (գրված նաև Ժօֆրէ). ար.<հ. ֆրանս. Geoffroy (այժմ Geoffroi) անունից, որով հայտնի են բազմաթիվ դուքսեր Անժուի, Նորմանդիոյ և Բրըտանյի՝ 958 թվից մինչև 1186 թ։

— 1. Ժօֆրի պարոն և տեր Շողկան, ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։—Սմբ. պատ. 111։

— 2. Ջօֆրի, *իշխանաց իշխան, տէր Սարվանդիք քաղ. որդի Սմբատի՝ եղբոր Կոստանդին Թագավորահօր. ուզում էր ամուսնանալ Լևոն Բ-ի այրի կնոջ՝ Սիպիլի հետ և տիրել Հայոց գահին «1220 թ»։ Տրդատ պռօքսիմոսի հետ միասին բանեցին Կիլիկիոյ Փիլիպպոս Թագավորին և բանտարկեցին «1225 թ»։ Իր որդիներն են Կոստանդին (№ 77), Սմբատ և Օշին։ Կինն էր Ալիծ (№ 2), որի մահից հետո ամուսնացավ Կեռանի հետ։ Երկրորդ ամուսնությունը 1259 թվից առաջ էր, երբ իր երեք որդիներն էլ կային, որոնք իր առաջին կնոջից պիտի լինեին (հմմտ. Թորոս աղբ. Բ. 437)։ Մեռավ Ջօֆրի իշխանը 1262 թ. (Սիսուան 554 բ)։—Ջեռ. օշ. 98 բ. Պատմ. կիլ. 211. տես և ՀԱ 1898, 246, ուր Ջօֆրին կոչված է «փեսայ Օշին Լամբրոնացի իշխանի (դավաճանին)», որից հետևում է թե Ալիծը սույն Օշինի աղջիկը և Ներսէս Լամբրոնացու քույրն էր։*

— 3. Ջօֆրէ (Joffroy l'Escrivain) *պետական քարտուղար ֆրանկ լեզվի, Լևոն Գ-ի ժամանակ, 1271 թ.— Սիսուան 485 բ։*

— 4. Ջուֆրի *պարոն, եղբայր Կոստանդին պայլ ավագ պարոնի, հոր Հեթում Ա Թագավորի. որդեն մեռած էր 1288 թ.—Սիսուան 534 ա։*

— 5. Ջօֆր, *հայր Թորոս Զաւակայ, որի հովանավորության տակ էր գտնվում Կրակայ գյուղաքաղաքի դատարանը, 1320 թ —Սիսուան 527 բ։*

— 6. Ջուֆրէ, *որդի Հեթում Ջամբուլայի. ծնվել է 1324 թ. ապրել է 34 տարի և այդ երիտասարդ հասակում մեռել է 1358 թ. իր մահվան վրա եղբայրը՝ Կոստանդին մի ողբ է գրել, որի վերջին տողերն են՝*

*Ես Կոստանդինս զայս գրեցի*
*Որ եմ աղբայր հետ իր զկնի.*
*Որ եփ իմ աղբայրն ի մէտս ինկնի,*
*Արցունքն ի վայր կու վաթի...*

*այս Կոստանդինն է, որ ապա ժառանգեց Հայոց գահը Կոստանդին Ե անունով.—Սիսուան 413։ (Այս նույն անձի մասին խոսում է նաև Ջարբ. Թրգմ. 124—5, բայց շատ այլափոխած ձևով՝ Ջուֆրին դանում է որդի Հեթում Ա Թագավորի, ջամբլայ Հայոց Մեծաց, ծն. 1224 թ. և մեռած 1258 թ։ Այս բոլոր սխալների պատճառն այն է, որ ողբի մեջ գրված «ի Թուին Հայոց ԸՃԷ ամի» հասկացել է ԷՃԷ, որով հարյուր տարվա սխալ է ա-*

ռաջացել և հասել մինչև Հեթում Ա. թագավորը «1226—1270 թ», որ Ճոփրի անունով որդի ունեցած չէ)։

# Ռ

*ՌԱԲԲԷ, ար.<արաբ. ربى rabbī «տեր իմ» ձևից։ Մի անգամ ունինք՝

— Ռաբբէ Սիւնի*, որդի Սարգսի. հիշվում է իբրև վկա՝ Տաթևի 839 թվի արձանագրության մեջ.—սեռ. Ռաբբէի՝ Օրբ. լը։

ՌԱՀԱՅ. անստույգ անուն, որ հիշված է Բագարանի 628 թվի արձանագրության մեջ.—Կոգեան, Կամսարականները 137։

*ՌԱՀԻԲ, ար.<արաբ. راهب rāhib «կրոնավոր, քահանա» բառից։ Մի անգամ ունինք՝

— Ռահիբ ոմն (հայ է)· իբր վկա հիշված է Տաթևի 1086 և 1091 թվերի կալվածագրերում.—Օրբ. ծթ։ (Միսական 289 գրում է սրա մասին. «Եթէ չիցէ այլազգի իշխան, կամ դպիր կամ գրիչ նորին իսկ Սենեքերիմայ (թագաւորի) է»։

†ՌԱՄ, իգ.<միջ. հյ. ռամ «կախարդություն, կախարդանք, հմայություն» բառից, որ արաբ. رمل raml բառից է փոխառյալ (մանրամասն տես Արմ. Բռ. ռամ)։ Մի անգամ ունինք միայն՝

— Ռամ, կին հյուսն Աստուածատուրի, որ իր որդի՝ Հագըրպետ քահանայի համար գրել տվեց մի Աւետարան՝ Նիկոպոլսի Խառմ քաղաքում, 1223 թ.—Ձեռ. Վիեն. Ա. 422։

*ՌԱՄԱԶ, ար.<համարում եմ արաբ. رمضان ramazān ձևից փոխառյալ, որ մահմեդականների ծոմապահության սրբազան ամիսն է և միևնույն ժամանակ գործածական է իբրև արական անուն։ Հիշված է 1661 թ. (Ձեռ. Ազուլ.=Արար. 1911, 119) և 1685 թ. (Bodleian 244)։

*ՌԱՄԵԼԱ, իգ. (այս անվան ծագման մասին տատանվում եմ երկու կարծիքի միջև. նախ կարող է լինել եբր. רמליהו Rəmalyāhū (սեռական հոլով), որ հուն. 'Ρομελίου նույնպես սեռական ձևով տառադարձված է, որից էլ հյ. Ռոմելայ՝ Դ. Թագ. ժե. 25, 27, 30, 32, 37, ժզ. 1, 5 կամ Հռովմելայ՝ Բ. Մնաց. իը, 6, Ես. է. 1, 4, 9, ը. 6. բոլորն էլ միայն մի դարձվածով՝ «Փակէէ որդի Ռոմելայ կամ Հռովմելայ». որով ուղղականը լինում է Ռոմելա, ինչպես նշանակված է Համաբարբառում։ Երկրորդ՝ կա-

րող է լինել լտ. Romula իգ. անունից, որ նշանակում է բուն «Հռովմուհի, կին Հռովմայեցի». այսպես էր կոչվում օր. Գաղերիոս կայսեր մայրը։ Սրա արականն է Romulus անունը, որ բուն նշանակում է «Հռովմայեցի»։ Այս անունով հայտնի են Հռոմուլոս՝ Հռովմի առաջին թագավորը, որ ապա աստվածների կարգը բարձրացավ, Ռոմուլոս Սիլվիոս՝ թագավոր Ալբայի, Վալերիոս Ռոմուլոս՝ որդի Մաքսենտիոս կայսեր, Ռամելոս կամ Ռոմելոս հազարապետ՝ նահատակ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Է, 448) և վերջապես Ռոմիլոս կիսասարկավագ, որի վարքը մտել է մեր Յայսմաւուրքի մեջ։ Ս. Գրքի Ռոմելյայ ձևը արական է (Փակէէի հայրն է) և հայտնի անձնավորություն չէ. ուստի ավելի հարմար է թերևս լտ. Romula, որ հուն. Ῥωμύλα ենթադրյալ ձևից անցել է հայերենի)։ Ռամելա անունը սովորական չէ մեր մեջ. բայց անցյալ դարում Պոլսում կար։

*ՌԱՅԻՍ, ար.<արաբ. رئيس raïs «գլխավոր, առաջնորդ» բառից։ Մի անգամ հիշատակված է էջմ. Գև. № 671 ձեռագրում (ԺԵ դար)։

*ՌԱՆՈՍ. հիշատակված է պարոն Ըռանոս ոմն, նվիրատու Աւետարանի. թվականն անհայտ (Ձեռ. Թաւր. 74 ա)։— Հմմտ. Արուանոս կամ ավելի լավ՝ Երանոս:

ՌԱՇԱՄ, ար.<կտ արաբ. رشم rašam «նորածիլ բույս» (Կամուս, Գ. 465), բայց իբրև անձնանուն չէ հիշված։ Հայապ. 279 կարդում է Ռաշատ (ըստ որում երկաթագիր Տ և Մ շատ նման են ձևով) և համարում է Ռշտունի բառի արմատը։ Լավագույն է՝ համարել Թովմա Արծրունու ձեռքով հնարված անուն)։ Մի անգամ հիշատակված է՝

— Ռաշամ (որ և Ռըշամ). իշխան Ռշտունի. արշավել է Բարզափրան Ռշտունու հետ Պաղեստին (51—39 Ն. Ք), բազմաթիվ հրյաներ՝ իրենց Հիւրկանոս քահանայապետի հետ գերի է բերել և բնակեցրել Աղթամար, ուր շատ շինություններ է արել։ Սրանից է ծագել Ռշտունիք անունը, որի բուն ձևն էր Գաւաշ։— Արծր. Դ. Է հիշում է բցռ. յՌաշամայ Ռշտունեաց ձևով, որից Հաւաք. 6, 7։

ՌԱՇԱԻ, ար. ծագումն ինձ անհայտ. երկու անգամ հիշված է 1321 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագթել.=Արրա. 1911, 565)։

*ՌԱՇԻԴ, ար.<արաբ. راشد rāšid կամ رشيد rašīd «չափահաս, խելահաս, ուղղափառ խելամ» բառից, որ Կովկասում «քաջ,

կորիճ» իմաստն է ստացած։ Իբրև անձնանուն գործածվում է Տաճիկների մեջ. նաև կա Գովկասի հայոց մոտ։

* ՌԱՏ, ար.<պհլ. rāt, զնդ. ratu «տեր» բառից, որ և մոգերին տրված մի պատվանուն էր. հմմտ. Եղիշ. 141 Մովպետան մովպետ ռատ (Հիւբշ. 233, 514). նույնը դարձել է պրս. راد rād «առատաձեռն, քաջ և կորովի, գիտուն և մտացի, բանախոս և բանաստեղծ» (ԳԴ)։ Գործածական էր նաև իբրև անձնանուն. հմմտ. Ռատ՝ զորավար վրացի (Սմբ. պատմ. 47), Ռատ վրացի, որդի Լիպարիտի, պատերազմեց Վասիլ Բ կայսեր դեմ 1023 թ. (տառադարձված է 'Ορατιός, Justi 259 բ), Ռատ մեծ իշխան Տայոց, եղբայրն է Լիպարիտ Ա. երկուսն էլ վրացի. Օրբելյանց տոհմից. սպանվեց Պաղակացիսի (Պալակցիս) հույն-վրացական պատերազմում՝ 1021 թ. (տես Լաստ. բ (գրված Ըռատ), Միսաքյան 92 ծան. և Վրդն. պատմ. 98 ծան.)։ Մեր մեջ հիշված է ԺԲ—ԺԶ դար։

— 1. Ռատ Երևանցի, հայր Սերոբի, որ իր Զորդուան այգին նվիրել է Բագնայրին 1210 թ.—Արձ. Շիրակ 117։

— 2. Ռատ, հայր Մկրտիչ աբեղայի, որ իր հոգևոր եղբայր Գրիգոր քահանայի հետ միասին շինել են Արուճի և Փարպիի հնձանները 1258 թ.—Արձ. Շիրակ 26 բ, Այրարատ 145։

— Ավելի ուշ Ռատ հիշված է երկիցս Ձեռ. Վասպ. 774 (բայց թիվը անհայտ. ԺԶ դար)։

[ՌԱՏԻՆԻԿ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է Յովհաննավանքի ԺԳ դարու մի արձանագրության մեջ, որ ավանդում է Ջքր. պատմ. Գ. 25 (Այրարատ 171, Շահխաթ. Բ. 109)։—Կարո Ղաֆադարյանը իր նորատիպ պատմական աշխատության մեջ (Հովհաննավանքը և նրա արձանագրությունները), էջ 65, 85 և 86 հիանալի կերպով բացատրում է հանելուկը։ Ինչպես աղբյուր լուսանկարից էլ երևում է, արձանագրության մեջ գրված է «Ա. Խաչկա: Ա: Ռ: տիկնա: Ա: Գինէվարդին...» կն փակագիր է, այնպես որ կարելի է կարդալ Ռատինկա կամ Ռատիկնա. վերծանողները առել են առաջին ձևով և առաջացել է Ռատինիկ սուտ անունը. մինչդեռ պետք է առնել Ռ:տիկին և ըստ Ղաֆադարյանի կարդալ Հազարտիկին, ինչպես կան Հազար, Հազարբեկ, Հազարվարդ են անունները։]

ՌԱՏԻՈՍ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գիտենք՝

— Ռատիոս Սեբաստացի, նոր վկա. իր եղբոր՝ Գոհարինէի հետ (տես այս անունը) նահատակվեց հավատքի համար «1155

թ».—Յայսմ. յուլ. 28>Նոր վկ. 12—22 (ձձ. Ռատիոս, Ռատինոս, Ռատիկոս, Ռամիտոս, Ռատիկ, Լուատինոս).—սեռ. Ռատիկոսի՝ ձշ. 609։—Սրանց տապանաքարը գտնվել է 1871 թվին գերեզմանատան մեջ և փոխադրվել է Հրեշտակապետաց վանքի տաճարը։ Տապանաքարի արձանագրությունն է. «Աստ նահատակք որ կատարեցան սրով վասն Քրիստոսի, Ռատիոս, և Գոհարինէ, Տնկիկ և Ծամիղէս. և եդան յայս տեղւոջ ի ձեռն սուրբ վարդապետի Բարսղի. Թուա. ՈԼԶ» (=1187)։—Փունջ լրագիր 1871, յուլ. 31, № 681, Արրա. 1871, էջ 311, Թորոս աղբ. Ա. 182։

*ՌԱՓԱՅԷԼ, ար.<եբր. רפאל Rəfāēl անվան հուն. Ῥαφαήλ տառադարձությունից. բուն իմաստն է «բժշկություն Աստուծոյ» և կազմված է rfa «բժշկել»+ēl «Աստված» բառերից։ Այսպես նաև բեեռ. Ilua-rapa, որ նույն անվան շրջված ձևն է (Gesenius 770)։ Հմմտ. հներից Տաթև. հարց. 144 «Ռափայէլ, որ է բժշկութիւն Աստուծոյ».—Սասն. 61—62 Հըռափայէլ ձևով գործ է ածել «բժիշկ» բառի տեղ՝ իբր ածական Ս. Միքայելի։ Այս անունով հայտնի է հատկապես Ռափայէլ հրեշտակապետը։ Հներից մեր մեջ ավանդված է է—Ը դարերում երկու անգամ. այժմ սովորական գործածություն ունի. ասվում է նաև եվրոպական ձևով Ռաֆայէլ. կրճատ ձևն է Ռափիկ, Ռաֆիկ. սրանից է Ռափայէլեան ազգանունը։

— 1. Ռափայէլ Ծուրտաւեցի (605—6 թ).—տես Նաթանայէլ անվան տակ։

— 2. Ռափայէլ, վանաց երեց. անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— Ավելի ուշ հիշատակված է Ռափայէլ 1645 թ. (Ջեռ. Վասպ. 296)։

*ՌԱՖԻ, ար.<արաբ. رافع rāfiʿ «բարձրացնող. 2. վերև ցուցող փայլակ» կամ رفيع rafīʿ «պերճ, մեծափառ անձ» բառից։ Երկուսն էլ գործածվում են Արաբների մեջ իբրև ար. անձնանուն (Կամուս, Բ. 587). օր. Rāfiʿ (Իբն-ի Բատուտա, Ա. էջ 254). Նույնը նաև արդի Պարսից մեջ. օր. Միրզա Ռաֆի Թաբրիզեցի (Ջամբռ 185)։ Մեր նշանավոր վիպասան Ռաֆֆին իր վրա վերցրեց այս անունը՝ իբր գրական ծածկանուն (սխալմամբ գրելով Րաֆֆի), որից էլ ոմանք գործածում են իբր անձնանուն։

*ՌԵԲԵԿԱ, իգ.<եբր. רבקה Ribəqā անվան հուն. Ῥεβέκκα տառադարձությունից։ Թվում է թե ծագում է rbq «կապել» ար-

մատից (Gesenius 743 և 459)։ Հներից մեկնված կա «Ռեբեկա թարգմանի բաղում առեալ» (Առաք. 463 ա)։ Այս անունով հայտնի է Հին Կտակարանից Իսահակ նահապետի կինը։ Մեր մեջ գրված է նաև Ռաքէլ, Երեփիկա, Հռեբբեկայ: Հնում շատ անսովոր էր. մի անգամ գտնում եմ հիշված 1653 թ. (Սմբատեանց, Գեղարք. 394)։ Այժմ էլ հազվագյուտ է։

*ՌԵԹԷՈՍ, տր.<հուն. Ἱερόθεος (>լտ. Hierotheus) «Աստուածանուէր» (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Է, 62) կամ «Նուիրական և աստուածային» (Sophocles 594) անունից։ Այս անունով հայտնի էր հնում Ռեթէոս Աթենացի՝ քրիստոնեական մատենագիր Ա դարի, Դիոնեսիոս Արիսպագացու ուսուցիչը, որ քրիստոնեություն ընդունեց։ Գրված է նաև Յռեթէոս, Եռոթէոս ձևերով։ Մեր մեջ հնում գործածված չի եղել. առաջին անգամ պատահում եմ Ռեթէոս վարդապետ 1772 թ. (Ազգ. մատ. ՀԸ 165)։ Անցյալ դարում ունինք Պոլսում Ռեթէոս Պէրպէրեան՝ նշանավոր գրագետ ու մանկավարժը և Իռեթիկ կամ Հերեթիկ հոջա՝ մեծ տաճկագետ ուսուցիչը։

†ՌԵՀԱՆ, իգ.<հյ. ռեհան ծաղկանունից. գործածական է նաև Տաճիկների մոտ. ինչ. Ռէյհան (բայց տր!), տաճիկ ոմն 1655 թ. (Երեմ. չէլ. օրագր. 85). մեր մեջ հիշատակված ունինք Ռեհան՝ ԺԶ դար (Ձեռ. Վասպ. 780), 1635 թ. (անդ 887), Ըռիհան 1645 թ. (անդ 296), Ռահան 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1926, 551), Ըռխան 1704 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 83), Ըրեհան 1723 թ. (Ձեռ, Վեննետ. Բ. 979), Ըռհան 1722 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 8 ա), Ըռիհան 1736 թ. (անդ 44 ա), Ռիհան 1741 թ. (Սիսական 258 բ), Ըռհան 1768 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 39 ա), Ռեհան՝ ԺԸ դարի վերջից (Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 201)։ Գործածական է նաև այժմ։

ՌԵՄԻ, իգ. ծագումն անհայտ. (Ալիշան, Սիսուան 227 բ կարդում է Ցիմի կամ հասկանում է Հռիփսիմէ? և միացնում է Ցեմիի)։

— 1. Ռեմի, քույր Կոստանդին Դ թագավորի Հայոց. նախապես ամուսնացել էր Ջիւանի (=Կոստանդին Գ թագավորի) որդի Պեմունդի հետ. ամուսնու մահից հետո, Լևոն Զ-ի ձեռքով ամուսնացավ 1373 թ. ֆրանսիացի Sohier Doulcart-ի հետ, որ Լևոն Զ-ի զինակիրն ու թիկնապահն էր, ապա եղավ նրա գերեկիցը։—Սիսուան 227 բ, 371 բ, 413 ա։

— 2. Ռեմօ (սեռն անհայտ), հիշված է ԺԶ դարում. տես Սիւրմէեան, La vie et la cult. էջ 23։

*ՌԵՄՈՒՆԴ, որ. եվրոպական անուն, որ փոխ առնվեց Կիլիկեցոց ժամանակ. հմմտ. Ռուբէն-Ռեմունդ՝ Անտիոքի գահաժառանգը, որի համար Լևոն Բ 12 տարի պատերազմ մղեց։

— 1. Ըռեմուտ, քեռի Հեթում Բ թագավորի. ընտիր բանակով գնաց Հռոմկլա և դիմադրեց Եգիպտոսի սուլթանին «1292 թ»։—Զամչ. Գ. 383։

— 2. Ռեմունդ որդի Հեթումի և թոռ Յոպպէի Յովհաննէս կոմսի, տատն էր Մարիամ, քույր Հեթում Ա-ի. տեր Միքայէլկլայի, սենեսչալ հայոց թագավորության. անդամ Սսոյ «1307 թվի» և Ադանայի «1317 թվի» եկեղեցական ժողովների։—Սիսուան 102, 132, Հայապ. 543. Ազգապ. 1787։

— 3. Ռեմունդ, դեսպան ուղարկվեց Լևոն Ե թագավորի կողմից Յակոբ Թարգմանի հետ պապի մոտ, Հայոց ու Կիպրացոց վեճը հարթարելու համար (1327 թ). Ռեմունդը մնաց Վենետիկում.—Սիսուան 558 բ, Հայ-Վենետ. 115։

ՌԵՆԻԱ, սեռն անհայտ. հիշված է ԺԶ դարում. տես Սիւրմէեան, La vie et la cult. էջ 23։

*ՌԵՋԵԲ, որ. <արաբ. رجب rejeb ամսանունից, որ նաև անձնանուն է Իսլամների մեջ. (այսպես նաև šabān, ramazān ամսանունները, որոնք նույնպես անձնանուն են դարձել Իսլամների մոտ)։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ Ըռեճեպ ձևով (այն էլ քահանա), 1656 թ. (Երևմ. չէլ. օրագր. 202—3)։

ՌԵՍՏԷՆ, որ. ծագումը ինձ անհայտ. հիշատակված է ԺԸ դարում. օր. Քերովբէ Ռեստէն-Պատկանեան (նշանավոր բանասերը)։

ՌԵՒ, որ. (արդյոք Արև բառն է)։

— Ռև, որդի Վաղարշ թագավորի Հայոց. Վրացիք խնդրեցին նրանից, որ գա լինի իրենց Ամզասպ Բ թագավորին, որ զինվորականներին տված սանձարձակությամբ անտանելի էր դարձել ժողովուրդին։ Ռևը գնաց, սպանեց Ամզասպին, տիրեց Վրաստանին և կառավարեց երկիրը 188—213 թ։ Ամուսնացավ Հունաց Սեփորա իշխանուհու հետ, արգելեց մարդազոհը, կանգնեցրեց Ափրոդիտէի արձանը, վիջող եղավ դեպի նորածագ քրիստոնեությունը և առհասարակ ժողովուրդին անգորրության մեջ պահեց (Mourier, Hist. de Géorgie, էջ 97—98).—Վրաց պատմ. Ա. 162։

* ՌԷՓԼԻՊ, տր. գրված է Ըռէփլիպ, որ պետք է հասկանալ Re Philippe «արքայն Փիլիպպոս» և դարձել է առանձին անձնանուն. Թվականն անհայտ (Ջեռ. Վեննետ. Բ. 1013)։

* ՌԷՅՎԱԶ (կամ Ռէվազ), տր. անշուշտ օտար բառ է. (պետք է ենթադրել կամ պրս. ریواس rīvās «խաւարծիլ» բուսանունից և կամ արաբ. ریاض riyāz «պարտեզ, դրախտ» բառից, որից կա Riyāzi անձնանունը Տաճիկների մոտ). հիշատակված եմ գտնում 1678 թ. (Ջամբռ. 184 և 208)։

* ՌԷՇԱՄՈՆ, տր. հիշված է 1606 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84), Ըռէշամոն ձևով. պետք է հասկանալ Ռէս Շամոն, ինչպես կա նույն տեղում Ռէղուլիչան։

* ՌԻԶԱԽԱՆ, տր. < արաբ. رضا Rizā անունից, որ բուն նշանակում է «գոհունակություն» + պրս. خان xān «իշխան»։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ 1635 թ. (Bodleian 107)։

* ՌԻԹԱ, իգ. < լտ. Margarita անվան կրճատ և գգվական ձևն է. տես և Մարգարիտ։ Այժմ սկսել է գործածվել մեզանում Ռիտա ձևով։

— 1. Ռիթա, դուստր Սմբատի՝ տեառն Պապեռոնի, քույր Բակուրանի և կին Ստեփանէի († «1157 թ»)՝ եղբոր Թորոս Բ-ի։ Ամուսնու եղերական մահից հետո, առավ իր որդիքը (Ռուբէն Բ և Լևոն Բ)-և գնաց ապրելու Պապեռոնում, իր եղբոր՝ Բակուրանի մոտ «1157 թ»։ Կոչվում է Տիկնանց տիկին, իբրև մայր Լևոն Բ Թագավորի։—Ըռիթա՝ Սմբ. պատմ. 99.—Ռիթայն՝ Սմբ. պատմ. 116 (սխալ տպ. զՌիթայն).—Ծերենցի «Թորոս Լևոնի» վեպի հերոսուհի՝ առաջինի Մարգարիտն է.—Սիսուան 71։

— 2. Ռիթա դուստր Թորոս Բ-ի († «1168 թ») և կին Հեթումի՝ որդւոյ Օշինի՝ տեառն Լամբրոնի։ Թորոսը փեսայացրեց իրեն այս Հեթումին, որպեսզի կապեր Լամբրոնեանց ցեղը Ռուբինեանց հետ. իսկ Հեթումը պահեց Ռիթային իբրև իր կինը՝ քանի Թորոսը կենդանի էր, որից հետո բաց թողեց։—Պատմ. կիլ. էջ 207։

— 3. Ռիթա, դուստր Լևոն Բ Թագավորի՝ իր Անտիոքացի առաջին կնոջից. երբ Լևոնը բանտարկեց իր կնոջը Վահկա բերդում՝ նրա անհավատարմության պատճառով, իր դուստրիկ Ռիթային էլ ուղարկեց իր մոր՝ Տիկնաց տիկին համանուն Ռիթայի մոտ, որպեսզի պահի ու դաստիարակի նրան։ Ռիթան քույրն է Զապէլ Թագուհու, որ Լևոնի երկրորդ կնոջից էր։ «1215 թվին» ամուսնացավ Յովհաննէս Բրիէնի հետ (Jean de Brienne).

հարսանեկան օժիտի մասին տես Ցուցիկք, Բ. 540։ Այս Յովհաննէսը Երուսաղէմի անվանական թագավորության կոչումն ստանձնելով՝ կոչվում էր նաև Ռէ Ջուան (Roi Jean) և Լևոնի մահից հետո՝ փորձեց տիրանալ Հայոց գահին («1220 թ»)։ Բայց իր կնոջը սպանելու պատճառով՝ զրկվեց այդ իրավունքից։ Ոմանք Ռիթային կոչում են նաև Ստեփանիա կամ Եստեփեմի (Estéphémie). ուրիշներ, հատկապես օտարները, Ռիթան և Ստեփանիան համարում են Լևոնի տարբեր աղջիկները։—Սմբ. պատմ. 116. Ցուցիկք Ա. 127, Սիսուան 142 բ, 411 ա, 508 բ, 510 բ։

— 4. Ռիթա, դուստր Հեթում Ա թագավորի («1226—1270 թ») և քույր Լևոն Գ թագավորի («1270—1289 թ»). ամուսնացավ 1261 թ. և եղավ կին Կոստանդինի՝ տեառն Սարվանդիքարի—Ձեռ. օշ. 98 բ. Դարդել 16, 26 (ամուսնացած է դնում հունաց Միքայէլ կայսեր հետ, ուրեմն շփոթում է № 7-ի հետ). Պատմ. կիլ. 211. Ծահազիզ, Պատմ. պատկ. 119։

— 5. Ռիթա տիկին 1307 թ. տես Օշին Վասիլենց։

— 6. Ռիթա, դուստր Ստեփաննոս քահանայի, կին Վահրամ քահանայի, քույր Յովհաննէս գրչի և մայր Ներսէս վարդապետի, որ այս Յովհաննէս գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը, 1328 թ.—Manus. brit. mus. 87 ա։

— 7. Ռիթա, դուստր Լևոն Գ թագավորի և քույր Հեթում Բ-ի. ծնվել է 1278 թ. իբրև երկվորյակ քույր Թեֆանոյի (№ 9)։ Հունաց Անդրոնիկոս Բ Պալէոլոգ կայսրը իր Միքայէլ որդու համար օտար արքունիքից հարսնացու փնտռելով, դիմել էր նախ Կիպրոս, բայց այստեղ հույսը դերև ելնելով, դիմեց Հեթումին։ Սրա երկու քույրերը՝ Ռիթա կամ Մարիամ և Թեֆանո, չնաշխարհիկ գեղեցկությամբ օժտված և եվրոպական դաստիարակությամբ մեծացած աղջիկներ էին։ Մեծ շուքով ուղարկվեցին Պոլիս՝ ծովի ճամբով։ Ռիթան ծովային ճամբորդությունից նեղված՝ հիվանդացավ. ուստի իջան Հռոդոս կղզին, ուր հույները երկուսին էլ կրկնամկրտության ենթարկելով, Ռիթային կոչեցին Քսենիա, իսկ Թէոֆանոյին՝ Թէոդորա։ Անցան Պոլիս. կայսրը ինքը՝ ծերակույտի հետ դիմավորեց իշխանուհիներին և աննախընթաց շքեղությամբ հարսանիք անելուց հետո, Ռիթան ամուսնացավ Միքայէլի հետ, «1293 թ». «և եղև ըմբրուրէս (կայսրուհի) ամենայն Կոստանդինուպոլսի» (Ձեռ. օշ. 101 ա), իսկ Թէոփանոն նշանվեց Յովհաննէս Կոմնենոսի որդի Դուկասի հետ։ Երեք տարի հետո, Հեթում և Թորոս Ռիթային տեսության

գնային Պոլիս, «1296 թ»։ Ռիթան ունեցավ չորս զավակ. Անդրոնիկոս, Մանուել, Աննա և Թէոդորա։ Առաջինը կայսր դարձավ Անդրոնիկոս Գ անունով. Ռիթան ուզում էր իշխանությունը իր ձեռքն առնել, ուստի գժտվեց իր որդու հետ, որի դեմ նույն իսկ դավադրություն սարքեց, բայց անհաջող։ Ռիթայի մի աղջիկն էլ Բուլղարաց թագավորի կինն եղավ։ Մեռավ Ռիթան Թեսալոնիկէում, 1333 թ. և նրա մահվան վրա մի հույն ճարտասան (Նիկեփոր պատմիչ) ողբախառն գովեստ գրելով՝ ուղարկել է կայսեր ի մխիթարություն (Սիսուան 559 ա)։— Սմբ. պատ. 126. Պատ. կիլ. 212. Միխ. համզ. 47. Ալիշան՝ Հայվեննա. 88. Հայապ. 545. Տէր՝ Սահակեան, Հայ կայսերք, Բ. 400—411։

† ՌԻՆԴ, իգ. <հյ. ժղ. ռինդ «լավ, գեղեցիկ» բառից, որ սակայն պարսկերենից է փոխառյալ։ Մի անգամ գտնում եմ իբրև անձնանուն գործածված 1744 թ. Ըռինդ ձևով (Սմբատեանց, Երնջակ 250)։

* ՌՈԶԱ, իգ. <լտ. Rosa անունից, որ նշանակում է «վարդ». հայ ձևն է Վարդուհի. փաղաքշական ձևերն են Ռոզիկ, Ռոզալիա։

* ՌՈԶԱԼԲԱ, իգ. <իտալ. rosa alba «վարդ սպիտակ» ձևից. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԷ դարի կեսին։ Զորավար Ստեփաննոս Շահումեանի կինն էր. բայց արդեոք իտալուհի չէ՞ր. Շահումեանները հաստատված էին Վենետիկում. Նրանց գերդաստանի տոհմագրությունը տես Սիսական 301։

* ՌՈՄԱՆՈՍ, ար. <հուն. Ῥωμανός անունից, որ թեև նույն է հնչում լտ. Romanus անվան հետ, բայց տարբեր է ծագմամբ, ըստ որում պատկանում է հին հունական շրջանին։ Հուն. Ῥωμανός պետք է ծագած լինի ῥώμη «ույժ, զորություն, կորով» բառից, իսկ լտ. Romanus նշանակում է «հռովմայեցի»։ Այս անունով հայտնի են Ուլիսի որդին հույն դիցաբանության մեջ, մի լատին քերականագետ, երկու հույն նահատակ՝ որոնց պատմությունը անցել է մեր Յայսմաւուրքի մեջ, մի պապ Հռովմի՝ 897 թվին, չորս Բիւզանդական կայսր Ժ—ԺԱ դարերում են։ Ավելի հին ձևն է Հոռոմանոս, որ տես առանձին։ Հնում Ռոմանոս քիչ է գործածված մեր մեջ. այժմ էլ անսովոր է. ծանոթ է միայն Ռոմանոս Մելիքեան նշանավոր երաժշտագետը († 1935 թ)։

— 1. Ռոմանոս պատրիկ, կինն է Եւփրոսինէ. որդին է Յովհաննէս Գուրգէն Ա-ի և Յովհաննէս Զմշկիկ կայսեր պապի պապի հայրը (Թ դար). սրա որդին է Յովհաննէս Գուրգէն Բ և

թոռը Ռոմանոս Գուրգէնն։—Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Բ. էջ 540։

— **2. Ռոմանոս** Գուրգէն, նախորդի թոռն է և Յովհաննէս Չմշկիկ կայսեր պապի՝ Թէոփիլոսի հայրը (Թ դար).—Տեր Սահակեան, Հայ կայսրեր, Բ. 540։

— **3. Ռոմանոս** Ա. Լեկաբենոս, որդի Վաշտակ Լեկաբենոս անունով հայ հասարակ զինվորի, որ պատերազմի մեջ Հունաց Վասիլ Ա Արշակունի կայսեր կյանքը փրկելով՝ պատրիկ էր նշանակված և իր որդու՝ Ռոմանոսի հետ Պոլիս էր տարված։ Այստեղ նախ Ռոմանոսը հասարակ ծովային զինվոր դարձավ. ամուսնացավ Թէոդորա անունով մի կնոջ հետ։ Մի օր Լևոն Զ Իմաստասէր կայսեր, իշխանների և պալատականների հետ որսի գնացած պահուն, կատաղած մի առյուծ հարձակվեց նրանց վրա։ Բոլորը փախան։ Կայսրը սարսափահար կանգնած էր։ Ռոմանոսը անվախ հարձակվեց գազանի վրա և երկարատև մենամարտից հետո՝ սպանեց նրան և կայսեր կյանքը փրկեց։ Առյուծի դիակի առաջ՝ կայսրը շնորհեց նրան ծովակալի տիտղոսը։ Այսպես մտավ Ռոմանոսը պետական պալատ, ուր Զոյէ կայսրուհին, հրապուրված Ռոմանոսի չքնաղ դեմքից, փարթամ ու վեհ կերպարանքից, սիրահարվեց նրան և նրա պաշտպանը դարձավ։ Երբ Բուլղարները արշավեցին Պոլսի վրա, Զոյէի հրամանով Լևոն Փոկասը ցամաքային բանակի հրամանատար նշանակվեց և Ռոմանոս ծովակալի հետ թշնամու վրա գնաց (917 թ)։ Այս երկուսը իրար մրցակից էին։ Ռոմանոսը այնպես դիրք բռնեց, որ հույները չարաչար պարտվեցին ու կոտորվեցին. սրա համար ծերակույտը դատապարտեց նրան կուրացման։ Կայսրուհին պաշտպանեց նրան և ոչ թե պատժի արժանի հրատարակեց, այլ որոշեց պալատ հրավիրել նրան՝ իբրև օգնական մանկահասակ կայսեր։ Զոյէի սենեկապանը՝ Կոստանդին դավադրություն սարքեց և ուզում էր բռնել Ռոմանոսին, բայց սա ավելի խորամանկ գտնվելով, բռնեց նրան և նավերից մեկում բանտարկեց։ Ապա նավատորմիղի գլուխն անցած՝ արշավեց պալատի վրա։ Զոյէ և կայսրը դիմավորեցին նրան և պալատ տանելով՝ կայսերական թիկնապահ զորքի զորավար նշանակեցին։ Ռոմանոսը Հեղինէ (տես № 6) անունով մի չքնաղ աղջիկ ուներ, որին սիրահարվեց կայսրը՝ Կոստանդին Պերփերուժէն, որ այն ժամանակ 14 տարեկան պատանի էր։ Շուտով ամուսնացավ Հեղինէի հետ և նրան կայսրուհի հրատարակեց (919 թ)։ Հեղինէն մեծապես օգնեց իր հոր

առաջացման համար։ Ռոմանոսը հաղթելով իր բոլոր հակառակորդներին, իրեն կայսր հռչակեց, առանց սակայն հալածելու օրինական կայսր Կոստանդինին (920 թ)։ Իր 24 տարվա իշխանության ժամանակ. Ռոմանոս կայսրը շատ տարօրինակ կյանք վարեց։ Դեպի աղքատները նա չափազանց ողորմած էր. նրանց համար պալատի առաջ տախտակյա մի շենք շինեց և բոլորին կերակուր էր տալիս և դրա համար ծախսում էր ամսական 12.000 արծաթ դրամ։ Ամեն օր երեք աղքատ իր ճաշին սեղանակից էր դարձնում։ Հավաքեց բազմաթիվ պարտապանների մուրհակները, պարտքերը վճարեց և մուրհակները հրապարակում այրեց։ Այսպիսի բարեգործություններով պետական գանձը դատարկում էր։ Ընդհակառակը շատ խիստ եղավ դեպի հարուստները և դեպի իր թշնամիները, որոնց կուրացնելով վանք էր ուղարկում։ Շատ արշավանքներ տեղի ունեցան իր օրով. երեք անգամ Բուլգարները, մի անգամ Ռուսները, նաև Արաբները հարձակվեցին իր վրա. Ռոմանոսը կարողացավ ըստ կարելվույն պաշտպանել իր երկիրը և մինչև անգամ Եգիպտոսի վրա արշավանք կազմակերպեց։ Շատ դավեր սարքվեցին իր դեմ, որոնցից 7 նշանավոր եղան. նույն իսկ Զոյէ կայսրուհին ուզեց տապալել նրան. բայց Ռոմանոսը կարողացավ կանխել այդ բոլոր դավերը և դավաճաններին պատժեց։ Վերջին դավաճանը եղավ իր որդին Ստեփաննոսը, որ գահազուրկ արեց հորը և նույն իսկ հիվանդ անկողնից հանելով Պրոտի վանքում փակեց (944 թ)։ Զորս տարի եւս մնաց Ռոմանոսը ճգնական կյանքում (948 թ)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 217, Բ. 19—24, 33—93, 375—7, 475—486, Զամչ. Բ. 816. Ազգապ. 1051։ — Սրան է վերագրվում Քրիստոսի դաստառակի փոխադրությունը Պոլիս. այս մասին տես Փափազեանց, Պատմ. եկեղ. 422։

— 4. Ռոմանոս Տարոնեցի, իշխան, ամուսնացած էր հունաց Ռոմանոս Լեկաբենոս կայսեր (†948) աղջկա հետ, որի անունը հայտնի չէ. Գրիգոր և Բագրատ Տարոնեցիների հետ առաջնորդում էր այն գնդերին, որոնք ապստամբ Վարդ Սկլերոսի բանակն էին կազմում։ Սկլերոսի հրամանով գնաց Վասիլ Բ կայսեր ուղարկած Լևոն զորավարի դեմ. բայց միևնույն ժամանակ հարկերը տանող Արաբ գունդի վրա էլ հարձակվելով, չկարողացավ դիմադրավել Լևոնի բանակին և չարաչար հաղթվեց։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ, 236, 239—241, 485։

— 5. Ռոմանոս, որդի Բագարատ իշխանի Տարոնոյ. եղբայր

Աշոտի. հայրը այս անունը տվել էր նրան՝ ի հիշատակ Ռոմանոս կայսեր, որին իր աներն էր համարում (Ժ դար).—Զամչ. Բ. 818։

— 6. Ռոմանոս Կուրկուաս (կամ Գուրգէն), Չմշկիկ կայսեր եղբորորդին էր. երկուսն էլ Նիկեփորի հետ միասին քաջությամբ կռվում էին Արաբների դեմ։ Երբ Չմշկիկ և Ռոմանոս պալատից առաջարկ ստացան դավաճանորեն սպանել Նիկեփորին, նրանք փոխանակ դավաճանելու, գաղտնիքը հայտնեցին և իրենց սուրը Նիկեփորի կրծքին դնելով, գոչեցին. «Մեռիր կամ կայսր եղիր»։ Ամբողջ բանակը միացավ իրենց, արշավեցին Պոլիս և Նիկեփորին կայսր հրատարակեցին (963 թ.)—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 140—141, 220—1 (տես և էջ 325), Դուրեան՝ Ազգ. պատմ. 352։

— 7. Ռոմանոս, որդի Ռոմանոս Ա Լեկաբենոս կայսեր որդի՝ Քրիստոֆի, թոռն է Ռոմանոս Ա կայսեր, որ գահակից դարձըրեց նրան (իր թոռնիկին) 927 թ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 49։

— 8. Ռոմանոս Բ. Կրտսեր, որդին էր Կոստանդին Է Պերփեռուժէն կայսեր. մայրն է Հեղինէ (№ 6) կայսրուհին. ծնվել է 939 թ. իր գիտնական հորից ստացավ ընտիր դաստիարակություն, բայց ամուսնանալով մի գինեպանի Անաստասիա անունով (ապա կոչված Թէոֆանո) անկարգ աղջկա հետ, նրա ձեռքը խաղալիք դարձավ։ Ամբողջ ժամանակը անցկացրեց զվարճությամբ և դավերով։ Իր հորը՝ Պերփեռուժէնին թունավորելով սպանեց (959 թ), հինգ քույրերին վանքի մեջ փակեց և մինչև իսկ իր մորը՝ Հեղինէին ուզեց աքսորել։ Իր ժամանակ տեղի ունեցած միակ պատմական նշանավոր դեպքն այն է, որ իր հայազգի զորավար Նիկեփոր (№ 3) Փոկասը Արաբների ձեռքից, մեծ կոտորածով գրավեց Կրետէ կղզին (960 թ), որ Նիկոն Պոնտացին քրիստոնյա դարձրեց։ Նիկեփորը մինչև Հալէպ գրավելուց հետո Պոլիս վերադարձավ, ուր Թէոփանո կայսրուհին սիրահարվելով նրան, ամուսնուն թունավորեց և Նիկեփորի հետ ամուսնացավ (963 թ)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 28—30, 97—118, 375—8, 472, 487—492։

— 9. Ռոմանոս, որդի Վարդ Սկլերոսի, որ հունաց Արևելյան բանակի սպարապետն էր և ապստամբեց Վասիլ Բ կայսեր դեմ՝ Փոքր-Ասիայում։ Այդ միջոցին Ռոմանոսը Պոլսումն էր և անշուշտ առաջին զոհը պիտի լիներ կայսեր վրեժխնդրության։

Վարդի ճարպիկ մի զորավարը՝ Անթէս անունով, Վարդի դեմ ապստամբություն կեղծեց, իր գնդով փախավ Պոլիս, ուր սկսեց չարաչար վատաբանել Վարդին։ Շահելով բոլորի վստահությունը, ծածուկ լուր հասցրեց Ռոմանոսին և փախցրեց հոր մոտ։ Վարդի երկրորդ ապստամբության ժամանակ, երբ սա դավաճան Փոկասի ձեռքով գերի բռնվեց, Ռոմանոսը հաշտարար հրեշտակի դեր կատարեց իր հոր և Վասիլ կայսեր միջև.—Սկլերոսը անձնատուր եղավ կայսեր, որ նրան կյուրապաղատ և իր երկրորդը անվանեց, բայց շուտով ծերացած ու կուրացած Սկլերոսը մեռավ 990 թ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 235—6, 257—8։

— 10. **Ռոմանոս** Գ. Կապադովկացի հայ էր, Արգիւրա ընտանիքից. եղավ կայսր հունաց 1029 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 411, Ջամչ. Բ. 910—11։

— 11. **Ռոմանոս** Սկլերոս, հայազգի նշանավոր անձ ԺԱ դարու հունաց պատմության մեջ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 577։

— 12. **Ռոմանոս**, հունադավան հայ իշխան, տեր Կոմաս և Սինիտ բերդերի (Կիլիկիա), ներկա էր Լևոնի թագադրության հանդեսին «1199 թ»։—Սիսուան 328, 471 (Սմբ. պատմ. 112 գրում է **Ամանոս**, որ Ալիշան այսպես է ուղղում. տես և Ամանոս)։

— 13. **Ռոմանոս**, հայր Սահակ քահանա Անեցու, որ ստացավ Գետաշէնի նշանավոր Աւետարանը 1211 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 42, 43։

— 14. **Ռոմանոս**, քարտաշ կամ փորագրիչ, որ Գրիգոր «աշխատողի» (բանվոր) հետ միասին քանդակել են Խծկօնքի միարձանագրությունը 1233 թ.— Շիրակ 128։

— 15. **Ռոմանոս** վարդապետ. գրիչ. ծեր էր, աչքերի լույսից պակաս և աղքատ. «մուրանալ ամաչէր», ուստի Աւետարան արտագրելով ուզում էր իր և իրայիններին ապրուստը ճարել։ Վասպուրականի Ընծայեաց Ս. Աստուածածին վանքում օրինակեց Աւետարանը 1276 թ. և ծախեց երէց Պովրոս մելիքին։ Այս Աւետարանի հիշատակարանում պատմում է Սմբատ Գունդըստաբլի մահը «1276 թ».—Ջամչ. Գ. 278 և 280. Ջեռ. Վենետ. Ա. 426։

— 16. **Ռոմանոս** կամ **Ռումակ**, իշխան Համիայ բերդի (Կիլիկիա). գերի ընկավ Արաբների ձեռքը՝ Թիլ-Համտունի պաշարման ժամանակ և հավատքը ուրանալով ազատվեց 1304 թ.—Սիսուան 206 ա։

— 17. Ռստմանոս Խանականցի, ազգական Ներսէս վարդապետ Սասնեցու, նվիրատու ձեռագրի 1332 թ.—Հայապ. 546։

ՌՈՅՑՆԻ (գրված է Ռոյցնի ձևով). իգ? Թվականն անհայտ. հիշված է մի անգամ Ձեռ. Վասպ. 238։

*ՌՈՍՏՈՄ, ար.<պհլ. *Rustam, պրս. رستم Rustam անունից, որ և տառադարձված է ասոր. Rustam։ Ծագում է հպրս. *rautas-taxma ձևից և նշանակում է «գետ կամ հեղեղ ուժգին» (հպրս. rautah «գետ, հեղեղ» և taxma «ուժգին» բառերից. Հիւբշ. 71, 508)։ Այս անունով հայտնի են Պարսից մեջ հուչակավոր քաջն Ռուստամ-Զալ (պրս. رستم Rustam կամ رستهم Rustahm)՝ Շահնամէի հերոսներից մեկը (Շահն. հտ. 1, էջ 279, ուր մեկնըված է պրս. rust am «ազատվեցի»! այսպես է ասել Ռուսթամի մայրը երկանց ցավերից ազատվելիս). Ռոստամ զորավար Յազկերտ Գ-ի, իշխան Ատրպատականի, որդի Խոռոխ-Որմիզդի (Սեբ.) են։ (Justi 262—6 հիշում է 96 անձ՝ պարսիկ, արաբ, թուրք, վրացի, աֆղան, հնդիկ և հայ)։ Հայերենում գրված է Ռըստոմ, Ռաստոմ, Ռոստոմ, Ռստոմ, Ռուստամ, Առոստամ, Առաստոմ, Առոստոմ, Ըոսդամ: Հնագույն ձևն է Առոստամ<Rustam (ու ընկած և ռ-ից առաջ ա հավելվածով). այժմ գործածական է Ղարաբաղում՝ Առուստամ, Ռուստամ և Ռոստոմ ձևերով. սրանից է Առուստամեան, Ռոստոմեան ազգանունը։ Տես նաև Առաստոմ։

— 1. Ռաստոմ սարկավագ, աքսորվեց Մեծն Ներսէսի հետ՝ Վաղէս կայսեր հրամանով «364 թ».— Բուզ. Դ. զ։

— 2. Ռըստոմ նախարար Առաւենեան, ժամանակակից Արշակ Գ («† 386 թ») թագավորի.— Խոր. Գ. խգ։

— 3. Ռոստոմ ի Վարազ-Աքոյեան, իշխան ազուան, Ուտեաց գավառի Կաղանկատուք գյուղում, Պարսից Ստահր գավառից ծագած (706 թ).—Կղկնտ. Գ. ը, ժ։— Սրա հետ նույն է՝ Ռտոմ ի Վաչագան ի Վարազաքեան Յունաստանեան, հրտր. Սամ. անեց. 286։

— 4. Ռստոմ Վարաժնունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ». Ութմանիկները սպանեցին նրան և տիրեցին Ամիւկին։— Արծր. Գ. դ, ժը։

— 5. Ռաստամ, եղբորորդի Խոնտքար տէկնոջ, որ Խորատկայ վանքում գրել տվեց Աւետարանը 1490 թ.— Ձեռ. Նորբայազ. 23 ա։

— Ավելի ուշ հիշատակված են Ըռըստամ 1549 թ. (Ձեռ. Վասպ. 652), Ռուռշամ 1609 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի

ազգ. գերեզմ. 25 բ), Ռուստամ իգ! 1661 թ. (Ձեռ. Ազուլ.=Արրա. 1911, 119), Րուսթամ 1697 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 260), Րուստամ իգ.! 1775 թ. (Ձեռ. Թաւր. 18 բ), Ըռստամ 1793 թ. (անդ 44 բ)։ Կա նաև Ըռըստօ ձևը 1722 թ. (Ձեռ. Վասպ. 596), որ փաղաքշականն է Ռոստոմ, բայց ավելի հավանաբար Արիստակես անվան։

*ՌՈՒԲԷՆ, ար. < եբր. רְאוּבֵן Rəubēn անվան հուն. Ῥουβὴν տառադարձությունից։ Ծագում է եբր. רָאָה rā «տեսնել» և בֵּן bēn «որդի» բառերից և նշանակում է «տես որդի» (Gesenius 736). հմմտ. Ծն. իթ. 32. «Կոչեաց զանուն նորա Ռուբէն. ասէ. Զի ետես Տէր զտառապանս իմ. արդ սիրեսցէ զիս այր իմ».— Տաթև. ամ. 650 «Ռուբէն թարգմանի տեսող»։ Այս անունով հայտնի է Յակոբ նահապետի 12 որդիներից անդրանիկը։ Հիշված է իբրև անձնանվան օրինակ՝ Սիւն. քեր. 215։ Գործածված է մեր մեջ ԺԱ դարից սկսած և գործածվում է նաև այժմ նույն ձևով. գգվականն է Ռուբիկ. սրանից է Ռուբինեան ազգանունը, որ և մեր թագավորական հարստություններից չորրորդի անունն է։

— 1. Ռուբէն Սասնեցի, տիրել է Կիլիկիոյ և Փռիւգիոյ զանազան կողմերին և հատկապես Կոսիտառի բերդին (1045—50 թ). — Սիսուան 44ա և 550 բ։ Անստույգ անձ. հավանաբար նույն է հաջորդի հետ։

— 2. Ռուբէն Ա. հիմնադիր Ռուբինեան հարստության. Գագիկ Բ թագավորի ազգականներից էր. իր մի քանի հավատարիմ ընկերներով գնաց Տօրոսի բարձունքները և հաստատվելով Կոռոմոզոլ գյուղում, վանեց շրջակայքի հույներին և հիմնեց Ռուբինեանց պետությունը («1080—1095 թ»).— Ուռհ. 321. Միխ. աս. խա. Վահր. ոտ. 192. Սմբ. պատմ. 91, 136. Սամ. անեց. 116, 135. Մխ. այրիվ. 19 (կոչում է «սասնցի»). Պատմ. ռուբ. 214. Պատմ. լմբ. 238. Դարդել 9. Մին. համդ. 36. Նհպտք. 100.— Ռովբէն՝ Պատմ. կիլ. 204.— Ռոբէն՝ Հեթ. ժմնկ.— սեռ. Ռուբենի, Ռուբէնի՝ Սամ. անեց. 121, 128, 136. շար. 142. Գր. եր. 400. Պատմ. յյտ. ներս. 45. Վահր. ոտ. 194. Սմբ. պատմ. 87. Կիր. 62. Վրդ. կե. Մին. համդ. 37. Նհպտք. 101.— Ռուբենայ՝ Ուռհ. 257, 269, 271, 298, 306, 316, 318, 337—8, 342. Գր. եր. 369, 428. Միխ. աս. իե. (=իդ). Կիր. ա. Վրդ. հը. Սմբ. պատմ. 92.— Ռուբինայ՝ Ուռհ. 259, 325. Վրդ. կե.— Ռոբենի՝ Միխ. աս. խա.— Ռովբինի՝ Պատմ. կիլ. 204.— Ռուբինեանք, —եանց՝ Լմբ. յայտ.

յիշ. Մաղաք. աբ. 52. Անանուն ժմ. 19, Մխ. այրիվ. 74. Սամ. անեց. 135. Գամ. ուռհ. 212. Գամ. լմբ. 238, 241. Մին. համդ. 36.— Ռուբենեանք' Վահր. ոտ. 185. Սմբ. պատմ. 101, 113. Նհպտք. 101.— Ռոբինեանց' Ցիշ. (տես. Յ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ ճիզ).— Ռոբինեաց' Երզն. պտճռ. 84.— Ռովբինանք' Գամ. կիլ. 204, 208.— Ռովբինեաց' Գարգ. 695.— Ջամչ. Գ. 367. Ջարբ. Հին դպ. 90, 91. Սիսուան 43, 148, 239 (Արձ. Թորոս Ա-ի), Հայապ. 343։

— 3. Ռուբէն, հարճորդի Լևոն Ա իշխանի և եղբայր Թորոս Բ-ի. Նրանց հետ գերի տարվեց Պոլիս, ուր և բանտարկվեց. սպանվեց բանտում 1141 թ.— Վահր. ոտ. 197, 199. Սամ. անեց. 128—9, 135. Գամ. ուռհ. 215. Մին. համդ. 39. Հայապ. 345.— Ռովբէն' Գամ. կիլ. 204—5.— գրծ. Ռուբինաւ' Գամ. ուռհ. 215. Նհպտք. 103.— Ռուբենիւ' Սամ. անեց. 130. Մին. համդ. 39։

— 4. Ռուբէն որդի Թորոս Բ-ի. հայրը մեռնելով «1168 թ», Ռուբէնի անչափահասության պատճառով՝ նրան խնամակալ նշանակվեց Թոմաս պայլը. Մլեհի ձեռքից փախավ Անտիոք, այտեղից էլ Շնորհալու մոտ՝ Հռոմկլայ, ուր և մեռավ քիչ հետո «1170 թ».— Սմբ. պատմ. 100, 136. Մին. համդ. 40։— Կոչվում է նաև Լևոն, որ տես № 10։

— 5. Ռուբէն, հարճորդի Մլեհի Ռուբինեանց. հոր մահվանից առաջ արդեն մեռած էր «1175 թ».— Ալիշան' Շնորհ. 327, Ազգապ. 1452։

— 6. Ռուբէն Բ. որդի Ստեփանէի՝ եղբոր Թորոս Բ-ի, հաջորդեց իր եղբոր՝ Մլեհի «1175 թ». գնաց Երուսաղէմ և ամուսնացավ Քարաքի տեր Եւրոպացի Հիմֆրիս իշխանի Զաբել անուն (տես № 1) աղջկա հետ «1181 թ»։ Վերադարձին գրավեց Տարսոնը հույների ձեռքից և այս պատճառով թշնամացավ Լամբրոնի իշխան Հեթումի հետ և նրա բերդը պաշարեց «1183 թ»։ Հեթումը անճարացած՝ խնդրեց Անտիոքի Բոհեմոնդ իշխանի օգնությունը. Նա էլ խարդախությամբ Ռուբէնին Անտիոք հրավիրելով՝ բանտարկեց և ուզում էր Կիլիկիան գրավել։ Ռուբէնի եղբայրը՝ Լևոն, հայ զորքի գլուխն անցած՝ քաջությամբ պաշտպանեց երկիրը նրա դեմ և նեղը լծելով Հեթումին՝ ստիպեց հաշտություն խնդրել և Ռուբէնին արձակել տալ «1185 թ», Ռուբէնը դարձավ իր գահը և քաղցրությամբ կառավարելով երկիրը, աշխարհային գործերից ձանձրացած՝ իշխանությունը հանձնեց իր եղբոր՝ Լևոն Բ-ին և ինքը վանք քաշվեց, ուր և

մեռավ «1187 թ»։ Ունեցել է երկու աղջիկ՝ Ալիծ և Փիլիպպինէ, որոնք նշանավոր դարձան պատմության մեջ իրենց խաղացած դերով։— Վրդ. հր. հիր. 62, ա. Վահր. ոտ. 210—212. Սմբ. պատմ. 98, 102—4, 136. Սամ. անեց. 136, 138. շար. 140—142. Պամ. կիլ. 208. Պատմ. ռուբ. 217—9. Պատմ. լմբ. 230, 238. Մին. համդ. 41. Նհպտք. 103. Հայապ. 346.— Ռովբեն, Ռովբէն՝ Պամ. կիլ. 208. ZAPh 1, 183.— Ռոբեն, Ռոբէն՝ Միխ. աս. իէ (=իզ). Օրբ. ժմ. 19. Հեթ. ժմնկ.—սեռ. Ռուբենի, Ռուբէնի՝ Մխ. դտ. Նխդր. ժա. Սմբ. պատմ. 104—5, 108. Օրբ. ժմ. 20. Սամ. անեց. շար. 141. Պամ. լմբ. 239. Մին. համդ. 41. Նհպտք. 103.— բց. յՌուբենայ՝ Վահր. ոտ. 212.— Ռովբենի՝ Պամ. կիլ. 208—9.— Ռովբենայ՝ Պամ. կիլ. 208.— Ռովբինի՝ Պամ. կիլ. 209.—Ռոբենայ՝ Միխ. աս. իէ (=իզ), իը (=իէ).— Ռոբինայ՝ Օրբ. ժմ. 22.— Դարդել 13, Սիսուան 57—59, 239 (Արձ), Հայապ. 344։

— 7. Ռուփէն, կուսակրոն քահանա, որ Յովհաննավանքում ստացավ Էջմ. № 936 Ճառընտիրը (ԺԲ դար).— տես Միքայան, Գոր. և շմ. էջ 48 են։

— 8. Ռուփէն բրինձ, Լևոն Բ Թագավորի եղբոր թոռը, այն է Ռուբէն Բ-ի Ալիծ աղջկա և Անտիոքի Raimond III լատին բրինձի որդին, որ կարգվեց իշխան Անտիոքի, բայց հետո դուրս վտարվեց՝ Տրիպոլսի կոմս Բոհեմոնդ Միականու և Տաճարական ու Հյուրընկալ ասպետների ձեռքով։ Լևոն Բ պաշտպանեց Ռուբէնին, մի քանի անգամ ջարդեց հակառակորդներին և Անտիոքը գրավելով՝ Ռուբէնին գահի վրա վերահաստատեց։ Այսպես սկսվեց մի պատերազմ, որ տևեց 12 տարի։ Լևոնի դեմ դուրս եկան դաշնակից Եւրոպացիք և Իկոնիայի Ռուքնադին սուլթանը։ Լևոնը հաղթեց բոլորին, Անտիոքը գրավելով Ռուբէնին հանձնեց և Եւրոպացիներին էլ Կիլիկիայից դուրս քշեց։ Լևոնը որդեգրեց Ռուբէնին և իր գահին էլ ժառանգ դարձրեց, որովհետև արու զավակ չուներ։ Բայց տեսնելով որ նա չի կարողանում պաշտպանել նույն իսկ իր գահը և Անտիոքը նորից Բոհեմոնդին հանձնեց, ինքն էլ զրկեց նրան Հայոց գահի ժառանգության իրավունքից։ Լևոնի մահից († 1219 թ) հետո, Ռուբէնը Խաչակիրների օգնությամբ մտավ Կիլիկիա և Տարսոնի մեջ մի խումբ կուսակիցների ձեռնտվությամբ իրեն թագաժառանգ հայտարարեց, փոխանակ Զապէլի՝ Կոստանդին պայլը հաղթեց նրանց և Ռուբէնին բանտարկեց Տարսոնում, ուր և մեռավ։— Վահր. ոտ. 215, 217. Սմբ. պատմ. 108. Մին. համդ. 43.— Ռովբէն՝ Պամ. կիլ. 209, 210.—

Ռոբեն՝ *Հեթ. ժմկ.— բց.* յՌոբենայ՝ *Հեթ. ժմկ.— Ալիշան՝ Յուշիկք Ա 118, Զարբ. Թրգմ. 647։*

— 9. Ռուբէն *կազմարար. Ակների վանքում կազմեց Սեբերիանոսի Ճառք 1215 թ.— Զարբ. Թրգմ. 688։*

— 10. Ռուբէն, *տանուտեր Լմբատայ վանքի, որի վանահայրն էր Առաքել (№ 15). հիշված է Լմբատայ վանքի մի Արձանագրության մեջ, որի թվականը անհայտ է. բայց որովհետև Անիի Գրիգոր արքեպիսկոպոսինն է, որ հիշված է 1213—27 թվերին, ուստի սա էլ ժամանակակից է։— Արձ. Շիրակ 165։*

— 11. Ռուբէն, *կրտսեր որդի Հեթում Ա-ի (ամուսնացած «1226 թ») և եղբայր Լևոն Գ-ի (ծնված «1236 թ»). փոքր հասակում մեռավ.— Վահր. ոտ. 220.—* Ռովբեն՝ *Գամ. կիլ. 211։*

— 12. Ռուբէն, *եղբայր Թորոս վարդապետի, որ Դրազարկի վանքում, Բարսեղ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1282 թ.—* Manus. brit. mus. *18 ա։*

— 13. Ռուբէն, *գրիչ. Սեբաստիայում, Անապատ կոչված վանքում օրինակեց Յայսմաւուրքը 1284 թ.— Թորոս աղբ. Բ. էջ 391։*

— 14. Ըռոբեն *որդի Դաւթի և թոռ «Յոհնա» (№ 356). մի ձիթահանք է նվիրել Անիի կաթուղիկէին, 1286 թ.— Արձ. Շիրակ 72։*

— 15. Ռուփին, *տես առանձին։*

— 16. Ռուբէն, *գրիչ. օրինակել է Խորենացու Աշխարհագրութիւնը «ճարտար և սքանչելի գրչութեամբ, արքայավայել մագաղաթի վրայ» (ԺԳ դար)· ձեռագիրը այժմ գտնվում է Վատիկանում.— Ձեռ. Վենետ. Բ. 1211։*

— 17. Ռուբէն, *ստացող ոՑ Աւետարանի, 1402 թ.—* Manus. bibl. nat. *էջ 7 (այս Ռուբէնի նկարը իր երկու եղբայրների հետ՝ գտնվում է նույն ձեռագրում)։*

— 18. Ռուբէն, *որդի Լևոն Գ-ի. մեռավ «1317 թ». կոչվում է նաև Ալինախ (ընդարձակ տես այս անվան տակ № 1).— Կոչված է* Ռուբեն՝ *Գամ. լմբ. 243.—* Ռովբեն՝ *Գամ. կիլ. 212.— գրծ.* Ռաւբինեաւ՝ *Յիշատ. (Զարբ. Թրգմ. 390)։*

— 19. Ռուբեն, *հիշված է Հեթումի (№ 42) հետ իբր պատգամավոր «Սասունցոց և Գիթիարացոց», մասնակցելու համար այն խաչակրության, որ կազմել էր պապը Մէհէմմէդ Ֆաթիհ սուլթանի դեմ 1459 թ։— Տոմաշեկ, Սասուն 57։*

*ՌՈՒԶ, որ և ՌՈՒՍ, իգ. ծագում է* Ռուս *ազգի անունից.*

հիշված ենք գտնում ԺԴ—ԺԵ դարերում, հատկապես 1357 թվից մինչև 1499 թ. երբ Ռուսների հռչակը տարածված էր Արևելք և Արևմուտք. կա և սրա արական ձևը՝ Ռուզբեկ 1478 թվից։ Գըրված են Ռուզ ձևով. զ վերջաձայնը զարմանալի չէ. այդպես ենք գտնում նաև Ասողիկի մոտ (տպ. 1885), էջ 183—4, 276—7, որոնք Ռուսաց մասին ամենահին հիշատակություններն են մեր մեջ։

— 1. Ռուզ *խաթուն, կին Ասիլ (№ 1) Անեցու, որ հիշված է 1357 թ. (ավելին տես անդ).— Այրարատ 112, Խաղբակեանք, էջ 15։*

— 2. Ռուզխաթուն, *կին Շահնշահ Գ-ի, որ թոռան թոռն էր Զաքարէ Բ ամիրսպասալարի (ԺԴ դար).— Հայապ. 447։*

— 3. Ռուզ, *կին Սիմէոնի և մայր Գրիգոր կրոնավորի, որ ստացավ Տաթևացու Քարոզգիրքը, 1419 թ.—Տաշեան, Ցուց. էջ 978։*

— 4. Ռուզ, *կինն է Գրիգորի՝ եղբոր Ներսէս քահանայի, որ Ուրանց գյուղում Թումայ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364, 366։*

— 5. Ռուս *խաթուն, կին Յուսէփի, որդիքն են Կարապետ, Քեչի խաթուն, Բէկի, Թերևս և Ղոջ. այս բոլորը ազգական են տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում մի Աւետարան գրել տվեց 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։*

— 6. Ռուզ *տիկին, դուստր Սուքիասի և կին Ղազարի. Խիզանում, Յովանէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1499 թ. որ ապա ի հիշատակ նվիրվեց Իւրեանց գյուղի Ս. Նշան եկեղեցուն. —Ձեռ. Վենետ. Ա. 576—7։*

*ՌՈՒԶԱՆ, իգ. (ըստ* Justi *268 ը կրճատված է* Ռուզուդան *կամ* Ռուզուխան *անունից։ Եւ այս ճիշտ է. որովհետև Հասան-Ջալալ-Դոլայի դուստր Ռուզուքանը, որ այսպես է կոչվում ըստ Կիր. կա, ըստ Զամչ. Գ. 210 և 260 կոչված է* Ռուզան*)։*

*ՌՈՒԶԲԷԿ տես ՌՈՒԶ։*

— 1. Ռուզբեկ *պղնձագործ, գրել տվեց Մանուէլ քահանային մի օրինակ Գանձարան՝ Կուքի գյուղում. բայց մահը վրա հասնելով, իր կինը՝ Ասուդան, նույն Գանձարանը նվիրեց Ագուլեաց եկեղեցիներին, 1478 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 39 բ, Սմբատեանց՝ Երնջակ 142, 195։*

— 2. Ռուզբեկ, *հիշված է նաև անթվ. մի հիշատակարանում, Արցախ 186։*

*ՌՈՒԶՈՒՔԱՆ, իգ. (*Justi *268 ա ուղիղ ձևը համարում է* Ռուսուդան, *ինչպես ունին Վրացիք և Չերքեզները, և ինչպես ունինք նաև գրված հայերենում)։ Գործածված է Ժ—ԺԳ դարերում։ Սրա կրճատ ձևն է* Ռուզան։

— 1. Ռուսուդան, *կին Ծիթվասանի՝ որդւոյ Աբաս Թագավորի, միասին շատ հողեր են նվիրել Հաղբատի վանքին, 996 Թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 23, Մովսէսեան, Լոռիի Թգ. 48 (գրում է* Տիթվասան*)։*

— 2. Ռուզուքան, *կին Դաւիթ Բ († 1146 Թ) Թագավորի Կիւրիկեանց. եղավ կրոնավորուհի և վանք մտավ։ — Վրց. խբ.*

— 3. Ռուսուքան *(Ռուզուքան, Ռուսուդան), դուստր Կիւրիկէ Գ Թագավորի, քույր Աբաս Բ-ի և Մարիամի։ Վերջինս (տես № 28) իր քրոջ հետ շինել է Այգեհատ գյուղի եկեղեցին և իրայնոց հիշատակին Թողել է մի արձանագրություն 1185 Թվից (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 64, Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 167)։ Ռուսուքանը ամուսնացավ Իւանէ Օրբելեանի հետ, որին Վրաց Գէորգ Թագավորը կառավարիչ էր նշանակել Անիի՝ 1174 Թ։ Հիշված է 1172—3 Թվերին իբրև շինող եկեղեցիների Անիում, Դուինում, Զորագետում, ինչպես նաև Վրաստանում։ Անթվական գերեզմանը Թնում է իր քրոջ Բաւրինէի կողքին, Հաղբատում (վրան գրված միայն Ռուսուդան)։—Մովսէսեան, Լօռիի Թգ. 66—69, Շիրակ 100բ, Ազգագր. հանդ. Գ. 285 (գրված Ըրուսուդնայ), Է, 420, Զարբ. Թրգմ. 340, Հայապ. 382, Ձեռ. Վեննա, Բ. 1267. մի ուրիշ անթվ. արձանագրության մեջ էլ գրված է գրծ.* Ռուսուդանայի *(Երզնկեանց, Հնախ. տեղագր. էջ 26)։*

— 4. Ռուսուզան *(կամ Ռուսուքան), դուստր Դաւիթ Բ-ի, քույր Կիւրիկէ Գ-ի և հորաքույր Աբաս Բ Թագավորի Կիւրիկեան. մեռած էր 1185 Թ. Թաղվել է Բարայրում։— Երզնկեանց, Հնախ. տեղագր. 21 (*Ռուսուդանայ*), Մովսէսեան, Լօռիի Թգ. 65, Ազգագր. հանդ. Է, 420. (սա է որ հիշված է Սանահնի անթվական մի արձանագրության մեջ* Ռուսուզնայ *ձևով. Ազգագր. հանդ. Գ. 285)։*

— 5. Ռուզուքան, *մայր Խութլուխաթունի (№ 1), որ շինել է Հոռոմոսի երեք եկեղեցիները և մեծ տապանատունը, և վանքին նվիրել Շաւթա գյուղը (ԺԳ դարի սկիզբը).— Արձ. Շիրակ 21։— Հավանաբար սրանն է այն անթվ. դամբանը, որ տես Շիրակ 21։*

— 6. Ռուզուքան, *կին Հասանի (№ 36), սրանց որդին (անունն անհայտ) շինել է Հեչաառուի Ս. Յարութիւն եկեղեցին, 1220 թ.— Արձ. Այրարատ 263։*

— 7. Ռուսուդան, *որի թագավորության և Իւանէի աթաբէկության ժամանակ շինվել են Կարսի միջնաբերդի պարիսպները՝ 1234 և 1236 թվերին (3 Արձ. Այրարատ 84—85)։—Կարծեմ Վրաց թագուհի է։*

— 8. Ռուսուդան, *կին Սանոյի, միասին մի այգի են գնել և նվիրել Հաղբատի վանքին 1242 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 24։*

— 9. Ռուսուդան, *կին Շնորհաւոր Տփխ(իս)եցու, միասին Հաղբատին նվիրել են 100 դահեկան՝ ժամատան շինության համար 1253 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 29։*

— 10. Ռուզուքան, *դուստր Խաչենի իշխան Հասան-Ջալալ-Դոլայի. ամուսնացել էր Թաթարների գլխավոր առաջնորդ Չարմաղունի որդի՝ Բորա նուինի հետ։ Երբ Արղուն խանը ձերբակալեց Հասանին, Ռուզուքանը շտապեց Հուլաղու խանի կնոջ՝ Տողուս խաթունի մոտ՝ բարեխոսելու իր հոր ազատման համար։ Արղունը լսելով այդ, շտապեց նահատակել Հասանին, 1261 թ։—Կիր. կա>Նոր. վկ. 101։—Չամչ. Գ. 210, 260 կոչում է* Ռուզան:

— 11. Ռուզու[քան], *որի հոգուն կալվածներ են նվիրել Մարտիրոսը և Սևադան Խաչենի Ս. Գէորգ եկեղեցուն, 1265 թ.—Արցախ 169։*

— 12. Ռզուքան, *դուստր մեծ իշխան Ելիկումի, կին Հասանի, նվիրատու Մեծարանց վանից՝ 1265 թ.—Արձ. Բանասէր 1901, 140։—Հմմտ. № 16։*

— 13. Ռուզուքան, *կին Սմբատ իշխանաց իշխանի Օրբելեան, որ իշխել է 1253—1273 թ.—հիշված է անթվ. մի արձանագրության մեջ՝ Սիսական 171։*

— 14. Ռուզուքան, *դուստր Մխիթարի (№ 82)՝ որդւոյ Դեղկայ, որ Պռօշ իշխանի հրամանով շինել է Մարտիրոս գյուղը 1283 թ.—Սիսական 176, Խաղբակեանք 127։*

— 15. Ռուզուքան, *կին Պապաքի՝ որդւոյ Պռօշ իշխանի. իր ամուսնու հետ միասին մի ժամատուն են փորել տվել Գեղարդայ վանքում, 1288 թ.—Արձ. Այրարատ 342, Խաղբակեանք, էջ 143։*

— 16. Ռուզուքան, *կին Հասանի, որ որդին էր Վաղթանկի և թոռ Սմբատ թագավորազնի. այր ու կին մի Աւետարան և*

մի Տօնական են նվիրել Գեղարդայ վանքին.—Անթվ. Արձ. Այրարատ 340։ Հմմտ № 12։

— 17. Ռուսուդան, քույր Ցոլակի արքեպիսկոպոսի Արղութեան (ԺԸ դար).—Շահազիզ, Պատմ. պատկ. 78։

* ՌՈՒՀԻՋԱՆ, ար.<արաբ. روح rūḥ «հոգի, ոգի, եռանդ, կյանք» +պրս. جان ǰān «հոգի, մարմին» բառերից, իբրև «հոգու եռանդը կամ կյանքը»։ Հիշված է ԺԶ—ԺԸ դարերում՝ զանազան ձևերով. այսպես՝ Ռօհիջան 1628 թ. (Առաք. պտմ. 184, 186), Ռոհիջան կամ Ռոհիկ 1616 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 1056—7)։ Ըռօհիջան 1609 և 1751 թ. (Ձեռ. Վասպ. 835 և 878), Ըռուհիջան 1608 թ. (անդ 831), Ըռուիջան 1569 թ. (անդ 134), զըՌախուիջան 1602 թ. (անդ 442)։ Նույնը դարձած է նաև Ըռոպինան (սարկավագ ոմն 1617 թ. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 118, որ նույն եմ համարում վերի Ռոհիկ կամ Ռոհիջանի հետ, նույնպես սարկավագ 1616 թ. Ամթեցի)։

Ռումբեգ տես Ուռումբեգ, ուր ավելացրու՝ Ուռում-բեգ, ար. հիշված 1621 թ.—Manus. bibl. nat. էջ 42։

Ռումշահ տես Ուռումշահ։

* ՌՈՒՄԻՆԻԱԶ, իգ. ձևն անորոշ. հիշված է մի անգամ ԺԵ դարում, Կնիք հու. յիշ. էջ 372 Ռու(մի?)նիազ ձևով։ Քանի որ միայն միջին երկտառն է անհայտ, կարելի է կարդալ Ռուբենիազ, որ է պրս. روبنیاز ru-be-niāz «երեսն աղոթքի»։

* ՌՈՒՊԵՐՏ, ար.<ֆրանս. Robert անունից. (այժմ նոր փոխառությամբ ասվում է Ռոբերտ)։

— Ռուպերտ, պարոն և տեր Թիլ ամրոցի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պտմ. 112 (Սիսուան 205 բ և 471 Ըռուպերտ ձևով)։

ՌՈՒՍԻՆՈՍ, ար. (օտար է հնչում. բայց ծագումն ինձ անհայտ է)։

— 1. Ռուսինոս Մոկացի, տնտես Փասայ վանքի. իր ճգնական սուրբ վարքի համար անցել է Ցայսմաւուրքի մեջ. թվականն անհայտ է։—Ըռուսինոս, սեռ. Ըռուսինոսի՝ Ցայսմ. տպ. 6։

— Նույնը իբր իգ. Ըռուսինոս ձևով 1682 թ. (Ձեռ. Վասպ. 956) և կրճատ՝ Ըռուսին իգ. 1608 թ. (անդ 827)։

[ՌՈՒՓԻՆ, ար. մի անգամ հիշատակված է սեռ. «Ռուփինայ քահանայի» ձևով, Ցոփհաննավանքի ԺԳ դարու մի արձանագրության մեջ, որ ավանդված է Ջքր. պտմ. Գ. 25>Շահխաթ.

Բ. 109, Այրարատ 171։—Կարո Ղաֆադարյանի նորատիպ «Հովհաննավանք» գրքում, էջ 65, 85 և 86 շատ հստակ ձևով կարդում ենք Ռոբինա (որ է Ռուբէն). այսպիսով այս կեղծ անունը ջնջվում է։]

*ՌՈՓԻ, իգ.<լտ. Rufa անունից, որ ծագում է rufa «շեկ» բառից։

— Ռոփի Թագուհի Հայոց. Լուկիանոս կայսեր մերձավորներից էր. ամուսնացավ Տիգրան Գ Թագավորի հետ (162 թ. ըստ Զամչ.) և նրանից առաջացավ Ռոփսեան ցեղը։—Խոր. Բ. կզ. Ուխտ. Ա. խե.—սեռ. Ռոփեայ՝ նույն տեղերը։—Մին. համդ. 21 գրում է Առոփի։

Ռոստակէս տես Արիստակէս։

— 1. Ըռստակ, միաբան է նշանակվել Աստուածընկալ վանքին, որ նոր էր նորոգվել 1207 թ.—Արձ. Այրարատ 255, Բանաս. 1903, 31։

— 2. Ռստակէս ոմն, որ իր և իր կնոջ անունով կանգնեցրել է մի խաչքար, Հերհեր գյուղում 1290 թ.—Սիսական 111։

— 3. Ըրս[տակէս] կաթուղիկոս Աղվանից, որի անունով կա մի խաչքար Շաքի գավառի Եաղուբլու գյուղի մի գերեզմանի վրա։ Թվականը գրված է խիստ փակագիր, որ սակայն կարելի է կարդալ ՌԺ=1561 թ։ Քանի որ Աղվանից կաթուղիկոսներից Սարգիս Ղշլաղեցին մեռել է 1555 թ. իսկ Արիստակէս Բոլատակեցին գահակալել է 1588 թվին, ուստի նրանց միջև կարելի է դնել այս Արիստակէսին 1555—1587 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. 223։

ՌՕՍՏԵԽԱՆ արբ. հիշված է մի անգամ 1551 թ. (Матер. Арх. Кавк. III. էջ 93, 94), ուր գրված է Ռաւստխան ձևով։

# Ս

*ՍԱԲԱՀԳԻՒԼ, իգ. <արաբ. صباح şabāḥ «առավոտ» և պրս. گل gül (Թրքական արտասանությամբ gül) բառերից բաղկացած, որով նշանակությունը լինում է «առավոտյան վարդ» (որ լինում է ավելի ցողաթուրմ և թարմ)։ Հին մատենագրության մեջ ավանդված չէ այս անունը. գործածական է այժմ Ղարաբաղի հետամնաց գյուղերում, միայն իբրև իգական անուն։ Սակայն երևի թե ժամանակին գործածական է եղել նաև իբրև արական

անուն, որովհետև սրանից ունինք կազմված Սաբահգիլեան (արևմտահայ տառադարձությամբ գրված Սապահկիւլեան) ազգանունը։

Σάβαρις, կրտսեր որդի հայոց թագավորի և եղբայր Տիգրան արքայորդու. Պարսից Կյուրոս իշխանը գերեց նրանց, Հայաստան արշավելու ժամանակ, ըստ Քսենոփոնի Կյուրոպեդիայի. համարում են Շաւարշ անվան հետ նույն. Մնացյալը տես այս անվան տակ, վերը՝ էջ 155։

ՍԱԲԵՐ. սեռն ու ծագումը անհայտ մի անուն է, որ մի անգամ միայն հիշատակված է Տաշեան, Ցուց. էջ 821ը ընտանեկան մի հիշատակարանում, ուր արձանագրված են 1746 թվականից սկսած մինչև 1835 թվականը տեղի ունեցած ծնունդներ ու մահեր։ Սաբեր անունը հիշատակված է հետևյալ ձևով. «Թվին ՌՄԼԳ. (=1784) փետրվարին Բ. Սաբերն ծնաւ»։ Մյուս հիշատակված անուններն են՝ Ալմաս, Կատար, Մարան, Օսքան, Նազլուն, Տէփան (=Ստեփան), Յակոբն, Յալմասն են։ Կարող է լինել վրիպակ (գրված կամ տպված)՝ փոխանակ լինելու Սաբեթ (որ է Եղիսաբեթ իգական անվան համառոտյալ ձևը, որ այժմ էլ շատ գործածական է ժողովուրդի մեջ. տես վերը՝ հտ. Բ. էջ 115)։ Բայց կարող է լինել նաև Յուսաբեր կամ Լուսաբեր անվան համառոտությունը։ Առաջինը՝ Յուսաբեր, բնավ հիշատակված չէ մեր ունեցած աղբյուրների մեջ (տես վերը՝ հտ. Գ. էջ 731), իսկ երկրորդը՝ Լուսաբեր, իբրև իգական անուն ոչ միայն գործածական է այժմ, այլ և հիշատակված է հների մոտ (տես վերը՝ հտ. Բ, էջ 438, երկու անուն, առաջինը հիշատակված 1336 թ. և երկրորդը անթվական (բայց 1275 թվից ավելի ուշ), երկուսն էլ արական)։

ՍԱԲԻ, ար. ծագումն անհայտ (որովհետև չեմ կարծում, որ արաբ. صبي şabī «մանուկ, անչափահաս, երեխա» բառից փոխառյալ լինի)։ Մի անգամ ավանդված է ԺԱ դարում, բայց հայտնի չէ թե անձը պարսիկ է թե հայ։

— Սաբի իշխան, որ սպանյալ Ապլըրատի ընտանիքը վերցրեց բերավ Անի և հանձնեց Յովհաննէս-Սմբատ թագավորին (դահակալել է «1020—1042» թվերին).— Սմբ. պատմ. 29։

* ՍԱԲՐԻԽԱՆ, իգ. < արաբ. صبري şabrī անունից + պրս. خان xān, որ թեև արական է, բայց կարող է նաև իգական անունների հետ գործածվել։ Արաբ. şabrī անունը սովորական գործածություն ունի այժմ տաճիկների մոտ, բայց միայն արա-

կան է։ Սակայն անուններում մեջ սեռի փոփոխությունը անսովոր չէ մեր մեջ։ Այս անունը հիշատակված է մի անգամ 1671 թ. (արևմտյան տառադարձությամբ գրված Սաքրիխան)՝ Ջեռ. Թեհր. Ցր=ՀԱ 1935, էջ 310։

ՍԱԳ, ար. ծագման համար կարելի է համեմատել պրս. Σάγος առաջնորդ Պարսից բանակի ընդդեմ Բելիսարի (530 թ), Sag բանաստեղծ Թաբրիզեցի և Saǰ որդի Զրուանի (առասպելական անձ). այս բոլորը Justi 271բ կցում է պրս. سگ sag «շուն» բառին։ Թեև Զրադաշտականների մոտ շունը աքլորի և կովի նման շատ հարգի և սուրբ կենդանիներից էր, բայց դժվար է ընդունել։ Justi 279բ սրանցից տարբեր է դնում Σάκος մատովակ Աժդահակ թագավորի Մարաց, Σάκος ներքինի Բաբելացոց Դարեհ թագավորի. այս անուններն էլ հանում է Սակ (=Սկյութացի) ազգի անունից։—Մեր մեջ մի անգամ միայն հիշատակված է՝

— Սագ, իշխան Բարձայ, որ Մեծն Ներսէս կաթուղիկոսի շքախմբի անդամներից մեկն էր և ուղեկից եղավ նրան, երբ նա գնում էր Կեսարիա ձեռնադրություն ստանալու համար «353 թ».—Մեսր. եր. 25 (այլ ձ. Սէգ)։

* ՍԱԴԱԹ, ար. և իգ. < արաբ. سعادت sa'ādat «երջանկություն» բառից, ինչպես որ զանազան լեզուներով կան Երջանիկ, Beatrix, Macarius, Բարխուդար, Խուշբու, Felix, Fortunatus համանիշ անունները (արական կամ իգական)։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերում։

— 1. Սադաթ, մայր Ցակոբշահի՝ քեռառն Յովհաննէս աբեղայի, որ Աղբակի Ասփսթան գյուղում ստացավ մի Աւետարան 1458 թ.— Ջեռ. Թաւր. 69ա։

— 2. Սադատ, քույր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ջեռ. Վենետ. Բ. էջ 1113։

— Ավելի ուշ հիշատակված են Սատէթ (Պոլսում), 1655 թ. (Երեմ. չէլ. օրագր. 93) և Մելիք Սատաթ, Սիսիանցի 1749 թ. (Ջամչ. Գ. 843)։

* ՍԱԴԱԹԻԱՐ, ար. < արաբ. سعادت sa'ādat «երջանկություն» + պրս. یار yār «սիրելի» բառերից (իբր թե սիրեցյալի երջանկությունը)։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Սատաթիար, որդի Մկրտիչի և եղբայր Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում օրինակել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 7բ։

— 2. Սատաթիար, «դեսպրոյս զաւակ և քաղցրաբարբառ պաշտնի» մահտեսի Սուլաուզի, որ գնեց Սեբաստիա 1499 թ. գրված մի Գանձարան և նվիրեց վանքին.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, էջ 317։

— 3. Հիշված կա նաև 1557 թ. Սադաքար ձևով (Ձեռ. Վենետ. Ա. 529)։

* ՍԱԴԱԹ ԽԱԹՈՒՆ, իգ.<վերի Սադաթ անունից. ավանդված է՝

— Սադաթխաթուն, քույրն է Բաղտատ խաթունի. մայրն է Սուլթանշ մելիք. որոնց անունով կանգնեցրած է մի խաչքար (որ Ղրիմից փոխադրված է Նոր-Նախիջևանի Ս. Լուսավորիչ եկեղեցին), 1451 թ.—Շահազիզ, Ազգագր. հանդ. է, 49։

* ՍԱԴԱՂԱՅ, ար.<արաբ. صدقه ṣadaqa «ողորմություն» բառից. իբր թե այդ զավակը մի երկնային ողորմություն էր այդ ընտանիքին։ Հիշատակված է մեր մեջ ԺԵ դարից և գնում է մինչև ԺԷ դարը։

— 1. Սատաղայ՝ ամուսին Շահափկին անուն զատեր Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում գրել տվեց մի Ճաշոց 1438 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243—4։

— 2. Սադաղայ, ոսկերիչ, «երեսփոխան և հրամանատար», առաջավոր Հայոց. Ամթայ. մեծապես նպաստեց Ս. Թէոդորոս եկեղեցու շինության, 1447 թ.— Արրա. 1898, 48 ա, Հայապ. էջ 574։

— 3. Սադաղա, որդի տանուտեր Խաչատուրի, որ Ստեփաննոս դրչին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 419, 420։

— 4. Սադաղայ, վաղամեռիկ որդի Ստեփաննոսի՝ եղբորորդւոյ տանուտեր Մանկաւազի, որ Մշի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 5. Սատաղա, որդի Յովհաննէսի և եղբայր Սարգիս կրոնավորի, որ Երուսաղէմում օրինակեց Գանձարանը 1457 թ.— Ձեռ. Հալէպի, Ա. 166 բ։

— 6. Սադաղայ, փեսա Հայրապետ քահանայի, որ էր միաբան Ս. Վարդան վանքի 1460 թ.—Ձեռ. Վասպ. 434։

— 7. Սադաղայ, որդի՞ տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։

— 8. Սադաղայ, իգ! դուստր Ստեփաննոսի և քույր Սալ-

*չուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 338։*

— 9. Սադաղայ, *որդի Ջանիբէկի և եղբայր Կիրակոս Ջօշկանց երեցի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում 1467 թ.—Նոտարք 230։*

— 10. Սատաղա, *հայր Եղիշէ քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան Աւագտէր վարդապետին, Սրկղունից Սպիտակաւոր վանքում, 1475 թ.— Խաղբակեանք 232։*

— 11. Սաղաղա *Ծերենց, տանուտեր, որդի Պարոնի, մայրն է Շուքրան, կինն է Խախաթուն, զավակներն են Գորգ, Սուլթան, Թելի փաշա։ Մի Աւետարան գրել տվեց Աղթամարում, Թումայ քահանայ գրչին և նվիրեց Աղթամարի վանքին 1476 թ.— Ջեռ. Վասպ. 480—482։*

— 12. Սաղաղայ, *որդի տանուտեր Ղարիբշահի (№ 4), որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան 1486 թ.—Ջեռ. Վասպ. 501։*

— 13. Սադաղայ, *որդի Սահակի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 16 բ։*

— 14. Սատաղա, *որդի տանուտեր Յովհանի, որ Երուսաղէմի Բանծառ գյուղում գրել տվեց մի Գանձարան 1498 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1927, 432։*

— 15. Սատախ *պարոն, տանուտեր, Աթախ քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1499 թ.—Թորոս աղբ. Բ. 434։*

— 16. Սադաղայ *երեց Ռստանցի. տաղասաց. իրենն է Ծննդեան մի մեղեդի (Հրաշալի խորհուրդ այսօր մեզ երևի), որի համար ձեռագիրը տալիս է այս տեղեկությունը. «Մեղեդիս այս է յՕրղայ, որ սա ելեալ է յՌստանայ, երգող սորա տէր Սադաղայ, շնորհաց երէց և քահանայ»։ (Հրատարակիչը վերի բառը գրելով* յՕրղայ, *ենթադրել է տեղանուն. ինձ թվում է թե եղանակի անուն է, իբր Թրք.* yorγa *«արագ գնացք ձիու»).—Թվականը անհայտ է։— Ջեռ. Վենետ. Բ. 1142, 1155. Հայապ. 574։*

— *Ավելի ուշ* Սադաղայ *անունը հիշատակված է 1507 թ. (Ջեռ. Վասպ. 623), 1508 թ. (անդ 632), 1509 թ. (անդ 637), սեռ.* Սատաղին *1593 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 194),* Սադաղ *1603 թ. (Ջեռ. Սեան. 7ա),* Սատախ *1616 թ. (Տաշեան, Ցուց. 800 բ), 1678 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 173)։*

* ***ՍԱԴԱՂԱՏԼՈՒ***, *իգ.<Թրք.* صداقتلو sadaqatlu *«հավատարիմ» բառից, որի աղավաղ գրչությունն է՝*

— Սաղտաղատլու, դուստր տանուտեր Յովհաննէսի՝ մեր-ձավորի Յովհաննէս քահանայի, որ Ոստանում գրել տվեց մի Ավետարան 1467 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 258։

ՍԱԴԱՐ, ար. ծագումն անորոշ. մի անգամ հիշատակված է 1742 թ. (Ձեռ. Վասպ. 565)։

* ՍԱԴԲԱՇԽ, ար.<պրս. صد sad «հարյուր»+بخش baxš «պար-գև» բառերից. իբրև «հարյուրապարգև»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1631 թ. (Bodleian 139)։

* ՍԱԴԻ, ար.<արաբ. سعد saad «երջանկություն», որից և سعدی sa'dī անունը։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1539 թ. (Կրպտ. եպս.՝ Դոփեանք 111)։

* ՍԱԴԻԽԱՆ, իգ.<արաբ. سعدی sa'adī «երջանիկ»+պրս. خان xān բառերից. Է տառի հնչումն է որ պատկերացնել ուզելով՝ գրել են՝

— Սէտտի խան, հիշված է 1674 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 46 բ (ցանկում Սէատխան)։

* ՍԱԴՈՎԿ, ար.<եբր. צדוק Ṣādoq անվան հուն. Σαδώκ թարգմանությունից. ծագում է եբր. ṣdq=արաբ. صدق ṣdq «ար-դարություն, արդար լինել» արմատից (Gesenius 673—4)։ Այս անունով հայտնի է Հրէից քահանայապետը՝ Դավթի և Սողոմո-նի ժամանակ (Բ. Թագ. ը. 17 են)։

— 1. Սադովկ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Յովակիմի, ան-դամ Պարտաւի եկեղեցական ժողովի 768 թ.— Օրբ. հա. Կանոն. 166. Տաշեան, Ցուց. 653 բ.—գրված Սոդովկ՝ Օրբ. լդ։

— 2. Սադոկ, որդի Մխիթարի, եղեց Ըղուերծի. իբրև վկա հիշվում է Տաթեւի 844 թվի կալվածագրում.— սեռ. Սադոկայ՝ Օրբ. լը։

ՍԱԴՈՒՆ, ար. ծագումն ինձ անհայտ. սրանից է անշուշտ Սադունեան ազգանունը, որ այժմ լսվում է Կովկասում. հմմտ. Սադում անունը ԺԷ դարից (Զամբռ 173)։

— 1. Սադուն իշխան Արծրունի. Վրաց Գէորգի թագավորի ձեռքով Անիի կառավարիչ նշանակվեց 1161 թ. քաղաքի պա-րիսպները խնամով ամրացնելու պատճառով կարծվեց թե ապս-տամբության միտք ունի և չարախոսության զոհ դառնալով սպանվեց.—Վրդ. հդ.—սեռ. Սադունի՝ Վրդ. հդ.—Զամչ. Գ. 79։

— 2. Սադորն (սեռ. Սադորնոյ), մեծ իշխան, որի հրամանով «տեր Գրիգորը» շինել է մի խորանիկ Հախում գյուղի Շիմու-

բատի վանքում (Արցախի Քուստի գավառ), 1181 թ.— Արցախ 335։

— 3. Սադուն Ա. որդի Ամիր Քուրդի (որ Կայենի և Մահկանաբերդի իշխանն էր), հայր Շէրպարըքի և պապ Սադուն Բ իշխանի Սասնոյ (ԺԲ դար).—տես. Սադունի՝ Կիր. ժա, ժր, ծթ։

— 4. Սադուն պարոն, որի հիշատակին Տէր Թումասը կանգնեցրել է մի խաչքար Աշտարակի գերեզմանատանում, 1268 թ.— Շահխաթ. Բ. 89, Այրարատ 187 (ըստ Յովսէփեան՝ Շողակաթ Ա. 27, Սադուն Բ իշխանն է)։

— 5. Սաքուն իբրև իգ. անուն հիշված է Հաղբատի անթվ. մի արձանագրության մեջ, որ պետք է լինի շուրջ 1270—80 թվերին, քանի որ իբրև վանահայր հիշվում է Յովհաննէս Դ եպիսկոպոսը (№ 337)։ Ըստ այս արձանագրության Սաթունը կինն է Գրիգորի, որդիններն են Սիանդար (գուցէ Սքանդար), Աւհնվար և Իւբալ, որոնք նվերներ են արել վանքին.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 47։

— 6. Սադուն Բ. որդի Շէրպարըքի և թոռ Սադունի Ա. (որ է նախորդը № 3). թոռնորդին է Ամիր Քրդի, «յազգէն ի բարձր Արծրունեաց». նշանավոր ըմբիշ էր. Հուլաղուի առաջ ըմբշամարտելով Մանգու խանի մեծ ըմբիշի հետ, հաղթեց նրան և իբրև քաջ ու հսկայ մարդ սիրելի դառնալով Հուլաղուին, ստացավ մեծամեծ արտոնություններ. կոչվեց աթաբէկ և ամիրսպասալար. Թաթարների կողմից կարգվեց իշխան Սասունի (այս կետը ստուգելի է. Կիր. ծթ)։ Նիբրկերտի պաշարման ժամանակ, Պռօշ իշխանի հետ միասին ծառայում էր Թաթարաց բանակում (1260 թ)։ Կինն է Թամար, աղջիկն է Նազովդ, որի ամուսինն է երկայնաբազուկ (=մխեբրգրձել) Շահնշահ՝ որդի Զաքարիայի։ Սրանց փեսայացավ Սմբատ Օրբելեան՝ Ստեփաննոս եպիսկոպոս Օրբելեանի հօրեղբօր թոռը։ Կոչված է իշխան Արարատի և հիշատակված է Խոշաքի, Պռօշի և Սմբատի հետ 1270 թ. (Կանոն. 180, 186. Ջաղ. 23)։ Իր որդին է Խուբլու բուղա, որի որմանկարը գտնվում է Հաղբատի վանքի հարավային պատի վրա (լուսատիպ հրատարակեց Մառ, Христ. Вост. 1912)։ Նույն Խութլուբուղայի նորագյուտ մի արձանագրությունը 1285 թվից՝ տես Ղաֆադարյանի «Անանի երկլեզ. ծածկագիր Արձ.» Երևան 1945, էջ 20։ Այստեղ հայր և որդի կոչված են աթաբէգ և ամիրսպասալար։ Սադունը Մահկանաբերդի մեծ իշխանն էր, տեր և հովանավոր Հաղբատի, ըստ Մառի՝ թերևս և ամիրա Տփխիսի։

Այդ միջոցին էր որ առավ Ս. Բարթուղիմէոսի աջը Թաղեաթին իշխանից և դրավ Հաղբատի վանքը (1260 թ)։ Հիշված է Հաղբատի հինգ արձանագրության մեջ, բոլորն էլ 1273—80 թվից և կոչված է նույնպես աթաբէգ և ամիրսպասալար պարոն Սադուն իշխան Հաղբատի (Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 78, 79, Երզընկեանց՝ Հնախ. տեղագր. 28, 40, 42—44, 103, Ազգագր. հանդ. է, 406)։ Ըստ Օրբ. ժմ. 28 մեռել է 1282 թ. իսկ ըստ Սամ. անեց. շար. 163՝ մեռել է Տաշիրում, 1285 թ։ Թաղվել է Հաղբատի մեծ տաճարի ժամատան մեջ. իր անթվական տապանագիրն է «Այս է հանգիստ աթաբէգ Սադունին» (Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23, Ազգագր. հանդ. է, 400—401)։—Օրբ. կե.—աթաբէկ Սատունեաց՝ Օրբ. կե.—Մագաք. աբ. 28, 34, 35. Մխ. այրիվ. 83.—Զամչ. Գ. 257. Հայապ. 528. Շաղախաթ, Ա. 26—27, 41, 45։—Սրա հետ նույն է՝

7. **Սադուն** *Մանկաբերդեցի. իմաստուն, ուժեղ և գեղեցիկ մարդ էր. երբ աթաբէկ Աւագը մեռավ և Վրաց Դավիթ թագավորը սիրահարվելով նրա կնոջ՝ Գոնցայի վրա՝ իրեն թագուհի դարձրեց, Աւագի ժառանգ մնացած միակ աղջկան՝ Խոշաքին, սրա խնամքին յանձնեց։ Երբ Թաթարաց Արղուն խանը մտավ Տփղիս, Վրացիք իբրև թարգման ընտրեցին Սադունին, որ շատ ճարտար լեզու ունէր և որին խանը շատ էր սիրում ու պատվում։ Խոշաքը ամուսնացած լինելով Սահիբ դիւանի խօջա Շամշադինի հետ (1269 թ), սրա շնորհիվ Սադունը սենեկապետի պաշտոն ստացավ, իսկ Աբաղա խանը բոլոր իշխաններից ավելի մեծարելով նրան՝ Վրաստանի գործերի խնամակալ դարձրեց։—Վրաց ազգ. Բ. 58—60։*

— 8. **Սադուն**, *հայրն է Տարսայիճ իշխանի կնոջ՝ Արուս խաթունի, որի գերեզմանը գտնվում է Տաթեւի Առաքելոց եկեղեցում 1286 թ.— Սիսական 235։*

— 9. **Սաքուն**, *իր Սարգիս և Շահերշ անուն որդիների հետ միասին մի հող են նվիրել Հերհերի Ս. Սիոն եկեղեցուն, 1326 թ. —Սիսական 115։*

— 10. **Սադուն**, *թագադարմ իշխան Ծար երկրի. հիշված է 1411 թ.— Նոտարք 40=Գրպտ. եպս.՝ Դօփեանք 185։*

— 11. **Սադոն** *(սեռ.* **Սադոնին**), *կինն է Թաճխաթուն, ծնողներն են Հոխփոխմէի, որ Յոհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Խիզանի Գամաղիէլ վանքում, 1427 թ.—Նոտարք 82։*

— 12. **Սայտուն** *որդի պարոն Աղբատի, որ հիշված է 1467*

Թ. իբր իշխան Խաչենի, Հասան-Ջալալ-Դոլայի նշանավոր տոհմից։ Սայտունի որդին է Հատիր-Մելիք և սրա որդին էլ Սարգիս կԹղ. Աղուանից, որ մեռել է 1554 թ.—Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 142։

—. 13. Սաքում (հոգով Սաքումեն), հիշված շուրջ 1550 թ.—Ձեռ. Դագեան, Բ. 47ա։

* **ՍԱԴՐԱՄԵԼԻՔ**, իգ.<արաբ. صدر şadr «գլխավոր, պետ»+ ملك melek «հրեշտակ» (կամ հոգ. ملائك melāik) բառերից, որով ամբողջը լինում է «գլուխ հրեշտակաց, հրեշտակապետ»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1450 թվից ուշ.—Ձեռ. Թուր. 67բ (տես և Սատրիկ)։

**ՍԱՉ.** սարքովլի անուն. ենթադրյալ որդի Արամայիս նահապետի Հայկազանց. ավելին տես Այրարատ 554 և Ալիշանի՝ Հյա. նախ քան 164։

**ՍԱԹԵՆԻԿ**, իգ. ձևի կողմից նման է Արփենիկ, Վարսենիկ և Նազենիկ անունների հետ, ուստի և կարելի է ասել թե սրանց նման կազմված է -ենիկ մասնիկով սաթ բառից (ռուս. янтар, պրս. ֆեհրիբար)։ Սակայն Dumézil REA 9, 41—53 համեմատում է Satana առասպելական հերոսուհու հետ, որ հաճախ երևում է արդի Օսերի և ուրիշ հյուսիսային Կովկասյան ժողովուրդների (չերքեզ, ավար, չեչեն և մասամբ աբխազ) առասպելների մեջ։ Օսերը շարունակությունն են Ալանաց ազգի և Սարմատացոց ու Սկյութների։ Շատ առասպելներ որ պատմում է Հերոդոտը Սարմատացոց և Սկյութների մասին, պահված են մինչև այժմ արդի Օսերի մեջ, ուստի զարմանալի չէ նաև այս Սաթենիկը։—Սաթենիկ անունը վերակենդանացավ անցյալ դարում և ամեն տեղ էլ տարածվեց. կրճատ ձևերն են Սաթեն, Սաթիկ, Սաթօ։

— Սաթենիկ թագուհի Հայոց, դուստր Ալանաց թագավորի, կին Արտաշես Բ-ի։ Ծանոթ է մեր հին պատմության մեջ մեր վիպասանական երգերի միջոցով, ինչպես են Քեզ ասեմ, Եւ ուստր տացէ, Հեծաւ արի արքայն, Տեղ ոսկի տեղայր։—Ուխտ. Ա. խբ. Շնորհ. վիպ. 328.—Սաթինեիկ՝ Խոր. Բ. ծ. Գզկնտ. Ա. ը (հրատ. Շահն). Արծր. Ա. ը.— Սաթինեակ՝ Գզկնտ. Ա. ը (հրատ. Էմինի).—Սաղթենիկ տիկին՝ Խոր. Ա. լ (այլ ձձ. Սաթինեիկ, Սաթենիկ).—սեռ. Սաթինեկան՝ Խոր. Բ. խթ (2 ձձ. Սաթինեակաե), ծբ. Վկ. ոսկ. 63.—Սաթինեկանե՝ Խոր. Բ. ծ.—Սաթինեկայ՝ Խոր. Բ. ծբ (3 օր. Սաթինեկաե), ծը, Գզկնտ. Ա. ը. Արծր. Ա. ը. Վկ. սուք. 33.

Վկ. ոսկ. 61, 63. Ցայսմ. սեպտ. 19 (տպ. Սայինկայ).—Սարինկայ՝ Ուխտ. Ա. խր. Յհ. կթղ. է. Ցայսմ. օգոստ. 27. Վկ. ոսկ. 33։

* ՍԱԹԼՄԻՇ, ար.<Թրք. صاتلمش satəlməš «ծախված» բառից. թաթարական անուն էր. հմմտ. Սաթըլմիշ խաթունը՝ թաթար իշխանուհի (Bouvat, L'empire mongol 1927, էջ 40)։ Մեր մեջ գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Սաթիլմիշ, հիշված ԺԵ դարու սկզբից.—Նշխ. մատ. 62 (սխալ տպ. Շաթիլ միջին). ավելին տես Աստուածատուր № 121։

— 2. Սաթըլմիշ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1114։

— 3. Սաթլմիշ անունով մի պաշտոնյա Անիում, հիշատակված է անթվ. մի արձանագրության մեջ (Շիրակ 10բ), բայց հայ թե օտար՝ հայտնի չէ։

— Ավելի ուշ հիշատակված են՝ Սաթըլմիշ 1515 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 390), 1624 թ. (Ցովսէփեան՝ Խաղբակեանք 252), 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 14բ), 1651 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 302), 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3բ), անթվ. (Ձեռ. Վատ. 394)։

ՍԱԹԻ, իգ. ծագումը անհայտ. հիշված է 1591 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 33բ)։

ՍԱԹԻԲԷԿ, ար. ծագումը անհայտ. գիտենք միայն՝

— Սաթիբէկ, թոռն պղնձագործ Ըռուզբեկի, որ Կուքի գյուղում, Մանուէլ քահանային գրել տվեց մի Գանձարան, 1478 թ. —Ձեռ. Դաշեան, Ա. 39բ, Սմբատեանց՝ Երնջակ 195։

ՍԱԹԻԿ, ար. ծագումը անհայտ. հայտնի է միայն՝

— Սաթիկ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց ժողովածու քերթուածոց 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. էջ 1114։

ՍԱԹՈՅ (գրված է Սաթաւս, այսինքն Սաթօս, որ համարում եմ Սաթուն անվան կրճատ ձևը)։ Մի անգամ ունինք ԺԳ դարից՝

— Սաթօ, որդի Համազասպի և թոռ Սմբատի. իր կնոջ՝ Խորիշահի հետ 55 դահեկան են նվիրել Հաղբատին՝ Համազասպ վանահոր (1243—57 թ) ժամանակ։—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 29։

Սաթուն տես Սաղուն։

* ՍԱԼԱԲԷԿ, ար.<Թթր. صلا sala «գյուղ» բառից, որով Սա-

չոբեկ նշանակում է «գյուղապետ»։ Իբրև անձնանուն հիշատակված եմ գտնում մի անգամ 1667 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 3 բ։

* **ՍԱԼԱԹԻՆ**, իգ.<արաբ. سلاطين salāṭīn բառից, որ سلطان sulṭān բառի հոգնակին է և նշանակում է «սուլթաններ». իբրև իգական անձնանուն գործածական է այժմ Ղարաբաղում։

* **ՍԱԼԱՀ**, իգ.<արաբ. صلاح ṣalāḥ բառից, որ նշ. «բարելավում, բարեպաշտություն, խաղաղություն». իբրև անձնանուն գործածված եմ գտնում 1631 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 288) և 1651 թ. (անդ 735)։

* **ՍԱԼԱՄ**, ար և իգ.<արաբ. سلام salām «բարև, ողջույն» բառից։ Գործածված է ԺԴ—ԺԷ դարերում։

— 1. Սալամ, քր. կանգնեցրել է մի խաչքար՝ իր եղբոր՝ Աժմանդի գերեզմանի վրա 1400 թ. (Սիսական 111)։

— 2. Սալամ, դուստր Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— Ավելի ուշ հիշատակված ունենք Սալամ իգ. 1507 թ. (Ձեռ. Վասպ. 623), 1509 թ. (անդ 637), 1512 թ. (Ձեռ. Վասպ. 85), 1579 թ. (անդ 578), 1588 թ. (անդ 708), 1595 թ. (անդ 742), 1645 թ. (անդ 606), 1658 թ. (Ձեռ. Թաւր. 51 բ)։ Իսկ իբրև ար. Սլամ 1575 թ. (Rapport Belgique 24), Սալում 1654 թ. (Ձեռ. Վասպ. 290)։ Տես և հաջորդը։

* **ՍԱԼԱՄԲԵԳ**, ար.<նախորդ Սալամ ար. անունից+բէգ «իշխան»։ Անշուշտ եղել է այսպիսի անուն, որից էլ կազմվել է Սալամբեգեան ազգանունը (Կովկասում), որ գտնում եմ Ազգագ. 4634 և Պռոշեան, Հուշեր, էջ 173, ծան. 114։

* **ՍԱԼԱՅԻ ՍՈԼԹԱՆ**, իգ. առաջացել է Սալա ձևից կամ Սալահ անունից (երկուսն էլ տես վերը). մի անգամ գտնում եմ գործածված 1609 թ. (Bodleian 109)։

* **ՍԱԼԱՖՇԱ** ար.?<արաբ. سلف salaf «նախորդ»+պրս. شاه šāh «թագավոր» բառից, իբր թե նախորդ թագավորի անունով։ Մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Վասպ. 766։

* **ՍԱԼԲԻ**, իգ.<պրս. سرو sarv>թրք. servi, selvi «նոճի» բառից, որ բանաստեղծության մեջ կնոջ գեղեցիկ հասակն է պատկերացնում։ Գործածվում է նաև իբր անձնանուն. ինչ. Sarv թագավոր Եմէնի, աներ Պարսից Ֆերիդուն թագավորի։ Մեր մեջ ավանդված է 1680 թվից ուշ գրված անթվական մի հիշա-

տակության մեջ (Ձեռ. Ազգ.=Արրտ. 1911, էջ 1007)։ Այժմ էլ գործածական է հնավանեաց գյուղերում։

*ՍԱԼԻԲ, ար.<արաբ. صليب ṣalīb «խաչ» բառից, որով այս անունը համազոր է դառնում Խաչիկ անվան։ Մի անգամ գըտնում եմ ավանդված ԺԲ դարում։

— Սալիբ, հայր Ցակոբի (№ 24), որ գրեց ամբողջ Հին և Նոր Կտակարանների Մեկնությունը՝ 1151—1161 թվերին։— Մխ. այրիվ. 79։

ՍԱԼՂՈՒՐՇԱՅ, ար. ծագումը ինձ անհայտ. այս անունով ունինք միայն՝

— Սալղուրշայ, որդի Շամիի և եղբայր Եղիշէ քահանայի, որ Աղուանից Մաթէոս կաթուղիկոսից գնեց մի Աւետարան՝ 1438 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 44 ա։

ՍԱԼՆՃՈՒԿ, իգ. ծագումը անհայտ. հիշված է մի անգամ 1560 թ. (Տաշեան, Ցուց. 314).—Թրք. salənjaq «կախօրրան»։

*ՍԱԼՈՄ, իգ. կարծեմ թե Սողոմէ անվան նոր ձևն է (տես անդ)։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Վասպ. 238։

ՍԱԼՈՒԿ, ար. ծագումը անորոշ. (համմտ. արաբ. سلوك sulūk «հետևորդ». օր. ahl-i sulūk կամ arbāb-i sulūk «համայնքի կամ կրոնի հետևորդները»։ Հիշված է մի անգամ 1647 թվին գրված մի կոնդակում (Ձեռ. Դաշեան, Բ. 3 ա)։

Սալուման տես Սուլեման։

ՍԱԼՈՒՐԲԷԿ, ար. ծագումը ինձ անհայտ. հիշված է մի անգամ Երնջակի մի դամբանի վրա 1613 թ. (Սիսական 356 բ)։

ՍԱԼՈՒՔՇԱՀ, ար. ծագումը ինձ անհայտ. հիշված է մի անգամ Ձեռ. էջմ. № 940 (ԺԵ դար)։ Համմտ. Սալուկ։

*ՍԱԼՉՈՒՔ և հատկապես Սալչուքխաթուն իգ.<Թթր. سلجوق selčuq=Թրք. سلجوق selǰuq (Սելջուք) ազգի անունից։ Գործածված է մեր մեջ ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Սալչուկ, մերձավոր Ստեփաննոս տանուտերի, որ վանում գրել տվեց մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 2. Սալչուկ, կին Տէր Գրիգորի՝ որդւոյ Խաչատուրի՝ եղբոր տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում օրինակել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 380։

— 3. Սալչուկ, կին Գորգի Մելիքի, որ էր իշխան Աղիովտի և եղբայր Թովմա Մեծոփեցի պատմագրի. հիշված է 1445 թ.—Նոտարք 147։

— 4. Սալչուկ, *քույրն է Ամենադինի (№ 4), գնել է Ամենադինի (իր եղբոր) այգին և նվիրել Ս. Նշան վանքին, շուրջ 1461 թ.—Թորոս աղբ. Բ. 347 (թվական չունի. բայց թվականը որոշվում է Ամենադին № 2 հիշատակարանից, ըստ որի Սալչուքը հարսն է Յովհաննէսի, որ նրա և իր եղբորորդիների հետ մի այգի գնեց և Ամիրատինի հոգուն նվիրեց Ս. Նշանի վանքին, 1461 թ.*—Manus. brit. mus. *31 ա)։*

— 5. Սալչուկ *խաթուն, կին Յակոբ քահանայի. ծնողներն են Յովհաննէս գրչի, որ սարկավագ ժամանակ, Արղնիի Բագուր գյուղում օրինակեց Մաշտոցը 1434 թ. (Թորոս աղբ. Բ. 413)։ Ապա օծվեց քահանա և օրինակեց մի Ճաշոց 1443 թ. (Նոտարք 132), մի Աւետարան՝ Թուրվանդա խաթունի համար 1448 թ. (Ձեռ. Վասպ. 404), մի Աւետարան Արծկէում 1459 թ. և մի Յայսմաւուրք Բաղէշում 1459 թ. (Նոտարք 191, 193, 219) և մի Աւետարան նա Արծկէում 1463 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 621)։*

—6. Սալչուկ *խաթուն, դուստր Ստեփաննոսի, գրել տվեց մի Մաշտոց՝ Հայրապետ քահանային, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։*

— 7. Սալչուկ *մահդասի, դուստր Ջանիբէկի և քույր Կիրակոս Ջօշկանց երեցի, որ Աղթամարում օրինակեց Ճառընտիրը 1467 թ.—Նոտարք 230։*

— 8. Սալչուկ, *մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։*

— 9. Սալչուկ, *կին Խաչատուրի, որ Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։*

— *Ավելի ուշ հիշատակված ունինք* Սալչուկ *1503 թ. (Ամասիոյ Ս. Աստուածածին եկեղեցու անտիպ մի արձանագրության մեջ, որ հաղորդել է ինձ Կարապետ Գաղաղեան 1912 ապրիլ 12 նամակով), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 686),* Սալչուք *1583 թ.? (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 548),* Սալչուկ *1615 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 41),* Սալցուկ *1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 334),* Սալչուկ *1645 թ. (Ձեռ. Վասպ. 296) և անթվ.* Շալչուք *ձևով (Ձեռ. Սեբ.= ՀԱ 1926, 339)։*

** ՍԱԼՎԱՐ, իգ. հիշված է 1619 թ. (Ձեռ. Թաւր. 68 բ), 1649 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 574),* Սալուար *1666 թ. (Ձեռ. Դադեան, Ա. 10 բ) և* Սալվար սուլթան *ձևով, անթվ. (*Bodleian *147)։ Այս բոլորը իգական են։* Սալվար *կա 1671 թ. (Ձեռ. Վասպ.*

940), որ թերևս նույնպես իգական է։ Սալւար կա ար. թիֆ անհայտ (Ձեռ. Վասպ. 583), որ քիչ հետո գրված է Սալար։ Կա նաև Սարվար իգ. 1632 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 33 ա)։ Չորրորդ ձևն է Սալւիար (սեռն անհայտ) 1555 թ. (Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 335), Սելվիար ար. 1656 թ. (անդ 338), Սալվիար ար? թիֆ անհայտ (Ձեռ. Մեր.=ՀԱ 1927, 142)։ Ո՛րն է սրանցից սույդ ձևը։ Սալար ծագում է պրս. سالار sālār «զորավար» բառից և արական է. Սարվար նույնպես պրս. է և ծագում է سرور sarvar «գլխավոր» բառից. նույնպես արական է. օր. Մուհամմէդը կոչված է sarvar։ Չորրորդ ձևը համարում եմ servi yār, որ և թրք. selvi yar «նոճի (այսինքն նոճիանման հասակով) սիրելի»։ Այնուհետև այս բոլոր ձևերը խառնվել են և սեռերն էլ շփոթվել։ Տես նաև Սալվարիխան և Սալվինազ։

* ՍԱԼՎԱՐԻԽԱՆ, ար.<պրս. سرورِ خان sarvar-i xān «խաների գլխավորը». հիշված է 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ)։ Ջուղայի հին գերեզմանատան շիրիմների մեջ էլ կա 1602 թվից Սալվոր խան (Սիսական 427)։

* ՍԱԼՎԻԽԱՆ, իգ.<նույն պրս. سرو sarv>թրք. selvi, sevli «նոճի» բառից+պրս. خان xān «իշխան» բառից, որ թե ար. և թե իգ. գործածություն ունի։ Մի անգամ գտնում եմ 1746 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 39 բ)։

* ՍԱԼՎԻՆԱԶ, իգ.<պրս. سروِ ناز sarvi-nāz բառն է, որ նշ. «նոճի (որ ճոճելով նազում է). 2. նորահաս». փխբ. գեղուհու վայելուչ հասակի համար է ասվում։ Թրքական ձևով դարձել է selvinaz։ Այս անունը հիշված է մեր մեջ նախ Սալվինազ ձևով 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), ապա Սալուինազ 1629 թ. (Կնիք հաւ. յոյ. IV) և աղավաղ ձևով Սալիմնազ 1694 թ. (Ձեռ. Սևան. 11 ա)։ Այժմ էլ երբեմն գործածվում է Սելվինազ ձևով։

* ՍԱԼՎԻՓԱՇԱ, իգ.<ճիշտ նախորդին նման կազմություն ունի. միայն պրս. խանի տեղ դրված է թրք. փաշա տիտղոսը։ Մի անգամ գտնում եմ՝

— Սալվի փաշա, կին Աբրահամ քահանայի և մայր Առաքել կաթուղիկոսի Աղուանից (ԺԵ դար)։—Հայսպ. 126։

ՍԱԼՔՈՒՏ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված 1653 թվի մի արձանագրության մեջ (Սմբատեանց, Գեղարք. 620)։

ՍԱԿԱՑ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԶ դար (Զեռ. Հալէպի, Ա. 87)։

ՍԱԿԻՐ, ար. ծագումն անհայտ. հիշատակելի է արաբ. صقير Şaqīr հատուկ անունը (Կամուս, Ա. 939, որ թերևս «շատ տաք, կիզիչ տաք» բառից է)։ Սրանից է կազմված Ապուսակր անունը, որ զուտ արաբական կազմություն ունի։

— 1. Սակր, հայր Արտաւազդի, որից Փիլիպպէ Սիւնին գնեց Յուրականխոռ գյուղը և նվիրեց Տաթևին՝ 943 թ.—սեռ. Սակրի՝ Օրբ. ծ։ Թերևս նույն է սրա հետ՝

— 2. Սակր, որի որդիքը՝ Խարբ, Արտաւազ (նման նախորդի) և Սուփան՝ Շոռոթ գյուղը նվիրեցին Տաթևի վանքին, 1026 թ.—սեռ. Սակրի՝ Օրբ. ծե։

— 3. Սակր, որդի Հասանի, Կիւրիկեան թագավորական ցեղից, որի ժառանգներից մեկի՝ Վասակ պատրոնիկի անունով մի խաչքար է կանգնեցրած՝ Խաթրավանքի կամուրջի մոտ 1201 թվից.—Շահխաթ. Բ. 363, Արցախ 196։

— 4. Սակր, որդի Վախտանգի. հոգեր և ջաղացներ է նվիրել Բերդաձորի Ս. Գրիգոր վանքին, ինչպես հիշատակում է Վաղահաս գյուղում կանգնեցրած բարձր խաչքարում, 1216 թ. —Արրտ. 1896, 81։

* ՍԱՀԱԲ, իգ. < արաբ. صاحب şāḫib, صحابى şahābī, صحابه sahābe «ընկեր, բարեկամ, աշակերտ» բառից։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1621 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1866) Սահապ ձևով։

* ՍԱՀԱԲԻՅԱՐ, ար. < արաբ. sahābē + պրս. یار yār «սիրելի, բարեկամ» բառերից, իբր թե «սիրելիի ընկերը»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Սահապիեար ձևով 1710 թ. (Հրար. Ազատ. 1909, յոջ. էջ ե)։

* ՍԱՀԱԿ, ար. < եբր. יצחק Işəxāq (որ և ישחק Isəxāq) անվան հուն. Ἰσαάκ տառադարձությունից, որ տվել է նախ հյ. Իսահակ, ապա անշեշտ ի նախաձայնի կրճատումով՝ Սահակ։ Առաջինը անսովոր, գրական համարված և ավելի օտար ձև է. երկրորդը՝ դարձած սովորական, հայկական և ժողովրդական, որ այժմ էլ կենդանի է (Հիւբշ. 291)։ Ծագում է եբր. צחק şxq կամ שחק sxq «ծիծաղել, կատակել» արմատից և բուն նշանակում է «ծաղր կամ ուրախություն» (Gesenius 312, 782)։ Հմմտ. Ծն. իա. 3—6 «Եւ կոչեաց Աբրահամ զանուն որդւոյ իւրոյ... Իսահակ... Եւ ասէ Սառա. Ծաղր արար ինձ Աստուած, զի ո՛ր և լուիցէ ուրախ լինիցի ընդ

խոց.—Յայսմ. փետր. 29 «Իսահակ, որ թարգմանի ծաղր և խընդութիւն».—Գտմ. սահ. 41 «Սահակայ՝ որ խնդութիւն կոչի».—Տաթև. հարց. 304 «Իսահակ՝ որ է ծաղր».—Վկ. հմգ. 77 «Սահակայ, որոյ անունն խնդութիւն թարգմանեալ է».—Գիրք աստ. 459 ա «Ձի թարգմանի Իսահակ՝ ծաղր»: Այլ լեզուների ընդունած ձևերն են՝ ասոր. اسحق Isxāq (Հիւբշ. 291), լտ. ֆրանս. անգլ. Isaac, գերմ. Isaak, ռուս. Исаакий, Исаак, արաբ. اسحق Isḥaq են: Այս անունով հայտնի են Իսահակ նահապետ՝ որդի Աբրահամի, Իսահակ Ա. Կոմնենոս՝ կայսր Հունաց 1057—1059 թ, Իսահակ Բ Անգելոս՝ կայսր Հունաց 1185—1204 են: Իբրև անձնանուն հիշված է Սահակ Թր. քեր. 39, Սիւն. քեր. 218, Համամ. քեր. 254, Իսահակ Թր. քեր. 44, սեռ. Սահակայ՝ Թոր. քեր. 170, Սահակեան՝ Թոր. քեր. 170 ձևերով: Ավանդված է Ն. Ք. Ա դարից (առասպել) մինչև այժմ. արդի ձևերն են Սահակ, Սաքօ (Վն. Սախօ, տես օր. Ձեռ. Վասպ. 550): Սրանից են Սահակեան, Իսահակեան, Տէր Սահակեան ազգանունները:

— 1. Սահակ Արծրունի, որդի Ջաջուռի, ամուսնացավ Ենանոս Բագրատունու աղջկա հետ (Ն. Ք. Ա դար).—սեռ. Սահակայ՝ Արծր. Ա. գ:

— 2. Սահակ Արծրունի, որդի Վաչէի. օգնեց Սմբատ Բագրատունուն՝ փախցնելու մանուկ Արտաշէսին, որի համար Երուանդը (68—88 թ) կապանօք բանտարկեց նրան Արմաւիրում, ուր և մեռավ: Արծրունին այս սուտ պատմությունը պատմելուց հետո, մոռանում է և ասում որ Արտաշէսի ժամանակ (88—129) պալատում պատիվ գտավ և ստացավ Աղբակ գավառը:—Արծր. Ա. է, ը.—սեռ. Սահակայ՝ անդ:

— 3. Սահակ Տարօնեցի, հաջորդ Մովսէսի, առաջնորդ Գողթան, նախ քան Լուսաւորիչը՝ ըստ Ագաթ. 55.—Օրբ. Ե:

— 4. Սահակ կաթողիկոս տես Շահակ:

— 5. Սահակ իշխան Արծրունեաց, Ներսէս կաթողիկոսի ուղեկիցներից մեկն էր, երբ նա գնում էր Կեսարիա օծվելու «353 թ».—Մեսր. եր. 25:

— 6. Սահակ հունահայ աբեղա, ճգնում էր Բիզանդիայի մի վանքում. հակառակ կանգնեց Վաղէս կայսեր և չարչարվեց իբրև հակառակորդ Արիոսական վարդապետության: Գուշակեց թե Վաղէսը Գոթական պատերազմում պիտի պարտվի և կրակով պիտի այրվի: Իր գուշակությունը կատարվեց: Վաղէսի մահից հետո, Մեծն Թէոդոսի (379—395 թ) ժամանակ, Սահակը արձակ-

վեց և մի խուցի մեջ ճգնեց մինչև իր մահը։ Հունաց եկեղեցու սրբերի շարքն է անցել։—Սահակ՝ Ցայսմ. մայ. 29.—Իսահակ՝ անդ.—սեռ. Սահակայ՝ անդ։—Զամչ. Ա. 726, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ 336։

— 7. Սահակ կաթուղիկոս Աղուանից, հաջորդեց Մատթէոսին (Դ դար).—Կղկնտ. Գ. իգ. Կիր. ը. Մխ. այբիվ. 24։

— 8. Սահակ ասպետ Բագրատունի, աներ Վաղարշակ Բ-ի. նախապես Արշակ Գ-ի մոտ էր, ապա փախչելով՝ եկավ Խոսրով Գ-ի մոտ և դարձավ նրա սպարապետը. ընկճեց Վանանդեցի ավազակների ապստամբությունը, հաղթեց Արշակ Գ-ին Երևելի ճակատամարտում («385 թ»)։—Խոր. Գ. խզ, խգ.—սեռ. Սահակայ՝ Խոր. Գ. խա, խդ—խզ, ծա. Մխ. անեց. իր. Արծր. Ա. ժա։

— 9. Սահակ Պարթև (Սուրբն), կաթուղիկոս հայոց «387—438 թ». Մեծն Ներսէսի որդին և Լուսավորչի թոռան թոռն էր. ծնվեց Կեսարիա «348 թ. սեպտ. 29, եշ»։ Իր կրթությունը ստացել էր Բիզանդիայում և քաջ հելլենագետ էր։ Հայաստան դառնալուց հետո ամուսնացել էր, բայց կինը վախճանվելով՝ եկեղեցական էր դարձել։ Ուներ 60 աշակերտ, որոնց հետ վարում էր ճգնական կյանք։ Խոսրով Գ-ի ժամանակ ընտրվեց կաթուղիկոս՝ իբրև հաջորդ Ասպուրակէսի («387 թ»)։ Ամբաստանվելով Պարսից թագավորի առաջ իբրև հունասեր՝ գահընկեց եղավ։ Վռամշապուհի գահակալությունից հետո գնաց Պարսկաստան, ներկայացավ Վռամ թագավորին և նորից հաստատվեց իր իշխանության մեջ («390 թ»)։ Վռամշապուհի աջակցությամբ՝ Մեսրոպ-Մաշտոց վարդապետի հետ միասին ստեղծեցին հայ գրականությունը («404 թ»)։ Սահակը թարգմանեց Ս. Գիրքը և անշուշտ ուրիշ գործեր էլ։ Պարսկասեր կուսակցությունը գժգոհ լինելով Արտաշէս Գ թագավորից, ուզեց գահընկեց անել նրան, ջնջել հայոց Արշակունի թագավորությունը և փոխարեն պարսիկ մարզպան դնել։ Սահակը հակառակեց այս որոշման. ուստի զրկվեց գահից, ինչպես և Արտաշէս Գ-ը «428 թ», և արգելվեց Պարսկաստանում։ «432 թվին» վերադարձավ Հայաստան, ապրեց քաշված կյանքով և մեռավ «436 թ»։ Թաղվել է Աշտիշատում, ուր մինչև այժմ կա իր գերեզմանը (Սրուանձտ. Հնոց և Նորոց 13)։—Կոր. էջ 8. Փարպ. ժ, ժա, ժգ, ժդ, լ. Դաւ. անյ. 99. Խոր. Գ. խթ—ծբ, ծդ, ծէ, կ, կա, կդ—կզ. Խոր. մատ. էջ 281. Փ. կոր. 9, 11—13. Կանոն. 57. Կնիք հաւ. 109. Շիր. քրոն. 57, 59. Պետր. եպս. սիւն. 40, 41. Վրթ. քերթ. պտկ. 307. Մայրագ.

133. Գիրք թղ. ա, գ, ձր, ղա, ծէ. Օրհն. 246. Վկ. շուշ. 49, 50. Յհ. իմաստ. 66. Յղ. մովս. և դաւթի, էջ 41, 44, 45, 47. Պտմ. սահ. 5, 7—10, 29—31, 33, 34. Յհ. կթղ. ժղ. Յհ. կթղ. հյր. 273, Բհնպ. 270. Եզն. եր. 267—8. Արծր. Ա. ժա. Ասող. Բ. ա, գ. Գ. իա. Մեսր. եր. 14, 19. Կղկնտ. Բ. գ. Պտմ. ներս. 28. Մխ. անեց. գ, իդ. Սամ. անեց. 68—70. Մխ. այրիվ. 20, 61. Շնորհ. վիպ. 916, 955. Գր. տղ. 59, 75. Շնորհ. պաճ. 183, թղ. 315, 322. Միխ. աս. ժբ, իթ (=իը). Լմբ. 193. Լմբ. մատ. 25, 26. Պտմ. լմբ. 236. Շար. (հիշվում է սկիզբը իբր հեղինակ). Կիր. 14—19, 64. Վրդ. իգ—իզ. Վրդն. աշխ. 529. Պտճռ. բրձր. 30. Ներբ. յորդ. 32. Օրբ. ժգ, ծզ, հա. Տաթև. հարց. 542, 637, 659. Սմբ. դատ. 4, 50, 54, 56, 61. Առաք. լծ. սահմ. 170. Մեծոփ. յիշ. ա, գ. Օրբ. հկճռ. ժ. Նշշ. լատ. 420. Սիմ. ապար. 34, 37. Ջքր. սարկ. Գ. 3. Ջուղ. 43.—Իսահակ՝ Կոր. էջ 20. Լծ. կոչ. 73, 166. Քհնպ. 270. Սամ. անեց. 68. Ուռհ. 230. Շար. կը. Մ. մաշտ. 331 ա. Յայսմ. սեպտ. 9, 17, նոյ. 25, փետր. 5, 19. Տաթև. ամ. 478, հարց. 658, ոսկիփ. 578.—սեռ. Սահակայ՝ Կանոնք սահ. 71, 100, 115. Կոր. էջ 9, 13, 16, 18, 20, 21, 25, 26. Փարպ. ժ, ժա, ժգ—ժթ, իէ. Թուղթ՝ էջ 203. Խոր. Գ. խթ, ծա, ծգ, ծե, ծէ, ծը, կ, կա, կգ, կե—կէ. Կնիք հաւ. 129. Վկ. շուշ. 10, 11, 27. Կանոն. 15, 29, 38, 39, 45, 51, 56—7, 59, 87, 135, 145. Փ. կոր. 13—17, 27, 31. Յղ. մովս. և դաւթի, էջ 39, 58, 68, 70, 71, 83. Դաւ. անյ. էջ 99. Եզն. եր. 267. Օրհն. 246—7. Շիր. քրոն. 45. Սեբ. լե. Գիրք թղ. բ, դ, ձդ, ծէ. Մայրագ. 133. Մամիկ. ա, գ. Յհ. կթղ. ժդ, ժե, ժէ, իե? Յհ. իմաստ. 31. Մեսր. եր. 123. Անան. խոստ. 5. Ասող. Բ. ա, բ, գ. Վկ. գողթ. 13. Արծր. Ա. ժա. Բ. բ. Դ. ժբ. Մաղ. թղ. ժա, կա. Ուռհ. 229. Շնորհ. վիպ. 1073. Մխ. դատ. Ա. բ, գ, ճ. Շնորհ. թղ. 254. Միխ. աս. իթ (=իը). Լմբ. մատ. 218, 534—5. Պտճռ. բրձր. 29. Վրք. շնորհ. 18. Սամ. անեց. 69—72. Քհնպ. 270. Յհ. կթղ. հյր. 273—4. Մ. մաշտ. 260 բ. Պտրգ. 222, 547, 564, 690. ժմ. 946. Յայսմ. սեպտ. 9, 17, 30, նոյ. 25, յունվ. 7, փետր. 19, 27, մրտ. 6, 29, 30, յուլ. 31, օգոստ. 7. Շար. ձթ, ղդ. Մխ. այրիվ. 34, 62. Յիշ. Թաթ. 47. Պտմ. տէր յուսկ. 222—4, 229. Պարականոն շար. 115, Պտմ. սահ. 5, 7, 14, 30, 32, 33, 37, 41. Տես. սահ. 45. Լմբ. սոկ. 21, 22, 24—26. Կիր. 3, 17—19, 30, խդ. Վրդ. իե—իէ, լբ, խդ, խե, կգ. Այրիվ. 18 բ. Սմբ. դատ. 49, 50, 54, 97. Տաթև. հարց. 544, 658—9. ZAPh 1, 206. Օրբ. գ, ժե, ժգ, իէ, լը. Յկ.

կր. 9. Մեծոփ. 16. Մեծոփ. յիշ. ա. Մին. համգ. 27. Սիմ. ապար. 34, 36. Զուգ. 43, 44, 117. Առաք. պատմ. 322. Զքր. սարկ. Գ. 29.—**Իսահակայ**՝ Կանոն. 39. Մաղ. թղ. ժը. Սամ. անեց. 79. Տարօն. Բ, § 12. Տեռ. սահ. 67. Ոսկ. գծ. 457. Շար. կր. Մ. մաշտ. 336 ա. Ճշ. 74, 519. Յայսմ. սեպտ. 17, յունվ. 6, փետր. 19. Օրհն. 248. Պատմ. տէր յուսկ. 218, 220, 232. Նհպտք. 91. Տաթև. ձմ. լա.—**Սահակի**՝ Սիմ. ապար. 105.—գրծ. **Սահակաւ**՝ Կոր. էջ 9. Փարպ. ժ. Լմբ. մատ. 51։—Մխ. այրիվ. 37 պատմիչների շարքում հիշում է **Սահակ**՝ Փաւստոսից և Ղազարից հետո, Կորյունից առաջ. այսպիսի պատմիչ մեզ հայտնի չէ. արդյոք Սահակ Պարթևի մասին պատմական մի գրվածք է ուզում հիշեցնել, ինչպես որ սրանից անմիջապես հետո դնում է **Ներսես** (պատմիչների շարքում), որով անշուշտ ուզում է ասել Մեսրոպ երեց պատմիչ Ս. Ներսէսի։—Բացի թարգմանություններից Սահակին են վերագրում կանոններ, թղթեր, աղոթքներ ու շարականներ. վերջինները անհարազատ (Զարբ. Հին դպր. 268—274, Թրգմ. 254, 664, 759. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 131. Յուշիկք Ա. 311—352. Վրաց ազբ. Ա. 38, 40, 41, 75, 77, 107, Բ. 96. Ազգապ. 255—326).—Իր գրած շարականների մասին տես Ամատունի, Պարականոն շար. 84—86, 88—90, 92—3 (տես և էջ 197 ցանկը)։—Կա Վարք Սահակայ Պարթևի, վրացերեն լեզվով, թարգմանված հայերենից՝ ըստ Մառի։

— 10. **Սահակ** եպիսկոպոս Տարօնոյ, մասնակցեց Արտաշատի ժողովին «449 Թ» պատասխանելու համար Միհրներսեհի նամակին.—Փարպ. իդ. Եղիշ. 22։

— 11. **Սահակ** եպիսկոպոս Ռշտունեաց, անդամ Արտաշատի ժողովի «449 Թ». քաջ պարսկագետ. մասնակցեց Վարդանանց պատերազմին. ատրուշան կործանելու պատճառով, Ատրորմիզդ մարզպանի ձեռքով ձերբակալվեց, բանտարկվեց Պարսկաստանում և նահատակվեց Ապար աշխարհում, Ղևոնդեան նահատակների խմբի հետ «454 Թ»։—Եղիշ. 22, 101, 104—5, 126, 129, 139. Փարպ. իգ, խր, խդ, խէ, ծզ, ծէ. Շար. զդ. Արծր. ժա. Յայսմ. յուլ. 31. Շնորհ. վիպ. 1003. Կիր. 20. Վրդ. իէ.—**Իսահակ**՝ Յայսմ. օգ. 7.—սեռ. **Սահակայ**՝ Փարպ. խդ, ծա, ծե—ծէ։

— 12. **Սահակ** Մանդակունի. Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 Թ».—Փարպ. խէ. Եղիշ. 150։

— 13. **Սահակ** Զայնող Սիւնեցի, ուրացյալ սարկավագ,

կուսակից և գործիք Վասակի՝ ընդդեմ Վարդանանց.—Եղիշ. 71, Փարպ. լգ։

—14. Սահակ *Ամատունի, նախարար, Պարսկաստան էր աքսորված, վերադարձավ Հայաստան (462 թ) և Գիւտ կաթուղիկոսի ժամանակ («461—478 թ») ճգնական կյանք վարեց։—Աղգապ. 426։—Սխալ է. պետք է ուղղել* Սահակ *Մանդակունի № 12։*

— 15. Սահակ *Բագրատունի, ասպետ. Վահան Մամիկոնեանի ապստամբության ժամանակ մարզպան նշանակվեց «481 թ». մասնակցեց Ներսեհապատի և ապա Վրաց պատերազմին, ուր և մեռավ «482 թ»։—Փարպ. կը, հա, հգ, հէ. Վրգ. իթ. Սեմ. ապար. 61, 63.—սեռ.* Սահակայ՝ *Փարպ. կը, կթ, հա, հդ.—գրծ.* Սահակաւ՝ *Փարպ. հա։*

— 16. Սահակ *Բագրատունի, մեկենաս և խնդրող Խորենացու պատմության, որին ուղղված մի Թուղթ ունինք Խորենացուց՝ գրված Պատմության սկիզբը։ Քննիչները այս Սահակին համարում են նախորդ Սահակ ասպետին։ Արծր. Ա. ժա (Դպրության վերջում) ասում է թե Խորենացու մեկենասը Ռշտունեաց Սահակ եպիսկոպոսն է (Ե դար).—սեռ.* Սահակայ՝ *Խոր. Ա. ա. Կիր. 16. Գր. սրկ. լս. 139։—Տես և* Սահակ՝ *№ 93։*

— 17. Սահակ *Արծրունի, որի համար Վահան Մամիկոնեանը դիմեց Պարսից Թագավորին և խնդրեց որ նշանակի Արծրունեաց տանուտէր. իսկ թագավորը մերժեց։ (Այս պատմությունը տալիս է Զամչ. Բ. 210. Փարպեցին հիշում է Արծրունիներին, բայց Սահակի անունը չի տալիս։ Նմանապես Թովմա Արծրունին չի պատմում ոչինչ այս մասին։ Նկատենք սակայն, որ Թովման այս մասին պիտի խոսեր Բ. բ գլխի վերջում, ուր անշուշտ պակաս կա։ Թովման բ գլխի վերջում խոսում է Վահանի կռիվների մասին և կիսատ թողնում, առանց մի բառ ասելու Վահանի մարզպանության մասին։ Հաջորդ գ գլխով, որի վերնագիրն է «Եթէ որպէս եղև բարձումն չար թագաւորութեանն Պարսից», թռչում է Մօրիկին և խոսում Վահրամ Չոբինի ապստամբության մասին։ Հաջորդ Դ գլուխը նույնպես կրում է «Թէ որպէս եղև բարձումն չար թագաւորութեանն Պարսից» վերնագիրը, որ առաջինի հետ նույն է։ Պարզ է որ այստեղ ձեռագրի խանգարում կա, որից զերծ էր Զամչեանի տեսած ձեռագիրը և այս թերին ունէր)։*

— 18. Սահակ *Կամսարական, երեց որդի Արշաւիրի, եղ-*

*բայր Հրահատի և Ներսեհի. պատգամավոր գնաց Վահան Մամիկոնեանի կողմից Նիխորին «484 թ» (Փարպ. դ. Անան. գիտ. 26)։—Կոգեան, Կմսրկնները 103—120 սխալմամբ կոչում է Վահան, որ տեսւ—Շինել է Ս. Սարգսի վկայարանը 486—500 թվերին (Կոգեան, անդ 116—7) և վերաշինել Տեկորի եկեղեցին (Թորամանեան, Հայկ. ճարտարպ. 131 բ, Շողակաթ 172 (անթվական Արձ.)։—Շիրակ 132, 136։*

— 19. Սահակ *Թարգմանիչ, աշակերտ Սահակի և Մեսրոպի.—Կիր. 16։*

— 20. Սահակ *եպիսկոպոս, երրորդ առաջնորդն է Ցուրտաւի, և հաջորդել է Գառնիկին, շուրջ 500 թ.—Ուխտ. Բ. խը. Գիրք Թղ. ժա։*

— 21. Սահակ *եպիսկոպոս Պալունեաց, ժամանակակից Բաբկէն կաթողիկոսի («490—516 թ»). ստորագրում է այն թղթին, որ Բաբկէն կաթողիկոսը գրեց Պարսկաստանի ուղղափառ քրիստոնյաներին.—բց.* ի Սահակայ՝ *Գիրք Թղ. ը։*

— 22. Սահակ *Կամսարական, տէր Արշարունեաց, ստորագրում է Բաբկէն կաթողիկոսի նույն թղթին.—Գիրք Թղ. ը.—բց.* ի Սահակայ՝ *Գիրք Թղ. թ։—Տես նաև Թորամանեան, Հայկ. ճարտարպ. էջ 171։—Նույն է անշուշտ՝*

— 23. Սահակ *Բողբերդցի, եղբայր Հրահատի և Ներսէսի. գնացին Պոլիս՝ Ներսէս պատրիկի մոտ և Յուստինիանոս կայսեր ծառայության մտան՝ 533 թ. (Զամչ. Բ. 241, 247)։ Հունաց բանակի զորավարներից մեկն էր, Անգեղ բերդի առաջ կռվեցին Պարսից դեմ, բայց չարաչար հաղթվեցին՝ 542 թ. (Այրարատ 518)։—Թե սրանք Արշաւիր Կամսարականի որդիներն են, այդ մասին բացասական կարծիք ունի Կոգեան, Կմսրկն. 119։*

— 24. Սահակ *Բ Ուղկեցի, կաթողիկոս հայոց «534—539 թ». հաջորդեց Մուշէ Այլաբերցուն. գումարեց Կարնոյ ժողովը՝ ըստ Ջամին. Հյ. եկ. պտմ. Ա. 1914, էջ 97, որ չի հիշում Ազգապ. 528։—Եղն. եր. 268. Քհնպ. 271. Ցհ. կթղ. ժգ. Ցհ. կթղ. հյր. 274. Ասող. Բ. բ. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 20. Սամ. անեց. 72. Միխ. աս. իթ (=իը). Կիր. 22. Վրդ. լ. Օրբ. հա. Տաթև. հարց. 544.—գրծ.* Սահակու՝ *Կանոն. 97։—*Իսակ Ավկեցի *Վրաց պզբ. Ա. 78։—Ազգապ. 525—8։*

— 25. Սահակ *եպիսկոպոս Ռշտունեաց, ժամանակակից Ներսէս Բ («548—557 թ») կաթողիկոսի, որ սրան, ինչպես և ութը ուրիշ եպիսկոպոսների ժողովի էր կանչել կռվելու համար*

Նեստորականների դեմ։ Բայց նրանք չէին պատասխանել հրավերին։ Ուստի Ներսէսը գրեց իր երկրորդ սպառնական թուղթը.—տես. Սահակյա՝ Գիրք թղ. ժզ։ (Ըստ Ջամին. Անահիտ 1931, սեպտ. 124 մեռել է 560 թ)։

— 26. Սահակ պարսիկ Ատրպատականցի. քրիստոնյա դարձավ, չարչարվեց Ցիղտրուզիտ պարսիկ նահատակի հետ Դուինում և ապա ազատ արձակվեց (551 թ)։—Յայսմ. փետր. 25. Վրք. և վկ. Բ. 128.—երևի նույն է Սահակ՝ նահատակված 554 թ. ըստ Սամ. անեց. 75։

— 27. Սահակ հայ. հավատքի համար նահատակվեց Պարսկաստանում 552 թ.—Չամչ. Բ. 258 (ըստ Սամ. անեց. 75?)։

— 28. Սահակ նահապետ Արծրունեաց, ժամանակակից Մորիկ (582—601) կայսեր.—տես. Սահակյա՝ Սեբ. լա։

— 29. Սահակ Մամիկոնեան, Հունաց Մորիկ կայսեր հրամանով՝ 1000 ձիավորով գնաց Թրակիա, կռվելու համար բարբարոսների դեմ.—Սեբ. ժը։

— 30. Սահակ Սիւնի, նահապետ տոհմի. ժամանակակից Խոսրով Բ թագավորի (590—628) Պարսից. իր եղբորորդին՝ Ստեփաննոս Սիւնի, պատերազմեց հետը՝ հափշտակելու համար նահապետության պատիվը, բայց բռնվեց ու գլխատվեց.—Սեբ. իա.—տես. Սահակյա՝ անդ։

— 31. Սահակ ի Վարդանան իշխան, անդամ Դուինի եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։

— 32. Սահակ ի Հմայակեան իշխան, անդամ Դուինի երկրորդ եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։

— 33. Սահակ ի Մանուեղ'եան իշխան, անդամ Դուինի երկրորդ եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։ (Ըստ Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Գ. 27 որդին է Մանուէլ Ամատունու, որ շինեց Պտղավանքը Զ դարի առաջին կեսին։ Անունը արձանագրված է Պտղավանքում։ Սրա էլ որդին է Կոտիտ)։

— 34. Սահակ որդի Համազասպի, Արած գյուղից. դարձավ Նեստորական, ապա ապաշխարեց և երդման թուղթ գրեց Վրթանէս քերթողին են (Զ դար).—Գիրք թղ. իգ.—րց. ի Սահակյա՝ անդ։

— 35. Սահակ վանահայր Գլակայ վանքի, հաջորդեց Յովհաննէսին (Զ դար).—Մամիկ. ա։

— 36. Սահակ քորեպիսկոպոս ագուան. անդամ Աղուէնի

ժողովի. ժամանակակից Վաչագան Գ Թագավորի (Զ դար).—Կղկնտ. Ա. իզ. Կանոն. 192։

— 37. Սահակ, անունն է այն ճարտարապետի, որ շինեց Պտղավանքը՝ Զ դարի կեսից առաջ, ինչպես հիշված է նույն վանքի արձանագրության մեջ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Գ. 27։

— 38. Սահակ, հիշված է Բագարանի արձանագրության մեջ 628 թ.—Կոգեան, Կմսրկնները 137։

— 39. Սահակ Կամսարական, կուսակալ Իտալիոյ Հռավեննա քաղաքի, ուր մեռավ և թաղվեց 664 թ. դամբանը մնում է նույն քաղաքի եկեղեցիներից մեկում, իր եղբոր հետ, հունարեն տապանագրով.—Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 228, Հայ-Վեննտ. 12։

— 40. Սահակ նախարար Սիւնեաց, հաջորդ Սարգսի (Է դար).—Օրբ. ժգ.—սեռ. Սահակոյ՝ Օրբ. իե։

— 41. Սահակ ավագերեց Դունայ, հայր Ստեփաննոս Սիւնեցու (†«735 թ») և Սահակադուխտի.—Ալիշան, Յուշիկք Ա. էջ 277։

— 42. Սահակ Գ Ձորափորեցի, կաթողիկոս հայոց «677—703 թ» (ըստ Բ. Առաքելյան, Տեղեկ. ԱրմՖանի, 1942, № 1, էջ 65՝ գահակալել է 678—703 թ)։ Աշակերտել է Թէոդորոս Քռթենաւորին (Ձեռ. Վեննտ. Բ 226 կոչված է «վանաց երեց»). նախապես եպիսկոպոս էր Պարսկահայոց Ռոտակաց գավառի. հաջորդեց Իսրայէլ Ա Ոթմսեցի կաթողիկոսին։ Յուստինիանոս Բ արշավելով Հայաստան, կաթողիկոսին պատանդ տարավ իր հետ Պոլիս «693 թ». երկու տարուց հետո կայսրը գահընկեց եղավ և Սահակը դարձավ իր աթոռը «695 թ»։ Իր օրով նորոգվեց կրոնական կապը Աղվանից հետ, որ բավական ժամանակ ընդհատված էր. մյուս կողմից բարեկամություն է հաստատվում Հոնաց հետ, որոնք սկսել էին ընդունել քրիստոնեությունը՝ Աղվանից Իսրայէլ եպիսկոպոսի քարոզությամբ։ Արաբաց Աբդըլլահ ոստիկանի ձեռքով Սահակը գերվեց և շղթայակապ Դամասկոս ուղարկվեց («702 թ»)։ Երբ Մոհմատ-իբն-Ոկբայ զորացած գալիս էր Հայաստան կոտորելու, Սահակը գնաց նրա առաջը՝ մեղմելու համար նրա բարկությունը։ Խառանի մեջ Սահակը մեռավ. Ոկբայ եկավ հանգուցյալին տեսնելու և նրա ձեռքից՝ իբրև կենդանի մարդուց՝ առնելով աղերսագիրը, կարդաց և ներեց ապստամբ Հայոց «703 թ»։ (Այս պատմությունը

այլայլված ձևով տես Tübingen, էջ 48, ուր այս Սահակ կաթողիկոսը դառնում է Ս. Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց և նրան ժամանակակից է դրվում Թէոդորոս Ռշտունուն †«658 թ»)։—Սահակը ունի գրած «Ճառ Արմաւենեաց», Տարական խաչի (տես Ամատունի, Պարականոն շար. 120), իրենն է նաև «Սահակ վերջին կաթողիկոսի Կանոնք կամ Հարցմունք Յովհաննու Սիւնակենի և պատասխանիք Սահակայ» (տես Տաշեան, Ցուց. 1146 դ)։ Սահակ կաթողիկոսի անունով հունարեն մի կեղծ գրության մասին տես Ազգապ. էջ 768—770։—Եղն. եր. 268. Փնդ. 271. Կղկնտ. Բ. լը, խդ. Յհ. կթղ. ի, խա. Ղև. թ. Տար. (իբր հեղինակ հիշված սկիզբը). Ասող. Բ. բ. Սուտ-Շապհ. 25. Մխիթ. աս. իթ (=իը). Կիր. 35. Վրդ. լգ, լէ. Սամ. անեց. 84. Յհ. կթղ. հյբ. 275. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 21. Սմբ. պատմ. 140. Օրբ. հա. Տաթև. հարց. 545, 637. Սիմ. ապար. 120 (կոչում է Սահակ Ռշտունի). Ջուղ. 57—58.—**Իսահակ**՝ Յայսմ. մրտ. 31.—սեռ. **Սահակայ**՝ Կղկնտ. Բ. խե. Ղև. թ. Տար. (սկիզբը). Սհկ. կթղ. էջ 185. Վկ. դաւ. 89. Կանոն. 131. Յհ. կթղ. խա. Ասող. Բ. բ, դ. Սուտ-Շապհ. 26, 28. Կիր. 36. Վրդ. լէ. Վրաց պղր. Ա. 80—81 (**Իսահակ**).—Չամչ. Բ. 559. Զարբ. Հին դպր. 475—6. Տիմ. կուղ, յոբ. 20. Ազգապ. 753—800։ Տես և Սահակ № 78.—Տես հատկապես «էջմիածին», 1948 թ. № 1, էջ 69, ուր խոսվում է Զորափորեցու հորինած Տարականի մասին.

էջ Միածինն ի հօրէ և լոյս փառաց ընդ նմա,
Ձայն հնչեցին սանդարամետք անդնդոց։

— 43. **Սահակ** եպիսկոպոս Ամարասի. նզովեց Աղուանից Ներսէս քաղկեդոնիկ կաթողիկոսին (703 թ).—Կղկնտ. Գ. գ, ը. հրատ. Սամ. անեց. 286։

— 44. **Սահակ** եպիսկոպոս Մամիկոնենից. անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Գիրք թղ. ծէ. Կանոն. 149։

— 45. **Սահակ** վարդապետ Մանդակունի, անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».— Ազգապ. 839։

— 46. **Սահակ** Արծրունի, որդի Վահանի. Համազասպ եղբոր հետ ընկավ Սուլէյմանի վրա և շատ ջարդ տալուց հետո, երկուսն էլ ընկան ու մեռան (Եզիտ ոստիկանի օրով), շուրջ «758—764 թվերին».—Ղև. լ. Ասող. Բ. գ։

— 47. **Սահակ** եպիսկոպոս Հարքայ. անդամ Պարտաւի ժողովի, որ գումարեց Սիոն կաթողիկոսը «768 թ».—Կանոն. 166. Տաշեան՝ Ցուց. 653։ (Նույնը կոչված է ըստ Վենետիկի ձեռա-

գիրների՝ Սահակ արքեպիսկոպոս, «առանց վիճակի», անդամ Պարտավի 768 թվի եկեղեցական ժողովի։ Հացունի, Կարեոր խնդ. 259, համարում է սրան առաջին անձը, որ կրել է «արքեպիսկոպոս» տիտղոսը. մյուս ձեռագիրները սրբագրել և գործել են «եպիսկոպոս Հարքայ»)։

— 48. **Սահակ** տէր Գողթան, անդամ Պարտավի եկեղեցական ժողովի, որ գումարեց Սիոն կաթուղիկոսը «768 թ»։— Կանոն. 166, Տաշեան, Ցուց. 653։

— 49. **Սահակ** Բագրատունի, որդի Բագարատի՝ եղբոր Վասակայ՝ հօր Աշոտ պատրիկի. նշանակվեց պատրիկ Հայաստանի՝ իբրև հաջորդ Աշոտ (կուրացյալ) պատրիկի «752 թ», որի հորեղբորորդին էր։ Մասնակցեց Պարտավի եկեղեցական ժողովին, որ գումարեց Սիոն կաթուղիկոսը «768 թ». ըստ Չամչ. Բ. 413 սպանվեց 770 թ. Մուսի ոստիկանի ձեռքով. ըստ Ազգաբ. արդեն մեռած էր «774 թ».—Ղև. լգ. Ասող. Բ. դ.—**Իսահակ**՝ Ղև. իը.—սեռ. **Սահակայ**՝ Ղև. լգ։—Կանոն. 166, Տաշեան, Ցուց. 653։

— 50. **Սահակ** Բագրատունի, բարձակից և նիզակակից Սմբատ Բագրատունի սպարապետի. միացավ Մուշեղ Մամիկոնեանի ապստամբության ընդդեմ Հասան ոստիկանի և նահատակվեց Բագրևանդի ճակատամարտում «775 թ».—Ղև. լդ։

— 51. **Սահակ** Արծրունի, որդի Գագիկի. հոր և եղբոր՝ Համազասպի հետ բռնվեց Նկան բերդի պաշարման ժամանակ, միասին բանտարկվեցին և ապա ազատվելով՝ դարձան Հայաստան։ Սահակ և Համազասպ եղբայրները ապստամբեցին Արաբների դեմ, բայց Արճէշում չարաչար հաղթվեցին «775 թ»։ Իրենց հավատքը չուրանալով՝ նահատակվեցին երկուսն էլ Խազմ ոստիկանի ձեռքով «786 թ»։—Իրենց նկարը քանդակված է Աղթամարի տաճարի դրսի երեսում (տես Համազասպ № 21)։—Ղև. լբ, խ. Ասող. Բ. դ. Վկ. հմզ. 64, 68, 76. Ցայսմ. ապր. 8.—**Իսահակ**՝ Ղև. խ. Ցայսմ. ապր. 8.—սեռ. **Սահակայ**՝ Ծ$_2$. 653. Սամ. անեց. 89. Ցայսմ. ապր. 8. Վկ. հմզ. 61, 77.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Զ. 330—345։

— 52. **Սահակ** Արծրունի, իշխան Վասպուրականի. որդին էր Աշոտի և եղբայր Գագիկի. կինն է Սմբատուհի և իր որդին ու հաջորդն է Գրիգոր—Դերենիկ Ա (Ը դար).—Սուտ—Շապհ. 37—39.—**Իսահակ**՝ անդ 37.—սեռ. **Սահակայ**՝ անդ 37։

— 53. **Սահակ** իշխան Սիւնի, հայր Հրահատի և Արուսմանի (Ը դարի վերջը).—սեռ. **Սահակայ**՝ Օրբ. լբ։

— 54. Իսահակ *սուրբ, որ յիշուել է Գնդարդայ վանքում (ծով է).—տես.* Իսահակայ՝ *Յհ. կթդ. կե։*

— 55. Սահակ *իշխան Կարնեցի, Կայս ցեղից այլազգի, մոր կողմից հայ. քրիստոնեական հաւատքը չուրանալով նահատակվեց Յովսէփ եղբօրը հետ «808 թ»։— Կիր. 42. Սամ. անեց. 90. Վրք. և վկ. Բ. 266—71. Յայսմ. յնվ. 22. Մխ. այրիվ. 68. Առաք. պատմ. 479.—տես.* Սահակայ՝ *Ճշ. 503. Յայսմ. յնվ. 22. Վրք. և վկ. Բ. 266—271.—ընդարձակ տես Աւգեր. Լիակ. վրք. որբ. Դ. 293։ (Նոյնը հիշում է Փիրղալէմեան, Չորս ընկերք, Թիֆլիս 1882, էջ 71)։*

— 56. Սահակ *նահապետ Սիւնեաց, որդի Վասակի, եղբայր Փիլիպպէի Ա, հայր Գրիգոր-Սուփանի. հօրից ժառանգեց Գեղամայ գավառը. ուստի իր սերունդը կոչվեց Հայկազն։ Միացավ Սևադայ պարսիկ իշխանի հետ և ապստամբեց Արաբների դեմ. բայց Հոլ ոստիկանից հաղթվեց և սպանվեց («824 թվից հետո և 833-ից բավական առաջ»).—Յհ. կթդ. իե. Վրդ. խգ. Օրբ. լդ, ծդ.— տես.* Սահակայ՝ *Յհ. կթդ. իե. Օրբ. լդ, լդ, լը, ծդ, ծը։*

— 57. Սահակ *իշխան Վանանդի, քաջութեամբ վանեց Հունաց Թէոփիլոս կայսեր արշավանքը՝ Կաճկաքար ավանի առաջ 829 թ.—Զամչ. Բ. 434։*

— 58. Սահակ *իշխան հայկազն տես Սահլ 837 թ։*

— 59. Սահակ *հայր Համազասպի, որ իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թ. կալվածագրում.—տես.* Սահակայ՝ *Օրբ. լը։*

— 60. Սահակ *որդի Վասակի. հիշվում է իբրև վկա Տաթևի 844 թ. կալվածագրում.—Օրբ. լը։*

— 61. Սահակ *քահանա Նորեաց, իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թ. կալվածագրում.—տես.* Սահակայ՝ *Օրբ. լը։*

— 62. Սահակ Ապումկդեմ *տես* Ապումկդեմ *851 թ։*

— 63. Սահակ *Ընտրունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».—Ազգապ. 942։*

— 64. Սահակ *Արծրունի, եղբօրորդի Աշոտ իշխանաց իշխանի. մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».— Արծր. Գ. դ, ժբ.—տես.* Սահակայ՝ *Արծր. Գ. ժդ։*

— 65. Սահակ *Ամատունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».—Արծր. Գ. դ։*

— 66. Սահակ *վարդապետ Հայոց, Մռուտ կամ Ապլիկուրէշ (Ծպլկուռա). էր եպիսկոպոս Տայոց. հալածվելով հակաքաղկեդոնական լինելու համար՝ եկավ Աշոտ Ա-ի մոտ և նրա հրամանով*

պատասխանեց Փոտի Թղթին (863 թ), ապա Աշոտի ձեռքով վտարվեց Հայաստանից՝ իբր քաղկեդոնիկ։—Գիրք թղ. ձա. Ասող. Գ. ը. Վրդ. խղ.—Իսահակ՝ Կիր. 45.—Եպիկուռայ՝ Մխ. այրիվ. 68.— Զարբ. Թրգմ. 748. Յուշիկք Ա. 458—461. Mariès REA 1, 286.—ըստ Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 128 ոչ մի կապ չունի Աշոտ Մսակերի հետ վիճող Ապիկուռայի հետ, որ տարբեր է։

— 67. Սահակ Սիւնի, եղբորորդի Բուպղիզխատայ. հիշվում է Տաթևի 867 թվի կալվածագրում.—տես. Սահակայ՝ Օրբ. լթ։

— 68. Սահակ իշխան Սիւնեաց. սրա որդին Ջևանշէր փոխանակեց իր Արուքս գյուղը Տաթևի կալված Բեխ գյուղի հետ՝ 871 թ.—Օրբ. լթ։

— 69. Սահակ Վանանդեցի, որդի Վարդի, «որում կրկին Մլեհ կոչէին». գրիչ. օրինակեց Ավետարանը 887 թ։ Այս Ավետարանը մեր երկու տասնյակ հազար ձեռագրներից ամենահինն է, որ և լուսատիպ հրատարակված է՝ մաքուր և շքեղ տպագրությամբ։ Գրչի անունը և հիշատակարանը գտնվում է Ձեռ. էջ 229 ա։ Ձեռագիրը նախապես պահվում էր Մոսկվայի Լազարեան ճեմարանում. այժմ գտնվում է մեր Պետական Մատենադարանում։—Բժշկեան, Ճնպրհ. ի Լեհ. 17, Այրարատ 75, Բանաս. 1900, 294։

— 70. Սահակ Բագրատունի տեր Տարոնի. Աշոտ Մսակերի († 824) որդին էր և եղբայր Դավթի, Մուշեղի և Բագարատ պատրիկի (Թ. դար).— Վրդ. խր. Արծր. Գ. ժէ. Մխ. այրիվ. 69.—տես. Սահակայ՝ Արծր. Բ. գ. Գ. ժէ։—Այս Սահակը Բուրդանների առաջնորդ Մանգիրին սպանողն է համարված փոխանակ Սահլի (տես Մարկվարտ, Բագրատունեաց ծիւղագր. Վիեննա 1913, էջ 57—63. տես նաև Սահլ № 2)։

— 71. Սահակ (իշխան) Սիւնեաց, որի որդու՝ «տեառն Աշոտոյ» անունով կանգնեցրած է մի խաչքար, Քէօթանլու գյուղում, 925 թ.— Սիսական 110։

— 72. Սահակ եպիսկոպոս Վեհարանի. Յովհաննէս Պատմաբան կաթողիկոսի փախուստից հետո պաշարվեց Բիւրականում Նըսր ոստիկանից և նահատակվեց «926 թ»։—Յհ. կթղ. կզ. Վրդ. խղ. Յայսմ. ապր. 16։

— 73. Սահակ ոմն կրոնավոր կույր. նույնպես նահատակվեց Բիւրական ամրոցի առման ժամանակ Նըսր ոստիկանից «926 թ»։—Յհ. կթղ. կզ։

— 74. Սահակ մեծ իշխան Աղուանից, որի մոտ հյուրընկա-

լություն գտավ Յովհաննէս Ե Պատմաբան կաթուղիկոսը («898—929 թ») Յուսուփ ոստիկանից փախչելու ժամանակ:—Յհ. կթղ. խդ:

— 75. Սահակ Բագրատունի, որդի Աշոտ Ա-ի և եղբայր Սմբատ Ա († 914) նահատակ թագավորի (Թ դար).—սեռ. Սահակյ՝ Յհ. կթղ. լե, լէ, խթ:

— 76. Սահակ սեպուհ, մասնակցեց Մաղէի պատերազմին (Թ դար)—Արծր. Բ. դ:

— 77. Սահակ Վահեւնի, եպիսկոպոս Նախճավանի և Մարդպետականի. սրա եղբայրը՝ Ապուսահակ նահատակվեց ժիրաքի ձեռքով «852 թ». (Թ դար).—սեռ. Սահակյ՝ Արծր. Գ. բ:

— 78. Սահակ «կաթուղիկոս և մեծ թարգմանիչ», որ ունի «Թուղթ ընդդէմ երկաբնակաց Նեստորականաց» (Թ դար).—սեռ. Սահակյ՝ Գիրք թղ. դ, ուր և ավանդված է նույն թուղթը:—Թ դարում Սահակ կաթուղիկոս չկա. ուստի արդյոք Սահակ Մռուտն է: Ըստ Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 290—298 Սահակ Գ Ձորափորեցին է. այստեղ քննվում է նաև նրա կրոնական վարդապետությունը:

— 79. Սահակ Սևադայ, որդի Գրիգորի (№ 89) և թոռն Ատրներսեհի (№ 11), աներ Աշոտ Բ-ի, մեծ իշխան Գարդմանի. օգնեց Աշոտին՝ զսպելու Մովսէս Ուտէացու ապստամբությունը. երկու անգամ ապստամբվեց ինքն էլ Աշոտ Երկաթի դեմ, բայց հաղթվեց, բռնվեց և կուրացվեց (923 թ):—Կղկնտ. Գ. իգ. Մխ. այրիվ. 23. Յհ. կթղ. ծթ, կ. Օրբ. խբ.—սեռ. Սահակյ՝ Յհ. կթղ. ծը, կ. Օրբ. լէ.—գրծ. Սահակաւ՝ Յհ. կթղ. ծթ:

— 80. Սահակ տէր Սիւնեաց, որդի Աշոտի՝ որդւոյ Փիլիպպէի Ա, հայր Սմբատ Թագավորի Սիւնեաց: Սմբատ Ա-ի գերության ժամանակ, սրա կինն էլ ընկավ Յուսուփի ձեռքը և տարվեց Պարսկաստան: Երկու տարուց յետ դարձավ: Նըսրի ձեռքով խարդախությամբ բռնվեց և բանտարկվեց («926 թ»). մի տարի հետո փրկանքով ազատվեց:—Յհ. կթղ. կե, կէ. Օրբ. լէ, խբ, խթ, ծդ.—սեռ. Սահակյ՝ Յհ. կթղ. ծ, ծէ. Արծր. Գ. իը. Օրբ. լդ, լէ, խ, խթ, ծբ—ծդ, ծը—կ.—Իսահակյ՝ Յհ. կթղ. կե:

— 81. Սահակ Սիւնի, որդի Վասակ Գաբուռի, եղբայր Գրիգոր Սուփանի և քեռորդի Սմբատ Ա-ի: Սևանի նավամարտում հաղթեց Յուսուփին և քաշվեց Գարդման ու Արցախ: Աշոտ Բ-ի ժամանակ նորից դարձավ: Մեռավ (915 թվից հետո՝ Սիսական 46) ու թաղվեց Նորատունք գյուղի եկեղեցում, որ ինքն էր շի-

նել։— Յհ. կԹգ. խ, խէ, ծէ, ծը. Օրբ. լգ, լէ, խր, ծգ.—սեռ. Սահակայ՝ Յհ. կԹգ. խէ. Օրբ. լէ, խ։

— 82. Սահակ *Երիցորդի. մեռել է 941 Թ. Մնում է իր տապանաքարը Ագարակ գյուղի եկեղեցու գերեզմանատանում.—Շողակաթ 178։*

— 83. Սահակ *կաթողիկոս Աղվանից 928—947 Թ. էր եպիսկոպոս Մեծկունից. հաջորդեց Դավթին. ապստամբվեց Հայոց կաթողիկոսությունից և իշխեց ինքնագլուխ՝ իրեն հպատակեցնելով նաև Սյունիքը։ Անանիա Ա Մոկացի կաթողիկոսը ուզեց գնալ Աղվանք՝ խնդրի կարգադրության համար. բայց նույն միջոցին մեռավ Սահակը և տեղը նստեց Գագիկը (№ 19, † «958 Թ»)։— Կղկնտ. Գ. իզ. Օրբ. ծա. Կիր. ը. Անան. պատ. 131 աբ, 133 ա, 139 ա. Մխ. այրիվ. 24. Հայապ. 385.—սեռ.* Սահակայ՝ *Օրբ. ծա. Անան. պատ. 132 ա։*

— 84. Սահակ, *որդի Խոսրով եպիսկոպոսի Անձևացեաց. երեց եղբայր Ս. Գրիգոր Նարեկացու. առաջին անգամ օրինակեց հոր հեղինակած «Մեկնութիւն պատարագի» աշխատությունը՝ «950 Թ»։—Մխ. այրիվ. 71.—սեռ.* Սահակայ՝ *Խոսր. պտրգ. 67. Հայապ. 290։*

— 85. Սահակ, *որի անունով մի խաչքար էր կանգնեցրած Ակոռիի եկեղեցում 955 Թ.—Այրարատ 473։*

— 86. Սահակ *եպիսկոպոս Գնդունեաց. հիշատակվում է այն խոստովանագրում, որ տվեց Բագաց եպիսկոպոս Վահանը՝ Անանիա Մոկացի կաթողիկոսին, 958 Թ.—Անան. պատ. 142 բ։*

— 87. Սահակ *Դարբնորդի, գլխավոր քահանա. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 Թ») կաթողիկոսը.—Անան. պատ. 134 բ։*

— 88. Իսահակ, *որդի Վահրամի, զորավար հունաց, Անտիոքի հաղթականներից. մին այն 8 դավակիցներից, որոնց հետ Զմշկիկը սպանեց Նիկեփոր կայսեր և խլեց նրա գահը (969 Թ).—Դուրեան, Ազգ. պատմ. 353։—Սրա հետ նույն է № 90։*

— 89. Սահակ *երեց, որ իր հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Արատէսի վանքում 975 Թ.— Սիսական 144։*

— 90. Սահակ *որդի Վահրամի, սպարապետ, տեղակալ Վարդ Սկլերոսի. երբ այս վերջինը հուսահատված չգիտեր ինչպես անել, Սահակը քաջալերեց նրան և անձամբ ցույց տալով ճանապարհը՝ Վարդի բանակը հասցրեց* Lykandos *քաղաքի առաջ։*

Գրաւելով այս քաղաքը՝ Վարդի առաջ բացվեց ամբողջ Փոքր-Ասիան (976).— Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 318։

— 91. Սահակ տես Աշոտ-Սահակ Արծրունի № 48 († 990 թ)։

— 92. Սահակ ի Հանձիթոյ, որդի Հաբէլի. Վասիլ կայսեր հրամանով ուղարկվեց Բուլղարների դեմ, բայց հաղթվեց և ինքն էլ գերի բռնվեց 991 թ.—Ասող. Գ. լգ, լդ։

— 93. Սահակ Արծրունի, իշխան Վասպուրականի. թղթակցեց Խորենացու հետ (Ժ դար). իր մի նամակը գրված է Խոր. պատմ. Ածած. էջ 281, 283, որի մասին խոսում է Գրգշ. Բնն. պատմ. Դ. 80—89 (կեղծիք)։

— 94. Սահակ Վարաժնունի, մարզպան. մեռել է 1000 թ. ըստ Ուռհ.—տես. Սահակյան՝ Ուռհ. 42։

— 95. Սահակ հայրապետ կամ վանահայր Մակարայ վանքի, հիշված 1001 թ.—Արձ. Շիրակ 166։

— 96. Սահակ եպիսկոպոս Արշարունեաց. գլխավորն էր այն ժողովի, որ ընտրեց Սարգիս կաթողիկոսին «992 թ» (Ասող. Գ. լբ)։ Իբրև առաջնորդ Մրէնի հիշված է Մրէնի երեք արձանագրությանց մեջ, առաջինը 992 թ. մյուս երկուսը անթվական, բայց գրված Գագիկ Ա-ի ժամանակ («990—1020 թ»)։ Սահակը խնդրել էր թագավորից ազատել Մրէնի վանքը հարկերից և Գագիկը վերջին արձանագրության մեջ կատարում է նրա խընդիրքը։—Շիրակ 138։

— 97. Սահակ սմն, որ հիշված է Գր. Նարեկացու Կճաւի թղթում, իբր քաղկեդոնականներին անիծող մի հայրապետ.— րց. ի Սահակյայ՝ Գիրք Թղ. ղր։

— 98. Սահակ Թագավոր Սիւնեաց. փոխանակ առելու Վաստակ (տես Կատրամիդէ).—տես. Սահակյան՝ Վրց. խը. Անանուն ժմ. 16։

— 99. Սահակ, որդի Փիլիպպոս քահանայի. երկուսով ուսուցանում էին Այրարատում 1066 թ.—Հացունի, Դաստիար. 126. (իսկ ըստ Rapport Arm. 46 ուսուցանում էին Սեբաստիայում)։

— 100. Սահակ, փեսա Համբրոնի Օշին իշխանի. Ապլղարիպի սիրելի ավագներից մեկն էր. Ապլղարիպը որդի չունենալով, մեռած ժամանակ իր իշխանությունը հանձնեց Սահակին, որ կայսեր հրամանով դարձավ իշխան Տարսոնի (1080 թ)։— Ջամչ. Բ. 1005. Միսուան 71 ա։

— 101. Սահակ միայնակեց. սրա անունով գրված ունինք

«Սահակայ միայնակեցի և երանեալ ճգնաւորի ասացեալ Դաւանութիւն ի Ս. երրորդութիւնն և ընդդէմ չարափառացն. հարցումն և պատասխանի Պօղոսի Տարօնեցւոյ ասացեալ ընդդէմ հերձուածողաց։ Հաւատով խոստովանիմք...» (տես Ձեռ. Վենետ. Բ. 604—5)։ Պօղոս (№ 17) Տարօնեցու († 1123 Թ) անունը հիշելուց հայտնի է լինում և սրա ժամանակը։

— 102. Սահակ պատրիարք Հայաստանեայց՝ ԺԱ դար. հիշում է Զարբ. Թրգմ. 249՝ առնելով Ֆաբրիկիոսից.—(կեղծիք)։ Թվի թե նույն է՝

— 103. Սահակ եպիսկոպոս Մեծ Հայոց. գրել է Գիրք ընդդիմադրութեան ընդդէմ հերձուածողաց (1100 Թ).—Տաշեան, Ցուց. 109. Չամչ. Բ. 1026 (համարում է խարդախանք)։

— 104. Սահակ եպիսկոպոս Կարնոյ. կոչված է դառն եպիսկոպոս Գրիգոր Գ Պահլաւունի կաթողիկոսի, որի հրամանով եկավ Աղուանք և ձեռնադրեց Գագիկ-Գրիգորիսին կաթողիկոս Աղուանից «1139 Թ».—սեռ. Սահակայ՝ Կիր. ը (գրված է Կարնայ, որ Այրարատ 76 բ կարդում է Կարսայ և դնում է Կարսից եպիսկոպոսների շարքը. բայց պետք է կարդալ Կարնոյ՝ միայն հոլովական տարբերությամբ՝ -այ փոխանակ -ոյ, ինչպես անում են Ազգապ. 1363 և Հայապ. 385)։

— 105. Սահակ եպիսկոպոս, աշակերտ Սարգիս վարդապետի. մին այն եպիսկոպոսներից, որոնք նույն Գագիկ-Գրիգորիսին Աղուանից կաթողիկոս օծեցին «1139 Թ».—Հայապ. 385։

— 106. Սահակ եպիսկոպոս, մասնակցեց հայ-հունական կրոնական վեճերին՝ Շնորհալու ժամանակ «1170 Թ».—Ազգապ. 1423, Չամչ. Գ. 106, Ալիշան՝ Շնորհ. 421 (համարում է կաթուղիկոսական Դրան եպիսկոպոս)։

— 107. Սահակ արքեպիսկոպոս Երուսաղէմի, անդամ Հռոմկլայի եկեղեցական ժողովի «1179 Թ».—Շնորհ. պատճ. 199։ Նույն է՝

— 108. Սահակ պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Եսայիին և նստավ 1152—1180 Թ. (Աղաւնունի)։

— 109. Սահակ քահանա Անեցի, աշակերտ և միաբան Հաղբատի վանքի. որդի Թամասի. գրել տվեց Գետաշէնի նշանավոր Աւետարանը «1211 Թ».—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. էջ 42։

— 110. Սահակ տէր Մազվայ, մին այն իշխաններից, որոնք Ջապէլ Թագուհու ժամանակ ապստամբելով նրա դեմ՝ ուզում էին գահ բարձրացնել Ռուբէն—Ռէյմոնդ իշխանին («1220 Թ»).

—Ազգապ. 1595 (ճիշտն է Կեռսակ, այսինքն կիռ Սահակ. տես հտ. Բ, էջ 617 Կեռսակ անվան տակ)։

— 111. Իսահակ (կամ Իշոխան) քահանա, հմուտ բժշկության, թարգմանել է մի Մարդակազմություն (շուրջ 1248 թ). ձեռագիրը գտնվում է Փարիզի Bibl. Nat.—Թորգոմեան REA 6, 24 և Արևելք 1889։

— 112. Սահակ որդի Սիմոնի, Բէօթանլու գյուղի գերեզմանատան մեջ իր անունով կանգնեցրել է մի խաչքար 1252 թ. —Սիսական 110։

— 113. Սահակ երեց, հայր Թադուհիի, որ իր տունն ու այգին նվիրել է Աշտարակի Ս. Մարինէ մատուռին, 1281 թ. —Շահխաթ. Բ. 85, Այրարատ 186։

— 114. Սահակ, հայր տէր Բարսեղի, որ նրա հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Վայոց ձորի Արփա գյուղի եկեղեցում 1299 թ.—Սիսական 182։

— 115. Սահակ վարդապետ. գրել է Տիրան վարդապետի հետ պատասխան բարեպաշտ մի իշխանի հարցումին, ինչպես հիշում է Վարդան Այգեկցին (ԺԳ դար).—Տաշեան, Ժողվ. առակաց Վրդ. 65։

— 116. Սահակ եպիսկոպոս Բարբերդի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Ազգապ. 1786։ Հմմտ. № 123։

— 117. Սահակ գրիչ. օրինակեց Աստուածաշունչը 1312 թ. —Ձեռ. Կարին. 15։

— 118. Սահակ քահանա, Եղեգիսում Խաչատուր Կեչառեցուն գրել տվեց մի Աւետարան 1315 թ.—Բարխուտ. Աղվանից երկ. 246։

— 119. Սահակ քահանա, պանդուխտ էր Կիպրոս կղզում, ուր կազմեց Թորոս գրչի օրինակած Նոր Կտակարանը, 1318 թ. —ՀԱ 1937, 381։

— 120. Սահակ կրոնավոր, Վայոց ձորում օրինակել տվեց Աւետարանը՝ Պօղոս վարդապետին, 1321 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 565)։

— 121. Սահակ աբեղա Բաջբերունի, կազմեց այն Աւետարանը, որ գրեց Թումայ Արճիշեցին Գողթան գավառի Ցապատառի անապատում, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 122. Սահակ որդի Վարդեանի և թոռ Վարդուբախի. ստացո՞ղ ձեռագրի 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։

— 123. Սահակ *առաջնորդ Բաբերդի՝ 1346 թ.—ՀԱ 1926, 344։—Հմմտ. № 116։*

— 124. Սահակ *քահանա, հայր Ստեփաննոսի, որ ստացավ մի ժողովածու՝ 1360 թ.—Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 83։*

— 125. Սահակ *քահանա, որդի Գէորգ քահանայի, ստացավ Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի գրել տված Աւետարանը, 1389 թ.—Ջեռ Վենետ. Ա. 652։*

— 126. Սահակ *վանահայր կամ առաջնորդ Վարագայ վանքի. հաջորդեց իր եղբոր Պողոս վանահոր. հիշված է 1393—1399 թ. (Նօտարք 2, 3, 10 և Թորոս աղբ. Բ. 429)։ Նույն անձը իբրև եպիսկոպոս և առաջնորդ Վարագայ վանքի հիշված է հրատ. Ագաթ. (1909 թ), յոջ. էջ ծ, 1402 թ։*

— 127. Սահակ *աբեղա Ղրիմեցի. գրիչ. օրինակեց ճառընտիրը Երուսաղէմ 1398 թ.—Տաթև տարեց. 1925, 292։*

— 128. Սահակ *Ա. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Առաքելի և նախորդ Միքայէլ Ա-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։*

— 129. Սահակ *քահանա, որդի Ղազար երեցի, որ նրա համար Յովհաննէս Մշեցուն գրել տվեց մի Աւետարան, 1402 թ.—* Manus. brit. mus. *38բ։*

— 130. Սահակ. *վկայում է այն մասին թե Դաւիթը (№ 173) գնել է մի հին Աւետարան, 1407 թ.—Ջեռ. Վասպ. 166։*

— 131. Սահակ *հայր, միաբանակեաց, որի խնդրանոք Տաթևացին († 1410) գրեց Հարցմանց գրքի իններորդ գիրքը.—Տաթև. հարց. 558 (գրել է 1397 թվին)։*

— 132. Սահակ *եպիսկոպոս, առաջնորդ Կաւալու վանքի (Ս. Կարապետ և Ս. Խաչ անունով). հիշված է 1410 թ.—Նօտարք 37։*

— 133. Սահակ *պարսիկ Թաւրիզեցի. բուն անունն էր Յուսուփ. քրիստոնեից մոլեռանդ հալածիչ էր. տեսիլքում տեսավ Քրիստոսին, զղջաց և դիմելով Ստեփաննոս Լալուկ վարդապետին, մկրտվեց ու քարոզիչ և վարդապետ դարձավ։ Սկսեց քարոզել քրիստոնեությունը մահմեդականների մեջ՝ Թաւրիզ, Հեշատ, Գուռնաւա, Լայիլան, Նախջուան, Մարաղա, Բաղդադ, Սուլթանիէ, Սմրղանդ, Մաշադ և այլ քաղաքներ։ Ուխտի գնաց Մեծոփի վանքը, ուր տեսավ Թովմա Մեծոփեցի վարդապետին, որ ապա իր Պատմության մեջ մտցրեց նրա վարքը։ Մեծոփից անցավ Արճէշ, Ախալցխա։ Այսպես 40 տարի Պարսկաստան, Ասորեստան, Քրդաստան, Վրաստան և Հայաստան քարոզելով շա-*

տերին դարձի բերելուց և շատ անգամ չարչարվելուց հետո, նահատակվեց Շամախիում, «1417 ապրիլի 18-ին»։ Շամախեցի Խաչատուր Եղիազարեան ոմն 1817 թվին մի մատուռ կառուցեց նրա հիշատակին՝ Շամախու Բարքանջ գյուղում (Բարխուտ. Աղվ. երկ. էջ 165—6)։ [ԾԱՆ.—Ժամանակի այս ահագին տարբերությունը կարծել էր տվել մեզ թե մատուռի արձանագրության մեջ հիշված Սահակ վարդապետը տարբեր է Իսահակ պարսիկ Թուրիժեցուց և նահատակվել է 1817 թվի մայիսի 1-ին Շամախիում։ Այս ձևով էլ մտցրել էինք մեր Նոր Վկայքի ժողովրդական հրատարակության մեջ, հտ. Բ. էջ 314։ Այս սխալը ուղղել ենք գրքի գիտական հրատարակության մեջ, էջ 725—6։ Սակայն Ազգապ. 3626 երևի ձեռքի տակ ունենալով միայն մեր ժողովրդական հրատարակությունը և տեսած չլինելով գիտական հրատարակությունը, շարունակում է նույն սխալը]։—Յուսուփ՝ Մեծոփ. 73.—Խաչիկ՝ Յայսմ. ապր. 18.—տես. Սահակայ՝ անդ. —Զամչ. Գ. 438—441, Նոր վկ. 208—220 և 725—6։

— 134. Սահակ միայնակեց, ստացել է մի Ավետարան և նվիրել իր ազգական Կարապետ եկեղեցպանին, Աղվանից Մատթէոս կաթողիկոսի ժամանակ, 1423 թ.—Նոտարք 72։

— 135. Տէր Սահակ «կրօնամիտ բանասէր և երաժշտապետ», որդի «արեամբ նահատակեալ Մեղրեսարոս քահանայի», ուսուցիչ Ավետիքի։ Այս վերջինը սովորում էր Երզնկայի Կապոսի վանքում։ Տէր Սահակի հորդորով և օժանդակությամբ գնեց Գէորգ վրդ. Երզնկացու Աստուածաշունչը՝ վաճառելով իր և իր ազգականների ամբողջ հարստությունը, 1425 թ.—Նոտարք 79։

— 136. Սահակ Մզտեցի (իմա՛ մղդեսի), որդի Գառնուկի. Աստուածատուր քահանայից գնեց մի Ավետարան՝ 24 փլորինով և նվիրեց Ամասիայի Ղազալայ գյուղաքաղաքի Ս. Սարգիս եկեղեցուն 1427 թ։—Նոտարք 81, Թորոս աղբ. Ա. 65։

— 137. Սահակ, հանգուցյալ եղբայր տանուտեր Սահակի, որ ստացավ մի Ճառընտիր, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583—4։

— 138. Սահակ քահանա, հայր Դաւիթ կրոնավորի, որ Ձմշկածագի Ընկուզեաց անապատում օրինակեց Ավետարանը 1434 թ.—Ձեռ. Թաւր. 12բ։

— 139. Սահակ, որդի Տէրաւագի և եղբայր տանուտեր Յովհաննէսի, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան 1436 թ.—Ձեռ. Վաստ. 373։

— 140. Սահակ *քահանա, հայր Դաւիթ աբեղայի, որ Ներսէս քահանայի համար օրինակեց մի Ճաշոց, Սերաստիա 1438 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 244) և Մելիտինէում էլ մի Գանձարան՝ նոյն 1438 թ.—Թորոս աղբ. Բ. 453։*

— 141. Սահակ *քահանա, հայրն է Յովհաննէս քահանայի, որ գնեց իր որդի Մարկոս քահանայի համար մի հին Աւետարան, որ նորից կազմել տուեց 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 83ա։*

— 142. Սահակ *վարդապետ Բաղէշի, թղթակից անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա։*

— 143. Սահակ *որդի Յովհաննէս քահանայի, որ Արճէշում գրեց մի Աւետարան, 1450 թ., երբ Սահակը իր եղբոր՝ Մեսրոպի հետ արդեն մեռած էր։—Ձեռ. Թուր. 66բ։*

— 144. Սահակ, *կինն է Ղում խաթուն, ծնողներն են Բլլին, որի անունով մի արձանագրութիւն է գրված Խրիմում, այժմ ագուցված Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի պատին, 1453 թ.—Շահազիզ, Աղդագր. հանդ. Է, 71։*

— 145. Սահակ *որդի Ստեփանոսի, եղբայր Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տուեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։*

— 146. Սահակ, *վարամեռիկ որդի Ստեփանոսի՝ եղբորորդւոյ տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 582։*

— 147. Սահակ, *որդի Յովաննէսի և եղբայր Ստեփաննոս կրօնավորի, որ Տարօնի Եղերդուտի վանքում օրինակեց Աւետարանը 1463 թ.—Նոտարք 215։*

— 148. Սահակ, *որդի Յովհաննէս քահանայի, որ Աղթամարում, Մկրտիչ աբեղային գրել տուեց մի Գանձարան, 1466 թ. —Նոտարք 224։*

— 149. Սահակ *երեց, որդի Տէրպարոնի, միաբան Կիւրղի վանից. Ստեփաննոս գրչին գրել տուեց մի Աւետարան, 1467 թ. —Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 257)։*

— 150. Սահակ *քահանա Խիզան գաւառի Սուրս գյուղի. կինն է Ընդ-մելիք, որդիքն են Ղազար և Թանգմելիք։ Տանուտեր Առաքելից ստացավ մի Աւետարան, որ գրել էր տվել նա Խիզանի Գամաղիէլ վանքում 1469 թ. և նոյն քահանային նշանակեց «խնամածու և պահապան Աւետարանիս»։—Ձեռ. Վասպ. էջ 454—5։*

— 151. Սահակ *տանուտեր, որդի Յովաննէսի, կինն է*

Խաթուն. Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ջեռ. Վաստ. 469, 470։

— 152. Սահակ որդի Եղիազարի և եղբայր Գրիգոր կրօնաւորի, որ Արծկէում, Ղազար քահանային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1475 թ.—Ջեռ. Մաղն. 36։

— 153. Սահակ, որդի Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ջեռ. Վաստ. 485—6։

— 154. Սահակ, ազգական Յովհաննէս (№ 1229) քահանայի, որ Բերկրիի Առեղս գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1488 թ.—Ջեռ. Վաստ. 508։

— 155. Սահակ քահանա, Մակույ Բռնաշէն գյուղում, Առաքել քահանային գրել տվեց մի Աւետարան, և նվիրեց Ալանայ Ս. Նշանին, 1490 թ.—Ջեռ. Վաստ. 516։

— 156. Սահակ երէց, որդի Տերիւնի, քահանա Կեսարիոյ Մոնտխոռն գյուղի, օգնեց Յովհաննէս աբեղային գրելու Յայսմաւուրքը 1495 թ.— Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 157. Սահակ քահանա, եղբօրորդի Ազարիա աբեղայի, որ Վայոցձորի Եղեգիս քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 586։

— 158. Սահակ աղա, հայր Ազարիա աբեղայի, որ Վայոցձորի Եղեգիս քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 586։

— 159. Սահակ որդի Մարտիրոսի և եղբայր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Նոր-Բայազ. 16 բ։

— 160. Սահակ Բ. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Գրիգոր Ե-ի և նախորդ Ստեփաննոս Դ-ի (ԺԵ դար).—Հուաք. 61 (կեղծիք)։

— 161. Սահակ որդի Սուլթանի՝ եղբօր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ջեռ. Սևան. 18։

— 162. Սահակ Գ. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Դաւիթ Ե-ի և նախորդ Ստեփանոս Զ-ի (ԺԵ դար).—Հուաք. 61 (կեղծիք)։

— 163. Սահակ կրօնավոր, ստացող. Գանձակում Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան (ԺԵ դար).—Ջեռ. Սևան. էջ 13ա։

— 164. Սահակ *Բաղիշեցի. նշանավոր գրիչ և մանրանկարիչ, 1622 թ.—Ցովսէփեան, Մի էջ հայ ար. 49։*

— 165. Սահակ *Դ Գառնեցի, կաթուղիկոս էջմիածնի «1623—39 թ». եղբորորդին էր Մելքիսեդեկ կաթուղիկոսի, որ իր ծերության ժամանակ նշանակեց նրան աթոռակալ և կաթուղիկոս ձեռնադրեց։ Ազգը չընդունեց նրան։ Ընկավ քաղաքից քաղաք, որպեսզի Պարսից թագավորից կաթուղիկոսության հրովարտակ ստանար։ Չհաջողելով այս կողմից, փախավ Տաճկաստան և Պոլսի Զաքարիա պատրիարքի օգնությամբ աշխատեց բաժանել կաթուղիկոսությունը և Մշոյ վանքում հիմնել նոր աթոռ՝ Տաճկահայոց թեմերի համար։ Կարողացավ նաև հանել սրա համար սուլթանական հրաման։ Բանիմաց և ազդեցիկ հայեր մեջ ընկան և պառակտման առաջքն առին։ Սահակը քաշվեց էջմիածին, ուր և մեռավ 1639 թ։—Առաք. պատմ. 172—189, 216, 228, 338—9, 441։*

— 166. Սահակ *Հիզանեցի, ճարտարապետ. շինեց Մուղնու Ս. Գէորգ եկեղեցին 1669 թ.—Այրարատ 184։*

— 167. Սահակ *Մէյխանէճի (գինեպան). կաթուղիկոս Սսոյ «1679—1689 թ». հաջորդեց Խաչատուր Մինասէրճուն. իրեն էլ հաջորդեց Գրիգոր Պիծակ։—Ազգապ. 2647։*

— 168. Սահակ *Արծկեցի, կաթուղիկոս Աղթամարի. նախապես Թովմա (№ 227) Ա Ոշականի կամ Ցիրինցի կաթուղիկոսի աթոռակալն էր «1697 թ». ապա Թովման իր կենդանության ժամանակ օծեց նրան կաթուղիկոս. մահվանից հետո հաջորդեց նրան «1698 թ», բայց 4 ամսից մեռավ։—Ակինեան, Գուղնգիրք 145, Հաւաք. 63 (ըստ իր համարի Սահակ Դ), Ազգապ. 2868։*

— 169. Սահակ *«վարդապետաց վարդապետ». աշակերտ Աղթամարի դպրոցի. ունի մանր գրվածքներ (ժէ դար).—Ազգապ. էջ 2261։*

— 170. Սահակ *վարդապետ Ապուչեխցի, պատրիարք Կոստանդնուպոլսի. հաջորդեց Միքայէլ քհ. Խարբերդցուն «1707 թ». ութ ամսից ընկավ պաշտոնից՝ իբրև ոչ բավական զորեղ մարդ՝ դիմադրելու համար կաթոլիկական ոտնձգություններին։ Ցովհաննէս Զմիւռնիացու գահընկեցությունից հետո, նորից գահ բարձրացավ «1708 թ»։ Կաթոլիկական խռովությունների պատճառով նորից գահազուրկ եղավ և աքսորվեց «1714 թ»։—Ազգապ. 2753, 2760։*

— 171. Սահակ *Բրուտնեցի, նոր վկայ. Գողթն գավառի*

Բրուտ գյուղից. 17 տարեկան պատանի էր. գնացել էր Ղրիմի Ազով քաղաքը առևտուրի համար։ Իր գեղեցկության պատճառով Թաթարները ուզեցին մահմեդական դարձնել նրան։ Դատավորը մեծ գանձ և նրան որդեգրել խոստացավ։ Արհամարհեց ամէն պատիվ, դիմադրեց սոսկալի տանջանքներին և չուրանալով իր հավատքը՝ գլխատմամբ նահատակվեց 1715 թ։ Ստեփաննոս Կաֆայեցին ներկա լինելով նրա նահատակության, գրեց նրա սրտառուչ վկայաբանությունը, որ հրատարակեց նախ Սիսական 345, 528 և նրանից արտագրելով՝ Նոր վկ. 552—559, Ազգապ. 2869։

— 172. Սահակ Աղբակեցի, կաթողիկոս Աղթամարի, հաջորդեց Բաղդասար Դ Բաղիշեցուն (1730 թ?) և իրեն էլ հաջորդեց Յակոբ Գ.—Հուշար. 63 (կեղծիք). Ազգապ. 2954։

— 173. Սահակ Ահագին (այսպես կոչված իր ձայնի ուժգնության համար). Կեղեցի (Քղեցի)էր. աշակերտ Յովհաննէս Կոլոտի. եղավ առաջնորդ Զմիւռնիայի։ Աղեքսանդր Բ կաթողիկոսի մահից հետո ընտրվեց կաթողիկոս Հայոց («1756 թ»). Մնաց Պոլսում մինչև «1757» թվի վերջերը. ապա մեկնեց Պոլսից և շատ դանդաղ ճամբորդելով՝ հասավ Կարին «1758 թ», ուր մնաց 1 և կես տարի։ Վերջապես տեսնելով որ աթոռ գնալու միտք չունի, ընտրությունը չեղյալ համարեցին և կաթողիկոս ընտրեցին Յակոբ Ե Շամախեցին «1759 թ»։ Ցուցակների մեջ մտած է Սահակ Ե. Կեղեցի անունով. իր անունը հիշվում է տպագիր գրքերի հիշատակարաններում 1756, 1759 և 1760 թվերին (տես REA 6, էջ 86, 137 և 112)։ Նաև 1758 թ. մի ձեռագրի հիշատակարանում, ուր իբրև ժամանակակից գրվում է Թէոդորոս (№ 48) պատրիարք Երուսաղէմի (Թորոս աղբ. Բ. 378)։ Սակայն Ազգապ. 2990 չի մտցնում կաթողիկոսների շարքը, որովհետև օծում անգամ չի ընդունած։—Մեռել է 1763 թ։

— 174. Սահակ Մսըր Կարնեցի. նոր վկայ. 21 տարեկան երիտասարդ էր. անառակ մոր ամբաստանությամբ դատի արվեց և հավատքը չուրանալով նահատակվեց «1778 թ»։ Յովհաննէս (№ 1383) վարժապետ Կարնեցի տաղասացը գրեց նրա նահատակության ստանավոր պատմությունը, որ տպված է Նոր վկ. 572—602 (Ազգապ. 3619)։

— 175. Սահակ ճարտարապետ, որի ձեռքով Սիմէոն կաթողիկոսը («1763—80 թ») նորոգեց Էջմիածնի տաճարը։— Յաճախ. էջ 20։

— 176. Սահակ դպիր Վանեցի. տաղասաց. ունի «Տաղ Յարութիւն մանկան» (նահատակված 1806 թ). հրատ. Նոր վկ. էջ 629—630. Նրա մյուս տաղերը տես Տաշեան, Ցուց. 1147ա։

— 177. Սահակ դպիր Կարնեցի, տաղասաց ԺԸ դարու. իր տաղերից տես Տաշեան, Ցուց. 1146 գ։

— 178. Սահակ Խապայեան, կաթուղիկոս Կիլիկիոյ. ծնվել է Խարբերդի Եղեգիս գյուղում 1849 թ. սովորեց Երուսաղէմի Ժառանգավորաց դպրոցում. ուսուցիչ, խմբագիր և հեղինակ՝ ընտրվեց գահակալ Սսի աթոռի, որ Մկրտիչ կաթուղիկոսից հետո, ութ տարի ամբողջ թափուր էր մնացել Սուլթան Համիդի չարակամության պատճառով։ Ընտրությունը տեղի ունեցավ 1902 թ. իսկ օծումը տեղի ունեցավ 1903 թվին, 20,000 ուխտավորների ներկայությամբ։ Տեսավ Կիլիկիայի դառն օրերը և տարագիր հայության հետ տարագրվեց ինքն էլ։ Պատերազմի տարիներին աքսորվեց Երուսաղէմ. զինադադարից հետո դարձավ Սիս, բայց շուտով, Կիլիկիոյ պարպման ժամանակ գաղթեց Սիրիա, իբր կաթողիկոս Սիրիա ապաստանող 150,000 տարագիր հայության։ —Ազգապ. 5139։

* ՍԱՀԱԿԱԴՈՒԽՏ, իգ.<նախորդ Սահակ անունից, որ երբայական ծագում ունի+պրս. [illegible] duxt «դուստր» բառից։

— 1. Սահակդուխտ (վրաց. Սագդուխտ) «պարթև կին ի Փարտաւայ». Վրաց Աբբակ թագավորի կինն է և մայր Վախտանգ Գուրգասարի.—Վրդ. ծ. Վրաց աղբ. Ա. 196։

— 2. Սահակադուխտ քույր Ստեփաննոս Սիւնեցու († «735 թ»). ճգնում էր Գառնիի ձորակում մի այրի մեջ։ Երաժշտագետ էր և վարագույրի ետևը նստած՝ ուսուցանում էր։ Հորինել է կցուրդներ և մեղեդիներ, որոնցից մեկը «Սրբուհի Մարիամ, տափոր ոսկի» հոդում է իր անունը—Օրբ. լ. Այրիվ. 18բ. Զարբ. Հին դպր. 789. Յուշիկք Ա. 290—292։

— 3. Սահակադուխտ կամ Սանդուխտ, քույր Բուրդ իշխանի, կին Սարգիս Մեծ († 1187) իշխանի Երկայնաբազուկ-Զաքարեան (Շիրակ 175), մայր Զաքարէ և Իւանէ եղբայրների (Խաղբակեանք 14)։ Սրանից ունինք անթվական մի արձանագրություն՝ Անի քաղաքի հարավային ծայրը, քարափի մոտ, ավերակ մի մատուռի վրա (Ղըզ-ղալա) և հետևյալն է. «Սուրբ Մեղաքաւիչ պատարագ, որ ի սմա կատարի, Սահակադխտոյ է, ծնողի Զաքարիայի և Յիւանէ թագաւորաց Հայոց» (Շիրակ 58; Հայապ. 447)։

† *ՍԱՀԱԿԱՆՈՅՇ*, *իգ.* < *նախորդ* Սահակ *անունից* + անոյշ *բառից, որ ծառայում է իբր իգ. մասնիկ։*

— Սահականոյշ, *դուստր Սահակ Պարթև հայրապետի. ծնվել է «371 թ» և ամուսնացել Համազասպ Մամիկոնեանի հետ.— Խոր. Գ. ծա. Վկ. շուշ. 50. Մեսր. եր. 123.—սեռ.* Սահականուշայ՝ *Վկ. շուշ. 10, 11.—կոչված է նաև* Անուշ, Շուշան *(Բ. վրդ. Կիւլէսէրեան, Եղիշէ 359)։*

* *ՍԱՀԱԿԻԱ*, *իգ.* < *վերի* Սահակ *անունից՝ հունական իգական* -իա *մասնիկով (անսովոր երևույթ հայերենում)։*

— Սահակիա *իշխանուհի Սիւնեաց, հրավիրեց Մուշէ («526—534 թ») կաթուղիկոսին, օրհնելի ընտրի Սիւնեաց համար մի առաջնորդ։ Որովհետև ասվում է թե այս ժամանակ ամուսինը մեռած էր, ուստի պետք է լինի Վասամ Սիւնիի կինը։—Օրբ. ԺԹ։*

* *ՍԱՀԱՐ*, *իգ.* < *արաբ.* سحر saḥar *«արևածագ» բառից. գործածական է այժմ էլ Ղարաբաղում՝* Սհար *ձևով (տես Արցախ 217)։ Հմմտ. նաև հաջորդ անունները։*

* *ՍԱՀԱՐԲԷԿ*, *ար.* < *արաբ.* Սահար + *թրք.* beg *բառերից։ Մի անգամ ունինք հիշատակված ԺԵ դարում՝*

— Սահարպէկ, *որդի պարոն Կոստանդի, որ Եւդոկիայում Անդրէաս երեցին գրել տվեց մի Աւետարան 1463 թ.—Ձեռ. Յեր.=ՀԱ 1925, 133։*

* *ՍԱՀԱՐԳՈՒԼ*, < *արաբ.* saḥar *«արևածագ»* + *պրս.* گل gul *«վարդ» բառերից, իբր «վարդ առաւօտու»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Թրքական* Սեհէրկիւլ *ձևով (և ար!) 1754 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1900)։*

* *ՍԱՀԱՐՄԵԼԷՔ*, *իգ.* < *արաբ.* saḥar *«արևածագ»* + ملك melek *«հրեշտակ» բառերից, իբրև «հրեշտակ առաւօտու»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված* Սհարմելիք *ձևով, 1590 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 720)։*

* *ՍԱՀԱՐՆԱԶ*, *իգ.* < *արաբ.* سحر saḥar *«արևածագ»* + *պրս.* ناز nāz *«նազ, նազանք» բառերից, իբր «նա որ նազում է այգ առաւօտուն»։ Հիշված է ԺԹ դարի սկզբից (Րաֆֆի, Խամսայի մել. 201) և այժմ էլ գործածական է Ղարաբաղում։*

* *ՍԱՀԻԲ*, *ար. և իգ. գրված է թե՛* Սահիբ *և թե մանավանդ* Սայիբ *ձևով. սրանք կարող են գրչագրական տարբերություն լինել. բայց արաբերենում էլ կան թե՛* صاحب ṣāḥib *«տեր, ընկեր» և թե* صائب ṣāib *«ճիշտ, ուղիղ, արդարամիտ» բառերը, որոնցից առաջինը ավելի հարմար է թերևս արականին, երկրորդը իգա-*

կանին։ Իբրև ազգանուն այժմ կա Տփղիսում Սայիբեան, որ հաստատում է երկրորդ ձևը. բայց ի՛նչ երաշխիք ունինք թե սա էլ Սահիբեան ձևի տարբերակը չէ։ Այս անորոշ դրության մեջ կրկին ձևերն էլ դնում ենք միասին։ Սահիբ անվան օտար գործածության օրինակ է «Սահիպն գՊոշաքն (№ 2) էառ ԶԺԸ (=1269) թվին» Օրբ. Ժմ. 27։

— 1. Սահիբ, ար. հիշված է 1486 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 11 բ)։

— 2. Սայիպ, ար. հիշված անթվական մի հիշատակարանում (անդ, էջ 31 բ)։

— 3. Սայիպ իգ? հիշված է 1421 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 113 ա)։

— 4. Սայիփ իգ. հիշված է 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան. 5 ա)։

* **ՍԱՀԻԲԽԱՆ**, իգ. ըստ նախորդի կարող է լինել և Սայիպխան, ինչպես գրված է 1597 թ. (Ձեռ. Սևան. 11 ա)։

* **ՍԱՀԻԲ-ՍՈՒԼԹԱՆ**, իգ. ըստ նախորդի կարող է լինել Սայիբ ձևից. ավանդված է Սայիպ-Սուլթան 1585 թ. (Սմբատեանց, Գեղարքունիք 49), Սայիպ-Սօլթան 1641 թ. (Bodleian 212)։

* **ՍԱՀԼ**, ար. <արաբ. سهل Sahl անունից. հիշված է Շահն. հտ. 4, էջ 564. բուն նշանակում է «երեսի միջը մի քիչ նիհար մարդ» (նշան է գեղեցկության). Կամուս Գ. 251 ասում է թե այս անունով 120 սահաբ ու մուհադդիս կա։

— 1. Սահղ ի Սմբատեան, Աղուանից Եռանշահիկ տոհմից. հաղթեց տաճիկներին, որոնք Ամարասը կողոպտել և Շիկաքար էին ամրացել (821 թ)։—Կղկնտ. Գ. ի (հրատ. Շահն. ունի Սահկի Սմբատեան)։—Ծանոթ. Սահղ ձևը հնագույն է. ըստ որում հնագույն հայերենում բառավերջի լ հնչումը բաղաձայնից հետո դառնում է ղ. օր. պատղ, անգղ, չիգղ, չինգղ, արկղ, ոստղ, կոճղ, Պռոկղ, Հերակղ (ավելի ուշ Հերակլ)։

— 2. Սահլ, որդի Սմբատ Խոստովանողի, եղբայր Աշոտ Ա-ի. հաղթեց և բռնեց Բաբան պարսիկին, որ մի նշանավոր ապստամբ էր. տիրել էր Ատրպատականին, Հայաստանի մի մասին և հետո էլ Բաղդադին էր սպառնում։ Ամիրապետը նրա վրա ուղարկեց Հայդար-բին-Քաուս Աֆշին Թուրք զորավարին, որ Սմբատ սպարապետի հետ միասին տարիներով կռիվ մղեց նրա դեմ։ Սահլ իր քաջության փոխարեն մեծ պարգևներ ստացավ. իսկ Բաբանը իր եղբոր և 3300 գերիների հետ Բաղդադ

տարվելով՝ կախաղան բարձրացվեց։ Արաբները Սահլին կոչում են Սահալ-բին—Սամբատ («837 թ»).—Վրդ. խր. Աղգալ. 928։ (Սրա միջոցով էլ ստուգվում է Բուղայի գերի տարած նախարարներից մեկի անունը, որ Արծր. Գ. ժա աղավաղվելով դարձել է «Մահլ որդի Սմբատայ տէր Շաքէոյ, որ զբարանն (հասարակ անուն) կալաւ»։ Պետք է ուղղել «Սահլ որդի Սմբատայ տէր Շաքէոյ, որ զԲարան (անձնանուն) կալաւ», որով սա ևս կնույնանայ նախորդի հետ)։ Արաբերեն կոչվում է նաև Սահլ-իբն-Շաբիտ (Տոմաշէկ, Սասուն՝ էջ 26). հիշում է նրան նաև Բելաձորի (տես Խալաթ. Արար. մատ. 64), Տաբարի (անդ, էջ 95—96), Եակուբի (անդ, էջ 119, 120)։ Ոմանք այս Սահլին՝ Սմբատ Խոստովանողի որդի Սահլից տարբեր անձ են համարում (այսպես Ալիշան՝ Յուշիկք Ա. 438)։ Այս Սահլի մասին խոսում է նաև Միխ. աս. (Ա տպ. 374, Բ տպ. 364) հետևյալ ձևով. «Բուրտասնները մի առանձին ազգ են։ Նրանց մեջ կար մի հին ավանդություն, թե մի օր պիտի հայտնվի Մահադի անուն մեկը, որ պիտի տիրի ամբողջ աշխարհին։ Ով որ հավատա նրան,- մահվանից 40 օր հետո հարություն պիտի առնի և մի ժամանակ էլ ապրելով՝ անմահական աշխարհը պիտի փոխադրվի։ Ոմանք նրան աստված էին համարում, ոմանք երկնային մի զորություն, ուրիշներ էլ՝ թագավոր, և նրան էին սպասում։ Այդ ժամանակներում երևաց այդ անունով մեկը, որ հայտնեց թե ինքը խոստացված Մահադին է։ Հավատացին նրան և հավաքվեցին նրա շուրջը։ Թագ դրեց գլխին, քող գցեց երեսին, եկավ Հայաստան, և իր բնակությունը Արարատեան լեռներում հաստատեց։ Այստեղից արշավում էր զանազան կողմեր և բոլոր ազգերին կոտորում։ Անցավ Ճզիրէի սահմանը և սկսեց ավերել։ Արաբների Հասան զորավարը արշավեց նրա վրա, Մահադին թագն ու քողը գցեց, փախավ եկավ Հայաստան և պաշարեց Սահակի (=Սահլի) բերդը։ Սահլը կոտորեց Բուրտասններին և Մահադին բռնելով՝ գլուխը կտրեց»։

— 3. Սահլ ի Տոհակայ, տեր Սիւնեաց, հայր Ատրներսեհի (Թ դար).—սեռ. Սահլի՝ Կղկնտ. Գ. իգ։ (Ըստ Բարխուտ. Պատմ. Աղուանից, Ա. 136 այս Սահլը նույն է նախորդի հետ, որ է որդի Սմբատի։ Սահլի եղբայրը (կամ որդին) է Յովհաննէս (№ 80) Եռանշահիկ, իսկ Սահլի որդին է Ատրներսեհ (№ 11)։

**ՍԱՀԿԱՒՆ**, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ ունինք՝

— Սահկաւն Ընտրունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդէմ Բուղայի (Թ դար).—Արծր. Գ. դ։

* ՍԱՀՄԱԴԻՆ, տր. <արաբ. سهم الدين sahm-ad-dīn անունից, որ բուն նշանակում է «եղջիւր կրօնի», sahm անունով անձինք տես Կամուս, Գ. 478։

— 1. Սահմադին կամ Սէնօպ Սաճմադին, որդի Աւետիքի, կինն է Ուրաուրխաթ կամ Ոսուրաս (երկուսի էլ ծագումն անյայտ), որդիքն են Ամիրբէկ և Հազարբէկ, թոռն է Բէկսուլթայ, կոչված է պարոն և պատրոն. Անիի քաղաքատեսուչն էր. գնեց Մրէնը՝ Շահնշահի որդի Արտաշրից՝ 1261 թ. (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 14), Սահիպ-Դիւանի և Բարիմադինի հետ վերացրել է տուրքերը քաղաքների վրայից Անիում 1263 թ. (Արձ. Շիրակ 62), ազատել է Մրէնը, Արջոյառիճը և Օշականը զանազան հարկերից՝ 1273 թ. (Շիրակ 139, 140). Սամտին անուն մէկը գնել ու շինել է նրա համար դարպաս և այգի 1276 թ. (Յովսէփեան, անդ), շնորհել է նաև Օշականի այգու, հացի, բամբակի են հարկերը 1286—88 թվերին (Արձ. Այրարատ 189—190 և Զքր. պատմ. Գ. 27, 78—79)։

— 2. Սահմադին, հող հատկացրեց Աբրահամ քահանային Բաջրեբունեաց (Արճէշ) Յարութիւն գյուղում (Մեծոփի մոտ) և նա շինեց Ս. Աստուածածին և Ս. Յարութիւն եկեղեցիները 1291 թ.—Սարգսեան, Տեղագր. 268։

— 3. Սահմադին ոմն, հիշված է Վարագայ վանքում գրված մի Ճառընտրի հիշատակարանում, 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429։

— 4. Սահմադին, որդի Ամիր—Գուրգէն իշխանի Աղթամարայ և եղբայր Զաքարիա կաթուղիկոսի Աղթամարայ. տարաժամ վախճանվեց (ԺԴ դար).—սեռ. Սահմադնի.—գրծ. Ամիր—Սահմադնիւ՝ Արծր. յաւել։

— 5. Սահմադին, հայր Յովհաննէս վարդապետի, որ Խլաթում գրել տվեց մի Աստուածաշունչ՝ 1418—1422 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 114։

† ՍԱՀՄԻ, տր. <սարքված է հայկական տոմարի սահմի ամսանունից, իբր թե Հայկ նահապետի որդիներից մեկն էր.—Տաթև. ձմ. ա. և հրց. 200։

ՍԱՀՆ, տր. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ծանոթ է ԺԴ դարից՝

— Սահն պարոն, հայր Յովհաննէս (Սեբաստացի) արքեպիսկոպոսի Խրիմու 1362—1380 թ.—Manus. bibl. nat. էջ 62։

*ՍԱՀՈՒՌ*, *տր. ծագումն ինձ անհայտ: Հիշված է միայն Է դարում՝*

— Սահուռ *Անձևացի, դավաճանությամբ Տիրան Մամիկոնեանի բանակից անցավ Արաբների կողմը. բայց ինքն էլ Տիրանի ձեռքով մահ գտավ «639 թ».—Մամիկ. էջ 58.—սեռ.* Սահուռայ՝ *անգ:*

Սահրատ *տես* Սարհատ:

*ՍԱՀՐԱՓ, տր. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1693 թ. (Ջամբռ 1693 թ), եթե սակայն վերջի տառը վրիպակ չէ, փոխանակ* Սահրատ:

*ՍԱՂԱ, սեռն անհայտ, ինչպես և ծագումը. մի անգամ գտնում եմ հիշատակված 1609 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 473):*

* *ՍԱՂԱԹԻԷԼ, տր. <եբր.* שׁאלתיאל Šalətīēl *անվան հուն.* Σαλαθιήλ *տառադարձությունից. ծագում է եբր.* שׁאל šal *(=արաբ.* سؤال suvāl*) «հարցնել, խնդրել, աղերսել» արմատից և նշանակում է բուն «հարց կամ աղերս առ Աստված կամ աղաչեցի զԱստուած». հմմտ. նաև ասուր.* Šalti-ilu *(*Gesenius *798): Այս անունով հայտնի է Զորաբաբէլի հայրը (Ա. Մն. գ. 17, Եզր. գ. 2, 8), որ մի նշանավոր դեմք չէ Հրէից պատմության մեջ: Կա նաև «Եզր (մարգարէ), որ Սաղաթիէլ կոչեցաւ» (Տաշեան, Ցուց. 79 ա): Գործածական է այժմ էլ (կրճատ ձեր* Սաղաթէլ*), որից և Սաղաթիէլեան ազգանունը, որ հիշված է նույն իսկ Եզր Դ. 8: Փաղաքշական ձեն է Պլ.* Սահաթիկ:

— 1. Սաղաթիէլ *որդի Սադմոսի քահանայի. հիշված է Ֆեատաշէնի Աւետարանում 1325—83 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44, 61:*

— 2. Սաղաթիէլ *աբեղա, գրիչ. Վարագայ վանքում օրինակեց Աստուածաշունչը՝ 1421 թ.—Ձեռ. Կարին. 13> Նոտարք 64:*

— 3. Սաղաթէլ, *հայր պարոն Մկրտիչ տանուտերի, որ ըստացավ մի ճառընտիր—Տօնական 1428 թ.—Տաշեան, Ցուց. էջ 583—4:*

— Սաղաթիէլ *հիշված է նաև 1577 թ. (Ձեռ. Վասպ. 686, նույնը էջ 688 սխալ գրված* Սաղաւաթիէլ*):*

*ՍԱՂԱՄՈՒԹ, տր. ծագումն ինձ անհայտ:*

— Սաղամութ *տէր Անձևայ, որին Տիրան Բ կարգեց Զօրա Ռշտունու փոխարեն: Ապստամբեց Արշակ Բ-ի դեմ և քաշվեց Հոնաց կողմը.*—Սաղամութ՝ *Խոր. Գ. ժե.*—Սաղամուտ՝ *Բուզ. Դ. ծ:*

* *ՍԱՂԴԱԴԻՆ, տր. <արաբ.* سعد الدين saʿad-ad-dīn *անունից, որ*

նշանակում է բուն «երջանկություն կրոնի»։ Կազմությունը տես հաջորդ Սաղդաք բառի տակ։

— 1. Սաղդադին (նաև սեռ. Սաղդադենին), որդի Թաղազարի և եղբայր Թուրվանդա խաթունի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Ավետարան 1448 թ.—Ձեռ. Վասպ. 402, 404։

* ՍԱՂԴԱԹ, ար? և իգ.> արաբ. سعادت saʿādat «երջանկություն» բառից, ուր ՚ է կոկորդականը ավելի թանձրանալով դարձել է հյ. դ. այսպես նաև Սաղդադին. նույնի անկմամբ ունենք սակայն նաև Սաղդաք, որ տես։

— 1. Սաղդուք (սեռն անհայտ. ու ձայնը կարծում եմ վրիպակ է), զավակ Մուրադի, որ իր Խուանդ խաթուն կնոջ հետ գրել տվեց մի Ավետարան՝ Աղթամար 1355 թ.—Ձեռ. Վասպ. 203։

— 2. Սաղդաք, ար. մերձավոր Ստեփաննոս կրոնավորի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան 1421 թ.—Ձեռ. Վասպ. 341։

— 3. Սաղդաք խաթուն, դուստր Թաղազարի և քույր Թուրվանդա խաթունի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Ավետարան 1448 թ.—Ձեռ. Վասպ. 402, 404։ Համեմ. Սաղդադին № 1։

— 4. Սաղդաք, կին Կարապետ քահանայի և մայր Ազարիա երեց գրչի, որ Վանում օրինակեց մի Ավետարան 1484 թ.—Ձեռ. Վասպ. 497։

— 5. Սաղդաք, եղբայր կամ քրոջ դուստր Աստմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան 1498 թ.—Ձեռ. Վասպ. 527 (տես և Հաբիբ № 4)։

— Սաղդաք հիշատակված է նաև իգ. 1606 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 84), անթվ. իգ. (Ձեռ. Վասպ. 416)։

* ՍԱՂԴԱԹՄԵԼԻՔ, իգ. <արաբ. سعادت saʿadat «երջանկություն»+ ملك melik «թագավոր» բառերից, այն է «թագավորի երջանկությունը»։ Հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Սաղդամելիք (միջին թ ընկած), զավակ Ստեփաննոս քահանայի, որ մի հին Ավետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.—Manus. brit. mus. 8 բ։

— 2. Սաղդաքմելիք, կին Աստվածատուրի. ծնողներն են Մլքան խաթունի՝ կնոջ Ամիրդոլի, որ Խլաթում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ճաշոց, 1450 թ.—Նոտարք 164։

* ՍԱՂԻ, ար. տես և Սաղկի։

— Սաղի, ար. (կա միայն սեռ. Սաղին). հիշված է 1691 թվ (Սմբատեանց՝ Գեղարքունի 541). սրանից է Սաղեան ազգանունը։

* ՍԱՂԿԻ, իգ. <արաբ. ساقي sāqī «մատռուակ» բառից,— ար.

ձեռ նույն է և Սաղի (տես նախորդը)։ Հիշված է մեկ անգամ 1565 թ. «կողակցին Սաղկին» ձևով (Ձեռ. Մաղն. էջ 26). Հրատարակիչը՝ Տ. վրդ. Պալեան, էջ 39, ըստ օրինի սեռական անունով, ուղղականը դնում է Սաղիկ։ Բայց որովհետև այսպիսի բառ գոյություն չունի, լավագույն համարեցի դնել վերի ձևով։

†*ՍԱՂՄՈՍԻԿ*, *ար. <հյ.* սաղմոս *բառից. հիշատակելի է նաև* Սաղմոսավանքը։ *Գտնում եմ գործածված մի անգամ ԺԴ դարում։*

— Սաղմոսիկ *քահանա, հիշված է Գետաշէնի Ավետարանում, 1325—83 թ։—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 44, 61։*

*ՍԱՂՈՒՄ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1608 թ.*—Manus. brit. mus. *43 բ (համարում է* Սողոմէ *անունը, որ տես առանձին)։*

**ՍԱՄ*, *ար. <իրան.* Sām *անունից. համմ. պրս.* سام Sām՝ *Բաջն Ռուսթամի պապը, նաև մի լեռան անուն Մավարայի-Նահր գավառում,* Sām *որդի Նարիմանի, զորավար Պարսից (Շահն. հտ. 1, էջ 128),* Sām *որդի Ֆարամուրզի, թոռն Ռուսթամի,* Sām *որդի Իսմայիլի Սէֆեան, եղբայր Շահ Թահմասպի՝ †1576 թ. են (այլ է արար.* Sām, *որ է Ս. Գրոց* Սեմ).—Justi *280—281. պրս. ձևը ծագում է զնդ.* Sāma *անունից, որ բուն նշանակում է «սև»* (Bartholomae *1571)։ Արդի պրս.* sām *նշանակում է «ծիածան, հուր» և այլ բառ է։ Իբր օրինակ անձնանվան հիշված է ըց.* ի Սամայ *ձևով՝ Դաւ. քեր. 105, Անան. քեր. 140, հայրանուն* Սամեան՝ *Դաւ. քեր. 105, Անան. քեր. 140։*

— 1. Σάμης, *հայր Արշամի և մեծ հայր Արդիսարի, արքայ Հայոց Ծոփաց, ժամանակակից Անտիոքոս* Hierax-*ի* (Justi *281 ա). համարվում է հիմնադիր* Սամոսատ *քաղաքի՝ Ն. Ք. 130 թ. (Դուրեան, Ազգ. պատ. էջ 49)։*

— 2. Սամ *եղբայր Բաբիկ Սիւնու, որ ընկերն էր Արշակ Գ թագավորի, որ գահակալեց «379 թ».—Բուզ. Ե. խը։*

— 3. Սամ *Գնթունի, սենեկապետ Բաբիկ Սիւնու, որ Անդովկ Սիւնու որդին էր. Բաբիկի մահից հետո Պարսից Վռամ թագավորը կարգեց նրան տեր Սիւնեաց, բայց մի տարուց մալխխինդով սպանվեց (399 թ. ըստ հաշվի Բ. վ. Կիւլէսէրեանի՝ Եղիշէ, էջ 255).—Օրբ. ժբ, ժգ։*

*ՍԱՄԱԳԱԼ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշված է Թանատի վանքի անթվ. մի արձանագրության մեջ (Սիսական 123)։*

**ՍԱՄԱՆԳՈՒԼ, իգ.-(բառս վերջին տասը ենթադրաբար*

դրեցի. որով կարելի է դնել պրս. yāsaman+gul բառերից, իբր թե «եղրևանու ծաղիկ»). մի անգամ հիշված եմ գտնում 1614 թ. (Ձեռ. Թուր. 120 բ)։ Սրա հետ հմմտ. Սամանգուլ, որ գուցե և միևնույն բառն է։

ՍԱՄԱՐ, իգ. ծագումը ինձ անհայտ. (արդյոք արաբ. سمر samar «պտուղ» իմաստն է, որի հետ նույն է նաև հաջորդ անունը)։ Մի անգամ հիշված եմ գտնում 1667 թ. (Ձեռ. Վասպ. 930)։

ՍԱՄԱՐԽԱՆ, իգ. (կազմված է նախորդ անունից+պրս. xān). մի անգամ հիշված եմ գտնում 1658 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 13—14)։

†ՍԱՄԵՀԱՆ, տր. <հյ. սամի+հան բառերից, իբր «սամի հանող», որ ավելի մականուն է թվում, քան անուն։ Մի անգամ գտնում ենք՝

— Սամէհան աբեղա, ճարտարապետ. շինել է Անիի մոտ, Խարկովից քիչ հեռու գտնված Կարմիր վանքը 985 թ.—Արձ. Շիրակ 169, Թորամանյան՝ Հյ. ճարտպ. Ա. 180 բ։

*ՍԱՄԷՆ, տր. (Սամ անվան գգվականն է՝ կազմված -էն մասնիկով. ինչպես ունինք Արշէն, Արտէն, Խորէն, Սուրէն, Վազգէն, Գուրգէն, Զաւէն են) և ըստ այսմ նշանակում է «սևուկ». իբր անձնանվան օրինակ հիշում է Թր. քեր. 14։

ՍԱՄՈՏ, տր. (թվում է հյ. սամետ, սամետէ, սամետի, որ և սամօտիք բառից. հմմտ. Սամեհան)։ Մի անգամ ունինք՝

— Սամոտ վաներեց Բագարանի (608 թ).—Գիրք թղ. ի.— նույն անձը կոչված է Սամաս՝ Ուխտ. Բ. լէ (տա=սա սխալագրությամբ. իսկ Ազգապ. 618 գրում է Մամաս)։

ՍԱՄՈՐ, տր. անստույգ անուն, որ գտնում եմ մի անգամ հիշատակված 1331 թվի մի տապանագրում՝ Գանձակի Գարդմանիկ գյուղում. «Այս է տապան սուրբ Սրապիոնի թոռն մեծին Սամարին մեծին Սատին. թվ. ՉՁ».—Արցախ 302, Ազգագր. հանդ. Ե, էջ 312։

*ՍԱՄՈՒԲԵՅ, տր. <արաբ. سامی sāmī «բարձր» բառից, որից կազմված սովորական անուն է այժմ թուրքերի մոտ Sami bey։ Մի անգամ հիշված է՝

— Սամուպէ, հայր Խութլուպէի, որի գերեզմանի հիշատակին մի արձանագրություն կա Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցում 1451 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 36։

*ՍԱՄՈՒԷԼ, տր. <եբր. שמואל Šəmūēl անվան հուն. Σαμουήλ տառադարձությունից. ավելի ընդարձակ տես Շմուէլ,

որ այժմ խափանված է. բայց կենդանի է Սամուէլ, որ հնչվում է Պլ. Սամուէլ (Samuel), գավառ. Սամվէլ (Samvel). կրճատ ձևն է Պլ. Սամիկ:—Հիւբշ. 335։ Բուն իմաստն է «Աստուած լսեց»։

— 1. Սամուէլ իշխան Սանատրուկ թագավորի. տեսնելով Սանդուխտ արքայադստեր նահատակութիւնը՝ հավատաց քրիստոնեութեան և ինքն էլ նահատակվեց (48 թ. ըստ Չամչ. Ա. 297).—Յայսմ. դեկտ. 23. Վկ. թադ. 38. Պատմ. թադ. 68.—Զարբ. թրգմ. 17.—սեռ. Սամուէլի՝ Գիւտ նշ. թադ. 86։

— 2. Սամուէլ Մամիկոնեան, մեծ Արշակ Գ-ի. սպանեց իր հայր Վահանին (370 թ) և իր մայր Տաճատուհուն (ըստ Խորենացու՝ այսպես, իսկ ըստ Բուզանդի՝ ուղղագույն խորթ մայր Որմիզդուխտին), որովհետև գործակցելով Մերուժանին, ուրացել էին քրիստոնեութիւնը և դավաճան էին ազգին, ու փախավ Հունաց Արկադիոս կայսեր մոտ.—Բուզ. Դ. ծթ. Ե. խզ. Արծր. Ա. ժ, ժա.—Սամէլ՝ Խոր. Գ. խե.—սեռ. Սամուէլայ՝ Բուզ. Ե. խզ.— Սամուէլի՝ Բուզ. Ե. խզ. Արծր. Ա. ժ.—Սամէլի՝ Խոր. Գ. խե, խը։

— 3. Սամուէլ քահանա Այրարատի Արած գյուղից. Արտաշատում մի ատրուշան կործանած լինելով՝ Վասակի ձեռքով բանտվեց և Վարդանանց պատերազմից հետո Պարսկաստան քշվելով՝ Աբրահամ սարկավագի հետ նահատակվեց Խորասանում, Վաղդեսս կամ Վարդգէս կոչված տեղում («454 յուլ. 7»).—Փարպ. խր, խգ, խէ, խը. Եղիշ. 101, 111, 139. Վրդ. իէ. Յայսմ. յուլ. 31. Սիմ. ապար. 48.—սեռ. Սամուէլի՝ Փարպ. խգ, խը։

— 4. Սամուէլ եպիսկոպոս Բասենի (496—500 թ. ըստ Այրարատ 43), անդամ Դուինի եկեղեցական ժողովի «506 թ».—Ազգապ. 503.—բց. ի Սամուէլէ՝ Գիրք թղ. ը։

— 5. Սամուէլ եպիսկոպոս Բզնունեաց, ժամանակակից Բաբգէն կաթողիկոսի, անդամ Դուինի եկեղեցական ժողովի «506 թ».—բց. ի Սամուէլէ՝ Գիրք թղ. ը.—Ազգապ. 518 նույն է դնում՝

— 6. Սամուէլ Արծկեցի, կաթողիկոս հայոց «516—526 թ» հաջորդեց Բաբգէնին. գրել է Թուղթ հաւատոյ, որ հիշում է միայն Ձեռ. Վենետ. Բ. 862.—Եզն. եր. 268. Բննդ. 271. Յհ. կթղ. ժգ. Յհ. կթղ. հյր. 274. Ասող. Բ. բ. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 20. Սամ. անեց. 72. Կիր. 21. Վրդ. լ. Օրբ. հա.—Սամոել՝ Վրաց. պատ. Ա. 38.—սեռ. Սամուէլի՝ Կիր. 22. Յայսմ. նոյ. 18։

— 7. Սամուէլ ոմն հայ, հավատքի համար նահատակվել է

Պարսկաստանում, 552 թ.—Չամչ. Բ. 258, որի աղբյուրն է անշուշտ Սամ. անեց. 75 (թիվը դնում է 554՝ տարբեր հաշվով)։

— 8. Սամուէլ Վահեւունի, իր հինգ ընկերների հետ միասին ապստամբվեց Պարսից Խոսրով Բ (590—628 թ) թագավորի դեմ, բայց հետո բաժանվելով անցավ Յունահայաստան. այստեղ էլ Հույնաց դեմ ապստամբվելով սպանվեց.—Սեբ. ժգ, ժե։

— 9. Սամէղ յԱրղուաւագգան, պարապետ, անդամ Դուինի եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք. թղ. ժէ։

— 10. Սամուէղ՝ ի Մամական իշխան, անդամ Դուինի երկրորդ եկեղեցական ժողովի «554 թ».—Գիրք թղ. ժէ։

— 11. Սամուէլ եպիսկոպոս, 9-րդ առաջնորդ Ցուրտաւի, հաջորդեց Ստեփանոս Ա-ին՝ շուրջ 560 թ.—Ուխտ. Բ. խը.—Սամուիէլ՝ Գիրք թղ. ծա։

— 12. Սամուէլ վանից Ս. Հռիփսիմէի «607 թ»,—Ուխտ. Բ. լէ.—Սամուիէլ՝ Գիրք թղ. խ։

— 13. Սամէղ, քաղկեդոնական կրոնավոր, Աւան գյուղում Եզր կաթողիկոսի անունով քանդակել է մի արձանագրություն շուրջ 633 թ.—Ղաֆադարյան, Աւանի երկլեզվ. ծծկ. արձ. Երևան 1945, էջ 12, 26։

— 14. Սամուէլ եպիսկոպոս Մեհնունեաց. անդամ Դուինի եկեղեցական ժողովի «645 թ».—Տաշեան, Ցուց. 654, Կանոն. 130, Չամչ. Բ. 345։

— 15. Սամուէլ հայրապետ. անշուշտ Տարօնի առաջնորդն էր է դարում. որովհետև Ցովհ. Մամիկոնեանը մեկ ասում է թե իր Պատմությունը գրել է Ներսէս Շինողի («641—661 թ») օրով, մեկ էլ ասում է Սամուէլ հայրապետի օրով (չի կարելի դնել Սամուէլ Արծկեցի կաթողիկոսը, որովհետև սա գահակալել է «516—526 թ»).—սեռ. Սամուէլի՝ Մամիկ. 60։

— 16. Սամուէլ քահանա, գործակցեց Կիրակոս ճգնավորին՝ գտնելու Թադէոս առաքյալի և Սանդուխտ կույսի մասունքները (723 թ).—Ցայսմ. մայ. 30. Գիւտ նշ. թադ. 92։—Հավանաբար սա է նաև «Թադէոսի և Սանդխտոյ վկայաբանութեան» թարգմանիչը (իմա հեղինակը)՝ Սամուէլ եպիսկոպոս (Վկ. թադ. 58), որ Տաշեան, Ցուց. 1042 բ ԺԲ դարից «շատ աւելի հին» ժամանակ է դնում։ Հայապ. 21 դնում է Զ դար և համարում է Սամուէլ կաթողիկոս՝ հաջորդ Բաբկէնի։ Այս խնդրի մասին ընդարձակ խոսում է Հացունի, Կարևոր խնդ. (Վենետիկ 1927), էջ 5—96, մանավանդ էջ 34 են, ուր սույն Սամուէլին համա-

*բում է Մեսրոպեան գարու թարգմանիչներից մինը:*—*Զարբ. Թրգմ. 14—17:*

— 17. Սամուէլ *Մամիկոնեան, եղբայր Շապուհի. Սմբատ սպարապետի աները. մասնակցեց Մուշեղ Մամիկոնեանի ապստամբութեան ընդդէմ Հասանի և նահատակվեց Բագրեւանդի ճակատամարտում «775 թ».—Ղև. լդ. Սամ. անեց. 89. Կիր. 40. Մխ. այրիվ. 67.—սեռ.* Սամուելի՝ *Վրդ. խա:*

— 18. Սամուէլ *քահանայ Արտամետցի. Ապուսահակի նահատակութիւնը պատմել է Թովմա Արծրունին «852 թ».—Արծր. Գ. բ:*

— 19. Սամուէլ *եպիսկոպոս Մեծկողմանց. ապօրինաբար Միքայէլ եպիսկոպոսից ձեռնադրվեց կաթողիկոս Աղուանից, իբրև հաջորդ Յովսէփ Բ-ի, բայց հետո գնաց Դուին և Գէորգ Բ կաթողիկոսից («877—897 թ») օրինական օծում ստացավ:—Կղկնտ. Գ. իբ, իգ. (չունի հրատ. Շահն). Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 385.—սեռ.* Սամուէլի՝ *Կղկնտ. Գ. իբ:*

— 20. Սամուէլ *երեց, դռան քահանայ Սեննեքերիմ իշխանի Աղուանից. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Ա Մոկացի («946—968 թ») կաթողիկոսը:—Անան. ապստ. 134 բ:*

— 21. Սամուէլ *եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Աշոտին և գահակալեց «997—1000 թ».—Օրբ. ծզ, հա:*

— 22. Սամուէլ *Կամրջաձորեցի. առաջնորդ ուխտին Կամրջաձորի (Արշարունիք). հաջորդեց Պօղիկարպոսին. նշանավոր երաժիշտ էր: Խաչիկ Ա Արշարունի («973—992 թ») կաթողիկոսի հրամանով գրեց «Թուղթ ի պատասխան Թէոդորոս մետրապոլիտի Մելիտինոյ» (այս թղթից մի հատված տես* REA *հտ. 2 (1922), էջ 248): Անշուշտ իրն է և «Թուղթ ընդդէմ երկաբնակաց, ի խնդրոյ իշխանի միոյ որ մականուն Ոսկեձեռն կոչիւր»* (REA *հտ. 2 (1922), էջ 248): Ունի դարձյալ Տօնապատճառ: Ըստ Ուռհ. և Սմբ. գնաց Պոլիս և Վասիլ կայսեր ներկայութեամբ (976—1025 թ) վիճեց ու հաղթեց Հունաց «1007 թվին» Ծառզատկի առթիվ: Ըստ Այրիվ. ունի և Գանձնամակ եպիսկոպոսաց:—Ասող. Գ. է. Լաստ. բ. Ուռհ. 39, 44. Սմբ. պատմ. 44. Այրիվ. 20 բ. Մխ. այրիվ. 72. Օրբ. զ.—սեռ.* Սամուէլի, Սամուելի՝ *Ուռհ. 44, 45, 244. Վրդ. կբ.* Սամուէլի՝ *Գիրք թղ. ձզ:—Զարբ. Հին դպր. 549, 569, 789. Այրարատ 548:*

— 23. Սամուէլ *Կոմսաձոր Դերջանցի. Վասիլ կայսրը*

(976—1025 թ) տարավ նրան Մակեդոնիա՝ կռվելու համար Բուլղարների դեմ։ Եղբորը հետ ապստամբելով կայսեր դեմ, անցավ Բուլղարների մոտ և նրանց թագավոր դառնալով՝ դիմադրեց Վասիլին։ Արշավեց Թրակիա, Մակեդոնիա, Թեսալիա և մինչև Պելոպոնէս հասավ։ Մի քանի պատերազմներից հետո, Հույները հազիվ 996 թվին կարողացան հաղթել նրան և առին Փիլիպպուպոլիսը։ 1014 թվին Սամուէլը չարաչար հաղթվեց և սրտի ցավից մեռավ։—Ասող. Գ. իբ, Դուրեան, Ազգ. պատմ. 368, Ջամչ. Բ. 873—6։

— 24. Սամուէլ եպիսկոպոս Եկեղեաց գավառի. ի վրեժ Թոնդրակեցւոց, որոնք կործանել էին Բագմաղբիւրի խաչը, քանդեց նրանց վանքը և նրանց վեց վարդապետներին աղվեսախարան դրոշմեց «1011 թ».—Լաստ. իգ.—ոսկ. Սամուէլի, բց. Սամուէլէ՝ անդ։

— 25. Սամուէղ քահանա, գրիչ. օրինակել է մի Աւետարան 1041 թ.—Խաղբակեանք 223։

— 26. Սամուէլ վարդապետ, հայր և առաջնորդ Խնատի վանքի (Սասուն). որան է գրել Գր. Մագիստրոսը իր խա թուղթը. մեռավ ծեր հասակում և Մագիստրոսը գրեց իր խբ թուղթը՝ իբր մխիթարանք Խնատի վանքի կրոնավորներին (ԺԱ դար).—Մագ. թղ. խա, խբ։

— 27. Սամուէլ եպիսկոպոս, առաջնորդ Տլուքի Ս. Պօղոս վանքի. ունէր Եղիշէի ընտիր մի օրինակ, որ տվեց Յակոբոս գրչին՝ արտագրելու համար, 1130 թ.—Կիւլէսէրեան, Ծուք, էջ 48—49, Սուրիահայ տարեց. 1925, էջ 106։

— 28. Սամուէլ եպիսկոպոս Կարբոյ (Կապադակի). մին այն եպիսկոպոսներից, որոնք օծեցին Գրիգորիսին կաթուղիկոս Աղուանից «1139 թ».—Հայապ. 386։

— 29. Սամուէլ Սամոսատցի, Պոլսում գրել էր Պօղոս հայհոյող խառնակիչ քահանայի մասին և կոչել էր նրան նախատանոք «Պօղոս Սամոսատցի». Պօղոսը բողոքեց կայսեր. այս առթիվ Ներսէս Շնորհալին էլ («1166—1173 թ») գրում է Պօղոսին մի նամակ և կարգի է հրավիրում նրան։—Շնորհ. թղ. 208. Ալիշան՝ Շնորհ. էջ 428։

— 30. Սամուէլ երեց Անեցի, պատմիչ. աշակերտ էր Յովհ. Սարկաւագի=Սարգիս վարդապետ Փառխոսեցու (†ՇՀԸ=1129 թ) և դասընկեր Երեմիա Անձրևիկի։ Ունի Ժամանակագրութիւն (հրատ. Էջմիածին 1893), որ հասնում է մինչև «1179 թ» և գրել

է Գրիգոր Դ (կամ Ե?) կաթողիկոսի հորդորանքով։ — Սամ. անեց. 128. Մխ. անեց. և. Կիր. 4, 47. Մխ. այրիվ. 37. Վրդ. հ. Հաւաք. 13. Եռ. կթղ. էջ բ. — տես. Սամուէլի՝ Սամ. անեց. 1. շար. 140. Օրբ. ժմ. 21. — Զարբ. Հին դպր. 672—5, Ալիշան՝ Շնորհ. էջ 121—4։ — Հմմտ. № 36։

— 31. Սամուէլ եպիսկոպոս Անոյ և առաջնորդ Դրազարկի վանուց 1173—1182 թ. — Սիսուան 233—234 ա, Զարբ. Հին դպր. 707. Տաթև 1927, 184. Manus. brit. mus. 5 բ։

— 32. Սամուէլ վարդապետ Սկևռացի. աշակերտ Ն. Լամբրոնացու. միաբան Սկևռայ վանքի. իր ուսուցչի հրամանով շարունակեց արտագրել նրա Սաղմոսաց Մեկնութիւնը, որ արդեն սկսել էր Գէորգը (№ 62) և ավարտեց ՈԼԹ=1190 թ։ Ըստ Ձեռ. Կարին. 148 Սամուէլ գրիչը «հրամանաւ Ներսէս արքեպիսկոպոսի (№ 36) Սկռայ վանից» օրինակել է Լամբրոնացու Մեկնութիւն Սաղմոսաց, Պատմութիւն Ն. Լամբրոնացւոյ, Պատմութիւն Ռուբինեան ազգատոհմին են, որ ՈԼԹ=1190 թվին Լևոն Բ ընծա է ուղարկել Հաղբատի վանքին։ Բացի սրանցից, իր ուսուցչի համար օրինակել է նույնպես մի ժողովածու՝ 1199—1202 թ. (տես Յ. Մուրատ, Յայտ. Յովհաննու, էջ Ե—ԺԴ)։ Գրել է Պատմութիւն վարուց Ն. Լամբրոնացւոյ և Լամբրունեանց (անանուն հրատ. Արրա. 1878, էջ 89—101)։ Լամբրոնացու մահից հետո (1198 թ) շարունակել է իր ուսումը Գրիգոր վարդապետի և Բասիլ քահանայի մոտ՝ դասընկեր ունենալով Յովհաննէսին և Բարթուղիմէոսին։ Այդ միջոցին արտագրել է Լամբրոնացու Պատարագամեկնիչը, որ ընծայում է Լամբրոնացու քրոջ՝ Մարիամին, և Պատճառ խնդրոյ միաբանութեան. — տես. Սամուէլի՝ Պամ. յմր. 231, 233. տես և Տաշեան, Ցուց. 1147 ր. Զարբ. Հին դպր. 702, 709, 715. Հայապ. 413—8. Սիսուան 70, 86, 99։

— 33. Սամուէլ վարդապետ. սրա մասին խոսում է Սիսուան 372 ր ծան. իբրև հիշեալ Այասի Նավահանգստի (ԺԲ դար). բայց այնպիսի լեզվով, որ ոչինչ չի հասկացվում. — «Սորա յիշէ անուն կանգնողին Սամուէլ Վ. և արաց փակումն կամ ուսրումն, վասն կասկածանաց ի հուստայս. այլ յետ քննութեան ոչ գիտեմ զինչ եղև»։

— 34. Սամուէլ, վանահայր, իր ընկերակից միաբաններէ հետ, Զաքարէ ամիրսպասալարի և նրա որդիների արեւշատութեան համար, Երուանդաշատում կանգնեցրել է մի մատուռ 1206 թ. — Արձ. Այրարատ 62, 64։

— 35. Սամուէլ, հայր Սարգսի, որ մի աշտարակ է կառուցել Անիում 1215 թ.—Շիրակ 41։

— 36. Սամուէլ երեց Անեցի, որի որդին է Սարկաւագ քահանա և թոռը Աբրահամ երեց. այս վերջինը երկու տուն և երկու խանութ է նվիրել Խծկօնքի վանքին 1233 թ.--Արձ. Շիրակ 128 (որ համարում է «հաւանօրէն թոռն հռչակաւոր ժամանակագրին». տես Սամուէլ № 30)։

— 37. Սամուէլ վանահայր և առաջնորդ Կապոսի կամ Կարպոսի վանքի. Գրիգոր Վգիկ գրչին գրել տվեց մի Ճառընտիր 1255 թ. (Աթան. յոյշ. ժդ) և Հարցմունք Աթանասի 1255 թ? (Ձեռ. Վենետ. Բ. 322)։

— 38. Սամուէլ քահանա «աբեղայ նահատակեալ», որի երկու եղբօրորդիները (Գրիգոր մխակեց և Մարտիրոս), բնակարան ավին Գրիգոր գրչին, երբ սա արտագրում էր Մատթէի մեկնութիւնը՝ Ակների վանքում (Կիլիկիա) 1329 թ.—Սիսուան, էջ 155 բ։

— 39. Սամեղ, որդի Բուրթէլ իշխանի Օրբէլեանց. հիշված է իր եղբայրների՝ Բէշքենի և Իւանեկի հետ, 1344 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 486, Սիսական 47։

— 40. Սամուէլ տես Նլևթիւրոս 1356 թ։

— 41. Սամուէլ կրոնավոր, Ներսէս Ապուաշ գրչին օրինակել տվեց Նւագրը 1384 թ.—Սարգիսեան, Նւագր. ներած. էջ 6եթ։

— 42. Սամուէլ, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Ղևոնդ Ա-ի և նախորդ Ներսէս Ա Փոլատի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 43. Սամուէլ աբեղա, գրիչ. օրինակեց Սարգիս Շնորհալու Կաթուղիկեայց Թղթոց մեկնութիւնը Եկեղեաց գավառի Աղի Ս. Ստեփաննոս վանքում, 1413 թ. -Յովսէփեան, Մի էջ հայ արվ. էջ 5. Ձեռ. Կարին 161, Նոտարք 42։

— 44. Սամուէլ Երզնկացի, Երուսաղէմում օրինակեց «Տարօնգիրքը» Սսի Պօղոս կաթուղիկոսի պատվերով՝ 1422 թ.—Սիսուան 541 ա։

— 45. Սամուէլ քահանա, կինն է Մինայ. ծնողներն են Վարդան աբեղայի, որ Խառրովայ վանքում, Ստեփաննոս կրոնավորի համար օրինակեց մի Աւետարան, 1430 թ.—Նոտարք 94, Ձեռ. Վասպ. 359։

— 46. Սամուէլ գրիչ, գրեց, ծաղկեց ու կազմեց մի Շարական, Երզնկա 1436 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 79։

— 47. Սամուէլ վարդապետ, նկարիչ. նկարազարդեց այն Յայսմաւուրքը, որ Ս. Կիրակոս վանքի միաբանների մի խումբ արտագրեց Երզնկա 1446 թ.—Նօտարք 151։

— 48. Սամուէլ մահդասի, որդի Վահրամշահիկի, Եղևվարդում արտագրել տվեց զանազան գրքեր և հատկապես Մատթէոս գրչին գրել տվեց մի Մաշտոց 1464 թ. և այդ բոլորը նվիրեց Յովհաննավանքին.—Այրարատ 172, 198։

— 49. Սամուէլ որդի Տիրացու քահանայի, աշակերտ Յովհաննէս քահանայի. օրինակել է Սաղմոսն ու Տօնացոյցը 1465 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 190։

— 50. Սամուէլ պատկերահան, ուսուցիչ Մանուէլ երեցի, որ Երզնկայում Յովհաննէս քահանայի համար օրինակեց մի Աւետարան, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 420։

— 51. Սամուէլ աբեղա, ուսուցիչ Յովհաննէս Երզնկացու, որ օրինակեց Աւետարանը՝ Կեսարիայում, 1476 թվին։—Rapport Belgique 35։ Կարծում եմ որ սրա հետ նույն պիտի լինի՝

— 52. Սամուէլ աբեղա, ուսուցիչ Նաղաշ Յովհաննէսի, որ Կեսարիայում գրեց մի Ճաշոց 1481 թ. և մի ուրիշը 1484 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1849։

— 53. Սամուէլ վարպետն է Զօրվար գրչի, որ Տիւրիկում օրինակեց Աւետարանը, 1480 թ.—Թորոս աղբ. Ա. 231։

— 54. Սամուէլ քահանա. գրել է «Մեկնութիւն տօմարի», ի խնդրոյ Ստեփաննոս իմաստասերի. թվականն անհայտ է. ձեռագրի մի օրինակը արտագրել է Եսայի գրիչը 1626 թ.—Ձեռ. Ներս. 33 ա։

— 55. Սամուէլ Մանիսացի, Նոր վկա. Եղիա քահանայի որդին էր. հավատքը ուրանալով նահատակվեց Զմիւռնիայում 1723 թ. Տօնում է իր տապանը։—Քօսեան, Հայք ի Զմիւռն. Ա. էջ 89> Նոր վկ. 560> Ազգապ. 2870։

*ՍԱՄՈԽՆԱՅ*, *սեռն ու ծագումը անհայտ. մի անգամ հիշված է Ցախաքարի հետևյալ կարճ արձանագրության մեջ. «Թվին ՈԼԹ(=1230). ԶՍամոխնայ յիշեցէք ի Քս» (Սիսական 155)։*

*ՍԱՄՏԻՆ*, *ար. ծագումն ինձ անհայտ։ Հիշված է մի անգամ՝*

— Սամտին ոմն, որ շինեց այգի ու դարպաս պարոն Սահմադինի համար 1276 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 14։

**ՍԱՄՓՍՈՆ*, *ար. <եբր.* שִׁמְשׁוֹן Šimšon *անվան հուն.* Σαμψων *տառադարձությունից։ Ասորի ձևն է* ܫܡܫܘܢ Šmšōn, *որից տառադարձված կա հյ.* Շմշոն *(Հիւբշ. 290)։ Հայերենի մեջ ավե-*

լի սովորական և այսօր էլ ժողովրդական կենդանի ձև է Սամսոն, որ ավելի է համապատասխանում եբրայականին։ Ծագում է եբր. שמש šemeš «արեգակ» բառից, որի համապատասխան ձևերն են ասոր. شمشا šemšā, արաբ. شمس šams, ասուր. šamšu, եգիպտ. šmšu համանիշները (Gesenius 849—850)։ Սրանցից էլ բաբել. Šamšānu, եգիպտ. Šamašana, արաբ. شميس Šumais անձնանունները։ Հմմտ. հներից Բրս. մրկ. 323 «Սամփսոն թարգմանի արեգական նոցա».—Տաթև. հարց. 421 «Սամփսոն՝ արեգական կամ փրկութիւն լոյս»։ Այս անունով հայտնի է Սամփսոն որդի Մանովէի, դատավոր հրէից, նշանավոր իր առասպելական ուժով († Ն. Փ. 1116)։ Ճիշտ նրա նման ունինք՝

— 1. Սամսոն որդի Մանուէլի, նահապետին Ամատունեաց, որոնք Արտաշէս Բ-ի օրով գաղթեցին Հայաստան.—Խոր. Բ. ծէ։

— 2. Սամփսոն, որդի X-ի (հոր անունը կտրված է), թոռ Սամփսոնի. մայրն է Արուղ խաթուն. երեք վաղամեռիկ եղավ. ծնողները մատաղ արին, մարմինը Ցախաքարի վանքում թաղեցին և նրա հիշատակին հող ու այգի նվիրեցին վանքին 1367 թ.—Արձ. Սիսական 156։

— 3. Սամսոն ձևով հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 450)։

*ՍԱՅԱԲԱԼ, տր. <Թրք. sāda (ժղ. sāya) «զուտ, մաքուր» +bal «մեղր» բառերից, իբր «մաքուր մեղր, զուտ մեղր»։ Հիշված է 1658 թ. (Ձեռ. Կեռ. ածած 54 բ), Սայապալ ձևով, և այլ [illegible] 1664 թվին (անդ, էջ 56 բ), որից էլ կա այժմ Սայապալեան ազգանունը։

*ՍԱՅԱԴ կամ ՍԱՅԵԱԴ, տր. <արաբ. صياد ṣayyād «որսորդ» բառից. սրանից է Սայադեան կամ Սայեադեան ազգանունը (Կովկաս). նույնից է նաև Սայաթ-Նովա (նշ. «որսորդ եղանակի՝ նվագի») և ավելի նոր գուսաններից՝ Աշուղ Սայեադ։

ՍԱՅԱՄ. արդյո՞ք անձնանո՞ւն էր, որից կազմված է Սայամեան ազգանունը (Կովկաս)։ Այդ դեպքում Սայամ կարող է լինել կրճատ ձևը Սայաբալ անվան, թրք. -m ստացական հոդով, իբր «իմ մաքուր (մեղրս)»։

*ՍԱՅԴԻ (որ և Սայդոյ, Սատօ, Սայտուն), տր. բուն նախնական ձևն է سيدى saydī «տէր իմ, պարոնս», որ ծագում է سيد sayid կամ ṣayyid «տէր» բառից։ Սրա իգականն է Սեդա, որ տես։ Թուրքերի մեջ հիշատակված է Սայտի բէկ 1403 թ. (տես Նոր վկ. 206)։ Մեր մեջ էլ հիշատակված է ԺԵ դարում։

— 1. Սայղոյ *կամ* Սատօ, *որ Ծար երկրի իշխաններից մին էր, Դօփեանց տոհմից. հիշված է 1411 թ.—Նոտարք 39, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 185։*

— 2. Սայտի, *որդի պարոն Շանշի, «քաջ և յաղթող զօրավարի և մեծ իշխանաց ազգէն», տէր և պարոն Փոքր Սիւնեաց, Ակոնայ, Հաթերքոյ... կանգնեցրել է մի խաչքար իր հօր՝ Շանշի հիշատակին 1430 թ.—Շահխաթ. Բ. 365> Նոտարք 94։*

— 3. Սեյտի, *հիշվում է Դուրսունի հետ (որ Խաչենի իշխան էր 1411—1430 թվերին) Խաթավանքի անթվական մի արձանագրության մեջ.—Արցախ 208։*

— 4. Սայտուն, *որդի պարոն Աղբաստի. մի հող է նվիրել Գանձասարի վանքին 1457 թ. և մի ուրիշ հող էլ 1467 թ.—Արձ. Ջալալ. Ա. 158, 185, Բ. 495, Շահխաթ. Բ. 373—5> Նոտարք 185, 228, Արցախ 177 և 179։*

**ՍԱՅԻԹ տես* Սաեիթ։

**ՍԱՅԻԼ, տր. <արաբ.* سائل sā'il *«մուրացիկ. 2. հարցնող» բառից. ենթադրում եմ* Սայիլեան *ազգանունից. բայց անծուն է ինձ մականունս։*

*ՍԱՅԻՆԲԷԿ, տր. անշուշտ արմատն է* Սային, *որի ծագումը սակայն ինձ անհայտ է. մի անգամ ունենք հիշատակված ԺԴ դարում։*

— Սային բեկ, *որդի Շահնշահի, որ գրել տվեց Աւետարանը՝ Թումայ Արճիշեցուն, Գողթան գավառի Կոպատափ անապատում, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։*

*ՍԱՅԻՐ, տր. ծագումն ինձ անհայտ (եթե չէ վրիպակ, փոխանակ լինելու* Սայիր*). մի անգամ հիշատակված է ԺԳ դարում։*

— Սայիր, *իր Գրիգոր եղբոր հետ միասին նորոգեցին Առինջ գյուղի եկեղեցին, 1281 թ.—Սմբատեանց, Գեղարքունիք, էջ 246։*

**ՍԱՅՄԷԼԷՔ, իգ. (գրված է նաև* Սայմելիք, *բայց նախընտրելի է* Սայմելէք, *որ համարում եմ* Իսայի-մելէք, *երբ <արաբ.* عیسی ʻIsa *«Յիսուս»+* ملك melek *«հրեշտակ», այն է «Յիսուսի հրեշտակը»։ Հիշատակված է ԺԴ-ԺԵ դարերում։ Կա նույն իսկ* Սայի *արմատական ձևը (համմ.* Իսա *անունը հտ. Բ, էջ 387), գործածված Գանձակ գյուղի անթվ. մի տապանագրի մեջ, որ հետևյալն է. «Այս է հանգիստս Սայի որդի Հասանայ փեսայիս» Արցախ 270 (այստեղ* Սայի *արական է)։*

— 1. Սայմելիք, *կին Դատապետի (№ 3 և 4) և մայր Տէր*

Ստեփաննոսի, որ Վարագայ վանքի միաբան էր 1399 թ.— Թորոս աղբ. Բ. 429։

— 2. Սայմէլիք, կին Ամիրբէկի (№ 10), ծնողներն են Շահփաշայի (№ 3), որ Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Նոտարք 171=Ձեռ. Վասպ. 136 (Նոտարքը գրում է Սայմէլիք, Ձեռ. Վասպ. Սայմէլէք)։

— 3. Սայմէլիք (սեռն ու թիվը անհայտ) գործածված է նաև Ձեռ. Վենետ. Ա. 589 և Թորոս աղբ. Բ. 346։

* ՍԱՆԱԹ, տճ.<արաբ. صنعت şan'at «արհեստ, ճարտարություն, վարպետություն» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1587 թ. (Սմբատեանց՝ Սադխան 259)։

* ՍԱՆԱՄ, իգ.<արաբ. صنم şanam «1. արձան, կուռք (որ իբրև պատկեր գեղեցկության շատ գործածական է բանաստեղծության մեջ). 2. սիրուհի»։ Այժմ գործածական է միայն իբր իգ., որի հին վկայությունն էլ կա ԺԴ դարից։ Բայց արդյոք արական էլ չէ՞ր, ինչպես ենթադրել են տալիս Սանամեան և Խանանամեան ազգանունները (երկուսն էլ գործածական Նոր-Բայազիտում)։

— 1. Սանամ խաթուն, դուստր պարոն Ալանի՝ Սեբաստիա 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107։

— Ավելի ուշ գործածված է Սանամ 1596 թ. (Ձեռ. Թուր. 76ա) և անթվական (Ձեռ. Վասպ. 550)։

* ՍԱՆԱՍԱՐ, ար. <Ասորեստանեան անուն է, որ տառադարձված է եբր. שראצר Šareşer (կարդա Sareşer ըստ Gesenius 792), որից հուն. տառադարձված է Σαρασάρ. ենթադրում է ասուր. Šar-uşur, որ պիտի նշանակեր «արքայ Ուցուր» (ասուր. šar=եբր. sar «թագավոր»+եբր. אצר ēşer հատուկ անուն, ēşer «դիզել» արմատից՝ Gesenius 62)։ Այս անունով հիշատակված են Սանասար որդի Սենեքերիմի (տես տակը), Սանասար այլ ոմն՝ Ա. Նորագիւտ Մնաց. Գ. 18, Ներգաղասարասար իշխան Ասորեստանցի՝ Երեմ. լթ. 3։ Ըստ Սանդալճեան, Ասորեստ. և ուր. սեպագիր արձանագր. էջ 61 ծան. Սանասար համառոտված է Ներգալ-շար-ուսուր անունից, որ նշանակում է «Ներգալը [=պատերազմի աստված»] թագավորին պաշտպանէ»։—Կա նաև Šunaššura թագավոր երկրին Kizwatna (տես Weidner, Politische Dokumente aus Kleinasien I, էջ 89)։ Այս անունը գործածական է այժմ մեր մեջ Սանասար ձևով, որից և Սանասարեան ազգանունը։

— 1. Սանասար, *որդի Սենեքերիմ թագաւորի Ասորեստանցոց, իր եղբայր Ադրամելէքի հետ սպանեց դաժան հօրը և փախաւ Հայաստան (ըստ Սանասարեան, անդ, էջ 63 Ն. Ք. 681 Թ): Սկայորդի նահապետը ընդունեց նրան և բնակեցրեց Հայաստանի հարաւ-արեւմտեան կողմը՝ Ասորեստանի մօտ: Այստեղ բազմացաւ իր սերունդը և լցրեց Սիմ լեռը: Հետոյ սրանք ստացան Աղձնեաց բդեշխութեան պատիւը:—«Եւ դարձաւ Սենեքերիմ արքայ Ասորեստանեայց և բնակեաց ի Նինուէ: Եւ եղև մինչդեռ երկիր պագանէր ի տան Նեսրաքայ աստուածոյ իւրում, Ադրամելէք և Սարասար որդիք նորա հարին զնա սրով, և ինքեանք զերծան յերկիրն Արարադայ» (Դ Թագ. ԺԹ. 37).—«Եւ դարձաւ անդրէն՝ գնաց Սենեքերիմ արքայն Ասորեստանեայց, և բնակեաց ի Նինուէ: Եւ մինչդեռ երկիր պագանէր ի տան իւրում Նասրաքայ կռոց իւրոց, Ադրամելէք և Սարասար որդիք նորա սպանին զնա սրով, և ինքեանք գնացին փախստական ի Հայս» (Ես. լէ. 38):—Եբր. բնագիրը երկու դէպքումն էլ ունի* אררט Ararāt, *իսկ հույնը առաջին դէպքում* εἰς γῆν Ἀραράθ, *երկրորդում* εἰς Ἀρμενίαν, *որին հետևում է և հայը:— Այս անունը մեր մատենագիրների մօտ հիշատակուած է* Սանասար, Սարասար *և* Սափասար *ձևերով. օր.* Սանասար՝ *Խոր. Ա. իգ. Մխ. անեց. գ. Միխ. առ. գ. Սամ. անեց. 46. Սուտ-Շապհ. 21. Վրդ. աշխ. 516. Տաթև. ամ. 259, 296.—սեռ.* Սանասարայ՝ *Խոր. Ա. իգ. Բ. ծե. Արծր. Ա. ե. Սամ. անեց. 49.*—Սանասարու՝ *Անոն. Ա. ե.*—Սանասարեան՝ *Մագ. թղ. խա.*—Սարասուրայ՝ *Ուռհ. 34.*—Սափասարայ՝ *Տարօն. Բ. § 14:—Սանասարի առասպելի մասին տես Աբեղեան, Հայ ժող. առասպ. 577—581:*

— 2. Սանասար *իշխան Սասնոյ, դաշնակից հոնաց, կռուեց Արաբների դէմ 638 Թ. սրա որդին է* Մուշ *(իմա Մուշեղ)՝ Տարուն կուսակ. նշանածը:—Տոմաշէկ, Սասուն, էջ 21—23 (ըստ Վակիդի արաբ պատմագրի):*

— 3. Սանասար, *որդի Խութասարի և եղբայր Բաղդասարի. իրենց Նորաշինիկի այգին նվիրել են Հառիճի վանքին 1235 Թ. —Շահխաթ. Բ. 265, Շիրակ 163:*

— 4. Սանասար *1600 Թ. (տես Սմբատեանց՝ Երնջակ 147): —Անթվական են* Սանասար *(Ջեռ. Վաղ. 391 և Ջեռ. Ադուլ.—Արբտ. 1911, 760):*

***ՍԱՆԱՍԻ**, ար. անստույգ անուն. գրված է մի անգամ Գառուձորի (Գանձասար) 1181 թվի մի արձանագրության մեջ,*

«Սանատի իրիցու» ձևով, ուր Սանատի կարող է լինել թէ սեռ. և թէ ուղղական հոլով։ Ուրիշ մի քանի անձերի և ժողովուրդի հետ եկեղեցի է շինել և ջուր բերել (Շահխաթ. Բ. 379, Արցախ 180)։

*ՍԱՆԱՏՐՈՒԿ, ար.<իրան. *Sanatruk ձևից. հմմտ. Σινατρούκης=լատ. Sinatruces* թագավոր Պարթևաց (որ է Արշակ ԺԱ 77—70 Ն. Ք.), Σανατρούκιος թագավոր Պարսից, ասոր. Sanatrug, Sanaṭruq, արաբ. Sanatruk թագավոր Բահրայնի (Արտաշիր Ա-ի ժամանակ). հիշված է նաև Սանատրուկ արքայ Ասորեստանեայց՝ Գ. մակ. գ. 4 (որով պետք է հասկանալ Սենեքերիմ, ինչպես որ հույն բնագիրն էլ ունի Σενναχηρείμ).—Հիւբշ. 72։—Խոր. Բ. ԼԴ այս անունը ստուգաբանում է «Սանոտայ տուրք», բառ որում Սանատրուկի դայակը՝ Սանոտ, պատել էր նրան ձյան մեծ հուսից։ Այդ խոսքերը սխալ հասկանալով Մխ. անեց.-ի և առանց հիշելու Սանոտ անունը՝ տալիս է թե դայակը անունը դրավ Սանատուրք։

— 1. Սանատրուկ՝ թագավոր Հայոց. Աբգարի քեռորդին էր. զորահրամանատար և փերակացու էր կարգված Աբգարի կողմից՝ Շավարշան գավառում։ Աբգարի մահից հետո, Անանունից ան-կախ թագավորեց Մեծ Հայաստանում (38—68 բստ Չամչ. Ա. 294, 327)։ Թողեց քրիստոնեությունը և նահատակեց Թադեոս առաքյալին և իր դուստր Սանդուխտին։ Զորք ժողովեց որ գնա տիրի Եդեսիային և Միջագետքին. այդ միջոցին Անանունը մեռավ և Եդեսացիք քաղաքը հանձնեցին Սանատրուկին։ Կոտորեց Աբգարի ցեղը։ Նորոգել է Մծբինը, որ հիմանց կործանվել էր երկրաշարժից։—Սեբ. 1, 11. Բուզ. Դ. ժդ. Խոր. Բ. ԼԴ—ԼԶ. Խոր. պատմ. Ածածն. էջ 294. Շիր. քրոն. 37. Ջքր. եպս. 279. Ուխտ. Ա. լե, խ, ծդ. Վկ. թադ. 13. Գամ. թադ. 60, 62. Յհ. կթղ. գ, է. Ասող. Ա. ե. Մաղ. թղ. ժթ. Սամ. անեց. 54, 55. Մխ. անեց. գ, թ, ժ, ժե, ի. Մխ. այրիվ. 18. Շնորհ. վիպ. 309. Միխ. ստ. իթ. (=իը). Երզն. մտթ. 225, 226. Վրդ. ժէ. Նհպաք. 89. Անկ. գիրք առաք. 364, 475. Յայսմ. օգ. 27, դեկտ. 8, 21, 23, 31. Դարդել 3. ZAPh 1, 190. Մրն. համդ. 19. Հաւաք. 9. Ջքր. սարկ. Ա. 2.—սեռ. Սանատրկոյ, բց. ի Սանատրկոյ՝ Սեբ. 11. Բուզ. Գ. ա. Դ. իդ. Խոր. Բ. ԼԴ—ԼԸ, խդ, խէ. Վկ. թադ. 15. Գամ. թադ. 61. Վկ. ստնդ. 77. Վկ. բարթ. 24, 26. Ուխտ. Ա. խ—խբ. Բ. կե. Կղկնտ. Ա. գ. Ասող. Ա. ե. Մաղ. թղ. հ. Միխ. ստ. գ, իթ (=իը). Սուտ—Շապհ. 11. Մխ. անեց. ե, ի. Յհ. կթղ. է. Վրդ. ժէ. Նհպաք.

89. Անհ. գիրք առաք. 352—3, 362—3. Յայսմ. յունիս 30. Վրք. և Վկ. Ա. 208—9. Մին. համզ. 19. Հատաք. 10։

— 2. Սանատրուկ, որդի և հաջորդ Սոյեմի, արքայ Հայոց (190 թ). գրված է հուն. Σανατρούκης (ըստ Դիոն Կասսիոսի). Հռովմայեցոց կայսրների գահակալական կոինների ժամանակ Թեայ չեգոք (Գրգչ. Բնն. պտմ. Բ. 262).—ըստ Լծօ Ա. 477 գահակալել է 190—196 թ. և սպանվել է Ալանաց պատերազմում։

— 3. Սանատրուկ իշխան Արշակունի, որին Տրդատ կարգեց կուսակալ Փայտակարան նահանգի. Տրդատի մահից հետո ապստամբեց և անկախ թագավորեց.—Խոր. Գ. գ. Կղկնտ. Ա. ժբ. Յհ. կթղ. ժ. Արծր. Ա. գ, է. Սամ. անեց. 65. Կիր. 9. Վրդ. ի.—սեռ. Սանատրկոյ՝ Կղկնտ. Ա. ժբ (հրատ. Շահն.—իսկ էմին ունի Սանատրկայ). Խոր. Գ. գ, դ, թ. Ասող. Բ. ա. Արծր. Ա. գ, է. Գ. ժբ. Վրդ. ի. Տաթև. ձմ. զէ.—գրծ. Սանատրկաւ՝ Խոր. Գ. գ։

— 4. Սանատուր ոմն որդի Խաչիկի. ստացող. հիշված է ԺԵ դարից, ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Թաւր. 39բ)։

* ՍԱՆԴՈՒԽՏ, իգ. < san + իրան. duxt «դուստր» բառերից. համմտ. պրս. سین دخت sīn-doxt կին Կաբուլի Mihrab թագավորի (Շահն. հտ. 1, էջ 192)—Հիւբշ. 38։ Այժմ ամկ. Սանդուխ, որ հիշված է 1606 թ. (Ձեռ. Թաւր. 21ա) և ավելի վաղ՝ 1285 թ. տես տակը № 5։

— 1. Սանդուխտ դուստր Սանատրուկ թագավորի Հայոց. Թադէոս առաքյալի քարոզությամբ հավատաց Քրիստոսին և նահատակվեց իր կռապաշտ հոր ձեռքով։ Առաջին նահատակուհին է և իր անունով կա եկեղեցի (օր. Յայսմ. փետր. 27)։—Վկ. թաղ. 14, 17, 18, 25—27, 29, 32—36, 39, 41—45, 47, 58. Պամ. թաղ. 61—69, 75. Վկ. սանդ. 77—80. Գիւտ նշ. թաղ. 89—95. Ուխտ. Ա. խ. Յհ. կթղ. է. Մխ. անեց. ի. Սամ. անեց. 55. Շար. կթ. Պարականոն շար. 116—7. Երզն. մաթ. 226. Յայսմ. դեկտ. 23, մայ. 30. Տաթև. ամ. 407. Մին. համզ. 19.—սեռ. Սանդխտոյ՝ Խոր. Բ. լգ. Վկ. թաղ. 25, 28, 40, 45, 46, 58. Պամ. թաղ. 59—71. Վկ. սանդ. 77, 82. Գիւտ նշ. թաղ. 93—97. Ուխտ. Ա. խ. Յհ. կթղ. է. Շար. կթ. Պարականոն շար. 116. Մխ. այրիվ. 63. Ասող. Բ. բ. Ճշ. 561. Յայսմ. դեկտ. 23, փետր. 27, մայ. 30. Մխ. առ. ք ապ. էջ 102 (չունի ա ատ). Առաք. պտմ. 269.—գրծ. Սանդխտով՝ Վկ. թաղ. 30.—Ճուղեր. Լիակ. վրք. սրբ. Գ.

14—62.—Իր վարքը տես Սոփերք, Ը, էջ 77—83 (որ և թրգմ. վրաց. ըստ Մառի)։

— 2. სანდუხტ դուստր Վարդան Մամիկոնեանի՝ որդւոյ Արտաւազդայ՝ որդւոյ Վաչէի. կին Մեծն Ներսէսի. ամուսնու հետ միասին սովորում էր Կեսարիայում. «348 թվին» ունեցան իրենց անդրանիկ զավակը՝ Սահակ (Պարթև). մի տարի հետո վախճանվեց Սանդուխտը «349 թ». հայրը՝ Վարդան փոխադրեց նրա մարմինը Թիլ։— Մեսր. եր. 14, 19։

— 3. სანდუხტ (ԺԲ դար) տես Սահակադուխտ № 3։

— 4. სანდუღტ (գրված է սեռ. Սանդղտայ ձևով). Գրիգոր Մագիստրոսի կինն է, ինչպես հիշատակված է Հերհերի 1283 թվի արձանագրության մեջ. «Թոռն Մեծին Մագիստրոսի և բարեպաշտուհւոյ Սանդղտայ ամուսնոյ իւրոյ» (Սիսական 114)։ Սրա մասին ավելի ընդարձակ տես վերը՝ ოქონ № 10 անվան տակ։ Արձանագրությունը այնպես է կազմված, որ կարելի է Սանդուխտը կին համարել թե Մագիստրոսի և թե Վահրամ իշխան Շահունեցու։ Սիսականը՝ էջ 554 ցանկում տանում է երկրորդ իմաստով, իսկ ես դրի առաջին իմաստով, թեև չգիտենք թե Մագիստրոսի կնոջ անունը ինչ էր (Մագ. թղ. յոզ. էջ իը)։ Մնում է որ մի նոր աղբյուր ստուգի մեր ասածը։

— 5. სანდუხ, մայր Պետրոս վանական քահանայի, որ օրինակեց Նոր-Կտակարանը 1285 թ.—Ձեռ. Վիեն. Ա. 818։

— 6. სანდუხტ դուստր Ներսէս քահանայի և քույր Բարթուղիմէոս առաքյալի վանքի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ ստացավ Յայսմաւուրքը 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41ա։

— 7. სანდუხტ (գրված է սեռ. სანტუხტის), կին Պողոսի № 95. ծնողներն են Թութլու մելէքի՝ կնոջ մահտեսի Յովհաննէսի, որ էջմիածնում. փրկանքով ազատեց մի Աւետարան, 1464 թ.—Ձեռ. Վասպ. 384։

— Ավելի ուշ հիշատակված կա სანდუხტ 1670 թ. (Ձեռ. Վասպ. 938)։

*ՍԱՆԷ* (կամ Սանէս), որ իր որդի Սմբատի ձեռքով մի խաչքար է կանգնեցրել Վայոց ձորի Գիւլլի-դուզ գյուղում 1291 թ.—Սիսական 141 (գրված է «Ես Սանէս», ուր ս կարելի է անձնական հոդ համարել կամ ոչ. Ալիշան տալիս է «Թերևս ჯუვანსა»)։

* *ՍԱՆԹՐՈՍ*, տր. <ალექსანდროს բառից կրճատմամբ. որտեղից է ձևացած სანდროანი ազգանունը (Դիլիջան). միջին.

ձևերն են Սանդրո (Տփղիս) և Սանդոյ, որ ավանդված է 1806 թվից Կարինում (Նոր վկ. 620)։

**ՍԱՆԻ** (Sani). Նշանավոր հայ աֆերիստ. 1669 թվին գնաց Պարիզ, ուր իրեն կոչում էր Sani և հայտարարում էր Սպահանի Աբասաբադ թաղի սարիկանդապետ։ Երիտասարդ և գեղեցիկ, կարողացավ հրապուրել շատերին։ Մտերմացավ Tavernier անուն անձի հետ, որ Հնդկաստանի ճամփորդությունից նոր էր վերադարձել, և նրա միջոցով կարողացավ օգնություն և պաշտպանություն գտնել։ Նրան «մկրտեցին» և կոչեցին Philippe. իր կնքահայրն եղավ Monsieur d'Orléans-ը. արքայական հրացանակիրների գունդը մտավ և ամուսնացավ Tavernier-ի պառավ ու տգեղ քրոջ հետ։ Սա լինելով կալվինական, Նանտի հրովարտակի զորությամբ, ամուսնու հետ վտարվեց Շվեյցարիա։ Philippe այնտեղից գնաց Ամստերդամ, ուր արքայական հրացանակրի հագուստներ պատրաստել տալով, գնաց Մոսկվա։ Այստեղ հայտարարեց իրեն Ֆրանսիայի թագավորի պատվիրակ, որ ուղարկվում է Պարսկաստան, այնտեղ կազմակերպելու համար հրացանակիրների մի գունդ։ Չկարողանալով մտնել Պարսկաստան, անցավ Գերմանիա, ուր շատ խարդախություններ արավ. ապա անցավ Շվեդիա, ուր երկրորդ անգամ ամուսնացավ պալատական մի օրիորդի հետ։ Մի քանի ամսից Շվեդիայից գնաց Լեհաստան և այնտեղից էլ Պարսկաստան։ Մի անգլիացի վաճառականի խաբած լինելով, ձերբակալվեց ու տարվեց Կարին.— Mathorez REA հտ. 2, պր. 1, էջ 86—87։

* **ՍԱՆՈՍ**, որ. կրճատված է Ալեքսանդրոս անունից. հիշատակված է ԺԶ—ԺԸ դարերում։ Օր. 1616 թ. (Միւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 27), 1632 թ. (Ձեռ. Դես. ածած. 63ա), 1638 թ. (Դրնդ. 580), 1668 թ. (Թորոս աղբ. Բ. 440), 1678 թ. (Ճանիկեան, Հնութ. Ակնայ 70), 1746 թ. (Տաշեան, Ցուց. 821), 1773 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 229բ)։ Այս բոլորի մեջ կարեոր է հիշել՝

— Սանոս չալապի (կոչված է նաև պարոն և խոճայ չալապի), Հալէպցի էր, «այր և յաղթող ի վերայ հակառակորդ թշնամեաց խաչին Քրիստոսի». շինեց Հալէպի Ս. Քառասունք եկեղեցին 1616 թ. (Manus. brit. mus. 40բ)։ Յակոբ Կարնեցին (էջ 32—34) պատմում է թե ՌՀԸ=1629 թվին եկավ Կարին՝ իբրև մաքսապետ։ Ազգային բարերար էր։ Փրկանք տալով գնեց ու ազատեց մինչև 1000 գերի։ Կարնոյ բերդում մի եկեղեցի

կար, որ մի թուրքի տունն էր. գնեց և հանձնեց ժողովուր-դին են։

ՍԱՆՈՏ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ ունինք՝

— Սանոտ, քույր Բիւրատ Բագրատունու և կին Խոսրէն Արծրունու. Սանատրուկ թագավորի դայակն էր. մանկության ժամանակ ազատեց նրան ձյան հուսից.—սեռ. Սանոտայ՝ Խոր. Բ. լգ։

* ՍԱՆՋԱՐ, ար.<պրս. سنجر sanǰar «թագավոր» բառից, որ նաև անձնանուն է։ Այսպես էր կոչվում Մելիքշահի որդին և Ալփասլանի թոռը։ Մեր մեջ հիշատակված է՝

— 1. Սանջար, որդի Տանադուի. զավակ չունենալով՝ իր կալվածները նվիրեց Նորավանքին՝ 1303 թ.—Արձ. Սիսական 200։— Սրա հետ նույն կարող է լինել նաև՝

— 2. Սանջար, կինն է Թաճմելիք. մի հող են նվիրել Թանատի վանքին (թվականն անհայտ).—Սիսական 123։

* ՍԱՉԻ, իգ.<թրք. ساچ sačə «հարսանեկան նվեր» բառից (եթե վրիպակ չէ, փոխանակ ՍԱՉԼԻ. վերջին դեպքում<թրք. ساچلى sač!ə «մազերավոր, վարսագեղ» բառից, որ թուրքերի մոտ իգական անձնանուն է։ Երկու դեպքում էլ օտար փոխառություն)։ Մի անգամ հիշատակված եմ գտնում 1724 թ. (Ձեռ. Դավիթյան, Բ. 35ա)։

ՍԱՊԱՐՄԵԼԻՔ, ար. անշուշտ օտար է. բայց պ բաղաձայնի պատճառով անստույգ. կամ պետք է հասկանալ Սաբար և կամ Սափար։ Մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում (Bodleian 148)։

* ՍԱՊԻՍ, ար. հիշատակված է Հոռոմոսի անթվական մի արձանագրության մեջ հետևյալ ձևով. «Ես Սապիս եսու գիմ հայրենիք տներն են» (Շիրակ 25)։ Վերջատառը համարելով անձնական հոդ, բառը մնում է Սապի, կարգա Սաբի<արաբ. صبي ṣabī «մանուկ» բառից։ Սրանով միանում է Սաբի ձևի հետ (տես վերը, էջ 335, որով հաստատվում է ծագումը. համմտ. հյ. Մանուկ անունը)։

* ՍԱՌԱ, իգ.<եբր. שרה Sārā անվան հուն. Σάῤῥα տառադարձությունից. բուն նշանակում է «իշխանուհի» և ծագում է եբր. srr «իշխել, թագավորել» արմատից. համմտ. ասուր. šarru «թագավոր», šarratu «թագուհի», հ. եգիպտ. sr «իշխան» (Gesenius 793, 795)։ Համմտ. Ծն. ժէ. 15 «Ո՛չ կոչեսցի անուն նորա Սարա (եբր. שרי Sāra>հուն. Σάρα), այլ Սառա եղիցի անուն

նորա».—Փիլ. իմաստ. 59 «Բաղդէարէն Սառա և հայերէն իշխանակին».—Տաթև. հարց. 307 «Սառա կոչի առաքինութիւն».—Գիրք առաք. 338բ Սարրա Թարգմանի իշխան: Այս անունով յայտնի է Աբրահամ նահապետի կինը: Սովորական գործածութիւն ունի այժմ մեր մէջ: Փաղաքշականն է Սառիկ, որ յիշված է ԺԵ դարից (Ձեռ. Թուր. 39ա), 1562 թ. (անդ 68ա) և 1661 թ. (Ձեռ. Վատ. 920): Գրված է նաև Սարայ և փաղաքշականն էլ Սարիկ: Վերջինս յիշված է 1802 թ. (Տաշեան, Ցուց. 971): Մեր մէջ կա նաև Սառիկեան ազգանունը, որ իբ. գգվական Սառիկ ձևից առաջացած պիտի լինի:

— 1. Սառա, քույր Մարկոս կրօնավորի. արդեն վախճանված էր 1187 թ.—Միտրան, Գոր. և շմ. էջ 54:

— 2. Սառա, դուստր Կարապետի և քույր Քրիստոսատուր կրօնավորի, որ Սուրխաթում (Խրիմ) օրինակել տվեց Աստուածաշունչը 1352 թ.—Ձեռ. Վատ. 7:

— 3. Սառա դուստր Գրիգոր քահանայի, քույր Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բերլինի, 4ա:

— 4. Սարայ խաթուն, կին Ավրամի և մայր Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան գիրքը, մոտ 1358 թվին:—Ձեռ. Թուր. 28բ:

— 5. Սառա հարս Սիմէոն դպրի՝ որդւոյ Շահինշահի, որ ստացավ մի Աւետարան 1378 թ.—Տաշեան, Ցուց. 692ա:

— 6. Սառա խաթուն, կին Խութլուպէյի և մայր պարոն Սինանի, որ շինեց Կամենիցի Ս. Նիկողայոս եկեղեցին 1398 թ.—Կամենից 160:

— 7. Սառա, կինն է Գարէ դպրի, որ թոռն է Մարկոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. էջ 83բ:

— 8. Սառա կին Պօղոսի և մայր Սիմէոն կրօնավորի, որ Եկեղեաց գավառի Աւագ վանքում օրինակեց մի Ցայսմաւուրք 1439 թ.—Տաշեան, Ցուց. 50ա:

— 9. Սառա (տես. Սառին), դուստր Թումայի և քույր Կարապետ միայնակեցի, որ Ցիպնայ գառնակ վանքում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան 1450 թ.—Ձեռ. Վատ. 405:

— 10. Սառայ, որի գամբանը գտնվում է Շամախիի Գյոքչայ գավառի Առուշանայ շէն գյուղի գերեզմանատան մէջ 1452 թ.—Բարխուտ. Աղվ. երկ. էջ 202—3:

— 11. Սառայ խաթուն, դուստր Բենեամի և քոյր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1454 թ. —Թորոս աղբ. Ա. 330։

— 12. Սառա, հոգևոր մայր Խաչատուր քահանայի, որ սկսեց օրինակել Աւետարանը իր որդի Դաւիթ քահանայի համար, Արճէշ 1455 թ.—Նոտարք 177։

— 13. Սառայ կին Մուրատի և մայր Վրթանէս քահանայի, որ Թովմա արեղային գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Դալեան, Բ. 31ա։

— 14. Սառայ խաթուն, մեծ մայր Ստեփաննոս Ղարիպշահի, որ Ղազար դրչին օրինակել տվեց Յայսմաւուրքը 1457 թ. —Ձեռ. Թաւր. 103բ։

— 15. Սառայ, դուստր Սարգսի՝ հորեղբոր Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք 1457 թ. —Ձեռ. Թաւր. 103բ։

— 16. Սառայ, դուստր Սուլտանշահի՝ եղբոր Խոնձայի՝ կնոջ Թանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 17. Սառա, քոյր Մոջանի և մորաքոյր Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 18. Սառա կին Եղիազարի և մայր Գրիգոր կլանավորի, որ Արծկէում գրել տվեց մի Յայսմաւուրք Ղազար քահանային, 1475 թ.—Ձեռ. Մաղն. 36։

— 19. Սառա կին Փանիկի և մեծ մայր Խդրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 20. Սառայ, դուստր Յովան երէցի, որ Ծովքի Ս. Նշան վանքում օրինակեց Գանձարանը 1478 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1847։

— 21. Սառայ, կին Թորոսի և մայր Յովանէս արեղայի, որ Կեսարիոյ Մանտիսոն գյուղում գրեց մի Յայսմաւուրք 1495 թ. —Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 22. Սառա, կին Եղկանց Եղօի և մայր Թաւրէզ տիկնոջ (ամուսինն է Ղուլիկ Մսեհի), որ նրանց հիշատակին գրել տվեց մի Աւետարան 1498 թ.—Ձեռ. Վասպ. 525։

ՍԱՍԱԳ, իգ. ծաղուած ինձ անհայտ. Թերևս պրս. ساس sās «ազնիվ և փափուկ» բառի փաղաքշական ձևն է իբր sāsak «փափ-

կիկ»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1655 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 33բ)։

*ՍԱՍԻԿ* (տես. Սասիկյայ ձևով). հմմտ. նախորդը. ունինք միայն՝

— Սասիկ քահանա, որի որդին Յովհաննէս մի ականակուռ խաչ է նվիրել (պահվում էր Երզնկայի եկեղեցում) 1270 թ.— Թորոս աղբ. Բ. 294։

† *ՍԱՍՆԱՅ* (տես. Սասնայի), տր. < Սասուն գավառի անունից. տես և Սասնօպար. հավանաբար սրա կրճատ ձևն է Սասօ 1684 թ. (Ձեռ. Վատ. 966)։

— 1. Սասնայ, անդրանիկ որդի իշխանաց իշխան Ջալալի Ա. մեռավ երիտասարդ հասակում և նրա հիշատակին հայրը՝ Ջալալն մի գյուղ նվիրեց Բագնայրին 1229 թ. և ապա գրել տվեց Բագնայրի նշանավոր Ավետարանը 1232 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 16, Շողակաթ 199, Ծաղրակեանք 14, Շիրակ 116 (Արձ)։

— 2. Սասնայ, եղբայրներն են Բամիթար և Նարագին. որդիքն են Տուտիկի. ընկել են անօրեններից ձեռքը և կորել են. նրանց հայրը՝ Տուտիկ, իր կնոջ՝ Դիզկայի հետ կանգնեցրեց Երրորդության տաճարը նրանց հիշատակին, Բորչալուի Յովհաննաձորում, 1241 թ.—Ազգագր. հանդ. Է, 342։

— 3. Սասնոյ, որդի Ասլանափի, իր կնոջ Թուսուղանի հետ միասին մի մեծ այգի են գնել և նվիրել Հաղբատի վանքին 1242 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 84։

— 4. Սասնայ (տես. Սասնի ձևով), հայր Մխայէլի, որի դամբանը գտնվում է Գանձակի Սուլուկ գյուղում 1251 թ.— Արցախ 270։

— 5. Սասնայ (տես. Սասնին), որդի Ջալալ Բ-ի. մեռել է կիսամյա հասակում և հայրը նրա անունով հողեր է նվիրել Բագնայրին 1262 և 1266 թվերին։—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 18, Շիրակ 116 (2 Արձ)։

— 6. Սասնայ, եղբայր Համբերի, որդիք Հասանի Շիրանշահեան, Մեծկողմանց իշխանի, որ Կեսարիայից բերել տվեց մի Ավետարան և նվիրեց Եղիշէ առաքեալի վանքին՝ 1266 թ.— Բարխուտ. Պատմ. Աղուանից 145, Արցախ 227։

— 7. Սասնայ Հանդաբերդցի, ուխտի գնաց Գանձասարի վանքը և իր ու իր կնոջ՝ Մարեանի հիշատակին նվերներ արեց վանքին 1271 թ.—Արցախ 178։

— Ը. Սասուն կամ Սասանայ, որդի Հայրանունի. իր եղբայրների հետ շինել է Սոթից Ս. Աստուածածին եկեղեցին Աբաղա խանի ժամանակ, որ եղել է 1265—82 թ. (ԺԳ դար).— Միսաքեան 72 (Սասոնայ), Սմբատեանց՝ Գեղարքունի 629 (Սասուն):

— Թ. Սասնայ, կինն է Մխունիկ, որդին է Սարգիս, աղջիկը՝ Մամախաթուն. Փառխոսում մի խաչքար է կանգնեցրել «ի տէրութեան ժամանակի իմոյ» 1481 թ.—Արցախ 307:

— Առանց թվականի են Սասնայ՝ Արցախի Ծովիղի վանքի անթվ. մի արձանագրության մեջ (Արցախ 342) և մի գերեզման՝ Հաղբատի մեծ տաճարի ժամատան մեջ (Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23, Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 80 և Ազգագր. հանդ. Է, 400—401):

† ՍԱՍՆՈՊԱՐ, իգ. <հյ. Սասնոյ պար ձևից. բայց պար ունի երկու նշանակություն. առաջինն է «լեռների շարքը, լեռնաշղթա», երկրորդը «խաղալու պար, շուրջպար». առաջինը համար Սասնայ ար. անվան, երկրորդը Սասնապար իգ. անվան: Հիշատակված է մի անգամ՝

— Սասնոպար, դուստր Սարգիս քահանայի և քույր Մարկոս քահանայի, որ գնեց մի Աւետարան (ԺԶ դար կամ ավելի ուշ).—Ձեռ. Թաւր. 22ա:

* ՍԱՎԳՈՒԼ, իգ.<թրք. سوگلی sevgüli «սիրելի» բառից. իբրև իգական անուն գործածված է մեր մեջ՝ ԺԵ դարում (Ջքր. ազգ. 5). մի ուրիշը՝ Սաւգուլու ձևով՝ 1526 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Մաղն. 15):

* ՍԱՎԼՈՒ, իգ.<թրք. سولی sevli «նոճի» բառից, որ պրս. سرو serv համանիշ բառից է ձևացած: Այս ձևով հիշված եմ գտնում 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646): Տես և Սալվինազ:

* ՍԱՏԷԹ, ար. հիշված է Պոլսում 1742 թ (Ազգաղ. 3001). <արաբ. سعادت saʿādet «երջանկություն» բառից, որ ավելի ընդարձակ տես Սադաթ: Միջին ձևն է՝

— Սատաթ, հայր Աստուածատուրի, որ շինեց Թէոդոսիոյ Հրեշտակապետ եկեղեցին 1408 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 37:

ՍԱՏԻ, ար. հիշված է 1539 թ. (Սմբատեանց, Գեղարք. 608) կամ Սատին 1331 թ. Գանձակի Գարդմանիկ գյուղում մի գամբանի վրա (Արցախ 302 և Ազգագր. հանդ. Ե, 312):

* ՍԱՏՈՑ, ար. <իրան. Satāsp անունից կրճատված փա-

ղարքչական ձև։ Այս անունը ավանդված է հուն. Σατάσπης տառադարձությամբ և ենթադրում է զնդ. *satāspa, որի բուն նշանակությունն է «հարյուրաձի. նա որ 100 ձի ունի» (Հիւբշ. 72)։ Ասվում է նաև Սատոոն։

— 1. Սատոյ Դիմաքսեան, մին է Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից «452 թ».—Եղիշ. 150. Փարպ. խէ։

— 2. Սատոոն Գարեգեան, կուսակիցներից էր Վահան Մամիկոնեանի. մասնակցեց Վրաց պատերազմին «482 թ».—տես. Սատոոնի՝ Փարպ. հզ։

— 3. Սատոյ Թագավոր Աղուանից, հաջորդ Մրհաւանի.—Կղկնտ. Ա. ժե. Գիր. բ. Մխ. այրիվ. 23։

*ՍԱՏՐԻԿ, տր. և իգ. գղվական ձևն է Սադրամելիք անվան, որի ծագումը տես անդ։

— 1. Սատրիկ, որդի Դաւիթի կամ Վահապի, որոնք ներեցին Զաղ գյուղի Գետարգել վանքի հարկերը 1325 թ.—Արձ. Այրարատ 292։

— 2 Սատրիկ իգ. տես Սադրամելիք:

— 3. Սատրիկ դուստր Ռոստակէս քահանայի 1619 թ.—Ձեռ. Թուր. 68 ա։

ՍԱՐԱՅ, տր. ծագումն ինձ անհայտ։

— Սարայ Ամատունի, եղբայր Շապուհի և Վահանի. սպանեցին Գագիկ Արծրունին «895 թ».—Արծր. Գ. իզ.—Սուտ-Շապուհ գրում է Սարայ, Սարի և Սավայ ձևերով՝ էջ 69, 74, 75։

*ՍԱՐԱՅՄԷԼԷՔ, իգ. <պրս. سرای- sarāy «պալատ»+ արաբ ملك melek «հրեշտակ» բառերից. իբր թե «պալատի հրեշտակ»։ Մի անգամ գտնում եմ (մելէք բառի տեղ մէլիք գրված)՝

— Սարայմելիք, կին Եղդանբագշի և մայր Խոջա Ղուրաթի, որ Արաշ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 257։

ՍԱՐԱՎԱՆ, տր. ծագումն ինձ անհայտ։

— Սարավան, հայր Շնորհաւորի և Մկրտչի, որոնք հիշվում են իբրև Թաթարներից հարկադատ հարուստ վաճառականներ (ԺԳ դար).—տես. Սարավանի՝ Գիր. ծե։

ՍԱՐԱՒԹԱՅ, իգ. հիշատակված է՝

— 1. Սարաւթայ, կին Յովհաննէսի. մերձավորներն են Ստեփաննոս կրոնավորի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1421 թ.—Ձեռ. Վասպ. 341։

—՝ 2. Սարաւքայ, *անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Բ. 418)։*

** ՍԱՐԱՖ-ԹԻՔԻՆ (բուն անունն է էմիր Աբու-Մանսուր Սարաֆ-Թիքին -էզ-Զայնի). հայազգի գերին էր Ջէյնէդդին Ալիի։ Իր առաքինի վարքի պատճառով՝ տերը ազատագրեց նրան. հետզհետե առաջ գնաց. եղավ իր տիրոջ փոխանորդը վարչության մեջ. ապա դարձավ Էրբիլի տերը։ Շինեց Էրբիլ քաղաքում և շրջակա գյուղերում բազմաթիվ մզկիթներ, Էրբիլի միջնաբերդի ուսումնարանը, Մէքքէ—Բաղդադ մեծ ճանապարհի վրա. Ձայտ քաղաքի պարիսպը և զանազան բարեգործական հիշատակներ, բոլորն էլ իր սեփական դրամով։ Մեռել է 1164 թ.— Իբն Խալլիքան, էջ 201, 203։*

*ՍԱՐԳԱԹԱՆԷ, ար. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի անգամ այս անունով մի քահանա Վայոց ձորի Բաշքենդ գյուղի Ս. Յակոբ եկեղեցու մի խաչքարի վրա (թերևս 1277 թ)։—Սիսական 129, Արրտ. 1889, էջ 50։*

** ՍԱՐԳԻՍ, ար. <ասոր.* سرجس Sargis *անունից, որ փոխառյալ է հուն.* Σέργιος *ձևից և այս էլ լտ.* Sergius-*ից (Հիւբշ. 298)։ Այլ լեզուների ձևերն են գերմ. անգլ.* Sergius, *ֆրանս.* Serge, *ռուս.* Сергей, *փաղաք.* Серёжа, *իտալ.* Sergio, *վրաց.* Սարգիս, Սերգիս։ *Բուն հռոմէական անուն է և այս անունով հայտնի են բազմաթիվ անձեր. ինչ.* Sergius Galba *հռետոր,* Sergius Galba *կայսր Հռովմայեցոց,* Sergius *փոխհյուպատոս Կիպրոսի (Պօղոս առաքյալի քարոզությամբ քրիստոնյա դարձավ),* Sergius I *պապ Հռովմի 687—701,* Sergius II *պապ 844—847,* Sergius III *պապ 904—911,* Sergius IV *պապ 1009—1012։ Բայց ամենից նշանավորն է Ս. Սարգիս զորավար, որ շատ հարգված է հայոց մեջ և առասպելական դարձած։ Գործածական է եղել Զ դարից և այժմ էլ շատ սովորական է։ Ժողովրդական ձևերն են* Սարքիս, Սէրքիս, Սրքօ, Սօքի, *տարաձև* Սէրչօ *(<իտալ.* Sergio, *որով և* Սէրչոյեան *ազգանունը),* Սերգեյ, Սերյոժա *(<ռուս.* Сергей, Серёжа*)։ Նկատելի է Գլ.* Սերգիս *ձևը, որ ներկայացնում է բուն հունալատին ձևը, մինչդեռ* Սարգիս *(ա ձայնավորով) ասորի ձևն է։ Կա նաև* Սարգիսյան: *Հին գգվական ձևերն են՝* Սարգսակ, Սարգսուկ *(սեռ.* Սարգսկանն *1173 թ)։ (Այս անունները տես առանձին)։ Սրանից* Սարգսյան *կամ* Սարգիսյան, Տէր Սարգսյան *ազգանունները։— Պատահական նմանություն ունի պրս.* سرکیس Sarkīs *«ծիածան»։*

— 1. Սարգիս *զորավար Տրդատ թագավորի (Դ դար), ըստ*

եթովպական առասպելական մի պատմություն, որ հրատարակել է վերջին անգամ René Basset (La légende de S. Tertag)։ Ըստ այս առասպելի, Հայոց Տրդատ թագավորը նստում էր Թուրքիում. իր և Հռոմայեցոց կայսեր միջև՝ փոխադարձ օգնության դաշինք կնքվեց։ Բարբարոսները արշավեցին Հռոմի վրա և կայսրը խնդրեց Տրդատի օգնությունը։ Տրդատ ուղարկեց իր 40 դիւցազններին, որոնց գլխավորն էր Սարգիսը։ Կայսրը ասաց նրանց. «Ես առնվազն 50,000 զինվոր էի սպասում և ոչ թե ձեզ. դարձեք ձեր տեղը»։ Քաջերը երդվեցին կայսեր և խոստացան բոլոր թշնամիների գլուխները բերել, բայց նա չլսեց։ Քաջերը մտածելով որ եթե դառնան Տրդատի մոտ, ամոթապարտ պիտի մնան նրա առաջ, դուրս եկան բարբարոսների դեմ կռվի։ Թագավորը լսեց, որ քաջերը գալիս են իր դեմ, ուղարկեց 1000 ձիավոր, ապա 2000, ապա 10,000, բոլորն էլ կոտորվեցին։ Այն ժամանակ թագավորը իր բոլոր զորքով հարձակվեց նրանց վրա։ Քաջերը ջարդեցին բոլորին և թագավորի գլուխը կտրելով՝ բերին կայսեր առաջ։ Կայսրը հիացավ, միևնույն ժամանակ սարսափեց, թե ինչ պիտի լինի իր վիճակը, եթե պատերազմ ծագի իր և Հայոց միջև։ Ուստի դավաճանությամբ խնջույք կազմեց և կոտորեց այն քաջերին։ Ազատվեց միայն Սարգիսը՝ մի կնոջ օգնությամբ և իր ձին աշտանակելով՝ հասավ իր երկիրը։ Տրդատը լսելով իր քաջերի մահը, սկսեց լալ և ասաց. «Ո՞վ պիտի լուծի իմ վրեժը անիրավ կայսրից»։—«Ե՛ս», ասաց Սարգիսը։ Տրդատ իր զորքն առավ և Սարգսի հետ արշավեց Հռոմի վրա։ Կոտորեցին հռոմայեցիներին և կայսրին էլ սպանեցին։ Դարձան իրենց երկիրը, բայց Սարգիսը քուն չուներ, որովհետև միշտ իրեն խորասուզված էր զգում արյան ծովի մեջ։ Եպիսկոպոսների խորհրդով՝ Սարգսի անվան 40 եկեղեցի շինվեց և 3 օրվա ծոմ հաստատվեց, որի վրա Սարգիսը իր հանգիստը գտավ (տես Սարգիսեան, Ուս. հին կտ. անվաւեր գրոց, էջ 181)։—Սարգիս զորավարի մասին մի ուրիշ առասպել էլ կա Վրաց գրականության մեջ։ Ըստ այս առասպելի՝ Սուրուլի որդի Սարգիսը մի դիւցազն էր. ընդունեց կուսակրոնություն, Դուինի մոտ՝ Արարատի ստորոտում մի վանք կառուցեց և ճգնում էր այդ վանքում։ Արաբները արշավեցին Դուինի վրա, Սարգիս ճգնավորը հաղթեց նրանց և վանեց։ Ավելի հետո արշավեց Սպահանի սպասալարը, որ բռնեց Սարգսին և տարավ Սուլթանին։ Սուլթանը

առաջարկեց ընդունել Մահմեդի կրոնը, Սարգիսը մերժելով՝ նահատակվեց (Վրաց աղբ. Ա. 114—118)։ Այս նույն Ս. Սարգիս զորավարի մասին մի առասպել էլ պատմում էին Պոլսում, որ լսել եմ իմ մանկության ժամանակ։ Ս. Սարգիսը հայ էր. ապրում էր Պոլսում. նա սիրեց մի հույն աղջկա, կարծեմ իշխանուհի, որին ուզեց առևանգել։ Հեծավ ձին, գավակին վերցրեց հույն աղջկան և փախավ։ Գիշեր էր և Պոլսի բոլոր դռները փակած էին։ Ինչպես հայտնի է, Պոլիսը մի շատ մեծ բերդաքաղաք էր. ամբողջ քաղաքը պատած էր ամրակուռ պարիսպներով և բերդերով. դրանք թեև քանդված ու փլփլած, բայց մնում են մինչև այժմ։ Պարիսպներ և բերդեր էլ կան որ բոլորովին անվնաս են մնում։ Քաղաքի մի խումբ թաղերը մինչև այժմ էլ կոչվում են պարիսպների դռների անունով։ Այսպես՝ Ախըռ գափու (պետական ախոռատան մոտիկ դուռը), Պահճե գափու (պարտեզի դուռը), Գում գափու (ավազակույտի դուռ), Ենի գափու (Նոր դուռ), Նառլը գափու (Նռնենի ծառի դուռ), Էտըրնե գափու (Ադրիանապոլիս տանող դուռը), Սիլիվրի գափու (Սիլիվրի տանող դուռը), Թոփ գափու (այն դուռը՝ որի առաջ Ֆաթիհ սուլթանը դրել էր ամենամեծ թնդանոթը)։ Այս բոլորը թուրքերեն են։ Հունարեն է կոչվում միայն Սամաթիա գափու (որ ψάμμος «ավազ» բառից է և նույնպես նշանակում է «Ավազադուռ»)։ Գում գափուի մոտ կա և մի դուռ, որ կոչվում է Չաքլատը գափու (թրք. «ճաքած դուռ»)։ Երբ Սարգիսը փախավ, հույները ետևից ընկան բռնելու համար։ Սարգիսը դռնէ դուռ սլացավ. բայց բոլորը փակ էին. վերջապես հասավ մեր հիշած վերջին դուռը, որ նույնպես փակ էր։ Գոչեց չաքլա՛ «ճաքի՛ր»։ Դուռը ճաքվեց, ճաքվածքի միջով անցավ Սարգիսը և ազատվեց։ Այդ օրվանից սկսած՝ այդ դուռը կոչվում է Չաքլատը գափու (ճաքած դուռ)։

— 2. Սարգիս փակակալ (լուսարար) Ներսէս Բ Աշտարակեցի («548—557 թ») կաթուղիկոսի. հիշված է Վրաց աղբ. Ա 107.— հավանաբար շփոթված է Սարգիս զորավարի հետ՝ աշակերտ Յովհան Մայրավանեցու, որ փակակալն էր Եզր կաթուղիկոսի։

— 3. Սարգիս Բխերա (կամ Բուխարացի), միայնակյաց Ասորիքում, աղանդավոր Արիոսական և Կերինթեան. ծանոթանալով Մուհամմեդի հետ՝ առաջին անգամ սովորեցրեց նրան քրիստոնեական կրոնը «585 թ»։— Ոմանք հայ են համարում սրան։— Տաճիկների մոտ տարածված ավանդություն է թե Մուհամմեդի ուսուցիչը հայազգի Սարգիս Բուխարացին էր։ Հմմտ. նաև մեր

հրատարակած «Պատմութիւն Եղիա քահանայի» (Վաղարշապատ 1908—Վիեննա 1930), էջ 27, § 65 «ասպանի Պէխրա քիթապնաա հօք, քի Մուհամմէտին ռասուլի խաի»։

— 4. Սարգիս հայ, մարտիրոսական մահով նահատակվել է Միջագետքում (Զ դար), ինչպես պատմում է Յովհաննէս Եփեսացի ասորի մատենագիրը.—Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 134։

— 5. Սարգիս սեպուհ Վահեւունի, մասնակցեց Սամուէլ Վահեւունու ապստամբութեան ընդդեմ Մօրիկ կայսեր (†602 թ), բայց բռնվեց և գլխատվեց Կարինում.—Սեբ. ժե։

— 6. Սարգիս Տէր Զօրականեան, մին այն իշխանավոր անձերից, որոնց գրավոր կերպով դիմում է Սահակը և զղջում է հայտնում որ նեստորական դավանանքին էր հարել (Զ դար)։—Գիրք Թղ. իդ.—տես. Սարգսի անդ։

— 7. Սարգիս Տայեցի, մասնակցեց Սմբատ Վրկան մարզպանի պատերազմին Քուշանաց դեմ «608 թ».—Սեբ. իգ։

— 8. Սարգիս Դիմաքսեան, մասնակցեց Սմբատ Վրկան մարզպանի պատերազմին Քուշանաց դեմ «608 թ».—Սեբ. իգ։

— 9. Սարգիս Տրպատունի, մասնակցեց Սմբատ Վրկան մարզպանի պատերազմին Քուշանաց դեմ «608 թ».—Սեբ. իգ։

— 10. Սարգիս եպիսկոպոս Արարացի, հիշված է իբր վկա թե Գուրգէն քարտուղար Հայոց Մեծաց առացել է Եսկայ գիրքը 627 թ. և կամ թե Յովհաննէս կաթուղիկոս Գաբեղեանը թարգմանել է տվել այն՝ 578 թ.—Յղ. մովս. և դաւթի, էջ 87։

— 11. Սարգիս զօրավար, որին Փոքր-Հայոց կուսակալ Ծապուհը ուղարկեց Արաբաց Մուավիէ ամիրապետի մօտ և գրգռեց նրան՝ պատերազմելու հոռոմոց դեմ (657 թ).—Չամչ. Բ. 358։

— 12. Սարգիս աշակերտ Յովհաննու Մայրավանեցւոյ, թարգմանել է Յուլիանոս Ալիկառնացու գիրքը և նրա հետևողութեամբ հերձված հնարելով՝ վռնդվել է իր վարժապետի մոտից (Է դար).—Յհ. կթղ. ժբ. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 80, Կիր. 31. Վրդ. լգ.—տես. Սարգսի՝ Յհ. կթղ. ժբ. Վրդ. խդ.— Չամչ. Բ. 543—4, Սեդրակեան, Հայ. եկեղ. պատկերյարգութիւնը, էջ 342, Փափազեանց, Պատմ. եկեղ. 326, Շողակաթ Ա. 111—2, Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 228. Սարգիսեան, Ուս. Թոնրակեց. աղանդին 50.—տես նաև հաջորդը։—Մայրագոմեցոց աղանդի էութեան մասին տես Ձեռ. Դադեան, Ա. 94 ա։

— 13. Սարգիս աշակերտ Յովսէփ անապատականի, որի հետ

*Երուսաղէմ գնաց՝ մասունքներ բերելու համար Արցախ (Է դար).* —*Գրծ.* Սարգսով՝ *Կղկնտ. Բ. ծ (հրատ. Էմինի ունի* սարկաւագաւս)։

— 14. Սարգիս *տէր Սիւնեաց. յաջորդեց Պետրոսին (Է դար).* —*Օրբ. ժգ։*

— 15. Սարգիս *վարդապետ Ճոնեանց. Աստուածածնի խաչը Շիրակի Դպրավանքից փոխադրեց Վարձիա (Ախալքալաք).— Է դար.—Վրդ. լդ։*

— 16. Սարգիս *ոմն, որ գրել է Առաջաւորաց պահոց մեկնութիւնը Գրիգոր Վեստախրի խնդրանոք (Է դար).—Զմչ. Բ. էջ 585։*

— 17. Սարգիս *եպիսկոպոս Ամատունեաց. ժամանակակից Եղիա («703—717 Թ») կաթուղիկոսի. գնաց թաղելու Դաւիթ Դունեցուն, որ Արդլլայի ձեռքով նահատակվել էր «701 Թ».— Կղկնտ. Գ. ը. Ցայսմ. մրտ. 31.*—Սարգսակ՝ *Վկ. դաւ. 94.*—Սարկաւագ՝ *Այրարատ 196։*

— 18. Սարգիս *եպիսկոպոս Եդեսիոյ հայոց. ժամանակակից Յուլիանոս ասորի պատրիարքի, որ գահ է բարձրացել 706 թվին, իբր հաջորդ Աթանասի և մեռել է 708 թվին, աթոռը թողնելով Եղիային։ Սարգիսը հերձվածող էր և ունէր իրեն համախոհ և գործակից մի եղբայր՝ Յովհաննէս անունով։ Երկուսով միասին մի գիրք գրեցին Յուլիանոս պատրիարքի դեմ՝ 705—708 Թ։ Պատրիարքը կանչեց նրանց, խստիվ հանդիմանեց ու պատժեց։ Ասորի գրականության մեջ կան երեք գրվածքներ* „Against Sergius, called the Armenian, and his brother John“ *վերնագրով (Ը դարից)։ Սարգիսեան, Ուս. Թոնրակեց. աղանդին, էջ 51—52, 86 կարծում է թե այս Յովհանը Մայրագոմեցին է և նրա եղբայր Սարգիսն էլ նրա հերձվածող աշակերտ Սարգիսն է։*

— 19. Սարգիս *եպիսկոպոս Ռոտակաց. ժամանակակից Եղիա «703—717 Թ» կաթուղիկոսի.— Կղկնտ. Գ. ը։*

— 20. Սարգիս *զորավար (սուրբ). նահատակվեց Արաբների ձեռքով Բագրեւանդում, Թէոդոս թագավորի (Գ? 715—7 Թ) ժամանակ.—Ուռհ. 178. Տարօն. Բ.§15, Այրարատ 524։*

— 21. Սարգիս *եպիսկոպոս Տայոց, անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի («726 Թ»).—Գիրք Թղ. ծէ. Կանոն. 149։*

— 22. Սարգիս *եպիսկոպոս Սասնոյ. անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի («726 Թ»).—Ազգապ. 839։*

— 23. Սարգիս *աղանդապետ Պաւլիկեանց, որդի Դրիւնոսի.*

ծնվել է Գաղատիայի Անիա գավառի Տարիա քաղաքի մոտ. կոչվում է նաև Տիւքիկոս. գլուխ էր կանգնել Պաւլիկեանների մի առանձին կուսակցության, որ իր անունով կոչվում էր Սարգիսեան, իբրև հակառակորդ Վահանեան կուսակցության։ Արդեն 801 թվին սկսել էր իր գործունեությունը և, ինչպես ասում է իր թղթերի մեջ, «ընթացայ յարևելից յարևմուտս և հիւսիսոյ մինչև հարաւ՝ Քրիստոսի (Պաւլիկեանց) Աւետարանը ծանուցանելու համար»։ 834 թվին, երբ լեռան վրա մի ծառ կտրելով էր զբաղված, Նիկոպոլսեցի մոլեռանդ մի հավատացյալ զարկավ սպանեց նրան։ Իր մասին խոսում և տեղեկություններ են տալիս Պետրոս Սիկիլիացի և Փոտ պատրիարք Ցունաց։ Ջամչ. Բ 895 և Սարգիսեան, Ուս. Թոնրակեց. աղանդին, էջ 59—62 համարում են մեր Սմբատ Թոնդրակեցին։

— 24. Սարգիս վանական Տաթևի. հիշվում է Տաթևի 839 թվի արձանագրության մեջ.—սեռ. Սարգսի՝ Օրբ. լը։

— 25. Սարգիս Սիւնի. հայր Թարքէի, որ իբրև վկա հիշվում է Տաթևի 839 թվի արձանագրության մեջ.—սեռ. Սարգսի՝ Օրբ. լը։

— 26. Սարգիս յԱրիտայ, իբրև վկա հիշվում է Տաթևի 881 թվի կալվածագրում.—Օրբ. լթ։

— 27. Սարգիս գրիչ. Համազասպ Մամիկոնեանի հրամանով օրինակեց Ղևոնդ պատմիչը (Թ դար).—Ջեռ. Վենետ. Բ. 292։

— 28. Սարգիս Արծրունի տես Աշոտ—(№38) Սարգիս Արծրունի † 904 թ։

— 29. Սարգիս, եղբայր Մովսէս և Դաւիթ քահանաների. երեքն էլ նահատակվեցին Նոր ոստիկանի ձեռքով՝ Բիւրական ամրոցի առման ժամանակ «926 թ».—Յհ. կթդ. կզ։

— 30. Սարգիս քահանա, որի առաջնորդությամբ Եղիշէ երեց և նկարիչը շինել է Գնդեվանքի զանգակատունը 931 թ.—Սիսական 106։

— 31. Սարգիս, առաջին առաջնորդ Գնդեվանից, որ հիմնեց Սոփիա իշխանուհին և արձանագրեց նրա վրա հետևյալ գեղեցիկ տողը. «Մատանի էր անակն Վայոց ձոր, շինեցի զաս և եդի ակն ի վերայ» (936 թ)։—Օրբ. խթ. հմմտ. նաև § 44։

— 32. Սարգիս զորավար Աշոտ-Դերենիկ թագավորի Արծրունեաց. հաջորդ Ապլղարիպի (940 թ. ըստ Ջամչ. Բ. 826).—Ուռհ. 30, Սմբ. պատմ. 37։

— 33. Սարգիս քահանա. գրիչ. Թորոս քահանայի ծախսով

օրինակից Ավետարանը 966 թ. (այժմ գտնվում է Անտոնեան հայրերի գրատան մեջ).—Զարբ. Թրգմ. 158. Տաշեան, Ակնարկ 20 և 183։ Rapport Arm. 116։

— 34. Սարգիս, վանական Գանձասարի վանքի. անդամ Թաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը.— Անան. տպտ. 134բ։

— 35. Սարգիս վանահայր Հոռոմոսի վանքի. անդամ Անիի եկեղեցական ժողովի, որ գումարվեց քննելու համար Վահան կաթուղիկոսի արարքները, գահընկեց արեց նրան և ընտրեց Ստեփաննոս կաթուղիկոս Սևանեցուն «969 թ».—Ասող. Գ. ը։ Մեռած է համարվում շուրջ 979 թ։ Արքէլ վրդ. կոչում է սրան Սարգիս Ճոն և ըստ մի արձանագրության համարում է հիմնադիր Հառիճի վանքի։ Ալիշան (Շիրակ 158, 163) չի ընդունում, որովհետև արձանագրության մեջ այդպիսի անձ չկա։ Տես № 139։

— 36. Սարգիս եպիսկոպոս, որին Աշոտ Գ Ողորմածը ուղարկեց այն բանակի հետ, որ իբր օգնական տվեց Զմշկիկ կայսեր 975 թ.—Սմբ. պտմ. 33։

— 37. Սարգիս առաջնորդ Հոռոմոսի վանքի, սկսեց շինել Շիրակի Կարմիր վանքի Ս. Գրիգոր եկեղեցին 984 թ. բայց մի տարուց մեռավ. շարունակեց և ավարտեց շինությունը նրա եղբայրն ու հաջորդը՝ Սողոմոն 985 թ.— Շիրակ 169։

— 38. Սարգիս սԹ. ազատ. Հեր գավառում տեսնելով որ Պարսիկները մի խումբ քրիստոնյա երախաներ գերի են տանում, հարձակվեց գերեվարների վրա, բոլորին կոտորեց և երախաներին ազատեց 988 թ.— Ասող. Գ. ժԹ։

— 39. Սարգիս վարդապետ, հիմնադիր և վանահայր Կարնոյ Հնձոց վանքի (Ժ դար).—տես. Սարգսի՝ Ասող. Գ. է։

— 40. Սարգիս վարդապետ կաթուղիկոսարանի (Ժ դար).— Լաստ. բ։

— 41. Սարգիս վայելչաբան «յաշխարհէն Աղուանից». նշանավոր կրոնավոր. մանուկ հասակից բերան էր արել Ս. Գիրքը (Ժ դար).—Ասող Գ. Թ։

— 42. Սարգիս, անծանոթ պատմիչ, որին հիշում է Ղազար Ջահկեցին. ժամանակն անհայտ.—Հայապ. 13։

— 43. Սարգիս աղանդապետ Թոնդրակեցոց. հաջորդ Աբքայի (նախ քան ԺԱ դար).— Մագ. Թղ. կէ. Հայապ. 551։

— 44. Սարգիս Բ. վանահայր կամ առաջնորդ Գնդեվանից. (տարբեր է Սարգիս Ա-ից, որի համար էլ պատմիչը կոչում է

«հայր Սարգիս մինն»). Ջկնտրած սարից ջուր է բերել վանքը՝ 1008 թ.—Օրբ. խթ. Հմմտ. № 31։

— 45. Սարգիս Ա. կաթողիկոս Սևանեցի «992—1019 թ». մանուկ հասակից կրոնավորեց Սևանի վանքում. եղավ վանահայր Շողագայ և ապա Սևանայ վանքի. ընտրվեց կաթողիկոս իբրև հաջորդ Խաչիկի. վերահաստատեց Սիւնեաց մետրապոլտութիւնը. իր հրամանով գրեց Ստեփաննոս Ասողիկը իր Պատմութիւնը. ծերութեան պատճառով հրաժարվեց գահից «1019 թ» և մեռավ «1022 թ».—Ասող. Ա. ա. Գ. լը. Լաստ. բ. Միխ. ու. ին (=իը). Սամ. անեց. 103. Քհնպ. 272. Մխ. այրիվ. 21. Օրբ. ժմ. 11, 12. Մխ. անեց. գ. Ուռհ. 40, 44, 51. Կիր. 50. Վրդ. խը, ծը. Սմբ. պատմ. 42, 43, 48. Օրբ. ծա, ծե, հա. Առաք. պատմ. 480. Դրնդ. 302.—սեռ. Սարգսի՝ Ասող. Գ. լը, խե, խթ. Լաստ. բ, իբ. Կիր. 50. Օրբ. խթ, ծգ, ծե, ծգ.—բց. ի Սարգսէ՝ Օրբ. ծա.—Զարբ. Թրգմ. 452. Ազգապ. 1155—1188։

— 46. Սարգիս ստացող. մի Աւետարան գրել տվեց Քրիստափոր կրոնավորին 1033 թ.—Ձեռ. Կարին. 17։

— 47. Սարգիս Փարշիկ, նկարիչ, ինքն է որ նկարազարդել է Անիի Ս. Փրկիչ եկեղեցին՝ 1033 թ.—Մառ, Брат. пом. 05—7, Սեդրակեան, Հայ եկեղ. Պատկերազարդութիւնը, էջ 93։ Հմմտ. № 120։

— 48. Սարգիս վանահայր Հոռոմոսի վանքի. հիշված է 1036 թ.—Արձ. Շիրակ 31, 28։

— 49. Սարգիս վեստ և դուքս Արևելից. անթիպատ պատրիկ. կոչված նաև հայկազն և աղատ. Սիւնեաց ցեղից. կինն էր Տիկնաց տիկին դուստր Գր. Մագիստրոսի, ինչպես գրում է ինքը Տեկորի 1042 թվի արձանագրության մեջ (Շիրակ 135)։ Սարգիսը մեծ իշխանն էր Յովհաննէս-Սմբատ թագավորի («1020—1042 թ»)։ Սրա մահից հետո գրավեց արքունի գանձը և ուզեց թագավոր դառնալ։ Մեծ բաժին ունի Գագիկ Բ-ի անկման և Անիի գրավման դավաճանական գործում։ Զանազան բերդեր շինելուց հետո, շինել է Խցկոնքը, Սարգսի վանքը, Ծառաքարը։—Լաստ. ժ. Ուռհ. 67, 87, 93—4. Սամ. անեց. 106. Կիր. 50. Սմբ. պատմ. 56, 58, 61, 62. Մխ. այրիվ. 73. Օրբ. ժմ. 12.—Ազատ-Սարգիս՝ Ուռհ. 84. Սամ. անեց. 107.—Սարգիս հայկազն՝ Տաշեան, Ցուց. 658.—սեռ. Սարգսի՝ Լաստ. ժ.—Արձ. Շողակաթ 180, Շիրակ 126.—Վրաց արբ. Ա. 205?

— 50. Սարգիս վարդապետ Սանահնեցի. 1040 թվին, պա-

լատի գանձարանում գտավ «Եփրեմի և Ոսկեբերանի Մեկնութիւն Պօղոսի» անտեր և փոշիների մեջ ընկած։—Զարբ. Թրգմ. 455. Այրարատ 497, Շիրակ 50, Հայապ. 311—2 (համարում է Սևանեցին, որ է հաջորդը)։

— 51. Սարգիս *Սևանեցի. նշանավոր վարդապետ և առաջնորդ Սևանայ վանքի. որան իր մոտ հրավիրեց Գագիկ Բ Թագավորը՝ միասին ուսումը պարապելու համար. Թղթակցել է Գրիգոր Մագիստրոսի հետ։ Սա է որ Յովհաննէս-Սմբատի արքունի գանձարանում, 1041 Թ. գտել է Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի ձեռագիրը (գրված 999 Թ), փոշեթաթախ և լքված վիճակում, որի մասին ահա իր խոսքերը. «Յամի յորում էր հայ Թուականս ՆՂ (=1041) և վճարեցաւ ի մարդկանէ արքայն Հայոց մեծիմաստն Յովաննէս, գտի ես Սարգիս վարդապետս զգիրքս զայս յարքունական տան գանձուն, անգեալ յանկեան միում, անայցելու Թափառեալ Թաւալէր յաճիւն յատակին, և գրեաԹէ լայր լռելեան. իսկ իմ հայեցեալ խնամով ի գրանոցին, և ըստ սովորական մեր տխրժակացս զ յօճունս բացեալ ի բանսն բերկրճի. և սա զատուցեալ յԵկերացն կայր կարաւտ ձեռին առ ինքն կառկառելոյ. զոր ապա առեալ իմ ընդ իս տարա հանեալ ի բանդէն» (նմանահանությունը տես Շիրակ 50)։ Այս ձեռագիրը այժմ գտնվում է Վենետիկի վանքում։ Սարգիսը կենդանի էր դեռ 1044 Թվին։ Սրանից տարբեր է Սարգիս կաթուղիկոս Սևանեցին։—Մագ. Թղ. իր. Ուռհ. 179.—իր աշխատությունների մասին տես Զարբ. Հին դպր. 590—591։*

— 52. Տէր Սարգիս, *որ իր հիշատակին երկու տող արձանագրություն է թողել Սանահինում 1056 Թվից.—Ազգագր. հանդ. Դ. 295, Է. 386։*

— 53. Սարգիս, *որդի Արտաւազդայ, սպաթար կանդիդատ, տանուտեր Անի քաղաքի 1057—64 Թվերին. ազատեց քաղաքը զանազան հարկերից.—Արձ. Շիրակ 70, 101ա։*

— 54. Սարգիս *կաթուղիկոս, քեռորդի Պետրոս կաթուղիկոսի. ծերունի եպիսկոպոս էր և նստում էր Սեբաստիոյ Ս. Նշան վանքում. Փիլարտոսի հրամանով նստավ կաթուղիկոս Հոնիում (Մարաշի մոտ) «1076 Թ». մեռավ մի տարուց «1077 Թ».—Ուռհ. 210, 215, 252. Սամ. անեց. 117. Վրդ. կ, կր.—տես.* Սարգսի՛ *Վրդ. կ. Ուռհ. 215։*

— 55. Սարգիս, *իր եղբայրների՝ Դաւթի և Գորգիի հետ*

նորոգել է «սուրբ զորքս», Բորչալուի Կուրթան գյուղի մոտ՝ 1086 թ.—Ազգագր. հանդ. Է, 338։

— 56. **Սարգիս** Ա դրան երեց Կիւրիկէ Բ Թագաւորի Կիւրիկեանց. եղավ եպիսկոպոս և առաջնորդ Հաղբատի «1081 թ» և նրանից է սկսվում Հաղբատի եպիսկոպոսական հաջորդությունը։ Վանքի համար շինել է ջրաղաց, որ դարձրել է «ազատաղաց». տնկել է այգիներ և պարտեզներ «1086 թ», ինչպես հիշատակում է իր արձանագրության մեջ։ Ունի ևս մի Արձ. 1089 թվից։—Մխ. այրիվ. 75. Կիր. 56.—սեռ. Սարգսի՝ Կիր. 56.—Բժշկեան. Ճանապ. ի Լեհ. 79, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 70, Ազգագր. հանդ. Գ. 325։

— 57. **Սարգիս** (կամ Աւագ-Սարգիս) քուրդ, որդի Խոսրովիկի, եղբայրն է Բարիմ. եկավ բնակվեց Կիւրիկեանների մոտ, քրիստոնյա դարձավ և ստացավ Խոշորնի բերդը. իր սերունդը մեծացավ և առաջդիմեց և կազմեց Զաքարեան-Երկայնաբազուկների տոհմը։ Պապի հայրն է Զաքարէ սպասալարի և Իւանէ Աթաբէկի (ԺԱ դար).—սեռ. Սարգսի՝ Վրդ. ձր. Հայաս. 447։ Նվիրատու Հաղբատի վանքին, ուր թողել է իր մի արձանագրությունը (Շողակաթ 74)։— Արձ. Ազգագր. հանդ. Գ. 304, Է. 391։

— 58. **Սարգիս** առաջնորդ Ս. Կարապետի. սրան է գրում Գր. Մագիստրոսը իր իգ—իզ նամակները. Թվում է թե աշակերտել է Մագիստրոսին (ԺԱ դար).—Մագ. Թղ. իե (իգ, իդ, էգ, խա)։

— 59. **Սարգիս** կառամարտիկ տելետեա, որին Գր. Մագիստրոսը գրել է մի թուղթ՝ թե ինչպես պետք է բժշկել իր ծանր ջերմը (ԺԱ դար).—Մագ. Թղ. կ։

— 60. **Սարգիս** քահանա գրիչ. օրինակել է Աւետարանը (ԺԱ դար).—Manus. bibl. nat. էջ 6։

— 61. **Սարգիս** վարդապետ Անւոյ. թղթակից Գր. Մագիստրոսի, որ գրել է նրան իր ծը—խա թղթերը։ Երբ Մագիստրոսը հեռացավ Անիից, Գագիկը ուղարկեց Սարգիսին նրա մոտ՝ բանակցության համար։ Ավելի ընդարձակ տես Կոստանեան, Մագ. Թղ. էջ 294—6 (ԺԱ դար).--Մագ. Թղ. ժը, ժթ, խա.—սեռ. Սարգսի՝ Մագ. Թղ. ի։

— 62. **Սարգիս** կաթուղիկոս 1111 թ.—Ջեն. Դաղեան, Ա. Ցր։ (Այս թվին Սարգիս անունով կաթուղիկոս չկա. Սարգիս Ա նստել է 992—1019 թ.—Աղթամարի կաթուղիկոսությունը սկըսվում է 1113 թ.—բայց անշուշտ վրիպակ է թվականը (ԵՃԿ),

*որովհետև գրված է* «ի խսանութեան *(իմա՛ յիշխանութեան) յաղթող իշխանին Իսմայելին». այս անունով պետք է հասկանալ Շահ Իսմայիլը, որ թագավորեց 1485—1523 թ. ուստի Սարգիս կաթուղիկոսն էլ կլինի Սարգիս Գ 1484—1515։ Այս միջոցին Աղթամարի կաթուղիկոսն է Ատոմ՝ 1496—1510 թ)։*

— 63. Սարգիս *եպիսկոպոս Շամիրամաձորի. մին այն եպիսկոպոսներից, որոնք օծեցին Աղվանից Գրիգորիս կաթուղիկոսին «1139 թ».— Հայապ. 385։*

— 64. Սարգիս *վանահայր Խամշի վանքի. Աղվանից Գրիգորիս կաթուղիկոսին ձեռնադրողներից մին է «1139 թ».— Հայապ. 386։*

— 65. Սարգիս *վարդապետ «ճգնաւոր և գլուխ վարդապետաց». իր ընկեր Գրիգոր վարդապետ Գանձակեցու հետ գետնաւոյզ եղավ Գանձակի երկրաշարժին «1139 թ».—Օրբ. ժմ. 17 և Հայապ. 362 (իսկ Սամ. անեց. 132 հաշվում է ՇՁԸ=1121 թ)։*

— 66. Սարգիս *վարդապետ, աշակերտ Աղվանից Դավիթ վարդապետի. Աղվանից Գրիգորիս կաթուղիկոսին ձեռնադրողներից մին էր «1139 թ».—Հայապ. 385. հիշված է Գրիգորի հետ. թերևս նույն է նախորդի հետ։*

— 67. Սարգիս *մեծ վարդապետ ի Փառիսոսոյ, որդի քահանայի. իր աշակերտներն են Երեմիա (անձրև), Խաչատուր, Գրիգոր, Յովհաննէս և Սամուէլ Անեցիք. մեռել է ՇՀԸ=1129 թ. ըստ Սամ. անեց. 128։ (Այս բոլոր տվյալները ուրիշները պատմում են Յովհաննէս (№ 163) Սարկաւագ վարդապետի համար. հատկապես տես Երեմիա Անձրևիկի դեպքը (Վրդ. հ), որից հետևում է որ երկուսը նույն անձերն են։ Ոսկեան, Մատեն. քնն. էջ 3 գտնում է որ Անեցու այս կտորը նոր հավելված է կամ* Սարգիս *բառը պետք է կարդալ* Սարկաւագ։ *Մեծոփ. 38 ևս հայ նշանավոր աստվածաբանների շարքում հիշում է Սարգիս Հաղբատացին, որ ուրիշը չի կարող լինել, եթե ոչ Յովհ. Սարկաւագ վարդապետը, որի մահը դրվում է «1129 թ», իսկ Կոստանեան, առանձին քննությամբ տանում է «1139 թ»։*

— 68. Սարգիս *ռէս, որի տապանաքարը գտնվում է Երընջակում, 1151 թվից.— Սմբատեանց՝ Երնջակ 360։*

— 69. Սարգիս, *միանալով Արտաւազի հետ և ճարտարապետությամբ Յովհաննէսի շինել է Արցախի Սրուեղ վանքի եկեղեցին 1152 թ.—Արցախ 340։*

— 70. Սարգիս *իշխան ի Սերաստիա. նահատակ Թէոդորոս*

աբեղայի մարմինը Թաղեց Ս. Նշանի վանքում 1155 Թ.— Յայսմ. յունիս 22> Նոր. վկ. էջ 10։

— 71. Սարգիս, գրիչ կամ արձանագրող (քարտաշ), հիշված Արտաւազդայ վանքի արձանագրության մեջ 1161 Թ. Սմբատեանց, Գեղարքունի 365։

— 72. Սարգիս վարդապետ Շնորհալի. աշակերտեց Ստեփաննոս մանուկ վարդապետին՝ Քեսունի Կարմիր վանքում, իրեն ընկերակից ունենալով Իգնատիոսին, Գրիգորիսին և Ներսես Շնորհալուն։ Եղավ առաջնորդ Քարաշիթու Ճգնավորաց վանքի, ուր «1150 Թվին» գրեց Եօթն Կաթուղիկեայ Թղթոց մեկնությունը (տպ. Պոլիս 1743 և 1826 Թ. առաջին տպագրության սխալների մասին խոսում է Զամչ. Գ. 397)։ Այս մեկնության համառոտն էլ պատրաստեց Սարգիսը «1166 Թ»։ Իրեն են վերագրում նաև երեք հորդոր կամ ճառ, նույնպես Ղևոնդեանց շարականը (Տաշեան, Ցուց. 1148), Մեկնութիւն Եսայեայ (Զարբ. Հին դպր. 647 և 720—721. այս մասին Ալիշանի կարծիքը տես Սիսուան 103բ), Մեկնութիւն Ղուկասու Աւետարանի (Ձեռ. Վենետ. Բ. 431), Դրուատ ի յիշատակ սուրբ մարգարէին Դաւթի և Յակոբայ առաքելոյն (Ձեռ. Վենետ. Բ. 232), հինգ ճառ առացեալ երանելւոյն սրբոյն Սարգսի վարդապետի (Ձեռ. Վենետ. Բ. 368). Իրն է արդյոք Հրեշտակապետաց շարականը՝ Թիվ ՂԱ. «Սարաֆիելի որոտմամբք», որի ծայրանունն է Սարգիս։ Ապրելով Քարաշիթու վանքում, նույն տեղն էլ մեռավ ու թաղվեց։ Իր կենսագրությունը անանուն հեղինակից տես Ձեռ. Վենետ. Բ. 723։— Կիր. 64, Կրպտ. սարգ. յոջ. և նխգր. Տաթև. ոսկիփ. 317. Մխ. այրիվ. 79.—սեռ. Սարգսի՝ Կրպտ. սարգ. յոջ. և նխգր. Սարգ. (բոլոր գրքերի սկիզբը).—բց. ի Սարգսէ՝ Կրպտ. սարգ. նխգր։—Զարբ. Հին դպր. 644—8, Ալիշան՝ Շնորհ. 114—5, Ձեռ. Դագեան, Ա. 91բ, Սիսուան 408—9։

— 73. Սարգիս քահանա, որդի Ջաւախ անուն պարսկի, մահմեդականությունից քրիստոնյա դարձած, ինքն էլ տանջված քրիստոնեության համար. նահատակ Յովսէփ (№ 29) Դունեցու մարմինը գողանալով տարավ Թաղեց Հաւուցթառի վանքը 1170 Թ.—Յայսմ. յունիս 19. Նոտարք 34. Նոր վկ. 59—60։

— 74. Սարգիս, բարեպաշտ մարդ, մշակ էր Սևուշ անունով մի պարսկի տանը, որ գտնվում էր Դուինի մոտիկ՝ Նորաշէնք գյուղում։ Սրանից խրատվելով Սևուշի որդին՝ Բուպագրը (Աբու-

ինքիր), քրիստոնյա դարձավ և ապա նահատակվեց 1170 թ. (ավելին տես Ցովսէփ (№ 29) Դունեցի.— Նոր վկ. 47։

— 75. Սարգիս ճգնավոր քահանա, ապրում էր Իշխանի վանքում (Մազազ գավառ, Բջնիի մոտ). մի ժամանակ նույն Բուպագրը մնաց նրա մոտ և նրա խորհրդով գնաց Հաղբատ և Սանահին վանքերը (Նոր վկ. 50)։—Ըստ Ցայսմ. նույն Սարգիսը Թեղենեաց վանքումն էր (Նոր վկ. 68)։

— 76. Սարգիս քահանա, նույն Նորաշէնք գյուղի (Դուինի մոտ). համոզում էր Ցովսէփ Դունեցուն հեռանալ գյուղից և ծածուկ պաշտել քրիստոնեությունը (Նոր վկ. 53)։

— 77. Սարգիս, մերձավոր Աւետիս երեցի, որ նրա հոգուն գնեց մի Աւետարան՝ Մանազկերտի Խազզուղք գյուղում, 1171 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 545։

— 78. Սարգիս գրիչ. միաբան Հաղբատի վանից. վանահայր Բարսեղ (№ 19) Ա արքեպիսկոպոսի հրամանով և Հաղբատի վանքի համար օրինակեց Բարսեղ Կեսարացու գործերը՝ 1172 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1268, Զարբ. Թրգմ. 341, Հայապ. 382։

— 79. Սարգիս քահանա, նախապես կոչվում էր Ասպետ. եղբայր Գրիգոր Տղայի. վախճանվեց երիտասարդ հասակում՝ նախ քան 1174 թ.—Թորոս աղբ. Ա. 118։

— 80. Սարգիս Երևանցի, որդի Մեհեանի, թոռ Մարեմաւրի, ժամանակից Հաւուցթառի եկեղեցու շինության, 1177 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 75։

— 81. Սարգիս որդի Զխի, իր այգին նվիրել է Հաղբատի վանքին 1179 թ?—Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 49։

— 82. Սարգիս եպիսկոպոս Լաւոդիկէի. անդամ Հռոմկլայի եկեղեցական ժողովի «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։

— 83. Սարգիս, իր եղբայր Բարսեղ երեցի և մյուս եղբայրների հետ, որդիք Սանաս երեցի, ամբողջ ժողովուրդի հետ միասին շինել են Պառաւաձորի (Գանձասար) եկեղեցին և ջուր են բերել 1181 թ.—Արձ. Արցախ 180, Շահխաթ. Բ. 379։

— 84. Սարգիս Խաչենեցի, հարկահան էր Գանձակում. հավատքի համար նահատակվեց մի պարսիկի ձեռքով, որին հայ իշխանները չարաչար սպանեցին (1182 թ).—Վրդ. հէ. Մխ. այբեն. 79>Նոր վկ. 71։

— 85. Սարգիս մեծն, իշխանաց իշխան, որդի Զաքարէի Ա, թոռն Աւագ-Սարգսի, հայր Զաքարէ Սպասալարի և Իւանէ աթաբէգի. դուստրն է Նանա և եղբայրը Վահրամ. կինն էր Սա-

հակադուխտ կամ Սանդուխտ՝ դուստր Բուրդ իշխանի (Շիրակ 175). միւս աղջիկն է Խորիշահ, որ մայրն է Հասան-Ջալալ-Դոլայի. Վրաց Գէորգի Գ թագաւորը 1161-ին գրավելով Անին՝ կառավարիչ նշանակեց Սադունին. բայց հետո կասկածելով դաւաճանութեան մէջ, պաշտոնանկ արեց նրան և տեղը նշանակեց Սարգիսին։ Վրաց մեջ կոչվում է մխարգրձելի=երկայնաբազուկ։ 1163 թվին Գէորգին չկարողանալով դիմանալ Թուրքերի զորութեան, թողեց Անին ու հեռացավ։ 1174 թվին նորից գրավեց և այս անգամ Անիի կառավարիչ նշանակեց Իւանէ Օրբելեանին, իսկ նրան օգնական՝ Սարգսին։ Վրաստանում գահակալական կռիվ ծագելով Գէորգիի դեմ, այս երկու իշխաններն էլ ապստամբեցին Գէորգիի դեմ (1177 թ) և իրենց զորքով քաշվեցին Լոռի։ Գէորգին հաղթանակեց և այս երկու իշխանները անձնատուր եղան։ Թամար թագուհու ժամանակ Սարգիսը նշանակվեց Վրաց թագավորության ամիրսպասալար (1186) և ստացավ Լոռին ժառանգական իրավունքով։ Մի տարուց մեռավ և թաղվեց Սանահնի տաճարի բակում, ուր մնում է իր դամբանը 1187 թ։—Վրդ. հգ, ձբ, Կիր. 72, ը. Օրբ. կդ, կե. Օրբ. ժմ. 22. Զքր. սարկ. Դ. 11.—Շիրակ 175, Շահխաթ. Բ. 371—2. Շողակաթ 74—81, Խաղբակեանք 4—8, Վրաց աղբ. Բ. 8, 10—14, 16, 24, 34։—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 286, 304, 309, Է 391, Արցախ 173, 367։

— 86. Սարգիս *եպիսկոպոս Ամարասի. Վրթանէս եպիսկոպոսի հետ միասին ուխտի եկան Կեչառու վանքը և նվիրեցին 200 դահեկան՝ Մխիթար վանահօր ժամանակ, որ է 1188 թ.—Արձ. Այրարատ 261։*

— 87. Սարգիս, *հիմանց կանգնեցրել է Հաղբատի Ս. Աստուածածնի տաճարը 1188 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 67, Ազգագր. հանդ. Է, 416։*

— 88. Սարգիս, *որդի Սմբատի և թոռ Համազասպ մարզպանի. իր Քուրդ, Հասան և Համազասպ եղբայրների հետ միասին հող են նվիրել Սանահնի վանքին 1191 թ.—Ազգագր. հանդ. Գ. 283։*

— 89. Սարգիս *կրոնավոր, միաբան Կեչառու վանքի. հիշված է 1114 թ. և 1173—93 թվերի շրջանում.—Արձ. Այրարատ 261։ (Թվականի մասին տես և Պետրոս (№ 29) Կեչառեցի)։*

— 90. Սարգիս *բժիշկ, հայր Յովհաննէս գրչի, որ օրինակեց Եփրեմի Ճառընտիրը, 1196 թ.—Շողակաթ 197։*

— 91. Սարգիս *վարդապետ Կունդ, Արարատեան գավա-*

ուց. Խորանշատի վանքում աշակերտել է Յովհաննէս Սարկաւագ վարդապետին. զանազան հեղինակներից (օր. Ոսկեբերանից, Եփրեմից, Սեբերիանոսից, Նոննայից) քաղելով հօրինել է «Մեկնութիւն խմբագիր Ղուկաս և Յովհաննէս աւետարանչաց», սկսելով Սարկաւագի 63 թվին (որ է 1146) և աւարտելով 1197 թ. գրել է նաև Մեկնութիւն Եսայեայ, որից քաղվածներ է արել Գէորգ († 1301) Սկևռացին։—Զարբ. Հին դպր. 616, 643, Կնիք հաւ. յոջ. էջ 43, Ալիշան՝ Յուշիկք, Բ. 305, Շնորհ. և պրպ. էջ 114, Այրարատ 267, Հայապ. 370—1, 399, Manus, bibl, nat. էջ 63։ Ակինեան՝ Մատեն. հետազ. Ա. 162, Դ. 39. Ոսկեան՝ Մատեն. քնն. 16։

— 92. Սարգիս կրօնաւոր, միաբան Հոռոմոսի վանքի. Մխիթար վանահօր հետ ջուր է բերել վանքը 1198 թ. և մի այգի նվիրել։ (Ավելին տես Մխիթար (№ 37)։—Արձ. Շիրակ 21, 22։

— 93. Սարգիս եպիսկոպոս Խաչի վանից. Ստեփանոս Տիրացու եպիսկոպոսի կողմից նշանակվեց վանահայր նույն վանքի (1198 թ).—Հայապ. 442։

— 94. Սարգիս միաբան Խաչի վանքի (1198 թ).—Հայապ. 442։

— 95. Սարգիս գրիչ. օրինակել է մի ժողովածու, ուր կա նաև Խորենացու Աշխարհացոյցը (ԺԲ դար).—Աբրահամեան, Խորենացու Աշխարհացոյց, էջ 10։

— 96. Սարգիս առաջնորդ Դարանաղեաց Աւագ վանքի, 1200 թ.—Տաթև 1927, 183։

— 97. Սարգիս սարկավագ, գրեց մի Աւետարան՝ Կոստանդին քահանայի համար, 1200 թ.—Շողակաթ 198։

— 98. Սարգիս որդի Վահրամի, թոռն Զաքարէ Ա-ի, եղբայր Զաքարէի և եղբօրորդի Սարգիս († 1187) մեծի։ Սարգիս և իր եղբայրը Զաքարէ Վրաց ծառայության մեջ էին և շատ տեղեր գրավեցին Պարսից ձեռքից (ԺԲ դար)։ Այլ է Սարգիս որդի Շահընշահի։—Կիր. բ. Շողակաթ 76։

— 99. Սարգիս իշխան ի Կայեն. մի գյուղ շինեց Գետիկ վանքի մոտ և նեղում էր բնակիչներին (ԺԲ դար).—Կիր. ժա։

— 100. Սարգիս-Բուրդ Ա. որդի Վաչուտի (Վաչուտեանց). կինն է Կատա։ Սարգիսը ծառան էր Զաքարէի՝ պապի հոր Զաքարէ սպասալարի (ԺԲ դար)։ Սրա որդին է Վաչէ, որ Զաքարէ սպասալարի կողմից կարգվեց իշխանաց իշխան Արագածոտնի և Անբերդի։ Վաչէն հիշում է հաճախ իր հորը՝ իր մի քանի ար-

նակեց Աւետարանը Մամթութ տիկնոջ համար 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 347. Սարգիս, հօրեղբայր Վարդան կրօնաւորի, որ Աղթամարում, Թումայ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 347 բ. Սարգիս, հօրեղբօրորդի նոյն Վարդան կրօնաւորի.—անդ 323։

— 348. Սարգիս Գարատւեցի, կրօնաւոր. օրինակեց Ճաշոցը 1420 թ.—Տաշեան՝ Ցուց. 181։

— 349. Սարգիս քահանայ, գրիչ. Ցանեան գրչի հետ միասին օրինակեցին Ճաշոցը՝ 1420 թ.—Ձեռ. Սեւան. 20 ա, Սմբատեանց, Գեղարքունի 403։

— 350. Սարգիս քահանայ, պապ Ստեփանոս կրօնաւորի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1421 թ.—Ձեռ. Վասպ. 340։

— 351. Սարգիս, կամ Ամիր-Սարգիս, որդի Աւետիսի և եղբայր հիւսն Յովհաննէսի, որ գրել տվեց մի Ճաշոց՝ Աղէթ գիւղում, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 113 ա։

— 352. Սարգիս կրօնաւոր, միաբան Կոցի Ս. Խաչ վանքի, 1422 թ.—Նօտարք 68։

— 353. Սարգիս, ծերունի քահանայ, որդի Մեհեւանի, մայրն է Աստղիկ. միաբան էր Հաւուցթառի վանքում. պատրաստեց թուղթ և Դաւիթ քահանային մի Մաշտոց գրել տալով Գառնիում, երկուսով նվիրեցին Հաւուցթառի վանքին, 1423 թ.—Թորոս աղբ. Ա. 233, Բ. 338—9, Նօտարք 73, Այրարատ 357։

— 354. Սարգիս երեց, կինն է Եղիսաբեթ, դուստրը՝ Ոստիանէ. մի խաչքար են կանգնեցրել Ցղնայի եկեղեցում 1425 թ.—Արձ. Ազգագր. հանդ. ԺԱ 321—2։

— 355. Սարգիս քահանայ, իր և իր մերձաւոր Եղիայի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Թմբուկ գիւղում 1425 թ.—Ազգագր. հանդ. Ա. 158։

— 356. Սարգիս, գրել տվեց Կարապետ գրչին Խիզանում մի Աւետարան և Թադէոս կրօնաւորի ձեռքով նվիրեց Ալանայ Ս. Նշան վանքին, 1425 թ.—Նօտարք 78։

— 357. Սարգիս որդի Թադէոսի. գրիչ. օրինակել է Տաթեւում մի Աւետարան, 1427 թ.—Ձեռ. Սեւան. 8 ա. Սմբատեանց, Գեղարքունի 397։

— 358. Սարգիս եպիսկոպոս, որդի պարոն Սուլթանշահի. մայրն է Մինախաթուն։ Մանուկ հասակից ուխտ էր արել մի

*Յայսմաւուրք գրել տալու. 42 տարի ման եկավ ամեն կողմ, օրինակ չգտավ. գրիչներին թուղթ և ամեն նյութ մատակարարեց, 2000 դահեկան էլ վարձ առաջարկեց, էլի չգրեցին։ Արդեն 70 տարեկան էր. «գրչի մատն չոր էր և աչքս վատատես. անճար էաք և ունտեալ էաք Աստուծոյ... 21 տարի է, որ գրչի ծայրն և մազ չեմ տեսնում. ձեռս կուգողայ»։ Այս վիճակում, իր հոգևոր եղբայր Յովաննէս քահանայի որդին՝ Կարապետ կրոնավորը շնորհեց նրան օրինակը, որ և արտագրեց Գուգարաց Կաթիփորոյ Ընկուզագոմ վանքում, 1427 թ.—Նոտարք 84—86։*

— 359. Սարգիս, *միաբան Խիզանի Գամաղիէլ վանքի 1427 թ.— Նոտարք 83։*

— 360. Սարգիս, *Չրկիր, ծառայում էր Գուգարաց Կաթիփորոյ Ընկուզագոմ վանքում, 1427 թ.—Նոտարք 86։*

— 361. Սարգիս *վարժապետ, ուսուցանում էր Ուրծայ վանքում, 1427 թ.—Ձեռ. Միւնխ. 20 բ, Զարբ. Թրգմ. 268, Այրարատ 443։*

— 362. Սարգիս *աբեղա, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, որ դեռ կիսատ էր, երբ ինքը վախճանվեց։ Գրիչը շարունակեց և վերջացրեց Մեծոփայ վանքում, 1428 թ.—Նոտարք 89։*

— 363. Սարգիս *կուսակրոն քահանա, ընկերակից Եղիա աբեղայ Հաղբուեթեցւ., որ* Ճգնաւորի Քար *անապատում օրինակեց Աւետարանը՝ 1428 թվին.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911 թ. էջ 567)։*

— 364. Սարգիս *երեց, միաբան Լուսաւորչի Զորեհանգիստ վանքի 1429 թ.—Նոտարք 92։*

— 365. Սարգիս *ոՖ, որ կանգնեցրել է մի խաչքար Երևանի մերձակա Արծնի գյուղի մոտ՝ դեպի բուժարան տանող ճանապարհի ներքևում, Հրազդան գետի ձախ ափին, մի բարձրաբերձ և դժվարամատչելի ժայռի վրա, ՊՁ=1431 թ. (բացի թվականից և իր փակագիր անունից, ոչինչ չկա խաչի շուրջը)։ Այս արձանագրությունը օրինակեց 1933 թ. հուլ. 30-ին և հաղորդեց ինձ մեր համալսարանում Արևելքի գրականության դասախոս բարեհիշատակ և անմոռանալի Գէորգ Ասատուրը (ծն. 1868 թ. Թիֆլիս, † 1937 թ. հոկտ. 7 Երևան), Ֆիրդուսու անխոնջ թարգմանիչը և նշանավոր մասնագետ Սայաթ-Նովայագիտության)։*

— 366. Սարգիս *հայր Ներսէս աբեղայի, որ Մեծոփայ վան-*

*քում արտագրել տվեց Ժամագիրքը՝ 1432 թ.—Ձեռ. Մինխ. 19 ա, 20 բ։*

— 367. Սարգիս *քահանա Ուրանց գյուղի 1433 թ.—Ձեռ. Վատ. 366։*

— 368. Սարգիս *գրիչ, օրինակել է Աստուածաշունչը 1434 թ.—Ձեռ. Կարին. 15։*

— 369. Սարգիս *աբեղա Տիւրիկեցի, Լուսաւորչի անապատում Ղազար Ղրիմեցուն գրել տվեց մի Ճաշոց և նվիրեց նույն վանքին, 1434 թ.—Նոտարք 103։*

— 370. Սարգիս *քահանա, որի դամբանը գտնւում է Շամախու Գյոքչայ գավառի Առուշանայ շէն գյուղում, 1435 թ.—Բարխուտ. Աղուանից երկ. 202—3։*

— 371. Սարգիս *արքեպս. Աղուանից. ծաղկագրեց այն Գանձարանը, որ Յովհաննէս քահանան օրինակեց Տփղիսի Կրծանիս գյուղում, 1436 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 27 ա։*

— 372. Սարգիս *աբեղա, ավագերեց Տփղիսի կաթուղիկէի. Գանձարանը շնորհեց Կրծանիս գյուղի Յովհաննէս քահանային, արտագրության համար, 1436 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 27 ա։*

— 373. Սարգիս, *որդի Խոցադեղի, եղբայր Մարտիրոս աբեղա գրչի, որ օրինակեց Շարականը Հաղբատի վանքում 1437 թ.—Նոտարք 113,* Manus. brit. mus. *97 ա։*

— 374. Սարգիս, *ուրիշների հետ ստորագրում է իբրև վկա մի Աւետարանի գնման, Կաֆա 1437 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1926, էջ 238։*

— 375. Սարգիս, *«կուսակրօն աբեղայ», որդի Ղազարի, մայրն է Էլթանդ, քույրն է Մամխաթուն և քրոջ աղջիկը՝ Փաշա։ Վանում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ձեռ. Վատ. 375—8, Նոտարք 113։*

— 376. Սարգիս *գրիչ, օրինակել է Ախլցխայում(!) Աւետարանը 1438 թ.—այս ձեռագիրը գտնվում է Սարդարապատի Ղուզիգիզան գյուղում.—Սմբատեանց, Երնջակ, էջ 316 (ցուցակի էջ 3)։*

— 377. Սարգիս *վարդապետ, կաթուղիկոսական փոխանորդ և աթոռակալ Խրիմում. հիշված է նախ իբրև վանահայր Կաֆայի Ս. Անտոն վանքի՝ 1428 թ. (*Manus. bibl. nat. *էջ 168)։ Այս վանքը ավերակ էր և ինքը նորոգեց ու պայծառացրեց՝ 1430 թ. (Նոտարք 95)։ „Կոստանդին Զ Վահկացի կաթուղիկոսի կողմից ուղարկվեց իր երեք ընկերներով իբր պատվիրակ Ֆլո-*

ընտիրայի եկեղեցական ժողովին «1439 թ» և ստորագրեց նրա վճիռներին (Զամչ. Գ. 475 և 483)։ Ստացավ պապից խաչի նշան. և երբ Մկրտիչ Նաղաշը իջևանեց իր մոտ, խաչը ընծայեց նրան։ —Նղշ. էջ ժգ—ժզ. Պալճեան 87, 141. Տաշեան՝ Ցուց. 111. Հայապ. 574. Արրտ. 1898, էջ 48։—Տես յաւել. Սարգիս Կաֆացի։

— 378. Սարգիս Արծկեցի. գրիչ. Երուսաղէմում օրինակեց մի Յայսմաւուրք 1439 թ.—Տաթև տարեց. 1925, էջ 292։

— 379. Սարգիս տանուտէր Սերկեւիլ գյուղի (Արարատեան գավառ), նորոգ հանգուցյալ 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոչ. էջ խթ։

— 380. Սարգիս, պարոն, իշխան Արարատեան գավառի Սերկեւլի գյուղում, 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոչ. խԸ։ Թվում է թե նույն է՝

— 381. Սարգիս մեծ իշխան, որդի Բուղլախի և հայր Շալուէ իշխանաց իշխանի (№ 7), որ Սերկեւիլ գյուղում գրել տվեց մի Ճառընտիր, 1441 թ.—Հրտր. Ազաթ. 1909 թ. յոչ. էջ խԸ։

— 382. Սարգիս, միաբան Աղթամարի վանքի, հիշված 1441 թ.—Նոտարք 127, Ձեռ. Վասպ. 384։

— 383. Սարգիս վարդապետ Զորովանից. անդամ էջմիածնի մեծ ժողովի 1441 թ.— Նոտարք 122։

— 384. Սարգիս միաբան Գեղարդայ վանքի. հիշված է 1441 թ.—Այրարատ 346։

— 385. Սարգիս վարդապետ Արծկէի, անդամ էջմիածնի մեծ ժողովի 1441 թ.—Նոտարք 122, Ազգապ. 2106։

— 386. Սարգիս այլ վարդապետ Վասպուրականի կողմից. անդամ նույն ժողովի.— Նոտարք 122։

— 387. Սարգիս վարդապետ Զագավանեցի. ծաղկագրեց մի Պատարագամատոյց Ուրծայ վանքում, Ներսէս աբեղայի համար 1427 թ (Ձեռ. Միւնխ. 20 բ, Այրարատ 291). անդամ էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշատ. ա։

— 388. Սարգիս ամն. մերձավոր Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ։

— 389. Սարգիս գրիչ. աշակերտ Խաչատուր կրոնավորի. միասին Երզնկայում օրինակեցին Գր. Տաթևացու «Բացուածոյ մեկնութիւն Մատթէոսի Աւետարանին», 1443 թ։—Ձեռ. Հալէպի, բ. 53 բ, 54 աբ, 55 բ։

— 390. Սարգիս վարդապետ Սալնապատցի, աշակերտ Սարգիս րաբունապետի Մեծոփի վանքում, ապա Գրիգոր Տաթևա-

յու. պաշտնեկեր էր Թովմա Մեծոփեցուն և ուրիշներին։ Սրա խնդրանոք իր ընկեր Մատթէոս վարդապետը գրեց Մեկնութիւն Վեցօրէիցը՝ 1390-ական թվերին (Ցայսմ. ապր. 27, Մեծոփ. 51, Տաշեան՝ Ցուց. 418 ա, 641 բ)։ Սրա հետ նույն է Սարգիս րաբունապետ (այն է վարժապետ) Սալնապատի, որ իր եպիսկոպոսների մատնությամբ անօրէնների ձեռքն ընկավ (Մեծոփ. յիշ. գ) և տուգանվեց Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցու հակառակորդների ձեռքով «1443 թ»։—Առաք. պատմ. 485, Նոտարք 130։

— 391. Սարգիս աբեղա, որդի Սողոմոնի. ստացավ ու նորոգեց մի հին Աւետարան 1444 թ.—Ձեռ. Վասպ. 112 (Լալայեանը երկու հիշատակարան իրար է խառնել)։

— 392. Սարգիս, միաբան Ուշտունեաց Ս. Յակոբ վանքի 1445 թ.—Նոտարք 139։

— 393. Սարգիս Ապահունեցի, միաբան Սեպուհ լեռան Ս. Լուսաւորիչ վանքի, 1445 թ.—Նոտարք 135։—Հմմտ. № 401։

— 394. Տէր Սարգիս երաժիշտ, միաբան Մշու Ս. Յովհաննէս վանքի. ուրիշ բազմաթիվ կրոնավորների հետ եկավ Էջմիածին, Կարապետ աբեղային առաջնորդ ձեռնադրել տալու համար 1445 թ.—Նոտարք 142։

— 395. Սարգիս վարդապետ նուիրակ Էջմիածնի. եկել էր Ջոռ գյուղը (Բաղէշ) 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

— 396. Սարգիս Դոփեան, որդի Վահրամի և թոռն Գրիգոր Բաբի իշխանի Խաչենոյ, շինել է տվել ի միջի այլոց Դադի վանքի, Խաթրայ վանքի, Գետամէջի և Ծար գյուղաքաղաքի զանգակները։ Սրա որդին է Հասան.—Ձեռ. Դադեան, Ա. 89 բ, Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 45։ Հմմտ. № 321։

— 397. Սարգիս աբեղա, միաբան Ս. Կիրակոս վանքի. գրեց ցանկը և չորրորդ մասը այն Ցայսմաւուրքի, որի վրա աշխատեցին նույն վանքի մի խումբ միաբանները Երզնկա 1446 թ.—Նոտարք 149։

— 398. Սարգիս քահանա, մերձավոր Ստեփաննոս գրչի, որ Բաղէշում օրինակեց մի Ցայսմաւուրք 1446 թ.—Նոտարք 152։

— 399. Սարգիս պապ, «գործաւոր» Ս. Թէոդորոս կամ Դերձկի վանքի, 1447 թ.—Նոտարք 157։

— 400. Սարգիս երեց, հայր Յոհանէս երեցի, որ մի հին Աւետարան նվիրեց Մարտիրոս երեցին, 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 537։

— 401. Սարգիս *միաբան Այանունեաց ուխտի, 1449 թ.— Թորոս աղբ. Բ. 296։—Հմմտ. № 393։*

— 402. Սարգիս, *եղբոր կամ քրոջ որդի Կարապետ միանձնակեցի, որ Ցիպնայ ստառակ վանքում, Յովհաննէս դրչին գրել տվեց մի Աւետարան, 1450 թ.—Ձեռ. Վասպ. 405։*

— 403. Սարգիս *վարդապետ, միաբան Խլաթի Ս. Յովհաննէս եկեղեցու, 1450 թ.—Նօտարք 164։*

— 404. Սարգիս, *եղբայր Խութլուպէյի, որ իր և իրայնոց հիշատակին մի արձանագրութիւն է թողել Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցում 1451 թ.—*Кучук-Иоаннесов, Стар. арм. над. *36։*

— 405. Սարգիս *աբեղա, միաբան Գղձայգոյ Աւագ անապատի 1451 թ.—Ձեռ. Վասպ. 407։*

— 406. Սարգիս, *որդի Պարոնլուսի, Բաղէշում, հիրախոս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Նօտարք 173։*

— 407. Սարգիս, *որդի Աբրահամի և հօրեղբայր Յովհաննէս տանուտերի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։*

— 408. Սարգիս *կրոնավոր, որի հիշատակին Բաղէշում Դաւիթ գրիչը օրինակեց մի Ցայսմաւուրք՝ 1455 թ.—Նօտարք 182։*

— 409. Սարգիս, *որդի Յովհաննէս տանուտերի, որ Իսրայէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, Մոկաց Փառավանք գյուղում, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։*

— 410—411. Սարգիս, *երկու համանուն միաբաններ Գամաղիէլի վանքում, հիշված 1445 և 1455 թ.—Նօտարք 145, 181։ Հմմտ. № 432։*

— 412. Սարգիս *աբեղա, գրիչ. օրինակեց Մաշտոցը Պաուադրակ անապատում 1455 թ.—Տաշեան, Ցուց. 424—5։*

— 413. Սարգիս, *վաղամեռիկ որդի Ստեփանոսի՝ եղբորորդւոյ տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա, 582։*

— 414. Սարգիս *կրոնավոր, գրիչ. որդի Յովհաննէսի. մայրն է Մինախաթուն, եղբայրներն են Խաչատուր և Սադաղա, քույրն է Արուսխաթուն. ուսուցիչն է Զաքարիա աբեղա։ Երուսաղէմում օրինակել է Գանձարանը 1457 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 165—6։*

— 415. Սարգիս *հօրեղբայր Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լէմ կղզում գրել տվեց մի Ցայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. էջ 103 բ։*

— 416. Սարգիս, *որդի Կաքաւի՝ եղբորորդւոյ Ստեփաննոս*

Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել ավետ մի Ցայսմաւուրք 1457 թ.—Ձեռ. Թաւր. 104 ա, 105 բ։

— 417. Սարգիս տէր, ուսուցիչ Մելքիսեթ արեղայի, որ եղավ վանահայր Երերան վանքի՝ 1460 թ.—Այրիվ. 16 բ։

— 418. Սարգիս, որդի Թումայի, որ Ներսէս արեղային գրել ավետ մի Աւետարան, Աղթամար 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։ (Հայտնի է այս Թումայի գերդաստանը. Թումայի հայրն է Հաչատուր (=Խաչատուր), մայրը Շնահոր. կինն է Նշխուն. զավակներն են Սարգիս, Յովսէփ, Կարապետ, Հալիմխաթուն (որի որդին է Ստեփան), Մարտիրոս (որի զավակներն են Հալվախաթուն և Հալիմ)։ Թումայի եղբայրն է Յովհաննէս, որի կինն է Ջանմէլէք. զավակներն են Յովսէփ, Տիրատուր, Շամշայ և Սալտան։ Ջանմէլէքի մայրը, այսինքն Յովհաննէսի զոքանչն է Փահարմելէք, որի որդին է Աւքատն (Օքատն՝ Ջանմէլէքի եղբայրը)։

— 419. Սարգիս արեղա, թուղթ էր կոկում Վարդան արեղայի համար, երբ սա օրինակում էր Աւետարանը Կոզուց վանքում 1461 թ.—Նոտարք 198։

— 420. Սարգիս քահանա, որդի Մոլրմելիքի՝ քրոջ Կիրակոս Սարփեցու, որ գնի միջնորդ եղավ տանուտեր Էգիլշահի և Յովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ. մեռավ ծաղիկ հասակում. —Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 421. Սարգիս, վաղամեռիկ որդի տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել ավետ մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։

— 422. Սարգիս որդի Կիրակոսի և եղբայր Կոստանդի, որ Եւդոկիայում գրել ավետ մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Սեբ. ՀԱ. 1925, 133։

— 423. Սարգիս, միաբան Յովհաննավանքի 1464 թ.—Այրարատ 172։

— 424. Սարգիս վարդապետ. մեկն էր Աբրահամ Բ (№ 34) կաթուղիկոսին ընտրողներից «1465 թ».—Կամենից 226։

— 425. Սարգիս հայրապետ, հիշված է մի Մաշտոցի հիշատակարանում, 1465 թ.—Նոտարք. 223. (և որովհետև այս թվին Սարգիս անունով կաթուղիկոս չկա, ուստի հիշատակարանում հիշված Տիրաշէն վանքի հայրապետն է)։—Սակայն տես նաև № 439։

— 426. Սարգիս տանուտեր Նորագիւղի 1465 թ.—Այրարատ 320, Նոտարք 221։

— 427. Սարգիս *քահանա Նորագիւղի Ս. Գրիգոր եկեղեցու*
*1465 թ.—Այրարատ 320, Նոտարք 221։*

— 428. Սարգիս *վարդապետ, վանահայր Գետարգելայ (Եղի-*
*վարդ) վանքի, 1465 թ.—Նոտարք 221։*

— 429. Սարգիս *քահանա, իր հոր՝ Յովհաննէս քահանայի*
*հետ միասին, իրենց գործածության համար, Ոստանում, Կա-*
*րապետ քահանա գրչին գրել տվին մի Աւետարան 1467 թ.—*
*Նոտարք 230, Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 258։*

— 430. Սարգիս *եպիսկոպոս հայոց Կիպրոսի. մաղթանք է*
*կատարել երաշտի համար. հիշված է մի Յայսմաւուրքի հիշա-*
*տակարանում 1467 թ.—Բակուրան, Կիպրոս կղ. 57, 119։*

— 431. Սարգիս, *որդի Կարապետի, Ղազար գրչին գրել*
*տվեց մի Աւետարան՝ Խիզանի Գամաղիէլ վանքում, 1468 թ.—*
*Ձեռ. Վասպ. 451—4։*

— 432. Սարգիս, *միաբան Խիզանի Գամաղիէլ վանքի,*
*1468—9 թ.—Ձեռ. Վասպ. 452, 455։ Հմմտ. № 410—411։*

— 433. Սարգիս *վարդապետ Բիւրականցի. միաբան և քա-*
*րոզիչ Տեղերի վանքում. շինեց Տեղերի Ս. Աստուածածին եկե-*
*ղեցու պարիսպները 1469 թ.—Այրարատ 147—8, Ձեռ. Վենետ.*
*Բ. 1113—4։*

— 434. Սարգիս *վարդապետ, գրիչ Երուսաղէմի Ս. Հրեշ-*
*տակապետ վանքում 1469 թ.—Տաթև տարեց. 1925, էջ 292։*

— 435. Սարգիս *մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրա-*
*կանում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 թ.—Ձեռ.*
*Վենետ. Բ. 1114։*

— 436. Սարգիս, *Լերդկայ երկրից, հորեղբորորդի Ներսէս*
*աբեղայի, որի միջնորդությամբ Ստեփանոս գրիչը Տիվրիկում*
*օրինակեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թո-*
*րոս աղբ. Բ. 364։*

— 437. Սարգիս *Հերմոնեցի. հիշված է նախ իբրև աբեղա*
*Վայոց ձորի Հերմոնի վանքում և օգնական Կարապետ գրիչ*
*Դերջանցու 1421 թ. (Ձեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 83 ա)։ Ապա*
*դարձել է ճգնավոր նույն վանքում և այդ միջոցին գրել է տվել*
*մի Յայսմաւուրք Յակոբ դպրին 1441 թ. (Սմբատեանց, Երնջակ*
*242)։ Տասնեմեկ տարի հետո տեսնում ենք նրան իբրև վարդա-*
*պետ Հերմոնի վանքի. ձեռք էր բերել Թորոս Ռոսլինի մի նշա-*
*նավոր Աւետարանը, որ նվիրեց Երուսաղէմի վանքին՝ 1452 թ.*
*(Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 28 բ)։ Ութ տարի անց՝ Սար-*

գիր վարդապետը առաջնորդ է Հերմոնի վանքի 1460 թ. (Սըմբատեանց՝ Երնջակ 176)։ Ավելի ուշ կոչվում է բարունապետ Հերմոնի վանքի 1469 թ. (Ձեռ. Թուր. 132 բ) և 1473 թ. (Արցախ 139)։ Վերջապես հիշված է Ձեռ. Սևան. 19, բայց թվականն անհայտ (միայն ԺԵ դար)։ Այսպեսով պարզած ենք լինում Սարգիս վարդապետի (որ կարող ենք կոչել Հերմոնեցի) 52 տարվա կրոնավորական կյանքը (1421—1473 թ)։—Սիսական 126 շատ չնչին բան գիտե այս անձի մասին։

— 438. Սարգիս, թվի եղբայր Գալուստի. երկուսով մի արձանագրություն են թողել իրենց ծնողների հիշատակին, Աքքերմանի եկեղեցում 1474 թ.—Меликсет-Беков, Арм. древ. 31, Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 32։

— 439. Սարգիս եպիսկոպոս միաբան Էջմիածնի. գողանալով Լուսավորչի աջը, տարավ Թավրիզ, ուր հասավ նաև Զաքարիա կաթողիկոս Աղթամարի և տիրանալով աջին, հայտարարեց իրեն ընդհանուր Հայոց կաթողիկոս՝ «1460 թ» (Ազգապ. 2160), Զաքարիայի փախուստից հետո՝ Սարգիսը դարձավ աթոռակալ Գրիգոր Ժ կաթողիկոսի (Ազգապ. 2168), և այս պաշտոնը շարունակեց Արիստակես Բ կաթողիկոսի ժամանակ։ Նրա մահից հետո ինքը եղավ կաթողիկոս՝ Սարգիս Բ Աջատար անունով «1469—1474 թ», իրեն օգնական ընտրելով Յովհաննէս եպիսկոպոսին (Առաք. պատմ. 337, Ձեռ. Վասպ. 469, Ազգապ. 2177—82)։—Բայց նկատելի է, որ Սարգիսը կաթողիկոս է հիշվում դեռ ավելի երկար։ Այսպես նա հիշված է 1475 թ. (Բիւրակն շաբաթաթերթ, 1899 թ. էջ 14 բ, և Յովսէփեան, Խաղբակեանք 234).—ապա 1477 թ. (տես Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, էջ 219).—ապա 1478 թվին (տես Ամիրդովլաթի Անգիտաց անպէտի մեջ, էջ 2, Ձեռ. Հալէպի, Բ. 38 ա, Թորգոմեան՝ Նկրրոզ, էջ 16, ինչպես և Հրար. Ազաթ. 1909 թ. յոջ. էջ ծ և Սմբատեանց՝ Երնջակ 178).—ապա 1479 թ, երբ Սարգիս և Յովհաննէս միասին կաթողիկոս են հիշված (տես Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 262)։ Սրանք առնում են մեզ 1474 թվից մինչև 1479 թ։ Բայց Սարգիսը կաթողիկոս է հիշված նաև 1469 թվից երեք տարի առաջ, այն է ՋԺԵ=1466 թ. (տես Թորոս աղբ. Բ. 479)։ Այսպեսով Սարգսի կաթողիկոսությունը տարածվում է 1466—1479 թ, որ անում է 13 տարի։—Սակայն տես նաև № 425։

— 440. Սարգիս, հայր Գոնդուլ փաշայի և պապ խոջա Էդըլ-

շանի, որ Կտուց անապատում գրել ավեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472—3:

— 441. Սարգիս քահանա, գրիչ. օրինակեց մի Մաշտոց, 1476 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1926, 339:

— 442. Սարգիս, ստացել է մի Աւետարան 1477 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 261:

— 443. Սարգիս քահանա. նվեր ստացավ էմին անուն տիկնոջից մի Աւետարան 1477 թ., որ իր երեցկինը՝ Տինար, քահանայի մահից հետո վաճառեց.—Բարխուտ. Աղվանից երկ. 9:

— 444. Սարգիս արքեպիսկոպոս, առաջնորդ Երզնկայի 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628:

— 445. Սարգիս ճգնավոր, մահտեսի, «կրօնավոր և աբեղայ, խոյրաբարձ և վակասաւոր». հայրն է Զաքար, մայրը Դաւնդի, եղբայրները՝ Էսկար, Զադիկ, Աստանինչէ, Ամիրխաս, Դաւիթ սարկաւագ, Ստեփաննոս, քույրը՝ Դիլշատ, հոգևոր հայրը՝ Շատիկ, հոգևոր եղբայրները՝ Մեսրոպ աբեղա և Կարապետ: Միաբան էր Սրկղունից Բոլորաբերդի անապատում. Դաւիթ գրչին գրել է ավել մի Ճառընտիր 1478 թ.—Սիսական 130, Թաղրակեանք 235:

— 446. Սարգիս քահանա, եղբայրն է Գրիգոր եպիսկոպոս Աշտարակեցի գրչի. Թուղթ էր կոկում 1478 թ.—Այրարատ 274:

— 447. Սարգիս աբեղա, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Ղազարի համար, 1479 թ.—Ձեռ. Կեռ. ածած. 47:

— 448. Սարգիս որդի Սառնայի, որ Փառխոսում կանգնեցրել է մի խաչքար 1481 թ.—Արցախ 307:

— 449. Սարգիս փակակալ Հաւուցթառի. Վրթանէս գրչին գրել ավեց մի Շարական 1482 թ.—Այրարատ 357, 443:

— 450. Սարգիս աբեղա, միաբան Մուղնու վանքի. հիշված է 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա:

— 451. Սարգիս մշակ, միրճավոր Սարգիս քահանայի, որ Բաղէշում գրել ավեց մի Ցայսմաւուրք, 1484 թ.—Rapport Belgique 39:

— 452. Սարգիս ամուսին Շնոհորի՝ քրոջ Զանվլիլի, որ Մուղնիում ստացավ մի օրինակ Գանձարան՝ 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա:

— 453. Սարգիս քահանա, Բաղէշում Մելքիսէթ քահանային գրել ավեց մի Ցայսմաւուրք, 1484 թ.—Rapport Belgique 39, 40:

— 454. Սարգիս *կրոնավոր, որդի Ղազարի. գրիչ. օրինակեց Գանձարանը՝ Տիւրիկի Կիւրղի վանքում, 1485 թ.—Տաշեան, Ցուց. 760։*

— 455. Սարգիս *կաթուղիկոս, հիշված 1485 թ (Արցախ 148), անշուշտ է Սարգիս Գ կաթուղիկոս էջմիածնի (№ 483). Ձեռագիրը գրված է Սալնապատում, ուստի կաթուղիկոսը կարող էր լինել Աղթամարի, սակայն նույն ժամանակ Աղթամարի գահակալն է Ստեփաննոս Դ կաթուղիկոսը, որ նստել է 1465—89 թ։*

— 456. Սարգիս *վարդապետ, գրիչ. պարոն Շահամիրի համար գրեց մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 264։*

— 457. Սարգիս, *գրիչ. Բերկրիի Առեղս գյուղում, Յովհաննէս քահանայի համար օրինակել է Աւետարանը 1488 թ.—Ձեռ. Վասպ. 510։*

— 458. Սարգիս, *եղբայր Յովհաննէս (№ 1229) քահանայի, որ Բերկրիի Առեղս գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։*

— 459. Սարգիս *երեց, կինն է Շահանդուխտ, որդիքն են Յոհանէս, Եղեկիէլ և Ղուկաս։ Ստացավ Ասիլմելիք տատից իբրև նվեր մի Աւետարան, որ գրել էր տվել Ներսէս արեղային 1488 թ.—Ձեռ. Վասպ. 241—2։*

— 460. Սարգիս *գրիչ. օրինակեց Աւետարանը և վաճառեց Աստուածատուրին, 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։*

— 461. Սարգիս *մահտեսի, որդի Մաթէոսի, եղբայր Մաթէոս վարդապետի, որ առաջնորդն էր Սեբաստիոյ 1489 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1926, 239, 240։*

— 462. Սարգիս *կրոնավոր, որդի Համշահի. իր եղբայր Ստեփաննոս կրոնավորի հետ միասին շինեցին Ս. Փրկիչը (Աղթամար), Ստեփաննոս Դ կաթուղիկոսի («1465—1489 թ») ժամանակ.—Հաւաք. 43։*

— 463. Սարգիս *միայնակեաց Գողթն գավառի Բուստայ անապատում 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 275։*

— 464. Սարգիս, *արհի վարդապետ Անիձորացի, գրիչ. տանուտեր Մարտիրոսի ծախսով գրեց մի Աւետարան, 1489 թ.—ՀԱ 1894, 52 ա։*

— 465. Սարգիս *որդի Աստուածատուրի և հորեղբորորդի Թովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը՝ Հայրապետ արեղային, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։*

— 466. Սարգիս պապ Լիանոսի, որ ստացավ մի Ավետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

— 467. Սարգիս որդի Լիանոսի, որ ստացավ մի Ավետարան, 1491 թ. (նախորդի թոռնորդին է).—Թորոս աղբ. Ա. 120։

— 468. Սարգիս, որդի Գրիգորի և եղբայր Վարդանի, որ Շատախում, Իսրայէլ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1491 թ.—Ձեռ. Վասպ. 517։

— 469. Տեր Սարգիս, հայրապետ սուրբ ուխտին Գետամիջոյ 1493 թ.—Արցախ 247։

— 470. Սարգիս, գրիչ. Խաչենաձորի Ս. Ստեփաննոս վանքում, Գարսնտէր արքեպիսկոպոսի խնդրանոք գրեց մի Ավետարան, 1493 թ.—Արցախ 247։

— 471. Սարգիս դպիր, որդի Յովհաննէսի և եղբայր Համտնգուլ կույսի, որ Այրի վանքում, Ստեփան աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304։

— 472. Սարգիս վարդապետ, ուսուցիչ Ավագտէրի, որի մասին տես առանձին. հիշված է 1473—95 թվերին.—Խաղբակեանք 232, 236։

— 473. Սարգիս քահանա, եղբորորդի տանուտեր Պետրոսի, որ Վանում, Ազարիա քահանային գրել տվեց մի Ավետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 476 (թիվը սխալ է դրել 1475)։

— 474. Սարգիս, հորեղբայր Ատոմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան 1498 թ.—Ձեռ. Վասպ. 527 (տես և Հարիր № 4)։

— 475. Սարգիս, որդի տանուտեր Յովհանի, որ Երուսաղէմում, Բանծառ գյուղում գնեց մի Գանձարան, 1498 թ.—Ձեռ. Եր.=ՀԱ 1927, 433։

— 476. Սարգիս քահանա Դերջանցի. գերությունից ազատեց «Դաւիթ Անյաղթի Իմաստասիրականքը» և նվիրեց Գէորգ վարդապետին (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 807 բ։

— 477. Սարգիս վարդապետ ոՌ, որի դամբարանը գտնըվում է Յովհաննավանքում (տես էջմ. № 936 Ճառընտրի յիշ. 1687 թ).— ԺԵ դար։

— 478. Սարգիս Յարութինցի, աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարայ վանից և դասընկեր Թովմա Մեծոփեցու, ապա Գրիգոր Տաթևացու, երբ սա ուսուցանում էր Մեծոփում (ԺԵ դար)։—Մեծոփ. 52, Ազգապ. 1999։

— 479. Սարգիս Գ, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Նղի-

*շէ Գ-ի և նախորդ Ներսէս Բ-ի (ԺԶ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։*

— 480. Սարգիս *Դ կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Ներսէս Դ-ի և նախորդ Յոհան Է-ի (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։*

— 481. Սարգիս *Ե. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Միքայէլ Բ-ի և նախորդ Կարապետ Ա Խիզանցու (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։*

— 482. Սարգիս *եպիսկոպոս, նվիրակ Էջմիածնի. նահատակվեց Թուրքերի ձեռքով Ամասիա 1506 թ. հոկտ. 17.—տվելին տես Յովհաննէս № 1305։*

— 483. Սարգիս *Գ Միւսայլ, կաթուղիկոս հայոց «1484—1515 թ». նախապես աթոռակալ էր Յովհաննէս Է Աջակիր կաթուղիկոսին. երբ սա մեկնեց Կամենից «1484 թ», իրեն հաջորդեց Սարգիս Գ-ը, աթոռակալ ունենալով Վրթանէս, Արիստակէս, Թադէոս և Եղիշէ (Առաք. պատմ. 330, 331, 337, Այրարատ 443)։ Ազգապ. 2208 թեև Սարգսի գահակալությունը դնում է «1484 թ», բայց մահվան թվականը ուզում է կամ անհայտ թողնել և կամ երկարել մինչև «1515 թ»։ Հիշված է նախ 1485 թ. (տես Սարգիս № 455), ապա Սևանի դռան նշանավոր արձանագրության մեջ 1486 թ. (Սիսական 84, Անահիտ 1932, էջ 25), ապա 1496 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 46 ա), 1513 թ.* (Rapport Belgique *182)։ Իրեն հաջորդեց Զաքարիա Բ Վաղարշապատցի։ —Ազգապ. 2197—2218։*

— 484. Սարգիս *Գ պատրիարք Երուսաղէմի, 1507—1517 թ. հաջորդել է Պետրոս Բ-ին (Աղաւնունի)։*

— 485. Սարգիս *Դ Վրաստանցի. կաթուղիկոս Հայոց «1520—1536 թ». նախապես Վրաստանի առաջնորդ էր. ապա եղավ աթոռակալ Զաքարիա Բ Վաղարշապատցու, որի մահից հետո հաջորդեց իրեն.—Առաք. պատմ. 337. Կամենից 162. Ազգապ. 2223—2232։*

— 486. Սարգիս *Ա Ղշլաղեցի, կաթուղիկոս Աղուանից. հաջորդել է Արիստակէս Բ-ին, որ գահ էր բարձրացել 1516 թ։ Սարգիսը նույն Արիստակէսի եղբորորդին էր։ Արիստակէսի մահվան և Սարգսի գահակալության թվականները հայտնի չեն։ Գիտենք միայն որ Սարգիսը մեռել է 1554 կամ 1555 թ. Մնում է նրանից մի արձանագրություն 1546 թվից, որ հրատարակված է Շահխաթ. Բ. 373 և Արցախ 177 (Ձեռ. Դաղեան, Ա 89 բ, Ջամբռ 58)։ Այս Սարգիս կաթուղիկոսին գիտե նաև Սմբատեանց՝ Երնջակ 146. հիշված է 1554 թ. և մեռած 1555 թ. նստել է Գանձասարում։ Համաձայն նախորդ 1546 թվի արձանագրության,*

Սարգիսը որդին է Հատիր-Մէլիքի և թոռ Սայտունի (նույնը Բարխուտ. Գատմ. ազգ. Ա. 142). այս Սայտունն էլ որդին է պարոն Աղբաստի, որ հիշված է 1467 թ: Բոլորն էլ սերունդ են Խաչէնի իշխան Հասան-Ջալալ-Դոլայի, որ նահատակվեց 1261 թ: —Սարգիսին հաջորդեց Գրիգոր Դ:

— 487. Սարգիս վարդապետ. թաղված է Գեղամայ երկրի Վասակաշէն գյուղում. սրա կողքին էլ թաղվեց Յովհաննէս Ծարեցին ՌԼԲ=1583 թ.—տես. Սարգսի՝ Յհնոկ. 192, Առաք. պատմ. 472:

— 488. Սարգիս Ա Ուլնեցի, պատրիարք Պոլսի «1587—1590 թ». հաջորդեց Թովմաս Ա-ին. Ազարիա Ջուղայեցու մեկնելուց հետո կրկին աթոռ բարձրացավ «1592—1596 թ» և 4 տարի նստելուց հետո՝ տեղի տվեց Տիրատուր Սսեցուն:—Ազգապ. 2284—5:

— 489. Սարգիս վարդապետ գիտնական (ԺԶ դար).—Այրարատ 403:

— 490. Սարգիս եպիսկոպոս Գառնոտէր. Արագածոտն գավառի Ցարենի գյուղից էր. առաջնորդ Սաղմոսավանքի. ճգնավորական կյանքը մեր մեջ վերանորոգելու համար գնաց Երուսաղէմ և միանալով Կիրակոս Տրապիզոնցու հետ, միասին ընտրեցին Յորդանան գետի ափին կամ Փորձության լեռան մոտ մի հարմար վայր: Հանդիպելով Մովսէս Սիւնեցուն «1607 թ» նրա խորհրդով եկան Սիւնիք և Բարկուշատ գետի ափին, հին Թանահատի վանքի մատերքը հիմնեցին Հարանց անապատը «1608 թ»: Այս վանքը դարձավ հայ եկեղեցական վերանորոգման համար նշանավոր կենտրոն, որից դուրս եկան բազմաթիվ ուսյալ կրոնավորներ. սմանք էլ հեռանալով բաց արին ուրիշ տեղերում նմանօրինակ հաստատություններ. ուրիշներ մինչև կաթուղիկոսական գահը բարձրացան: Մեռել է 1620 թ:—Առաք. պատմ. գլուխ ԻԱ և էջ 201, 218—9, 222, 241, Հայապ. 621. Ազգապ. էջ 2343:

— 491. Սարգիս Մելիտինեցի, նոր վկա. մանկական հասակում մահմեդական էր դարձել: Երկար տարիներ հետո, նորից իր կրոնին է դառնում և հալածանքից խուսափելու համար, անցնում է Զմիւռնիա: Բայց բռնվում է և դատի տրվում: Չուրանալով քրիստոնեությունը, նահատակվում է գլխատմամբ, 1656 ապրիլ 15: Թաղվել է Զմիւռնիայի հայոց եկեղեցու բակում, ուր իր շքեղ դամբանը կա մինչև այժմ և ուխտատեղի է:—Բօսեան,

Հայք ի Զմիւռնիա և ի շրջակայս, հտ. Ա, էջ 82, Նոր վկայք, էջ 383, Ազգապ. 2262, վերջին անգամ՝ Թորգոմեան, REA 4, 217, ուր կա նաև տապանաքարի նկարը և ճշտված է նահատակության թվականը։

— 492. Սարգիս եպիսկոպոս Թէքիրտաղցի. աշակերտ Երուսաղէմի Աստուածատուր պատրիարքի. գրամական փառուռմների համար բանտարկված էր. կարողացավ կաշառքով խլել Պոլսի պատրիարքական աթոռը՝ տապալելով Յովհաննէս Թութունճի պատրիարքին («1664 թ»), որ մի տարի հետո նորից տիրացավ աթոռին։ Երբ Ցակոբ կաթուղիկոսը Պոլիս էր գնացել, Յովհաննէսին իբրև գեղծարարի դահազուրկ արեց և աթոռը հանձնեց Սարգիսին «1667 թ»։ Մեռել է «1670 թ»։—Ազգապ. 2556։

— 493. Սարգիս էքմէքճի. Տաճկաց բանակի հացի հայթայթիչն էր. ձեռնադրվեց քահանա և խլեց Պոլսի պատրիարքական աթոռը՝ տապալելով Կարապետ Կեսարացի պատրիարքին «1679 թ». մի տարուց ինքն էլ ընկավ։—Ազգապ. 2606։

— 494. Սարգիս մելիք Սերկևեցի. գավառապետ Կարբի «նահանգի» 1687 թ. (տես էջմ. № 936 ճառընտրի հիշատակարանը)։

— 495. Սարգիս սարկավագ Կարսեցի (ավազանի անունով Սաֆար). 18 տարեկան գեղեցիկ պատանի էր. մուշտակի առուտուր էր անում. մի տաճիկ կրոնավոր ուզենալով ձրի ապրանք շորթել նրանից, ամբաստանեց թե հայհոյել է իր կրոնին. ամբոխը դատի տվեց և հավատքը չուրանալու պատճառով, քարկոծելով նահատակեցին և դին այրեցին «1691 թ»։—Նոր վկ. 528—530> Ազգապ. 1745։

— 496. Սարգիս բժիշկ Անեցի՝ 1700 թ.—Թորգոմեան, Ներբող, էջ 27։

— 497. Սարգիս երեց, տաղասաց ԺԷ դարի.—Յուշիկք Բ. էջ 126։

— 498. Սարգիս եպս. Արղութեան, որդի Բեհբէկի. վանահայր Սանահնի վանքի. նորոգել է տաճարները. օրինակել է տվել Խորենացին, Ասողիկն ու Լաստիվերտցին. թաղված է նույն վանքում (ԺԷ դար).—Մառ. Ամառն. ուղև. 87։

— 499. Սարգիս քահանա Բերիացի. արհեստով ակնագործ էր. գիտեր արաբերեն, թուրքերեն, ֆրանսերեն, հունարեն և հրէարեն. գրեց ակունքների մասին մի գիրք, որ Առաքել Դաւ-

րիժեցին անց է կացրել իր Պատմության մեջ (ԺԷ դար)։—Առաք. պատմ. 452—467, հատկապես 459. Տաշեան՝ Ցուց. 432։

— 500. Սարգիս տաղասաց՝ ԺԷ դարի. իր տաղերից մի նմուշ՝ տես Ձեռ. Հալեպի, Բ. էջ 63 բ։

— 501. Սարգիս խալֆա. նշանավոր ճարտարապետ. վերաշինեց Ղալաթիոյ հայոց Ս. Լուսավորիչ եկեղեցին, որ այրվել էր հրդեհից 1731 թ.—Ազգապ. 2875։

— 502. Սարգիս վարդապետ Բալուեցի. աշակերտ Միքայել կաթուղիկոսի Կիլիկիոյ. տաղասաց. ունի 17 տաղ, որոնց ինքնաձեռագիրը՝ 1759 թվից, գտնվում է այժմ. որանց արտատպությունը տես Ձեռ. Կես. սարգ. էջ 16—18։

— 503. Սարգիս արքեպիսկոպոս Սարաֆեան. ծն. 1699 թ. եղավ առաջնորդ Կեսարիոյ և Գաղատիոյ. գնաց Հռոմ, ապա Վենետիկ, ուր բացավ տպարան և հրատարակեց 15 կտոր գիրք (1742—52 թվերին). որանց մեջ հիշատակության արժանի են Էֆիմերտէ (անարժեք գուշակական գիրք, որ այսօր էլ մեծ հարգ է վայելում Կովկասում, իբրև մարգարեական հեղինակություն՝ և թաթարմամբ կոչվում է Սփրեմվերդի) և Խորենացվոյ Պատմութիւն և Աշխարհագրութիւն։ Դարձավ Պոլիս, ուր իբր կաթոլիկ հալածվելով՝ փախավ Եւրոպա։ Մեռել է 1773 թ. Լիվոռնո։ Ընդարձակ կենսագրությունը գրեց Գալեմքեարեան, Վիեննա 1908 (Ազգ. մատ. հտ. ԾԵ)։

— 504. Սարգիս վարդապետ Թիֆլիզեցի. տաղասաց ԺԸ դարու.—Տաշեան, Ցուցակ 1148 ա։

— 505. Սարգիս քահանա Կարսեցի, որդի Յոհան վարդապետի. նահատակ. բաղնիսում մի մոլլայի հետ կռվի էր բռնվել. մոլլան գնաց փաշայի մոտ և չարախոսեց թե Ղուրանին է հայհոյել. քահանային ստիպեցին ուրանալ հավատքը, մերժեց. ծեծելով տարին կառափնատի մոտ. «արեանարբու լազերն յետեւանց յերկու արճիճ զարկին, վար ընկաւ, յետոյ գլուխն կտրեցին» 1796 թ։ Ավելածու Աւետիս քահանան գրեց նրա նահատակության պատմությունը, որ տպ. Նոր վկ. 722—4։

— 506. Սարգիս դպիր Սարաֆ—Յովհաննէսեան, Պոլսեցի. ունի «Տեղագրութիւն Պոլսոյ», որ է հավաքածու պատմական տեղեկությունների 1800—1804 թվերի։ Ձեռագիրն է 4 հատոր, ընդ ամենը 1400 էջ. պատկանում էր բժ. Վ. Յ. Թորգոմեանին. քաղվածներ ունի Ազգապատումը։—Ազգ. մատ. ՀԸ, էջ 60։

— 507. Սարգիս Բ Հասան-Ջալալեանց, կաթուղիկոս Աղվանից.

Յովհաննէս (№ 1377) Թ Հասան-Ջալալեանց՝ Թունավորմամբ սպանված կաթուղիկոսի եղբայրն էր։ Նրա մահից հետո, ժողովուրդը զզված Իսրայէլ հակաթոռ կաթուղիկոսի արարքներից, Գանձակի Հասան խանի պաշտպանությամբ և էջմիածնի Ղուկաս կաթուղիկոսի հավանությամբ, գահ բարձրացրեց Գանձասարում «1792 թ»։ Թեև Ղուկասը նախապես համաձայնվել էր, բայց Սարգսի ինքնագլուխ օծումից վշտացած՝ մերժեց ճանաչել նրան կաթուղիկոս, և թույլ տվեց որ նստի Հադրութի վանքում, մինչև իբրև առաջնորդ «1797 թ»։ Բարխուդ. Պատմ. աղվ. Բ. 122, 128 ասում է թե Սարգիսը իր ժողովրդի հետ գաղթեց Վրաստան և նստավ Հադրութի վանքում 1799 թ. և Իսրայէլի մահից հետո վերադարձավ իր աթոռը 1806 թ. և ապա Գանձասար 1812 թ. (անդ՝ էջ 142), ուր նորոգեց իր կաթուղիկոս տիտղոսը։ «1815 թվին» Ներսէս Աշտարակեցին՝ Եփրեմ կաթուղիկոսի անունով Ռուս կառավարության հետ բանակցության մտնելով՝ ջնջեց Աղվանից կաթուղիկոսությունը, իբրև ջլատիչ հայ ազգային միության և Սարգսին պահեց միայն մետրապոլիտ տիտղոսը։ Ռուս-պարսկական պատերազմի ժամանակ Սարգիսը նորոգում է իր կաթուղիկոս տիտղոսը «1826 թ»։ Ռուս զորավար Երմոլովի մոտ ամբաստանում են նրա մասին, թե նա դավաճանությամբ անցել է Պարսից կողմը և հորդորել է ժողովուրդին, որ Շուշին հանձնեն Պարսից։ Երմոլովը կանչում է նրան Թիֆլիս և թեև քննության ժամանակ նրա անմեղությունը հաստատվելով ազատ է արձակում, (1827 թ), բայց այդ արարքը այնպես է ազդում ծերունի կաթուղիկոսի վրա, որ անկողին է ընկնում և մեռնում «1828 թ»։ Թաղվում է Գանձասարի վանքի գավթում, ուր Ցուում է իր գերեզմանը (Արցախ 176)։ Իր հետ թաղվում է նաև Աղվանից կաթողիկոսությունը, որ վաղուց անվանական էր դարձել։—Ազգապ. 3239, 3495, 3706. Բարխուտ. Պատմ, աղվ. Բ. էջ 166։

— 508. Սարգիս Գույումճեան, պատրիարք Պոլսի «1860—1861 թ». հաջորդեց Գէորգին, իբրև առաջին սահմանադրական պատրիարք. գահընկեց եղավ իբրև հակասահմանադրական։— Ազգապ. 4019, 4052։

— 509. Սարգիս ոմն (ժամանակն անհայտ). Մղոնաչափութիւնը վերածել է ասպարէզների։—Այրարատ 413 ծան։

— 510. Սարգիս վարդապետ. Թարգմանել է Անաստաս Սի-

նայեցող գործերը հունարենից հայերեն (ժամանակն անհայտ).— Զարբ. Թրգմ. 296։

* **ՍԱՐԳՈՒԼ**, իգ. <պրս. سر sar «գլուխ» և گل gul «վարդ» բառերից, իբր թե «վարդերի գլխավորը՝ ամենալավը»։ Այս ձևով հիշված եմ գտնում մի անգամ 1517 թ. (Թորոս աղբ. Բ. 275)։ Այժմ կենդանի է երեք ձևով. թն Սարգուլ, թն Սարիգիւլ (օր. Սովետ. Հյաս. 1945 թ. մրտ. 31, էջ բ) և թն Սարինգիւլ։ Գուցե ոմանք հասկանում են «սարի՝ լեռան վարդ», ուրիշներ «թրք. sari (դեղին) վարդ» և կամ «թրք. sarin (զով!) վարդ». բայց այս բոլորից ավելի ստույգն ու հարմարն է առաջինը։

* **ՍԱՐԳՍՈՒԿ**, ար. փաղաքշական ձեն է Սարգիս անվան։ Հիշատակված է անթվ. մի արձանագրության մեջ (990 թ?) Սիսական 41. մի ուրիշը ԺԳ դարից. ԺԲ դարից էլ կա Սարգսիկ ձևով։

— 1. Սարգսիկ? (ավանդված է միայն սեռ. Սարգսկանն ձևով), որդի Սողոմոնի. մերձավոր Տրդատ քահանայի, որ իր Խուշուշ անուն կնոջ հետ տուն և այգիներ է նվիրել Անիի Ս. Փրկիչ եկեղեցուն 1173 թ.—Արձ. Շիրակ 86։

— 2. Սարգսուկ, շինել է Հայրավանքում երկու խորան, իր կնոջ Բահրի հետ (ԺԳ դար).—Սիսական 41. նույնը ունի և Ծմբատեանց, Գեղարքունի 435 (բայց գրում է Սարգուէ)։

* **ՍԱՐԴԱՐ**, ար. <պրս. سردار sardār «զորավար» բառից. իբրև անձնանուն հիշված է մեր մեջ 1666 թ. (Ձեռ. Վաստ. 928), 1704 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 ա)։ Սրանից է Սարդարեան ազգանունը։

**ՍԱՐԴԻԿ**, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Սարդիկ կրոնավոր, միաբան Հաւուցթառի. արդեն ծերունի՝ հիշատակված է 1214 թ.—Այրարատ 356։

* **ՍԱՐԻ**, ար. <թրք. صاری sarə «դեղին» բառից. հմմտ. հյ. Դեղին անունը և թրք. Սարուխան, Սարիբեգ անունները. նաև Սարու խոջա՝ նախարար Շահաբասի (Առաք. պատմ. 93)։ Ավանդված է Սարու ձևով 1609 թ? (Ձեռ. Հալէպի, Ա. 98 ա), Սարո անթվ. (Ձեռ. Վաստ. 286), Սարի զորավար Մեղրեցոց՝ ԺԸ դար (Սիսական 304 ա), Սառու՝ ԺԸ դար (Ձեռ. Թաւր. 25 բ)։ Այժմ էլ գործածական է Ղարաբաղում, Սարի ձևով, որից է Սարեան (Գլ. Սարըեան) ազգանունը։ Տես և Սարիկ։— Սարի գործածված է նաև իբր իգ. 1747 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 47 ա)։

*ՍԱՐԻ, ար. <ծագումը նախորդից տարբեր է, որովհետև թրքական ազդեցությունից առաջ է։*

— 1. Սարի *Ամատունի. Ջահուկ բերդի տերն էր. իր բերդը կամովին հանձնեց Գրիգոր (№ 71) Դերենիկ Բ-ին և մեծ պատիվ ստացավ նրանից (Թ դար).—Սամ—Շապհ. 48։*

— 2. Սարի, *զորավար Աբլիրատ իշխանի. երբ Աբլիրատը սպանվեց Դուինի Ապուսուար ամիրայից, Սարին վերցրեց նրա կնոջ և որդիներին ու տարավ Անի, ուր պատվով ընդունվեց Յովհ. Սմբատ Թագավորի (1020—1042 թ) կողմից.—Ուռհ. 11։*

— 3. Սարէ. *կամ է հիշյալ զորավարը և կամ որդի Աբլիրատի, եղբայր Աբլջահապի և Վասակի. իր հոր սպանությունից հետո գնաց Անի՝ Յովհաննէս-Սմբատ († 1042 թ) թագավորի մոտ։ —Ուռհ. 11։*

*ՍԱՐԻԱՅ, ար. հիշված է իբրև Բագրատունեաց հին անուն՝ Խոր. Բ. կզ. (երեք ձեռագրի մեջ). որ և* Սարեա *ձևով ունի Մխ. անեց. խա։*

— Սարիայ, *ազգական Ենանոս Բագրատունւոյ. Արշամը սպանեց նրան ի պատիժ Ենանոսի.—Խոր. Բ. իզ.—Նույնը* Սարի *ձևով ունի Ուխտ. Ա. ր։*

Sariaster, *որդի Տիգրանի. ապստամբեց հոր դեմ.*—Justi *288—9, որ մեկնում է այս բառը իրան.* sar *«գլուխ»+զնդ. պհլ.* yaštar *«պաշտող» բառերից, իբր «քահանայապետ»։*

** ՍԱՐԻԲԷԿ, ար. <թրք.* صاری بك Saribeg *անունից, որ բուն նշանակում է «Դեղին բեկ» (տես վերը* Դեղին *և* Սարի *անունները)։ Այս անունով հայտնի է մի թուրք իշխան ԺԴ դարից (Իբն-ի Բատուտա,* II, *էջ 362* Sārubēk *ձևով), որ* Justi *290 ա համարում է պրս.* ساری sārū *թռչունի անունից, ինչ որ ճիշտ չէ։ Այս անունը գործածական է այժմ էլ մեր մեջ. հնագույն վկայությունն ունինք 1602 թ. (Այրարատ 31). անթվական է* Սաբուգէկ՝ *Ձեռ. Վառդ. 618։*

Սարիմ *տես* Սարում։

Սարիճգուլ *տես* Սարգուլ։

*ՍԱՐԽՈՒԹԱ, ար. ծագումն անորոշ. մի անգամ ունինք հիշված՝*

— Սարխութա, *որդի Մալիքի, միաբանել է Գետաշէնի Աւետարանին և իր դուստր Լաանին որդեգիր է տվել Մովսէս քահանային 1387 թ.—Յովակիմեան, Նիւթեր և ուս. Ա. 45, 61։*

** ՍԱՐԽՕՇ, ար. <պրս.* سرخوش sarxoš *«մի քիչ հարբած»*

բառից (կարելի է հասկանալ նաև «սիրով հարբած» էն)։ Անձնանուն է նաև Իրանցոց մոտ. ինչ. Sarxuš մոնղոլ բանաստեղծ † 1715 թ. (Justi 289 բ). Նույն իմաստով կան նաև Sarmast խան աֆղան Քանդահարի, 1553 թ. (Justi անդ). իսկ Խումար տես առանձին։ Սարխօշ անունը հիշատակված է մեր մեջ ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Սարխաւշ 1549 թ. (Ձեռ. Վաստ. 651, Խաղբակեանք 243), Սարհաւշ 1557 թ. (Ձեռ. Վաստ. 659), Սարխօշ 1572 թ. (Տաշեան, Ցուց. 666), 1581 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 32 ա), 1635 թ. (Դրնգ. 527), 1658 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 549), Սարխաւշ 1665 թ. (Թորոս աղբ. Բ. 411), անհայտ թվականով՝ Շաքխօշ (Ձեռ. Վաստ. 606—7), Սարխօշ՝ ԺԶ դար (Տաշեան, Ցուց. 449), ԺԷ դար (Ազգ. մատ. ՀԸ, 72), անթվ. (Ձեռ. Վաստ. 391)։

† ՍԱՐԿԱՒԱԳ, ար. <հյ. սարկաւագ բառից. հմմտ. այլ կրոնական աստիճաններ, որոնք անձնանուն են դարձել. ինչ. Հայրապետ, Տէրտէր, Տիրացու, Քահանայ, Վարդապետ (տես այս անունները առանձին)։

— 1. Սարկաւագ Սոփեստոս † «1129 թ» տես Յովհաննէս (№ 163) Սարկաւագ։

— 2. Սարկաւագ քորեպիսկոպոս Ստեփանոս Գ կաթուղիկոսի Աղուանից (ԺԲ դար).—Կիր. գ։

— 3. Սարկաւագ առաջնորդ Հաղարծնի վանքի (ԺԲ դարից հետո).—Յուշիկք Բ. 304։

— 4. Սարկաւագ քահանա, որդի Սամուէլ երեց Անեցու և հայր Աբրահամ երեցի, որ կալվածներ է նվիրել Խծկոնքի վանքին 1233 թ.—Արձ. Շիրակ 128։

— 5. Սարկաւագ, Հերհերի աթոռակալ քահանա. Դաղիկ երեցի ցեղից էր. մատաղ հասակում Հերհերի քահանա ձեռնադրվեց, բայց վաղամեռիկ էր եղել արդեն 1243 թ.—Արձ. Սիսական 112, Արար. 1889, էջ 330։

— 6. Սարկաւագ, եղբորորդի Մխիթար Քոբայրեցու. իր անունով կա մի խաչքար Հաղբատում, 1255 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 62, 63։

— 7. Սարկաւագ, որդի Վրդանէս Գառնեցու, վաճառական, եկեղեցական սպասներ է նվիրել Հաղբատի վանքին 1261 թ.— Արձ. Երզնկեանց, Հնախ. տեղագր. 30։

— 8. Սարկաւագ երեց, որդի Մկրտչի. հող, այգի և հովատուն (villa, ամառանոց) է նվիրել Նորավանքին 1271 թ.— Սիսական 190։

— 9. Սարկաւագ, իշխեցող Կաթուղիկէին Անւոյ. հիշված է 1286 թ.—Շիրակ 72, 96։

— 10. Սարկաւագ կրոնավոր, իր եղբորորդի Յովսէփին գրել ավեց մի ժողովածու, Արճէշի Անապինկայ վանքում, 1298 թ.—Բոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 82։

— 11. Սարկաւագ վարդապետ, աշակերտ Մխիթար († 1213 թ) Գոշի. առաջնորդ էր Գետիկի վանքի (ԺԳ դար).—Կիր. ժա, Ոսկեան՝ Մատ. քնն. 132։

— 12. Սարկաւագ աբեղա, միաբան Տեղերի վանքի. «ութ օր մտօք յափշտակեցաւ յԱստուած», գնաց Երուսաղէմ ուխտի, ուր և մեռավ (ԺԳ դար).—Արարատ 147։

— 13. Սարկաւագ եպիսկոպոս Գողթան. ստորագրում է այն թղթին, որ գրեցին Սիւնեցիք Գրիգոր է Անաւարզեցի («1293—1307 թ») կաթուղիկոսի կաթոլիկական նորմուծութեանց դեմ.—Օրբ. կը. Զամչ. Գ. 291, Ազգապ. 1767։—Սիսական 312 ը սրա գահակալութիւնը դնում է 1280—1300 թ.։

— 14. Սարկաւագ, մերձավոր Թումայ և Հայրապետ քահանաների, որոնք մի Աւետարան գրել տվին 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։

— 15. Սարկաւագ քահանա, շինել է տվել Գնդեվանքի զանգակը, որ գտնվեց պեղումների ժամանակ՝ մի կարճ արձանագրությամբ 1307 թ.—Սիսական 107։

— 16. Սարկաւագ դպիր. գրել է մի Աւետարան Ջաջուռ իշխանի և նրա կնոջ Մամախաթուն իշխանուհու համար՝ Անբերդում 1310 թ.—Ձեռ. Կարին. 17։

— 17. Սարկաւագ, ուսուցիչ Աստուածատուր դպրի, որ օրինակեց Աւետարանը, 1317 թ.—Manus. brit. mus. 20 բ։

— 18. Սարկաւագ մոնոզոն Յովհաննավանքում 1318 թ.—Արարատ 172։

— 19. Սարկաւագ վարդապետ, առաջնորդ Կուքի կամ Հավարաբիւրք վանքի, 1322 թ.—Խաղբակեանք 60։

— 20. Սարկաւագ կրոնավոր, միաբան Բաջբերունեաց Սուխարայ վանքի. շնորհեց ԺԲ մարգարէից և Յոբայ գիրքը Սարգիս գրչին՝ արտագրելու համար, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. 332։

— 21. Սարկաւագ Բերդակցի, տաղասաց ԺԶ դարի. իր տաղերից են Գովեստ խաղողոյ և գինոյ, Կիւզէլ մի եօ երէկ տեսայ (հրատ., Գամառ-Քաթիպա, Ազգ. երգարան, 1856, էջ 85).

Կոստանեան, Նոր ժող. Բ. 46, Գ. 67 և էջ ը։ Տես և Տաշեան, Ցուց. 1148 բ։

— Սարկաւագ անվան անթվական հիշատակություններ տես Շիրակ 120, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 69=Ազգագր. հանդ. Է, 417, նաև Հաղբատի վանքի մի գամբանի վրա՝ Երզնկեանց, անդ 63, 67։

— Սարկաւագ անվան կրճատ ձևն է Սարկաւ, անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Թուր. 83 բ։

* ՍԱՐՀԱՆԳ, ար. <պրս. سرهنگ sarhang «զորապլուխ» բառից. իբրև անձնանուն գործածված է նաև Պարսից մեջ. ինչ. Sarhang ոմն գերունի Մուսուլում † 1052 թ (Justi 288 բ). Srahang ներքինի Մելիքշահի, գրավեց Վանը 1064 թ (Justi 310 բ)։

— Սարհանգ թագավոր Հայկազանց, հաջորդեց Արմոգին. իրեն էլ հաջորդեց Շաւաշը.—Սեբ. Ա. էջ 6, Սիմ. ապար. 19.—Ալիշան, Հյստ. նախ քան 232 խոսում է այս թագավորի մասին, անունը փոխելով Սարակ։

* ՍԱՐՀԱՏ, ար. <պրս. سرحد sarhad «սահման, սահմանագլուխ» բառից. գրված է զանազան ձևերով. ինչ. Սա(h)րատ 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578), Սարհատ 1633 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 86 բ), Սարատ 1635 թ. (Rapport Belgique 137), Սարհատ 1651 թ. (Գուշակեան, Հնդկահայք 87), Սահրատ 1660 թ. (Սխսակյան 446 ա), տպ. յիշատ. 1686 թվից, Սէհրատ տպ. յիշատ. 1729 թվից, Սարխատ անթվ. յիշատ. (Ձեռ. Վասպ. 342). Նույն հիշատակությունն է Սահրատ որդի խոջա Բաղդասարի՝ ԺԷ դար (Տաշեան, Ցուց. 724 ա)։

Սարղաբմիշ տես Սորղաբմիշ։

Սարու տես Սարի։

ՍԱՐՈՒԱՆԴ, ար. ծագումը ինձ անհայտ։ Մի անգամ միայն ունինք՝

— Սարուանդ պատրիկ Խլաթի, Արճէշի, Խլայի և Սալամասի. դաշնակից էր հունաց. կռվել է Արաբների դեմ 638 թ. այլուր կոչված է Ցուստինոս. իր աղջիկն է Տարուն կույս, որ տես.—Տոմաշէկ, Սասուն 20—23՝ ըստ Վակիդի արաբ պատմչի. իսկ Խալաթեան, Արար. մատ. 5 կոչում է Նուստինոս։

ՍԱՐՈՒԷՆ, ար. (Justi 290 ա կցում է պրս. Šarvīn անվան հետ)։ Այս անունով կա միայն՝

— Սարուէն իշխան Կորդուաց. գավառանեց Մեծն Տիգրա-

նին և անցավ Հռոմայեցոց կողմը. ուստի Տիգրանը գլխատեց նրան Ն. Ք. 66 թ.—Զամչ. Ա. 232։

*ՍԱՐՈՒԽԱՆ, տր. <Թրք. ساروخان Saruxan անունից, որ բուն նշանակում է «Դեղին խան» (տես վերը Դեղին, Սարի, նաև Սարում, Սարուպապ)։ Justi 290 ա համարում է պրս. سارو sārū թռչունի անունից, բայց ճիշտ չէ։ Այս անունով հայտնի են Սարուխան թուրք սուլթան Մանիսայի՝ ԺԴ դար (Իբնի-Բատուտա II, էջ 313) և Երևանի պարսիկ կուսակալներից մեկը 1669 թ։ Մեր մեջ հիշատակված է 1604 թ. (Առաք. պատմ. 9), 1628 թ. (Տաշեան՝ Ցուց. 708, Առաք. պատմ. 182), 1633 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 86), 1655 թ. (Բակուրան, Կիպրոս կղ. 59), Սարուխան անթվ. (Ձեռ. Վաստ. 450)։ Գործածական է նաև այժմ և որանից է Սարուխանեան ազգանունը։

— Սարուխան Միդանցի (կամ Հիդնացի), Նոր վկա. կոշկակար էր. միանգամայն երգիչ և քնարահար. գաղթեց Բաղէշ և այրիանալով՝ ամուսնացավ մի կնոջ հետ, որ իրեն քրիստոնյա և այրի էր հայտարարել։ Երեք տարի հետո երևան է գալիս, որ նա քրդուհի է՝ քրիստոնյա դարձած։ Սարուխանից պահանջվում է մահմեդական դառնալ. մերժելով ամեն պարգև և մեծություն, արհամարհելով բանտն ու տանջանքը, հավատքը չի ուրանում և կրակը գցվելով նահատակվում է 1631 թ։—Նոր վկ. 437—441> Ազգատ. 2495։

*ՍԱՐՈՒՄ, տր. <Թրք. سارم sarum «դեղինս» բառից, որ և Սարիմ. իբրև անձնանուն գործածվում է նաև Թուրքերի մոտ. ինչ. Սարում իշխան Թուրքման 1258 թ (Սիսուան 36 ա), Սարիմ փաշա Թուրք (Ազգատ. 3920)։ Անվան համար հմմտ. Սարի, Սարուխան, Սարուպապ, իսկ ձևի համար՝ Շահում, Գուլում, Ազամ են։ Այս անունով ունինք մեր մեջ Սարում 1613 թ. (Ձեռ. Վաստ. 846, իսկ 845 սխալ գրված Սարամ), Սարում անթվ. (Արցախ 201), հոգով՝ Սարումն անթվ. (բայց 1552 թվից ուշ. Ձեռ. Վաստ. 656), Սարիմ սն 1853 թ. (Ազգատ. 3886). երկու ձևից էլ ունինք Սարիմեան և Սարումեան ազգանունները. վերջինի համար հմմտ. Մկրտիչ Սարումեան, հիշված 1775 թ. (Տաշեան՝ Ցուց. 724)։

*ՍԱՐՈՒՄԵԼԻՔ, տր. <Թրք. سارو saru «դեղին»+արաբ. ملك melik «իշխան, թագավոր» բառերից. հիշված եմ գտնում մի անգամ ԺԷ դարից (Ձեռ. Վաստ. 1012)։

*ՍԱՐՈՒՊԱՊ, տր. <Թրք. سارو saru «դեղին»+հյ. պապ

բառերից. հիշված եմ գտնում մի անգամ 1674 թ. (Ձեռ. Դաղեան, Բ 46 բ). սրա երկրորդ ձևն է Սառուքաքա (կազմված թրք. بابا baba «հայր» համանիշից), որ թեև առանձին չէ գործածված, բայց նրանից ունինք Սառուքաքայեանց ազգանունը (Ղարաբաղ)։

* ՍԱՐՓԱՇԱ, ար. <պրս. سر sar «գլուխ» + թրք. پاشا paša բառերից, իբր «փաշաների գլխավորը». մի անգամ գտնում եմ գործածված 1579 թ. (Ձեռ. Վատ. 689. հիշատակարաններում չէ հիշված թվականը, իսկ ձրաեղից է հանում Լալայեանը և դնում այս թիվը)։

* ՍԱՒԱԼԱՆ, ար. <պրս. Savalan անունից. օր. Սավալան ամիրա Բաղէշի՝ եղբայր Շամշադնի (ԺԶ դար), ըստ Զամչ. Գ. 462։ Հիշված է մեր մէջ նույնպես ԺԶ դարում. սրանից է Սաւալանեան ազգանունը։

— 1. Սաւալան, որդի Շաքյանի, եղբայր Եղիա երէցի, որ օրինակեց Աւետարանը՝ Բաջթագուց Խոդանավար գյուղում, 1490 թ.—Ձեռ. Սեան. 5 բ։

— 2. Ավելի ուշ ունինք Սաւալան հիշված մի տապանագրում 1818 թ. (Բօսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 106)։

— 3. Իսկ Սավալան հիշված Դարբանդի Գօզու-Բուլաղ կոչված գերեզմանատան մի դամբանի վրա Լ=581 թվից (ըստ Բարխուդ. Աղվ. երկիր, էջ 109) բացարձակ թյուրիմացություն է. պետք է կարդած լինի Ռ թվանշանը։

* ՍԱՒԱՐ, ար. <արաբ. سفر Safar անունից, որի ավելի նորաձև արտասանությունն է Սափար։ Սրա ապացույցն է Սափարշահ անունը, որ գրված է նաև Սաւարշայ։ (Ավելին տես Սափար, Սափարշահ)։

— 1. Սաւար, պապն է Տիրացու կրոնավորի, որ էր միաբան Վարագայ վանքի 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429։

— 2. Սաւար, որդի խոջա Յովհաննէսի, որ ժառանգեց Տարօնի իշխան իր հօրեղբօրորդի խոջա Յովսէփի Մուշում գրել տված Աւետարանը 1488 թ.— Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 263։

— 3. Սաւար, որդի Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կոտ գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԶ դար).— Ձեռ. Սեան. 18։—Նույնը Սմբատեանց՝ Երնջակ 217 կարդում է Սաւատ և դնում է ըստ հիշատակարանի՝ 1465 թ։

— Ավելի ուշ կա Սաւար 1555 թ. (Ձեռ. Սեր.=ՀԱ 1926, 335)։

ՍԱՒԱՐԹԱ, իգ. ծագումն անորոշ. մի անգամ հիշատակված եմ գտնում՝

— Սաւարթա, կին Թաչատուր քահանայի (№ 82), որ Մարգարէ արեղային գրել տուեց մի Աւետարան, Բուխտանեից երկրում (Մարտատան), 1428 թ.—Նոտարք 90։

* ՍԱՒԳՈՒԼ, ար. <Թրք. سوگلو sevgülü «սիրելի» բառից, որ թէ՛ ար. է և թէ իգ։ Մի անգամ գտնում եմ մեր մէջ իբր ար.՝ գործածված այս ձևով՝ 1579 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 390)։ Նույնը գործածական է նաև այժմ, բայց իբր իգ. օր. Սովետ. Հյաստ. 1945, սեպտ. 12, էջ 2, սյունակ ա։

* ՍԱՒԶԲԷԿ, ար. <պրս. سبزی savzi, որ չամիչի ընտիր մի տեսակն է. հմմտ. վարը՝ Սաւզի և Սաւզիկ. Մի անգամ գտնում եմ հիշատակված Ձեռ. Վենետ. Ա. 414. Թվականը անհայտ է, բայց 1427-ից ուշ։

* ՍԱՒԶԻ, ար. <պրս. سبزی savzi «չամիչ» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված Ձեռ. Թաւր. 120 բ. Թվականը անհայտ, բայց 1614-ից ուշ։ Հմմտ. Սաւզբէկ։

* ՍԱՒԶԻԿ, իգ. <պրս. سبزی savzi «չամիչ» բառից. հմմտ. վերը Սաւզբէկ, Սաւզի և Քիշմիշ։ Ունենք նաև Զամչեան նշանավոր ազգանունը և Պոլսում լսել եմ մեր թաղում (Սամաթիա) «Զամիչին աղան». բայց այդ Զամիչը կարծեմ մականուն էր և այդպես էր կոչվում փոքր աչքեր (չամիչ աչքեր) ունենալու պատճառով։—Վերի անունը գտնում եմ մի անգամ հիշատակված Սավզիկ ձևով 1635 թ. (Rapport Belgique 135) և մի անգամ էլ Սաւսիկ ձևով, իգ. 1581 թ. (Թորոս աղբ. Բ. 430)։

* ՍԱՒՂԱԹՄԻՇ. ծագումը տես Սուրղաթմիշ։ Հիշված է մի անգամ՝

— Սաւղաթմիշ (կամ Սարղաթմիշ), հայր Նուրիճանի, որ Ագուլիսում, Գրիգոր արեղային գրել տվեց մի Ցայսմաւուրք 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։

* ՍԱՒՃԻԱՅ, իգ. <արաբ. سجيه sajiya «բնավորություն, մանավանդ ազնիվ բնավորություն, փառք». մի անգամ գտնում եմ հիշված՝

— Սաւճիայ, կին Էլպաշի Էմինի, որ Կեսարիայում գրել տվեց մի Ճաշոց՝ 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. էջ 1848։

* ՍԱՒՈՒՐ. համարում եմ վրիպակ, որ պետք է ուղղել Սաւար (այն է Սաֆար) ար. 1593 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 87։

* ՍԱՒՌԱՒԶ, ար. համարում եմ վրիպակ. առաջին տառը ուղղելով կարդում եմ Խաւռաւզ, որ է խոռոզ <պրս. خروس xoros,

թրք. xoroz «աքլոր» և հիշատակված է վերը՝ Խուռազ ձևով (տես անդ)։

— Սաւռաւզ մահտեսի, կինն է Ղիմաթ. գնեց Խաչատուր գրչի գրած Գանձարանը (Սեբաստիա 1499) և ընծայեց վանքին.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 317։

* ՍԱՒՏՈՒՃԱՆ, ար.<թրք. سودى جان sevdi ǰan «սիրեց հոգին» ձևից (գրված արևմտյան տառադարձությամբ). մի անգամ գըտնում եմ հիշատակված անթվական (բայց 1476 թվից ուշ գրված) մի հիշատակության մեջ (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 339)։

* ՍԱՓԱՏԻԱ, ար. նախնական եբրայական անուն, որ հատուկ էր Բագրատունիներին՝ ըստ Խոր. Բ. կզ։ Անշուշտ Խորենացին նկատի ունի այստեղ Դաւթի որդիներից մին, որ Բ. Թագ. Գ. 4 կոչված է հյ. Սափատիա <հուն. Σαφατία <եբր. שפטיה Šəfatəyā.

— Սափատիա, որդի Ենանոս Բագրատունւոյ.—Խոր. Բ. իգ. գրված Սաբատիայ՝ Ուխտ. Ա. լ։

* ՍԱՓԻՐԱ, իգ. <հրէական անուն է, որ հայտնի է Ս. Գրքից.—Անանիա և իր կինը Սափիրա անսաստեցին առաքյալների հրամանին և մահով պատժվեցին (Գծ. ե)։ Սպասելի չէր, որ այսպիսի մեղավոր կնոջ անունը գործածական դառնար. բայց արդարանում է հների ինքնանվաստացման ոգով. հմմտ. Անպէտ, Գէշ, Ապիրատ, Յիմար անձնանունները։ Մի անգամ գործածված եմ գտնում՝

— Սափիրա, կին Շիրինի և մայր դրիչ Յովհաննէս սարկավագի, որ Երզնկայում օրինակեց «Առ որս» գիրքը, 1266 թ.—Շողակաթ 201։

* ՍԱՓԻՒՐ, իգ. <հուն. σάπφειρος (կամ լտ. sapphirus) բառից, որ մի պատվական քարի անունն է. հյ. կոչվում է շափիւղայ, որի իւ ձայնավորը ազդել է Սափիր ձևի վրա։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1657 թ. (Ձեռ. Վասպ. 835)։—Երևանում լսել եմ նաև Շափիւղայ անունը (Զմիւռնացի մի կին էր). բայց այդ անունը ինքնահնար էր։

* ՍԱՔԻՆ (սեռ. Սաքինին), ար. <արաբ. ساكن sākin «հանդարտ, հանդիստ, հեզ և խոնարհ» բառից։ Մի անգամ հիշատակված եմ գտնում անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ)։

* ՍԱՖԱԼԱ, ար. <արաբ. سيف الله Sayf-ul-lah անունից, որ բուն նշանակում է «սուր Աստուծոյ» (سيف sayf «սուր» բառից).

մի անգամ հիշատակված եմ գտնում անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1609 թվից քիչ ուշ (Ձեռ. Հայէպի, Ա. 341)։

[ՍԱՖԱՏ, ար. ըստ իս վրիպակ է փոխանակ Սաֆար. մի անգամ գտնում եմ հիշատակված 1695 թ. (Ջամբռ 203)։]

*ՍԱՖԱՐ, ար. <արաբ. سفر Safar անձնանունից, որ բուն նշանակում է «ճամբորդություն» (Կամուս, Ա. 895, ուր տես նաև այս անունով անձեր), կամ արաբ. صفر ṣafar ամսանունից, ինչպես ունինք Մուհարրեմ և Ռաջաբ անձնանունները, որոնք նույնպես ամսանուն են։ Գրված է Սաֆար, Սեֆեր, (հինը Սաւար՝ տես առանձին) ձևերով, որոնցից էլ Սաֆարեան, Սեֆերեան, Սեֆերօղլի ազգանունները։—Վրիպակ գրչությամբ գրված է Սաֆատ (տես առանձին), Սազար (Թորոս աղբ. Ա. 184, որի ուղիղ ընթերցվածը ունի Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 85), Սաւուր (տես առանձին). իսկ ամենից զվարճալին ունի Ձեռ. Վատ. 360 Սաֆար Դիտաղար!—Արեմտահայոց ձեռագրով Ե և Ի տառերը շատ նման են. ուստի Լալայեանը գիտատար «խեղճ, թշվառ» շատ սովորական ածականը կարդացել է գիտատար և հայերեն չիմանալու պատճառով դարձրել է գլխատառով անձնանուն։

— 1. Սաֆա (այսպես համառոտագրած), որ մի քանի ուրիշ անձերի հետ հիշատակված է Ներքին Ագուլիսի մի խաչքարի վրա 1478 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, 313 (այս անվան ամենահին հիշատակությունն է)։

— Ավելի ուշ հիշատակված են Սաֆար՝ ԺԵ դար (Տաշեան՝ Ցուց. 724), Սէֆէր 1601 թ. (Ձեռ. Վենետ. Բ, 997), Սաֆար 1602 թ. (Նաթանեան՝ Տեղեկ. Սեբաստ. 85, նույնը նաև Թորոս աղբ. Ա. 184, բայց սխալ գրված Սազար), Սէֆէր 1610 թ. (Սիսական 419, 443), Սաֆար 1611 թ. (Ջամչ. Գ. 570), Սէֆէր 1646 թ. (Սիսական 451), Սաֆար 1655 թ. (անդ 507), 1682 թ. (Ձեռ. Վատ. 580), 1691 թ. (Նոր վկ. 528), Սէֆէր 1709 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1928, 493)։

— 2. Սաֆար որդի Պեխի, այրմամբ նահատակվեց ՋՀԱ=1522 թ.—Սամ. անեց. շար. 176=Առաք. պատմ. 486, Դրնդ. 6։

— 3. Սեֆեր Սեբաստացի. արհեստով ալաճաճի էր (գունավոր կտավ շինող կամ ծախող). հույների զրպարտությամբ ընկել է թուրքերի ձեռքը, դատի է կանչվել և հավատքը չուրանալով նահատակվել է Պոլսում, 1634 թ.—Ճանիկեան՝ Հնութ. Ակնայ 98, Ազգապ. 2431։

* ՍԱՖԱՐԻ (կամ Սաֆարիէ), իգ. <նախորդի իբր իգականն է. առաջին ձևը հիշված է 1652 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 85 բ), երկրորդը 1654 թ. (անդ 127 բ)։

* ՍԱՖԱՐ-ԱԼԻ. հայ մանուկ էր, որին պարսիկները գերելով մահմեդական էին դարձրել. ապա եղավ Աղա-Մահմադ-խանի սիրելի սենեկապետը։ Երբ խանը արշավեց Շուշի, իր հետ էր նաև այս սենեկապետը։ Նա տեսնելով հայ եկեղեցականների թափորը և Աստուածածնի պատկերը, իր մեջ զարթնած զգաց հայրենի հավատը։ Շահը Շուշին գրավելուց հետո, սպառնացել էր որ բոլոր հայերին պիտի կոտորի. մանկահասակ սենեկապետը շահի ոտքին ընկնելով աղաչեց որ ների նրանց. շահը կատաղեց և ասաց. «Ղարաբաղը (սև այգի) կարմիր արյունով ցողելով՝ ես նրան վարդի գույն պիտի տամ... առավոտյան այդ բոլոր դավաճանների գլուխներից հրապարակի վրա մի աշտարակ պիտի կազմել տամ, իսկ քո գլուխը, Սաֆար-Ալի բէկ, այդ աշտարակի գագաթի վրա պիտի դնեմ»։ Պատանին սարսափեց. նա գիտեր որ շահը իր խոսքին տեր էր. ուստի գիշերը՝ երբ քնած էր շահը, հարձակվեց նրա վրա և դաշունահար սպանեց։ Պարսից բանակը ցրվեց և Շուշին ազատվեց։ Սաֆար-Ալի բէգին տարին Թաւրիզ. նա խոստովանվեց որ ինքը հայ քրիստոնյա է, հայհոյեց Մահմեդին. չարաչար տանջանքներով նահատակեցին նրան (1797 թ)։—Րաֆֆի, Խամսայի մել. Թիֆլիս 1882, էջ 206—214։

* ՍԱՖԱՐՄԵԼԷՔ, իգ. <նույն Սաֆար անունից+արաբ. ملك melek «հրեշտակ», որ սակայն դարձրել են մելիք։ Այսպես ունինք Սաֆարմելիք 1687 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 89), Սաֆարմելիք 1742 թ. (անդ 134 ա)։

* ՍԱՖԱՐՇԱՀ, ար. <նախորդ Սաֆար անունից+պրս. شاه šāh «թագավոր», որ այստեղ իբր մականիկ է դրված։ Սրա հին ձևն է Սաւարշահ, որից ունինք Սաւարշեա (եւ Սաւարշայս) անթվական մի հիշատակարանում (Բարխուտ. Արցախ, 40)։ Գործածված է ԺԵ դարից մինչև ԺԸ դար։

— 1. Սաֆարշայ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113—4։

— 2. Սաֆարշայ, որդի խոջա Բարիմշահի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 3. Սաֆարշայ, խնամի Մատթէոս քահանայի, որ Եղեգ-

եաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— Ավելի ուշ հիշատակված են Սաֆարշայ 1707 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 221 բ), անթվ. (Ձեռ. Թուր. 71 ա)։ Սրանից է կազմված Սեփերշեան ազգանունը, որ է Սէֆէրշահեան (Տաշեան, Ցուց. 967)։

* *ՍԱՖԱՐՕՂԼԻ*, տր. < վերի Սափար անունից + թրք. اوغلى oğli «որդի» (այն է Սաֆարի որդին). տաղասաց ԺԸ դարից. իր տաղերից է «Ի վերայ քաղաքին Երեւանայ. Երկինքն թունա տաւ, գետինն գոռաց» (Տաշեան, Ցուց. 863)։ Այլ է Սեֆերօղլի, աշուղ, գրեց Յով. Մալաթիացի նահատակի արտասուաց տաղը 1775 թ. (Նոր վկ. 569)։

* *ՍԱՖՐԱԶ*, տր. < պրս. سرافراز sarafrāz «գլուխը բարձր բռնած, հպարտ» բառից. ինչ. Sarafrāz Սամարղանդցի բանաստեղծ, Sarafrāz Սուլթան՝ զորավար 1545 թ., Serefrāz խան, իշխող Բենգալի՝ ԺԸ դար (Justi 288 ա)։ Մեր մէջ հիշատակված է 1618 թ. (Manus. brit. mus. 13 ա), 1620-ական թվերին (Կնիք հաւ. յոյ. V), Սարֆրազ՝ Հայր. պատմ. 47, 227, Սաֆռազ՝ ԺԸ դար (Ախալկան 18 բ, 215 ա), Շաֆռազ 1699 թ. (Ախալկան 212 բ, 473 ա)։ Սրանից Սաֆրազեան, Սաֆրատեան ազգանունները։

*ՍԴԱՆԱ*, կն. ծագումը ինձ անհայտ։ Ունինք միայն՝

— Սղանա կին Գամարսան Սուչավացու, մի տուն են կառուցել Մալաթիցոց վանքին 1448 թ.—Տաշ, Արեւել. հայք 14։

*ՍԵԲ* (սեռ. Սեբին ձեւով). հայտնի չէ թե որ անվան համառոտությունն է։ Մի անգամ հիշատակված է Ամասիայ Ս. Աստուածածին եկեղեցու մի խաչքարի արձանագրության մէջ, որ հետեւյալն է. «Թվ. ՋԽԵ (=1496 թ). Ցշկ. է Սեբին» (հաղորդեց Ամասիայից Կարապետ Գազազեան, 1912 ապր. 12)։

* *ՍԵԲԵՐ*, տր. արդյոք կրճատ ձեւն է Սեբերիանոս անվան, որ այլուր բնավ գործածված չէ և հայտնի է մեզ Ե դարի «Սեբերիանոսի ճառք» թարգմանությամբ։ Ունինք մի անգամ՝

— Սեբեր, հայր Կարապետ քահանայի, որ Նախավկայի վանքում գրել տվեց Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու 1397 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 227։

* *ՍԵԲԷՈՍ*, տր. < հուն. Εὐσέβιος անունից, որ բուն նշանակում է «բարեպաշտ» և կազմված է εὖ «բարի» և σέβομαι «պաշտել, երկրպագել» բառերից։ Այս անունը տալիս է հյ. Եւսեբիոս (տես այս անունը, որ գրեթե չէ գործածված մեր մէջ)։ Կրճատման մասին տես Գինոս. ուղիղ ձեւն է Սեբիոս (ըստ Ակին-

եան, Մատեն. հետազ. Բ, 20—21)։ Առանց εὐ ածականի թերևս գործածական էր հունաց մեջ, իբր «պաշտող (Աստուծոյ)»։

— Սեբէոս եպիսկոպոս Բագրատունեաց. ժամանակցել է Դուինի եկեղեցական ժողովին «645 թ». է դարու պատմիչ է. գրել է Յունաց Հերակլ կայսեր (610—641 թ) և իր ժամանակի պատմութիւնը, որ հասցնում է մինչև «661 թ»։ Հրատարակվեց նախ Պոլսում 1851 թ, ապա Պետերբուրգ 1879 թ. (Պատկանեանի ձեռքով)։ Վերջին լավագույն հրատարակությունը կատարեց Ստ. Մալխասեանը՝ Երևան 1939 թ։ Իր մասին խոսում են Զամչ. Բ. 345, Զարբ. Հին դպր. 435—441, Ակինեան՝ Մատեն. հետազ. Բ, 3—102 և վերջապես Երևանի հրատարակության հառաջաբանը՝ էջ ե—զգ, ուր Մալխասեանը ամփոփում է բոլոր քննիչների ուսումնասիրությունները Սեբէոսի մասին։ Սեբէոսը առաջապատում պատմիչ է. նա տալիս է ոչ միայն հայոց, այլ և ժամանակակից Պարսից պատմությունը ընդարձակ, հատկապես Վահրամ Չոբինի ապստամբության մանրամասնությունները՝ ավելի լավ քան Ֆիրդուսու Շահնամէն է։ Այս տեսակետից եվրոպական պատմական քննադատությունն էլ գովեստներ չի խնայում մեր պատմիչին։ Սեբէոսը նշանավոր է հատկապես նրանով, որ տալիս է մեզ Մարաբաս Մծուրնացու պատմությունը, այն է Հայկ նահապետի և Հայկազանց պատմությունը, որ ծանոթ էր մեզ Խորենացուց՝ տարբեր խմբագրությամբ։—Սեբէոս՝ Կանոն. 130. Տաշեան՝ Ցուց. 654.—Սեբիոս՝ Մխ. անեց. ե.—ուղ. Եւսեբի՝ Մխ. այրիվ. 37.—սեռ. Սեբէոսի՝ Սեբ. էջ 1.—բց. ի Սեբէոսէ՝ Ասող. Ա. ա.— ի Սեբիոսէ՝ Կիր. 3. Սամ. անեց. 3։—Սեբէոսի հետևորդն է Սիմէոն Ապարանցի իր «Վիպասանութիւն» տաղաչափյալ աշխատության մեջ (տես Սիմէոն № 193 անվան տակ)։

* ՍԵԲՈՒԽՏ, ար. <պրս. Sēbūxt անունից, որ կազմված է sē «երեք» և bōxt «փրկել» բառերից և նշանակում է «որին փրկել են երեքը» (այն է humata բարի միտքը, hūxta բարի խոսքը և huvaršta բարի գործը)։ Այս անունով ծանոթ են Սեբուխտ հրամանատար Պարսից՝ Աղուանքում, պարտվեց Վարդան Մամիկոնեանի դեմ մղած ճակատամարտում (450 թ), Σεβόχθης դեսպան Խոսրով Ա-ի Յուստինոս Բ կայսեր մոտ (571 թ), Sebūxt աբեղա Իզայում, Sīboxt վերջին կուսակալ Բահրէյնի (629 թ), Sābūxt եպիսկոպոս Կիննեսրինի (640 թ).—Justi 293 բ, Horn, էջ 270, § 51, Հիւբշ. 72։—Սեբուխտ անունը հիշատակված

է մեր մեջ մի անգամ անթվական մի արձանագրության մեջ (Այրարատ 289)։

*ՍԵԴԱ, իգ. ենթադրում եմ < արաբ. سیده seyda «տիրուհի» բառից, որի արականն էլ լինում է Սայդի < արաբ. سیدی saydi, seydi «տէր իմ»։ Արաբ. سیده seyda բառի երկրորդ ձևն է سیدة seydet, որից անձնական հոլով سیدتی seydeti «տիրուհիս, իմ տիրուհին»։ Ժողովրդական արաբերենում առաջինը դարձել է այժմ سیدی sīdi «տէր իմ» և երկրորդը՝ sīti «տիրուհիս», որից էլ հյ. Սիթի, Սթի (տես առանձին)։ Երկու ձևերն էլ գործածական են այժմ Արաբների մոտ իբր ար. և իգ. պատվանուն։—Justi, էջ 142 բ գրում է Seday կամ Iseday և համարում է իրանական անուն. ուրեմն կարծում է Isa «Յիսուս» և da «տված» բառերից?! Այժմ մեզ մոտ տարածված է մի ուրիշ մեկնություն, որ իբր թե Սեդա ծագում է արաբ. صدا ṣadā «ձայն» բառից։—Իմ նոր ստուգաբանությունը առաջարկեցի մեր Ակադեմիայի հիմնադիր և պատվավոր նախագահ, ականավոր պատմաբան, հնագետ և բանասեր Ակադ. Յ. Ա. Օրբելին (1947 թ. հուլիս), որ ոչ միայն ընդունեց այն, այլ և նոր ապացույցներով հաստատեց։ Նախ հերքեց صدا ṣadā բառը, որ պիտի տար հյ. *ծադայ, քանի որ արաբ. ص ṣ դառնում է հյ. ծ և ոչ թե ս։ Երկրորդ՝ նշեց որ մեր արձանագրության մեջ շատ անգամ այս անունը գրված է Սեդայ, ուր ե գրված է եյ ձայնի դեմ։ Հին հայերը չգիտեին ոչ եյ և ոչ էյ. և որանց փոխարեն գրում էին ե, որ գոնե իր պաշտոնով, թեկուզ ձևապես ներկայացնում է եյ ձևը։ Այս ճիշտ նկատողությամբ արդարանում է ոչ միայն Սեդա գրչությունը, այլ և հաստատվում է մեր ստուգաբանությունը։— Սեդա անունը գործածված է մեր մեջ Թ—ԺԳ դար. այնուհետև խափանվեց. նորից կենդանացավ 1912 թվից սկսած և այժմ շատ տարածված անուն է։

— 1. Սեդայ, դուստր Գագիկ Աշոտյան Արծրունու, կին Վասպուրականի Աշոտ իշխանի, որ Գրիգոր-Դերենիկ Գ-ի որդին էր։ Սույն Սեդայի խնդրանոք ազատվեց Արշակ (№ 14) Վարաժնունին, որ գերի էր ընկել Ատրպատականի Ափշին ոստիկանի ձեռքը «896 թ»։—Արծր. Գ. իե, իթ.—Սետայ՝ Արծր. Գ. իբ. Մուս—Շապհ. 64.—սխա. Սեդայի՝ Արծր. Գ. իգ։

— 2. Սեդա, դուստր Գրիգոր (№ 111) Համզա Պահլավունու, քույր Վահրամ սպարապետի († 1045 թ), մանուկ Համզայի, Վասակ, Տիգրան Պահլավունեաց և Ապլղարիբի (№ 4), հորաքույր

Գրիգոր Մագիստրոսի։ Վաղամեանիկ եղավ և իր մայրը՝ Շուշան (№ 12) տիկնայ տիկին նրա հիշատակին մի կրպակ նվիրեց Անիի Առաքելոց Ս. Գրիգոր եկեղեցուն 995 թ. ավելի ուշ իր եղբայր Ապլղարիպն էլ մի հանգստարան է շինել իր հոր, իր մոր, եղբոր Համզա մանկան և քրոջ Սեդայի համար 1040 թ.— Արձ. Շիրակ 53, Ալիշան՝ Շնորհ. էջ 12 (տես տախտակը), Ազգաբ. 1154։

— 3. Սեդա, տիկնանց տիկին, դուստր Վասակ սպարապետի, քույր Գրիգոր Մագիստրոսի և կին Վահրամ իշխանաց իշխանի՝ որդւոյ Աշոտի. իր հոր եղերական մահից հետո «1020 թ», նրա հիշատակին նվերներ է արել Բագնայրի վանքին։—Արձ. Շիրակ 113, Մագ. թղ. յոջ. էջ իբ, Ալիշան՝ Շնորհ. 13։

— 4. Սեդա, դուստր Հասանի, քույր Խուրտի և Գարսիմոյի (№ 3). վերջինս Օշական գյուղի տերն էր և իր, իր եղբոր և իր քրոջ հիշատակին նվերներ է արել Արջոյառիճին 1207 և Բագնայրին 1210 թ.—Արձ. Շիրակ 117, (121)։

— 5. Սեդայ, կին Օտար Կոզրացու. միասին մի խաչքար են կանգնեցրել և իրենց ազահանքը կեսը նվիրել Բազարանի Մայր եկեղեցուն, 1235 թ.—Արձ. Այրարատ 68։

— 6. Սեդա (կամ Սեդա), կին Առիւծի Հոգևորեանց, որ Հառիճոսի վանքի տուն է նորոգել 1251 թ. և նշխարատունն է շինել 1277 թ.—Արձ. Շիրակ 2?։

* ՍԵԴՐԱՔ, ար. <եբր. שדרך Šadrak անվան հուն. Σεδράχ տառադարձությունից. բուն բաբելական անուն է. հմմտ. Դան. Ա. 7. «Եւ եդ նոցա ներքինապետն (Նաբուգոդոնոսորի) անուանս. Դանիէլի՝ Բաղտասար, և Անանիայի՝ Սեդրաք, և Միսայէլի՝ Միսաք, և Ազարեայ՝ Աբեդնագով»։ Թեև հնից միայն երկու անգամ է ավանդված, բայց այժմ էլ բավական տարածված է և որանից էլ ունինք Սեդրակեան ազգանունը։ Շատեր գրում են Սեդրակ՝ ազդվելով հյ. -ակ գգվական մասնիկից, որ այստեղ գործ չունի. ճիշտ ձևը ք-ով է, ըստ որում հունարենը ունի վերջաձայն χ, որ է հյ. ք։

— 1. Սեդրաք քահանա Սպրակունիս գյուղացի, հայր Երնջակի Յովհաննէս (№ 324) եպիսկոպոսի, որ ապստամբեց Յակոբ Ա Կլայեցի կաթողիկոսի դեմ՝ շուրջ 1273 թ.—Օրբ. կզ։

— 2. Սեդրակ, որդի Աստուածատուր քահանայի, որ Լիմ անապատում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Ավետարան, 1301 թ. —Ջեռ. Վասպ. 141։

*ՍԵԹԱՐ*, *ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում* Սեթար *ոմն, որ 40 դեկան է նվիրել Թանատի վանքին.—Միսակյան 123։*

* *ՍԵԹԵԿ. ար. <կրճատված* Մելքիսեդեկ *անունից, ինչպես Աստուածատուր> Ծատուր, Եղիսաբեթ > Սաբեթ։ Բայց գուցե* Սեդեկիա *անունից։ Մի անգամ հիշված ԺԴ դարում։*

— Սեթեկ, *որդի Գրիգոր քահանայի, որ նրա համար գնեց մի Աւետարան. որդին վաղամեռիկ եղավ և հայրը Աւետարանը նվիրեց Գաղիայ Ս. Գէորգ եկեղեցուն, 1348 թ.—Ձեռ. Ագուլ.= Արրա. 1911, 564։*

* *ՍԵԹԻՐԵՑ, ար. կարծում եմ որ կազմված է* Սեթ+երեց *բառերից. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԶ դարում՝*

— Սեթիրեց *հայրապետ Երուսաղէմի, 1526 թ.—Ձեռ. Կեռ. ածած. 70 բ (տարօրինակ է այս անունը, որ ցուցակի անվանացանկում էլ չի հիշված։ Այդ թվին Երուսաղէմի պատրիարքն էր Աստուածատուր Բ Մէրդինցի)։*

* *ՍԵԼԱՄ, ար. եթե ուղիղ է այս ձևը, ծագում է արաբ.* سلام selām *«փրկություն, բարև, ողջույն» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԸ դարում (Ձեռ. Դադեան, Բ. 15 ա)։ Արաբ. ես կա* Selām *ար. անուն (Կամուս. Գ. 481)։*

* *ՍԵԼԱՄԱՑ, իգ. <արաբ.* سلامة sellāme *իգ. անուն (Կամուս, Գ. 483),* سلمى Selme *«թարմ, նուրբ, սիրուն կին», նաև իգ. անուն (անդ 481)։ Մի անգամ ունինք հիշատակված՝*

— Սելամայ, *կին Դուլթի (№ 90). վերաշինեց Հաղբատի Ս. Աստուածածին (Զգրաշէն) եկեղեցին 1195 թ.—Արձ. Երզընկեանց՝ Հնախ. տեղագր. 67, Ազգագր. հանդ. Է, 415։*

* *ՍԵԼԻՄ, ար. <արաբ.* سليم Selīm *անունից, որ բուն նշանակում է «ողջ, անարատ, զերծ ու ազատ»։ Այս անունով հայտնի են Տաճկաց սուլթաններից Սելիմ Ա Ճավուզ (անգութ) 1512—20, Սելիմ Բ Արբշիռ 1566—74, Սելիմ Գ 1789—1808 թ։ Հնից ավանդված չէ մեր մեջ այս անունը. բայց այժմ գործածական է Հալէպի հայոց մեջ (տես Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 52 ա)։ Կամուս, Գ. 481—2 կա* Selīm *իգ. 15 անձ։*

— Սլիմ Սուլթան *ձևով գործածված է իբրև իգ. 1587 թ.* (Bodleian *107)։—Տաճկերենում* սուլթան *բառը անձնանուններից առաջ դրված արական է, հետադաս՝ իգական է. օր.* Սուլթան Սելիմ, *բայց* Վալիդէ Սուլթան *«մայր թագուհի»։*

* *ՍԵԼՈՒՄ, ար. կա պրս.* سلم Selm՝ *Պարսից Ֆերիդուն թա-*

գավորի որդին (Շահն. հտ. 1, էջ 103). բայց սա շատ հին է. մինչդեռ Սելում նոր գործածություն ունի մեր մեջ։ Ուստի ավելի հարմար է դնել արաբ. سلم Selem, Selme և նման արական անձնանուններից, որոնք հիշում է Կամուս, Գ. 481—4։

— 1. Սելում մելիք, որից սերվել է Արադածունի տոհմը 1685 թ.—Այրարատ 133։

— 2. Սելում կամ Սելօում մելիք, «իշխող նահանգացս Շիրակայ և Շարապխանու և այլոցն, ի գիւղէն Անտոն կոչեցելոյն, որդի մեծի պարոն Խանբար մելիքին, որ վերըստին նորոգող եղև յայսմ նահանգացս զոր յառաջմէ անմարդաբնակ եղեալն էր» 1702 թ.—Բոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 23։

— Սելում անունը հիշված է նաև 1758 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 14 ա), 1825 թ. (Բոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 91՝ մի շիրմի տապանագրում), անթվական (բայց 1321-ից ուշ գրված) մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 346)։

**ՍԵԽ**, ար. ծագումը ինձ անհայտ. հիշված է մի անգամ՝ միայն սեռ. Սեխին ձևով, ԺԶ դարում (Տաշեան, Ցուց. 102)։

* **ՍԵԿՈՒՆԴՈՍ**, ար. <հուն. Σεκοῦνδος անունից, որ փոխառյալ է լտ. Secundus անունից։ Այս բառը բուն նշանակում է «երկրորդ» և նախապես գործածվում էր անձնանունների վրա իբրև վերադիր, ապա անկախ անուն դարձավ։ Հայտնի են այս անունով Julius Secundus նշանավոր հռետոր՝ ժամանակակից Տիտոս կայսեր, Սեքունդոս լաակոց պյութագորեան փիլիսոփա (Հիւբշ. 336), և հավանաբար Սեկունդոս՝ ընկեր Պողոս առաքյալի Գծ. Ի. 4։

— Սեկունդոս եպիսկոպոս Մոկաց. ստորագրում է այն թղթին, որ Հայոց Յովհաննէս կաթուղիկոսը իր եպիսկոպոսների հետ միասին գրեց Աղուանից եպիսկոպոսներին՝ զգուշացնելու համար նրանց Նեստորական և Քաղկեդոնական քարոզիչներից (Զ. դար).— բց. ի Սեկունդոսէ՝ Գիրք Թղ. ԺԹ. Կղկնտ. Բ. Է։

* **ՍԵՂԲԵՍՏՐՈՍ**, ար. <լտ. Silvester անունից՝ հունական տառադարձությամբ. ծագում է silva «անտառ» բառից և նշանակում է բուն «անտառային, գեղջկական, վայրի, անմշակ»։ Այս անունով հայտնի է Սեղբեստրոս պապ Հռոմի, որի վարքը անցել է Յայսմաւուրքի մեջ. ունինք նաև ընդարձակ «Պատմութիւն վարուց Սեղբեստրոսի»։ Հնում մեր մեջ քիչ է եղել գործածված, բայց այժմ կա կրճատ Սեղբոս ձևով, որից և Սեղբոսեան ազգանունը։ Սեղբոս ձևը հիշված է Արր. կրետ. 93 և

Արր. երև. էջ 13 (1723 թ)։—Գոլսում կար նաև Սեղբոս խաճ անունով մի իշխան կամ պանդուկ։

— 1. Սեղբեստրոս, հեղինակ Մեկնութեան Սաղմոսաց, որ վերատին կարգավորելով Վարդան Բարձրբերդցին («1271 թ») կազմեց իր անունով ծանոթ մեկնությունը.—տե՛ս. Սեղբեստրոսի՝ Վրդն. աղ. ճժը, էջ 420։

— 2. Սեղբեստրոս աբեղա Սեբաստիոյ Ս. Նշան վանքի. հավատքը չուրանալով նահատակվեց Ստեփաննոս եպիսկոպոսի և Թորոս աբեղայի հետ՝ Սեբաստիոյ սուլթան Բուրհանէդդինի ձեռքով, «1387 թ»։—Յայսմ. յունիս 23, Նոր վկ. 137—150։

— 3. Սեղբեստրոս, «արեամբ նահատակեալ քահանայ», հայր Տէր Սահակի, որ Երզնկայի Կայիփասի վանքում ուսուցիչ էր 1425 թ.—Նոտարք 79։

— 4. Սեղբեստրոս վարդապետ Հայոց. գրել է ճառ զատկի։ Հմմտ. «Ըստ կարգի ուսուցն արարչութեանն վեցօրեացն, այսօր զատիկ է և տօն յարութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ. սըրբոյն Սեղբեստրոսի Հայոց վարդապետի ասացեալ» (Յայսմաւուրք, ո՛ր տես Rapport Belgique 50).— Ճառի առաջին տողերը գրված չլինելով՝ անկարելի է ստուգել թե ո՛վ է այս Սեղբեստրոսը։

* ՍԵՄԻԶԱՐ, իգ. <պրս. سیم و زر sīm-u-zar «արծաթ և ոսկի». հնից ավանդված չէ. գործածվում է այժմ, ինչպես հիշված է Սովետ. Հայաս. 1945 թ. մրտ. 7, ա էջ, վերջին սյունակ և 1945 թ. մրտ. 20, էջ գ, սյունակ 5-րդ (երկու հոգի)։

ՍԵՄԻԿ, իգ. մի անգամ հիշված եմ գտնում 1591 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 7 բ). արդյոք նախորդ անվան կրճատ ձև՞ն է։

* ՍԵՆԵՔԵՐԻՄ, ար. <հուն. Σενναχηρίμ (այլ ձ. Σεναχηρείμ) ձևից, որ տառադարձված է եբր. סנחריב Sanḫērīb ձևից. իսկ սա էլ ասուր. Sin-aḫḫē-erība անունից, որ բուն նշանակում է «Սին (որ է Լուսին աստված) եղբայրներս շատացրեց»։ Այս անունով հայտնի է Սենեքերիմ թագավոր Ասորեստանի (705—681) նշանավոր աշխարհակալ, որ ծանոթացած է մեզ Ս. Գրքի միջոցով (Դ. Թագ. ժը. 13)։ Հիշում են Խոր. Ա. իգ, սես. Սենեքերիմայ՝ Խոր. Ա. իգ, Յհ. կթղ. գ, լը, Ասող. Ա. և.—Սենեքարիմայ՝ Խոր. Ա. իգ, Մխ. անեց. գ, Վրդն. աշխ. 517.—Սենեքերիմանց՝ Միխ. աս. խա, իը (=իէ)։—Մեր մեջ գործածված է Թ դարից սկսած և այժմ էլ գործածական է. կրճատ ձևերն են Սի-

ԵԵՄ, ՍԵՆՕ։—*Տես նաև* Սանատրուկ։ *Արաբ. տառադարձված է* سنحاريب Sanhārīb *(Հիւբշ. 336)*։

— 1. ՍԵՆԵՔԵՐԻՄ *Արծրունի, պապ Սենեքերիմ-Յովհաննէս թագաւորի Արծրունեաց, իմն Գագիկ Ա թագաւոր Արծրունեաց, որ թագաւորեց «908—937 թ».—Գր. նար. մատ. էջ 387*։

— 2. ՍԵՆԵՔԵՐԻՄ, *որդի Գրիգորի, իշխան Աղուանից. երբ Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսը մերժեց Աղուանից Գագիկ կաթուղիկոսին, միայն այս Սենեքերիմը ընդունեց նրան։ Մասնակցել է Դաւիթ Ջ կաթուղիկոսի ընտրութեան «962 թ».—Անան. պատմ. 133 ա. Օրբ. ծա.—տես.* ՍԵՆԵՔԵՐԻՄայ՝ *Անան. պատմ. 134 բ, 144 ա. Օրբ. ծա*։

— 3. ՍԵՆԵՔԵՐԻՄ, *այլ իշխան Աղուանից, ժամանակակից նախորդի, բայց տարբեր անձ, որովհետև հիշված է նոյնի կողքին. սա էլ է մասնակցել Դաւիթ Ջ կաթուղիկոսի ընտրութեան «962 թ».—տես.* ՍԵՆԵՔԵՐԻՄայ՝ *Անան. պատմ. 144 ա. Օրբ. ծա*։

— 4. ՍԻՆԱՔԵՐԻՄ *թագաւոր, հիշված է 992 թվի մի արձանագրութեան մէջ, ուր Գորգ.անն հայտնում է թե մի առու է հանել։ Ջուրը բերվել է Իգդիրից երկու ժամ հեռու գտնվող Բլուր գյուղից և գտնվում էր էջմիածնի Գէորգեան ճեմարանի բակում։ Լուսատիպ հրատարակեց Կ. Բասմաջեանը՝ Բանասէր 1901, էջ 130—131. համարում է Սենեքերիմ Արծրունի թագաւոր Վասպուրականի. բայց չի կարող լինել. նախ որովհետև Արծրունին այս կողմերի վրա իշխանութիւն չունէր, երկրորդ՝ որ Արծրունին այդ թվին դեռ թագաւոր չէր. նրա թագաւորութիւնը սկսվում է 1003 թվից*։

— 5. ՍԵՆԵՔԵՐԻՄ, *որ և Յովհաննէս, որդի Սևադա իշխանի, թագաւոր Փառիսոսի († 1003 թ). սրա քույրը Կատրուց Մուշեղ թագաւորի կինն էր և ամուսնու մահից հետո կրոնավորուհի դարձավ.—Կղկնտ. Գ. իզ. Ասող. Գ. իը.*—Յովաննէս՝ *Մխ. այրիվ. 23.—տես.* ՍԵՆԵՔԵՐԻՄայ՝ *Ասող. Գ. ժէ*։

— 6. ՍԵՆԵՔԵՐԻՄ *Արծրունի, ավագանի անունով Յովհաննէս (ըստ Լաստ.՝ երկրորդ անունն էր* Դաւիթ*), որդի Աբուսահլ-Համազասպի, եղբայր Գուրգէնի և Սահակի, թոռն Սենեքերիմի, թագաւոր Վասպուրականի. կինն է Խուշուշ՝ դուստր Գագիկ Ա թագաւորի Բագրատունեաց (Արձ. Սարգիսեան, Տեղագր. 257. Ազգագր. հանդ. ԻԱ, 66)։ Նախ թագաւորական իշխան էր. եղբորը հետ հիմնեց Ապարանից Ս. Խաչը (983 թ). դահակից եղավ*

հրեց եղբօրը՝ Գուրգէնին («990—1003 թ» և երբ նա մեռավ, գահակալեց առանձին «1003 թ»։ Իր օրով գտնվեց Վարագայ խաչը, որի վրա Սենեքերիմը շինեց վանք։ Նեղվելով Թուրքերի արշավանքից, Վասպուրականը հանձնեց հույներին և իր գերդաստանով, իշխաններով, զորքով ու ժողովրդով գաղթեց Սեբաստիա «1021 թ», ուր շարունակեց իր թագավորությունը՝ իբր վասալ հունաց կայսեր։ Բացի հայ պատմիչներից, Սենեքերիմի գաղթի մասին խոսում է նաև հույն պատմիչ Կեդրենոսը։ Գաղթողների թիվը 400,000 հոգի էր. Սենեքերիմը հունաց հանձնեց 10 քաղաք, հազար գյուղ, 72 բերդ և ստացավ Սեբաստիա, Լարիսա, Աւարա քաղաքները, կոչվեց «պատրիկ և զորավար Կապադովկիոյ»։ Իր փոխարեն Վասպուրականի իշխան նշանակվեց Վասիլ պատրիկ Արգիրոս, որ ամեն բանի մեջ անճարակ գտնվելով, պաշտոնից հանվեց և նրա փոխարեն նշանակվեց Նիկեփոր Կոմնենոս զորավարը։ Եվ որովհետև Վասպուրականը դատարկված էր, Վասիլ Բ. կայսրը գրավելով Մակեդոնիոյ Մոգլենիա գավառի Եգեսիա քաղաքը, նույն գավառի իշխան Իլիծէսին, Դոմետիանոս Բուլքանոս անուն զորավոր իշխանին և ուրիշ շատ մեծամեծների, զենք շարժելու ընդունակ պատերազմիկ մարդկանց հետ գաղթեցրեց Վասպուրական։ Այս Բուլղար գաղթականները հետագայում հայ դարձան (Տէր Սահակեան, Հայ կայսրերը, Բ. 300—302)։ Դեռ նոր էր Սենեքերիմը գաղթել Սեբաստիա, երբ հին ապստամբ Վարդ Փոկասի որդին Նիկեփորը, միանալով Նիկեփոր Քսիփասի հետ ապստամբեցին Վասիլ Բ կայսեր դեմ, երբ սա գնացել էր Վրաստան, Վրաց ապստամբությունը զսպելու (1022 թ)։ Իրենց միացավ նաև Սենեքերիմը «անշուշտ յակամայս»։ Վասիլը գժտություն գցեց երկու ապստամբների մեջ. Քսիփիասը սպանեց Փոկասին, բայց ինքն էլ ձերբակալվեց կայսեր հրամանով։ Այս դեպքը սխալ մեկնելով՝ հայ պատմիչները Սենեքերիմին համարում են դավաճան Փոկասի (Տէր Սահակեան, անդ, էջ 268—9)։ Սենեքերիմը մեռավ «1025 թ»։ Գերեզմանը ցույց են տալիս Վանայ Վարագայ վանքի Ս. Գէորգ եկեղեցում, իր կնոջ Խուշուշի հետ (Սարգիսեան՝ Տեղագր. 237, Սրուանձտեան՝ Հնոց և նորոց 14, Արարատ 1898 Ա, էջ 60, Ազգագր. հանդ. ԻԱ, էջ 62)։ Տապանագիրը հետևյալն է.

«Այս է հանգիստ Սենեքերիմ թագւորին թվին ԴԾՀԸ»

Այս տապանագիրը, ինչպես և դամբանը կեղծիք է. Նախ որով-

նաև Սենեքերիմը մեռել է «1025 թվին» և ոչ թե ԴՃՀԸ=1029 թվին. երկրորդ՝ հները սովորություն չունեին թվականի հարյուրավորը մասերի վերածելու (Դճ=4×100), այլ պարզապես գրում էին ՆՀԸ. երրորդ՝ այն Ս. Գէորգ եկեղեցին, ուր գտնվում է դամբանը, շինված է ՌՂէ=1648 թվին. և վերջապես կեղծ է նաև Սենեքերիմի կողքին դրված Պետրոս Գետադարձ կաթու-ղիկոսի դամբանը։—Սենեքերիմի որդիներն են՝ Դավիթ, Ատոմ, Կոստանդին և Համազասպ (Ձեռ. Վենետ. Բ. 430, Զարբ. Հին դպր. 384), աղջիկն է Մարիամ՝ «Ափխազաց և Հայոց թագուհի» (Արձ. Շիրակ 149)։—Գր. նար. մատ. էջ 387. Արծր. Դ. ժբ։ Ասող. Գ. խգ, խզ. Լաստ. գ. Ուռհ. 17, 49. Սամ. անեց. 104. Վրդն. ծա. Սմբ. պատմ. 27, 32, 42, 45, 46, 50. Առաք. պատմ. 479.—სინაქერიმ՝ Անանուն ժմ. 16.—სენაქერიმ՝ Անանուն ժմ. 16, 17.—სენექარიმ՝ Ուռհ. 8, 42, 47, 55. Յայսմ. փետ. 27. յունիս 1. Օրբ. ողբ 62. Սամ. անեց. 104—5, 107. Հաւաք. 37. Սիմ. ապար. 138. Ջուղ. 72.—სენაქარიმ՝ Յայսմ. փետ. 27. յուն. 1.—სენექერიმ՝ Արծր. Դ. ժբ.—სენიქარიმ՝ Յայսմ. փետ. 27.—սեռ. სენექერიმაჲ՝ Արծր. Դ. ժբ. Լաստ. ժ, ժգ. Սամ. անեց. 104. Պատմ. վր. ժէ. Ուռհ. 34. Վրդ. խդ, ծե. Սմբ. պատմ. 45, 49, 52, 56, 73, 75, 79, 80, 86. Մխ. այրիվ. 72. Հաւաք. 36. Առաք. պատմ. 479.—სენექარიმაჲ՝ Յայսմ. յուն. 1. Սամ. անեց. 106. Ուռհ. 48, 55, 65, 83, 107, 133, 138, 220, 227. Վրդն. աշխ. 514. Առաք. պատմ. 480.—სენექერიმაჲ՝ Արծր. Դ. ժբ.—სენაქარიმაჲ՝ Յայսմ. յուն. 1.—სენიქარიმაჲ՝ Յայսմ. յուլ. 30.—სენექერიმ-ხანქ՝ Մեծոփ. 30.—Վրաց աղբ. 206. Զարբ. Թրգմ. 452։

— 7. სენაქერიმ Ա թագավոր Սիւնեաց և Կապանի. որդին էր Կապանի Սևադա թագավորի. քույրերն են Շահանդուխտ և Կատա. հաջորդեց Գրիգոր Ա-ին. վայելեց Մելիքշահի սերը. գնաց Ասպահան նրա տեսության. և նրա շնորհիվ խաղաղությամբ կառավարեց իր երկիրը մինչև Մելիքշահի մահը (1092 թ)։ Իր հետ թշնամացել էր Պարտավի թուրք ամիրան՝ Զարթմանը, որ Սենեքերիմի աղջկան իրեն կին էր խնդրել, բայց Սենեքերիմը չէր համաձայնվել։ Քանի Մելիքշահը կենդանի էր, Զարթմանը չէր համարձակվում դիպչել նրան։ Իսկ երբ Մելիքշահը մեռավ, Շիրակի իշխան Գրիգոր (№ 152) Ապիրատի ձեռքով խարդախությամբ հրավիրեց Սենեքերիմին իր մոտ և չարաչար սպանեց (1094 թ)։ Նա թաղվեց Վահանու վանքում՝ թողնելով երեք որդի՝ Գրիգոր, Սմբատ և Սևադա, և մի դուստր՝ Կատա անունով։ Անդ-

*բանիկը Գրիգոր (№ 158) հաջորդեց իր հորը։ Ունէր նաև Հասան (№ 16) անունով մի որդի, որ մեռավ մատաղ հասակում։*—Սենեքերիմ՝ *Օրբ. ծը, ծթ, կ, կգ. Վրդ. ծթ.*—Սենեքարիմ՝ *Օրբ. ողբ 38. Մխ. այրիվ. 76. Ուռհ. 231.—սեռ.* Սենեքերիմայ՝ *Օրբ. խդ, ծը, ծթ, կ. Արձ. Սիսական 200.*—Սենեքարիմայ՝ *Ուռհ. 231։—Սիսական 16, 295։*—Սենիքարեմանց? *Արձ. Սիսական 164։*

— 8. ՍԵՆԵՔԵՐԻՄ. *անհայտ անձ. հիշված Վանք. ստ. 213. «Աստուած՝ որ զՍենեքերիմ պահեալ»։*

— 9. ՍԵՆԵՔԵՐԻՄ, *որդի Խաչենի իշխան Հասանի (№ 71) Ջալալեանց. եղբայրն է Սևադայ. քույրն է Խաթուն, որ իր այս երկու եղբայրների հետ եկավ՝ ամուսնացավ Դադի և Տաւուշի իշխան Զաքարիայի հետ։ Երկու եղբայրները մեռան և Խաթունը նրանց հիշատակին շինեց Հաղբատի Ս. Աստուածածին եկեղեցին։—Անթվ. Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 35 և Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 79։—Այժմ Հաղբատում կան երկու անթվական գերեզմաններ, որոնցից մեկի վրա գրված է «Սևադայ», կողքինն է «Սենեքերիմ». սրանցից ավելի հեռու, մի ուրիշ անթվ. գերեզմանի վրա էլ գրված է «Այս է հանգիստ Մաթունին»։ Կարծում եմ որ առաջին երկուսը վերոհիշյալներն են, վերջինն էլ պետք է կարդալ* Խաթունին, *որ նրանց քույրն է (Բժշկեանց՝ Ճանապ. ի Լեհ. 80, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 22—23, Ազգագր. հանդ. է, 400—401)։*

— 10. ՍԵՆԵՔԵՐԻՄ *արքայ, որի տապանաքարը գտնվում է Ղուբայի Խաչմաս գյուղի հին գերեզմանատան մեջ՝ այս անթվական արձանագրությամբ. «Այս է տապան Սենեքերիմ արքայի»։ —Սմբատեանց, Նկար. Ս. Ստեփ. վանաց Սաղիանի, էջ 544. (բայց Բարխուտ. Աղվ. երկ. 134 հայտնում է թե* այժմ *այն տապանաքարը անհետացած է)։*

— *Ավելի ուշ հիշատակված են* Սենեքարիմ *1652 թ. (Ձեռ. Վատիկ. 462) և* Սինաքարիմ՝ *անթվ. (անդ 450)։*

*ՍԵՆԵՔԻԱ, տր. նախնական Բագրատունեան անուն ըստ Խոր. Բ. կզ։*

— Սենեքիա, *եղբայր Ենանոս Բագրատունու, որ ուղարկեց նրան Հրէաստան՝ փրկանք առնելու Հիւրկանոս քահանայապետից (47 թ).—Խոր. Բ. իզ. Մխ. անեց. ը։*

*ՍԵՆՏԻԿ (կամ* Սենտիկնակ) *տր. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված ԺԸ դարում (Ձեռ. Արգ. յովհ. էջ 164)։*

† *ՍԵՊՈՒՀ*, *ար.* <*հյ.* սեպուհ *իշխանական տիտղոսից. նորակերտ անուն. (Պոլսում հնչվում է ամկ.* Սեպուխ, *ինչպես որ Տապուհ հնչվում է* Տապուխ)։

* *ՍԵՋԱՆ*, *ար.* <*պրս.* سه se *«երեք»*+جان jān *«հոգի, անձ» բառերից. առանձին չի պատահում. բայց երևի թե գործածական էր, որից կազմվել է* Սեջանեան *ազգանունը (Կովկաս)։*

* *ՍԵՎԼԻ*, *իգ.* <*թրք.* سولی sevli *«նուրբ» բառից. գտնում եմ հիշատակված 1659 թ (Ձեռ. Սևան. 7 բ). որանից էլ* Սվլում *իգ. (փոխանակ ասելու* Սեվլում *«նուրբս». գտնում եմ հիշատակված 1557 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 8 ա)։ Շրջված ձևով է* Սելվի *1727 թ. (Բիւրակն 1899, 447 ա)։ Անթվական է* Սեվլի *(Սմբատեանց՝ Երնջակ 215)։ Ավելին տես* Սալբի, Սալվիխան, Սալվիփաշա *անունների տակ։*

*ՍԵՏԱՆ*, *ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1742 թ. (Ձեռ. Վասպ. 566)։—Տես հաջորդը։*

*ՍԵՏԱՆՈՍ*, *ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված այս անունով մի քահանա 1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 474).—հրատարակիչը՝ Հ. Բ. Սարգիսեան համարում է* Ստեփանոս. *եթե այդ ճիշտ է, կարելի է նախորդն էլ մեկնել* Ստեփան *և երկուսը միացնել իրար հետ։*

*ՍԵՐԱԹԻՆ*, *ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1660 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 52)։*

† *ՍԵՐՈՎԲԷ*, *ար.* <*հյ.* սերովբէ *բառից, որ հրեշտակների մի դասն է ներկայացնում. ճիշտ ինչպես սրա համազորները՝ հուն.* σεραφίμ *և ռուս.* серафим *հասարակ անունից դարձել են հատուկ անուն։ Արաբերենում էլ* اسرافيل Isrāfīl *ներկայացնում է Սերովբէ հրեշտակապետը։ Այսպես նաև* Քերովբէ։ *Ավելի ռամկական է* Սերոբէ։ *Ժողովրդական ձևերն են Պլ.* Սէօրէփէ, *Հճ.* Սեպպէ. *կրճատ ձևն է* Սերոբ։

— 1. Սերոբ *եպիսկոպոս Ամարասի. Հունաց երկիրն երթալով ստացավ կայսրից Ս. Գրիգորի աջ բազուկը (թվականն անհայտ է).—Կղկնտ. Գ. ժթ (ըստ հրտր. Շահն., որ համապատասխանում է Էմինի* ի *գլխին. բայց Էմինը չունի այս կտորը)։*

— 2. Սերոբ *Երևանեցի, որդի Թառի. մի այգի է նվիրել Բագնայրի վանքին.—Արձ. Շիրակ 117. (այս արձանագրությունը հետևում է Պարսիմոյի 1210 թվի արձանագրության. կարող է լինել նույն թվից. բայց կարող է նաև լինել նրանից տարբեր, ուստի և ավելի ուշ գրված)։*

— 3. Սերոբ, շինել է Խորանաշատ վանքի ավագ դուռը 1211 թ.—Արձ. Տեղեկ. Արմֆանի 1940 թ. № 4, էջ 173։

— 4. Սերոբ սարկավագ, միաբան Եղիշէ առաքեալ վանքի. նախկին հիման վրա վերաշինել է նույն վանքը 1244 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 379։

— 5. Սերոբ քահանա, իր եղբայր Թումա (№ 24) քահանայի հետ միասին դրամական նվեր են արել Մակարավանքին (Ղազախ), 1253 թ.— Արձ. Արցախ 374։

— 6. Սերոբէ եպիսկոպոս Ճապաղջուրի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի 1307 թ.— Չամչ. Գ. 309, Ազգապ. 1786։

— 7. Սերովբէ քահանա, որդի Յովհաննէս քահանայի, կազմեց այն Աստուածաշունչը, որ գրել էր Ստեփաննոս քահանան, Սեբաստիայում, 1313 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1923, 71։

— 8. Սերովբ կուսակրօն քահանա, թուղթ կոկեց Գրիգոր դրչի համար, որ օրինակում էր Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոյն Պօղոսի, Ակների վանքում, 1325 թ.—Սիսուան 535 ա։

— 9. Սերովբէ քահանա, որդի Ներսէսի, գրիչ. Ակների վանքում օրինակեց Նարեկը 1326 թ. հիշվում է նաև 1329 թ.—Սիսուան 155 ա։

— 10. Սերովբ կրոնավոր, միաբան Գուգարաց վանքի 1397 թ.—Նոտարք 10։

— 11. Ավելի ուշ հիշված է Սերովբէ 1591 թ. (Տաշեան, Ցուց. 568) և Սերոբէ անթվ. (անդ 416 բ)։

* ՍԵՒԱԴԱՑ, ար. <արաբական անուն է. այս անունով հայտնի են Սավադա-բին-Արդ-ալ-Համիդ-ալ-Ջահհաֆի՝ կառավարիչ Հայաստանի (ՀԱ 1929, էջ 656), Սևադա իշխան պարսիկ, որ Արուսեակ Բագրատունի իշխանուհու հետ էր ամուսնացել և Հայոց օգնությամբ ապստամբեց Արաբաց դեմ (երկուսն էլ Թ դարից)։ Ծագում է արաբ. سواد savād (sevād) «սև» բառից, որ նույնպես անձնանուն է Արաբների մոտ (Կամուս, Ա. 627)։

— 1. Սևադա իշխան Աղուանից. սրա աղջիկը՝ Շահանդուխտ թագուհի († 1000-1006 թվերի միջև) կինն էր Սիւնեաց Սմբատ Թագավորի (Ժ դար).—սեռ. Սևադայի՝ Օրբ. ծգ, ծդ։

— 2. Սևադայ որդի Սմբատ Թագավորի Սիւնեաց՝ որդւոյ Սահակայ՝ թոռան Փիլիպպէ Ա-ի, եղբայր Վասակ Ա Թագավորի Սիւնեաց. մայրը (Շահանդուխտ թագուհի) նախորդ Սևադա իշխանի դուստրն է։ Շինեց Վաղանդնոյ Ս. Կարապետ եկեղեցին (1006 թ)։—Սևադայ՝ Օրբ. ծգ, ծդ, ծզ.—սեռ. Սևադայի՝ Օրբ. խէ։

— 3. Սևադա *որդի և հաջորդ Փիլիպպէի. թագավոր Աղուանից Կապանի. սրա աղջիկը՝ Շահանդուխտ՝ քույրն էր Սենեքերիմ Ա թագավորի Սիւնեաց և կին Գրիգորի Ա թագավորի Սիւնեաց (ԺԱ դար).—Ուռհ. 231.—սեռ.* Սևադայի՝ *Ուռհ. 231, Օրբ. ծը, ծթ։*

— 4. Սևադայ, *որդի Սենեքերիմ Ա († 1092 թ) թագավորի Սիւնեաց. եղբայրն է Գրիգորի, որ հաջորդեց իր հորը.—Օրբ. ծը.—սեռ.* Սևադայի՝ *Օրբ. ծթ։—Միսական 16 բ։*

— 5. Սևատ *(սեռ.* Սևատին *ձևով), հիշված է իբր Գեղարքունեաց իշխան 1234 թ.—Միսական 52, Սմբատեանց՝ Գեղարք. 511 (Արձ. Վալի-ազալու գյուղի)։*

— 6. Սևադա *Խաչենեցի, որդի Գրիգոր մեծ իշխանի. Թաթարների բանակում էր Նիփրկերտի պաշարման ժամանակ, ուր և մեռավ 1260 թ.—Վրդ. ղբ։*

— 7. Սևադա, *կալվածներ է նվիրել Խաչենի Կօշիկ անապատի Ս. Գէորգ եկեղեցուն, Խաչենի իշխան Հասանի և Մամախաթունի հոգուն, 1265 թ.—Արցախ 169։*

— 8. Սևադա *(սեռ. Սևադին), որդի Մամաքի՝ դստեր Հասանայ, եղբայր Վաղթանկի. մայրը նրա հիշատակին հող և ապարանջանի գոնցան է նվիրել Հերհերի եկեղեցուն 1318 թ.—Արձ. Միսական 114։*

— 9. Սևադայ *Խաչենեցի, որդի Հասան իշխանի Դեսումեանց. թիվը անհայտ. տես Հասան (№ 71) և Սենեքերիմ № 9։*

*ՍԵՒԱՂԱՆ *(անշուշտ սխալ տպված), իգ? գտնում եմ մի անգամ հիշված 1576 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1925, 470)։—Թվում է թե պետք է կարդալ* Սևար ղան։

*ՍԵՒԱՍՏ, *իգ. <հուն.* σεβαστή *«օգոստափառուհի, վեհափառուհի» (կայսրուհիներին տրված մի տիտղոս, որ հին հուն. կարդացվում էր* սեբաստե, *բյուզ. հուն.* սեվաստի (Sophocles, Greek lex. *1914, էջ 982). Մեր մեջ իբրև անձնանուն գործածված եմ գտնում մի անգամ ԺԳ դարում։*

— Սևաստ, *կին Վահրամի, որ իր երկու վաղամեռիկ աղջիկների՝ Շնորհիկի և Թամամի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել 1282 թ.—Այրարատ 125 և Բանասէր 1901, 132—3։*

*ՍԵՒԱՐ, *իգ. <արաբ.* سوار sivār *«ապարանջան» բառից. հիշված է* Սևար *կամ* Սևարխան *ձևով 1724 թ. (Ձեռ. Թաւր. 41 բ, 42 ա),* Սևար *1756 թ. (Ձեռ. Վասպ. 542),* Սեվար *1680 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 25 բ)։*

† *ՍԵՒԵԿ*, *ար.* <*հյ.* սև *բառից գգվական ձևով. մի անգամ հիշված եմ գտնում ԺԷ դարում (Ձեռ. Սանաս. 8 բ). հմմտ.* Սևի, Սևիկ, Սևուկ:

† *ՍԵՒԻ*, *ար.* <*հյ.* սև *բառից. այս ձևով գործածական է Ղարաբաղում:*

† *ՍԵՒԻԿ*, *ար.* <*հյ.* սև *բառից՝* -իկ *գգվական մասնիկով. մի անգամ հիշատակված եմ գտնում անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1437 թվից ուշ.—Թորոս աղր. Բ. 463:*

**ՍԵՒԻՆՋԲԷԿ*, *ար.* <*թրք.* سوينج sevinǰ *«ուրախություն, ցնծություն» բառից* + بك beg. *հմմտ. հյ. Բերկրուհի, Ուրախ, Զուարթ, պրս.* Xurram, *հուն.* Իլարիոն *համանիշ անունները: Գործածված է մի անգամ ԺԵ դարում. բայց հմմտ. նաև* Սովունչ:

— Սևինջբեկ, *կինն է Սուրաթմելիք. ծնողներն են տանուտեր Նասրատինի, որ գրել տվեց մի Ավետարան՝ Բերկրիի Տէր Յուսկան որդի վանքում, 1420 թ.—Նոտարք 61:*

† *ՍԵՒԼԻԿ*, *իգ.* <*հյ.* սև *բառից՝* -լիկ *փաղաքշական մասնիկով, ինչպես ունենք հատլիկ, կարճլիկ, նեղլիկ, բարալիկ («բարակուկ»), նաև սևլուկ, սևուլիկ «սև ու սիրուն, թուխին տեսօքը»: Հիշատակված եմ գտնում* Սեվլիկ *ձևով 1513 թ. (Ձեռ. Վասպ. 135) և 1562 թ. (Ձեռ. Թուր. 68 ա):*

† *ՍԵՒՈՒԿ*, *ար.* <*հյ.* սև *բառից. հմմտ. համազոր անուններից հուն.* Մօրիկ, *լտ.* Niger. Nigrinus, Nigrina, *արաբ.* Սևադա, *տճկ.* Գարաճա՝ *զորավար Սուլթան Մուրադ Բ-ի, նաև* Սեահ *կամ* Սիեահի *էֆէնտի տաճիկ 1677 թ. (Նոր վկ. էջ 508): Տես նաև Սևի, Սևլիկ, Սևիկ:*

— 1. Սևուկ *իշխան Անձևացի. Վահան Մամիկոնեանի ապստամբության ժամանակ ուրացյալ նախարարների հետ հարձակվեց Առեստի մեջ՝ Յոհան Անձևացու և Ներսեհ Երուանդունու վրա, բայց չարաչար հաղթվեց (Ե դար).—Փարպ. հ.—սեռ.* Սևկոյ՝ *անդ. տես և Սխակ № 2:*

— 2. Սևուկ, *նախնին է Սևորդեաց ցեղի.—սեռ.* Սևկոյ՝ *Վրդ. խդ.—րց.* ի Սևկայ՝ *Յհ. կթ. իդ.—կոչված է նաև* Սև՝ *Յհ. կթղ. լէ:*

*ՍԵՒՈՒՄ*, *ար.* <*հյ.* սև *բառից (ուրեմն թրք.*-um *մասնիկով). հիշված է 1661 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 101 բ), 1697 թ. (Ձեռ. Թուր. 27 ա): Սրանից է* Սևումեան *ազգանունը:*

† *ՍԵՒՓԱՐԻ*, *ար.* <*հյ.* սև + *պրս.* پری pari *«ոգի» բառից.*

մի անգամ հիշատակված եմ գտնում 1801 թ. (Չեռ. Բուլղ.=ՀՍ 1937, 578)։

*ՍԵՖԵԴԻՆ, ար. <արաբ. سيف الدين Seyf-ed-dīn անունից, որ բուն նշանակում է «սուր (կամ թուր) կրոնի»։ Այս անունով հայտնի է Սայֆ-էդ-դին-էլ-Ալֆի զորավար Եգիպտացոց, որի դեմ անհաջող մի պատերազմ ունեցավ Լևոն Գ թագավորը Ասորիքում (1282 թ)։ Մեր մեջ գործածված է այս անունը ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Սեվդին (սեռ. Սէվդնին ձևով), հիշված է իբր իշխան՝ Մանազկերտում գտնված մի խաչքարի վրա 1211 թ.—Թորոս աղբ. Բ. 279 (Ակինեան, Գուղնգիրք 39 ուզում է նույնացնել հաջորդի հետ)։

— 2. Սեֆեդին Ա արքայուն. Արծրունեաց թագավորական ցեղից էր. գալով Աղթամար կղզին, ամուսնացավ Խեղենիկ իշխանի Մարիամ անուն աղջկա հետ և իբրև օժիտ ստացավ Աղթամարը։ Իր եղբայրներն են Կուռճիբէգ և Նուրադին. իր որդիներն են Ստեփաննոս, Զաքարիա, Կուռճիբէգ և Գուրգէն. աղջիկներն են Թադուհի և Մարթա։ Որդիներից առաջին երկուսը Աղթամարի կաթուղիկոս դարձան։ Արդեն մեռած էր, երբ իր որդին՝ Զաքարիա օծվեց կաթուղիկոս «1296 թ».—Արծր. յաւել. Հաւաք. 38, 39.—սեռ. Սեֆեդենին՝ Արծր. յաւել.

— 3. Սեֆեդին Բ, որդի Ամիր-Գուրգէնի՝ եղբոր Զաքարիա կաթուղիկոսի և եղբայր Աղթամարի Դաւիթ Բ կաթուղիկոսի, որ նստել է 1346—68 թ? նախորդի թոռն է.—ուղ. Ամիր-Սեֆեթին՝ Արծր. յաւել։

— Ավելի ուշ հիշատակված ունինք Սեֆեդին 1544 թ. (Չեռ. Վասպ. 107), սեռ. Սեֆեդընին 1575 թ. (անդ 484), Սեֆետին 1602 թ. (Ակինեան՝ Գուղնգիրք 128)։

*ՍԵՖԻ ՂՈՒԼԻ, ար. <պրս. Sefi (անունն է Սեֆևի հարստության հիմնադիր Շահ Իսմայիլ թագավորի)+թրք. قول qulə «ծառան, ստրուկը»։ Այս օտար անունով ունինք միայն՝

— Սեֆի ղուլի խան, հայազգի իշխան, Շահաբասի կողմից կարգվեց կառավարիչ Բաղդադի՝ 8000 զինվորով (1624 թ).—Զքր. սարկ. Ա. 41—42, Զուղ. 133։

* ՍԷԹ, ար. <եբր. שֵׁת Šēth անվան հուն. Σήθ տառադարձությունից (արաբ. شيث Šeyth, ասոր. ܫܝܬ Šēϑ Հիւբշ. 290)։ Այս անունով հայտնի է Սեթ նահապետ, որդի Ադամի։ Ծագում է եբր. שִׁית šīth «ժառանգ տալ» արմատից (Gesenius 824). բառ

այժմ Ծն. դ. 25 ասվում է. «Անուանեաց զանուն նորա Սէթ. ասէ. Զի յարոյց ինձ Աստուած զաւակ այլ փոխանակ Հաբելի, զոր սպանն Կային»։ Հմմտ. նաև Յայսմ. յնվ. 6 «Յետ ելանելոյն Ադամայ ի դրախտէն, ետ նմա Աստուած որդի զՍէթ, որ թարգմանի մխիթարութիւն».—Անկ. գիրք հին կտ. 24 «Ծնանի զՍէթ, որ թարգմանի մխիթար».—Անկ. գիրք նոր կտ. 294 «Սէթ, որ թարգմանի մխիթարութեան որդի».—Տաթև. հարց. 299 նշանակում է «Ջրարբ կամ մոռացումն չարի»։ Հնում քիչ է գործածված. նույնպես և այժմ։

— 1. Սեթ ճգնավոր և առաջնորդ Մամասայ վանքի, որ նորոգեց իր ընկեր Պօղոսի հետ, «ի բռնակալութեան աթաբակ Իւանէի».—Օրբ. խթ։

— 2. Սէթ (սեռ. Սեթայ), ուսուցանում էր Հաւուցթառի վանքում՝ Սիմէոնի հետ միասին. իրենց աշակերտներն էին Սոսթանէս, Մատթէոս և Գրիգորէս, որոնք կառուցին Ս. Կարապետ մատուռը իրենց այդ երկու ուսուցիչների շիրմի վրա 1213 թ.—Արձ. Այրարատ 356, Արրտ. 1871, 331։

— 3. Սէթ, երևի որդին է «պաղտաղ Աբէքսի», որ շինեց Սեբաստիոյ Դուրա գյուղի եկեղեցին ի հիշատակ իր գերդաստանի, 1280 թ.—Արձ. որ հաղորդեց ինձ † Կ. Գաբրիելեան, 1912 ապր. 14։

— 4. Սէթ, քրոջ որդին է Պօղոս քահանայի, որին Պարսիկ ասպատակները սպանեցին. Սեթը շինեց Վայոց ձորի Բարաղլուխ գյուղի մատուռը նրա և իր հիշատակին (ԺԳ դար).—Սիսական, 162։

— 5. Սեթ; կրասեր որդի Պարոնի, որ նորոգեց Բագնայրի նշանավոր Աւետարանը 1308 թ.—Խաղբակեանք 15։

— 6. Սէթ պարոն, ամուսինն Աւիծի՝ քրոջ Ներսէս Կրակացի արեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1355 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 347։

— 7. Սէթ քահանա, հանգուցյալ հայր Յովաննէս դպրի, որ Համկլայի Ծակաղբիւր գյուղում արտագրեց Աւետարանը, 1357 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 613։

— 8. Սէթ վարդապետ, «համանման մեծի և առաջին վարդապետաց», ուսուցիչ Ստեփաննոս Արևելցու՝ հօր Թագորշահ դպրի, որ Երուսաղէմում գրել տվեց մի Աւետարան, 1360 թ.—Թորոս աղբ. Բ. 438։

— 9. Տեր Սէթ, մերձավոր Տիրացու կրոնավորի, որ Բարթուղիմէոս առաքյալ վանքի միաբան էր և Լէնկթիմուրի զին-

վորների ձեռքն ընկած մի Աւետարան ազատեց փրկանքով 1388 թ.—Ձեռ. Վաստ. 202։

— 10. Սէր արեղա, կազմեց մի Աւետարան, որ Հնազանդ տիկինը գնել էր և նվիրել Խայիք գյուղի (Երզնկա) եկեղեցուն, 1404 թ.—Թորոս ագր. Ա. 65, 67. Նոտարք 20։

— 11. Սէր հայր Հնազանդի, որ գնեց մի Աւետարան և նվիրեց Խայիք գյուղի (Երզնկա) եկեղեցուն. 1404 թ.—Թորոս ագր. Ա. 66։

— 12. Սէր որդի Խութուխի և եղբայր Մելքիսեթ կուսակրոն քահանայի, որ Սանահնի վանքում ստացավ, ծաղկեց ու կազմեց Մանրուսմունքը 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873 բ։

— 13. Սէր, որի հիշատակին կա մի խաչքար Նոր-Նախիջևանի Համբարձման եկեղեցում, 1439 թ. (կարդացի 1912 թ. մայիս 19). Ազգագր. հանդ. Է, 62 համարում է անվերծանելի։

— 14. Սէր հայր Ղևոնդի, որի միջնորդությամբ Գրիգոր Ժ Մակուեցի կաթողիկոսը գնեց Վաղարշապատ գյուղը իբրև կալված էջմիածնայ վանքի 1443 թ.—Ջամբռ 100, Այրարատ 209։

— 15. Սէր, քահանա Բիւրական գյուղի. հիշված է 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 16. Սէր կինն է Խալ-խաթուն. ծնողներն են Գրիգոր աբեղայի (№ 654), որ Ջալալ տիկնոջ համար օրինակեց Աւետարանը՝ Աղթամար 1470 թ.—Ձեռ. Վաստ. 460։

— 17. Սէր, պարոն, հայր խոճա Ցովսէփի (իշխանի Տարոնոյ), որ գրել տվեց Մուշում մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 262։

— 18. Սէր մերձավոր Սարգիս քահանայի, որ գրել տվեց Ցայսմաւուրքը՝ Բաղէշում, 1484 թ.—Rapport Belgique 39։

— 19. Սէր. կա Գուռենի գյուղում մի դամբան, որի տապանագիրն է «Այս է տապան Սէթա Խա(թու)նին. թվին ՌԾԵ» (= 1606). Ալիշանը (ցանկում) համարում է Սէրա իգ. անուն. բայց այլուստ նման բան չգիտենք. ուստի հավականալ «Սէթի կնոջ»։

— 20. Սէր հիշված (տես. Սէթուն ձևով) 1694 թ.—Սիսական 327։

— 21. Սէր աբեղա Խարբերդցի. իր անունով կա մի Պատմութիւն՝ գրված Ժէ—ԺԸ դարում.—Տաշեան, Ցուց. 178 բ։

ՍԷՐՋ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Ունինք միայն Սէրջ խաթունն, հիշված 1551 թ. (Матер. Арх. Кавк. III.. էջ 93, 94)։

*ՍԷԼԷՖ, ար. Հարաբ. سلف selef «նախորդ» բառից. մի ան-

պամ գտնում եմ հիշատակված Սեկեֆ ուստա Արաբկիրցի, որ Եթովպիոյ թագավորի գանձապետն էր ԺԸ դարում. և իրեն հաջորդեց Յովհաննէս Թովմաճան 1762 թ.—Սիսական 471 ա։

ՍԷՀՆՈՒՄ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1557 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 8 ա։

*ՍԷՄ, ար. <եբր. שֵׁם Šēm անվան հուն. Σήμ տառադարձությունից. բուն նշ. «անուն». այս անունով հայտնի է Նոյ նահապետի երեք որդիներից անդրանիկը, որից ծագել են բոլոր Սեմական ժողովուրդները։ Ինչպես օտար ազգերի, նույնպես և մեր մեջ անգործածական է։ Բացառապես գտնում եմ միայն՝

— 1. Սեմ, եղբայր Ստեփաննոսի՝ դռան եպիսկոպոսի, որ ստացավ մի Ավետարան Հռոմկլայում, 1248 թվին, երբ Սեմը մեռած էր.—Ձեռ. Հալէպի, Բ. 5։

— Սեմ հիշված է նաև անթվական մի ձեռագրում (Manus. brit. mus. 55 բ։

Սեյտի տես Սայդի։

*ՍԷՅՐԱՆ, ար. <արաբ. سيران seyrān «պտույտ, զբոսանք» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1753 թ. (Բարխուդ. Պատմ. աղվ. Բ. 53)։ Սրանից է Սեյրանեան ազգանունը։

*ՍԷՆԿԻԼ, իգ. <մեկնում եմ թրք. سن sen «դու» + պրս. گل gül «վարդ» բառերից, որով պետք էր գրել Սենգուլ. բուն նշանակությունն է «դու վարդ ես»։ Իբր իգ. անուն գործածական է այժմ Կեսարիայում (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1690)։

ՍԷՆՈՊ ար. ծագումն ինձ անհայտ. տես Սահմադին։

ՍԷՍԷՏԷ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված եմ գտնում ԺԸ դարում (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 43 բ)։

*ՍԷՎԴԻՆ, ար. <թրք. sevdin «սիրեցիր» ձևից. իբրև անձնանուն գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում (Թորոս աղբ. Բ. 335)։

†ՍԷՐ, ծագում է հյ. սէր բառից, բայց սեռն հայտնի չէ. գործածված եմ գտնում ընդամենը երկու անգամ, ԺԴ և ԺԵ դար։

— 1. Սէր, իր մոր՝ Մայրտիկինի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Խաչենի Առաջաձոր գյուղում, 1237 թ.—Արցախ 187։

— 2. Սեր, հիշատակված է Ամասիայի Ս. Նիկողայոս եկեղեցու շրջափակում գտնված մի գամբանի վրա 1468 թ. «Այս է տապան Սերին Թառին Ածտուրին. թվ. ՋԺԷ»։—Բանաս. 1905, 275։

Սերիդուխտ տես Սիրադուխտ։

†ՍԷՐԻԿ, իգ. <հյ. սէր բառից՝ գգվական -իկ մասնիկով. նորակերտ անուն, որ ծագել է Դիլիջանում և բավական տարածվել է. տես և Սիրիկ:

†ՍԷՐՈՎ, իգ. <հյ. սէր բառից, իբր սիրով, ժողովրդական ձևով. հիշատակված եմ գտնում մի անգամ ԺԵ դարից.

— Սէրով, հարսն է Մաթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան 1496 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 7 բ:

*ՍԹԱԻԿ, սեռն անհայտ է, բայց համարում եմ իգ. և մեկնում եմ արաբ. Սթի «տիկին» բառից՝ հյ. -իկ գգվական մասնիկով: Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Սթաիկ, մերձավոր Շիրազարի և սրա կնոջ Աղչայի, որոնց հետ միասին նվերներ են արել Տեղերի վանքին 1274 թ.—Արձ. Բանաս. 1903, 29 և ZAPh 2, 46:

*ՍԹԵՐ, իգ. ձևն անորոշ է, ուստի ծագումն էլ անստույգ. բայց անշուշտ արաբ. Սթի «տիկին» բառից, որ տես հաջորդը:

— Սթերհի? (կա միայն սեռ. Սթերհէն ձևով), կին Ապրկանի և մայր Յովհաննէս արքաունի, որ իր Մուլուքան կնոջ հետ շատ նվերներ են արել Հոռոմոսի վանքին 1253 թ.—Արձ. Շիրակ 26:

— Սթեր? (կա միայն սեռ. Սթերոյս ձևով). կին Վարդան անուն վարպետի (ուսթա. գրված է վարդապետ), որ նրա դամբանի վրա գրել է հետևյալ տապանագիրը. «Ես Վարդան վարդապետս կազմեցի տապանանիս ամուսնոյ Սթերոյս. ոչ որդի ունէր, ոչ աղբեր. ով կարդէք յիշեցէք. ի Թվ. ՉԽԵ» (=1296).—Սիսական 117, Արրտ. 1889, 286:

*ՍԹԸԼԲԷՅԹ, իգ. <արաբ. ستي siti «տիկին»+بيت beyt «տուն» բառերից, իբր «տանտիկին». հմմտ. հաջորդ անունները և Սթի: Հիշատակված է ԺԷ և ԺԸ դարերում. այն է՝ Սթըլպէյթ 1680 թ. (Ջեռ. Հալէպի Ա. 162) և Սթըլվպէյթ 1702 թ. (անդ Ա. 52 ա):

*ՍԹԸԼԲՆԱԹ, իգ. <արաբ. ستي siti «տիկին»+بنات benāt «աղջիկներ» բառերից. հիշատակված է ԺԷ դարում. այսպես՝ Սթըլպնաթ 1630 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 118) և Սդըլպնաթ 1654 թ. (անդ 128):

*ՍԹԸԼՈՒՄԱՄ, իգ. <արաբ. ستي siti «տիկին»+امم umam «ազգեր, ժողովուրդներ» բառերից (եզ. امة ummat «ազգ, ժողովուրդ»), այն է «տիկին ազգաց», ճիշտ ինչպես ունինք հյ. Ազգատիկին: Հիշատակված է ԺԷ դարում. այսպես՝ Սըթըլումամ

1640 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 107), 1650 թ. (անդ 92), 1672 թ. (անդ 62)։ Սրա կրճատ ձեն է Ումամ, որ տես առանձին։

* ՍԹԸԼՔՈՒԼ, իգ. Հարար. ستي siti «տիկին»+كل kull, kulli «բոլոր, ամեն», ճիշտ ինչպես ունինք հյ. Ամէնտիկին։ Հիշատակված է Ժէ—ԺԸ դարերում. այսպես՝ Սթըլքուլ՝ 1621 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 175 բ), Սդըլքուլ 1652 թ. (անդ 85 բ), սեռ. Սդըլքլին 1658 թ. (անդ 63 բ), Սթըլքուլ 1702 թ. (անդ 52 ա), Սըթքուլի՝ թիվն անհայտ (անդ 133 բ)։

*ՍԹԻ (որ և Սըթի, Սիթի և Սիթի խաթուն կամ Սիթխաթուն, սեռ. Սթէ), իգ. Հարար. ستي sitī կամ sittī «տիկին» ձևից, բուն նշ. «տիրուհիդ իմ» (ավելի մանրամասն տես Սեդա)։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԳ—ԺԵ դարերում, իսկ իր ածանցյալ ձևերը (տես ստորև) գնում են մինչև ԺԸ դար։

— 1. Սթի (սեռ. Սթէ ձևով), որի հոգուն Ուքան և Պարքան եղբայրները նվերներ են արել Անիի Կարմիր վանքին 1271 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 13։

— 2. Սիթի խաթուն, կին Աղբուղայի Բ (№ 2 և 6, որ պետք է միացնել), որ Իւանէ Բ-ի որդին և Շահնշահ Ա-ի թոռն էր, Զաքարէ մեծ սպասալարի թոռնորդին, եղբայր Շահնշահ Բ ամիրսպասալարի և Վահրամ Աթաբէկի։ Սիթի խաթունը իր ամուսնու հետ միասին նորոգել են Թալինի գինու հարկը 1267 թ. Սիթի խաթունը կոչված է նվիրել Աշտարակի Ս. Մարիանէ մատուռին 1323 թ. հիշատակված է նաև 1317 և 1325 թվերին. այսպեսով իր հիշատակությունները գնում են 1267—1325 թ, ընդամենը 58 տարի։—Արձ. Այրարատ 141, 186—7. Հայապ. 447։

— 3. Սիթի խաթուն, սանամայր Գետրոս արքեպիսկոպոսի, որ նվիրեց նրան Երուսաղէմից բերած իր Աւետարանը 1428 թ. —Ձեռ. Վատպ. 135։

— 4. Սիթխաթուն, դուստր մեծ իշխան Սարգսի և քույր իշխանաց իշխան Շալուէի (№ 7). հիշված է 1441 թ.—հրատ. Ազատ. 1909 թ. յոջ. էջ ԽԸ։

— 5. Սիթխաթուն, կին Սահակի և մայր Ազարիա արեղայի, որ Վայոցձորէ Եղեգիս քաղաքում գրել ավեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— 6. Սիթխաթուն, եղբորդուստր Ազարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել ավեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 586։

— 7. Սիթխաթուն, դուստր Տէրպարոնի, փաղամեսիկ քույր

Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել ավեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 բ։

— Ավելի ուշ հիշված կա Սիթխաթուն՝ ԺՆ դար (Ձեռ. Էջմ. № 945), Սիթիխաթուն ԺԷ դար (Տաշեան, Ցուց. 531)։

*ՍԹԻՋԱՆ, իգ. <արաբ. նախորդ Սթի անունից+պրս. ǰān փաղաքշականով։ Հիշատակված ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Սըթիջան 1534 թ. (Ձեռ. Վասպ. 647), ապա Սըթլջան 1534 թ. (անդ 649), Սթիջան 1602 թ. (անդ 802)։

*ՍԹԼԱԼ, իգ. <արաբ. ست siti «տիկին» բառից, բայց հատկացուցիչը կրճատված։ Այս ձևով հիշատակված ունինք ԺԴ դարից՝

— 1. Սթլալ կին Զաքարիայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Աղկայու վանքում օրինակել ավեց Հին Կտակարանը 1381 թ. երբ Սթլալ և իր այրը մեռած էին.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։

— Նույնը գրված է Սըթլալ՝ անթվ. (Ձեռ. Վասպ. 354) և հոգով՝ Սըթյեն 1534 թ. (անդ 648)։

* ՍԻԱՄՈՆ, ար. <Սիմէոն անունն է, որ ասոր. Շմոն, որանից տառադարձված հուն. Սամոնաս ձևերից այլափոխվել է։ Հիշատակված է մի անգամ 1667 թ. (Ձեռ. Վասպ. 930)։ Ավելին տես Գուրիաս անվան տակ։ Նույնը ունի նաև Զքր. ագուլ. 98, 104 են։

*ՍԻԱՆ տես Սիանոս։

*ՍԻԱՆԴԱՐ, ար. մի անգամ գտնում եմ հիշատակված Հաղբատի անթվ. (բայց շուրջ 1280 թվի) մի արձանագրության մեջ, որով երեք եղբայրներ (Սիանդար, Աւհնվար և Իսրայ) նվերներ են արել վանքին (Երզնկեանց, Հնախ. տեղագր. 47)։—Ըստ իս պետք է կարդալ Սէֆանդար. Ք=Ի։

* ՍԻԱՆՈՍ, ար. <ըստ իս կրճատ ձևն է Ալեքսիանոս անվան, որի ավելի կրճատն էլ է Սիան, ար։ Սիան հիշատակված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 532). իսկ մյուսը մի անգամ հիշատակված է ԺՆ դար։ Սղումը կատարված է այնպես, ինչպես Եղիսաբեթ> Սաբեթ կամ Աստուածատուր> Ծատուր, Ծատի։

— Սիանոս, քեռին է Յովհաննէս տանուտերի, որ գնեց մի հին Աւետարան 1461 թ.—Ձեռ. Վասպ. 226։

ՍԻԱՐ, ար. ծագումն ինձ անհայտ։ Բայց տես հաջորդը։

— Սիար, հայր Սարգիս քահանայի և պապ Թորոս Մշեցի

նշանավոր ծաղկարարի, որ ծաղկեց այն Աստուածաշունչը, որ Ներսէս վարդապետը գրել տվեց Գայլեձորում, 1332 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 127, Հայապ. 548։

*ՍԻԱՐԻԽԱՆ, իգ. ծագումը ինձ անհայտ. բայց անշուշտ նույն է նախորդի հետ։ Սիար ար. և Սիարի իգ. համեմատությունից կարելի է սակայն հետևցնել թե առաջինն է արաբ. سيار seyyār «շրջիկ, այցելու», իսկ երկրորդը՝ سياره seyyāre նրա իգականը և հատկապես «մոլորակ»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1655 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ)։

† ՍԻԳԱՏՈՒՐ. ար. իբրև բարդ բառ հիշված է Սիւն. քեր. 206. թվում է թե անձնանուն է, ըստ որում հիշված է Տիրախոսրով և Տիրատուր անուններից հետո։

ՍԻԳՐԱՍ, ար. ծագումը ինձ անհայտ. ունինք միայն՝

— Սիգրաս Անեցի, խմբագրեց Ամիրդովլաթ բժշկի Օգուտ բժշկության աշխատությունը (ԺԵ դար).—Տեղեկ. Արմֆանի 1941, № 3—4, էջ 121։—Հոդվածագիր Պրոֆ. բժ. Լև. Յովհաննիսեանը հայտնեց ինձ որ Սիգրաս անունը, ոչ մի ուրիշ տեղից հայտնի չլինելով, իբրև մի տեսակ ծածկանուն, պետք է կարդալ Սարգիս։

Սիթխաթուն տես Սթի։

†ՍԻԼՊԱՐՈՆ, ար. ըստ իս սիլ ֆրանս. սիր բառն է, որ բարդվել է պարոն բառի հետ։ Հիշված է մի անգամ 1623 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46)։ Տես սիր-պարոն։

*ՍԻՂԱ, ար. <սովորական ձևն է Շիղա, ինչպես գտնում ենք Գծ. ժե. 22, որ ապա գտնում է Սիղուանոս Բ. կոր. ա. 19։ Այս անունով հայտնի է Պողոս առաքյալի ընկերներից մեկը։ Բառիս մայր ձևն է լտ. silva «անտառ», որից էլ silvanus «անտառների աստվածը, նաև ար. անձնանուն»։ Շիղա ասորական ձևն է, որի հունական ձևն է Սիղա։ Երկուսն էլ անսովոր են և գործածված են մի մի անգամ։ Շիղա անունը տես վերը՝ էջ 162, իսկ՝

— Սիղա, եկեղեցպանն է Խծկոնքի վանքի. իր Ցխէ անուն ընկերոջ հետ մի խաչքար է կանգնեցրել 1031 թ.—Ազգագր. հանդ. Ա. 45 (սխալ է կարդացել). Արրտ. 1904, 991 (ունի ուղիղ ընթերցումը)։

*ՍԻՄ (սեռ. Սիմին), ար. <պրս. سيم sīm «արծաթ». հիշված է Կարսի անթվ. մի խաչքարի վրա (Կրպէ, Կարս քղ. 30)։

*ՍԻՄԱ, իգ. <արաբ. سيما sīma «դեմք, երես» բառից. (պետք չէ կարծել Հռիփսիմէ անվան կրճատ ձևը, որովհետև մի քանի

անգամ հիշված է հենց Հոփփսիմէ անվան հետ)։ Հիշատակված է ԺԵ դարից և մինչև այժմ էլ կենդանի է։

1. Սիմայ՝ դուստր խօջա Բաղդասարի, որ ստացավ մի Աւետարան (տեղն անհայտ. ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 724 ա։

— Ավելի ուշ հիշատակված է 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), 1668 թ. (անդ. 392), 1742 թ. (անդ. 565), սեռ. Սիմին 1756 թ. (անդ 313)։

— 2. Սիմա խաթուն Պոլսեցի. մի բռնավորի ճիրաններից ութը հոգու կյանքը փրկելով, փախավ ապաստանեց Հռոմ, ուր և մեռավ 1766 թ, 85 տարեկան հասակում և թաղվեց նույն քաղաքի Հայոց եկեղեցում։—Կոչնակ, 1923, էջ 233։

* ՍԻՄԷՈՆ, եբր. ծագումը տես Շմաւոն. այս անունով հայտնի են եղել Սիմոն Պետրոս առաքյալ, Սիմոն Նախանձայոյզ առաքյալ, Սիմոն ծերունի, Սիմոն Կիւրենացի են։ Գործածական էր հին ժամանակ Սիմէոն, Սիմէօվն, Սիմէաւն, Սիմէւոն, Սիմօվն, միջին հյ. Սիմուն, այժմ Սիմոն, Սիմաւոն ձևերով։ Տես և վերը՝ Սիտմոն: Կարծեմ թե այս անվան կրճատն է Սիմէ, որ տես Սիմէոն № 153։

— 1. Սիմէոն եպիսկոպոս Անձևացեաց, մին այն երեք եպիսկոպոսներից, որոնք օծեցին Զաւնակին կաթուղիկոս փոխանակ Ներսէսի «359 թ»։— Մեսր. եր. 66։

— 2. Սիմէոն ճգնավոր, ժամանակակից Գր. Լուսաւորչի (Դ դար). տես Յոհան № 4.—Յայսմ. նոյ. 18։

— 3. Սիմէոն հայ, վերակացու այն ոսկեհանքերի, որոնք գտնվում էին Բասեն գավառի Փարանգիոն և Բոլոն բերդերի մոտ։—Այս տեղեկությունը տալիս է Պրոկոպիոս պատմիչը († շուրջ 562 թ)՝ իր «Պարսկական պատերազմներ» գրքում, որից քաղելով «Հույն պատմիչների վկայությունը հին Հայաստանի ոսկու հանքերի և նրանց տեղի մասին» էջ 8 և Վ. Աբրահամեան՝ Արհեստները... Երևան 1946, էջ 41։

— 4. Սիմէոն (գրված Սիմոն), հայազգի եպիսկոպոս Ֆրանսիայի Տուրոն քաղաքում, ինչպես պատմում է Տուրոնի հին պատմիչ Ս. Գրիգոր եպիսկոպոսը 591 թ.—Սիսական 456 բ։

— 5. Սիմէոն, մին այն 7 խոտաճարակներից, որոնք նահատակվեցին Պարսից ձեռքով՝ Գայլ Վահանի դեմ արշավանքի ժամանակ «604 թ».—Մամիկ. բ. Յայսմ. սեպտ. 30։

— 6. Սիմէոն (գրված է Սիմոն), վաներեց Դարունից (Ուխտ. Բ. լէ), նույն է Սիմոն Դատաւանից, ստորագրում է այն

ձեռնարկին, որ տվին Հունահայոց եկեղեցականները Աբրահամ կաթուղիկոսին և խոստացան հեռու մնալ քաղկեդոնականներից «607 թ».—Գիրք թղ. խ։

— 7. Սիմէոն եպիսկոպոս Մեծկողմանց, ուզում էր բաժանվել Հայոց կաթուղիկոսությունից, որի համար էլ Աբրահամ կաթուղիկոսը («607—615 թ») գրեց Թուղթ հորդորական.—Սիմէոն՝ Կղկնտ. Բ. խթ.—Սիմոն՝ Գիրք թղ. ծե։

— 8. Սիմէոն եպիսկոպոս Ռշտունեաց, անդամ Դուինի եկեղեցական ժողովի «645 թ».—Կանոն. 130. Ջամչ. Բ. 345. Տաշեան, Ցուց. 654։

— 9. Սիմէոն ճգնավոր, որ ճգնում էր Արտաւոր լեռան վրա. շինել տվեց Վարդ պատրիկին Նախավկայի եկեղեցին 660 թ. (Ջամչ. Բ. 359)։—Այս դեպքը շատ բարդացնելով Սուտ-Շապհ. 33—36 պատմում է հետևյալ ձևով.—Սիմէոն ճգնավորը ճգնում էր Տօրոս լեռան վրա. Ռշտունեաց Գրիգորիոս եպիսկոպոսի խորհրդով՝ Վարդ պատրիկը կանչեց նրան և հույներին նենգությամբ ջրահեղձ անելու վրա զղջալով՝ հարցրեց թե ինչպես կարող էր իր մեղքը քավել։ Սիմէոնը խորհուրդ տվեց Վասպուրականում հազար վանք ու եկեղեցի շինել՝ Ստեփանոս Նախավկայի անունով։ Սրա համար հենց ինքը Սիմէոնը գնաց Երուսաղէմ և երեք տարի ծառայելով վանքում, ստացավ և Հայաստան բերեց Ստեփաննոսի մասունքները, որ դրեց Վարդի շինած եկեղեցիներում։ Այս ժամանակ եղավ նաև Վարագայ խաչի գյուտը (751 թ)։

— 10. Սիմէոն եպիսկոպոս Հոշաչայ (Ցոշոյ, Հողւայ). նզովեց Աղուանից Ներսէս քաղկեդոնիկ կաթուղիկոսին (706 թ).—Կղկնտ. Գ. գ, ը։

— 11. Սիմէոն Ա. նախապես սարկավագապետ էր. ընտրվեց կաթուղիկոս Աղուանից «713 թ», իբրև հաջորդ Ներսէս քաղկեդոնիկ կաթուղիկոսի. մշակեց նոր կանոններ և վերջ տվեց քաղկեդոնական շարժման։ Նստավ ըստ Կղկնտ. $1^1/_2$ տարի, ուրեմն «713—715 թ». իսկ ըստ Մխ. այրիվ. 24՝ նստավ 21 տարի։ Սրան հաջորդեց Միքայէլը։—Կղկնտ. Գ. է, ը, ժա, իդ. Կիր. ը. Հայապ. 384. Տաթև. հարց. 545.—ներ. Սիմէոնի՝ Կանոն. 201. Կղկնտ. Գ. ժա, ժբ, ժգ. [հրատ. Շահն. ժբ և ժգ սխալմամբ Սամուէլի]. Տաթև. հարց. 545.—բց. ի Սիմէոնէ՝ Կանոն. 201. Կղկնտ. Գ. ժա.—տես և Տաշեան, Ցուց. 274, 654։

— 12. Սիմէոն վարդապետ, անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի «726 թ».—Ազգապ. 839։

— 13. Սիմէոն եպիսկոպոս Խորխոռունեաց. ժամանակակից Եղիա կաթողիկոսի (Ը դար).—Կղկնտ. Գ. բ։

— 14. Սիմէոն վանահայր, Հացի գյուղից (Ը դար).—Կղկնտ. Գ. իզ.—տես. Սիմէօնի՝ անդ։

— 15. Սիմէոն վանական Շողատոյ. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լբ։

— 16. Սիմէոն Բ կաթողիկոս Աղուանից 901—922 թ. եղբայր և հաջորդ Յոհանի. օծվեց Հայոց Գէորգ Բ կաթողիկոսի մահվանից հետո՝ առանց Հայոց կաթողիկոսի հավանության։ Սրան էլ հաջորդեցին Դաւիթ, Սահակ, Գագիկ. բոլոր հինգն էլ առանց հայոց կաթողիկոսի ձեռնադրության՝ ընդամենը 69 տարի, մինչև Անանիա Մոկացի, որ գնաց Աղվանք և ապստամբության վերջ տվեց։—Անան. ապստ. 139 ա. Կղկնտ. Գ. իդ. Մխ. այրիվ. 24. Կիր. ը. Օրբ. խ, խբ, ծա. Հայապ. 385։

— 17. Սիմէոն վանական Խանդոնկան վանքի. անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթողիկոսը.—Սիմէովն՝ Անան. ապստ. 134 բ։

— 18. Սիմէոն կրոնավոր, միաբան Սանահնի վանքի, ուր օրինակեց Բարսղի գործերը (Կանոնագիրքը), 972 թ.—Զարբ. Թրգմ. 337—8, Մովսէսեան՝ Լոռի Կիւրիկ. թգ. պատմ. 23։

— 19. Սիմէօն վարդապետ Աղբակեցի. օրինակել և միացրել է Ոսկեբերանի և Եփրեմի Մեկնութիւնները Թղթոյն Պօղոսի 999 թ.—Տաշեան, Ցուց. 222, 1150 ա, Զարբ. Թրգմ. 452—5, Այբարատ 497, Հայապ. 309։

— 20. Սիմէոն եպիսկոպոս Աղձնեաց. մատենագիր, որի ժամանակն անհայտ է. գրել է «Ճառ վասն արբեցողաց և զուսանաց», որի մեջ խոսում է հմայութեանց և կախարդության զանազան տեսակների մասին (Ալիշան, Հին հաւ. 379)։ Այսպես ըստ Սարգիսեան, Քննադատ. Մանդ. 195, ուր Սիմէոնը համարվում է Է կամ Ը դարի հեղինակ։ Սակայն ըստ Ձեռ. Վենետ. Բ. 484 վերնագիրն է «Վասն գինո խմողաց որ արբենան, վասն զուսանաց և վասն պոռնիկ կանանց և կաքաւչաց» (Վենետիկի № 633 ձեռագիրն է՝ գրված ԺԳ դարում. նույնը Վեննա, Ձեռ. № 99)։—Հացունի, Պատմ. տարազի, էջ 225 և 445, Տաշեան՝ Ցուց. 368։—Հայապ. 72 Սիմէոն Աղձնեցուն համարում է հեղինակ իբր Ժ դարու և նրան է վերագրում՝ «Լուսաւորչի կար-

գաղրութեանց և յաւելաղևս Յովհ. Մկրտչի տօնի վրայ մի գըր-ւածք»: Այս այն գրուածքն է որ Ձեռ. Վենետ. Բ. 490 կոչվում է «Երանելոյն Սիմէոնի ս. և ընտրեալ վարդապետի տացեալ պատճառս Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի. Եւ թէ որպէս կարգեաց գլխաւորի ս. Մկրտչին և Կարապետին Յովհաննու, ընդ նմին և զԱթանագինէ։ Սկիզբն զաւանման ճշմարիտ հաւատոյ Մեծաց Հայաստանեայց»: Ալիշան կոչում է «հին ճառարան պատմիչ» և նրանից հատվածներ է բերում Այրարատ 236, 379, 392, 527, Հին հաւատք 275, 301. Զարբ. Հին դպր. 790։—Նոյն է արդյոք նաև Սիմոն՝ դպիր վարուց Լուսաւորչի (Ալիշան՝ Արշալ. քրիստ. 94)։—Սարգիսեան, Ուս. հին կտակ. անվաւեր գրոց, էջ 58—59 համարում է Սիոն կաթուղիկոսը, որ և Աղամգրոց թարգմանիչ է դնում։

— 21. Սիմէոն քահանա, Ուխտանէս պատմագրի նամակը տարավ Անանիա Նարեկացուն (Ժ դար).—Ուխտ. Ա. ա։

— 22. Սիմէոն վարդապետ, հիմնադիր վանահայր Խլաձորի վանքի Դերջանում (Ժ դար).—նոյն. Սիմովնի՝ Առող. Գ. է. (Զամչ. Բ. 824 գրում է Սիոն)։

— 23. Սիմէոն «հոգևոր տէր յԵրուսաղէմ». Թարգմանեց «Պատմութիւն վարուցն Ադամայ և Եւայի». Ժամանակն անհայտ է. ըստ Զամինեանի Թ դար «յառաջ քան զգաստակարգութիւն Սարկաւագ վարդապետի».—Ձեռ. Վենետ. Բ. 484. Զարբ. Թրգմ. 188. Անկ. գիրք հին կտ. 1 ծան.—Սարգիսեան, Ուս. հին կտ. անվաւեր գրոց, էջ 59 ուղղում է Սիոն և համարում է Սիոն Ա կաթուղիկոսը։ Սրան հակառակ է Ադաւնունի, Տաթև տարեց. 1928, 119, որ ցույց է տալիս թե Սիմէոնն է պատրիարք Երուսաղէմի 1090—1109 թ։—Ամենից լավն է այն տեղեկությունը որ տալիս է Մխ. Այրիվ. 72, ըստ որի Սիմէոն հայրը գրել է Աղամգիրքը (151 ճառերից բաղկացած) Վասպուրականի Սենեքերիմ թագավորի խնդրանոք՝ 1001 թ.—Զարբ. Հին դպր. էջ 790։

— 24. Սիմէոն ճգնազգեաց, առաջին վանահայր Հաղբատի. Տիրանուն երեցի հետ միասին շինել են Հաղբատի Աւագ-Ս. Նշան եկեղեցին՝ Սմբատ և Գուրգէն թագավորների հիշատակին, 991 թ (Առող. Գ. ը)։ Այնուհետև Սիմէոնը հիշվում է իբրև վանահայր 996—7 և 1004—5 թվերի արձանագրության մեջ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 77, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 17, 23, 25, 55, 68. Ազգագր. հանդ. Է, 396, 416, Յովսէփեան՝

Նիւթեր և ուս. Ա. 63, Մովսէսեան՝ Լոռիի Կիւր. Թգ. 30։—Տաթև տարեց. 1927, 186 դնում է Սիմէոն առաջին առաջնորդ Հաղբատի 961 Թ. (ինչպես ունի Չամչ. Բ. 839), իսկ Ազգապ. «967 Թ»։

— 25. Սիմէոն Սքանչելագործ, հայ նախարարի որդի էր. ծնվել է Արշամուշատ քաղաքում, շուրջ 956 Թ. ծնողները ուզեցին ամուսնացնել նրան. հարսանիքի ժամանակ ծնողներից գաղտնի փախավ (986 Թ). Արշարունեաց վանքերում կրոնավոր դարձավ և ապա առանձին ճգնում էր։ Գնաց Երուսաղէմ ուխտի և հրաշքներ էր գործում։ Արսէն պատրիարքի հանձնարարականով գնաց Հռոմ, ապա ման եկավ Տոսկանա, Պիզա, Լուկկա, Միլան, Պավիա, Սպանիա, Բրիտանիա, Գաղղիա. ամեն տեղ հրաշքներ գործեց և ժողովրդական ցույցերից փախչելով՝ գնաց հաստատվել Իտալիոյ Մանտուա քաղաքի Բենեդիկտեանց վանքը, Polirone գյուղում, 1013 Թ. ուր 13 տարի ապրելուց հետո մեռավ 1026 Թ։ Պապը նրան սրբերի կարգն է դասել և Մանտուա քաղաքի պաշտպանն է։ Մինչև այժմ ցնում է իր գերեզմանը, Արսէն պատրիարքի հանձնարարականը, և այն հայերեն Աւետարանն ու Սաղմոսը, որոնք իր հետ էր տարել։ Ռաֆայէլ Ցուստինէոս անուն կրոնավորը 1477 Թ. հրատարակել է 1000 տողանի լատիներեն մի տաղ, ուր տալիս է սրբի պատմությունը, մխանդամայն և Հայաստանի գովեստը։—Այրարատ 497, Չամչ. Բ. 860—865, Բազմ. 1884, էջ 5—12. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ. 343. Ուղուրլեան, Պատմ. դաղթ. Լիվոռն. 231—3. Ազգապ. էջ 1188։

— 26. Սիմէոն (գրված է Սիմէւոն), կանգնեցրել է մի խաչքար՝ Ջանկլի գյուղում, «ի բարեխաւսութիւն Գագկայ.. իշխանութեան և հայոց թագաւորին» 1024 Թ.—Արձ. Այրարատ 545։

— 27. Սիմէոն (գրված է Սիմեոն) քահանա, գրել տվեց մի Աւետարան Քրիստափոր գրչին, 1033 Թ.—Շողակաթ 191։

— 28. Սիմէոն Տէր, որի տապանը գտնվում է Դարբանդի Մոլլա Խալիլ գյուղում (Վատնեան գաշտ), 1059 Թվից (կասկածելի).—Սմբատեանց, Սագիան 176։

— 29. Սիմէոն իշխան, տեր էր Հերակլէայի և Կեսարիոյ միջև գտնված մի բերդի. Խաչակրաց օգնությամբ ազատվեց Թուրքերի լծից 1098 Թ.—ՀԱ 1927, էջ 893, Սիսուան 47 ա։

— 30. Սիմէոն պատրիարք Երուսաղէմի. գահակալել է 1090—1109 Թ (Ազանունի)։

— 31. Սիմէոն *գրիչ. օրինակել է Աւետարանը 1166 թ?* —Manus. brit. mus. *էջ 3 ա։*

— 32. Սիմէոն, *իր երկու եղբայրների և իրենց հորեղբայր Պետրոս երեցի հետ՝ իրենց Փարպու այգին նվիրել են Հոռոմոսի վանքին 1174 թ.—Արձ. Շիրակ 21։*

— 33. Սիմէոն *աշակերտ Ներսէս Լամբրոնացու († 1198 թ), որ գրեց նրա համար Լուծմունք խնդրոց.—Հայապ. 429։*

— 34. Սիմէոն *(գրված է Սիմուն), պարոն և տեր Մաղոտ խաչ բերդի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 112, Սիսուան 196 բ։*

— 35. Սիմէոն *(գրված է Սիմուն), պարոն և տեր Ամուտոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 112։*

— 36. Սիմէոն *(գրված է Սիմոն), պարոն և տեր Կոռիկոսի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 112։*

— 37. Սիմէոն *(գրված Սիմաւոն), եղբայր Սիոն գրչի, որ օրինակեց Յովհ. Մանդակունու ճառերը Մուշեղկայ գյուղի Նոր-սեսի անապատում 1210 թ.—Դուրեան, Ուռուհ. 230։*

— 38. Սիմէոն, *ուսուցանում էր Սեթի հետ Հաւուցթառում. իրենց աշակերտներից Սոսթանէսը, Մատթէոսը և Գրիգորէսը նրանց շիրմի վրա կառուցել են Ս. Կարապետի մատուռը 1213 թ. —Արձ. Այրարատ 356, Արրտ. 1871, 331։*

— 39. Սիմէոն *(գրված է Սիմեոն), եղբայր Պետրոս գրչի, որ Ակների վանքում միաբանության համար օրինակեց Սեբերիանոսի ճառերը՝ 1215 թ.—Շողակաթ 199, Սիսուան 154 ա, Զարբ. Թրգմ. 688։*

— 40. Սիմէոն, *փորագրիչ Անիի աշտարակներից մեկի արձանագրության 1216 թ.—Արձ. Շիրակ 41 բ։*

— 41. Սիմէոն *գրակալ, որ է կազմարար, Սեբաստիայում 1222 թ.—Տաշեան, Ցուց. 559։*

— 42. Սիմէոն *(կամ Սիմեւոն) վարդապետ, վանահայր և առաջնորդ Բագնայրի Ս. Աստուածածին վանքի. հիշված է մի խումբ արձանագրությանց մեջ 1206—9 և 1229—48 թվերին։ Անթվական մի արձանագրության մեջ (Շիրակ 118) պատմում է թե «դառն ժամանակի հանդիպեցաք, սովո և սրո և գերու-թեան»։ Մի ուրիշ անթվ. արձանագրության մեջ էլ (Շիրակ 119, շուրջ 1262—4 թ) հիշված են «Առաքել և հայր Սիմեոն»*

միասին.—Շիրակ 112, 116—122, Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. էջ 17։

— 43. ՍԻՄԷՈՆ, գրել տվեց Հռոմում, Հայոց տան մեջ, Թորոս գրչին մի Աւետարան 1242 թ.—Թորոս աղբ. Բ. 441։

— 44. ՍԻՄԷՈՆ եպիսկոպոս, արենակից ազգական Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթողիկոսի. հիշված է 1244 թ.—Չեռ. Վենետ. Ա. 652։

— 45. ՍԻՄԷՈՆ Գառնեցի, քահանա, ծնվել է 1188 թ. Վրաց Գլենձահանք վանքում թարգմանեց հույն նոր-պլատոնական փիլիսոփա Պրոկլ Դիադոխոսի (412—485 թ.) «Շաղկապք աստուածաբանականք» գործը՝ վրացերենից հայերեն, 1248 թ։ Ըստ Կոնիբիրի այս գործը նախապես ուներ հունարեն հայ լեզվով թարգմանություն, որից թարգմանվեց վրացին. հին հայ թարգմանությունը հետո կորավ. (Կոնիբիր գտել է նրա մի օրինակը Էջմիածնում). Սիմէոնը այս թարգմանությունից թարգմանեց հայերենը, որով և ձևացավ արդի խայտառակ լեզվով անիմանալի թարգմանությունը։ Տաշեան, Մատեն. մանր ուս. Ա. էջ 147—161 հաստատում է որ Պրոկլը մի անգամ է թարգմանված և Կոնիբիրի գտած ձեռագիրը Մխ. Այրիվանեցու ձեռագիրն է և Սիմէոնի՝ թարգմանության հնագույն օրինակը։—Առաք. պատմ. 313, Չեռ. Թաւր. 29, Տաշեան՝ Ցուց. 826 և Մատեն. մանր ուս. Ա. էջ 28—38։—Հավանաբար նույն է Սիմէոն, որ վրացերենից հայերեն է թարգմանել Յովհաննէս Դամասկացի Մանսուրը (Զարբ. Թրգմ. 578)։

— 46. ՍԻՄԷՕՆ (գրված է Սիմոն), հայր Սահակի, որ մի խաչքար է կանգնեցրել Կէօթանլու գյուղի գերեզմանատան մեջ 1252 թ.—Սիսական 110։

— 47. ՍԻՄԷՈՆ արքեպիսկոպոս առաջնորդ Մալաթիայի։ Արիստակէս վարդապետի մոտ սովորել էր և կազմարարության արհեստը. կազմեց մի հին Աւետարան, ՉԳ=1254 թ.—Թորոս աղբ. Ա. 327—8, Հացունի, Կարևոր խնդ. 267։ (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 40 նորոգումը դնում է ՋԳ=1454 թ. բայց սա ըստ Թորոս աղբ. Ա. 331 մահտեսի Կիրակոսի արած նորոգության թիվն է)։

— 48. ՍԻՄԷՈՆ քահանա, ստացող. Յովհաննէս եպիսկոպոսի և Դանիէլ քահանայի հետ՝ Վարդան գրչին գրել տվին մի Ժողովածու, Թիմ քաղաքում, 1254 թ.—Manus. bibl. nat. էջ 55։

— 49. ՍԻՄԷՈՆ փիլիսոփա (երաժիշտ), գրիչ. օրինակեց

*Աւետարանը Արքայակաղնի վանքում, 1260 թ.—Սիսուան 517 ա և 546 ա։*

— 50. **Սիմէոն** *փակակալ Ակների վանքի, միաբանակից Գուլիթ Բջնեցու, որ օրինակեց Ագաթանգեղոսը 1261 թ.—Հրատ. Ագաթ. 1909 թ. յռջ. էջ Լ։*

— 51. **Սիմէոն** *(կամ Սիմեոն) փորագրիչ. քանդակել է մի արձանագրություն Բաղնայրում 1262 թ.—և մի ուրիշը Հոռոմոսում 1266 թ.—Շիրակ 120, 26։—Նույն անձը կոչված է «Սիմէոն պառաղ» (որ երևի պիտի հասկանանք փորագրիչ) 1262 թ. (Շիրակ 116)։—Հմմտ. № 40։*

— 52. **Սիմէոն** *փակակալ Հոռոմոսի վանքի. հիշված է 1269 թ.—Շիրակ 28։*

— 53. **Սիմէոն** *եպիսկոպոս, առաջնորդ Բարձրբերդի Անդրիասանց ուխտի, 1269 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 495, Սիսուան 149։*

— 54. **Սիմէոն** *քահանա, Սիսում գրել տվեց մի Շարական 1269 թ.—Տաշեան՝ Ցուց. 447։*

— 55. **Սիմէոն** *գրիչ. օրինակել է Աւետարանը՝ 1277 թ.—Ձեռ. Կարին. 23։*

— 56. **Սիմէոն** *քահանա, գրիչ. օրինակել է Ճառընտիրը՝ Մարկոս քահանայի խնդրանոք 1278 թ.—Ձեռ.. Կարին. 126։*

— 57. **Սիմէոն** *գրիչ. Մելքիսեդեկ քահանայի որդի Յակոբի հիշատակին արտագրել է մի Աւետարան 1280 թ.—Ձեռ. Կարին. էջ 16։*

— 58. **Սիմէոն** *գրիչ, Գլաձորի վանքում օրինակեց Հաւաքածոյ բանք 1283 թ.—Սմբատեանց, Երնջակ 316 (Մեծ Ցուցակ, էջ 5)։*

— 59. **Սիմէոն** *գրիչ. Մլիճի վանքում օրինակել է մի Հաւաքածոյ 1283 թ. կամ ավելի կանուխ.—Տաշեան, Ցուց. 1036 և 1039։*

— 60. **Սիմէոն** *գրիչ. Արճէշում օրինակեց Աւետարանը՝ Թովմայ վարդապետի համար, 1286 թ.—Ձեռ. Վասպ. 106։*

— 61. **Սիմէոն** *կրոնավոր. գրիչ. օրինակել է Գր. Նիւսացու Մեկնութիւն Երգոց երգոյն, Յաղագս բնութեան մարդոյ ևն, Գնձահան վանքում, 1288 թ.—Ձեռ. Կարին. 146։*

— 62. **Սիմէոն** *գրիչ. օրինակել է Վարդան վարդապետի Մեկնութիւն Արարածոց և Եփրեմի Մեկնութիւն Յեսուայ և Թագաւորութեանց, 1288 թ.—Ձեռ. Կարին. 143։*

— 63. **Սիմէոն** *եպիսկոպոս Սեբաստիոյ. գնաց Ֆրանսիայի*

La Grasse աբբայարանը, որի եկեղեցում լատին լեզվով պատարագ մատուցեց 1289 թ. մարտի 29, զատկի օրը։—Macler REA 5, 150։

— 64. Սիմէոն, իր Կիրակոս ընկերոջ հետ միասին փոքրավոր էին և սպասավորում Գրիգոր Բալուեցի վարդապետին։ Երբ Խարբերդ քաղաքում Թուրքերը նահատակեցին Գրիգորին, նրա հետ նահատակեցին նաև այս երկուսին էլ, որոնք մերժեցին ուրանալ իրենց հավատքը։ Թաղվել են Խարբերդի մոտիկ՝ Ցանրբիկ աորբիների Ս. Գարսամայ վանքում, «1290 թ».—Նոր վկ. 104, 111, 114—6, Ազգապ. 1802։

— 65. Սիմէոն գրիչ. Կիլիկիայում արտագրել է Գէորգ Սկեռացու Մեկնութիւն Եսայեայ 1292 թ.—Սիսուան 103։

— 66. Սիմէոն (գրված է Սիմոն) քահանա, միաբան Սկեռայ վանքի. սպասավորում էր Գետրոս քահանային, երբ սա արտագրում էր Եսայի մարգարէն և Պօղոսի թղթերը, 1296 թ.—Սիսուան 107 ա։

— 67. Սիմէոն քահանա, գրիչ, Արճէշում Յակոբ քահանայի և Թումայ (№ 37) կրոնավորի համար օրինակել է մի Աւետարան, 1297 թ։—Ձեռ. Վասպ. 123—4։

— 68. Սիմէոն, առաջնորդ Արցախի Եղիշէ առաքյալ (Ջրվշտիկ) վանքի. հիշված է նախ 1264 թ. ապա 1286 թ. մեռել է 1298 թ. դամբարանը գտնվում է նույն վանքում.—Շահխաթ. Բ. 379, Բարխուտ. Արցախ 235—6, Գամ. Աղվ. Ա. 86։

— 69. Սիմէոն եպիսկոպոս ոմն, որ մեռել է 1298 թ.—Ծանիկեան, Հնութ. Ակնայ 85—86 (հիշողն է մի Աւետարանի գրիչը՝ Յովհաննէս դպիր, որդի Կոստանդին քահանայի)։

— 70. Սիմէոն եպիսկոպոս ոմն, մեռել է 1298 թ.—Ձեռ. Հալէպի՝ Ա. 395 բ։ (Այս վերջին երկուսը նույն են իրար հետ, բայց տարբեր է նախորդը)։

— 71. Սիմէոն քահանա, որի աշակերտը՝ Դանիէլ օրինակեց Թովմա Արծրունու Պատմութիւնը (ԺԳ դար).—մեն հրատ. Պատկ. էջ 320։

— 72. Սիմէոն (գրված է Սիմաւոն) բժիշկ, գրել է բժշկական գործեր (ԺԳ դար).—Տաշեան, Ցուց. 199։

— 73. Սիմէոն, որ իր և իր կնոջ Կատարինէի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Թէոդոսիայի Ս. Գէորգ եկեղեցում, 1301 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 37։

— 74. Սիմէոն, *վաճառական, իրավունք ստացավ անցնելու Վենետիկ 1302 թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 154։*

— 75. Սիմէոն *(կոչված Սիր Սիմուն), նվիրել է մի խանութ Կապոսի Ս. Լուսավորիչ վանքին, հոգաբարձու կարգելով Թագուորշահին (1303 թ).—Ձեռ. Վենետ. Բ. 35։*

— 76. Սիմէոն, *գրիչ. Արճէշում իշխան Շնոփորի համար գրեց մի Ավետարան, 1304 թ.—Ձեռ. Վասպ. 146։*

— 77. Սիմէոն *քահանա, Աստապատում ծաղկեց և կազմեց այն Ավետարանը, որ գրել էր Ցակոբ գրիչը Նախիջևանում, 1304 թ.—Շողակաթ 209։*

— 78. Սիմէոն *Բարերդցի. գրիչ. Ավետիք վարդապետի հրամանով օրինակեց մի Ճառընտիր, օգնությամբ իր երկու որդիների՝ Պապանունի և Աստուածատուրի, որոնք թուղթն էին կոկում, Կաֆա 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 512։*

— 79. Սիմէոն *չրախճի, օգնեց Գրիգոր գրչին՝ գրելու իր Տօնականը, Կաֆա 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511։ Հմմտ. վարը № 81։*

— 80. Սիմէոն *կրոնավոր, Ապխնկայ անապատում, Ղազար միայնակեց գրչին գրել տվեց Մեկնություն թղթոցն Պօղոսի, 1307 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 247։*

— 81. Սիմէոն *Բարերդցի, գրիչ. Գրիգորի և Աւագի հետ օրինակեց Տօնականն ու Ցայսմաւուրքը՝ Ավետիք վարդապետի հրամանով, Կաֆայում, 1307 թ.*—Manus. bibl. nat. *(№ 118), էջ 57, 60։—Հմմտ. վերը՝ № 79։*

— 82. Սիմէոն *եպիսկոպոս Կոպիտառի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Չամչ. Գ. 310, Սիսուան 158, Ազգապ. 1785։*

— 83. Սիմէոն, *հող է նվիրել Ս. Ստեփանոս վանքին և Ս. Նշանին՝ ի հիշատակ Մխիթարի 1309 թ.—Խաղբակեանք 187։*

— 84. Սիմէոն *քահանա, ուսուցիչ Դանիէլ գրչի, որ Աղթամարում օրինակեց Պօղոսի թղթերը, 1309 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1923, 74։*

— 85. Սիմէոն *(գրված է Սիմոն), որդի Ստեփանոս քահանա Սեբաստացու, ծնվել է 1311 թ. վաղամեռիկ է եղել 1313 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1923, 70։*

— 86. Սիմէոն *գրիչ. Խրիմում օրինակեց մի Ցայսմաւուրք՝ պարոն Շահապի համար, 1316 թ.*—Manus. bibl. nat. *էջ 100, № 180։*

— 87. Սիմէոն, *քեռորդի Յովհաննէս քահանայի, որ Կրակայ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ. 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 301։*

— 88. Սիմէոն *քահանա, գրիչ. Գայլու անապատում օրինակեց մի Շարական՝ Ստեփանոս դպրի համար, 1318 թ.—Շահազիզ, Պատմական պատկերներ, էջ 111։*

— 89. Սիմէոն *քահանա, գրիչ. օրինակել է Աւետարանը Դրազարկի վանքում, 1318 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ 86։*

— 90. Սիմէոն *արեղա, առաջնորդ Ցարձկու վանքի, 1319 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 53 բ։*

— 91. Սիմէոն, *ստացող. Մատթէոս գրչին գրել տվեց Գրիգոր Նազիանզացու ճառերը, 1319 թ.*—Manus. bibl. nat. *էջ 62։*

— 92. Սիմէոն *երեց, հայր Կոստանդին քահանայի՝ քեռորդւոյ Գրիգոր գրչի, որ Ակների վանքում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 1325 թ.—Սիսուան 535 ա։*

— 93. Սիմէոն *(գրված է Սիմաւոն), իր ընկերների հետ միասին դուրս եկավ կաթոլիկացած Կոստանդին Կեսարացի կաթուղիկոսի («1307—1323 թ») դեմ և աքսորվեց Կիպրոս կղզին։—Հայապ. 552, հմմտ. նաև № 108։*

— 94. Սիմէոն *երեց՝ քեռի Գրիգոր գրչի, որ Ակների վանքում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 1325 թ.—Սիսուան 155 ա, Ձեռ. Վենետ. Բ. 572։*

— 95. Սիմէոն *քահանա, որդի Մխիթար քահանայի, որ Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. 295։*

— 96. Սիմէոն *վարդապետ Խաչենցի, աշակերտ Եսայի Նչեցու, գնաց սովորելու Եսայի Նչեցու մոտ, դարձավ ունիթոռական վարդապետ, միաբան Քռնիի վանքի, «1330 թ»։—Ձեռ. Ներս. 32 բ. Սիսական 384 ա, Ազգապ. 1845։*

— 97. Սիմէոն *վարդապետ Բասենցի, աշակերտ Եսայի Նչեցու; գնաց աշակերտելու Բարթուղիմէոս լատին եպիսկոպոսին և դարձավ ունիթոռական վարդապետ, միաբան Քռնիի վանքի «1330 թ».—Ձեռ. Ներս. 32 բ. Սիսական 384 ա. Ազգապ. 1845 (վերջինս նույն է դնում Սիմէոն պէկի հետ, որ տես № 108)։*

— 98. Սիմէոն *քահանա, հայր Դէոսկորոս գրչի, որ Արճէշում օրինակեց մի Աւետարան, 1331 թ.—Ձեռ. Վասպ. 178։*

— 99. Սիմէոն *(գրված է Պապ. Սիմոն), հիշված է Ծղուկ գավառի Բնունիս գյուղում Օրբէլ մանուկի մահարձանի վրա*

1331 թ. ըստ Ազգագր. հանդ. Գ. 178, որ սակայն չունի Սիսական 216։

— 100. Սիմէոն քահանա, կինն է Դեթա. ծնողներն են Վարդան քահանայի, որ օրինակեց Աւետարանը Աղպինար գիւղում, 1331 թ.—Ձեռ. Վասպ. 174։

— 101. Սիմէոն կրօնաւոր, եղբայր Մխիթար կրօնաւորի, երկուսն էլ միաբան Աղթամարայ վանքի. գրել տուին մի Աւետարան Կարապետ գրիչ Աղթամարցուն, 1332 թ.—Ձեռ. Վասպ. 182, 184։

— 102—3. Սիմէոն, երկու նորընծայ քահանաներ, որոնք ապրում էին Երուսաղէմի Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 104. Սիմէոն գրիչ, Կիլիկիոյ Գանձի (սեռ. Գանձէ) դղյակում օրինակեց Ճաշոցը՝ Խողկերտ գիւղի եկեղեցու համար 1335 թ.—Սիսուան 118—9 և 532 ա։

— 105. Սիմէոն քահանա, գրիչ. օրինակել է երկու Մանրուսումն երգարան, Կիլիկիոյ Գալու վանքում, մին 1325 և միւսը 1336 թ.—Սիսուան 201 ա (նմանահանութեամբ)։

— 106. Սիմէոն (գրված է Սիմոն), որդի Շահնշահի, որ Գողթան գաւառի Կապատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Աղուլ.=Արար. 1911, էջ 387։

— 107. Սիմէոն, մի կալված է նվիրել Թանատի վանքին, իր և Մխիթարի հիշատակին, որ երևի թե հայրը կամ եղբայրն է, 1339 թ.—Արձ. Սիսական 121։

— 108. Սիմէոն պէկ, եպիսկոպոս և առաջնորդ Կարնոյ (ըստ Փոսեան, Բարձր Հայք, Ա. 103 նստել է 1330—1341 թ, որի վերջին եզրը ճիշտ չէ). ունիթոռական էր և կաթոլիկութիւն քարոզելու համար գնաց Կիլիկիա։ Ժողովուրդի մէջ խռովութիւն գցելու պատճառով բռնվեց և Ներսէս Պալիենցի հետ միասին Կիլիկիայից դուրս վտարվեց։ Անցավ Կիպրոս (1341 թ), ապա նորից վերադարձավ Կիլիկիա՝ համոզելու համար Մխիթար («1341—1355 թ») կաթողիկոսին. բայց հուսահատվելով՝ Ներսէսի հետ միասին գնացին Աւինիոն, Բենեդիկտոս ԺԲ պապի (1334—1342 թ.) մոտ, որին ներկայացրին հայոց դէմ մի ամբաստանագիր 117 ամբաստանութիւնից բաղկացած.—Չամչ. Գ. 330. Ազգապ. 1852, 1863, 1872—1904 (ուր մէջ է բերում մի առ

*մի բոլոր ամբաստանությունները և հերքում. միացնում է վե-րը՝ № 93 հիշված Սիմէոնի հետ)։*

— 109. Սիմեոն *երեց, գրիչ. Խրիմի Սուրխաթ քաղաքում, Աստուածատուր կրոնավորի խնդրանոք գրեց մի Աւետարան, 1343 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 755։*

— 110. Սիմէոն *(գրված է* Սիմեօվն*), որդի Թադեոս մանկ-տաւագի և եղբայր Պօղոս սարկավագի, որ Կապոսում ստացավ մի Շարակնոց 1343 թ.—Տաշեան, Ցուց. 489։*

— 111. Սիմէոն *եպիսկոպոս առաջնորդ Սեբաստիոյ. մաս-նակցեց Սսի եկեղեցական ժողովին «1343 թ» (Ազգապ. 1869). հիշված է դեռ 1350 թ. (Տաշեան, Ցուց. 107)։*

— 112. Սիմէոն *քահանա, Եկեղեաց գավառում օրինակել սկսեց Աւետարանը Հայրապետ քահանայի համար. բայց կեսը հազիվ ավարտած՝ կոտորածի պատճառով փախավ երկրից. Հայ-րապետի եղբայրը՝ Ազարիա արեղան լրացրեց Թացյալը 1351 թ?—Թորոս աղբ. Բ. 356—7 (տես և Հայրապետ № 50)։*

— 113. Սիմէոն, *հորեղբայր Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Խրիմ) գրել տվեց Աստուածաշունչը 1352 թ.—Ձեռ. Վատ. 7։*

— 114. Սիմէոն, *իր եղբոր Յովհաննէս քահանայի հետ ստացել է մի Աւետարան, 1354 թ.—Շողակաթ 209։*

— 115. Սիմէոն *կրոնավոր, որդի Սարգսի. մայրն է Բնքուշ, եղբայրն է Մարտիրոս- Երուսաղէմում, Գրիգոր կրոնավորի հետ միասին Տէրաւագ երեցին գրել տվին մի Աւետարան և Ճաշոց, 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118։*

— 116. Սիմէոն, *հայր Յակոբ սարկավագ գրչի, որ օրինա-կեց Կիւրղի «Կոչումն Ընծայութեան» գիրքը շուրջ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։*

— 117. Սիմէոն *քահանա, գրիչ. Երզնկայում օրինակեց մի Աւետարան 1360 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 310։*

— 118. Սիմէոն, *խաչընդուս կրոնավոր, հոգևոր եղբայր Ստեփաննոսի, որ ստացավ մի ժողովածու, 1360 թ.—Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 83։*

— 119. Սիմէոն *վարդապետ, ստացող Տօնապատճառի, որ գրեց Յոհաննէս գրիչը, 1368 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1152, 1154 և 1162։*

— 120. Սիմէոն *սպասաւոր բանի, Թերևս օգնական Յո-*

հաննէս գրչի, որ օրինակեց Տօնապատճառը 1368 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1162։

— 121. Սիմէոն, որդի Աստուածատուր երեցի, որ Երզնկայի Թլակ ավանում Տարօնի Յովհաննէս Ալինախ եպիսկոպոսից գնեց մի Աւետարան, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 122. Սիմէոն վարժապետ. գրիչ. օրինակեց Դաւթի «Լուծմունք ճառից Աստուածաբանի» Մեծոփայ վանքում 1363—70 թվերին.—Տաշեան, Ցուց. 757։

— 123. Սիմէոն եպիսկոպոս Այասի 1375 թ. տես Զիմի Այացի։

— 124. Սիմէոն դպիր, որդի Շահինշահի. Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան (տեղն անհայտ) 1378 թ.—Տաշեան, Ցուց. 692։

— 125. Սիմէոն, որդի Ամենաւագի և եղբայր Աստատ միայնակեցի, որի հետ միասին Ներսէս գրչին գրել տվեց մի Ճառընտիր՝ Գամաղիէլի վանքում, 1397 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1283—6։

— 126. Սիմէոն բարունապետ, «երից երանեալ», հիշված է այն Ճառընտրի հիշատակարանում, որ գրվել է Վարագայ վանքում, 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429։

— 127. Սիմէոն Սիւնեցի, աշակերտ Գր. Տաթևացու. Թովմա Մեծոփեցու դասընկերներից է.—Մեծոփ. 50. Ազգապ. 1997։—Տես № 148։

— 128. Սիմէոն երեց. գրիչ. գրել է մի նկարազարդ Աւետարան՝ իբր ԺԴ դար.—Տաշեան, Ցուց. 630։

— 129. Սիմէոն միայնակեց. հունարենից թարգմանեց Հարանց վարքը. թվականն անհայտ.—տես Վրք. հց. տպ. Վենետ. 1855, յոյ. Զարբ. Թրգմ. 551։

— 130. Սիմէոն (գրված է Սիմոն), կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Թադէոս Ա-ի և նախորդ Դաւիթ Գ-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 131. Սիմէոն (գրված է Սիմաւոն), բժիշկ, ունի բժշկական երկեր. հիշում է Ամիրտ. անդ. 2՝ Մխիթար Հերացուց, Ահարոն, Ստեփաննոս, Ճոսլին, Սարգիս, Յակոբ, Դեղին բժիշկներից հետո և Սիմաւոն ու Վահրամ բժիշկներից առաջ.—հավանաբար ԺԴ դար։

— 132. Սիմէոն, որդի Դանիէլի և եղբայր Կարապետ

*(№ 111) քահանայի, որ գնեց մի հին Աւետարան և նորից կազմել տվեց 1401 թ.—Ձեռ. Վասպ. 126։*

— **133. Սիմէոն** *սպասավոր բանի, Տաթևի վանքում, Երեմիա վարդապետի հրամանով, Գալուստ վարդապետի ընկերակցությամբ գրեց Տաթևացու Հարցմանց գիրքը, երբ դեռ կենդանի էր հեղինակը, 1403 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 66 բ։*

— **134. Սիմէոն** *կրոնավոր, գրիչ. Ղրիմում, Լուսաւորչի անապատում օրինակել է Հարցմանց գիրքը, 1410 թ.—Ձեռ. Կարին. 51, Նոտարք 36։*

— **135. Սիմէոն** *բարունապետ Սիւնեցի, բնակությամբ Տաթևացի, Գրիգոր գրչին օրինակել տվեց Ներսէս Լամբրոնացու Մեկնութիւն ԺԲ մարգարէից, Հերմոնի վանքում, 1414 թ.—Սիսական 125 բ։*

— **136. Սիմէոն,** *հայր Գրիգոր կրոնավորի, որ ստացավ Տաթևացու Քարոզգիրքը 1419 թ.—Տաշեան, Ցուց. 978։*

— **137. Սիմէոն** *(գրված է Սիմոն), միաբան Բերկրիի Տէր Յուսկան որդի վանքի, հիշված է 1420 թ.—Նոտարք 61։*

— **138. Սիմէոն** *աբեղա, գրիչ. Վասպուրականի Մարմետ գյուղում գրեց մի Աւետարան 1421 թ.—Նոտարք 66։*

— **139. Սիմէոն** *վարդապետ Ուշտունի. առաջնորդ Ուշտունեաց գավառի Գուտլիկ վանքի. ուսուցիչն է այն Թովմա վարդապետի, որ հավատքի համար նահատակվել է «1421 թ».—Մեծոփ. 44, Ազգապ. 2056։*

— **140. Սիմէոն** *դպիր, մի հին Աւետարան որ գրված էր 1275 թ., նորից է կազմել 1421 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 77—78։*

— **141. Սիմէոն** *կրոնավոր, միաբան Կոյի Ս. Խաչ վանքի 1422 թ.—Նոտարք 68։*

— **142. Սիմէոն** *աբեղա, եղբայր Յովհաննէսի, մի Աւետարան վաճառեց Կամենիցացի Խութլու պէկին, 1422 թ.—Կամենից 161։* REA *7, 107։*

— **143. Սիմէոն** *վարդապետ. գրիչ. օրինակել է Մեկնութիւն Թղթոյն Կաթուղիկեայց (Ձեռ. Էջմ. № 1394=1408), 1423 թ.—Կնիք հաւ. յոյ. 43։*

— **144. Սիմէոն** *սարկավագ, հոգևոր որդի Մխիթար արքեպիսկոպոսի և առաջնորդի Ամասիոյ, որ նրա համար գրել տվեց Յովհաննէս քահանային մի Գանձարան, 1424 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 122)։*

— 145. Սիմէոն, *ստացող. օրինակել տվեց Աւետարանը Խանրոց գյուղում, Յովհաննէս գրչին, 1425 թ.—Ձեռ. Սևան. 9 ա:*

— 146. Սիմէոն *(գրված է Սիմէաւն) վարդապետ, մի Յայսմաւուրք է նվիրել Կարպի գյուղի Յովհաննավանքին 1427 թ.—Ջքր. պատմ. Գ. 21. Շահխաթ. Բ. 104> Նոտարք 86, Արձ. Այրարատ 172 բ:*

— 147. Սիմէոն *ճգնավոր. եղբայրն է Մաթէոս քահանա. որանց հիշում է Սարգիս եպիսկոպոսը, որ Գուգարաց Կոթիփորոյ Ընկուզաղոմ վանքում օրինակեց Յայսմաւուրքը 1427 թ.—Նոտարք 84—85:*

— 148. Սիմէոն *վարդապետ Այրիվանեցի. 10 տարի ուսուցանում էր Եղվարդի փոքր վանքում. ապա եկավ առաջնորդ Այրիվանքի, որ նորոգեց և բարեկարգեց: Գնաց Երուսաղէմ ուխտի. վերադարձին մի ժամանակ նստավ Այրիվանքում, արտագրել տվեց մի Յայսմաւուրք, ապա այնտեղից անցավ Ջագավանք, ուր և մեռավ «1428 Թ»։Ունի կանոններ:—Այրարատ 197, 291, 346, 350. Սիսական 241. Հայապ. 569.—ըստ Ազգապ. 2059 նույն է վերի Սիմէոն Սիւնեցու հետ № 127:*

— 149. Սիմէոն *պարոն, հայր Էլմելիքի և Ամիրմելիքի, մերձավորներն են Միրտիչ տանուտերի, որ գրել տվեց Ճառընտիրը՝ Արծկէ 1428թ.—Տաշեան, Ցուց. 583:*

— 150. Սիմէոն, *կինն է Աղէկ. ծնողներն են Ստեփաննոս քահանայի, որ ստացավ մի Աւետարան 1430 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 71:*

— 151. Սիմէոն *վարդապետ, կանգնեցրել է ձեռագործ մի խաչքար պարոն Սիմէոնի հիշատակին 1431 թ.—Ջալալ. Բ. 466 > Նոտարք 97:*

— 152. Սիմէոն *պարոն, որի հիշատակին Սիմէոն վարդապետը մի խաչքար է կանգնեցրել 1431 թ.—Ջալալ. Բ. 466> Նոտարք 97:*

— 153. Սիմէոն, *հայրն է Սիրամիր, մայրն է Մելիք խաթուն. որանց անունով կանգնեցրած է մի խաչքար, որ Խրիմից բերելով այժմ ագուցել են Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցու պատին: Փորագրել է Սիմէոն վարպետը, շինողն է «քարխանաճի Սիմէ», 1431 թ.—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, 51:*

— 154. Սիմէոն *եպիսկոպոս, շինել է տվել Մալաթիայի Ս. Լուսաւորիչ վանքի տաճարի դուռը 1439 թ.—Թորոս աղբ. Ա. 313, Նոտարք 118:*

— **155. Սիմէոն** *աբեղա, գրիչ. Եկեղեաց Աւագ վանքում օրինակեց Յայսմաւուրքը 1439 թ.—Տաշեան, Ցուց. 24, 49, 50։*

— **156. Սիմէոն** *վարժապետ, նորոգեց Այրարատեան Նահանգի վանքերը 1444 թ.—Այրարատ 10։*

— **157. Սիմէոն,** *կինն է Արզուհ. ծնողներն են Թովմա (№ 165) Մինասենց նշանավոր գրչի, որ օրինակել է բազմաթիվ ձեռագրեր սկսած 1420 թվից մինչև 1444 թ. որանց մեջ հաճախ հիշում է իր ծնողներին.—Ձեռ. Վասպ. 323, 353, 388, 393. Նոտարք 89. Ակինեան՝ Գուղնգիրք 110։*

— **158. Սիմէոն** *(գրված Սիմոն) Վանեցի, որդի Աբխոզոմի. ծնվել է 1385 թ. թողել է մի փոքր հիշատակություն մի Սաղմոսի մեջ 1445 թ.*—REA *9, 140։*

— **159. Սիմէոն** *վարդապետ Ոշտունցի, մին այն վեց կրոնավորներից, որոնց օգնությամբ Փիր Ստեփաննոս Բախվանցի վարդապետը վերաշինեց Կապուտկողի Ս. Յակոբ վանքը 1412 թ։ Այս վանքում «աբբանեակ և սպասաւոր» լինելով Սիմէոնը Փիր Ստեփաննոսին, ուսման մեջ առաջ գնաց։ Մի քանի տարի հետո, Փիր Ստեփաննոս վարդապետը վանքը հանձնեց իր աշակերտին և ինքը գնաց Երուսաղէմ, ուր և մեռավ։ Սիմէոնը գավազան ստացավ և եղավ նույն վանքի առաջնորդն ու վարդապետը 1427 թ։ Ըստ Փիրղալէմեանի գրել է բազմաթիվ գանձեր, որոնք Գանձարանում կրում են իր ծայրանունը (Նոտարք 87)։ Նա կոչում է նրան էլ Բախվանցի, վերաշինող Կապուտկողայ Ս. Յակոբ վանքի, նաև տարեգիր կամ պատմիչ ԺԴ դարու։ Ըստ այսմ նույն է Սիմէոն վարդապետ Բախուանցի, որ գրել է 1392—1401 թվերի պատմությունը, որի մեջ համառոտ պատմում է նաև Լէնկթիմուրի գլխավոր գործերը (Ձեռ. Դաշեան, Բ. 57 բ, Հայապ. 125, Փիրղամէլեան՝ Զարս ընկերք 175)։—Նոտարք 11; 15, 41։—Կենդանի էր դեռ 1445 թ։ Հիշված է նաև 1446 թ. (Նոտարք 155)։ Մաշտոցի մի հիշատակարանում, Թովմա Մինասենց գրիչը խոսում է նրա մասին, թե ինչպես հարստացրել է նա վանքը բազմաթիվ կալվածներով, որոնց թվումն էլ անում է մի առ մի (Նոտարք 136—9)։*

— **160. Սիմէոն** *քահանա, որի «ձեռնատուութեամբ» Հայրապետ գրիչը օրինակեց մի Աւետարան, Ծառիկու վանքում, 1447 թ.—Նոտարք 157։*

— **161. Սիմէոն** *դարբին, առաջավոր Հայոց Ամթայ. Նպպա-*

տեց Հայոց Ս. Թէոդորոս եկեղեցու շինութեան 1447 թ.—Արար. 1898 թ. 48 ա, Հայապ. 574։

— 162. Սիմէոն, հայրապետ Դերձկի վանքի, Մկրտիչ սարկավագին գրել տվեց մի ճաշոց 1447 թ.—Նոտարք 157։

— 163. Սիմէոն վարդապետ, առաջնորդ Ռշտունեաց Բերդաձոր վանքի, 1448 թ.—Ձեռ. Վասպ. 400։

— 164. Սիմէոն (գրված է Սիմէւոն) հայրապետ, աշակերտ Կարապետ վարդապետի, որ էր վերջին առաջնորդ Աստուածաշընչի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 165. Սիմէոն (գրված է Սիմէւոն), այլ աշակերտ նույն Կարապետ վարդապետի, 1449 թ.—անդ։

— 166. Սիմէոն որդի Բարխիաշի, ազնվական հայ, որ Օսմանցոց հրամերով գաղթեց Պոլիս 1453 թ.—Նշխ. մատ. 62, Տաշեան՝ Ցուց. 895։

— 167. Սիմէոն, հայր Կարապետ վանահոր, որ Պառուագրակի վանքում օրինակեց մի Աւետարան, 1454 թ.—Rapport Belgique 97։

— 168. Սիմէոն կրօնավոր, միաբան Ս. Թէոդորոս կամ Դերձկի վանքի. հիշված է նախ 1447 թ. գրիչ. օրինակել է Շնորհալու Ընդհանրականը և զանազան գրութիւններ՝ նույն վանքում 1457 թ.—Ձեռ. Կարին. 34, Նոտարք 157, 184։

— 169. Սիմէոն, որ մի խաչքար է կանգնեցրել Թէոդոսիայի Ս. Թորոս եկեղեցում, իր, Վարդանի և Կուլաֆչայի հիշատակին, 1458 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 352։

— 170. Սիմէոն, երևի նույն անձն է, որի հիշատակին իր եղբայրը՝ Յովհաննէս մի խաչքար է կանգնեցրել նույն եկեղեցում 1459 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 352։

— 171. Սիմէոն երեց, հայր Նիկողայոս եպիսկոպոս Ախքիրմանցու, որ օրինակեց ճաշոցը՝ 1460 թ.—REA 10, էջ 62 և 63։

— 172. Սիմէոն քահանա, կինն է Մելիք, որոնց անունով մի խաչքար է կանգնեցրած Ն. Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցում, 1461 թ.—Նոտարք 198։

— 173. Սիմէոն եպիսկոպոս Ս. Նշան վանքի. իբրև վկա ստորագրում է մի կտակագրի, 1461 թ.—Manus. brit. mus. 31 ա։

— 174. Սիմէոն քահանա, գրիչ. Ապրակունեաց վանքում օրինակեց «Պատմութիւն վարուց Յովհաննու աւետարանչի», 1461 թ.—Սմբատեանց, Երնջակ 118, 128։

— 175. Սիմէոն (գրված է Սիմաւոն) կրոնավոր, միաբան

*Խորձեանի Խլպաշի վանքում 1464 թ.—Նոտարք 218, Թորոս աղբ. Բ. 341։*

— 176. Սիմէոն, *փորագրիչ վարպետ Խրիմում. փորագրել է մի խաչքար 1431 թ. (տես վերը № 153) և մի խաչքար էլ 1464 թ. (տես հաջորդը)։*

— 177. Սիմէոն *քահանա, կինն է Էմին Մելիք. իրենց գերդաստանի հիշատակին կանգնեցրել են մի խաչքար Խրիմում՝ փորագրիչ վարպետ Սիմէոնի ձեռքով, 1464 թ։ Այժմ ագուցված է Նոր-Նախիջևանի Ս. Լուսաւորիչ եկեղեցում։—Շահազիզ, Ազգագր. հանդ. է, էջ 50։*

— 178. Սիմէոն, *որդի Պօղոսի՝ աներոջ Մահտեսի Յովհաննէսի, որ էջմիածնում փրկանքով ազատեց մի Աւետարան, 1464 թ.—Ձեռ. Վասպ. 384։*

— 179. Սիմէոն, *որդի Թաթարի և եղբօրորդի Յովհաննէս քահանայի, որ Ռստմնում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 258։*

— 180. Սիմէոն, *որդի Շարմէլէքի, մերձավոր Յովհաննէս քահանայի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 258։*

— 181. Սիմէոն *եպիսկոպոս, առաջնորդ Խարբերդի, 1470 թ.*—Bodleian *9։*

— 182. Սիմէոն *Տէր Խարբերդցի. միաբան Երզնկայի Կայփոսի վանքի. ծաղկարար (նաղաշ). նկարազարդեց մի Աւետարան, որ Մեսրոպ գրիչը գրել էր նույն վանքում, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 328։*

— 183. Սիմէոն, *որդի Մահտեսի Աստուածատուրի և եղբայր Յարաճի, որ Հալէպում, Մելքիսեթ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96։*

— 184. Սիմէոն *արքեպիսկոպոս Գողթնեաց 1481 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 299։*

— 185. Սիմէոն *(գրված է Սիւամոն!), որդի Բախշայիշի՝ քեռու տանուտեր խոջա Խդրշահի, որ Վանում, Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։*

— 186. Սիմէոն *գրիչ. օրինակեց Աւետարանը Երուսաղէմում, 1484 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 52 ա։*

— 187. Սիմէոն *տէր, փակակալ Խորոտկայ վանքի, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։*

— 188. Սիմէոն *(գրված է Սիմաւոն) երեց, պապ Սահակ*

երեցի, որ Կեսարիոյ Մոնտխոն գյուղում օգնեց Յովանէս արեղային գրելու Յայսմաւուրքը՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 189. Սիմէոն (գրված Սիմաւոն) որդի Վահան երեցի, եղբայր Աւետիք դպրի, որ օրինակեց Սաղմոսը Գալախորի վանքում 1495 թ.—Ձեռ. Սանաս. 24 ա։

— 190. Սիմէոն, որդի Աւետիք քահանայի, որ գնեց մի Աւետարան 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68։

— 191. Սիմէոն Ա Ուլնեցի կամ Զէյթունցի. կաթողիկոս Սսոյ «1539—1545 թ». հաջորդեց Յովհաննէս Բիլիսցուն.—Ձեռ. Հալէպի, Բ. 32 ա, Ալլահվերդեան՝ Ուլնիա կամ Զէյթուն 14> Սիսուան 537, Գուլամիրեան՝ Կիլիկիա 331։

— 192. Սիմէոն, թերևս Տիգրանակերտցի. հեղինակն է Վկայաբանության Մարգարէ սարկավագի և Շահրման Թուրկուրանցու, որոնք նահատակվեցին 1580 թ.—Նոր վկ. 419—420։

— 193. Սիմէոն վարդապետ Ապարանցի, մատենագիր ԺԶ դարու. աշակերտել է Յովհաննէս վրդ. Ոստանցուն. հետո եղել է ուսուցիչ Աղթամարում և հասցրել հմուտ աշակերտներ, ինչպես են Կարապետ Վարագցի, Յովհաննէս Խիզանցի և Յովհաննէս Ծաղկող վարդապետ։ Նույն աշակերտությունից են դարձյալ Յովհաննէս վրդ. Կրճօն, Յովհաննէս վրդ. Գրագիր, Սահակ «վարդապետաց վարդապետ» (Ազգաբ. 2261)։ Գրել է «Վիպասանութիւն ակս Պահլաւունեաց զարմի և Մամիկոնեանց սեռի» (տպ. էջմիածին 1870)։ Իր մի հիշատակարանը տես Գևորգեան № 102 ձեռագրում։ Այս «Վիպասանութիւնը», ինչպես հեղինակն է ասում, գրված է Ներսէս Շնորհալու Վիպասանութեան հետևողությամբ.

Եւ Ներսէսի թեպէտ վիպեալ,
Բայց իմս նորա ներհակ չեղեալ,
Ո՛չ ի հեռին տարաձայնեալ,
Եւ ոչ զորրոյ բանն երկրորդեալ.
Այլ զմիջինն համբուրեալ,
Որ յատտանօրն չէ գրեալ։
(Սիմ. ապար. 22)

Եւ իրոք այս «Վիպասանութիւնը», որ 8ոտեան չափով ոտանավոր է, Շնորհալու համանուն աշխատության նման սկսվում է -եալ հանգով, հետո դառնում է -ից են։ Վերջում գրված հի-

շառակարանի համաձայն պարունակում է 1300 երկտող և գըր-
ված է Մեծոփի վանքում, ՌՀԹ=1590 թվին.

Ի թիւ հազար եռ հարիւրոց,
Կատարեցաւ բանս պատմագրոց,
Ի թուականիս ազգիս Հայոց,
Հազար 'ւ երսուն 'ւ ինն ընդ սոցունց։
(Սիմ. պար. 129)։

Այս «Վիպասանութեան» նյութն է Հայոց պատմությունը՝ սկսած աշխարհի ստեղծագործությունից մինչև Ներսէս Շինող կաթողիկոսի վախճանը։ Իր բուն աղբյուրն է Սեբէոսի պատմությունը, որին հետևում է քայլ առ քայլ, պահելով նույն իսկ նրա անսովոր բառերը և ձեռագրական վրիպակները։ Բայց անտես չի անում նաև Խորենացին, որին հիշում է մի քանի անգամ։ Օգտվում է դարձյալ «Փաստոսից», որին հիշում է էջ 33 և Ղազարից, որից առնում է Վահան Մամիկոնեանի պատմությունը։ Լեզուն շատ հասարակ, բանաստեղծությունը անհամ, պատմական ոչ մի նոր տեղեկություն էլ չունենալով, կարելի է ասել թե գրվածքը բոլորովին անարժեք մի գործ է։ Գրված է իր երկու աշակերտների՝ Կիրակոս Այրարատցու և Անանիա Նախավկայեցու խնդրանոք. (տես Սիմ. պար. յոջ. էջ դ).

Յորմէ գթայ Տէրն տէրանց,
Սիմէօնի որ զայս ոգեաց,
Նաև երկուցն խնդրողաց
Ուսումնասէր հանճարեղաց,
Կիրակոսի պետին պատուած,
Անանիայ շնորհօք օծած,
ՅԱյրարատեան սանէն եկած,
Յուսմունս տառից կան դեգերած։
(Սիմ. պար. 154).

Աշակերտաց Տեառն բանի,
Շնորհազարդեալ Կիրակոսի,
Անանիայ սրբասիրի,
Որք հարկ եդին ինձ անմտի,
Տաղաչափել զգիրս Ղազարի,
Ոգեալ ոտիւք Հոմերապէս,
Զթագաւորաց ճառն պէսպէս։
(Սիմ. պար. 156).

«Վիպասանութեան» վերջում գտնվում է «Ցիշատակարան շարադրութեանս և Պատմութիւն Ապարանից սուրբ Նշանին, ընդ սոսա Ողբ ցաւագին հեծեծանաց ի վերայ Մեծոփոյ ս. ուխտին» (էջ 129—157)։ Նույն հեղինակից են դարձյալ «Ի վերայ առման Թաւրիզու, որ առաւ ի յՕսմանէ» (1585 թ. տպված Վիպասանութեան իբր հավելված, էջ 158—162) և «Ողբանք ի վերայ թախթին Տրդատայ թագաւորին» (գրված 1593 թ. որանից մի նմույշ տես Այրարատ 367—369)։—Առաք. պատմ. 340, Հայապ. 127, Զարբ. Նոր մատեն. 250, Սիմ. ապար. 158, 161,—Սիմեոնն՝ Սիմ. ապար. 155—157 (ծայրանուն տուն ընդմէջ).—սեռ. Սիմեօնի՝ Սիմ. ապար. 154, Սիմօնի՝ անդ 21, Սիմեովնի՝ անդ 133 և 157։

— 194. Սիմէոն կաթուղիկոս Աղուանից. Յիշում է իր դամբանը 1611 թվից.—Արցախ 171։

— 195. Սիմէոն կաթուղիկոս Աղվանից. կանգնեցրել է մի խաչքար Մեծարանց վանքում՝ 1614 թ. մեռել է և թաղվել նույն վանքում, 1616 թ.—Բանաս. 1901, 139, 140։

— 196. Սիմէոն Դ Բոլատակեցի, կաթուղիկոս Աղուանից. հաջորդեց Մելքիսեթին 1622 թ. նստավ Շահմանսուր գյուղում. իրեն էլ հաջորդեց Յովհաննէս Թ 1628 թ (№ 1337).—Ջամբռ 78, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 63։—Իսկ ըստ Ջեռ. Դաշեան, Ա, 89 ը կոչվում է Սիմէօն Շահմասուրեցի, հաջորդեց Մելքիսեթին՝ 1596 թ. իրեն էլ հաջորդեց Յովհաննէս 1633 թ։

— 197. Սիմէոն դպիր Լեհացի. Մարտիրոս անուն անձի որդին էր. 1608-ից մեկնեց Լվովից Պոլիս, ուր երկար սպասեց Երուսաղէմ ուխտի երթալու համար. 1610-ին Մկրտիչ վրդ. Խարբերդցու ընկերակցությամբ գնաց Զմիւռնիա և շրջագայելով ծովեզերյա քաղաքները՝ վերադարձավ Պոլիս։ 1611-ին Զաքարիա վրդ. Վանեցու հետ գնաց Վենետիկ և Հռոմ. այստեղ մնաց երկար ժամանակ։ Նորից սկսեց ճամբորդություն և Վենետիկ-Զմիւռնիա-Բրուսա-Խարբերդ գծով հասավ Մուշ։ Վերադառնալով Պոլիս, նավեց Աղեքսանդրիա և Կահիրէի ճանապարհով հասավ Երուսաղէմ։ Մի ժամանակ մնաց այստեղ. ապա Հալէպ—Կեսարիա—Անկիւրիա ճանապարհով դարձավ Պոլիս և այստեղից էլ Լվով՝ 1619 թ։ Իր ամբողջ այդ ճանապարհորդությունը և ճանապարհին իր տեսածներն ու լսածները գրի է առել Սիմէոնը։ Ընդարձակ նկարագրել է Պոլիս, Վենետիկ, Հռոմ, Մուշ, Կահիրէ, Երուսաղէմ, Հալէպ, Տիգրանակերտ և Լվով քաղաքները։ Իր Ու-

գեգրութեան կցել է նաև 1619—35 տարիների Տարեգրութիւնը Այս աշխատութիւնը բնագրի վրայից հրատարակեց Ակինեան, նախ Հանդէս Ամսօրեայ 1932—4 և ապա առանձին հատորով՝ Վիեննա 1936 (տես Ձեռ. Լվով.=ՀԱ 1937, 147)։

— 198. Սիմէոն Բ Սեբաստացի կամ Արևելցի. կաթուղիկոս Սսոյ «1633—1648 Թ» (բայց 1630 թվին գրված մի ձեռ. արդեն հիշում է նրան. տես Ձեռ. Վենետ. Ա. 776.—1633 թվի օծման մասին հիշատակում է Ձեռ. Հալէպի, Ա. 387, 393. իսկ Ձեռ. Հալէպի Ա. 107ա հիշում է նրան 1640 թվին)։ Եպիսկոպոսական ձեռնադրութեանց մեջ զեղծումներ կատարելով՝ Փիլիպպոս կաթուղիկոսը գրեց նրան և զղջատութեան հրավիրեց։ Սիմէոնը հանդգնորեն պատասխանեց նրան՝ համարելով իրեն «Ամենայն Հայոց հայրապետ»։—Ձեռ. Հալէպի Ա. 77 բ և Բ. 31 բ. Ազգ. մատ. ՀԸ 38։

— 199. Սիմէոն եպիսկոպոս Գառնեցի. գրել է 1651 թվին «Ցառաջաբան և լուծմունք Պրոկղի գրոց Շաղկապք աստուածաբանականք», որ վրացերենից թարգմանել էր Սիմէոն (№ 45) քահանան 1248 թվին։ Այս գրքի մասին խոսում է Սիմէոն Երևանցին (ապա կաթուղիկոս) իր Մեկնութիւն Պրոկղի աշխատութեան առաջաբանում (Ձեռ. Թաւր. 124) և այդ գործը վերագրում է Սիմէոն վրդ. Ջուղայեցուն, «որ էր եպիսկոպոս Գառնւոյ!» և հեղինակ է նաև Քերականութեան և Տրամաբանութեան։ Այս բոլորը ցույց են տալիս, որ այս Սիմէոնը հաջորդն է № 200։—Տաշեան, Մատեն. մանր ուս. Ա. 28—38, Ձեռ. Թաւր. 124, Ձեռ. Սանասա. № 37, Ձեռ. Դաշեան, Բ. 49ա. Տաշեան՝ Ցուցէջ 1150ա։

— 200. Սիմէոն վարդապետ Ջուղայեցի. աշակերտ Մելիքսեթ Երևանցու. ընկերացել էր Խաչատուր Կեսարացուն՝ իբրև նվիրակ Լեհաստանի։ Այնտեղ ծանոթացավ եվրոպական ուսման, որ ինքնօգնութեամբ շատ առաջ տարավ։ Վերադարձին 3 տարի Էջմիածնում սովորելուց հետո, գնաց Նոր-Ջուղա՝ Խաչատուր վարդապետի մոտ և ավելի առաջ գնաց ուսման մեջ։ Նա դարձավ նշանավոր քերականագետ. գրեց Քերականութիւն (տպ. Պոլիս 1725), Համառօտ Տրամաբանութեան (տպ. Պոլիս 1728), Վերլուծութիւն ստորոգութեանց Արիստոտէլի են։ Այս գրքերը գրելուց հետո հրավիրվեց Փիլիպպոս կաթուղիկոսի կողմից ուսուցիչ Էջմիածնի դպրոցում։ 1651 թվին եղավ արքեպիսկոպոս Նոր-Ջուղայի։ Կյանքի վերջերը քաղողութեան դուրս

ձկավ գնալ Օսմանեան երկիրները և մեռավ ՌՃԶ=«1657 թ» Եւդոկիայում։—Սամ. անեց. շար. 180. Զքր. սարկ. Դ. 35. Առաք. պատմ. 309—14, 500. Ջուղ. 117—8. Զարբ. Նոր մատ. 369. Կամենից 141. Ձեռ. Դաղեան Ա. 92 բ, Բ. 34. Տաշեան, Ցուց. 1150. Ազգապ. 2490։

— 201. Սիմէոն, ճրո կաթուղիկոս Աղուանից 1671 թ.—Բարխուտ. Աղվանից երկ. 220։

— 202. Սիմէոն տաղասաց Կաֆացի, Խրմպէյ անուն անձի որդին էր. ծնվել է Կաֆայում (Թէոդոսիա). երևի թե կոշկակար էր. ունի տաղեր (թվով 15), 1683—6 թվերից, որոնց թվումը հեղինակի համառոտ կենսագրությամբ տալիս է Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 193—8։ Իր տաղերից տես Նշչ. էջ 55, Կոստանեանց՝ Նոր ժող. Գ. էջ Ե և 54։

— 203. Սիմէոն եպիսկոպոս, պատրիարք Երուսաղէմի. խլեց աթոռը Յովհաննէս Գոլեցի Նախուրթճիի ձեռքից «1687 թ». բայց 4 տարի հետո Յովհաննէսը կարողացավ վարել նրան և տիրել գահին «1691 թ»։ Ուրիշներ Սիմէոնի տեղ դնում են Մինաս (№ 40) Ամթեցուն. այս մասին տես Ազգապ. 2639 և վերը՝ հտ. Դ. էջ 344—5։

— 204. Սիմէոն երեց Փեթրովիչ, Լեհաց Յան Սոբեսկի թագավորի կողմից պատվիրակ ուղարկվեց Պարսից թագավորի մոտ, բանակցելու համար անկախ Հայկական թագավորություն կազմելու խնդրի առթիվ, նպատակ ունենալով հարվածելու Օսմանեան կայսրությունը թիկունքից և դուրս վարելու տաճիկներին Եւրոպայից, 1691 թ.—Ալպօյաճեան, Առաքելութիւն ի Հայէշ. 1946, էջ 64։

— 205. Սիմէոն Դ. Խասրաշէնցի, որդի Մեծշինացի Սարգիս քահանայի (Արցախ 232). կաթուղիկոս Աղուանից. Պետրոս Գ կաթուղիկոսի մահից հետո խլում է աթոռը և Գանձասարի հարստությունը հավաքելով՝ փոխադրում է իրենց գյուղը։ Նա շինում է Մռաւ սարում Երիցմանկանց վանքը և նստում է այնտեղ իբրև հակաթոռ կաթուղիկոս Գանձասարի, հենվելով գյուղի Թուրք իշխողի վրա (1675 թ)։ Էջմիածնի Յակոբ կաթուղիկոսը բանադրում է նրան և փոխարեն կաթուղիկոս է օծում Երեմիա (№ 31) Հասան-Ջալալեանց անուն աբեղային, որին ուղարկում է Գանձասար (1676 թ)։ Սկսում է կռիվը երկու կաթուղիկոսների միջև. Յակոբ կաթուղիկոսի միջամտությամբ Սիմէոնը առերես հաշտվում է Երեմիայի հետ 1677 թ. (Ձեռ.

*Դաղեան, Բ. 18 ա). բայց նորից շարունակում է իր անկարգությունները։ Յակոբ կաթուղիկոսի մահից (1680 թ) հետո, նրա հաջորդ Եղիազար կաթուղիկոսը (1682—91 թ) երկուսին էլ կանչում է էջմիածին և երկուսին էլ աթոռակից է նշանակում։ Սիմէոնը չսանձեց իրեն. նա չէր նստում Գանձասարում և ժողովուրդից հավաքած գումարները իր տունն էր ուղարկում, եկեղեցական զգեստները և զարդերը յուրացնում։ Սրա վրա ժողովուրդը ժողով է գումարում, և Սիմէոնին վտարում է 1691 թ. (Ջեռ. Դաղեան, Բ. 18 բ)։ Իր անունը հիշվում է դեռ 1698 թ. (Սմբատեանց՝ Գեղարքունի 407)։ Իր հետ բանակցության է մտել Իսրայէլ Օրին 1699 թ. (Աթան. յոջ. ժը)։ Երեմիան մեռնում է 1700 թ. հաջորդ տարին էլ Սիմէոնը (Ջամբռ. 80—81, Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 69, Լէօ՝ Հայկ. տպ. Բ, 297)։ Սիմէոնի հաջորդներն եղան Ներսէս, Իսրայէլ և Սիմոն Փոքր, որի մահով վերջացավ Երիցմանկանց այս հակաթոռ կաթուղիկոսությունը (Րաֆֆի, Խամսայի մել. 114)։*

— 206. **Սիմէոն** *Երևանցի, կաթուղիկոս Հայոց «1763—1780 թ». աշակերտ էր էջմիածնի դպրոցի, ապա ինքն էլ ուսուցիչ նույն դպրոցում. հասցրել է բազմաթիվ աշակերտներ։ Նախապես նվիրակ էր և շրջել էր Տաճկաստանի, Պարսկաստանի և հեռու Հնդկաստանի Հայոց թեմերը։ Վարդապետ ժամանակ գրել էր Լուծմունք Պորփիւրի, Արիստոտէլի, Դաւթի, Պրոկղի (այս գրքի հորինման մանրամասն հիշատակարանը 1750 թվից՝ տես Ջեռ. Թաւր. 124—5), Տարեգիրք և Պարզաբանութիւն հայ Տօմարի։ Կաթուղիկոսության ժամանակ աշխատեց էջմիածինը դարձնել լուսավորության կենտրոն և կապել ամեն տեղ ցրված հայերի հետ։ Հիմնեց Ռուսաստանի թեմը, դադարեցրեց կաթոլիկական պրոպագանդան Ախալցխա, Ալաշկերտ և Բայազէտ։ Հաստատեց էջմիածնում տպարան «1771 թ», թղթի գործարան «1776 թ»։ Կարգի բերեց հայ եկեղեցու տոները, որի համար հորինեց Տօնացոյցը (տպ. էջմիածին «1774 թ»)։ Իր վերջին գործերն են Պարտավճարը և Ջամբռը։ Ունեցել է նաև քաղաքական գործունեություն, ծառայելով իբրև միջնորդ հաշտության Երևանի խանի և Վրաց Հերակլ թագավորի միջև և կասեցնելով այս վերջինի արշավանքը Երևանի վրա։ Սիմէոնը վրացական տպագրական գործին էլ նպաստեց՝ նվիրելով Վրաց թագավորին մի տպագրական մամուլ «1778 թ»։—Մ. մաշտ-*

337 ա. Ջամբռ. 33—44. Ազգատ. 3019—3136. Լէօ՝ Հայկ. տպ. Բ. 574։

— 207. Սիմէոն *վարդապետ կամ հայրապետ, ունի Քարոզգիրք, որ պարունակում է 25 քարոզ։ Հեղինակի ով լինելը և ժամանակը հայտնի չէ։ Ձեռագիրը գտնվում է Վիեննայի Մխիթարեանց մատ (№ 464) ըստ Տաշեան՝ Ցուց. 938—9։ Ցանկում, էջ 1150 ը կոչված է «պատրիարք», բայց ձեռագրում այսպիսի տիտղոս չէ տրված և Պոլսի պատրիարքների շարքում ոչ մի Սիմէոն չկա. իսկ Երուսաղէմի պատրիարքների շարքում կա մի Սիմէոն 1090—1109 թ. և Սիմէոն հակաթոռ 1688—1691 թ։ Քարոզների մեջ կա մեկը, որ գրված է «ի հանդիսին որ եղև ի Կ. Պօլիս վասն որդեծնութեան սուլթան Մուսթաֆայ թագաւորին ի ՌՄԸ թուին և մարտի Ե» (=1759 թ)։ Քարոզներից երկուսն էլ էջմիածնի մասին են։ Ուստի կարծում եմ որ հեղինակն է Սիմէոն Երևանցին, որ դեռ վարդապետ էր և իբրև նվիրակ եղել է Պոլսում այդ թվին, ապա եղավ կաթողիկոս։*

— 208. Սիմէոն *կաթողիկոս Աղվանից. Իսրայէլ հակաթոռ կաթողիկոսի եղբայրն էր, որին նույն Իսրայէլը օծեց և նստեցրեց Երից-Մանկանց վանքում (1794 թ), ինքը մնալով Ամարասում.—Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 122։ Հիշվում է դեռ 1809 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 42ը։*

— 209. Սիմէոն *տաղասաց ԺԸ դարու. իր տաղերից է «Սէրդ սիրով խոնարհեցար» (տաղ խաչելության).—Տաշեան, Ցուց. էջ 1150ը։*

— 210. Սիմէոն *Կամրկապցի. ունի Բժշկարան (թվականն անհայտ).—Նորայր, Հայկ. բառաք. էջ 107։*

— 211. Սիմէոն *տաղասաց (թվականն անհայտ)։ Գրել է Կիրակոսի և Յուղիտայի վրա մի տաղ. «Սուրբ Յուղիտա, դուստրը մեծաց» Ձեռ. Հալէպի, Ա. 142 ը, որ անդ՝ էջ 106ա ուրիշ տաղասացի է վերագրվում, այն է Կիրակոս աբեղային։ Առաջին ձեռագրի թվականն է 1497 թ, երկրորդինը՝ 1662 թ։*

— 212. Սիմէոն *Փոքր, Երիցմանկանց հակաթոռ կաթողիկոս Սիմէոնի եղբորորդին էր. իբր հակաթոռ կաթողիկոս հաջորդեց Իսրայէլին։ Նեղվելով Իբրահիմ խանից փախավ Թիֆլիս, ուր Յովհաննէս վարդապետը նրան թունավոր քթախոտ քաշել տալով մահացրեց 1800 թ։ Սա եղավ Երիցմանկանց վերջին հակաթոռ կաթողիկոսը։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 114, 150—1, 233, 238։*

***ՍԻՄԻԿ**, իգ. <պրս. سیم sīm «արծաթ» բառից՝ -իկ փաղաքշականով։

— 1. Սիմիկ, կին Գրիգոր քահանայի, որ մի Աւետարան նվիրեց Դաղխտոյ Ս. Գէորգ եկեղեցուն, 1348 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրա. 1911, 564)։

— 2. Սիմիկ, կին ոմն, որին սպանեցին Թուրք ասպատակները 1463 թ.—Այրարատ 327բ։

— 3. Սիմոյ, դուստր Տէր Աւագ քահանայի, որ Երուսաղէմում, Վրթանէս Արևելցուն գրել տվեց մի Գանձարան, 1497 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 150։

**ՍԻՄՈՑ**, իգ. ծագումն ինձ անհայտ. կապ ունի՞ նախորդների հետ. մի անգամ գտնում եմ հիշված 1666 թ. (Ջեռ. Հալէպի, Բ. 8)։

†**ՍԻՆԱ**, իգ. ըստ իս՝ ծագում է Սիրամարգ անվան ժղ. Սինամահուէ ձևի կրճատ Սինամ կամ Սինա ձևից։ Հիշատակված է մի անգամ ԺԳ դարում և մի անգամ էլ ԺԸ դարում՝ անձնական հոգով՝ Սինաս ձևով (Ջեռ. Դաղևան, Բ. 15ա)։

— Սինա, կին Վարդան Տփխիսեցու. միասին նվերներ են արել Հաղբատին, 1267 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. էջ 29։

**ՍԻՆԱԲԷԳ**, ար. ծագումն ինձ անհայտ. թերևս պետք է հասկանալ Սինաբեկ, որ տես Սինան։ Գործածական է այժմ Ղարաբաղում։

***ՍԻՆԱՋ**, իգ. <Սելվինազ բառի կրճատումն է. գործածական է այժմ Ղարաբաղում։

***ՍԻՆԱՄ**, ար. հիշված է 1534 թ. (Ջեռ. Վասպ. 649). կրճատ ձևն է Սենեքերիմ անվան, ինչպես որ այժմ էլ ունինք Պոլսում Սինեմ։

***ՍԻՆԱՆ**, ար. <արաբ. سنان Sinān անունից, որի բուն նշանակությունն է «նիզակ»։ Այս անունով զանազան անձեր տես Կամուս, Գ. 652։ Նշանավոր է Ջղալէզադէ Սինան փաշա, Օսմանցոց զորավարը, որ Հայաստանը գրավելով արշավեց Շահաբասի վրա (1604 թ)։ Սրանից է Սինանեան ազգանունը։

— 1. Սինան ոմն, որ իր ծախսով արծաթապատել է տվել այն գեղեցիկ Աւետարանը, որ Օշին թագավորը նվիրել էր Սեբաստիայի Ստեփան եպիսկոպոսին, 1320 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. էջ 112։

— 2. Սինան, որդի պարոն Ծերի և եղբայր պարոն Ասլանի,

որ տապացավ ժողովածու ճառից Եպիփանի՝ Սեբաստիա 1350 թ. —Տաշեան, Ցուց. 107։

— 3. Սինան, որդի Խութլուպէյի. շինեց Կամենիցի Ս. Նիկողայոս եկեղեցին 1398 թ.—Կամենից 134, 160, Труды Вост. комм. ИМАО II, 3, էջ 43։

— 4. Սինան ոմն, որի գամբանի խաչքարը ագուցված է Ամասիայ Ս. Աստուածածին եկեղեցու պատին, 1451 թ։—Հաղորդեց Ամասիայից՝ Կարապետ Գազազեան, 1912 ապր. 12։

— 5. Սինան, նշանավոր ճարտարապետ Օսմանեան պետութեան. Կեսարացի հայ էր, ապա թուրքացավ. շինել է 300-ից ավելի շենք, որոնց մեջ երևելի են Պոլսի Սիւլէյմանիէ և Ադրիանուպոլսի (Էտիրնէ) Սելիմիէ մզկիթները։ Առաջինը Պոլսի ամենից հոյակապ շենքն է Այա-Սոֆիայից հետո. շինությունը տևել է 15 տարի և վրան ծախսվել է 700,000 ոսկի (=75,600,000 ղրուշ, որ անում է 6 միլիոն, 48000 ոսկի ռուբլի). կոչվում է Պոլսի «փառքը և ուրախությունը»։ Իր անվան է նվիրված Պոլսում «Միյմար Սինան» փողոցը։ Ապրել է 1490—1588 թ։—Անահիտ 1931, սեպտ. 165—167, Ալպօյաճեան՝ Պատմ. Հայ Կես. Բ. 1532, ուր կա նաև Սինանի նկարը։

— Ավելի ուշ հիշատակված են Սինան՝ 1646 թ. (Սիսական 451բ), 1655 թ. (Թորոս աղբ. Բ. 372) և 1695 թ. (Ջեռ. Վասպ. էջ 982)։

*ՍԻՆԴՈՒԽԱՆ, իգ. <Հնդկաստանի Սինդիի երկրի անունից +պրս. خان xān. հիշված է մի անգամ 1607 թ. (Ջեռ. Դաշեան, Բ. 32ա)։

*ՍԻՈՆ, ար. <եբր. ציון Şiyon անվան հուն. Σιών տառադարձությունից։ Այս անունով էր կոչվում Երուսաղեմի մոտ գտնված լեռը, լայնաբար նաև Երուսաղեմը։ Հրէից մեջ սրբազան բառ է։ Հներից Տաթև. ոսկիփ. 200 մեկնում է «Սիօն՝ որ անմատոյց լսի կամ բարձր դիտանոց»։ Գրված է Սիովն, Սիոն և Սիօն ձևերով։ Մեր մեջ իբրև անձնանուն գործածված է Զ—ԺԸ դարերում. այժմ խափանված է։

— 1. Սիոն եպիսկոպոս Գողթան, անդամ Դուինի եկեղեցական ժողովի «607 թ»։—Ուխտ. Բ. լ. Գիրք Թղ. լբ.—սեռ. Սիոնի՝ Ուխտ. Բ. լէ.— Սիովնի՝ Գիրք Թղ. խ.—բց. ի Սիոնէ՝ Ուխտ. Բ. լբ.—ի Սիովնէ՝ Գիրք Թղ. լթ։

— 2. Սիոն Ա Բաւոնեցի. կաթուղիկոս Հայոց «767—775 թ». Բաւոնեաց գյուղից էր. նախապես եպիսկոպոս Աղձնեաց. հռչակ-

ված էր իբրև սուրբ և հրաշագործ մարդ։ Հաջորդեց Տրդատ Բ կաթողիկոսին. գումարեց եկեղեցական ժողով Պարտավում և նոր կանոններ մշակեց «768 թ»։ Դժբախտությամբ անցկացրեց իր ժամանակը Արաբների կրոնական հալածանքների պատճառով։—Եղն.եր. 268. Կանոն. 165. Բհնպ. 272. Ցհ. կթղ. իգ. Ցհ. կթղ. հյր. 276. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 88. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21. Մխ. առ. իթ (=իը). Կիր. 39. Վրդ. խ. Օրբ. հա. Տաթև. հարց. 545. Մին. համգ. 28. -սեռ. Սիօնի՝ Կանոն. 164. Ցհ. կթղ. իգ.—Չամչ. Բ. 410—413. Աղգապ. 879—892. Չարբ. Թրգմ. 225։

— 3. Սիոն եպիսկոպոս Սեբաստիոյ. քաղաքի հույն մետրապոլիտի հանած հալածանքից ստիպվեց ուրանալ հավատքը և ընդունել քաղկեդոնական դավանանքը 986 թ.—Ասող. Գ. ի։

— 4. Սիոն (գրված Սիօն) արքեպիսկոպոս Սեբաստիոյ. սրան հաջորդել է Եղիսէ աշակերտ Մաղխասրոսի. մեռել է Դավիթ Թագավորի ժամանակ, մոտ 1027 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. էջ 29։

— 5. Սիոն աշակերտ Սարգսի. գրիչ. Մուշեղկայ գյուղի Նորաշէնի անապատում օրինակեց Մանդակունու ճառերը, 1210 թ.—Դուրեան, Ուսումն. Երուսաղէմ 1935, էջ 230։

— 6. Սիոն քահանա, իր Աւետարանը շնորհեց Խաչատուր գրչին՝ արտագրելու համար 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 378։

— 7. Սիոն, թուղթ տվեց Ստեփանոս գրչին՝ օրինակելու համար Աւետարանը Կիլիկիոյ Վահկայ դղեկում, 1269 թ.—Ձեռ. Վասպ. 96։

— 8. Սիոն արքեպիսկոպոս, վանահայր Արքայակաղնի վանքի և առաջնորդ Մամեստիոյ (Մսիս). սրա ձեռքով Թորոս քահանան նույն վանքին նվիրեց չքնաղագեղ մի Աւետարան, 1266 թ.—մի ուրիշ հին Աւետարան էլ ստացավ 1269 թ.—Թորոս աղբ. Ա. 189. Սիսուան 250 ա. Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 86, Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333), Տաթև 1927, 183. Ձեռ. Կես. ածած. 46 (այս վերջինը գրված Սիովն).—հիշված է նաև 1270 թ.՝ Հացունի, Կարևոր խնդ. 264 (Սիովն ձևով)։

— 9. Սիոն կուսակրոն քահանա, միաբան Երզնկայի Ս. Աստուածածին վանքի. Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1272 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 514։

— 10. Սիոն քահանա, միաբան Ականց կամ Ակներ անապատի (Կիլիկիա). Կոստանդ քահանայի հետ միասին թուղթ էին

կոկում Գրիգոր գրչի համար, երբ սա արտագրում էր Միխայէլ Ասորու ժամանակագրությունը 1273 թ.—Միխ. աս. Բ տպ. էջ 45։ Սիսուան 154 ա։

— 11. Սիոն, հոգեւորդի Մկրտիչ քահանայի, որ Կարբիում օրինակեց Խոսրով Անձևացու Մեկնութիւն ժամանակագրութեան, Պատարագամատոյց, Մեսրոպ երէց, Ջենոբ Գլակ և Յովհան Մամիկոնեան, 1278 թ.—Պատմ. Տարօնոյ, Երևան 1941, էջ XIII։

— 12. Սիոն քահանա, եղբայր նշանավոր գրիչ Լևոն երեցի, մեռավ «մանկագոյն խակակոտոր» 1306 թվից քիչ առաջ.—Սիսուան 517բ։

— 13. Սիոն, որդի Յոհան քահանայի և եղբայր Ստեփաննոս քահանայի, որ իր որդի Մխիթար սարկավագին սկսեց գրել տալ Աւետարանը։ Մխիթարի մահից հետո շարունակեց Գրիգոր երէցը և վերջացրեց Սարգիս քահանան՝ 1326 թ.—Rapport Belgique 85։

— 14. Սիոն քահանա, իր երկու եղբայրների՝ Յովհաննէս կրոնավորի և Եղեկիէլի հետ միասին գրել տվին մի Տօնական՝ Ստեփաննոս գրչին, Ոշաունեաց Ծշող գյուղում, 1404 թ.—Նոտարք 21։

— 15. Սիոն քահանա, մերձավոր Յովհաննէս (№ 781) քահանա գրչի, որ Ջերմաձորի Ակոռոյ վանքում օրինակեց Աւետարանը 1417 թ.—Ձեռ. Վասպ. 303։

— 16. Սիոն եպիսկոպոս, ստացող. Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, Մոկաց Ս. Գէորգ վանքում, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 372։

— 17. Սիոն քահանա, որդի Նասրադինի, հորեղբայր տանուտեր Յովհաննէսի, որ Խլաթում օրինակել տվեց մի Աւետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19ա։

— 18. Սիոն եպիսկոպոս, միաբան Ոստանի Գոլկի վանքի, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41ա։

— 19. Սիոն միայնակեաց, որդի Բուրդեայշին, միաբան Կողուց վանքի, ուր Վարդան աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1461 թ.—Թորոս աղբ Բ. 265, Նոտարք 198։

— 20. Սիոն երէց, քահանա Կեսարիոյ Մանտասոն գյուղի՝ 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1850։

— 21. Սիոն կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Ստեփաննոս Է-ի և նախորդ Գրիգոր Է-ի (ԺԵ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։

*ՍԻՈՍ, ար. < ըստ իս Վլասիոս անունից է կրճատված։ Առանձին ավանդված չէ. բայց սրանից է Սիոսեան ազգանունը՝ 1860 թ. (տես Կարապետեան, Յիշատ. Սամաթ. էջ 127)։

*ՍԻԲԻԼ, իգ. <ֆրանս. sibylle բառից, որ ծագում է լտ. sibylla, հուն. σίβυλλα «հին աշխարհի մարգարեուհի»։ Փոխ առնըված ֆրանսերենից կիլիկեան շրջանում (ուստի և կիլիկեան ձայնադարձությամբ b>պ) և գործածական եղավ միայն Կիլիկիայում, ԺԳ—ԺԴ դարերում։ Այժմ խափանված է. միայն Արևմտահայ կին գրողներից մեկը վերցրեց իր վրա այն անունը՝ իբրև ծածկանուն։ Արևելահայոց մեջ չմտավ և չէր էլ կարող մտնել, որովհետև խառնվում է գիքիլ «աղբ» բառի հետ։

— 1. Սիպիլ, քույրն է Կիպրոսի Թագավորի. ամուսնացավ հայոց Լևոն Բ Թագավորի հետ «1210 Թ». (ավելին տես Զաբէլ № 2). եկել էր Սելևկիա՝ 1230 թվին, տեսնելու համար իր աղջկան Զաբելին, որ Հեթում Ա Թագավորի կինն էր.—Հեթ. Ժմնկ. Ձեռ. Հալէպի, Ա. 353։

— 2. Սիպիլ, դուստր Հեթում Ա Թագավորի և քույր Լևոն Գ-ի. ամուսնացավ 1254 թվին և եղավ կին Պեմունդի Զ, որ Անտիոքի բրինձն էր և Տրապոլսի կոմսը։ Սրանից դուստրն է Լուցիա։— Սպիլ՝ Ձեռ. օշ. 98ա. ZAPh 1, 183. Պամ. կէլ. 211.— Sebille՝ Սիսուան 79, 363. Շահազիզ՝ Պատմ. պատկ. 119։

— 3. Սպիլ, դուստր Թէոդոս քահանայի և քույր Կոստանդին Հոխփախմեցի քահանայի, որ Կիլիկիայում գրեց մի Աւետարան, 1269 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 656։

— 4. Սիպիլ դուստր Լևոն Գ Թագավորի, կրտսեր քույր Զապլունի և Ֆիմիի. ծնվել է 1269 թ. (Ձեռ. օշ. 99բ).—Ցուշիկք Ա. 160, Հայապ. 544։—Անշուշտ վաղամեռիկ եղավ 6—7 տարեկան հասակում, որովհետև ունինք դարձյալ նույնանուն՝

— 5. Սիպիլ դուստր Լևոն Գ Թագավորի. ծնվեց 1276 թ. իբրև երկվորյակ Սմբատի, որ է Սմբատ Գ Թագավոր Կիլիկիոյ. —Ձեռ. օշ. 100ա։

— 6. Սիպիլ (տես. Սպլի). Լևոն Ե Թագավորի Թղթադիր Վասիլ իշխանի կինն է. որա կյանքը տես առանձին (1337 թ). —Շահազիզ, Պատմ. պատկ. 118։

— Ավելի ուշ հիշատակված է Ըսպիլ ձևով (գրված երկու անգամ) 1516 թ.—Ձեռ. Կես. ածած. 65բ)։

ՍԻԲՂԱՓՈՍ, ար. անշուշտ հունական անուն է. բայց իմ

ունեցած աղբյուրներում չեմ գտնում։ Մի անգամ հիշատակված է ԺԴ դարում՝

— Սիպղաfոս? սարկավագ, որդի Պապայի. մի խաչքար է կանգնեցրել Մուղնիում 1280 թ.—Այրարատ 184։

†ՍԻՍ, իգ. ծագում է Սիս քաղաքի անունից. սրանից են կազմված Սիսխաթուն, Սիսմամ, Սիսվարդ և Սիսթանգ անունները, որոնք հիշատակված են ԺԲ—ԺԴ դարերում։

— Սիս (միայն սեռ. Սսին ձևով). կինն է Արտաշրի, որ Օշական գյուղի տանուտերն էր և մի այգի նվիրեց Եղվարդի վանքին 1191 թ. և մի այգի էլ Բագնայրի վանքին 1211 թ.— Այրարատ 199, Շիրակ 120։

ՍԻՍԱԿ, ար. ծագումն անհայտ է։ (Սրա հետ գործ չունի Ս. Գրքից Սիսակ, իբր անուն Բաբելոնի. հմմտ. Երեմ. իե, 26 «Եւ Թագաւորն Սիսակ արբցէ յետ ամենեցուն», Երեմ. ծա. 41 «Զիա՞րդ ի պարտութիւն մատնեցաւ, Սիսակ»։ Երկու համարներն էլ պակասում են գործանալի կերպով հունարենում, բայց կան եբրայական բնագրում, ուր համապատասխան բառն է שֵׁשַׁךְ Šēšak. տես և Միսաf։ Կա նաև Եգիպտացոց թագավոր Šišak, որ կողոպտեց Սողոմոնի տաճարը՝ շուրջ 930 Ն. Ք. տես Wells, The Outline of History, հտ. 1, էջ 200։—Այս բառը համարում են իբրև բանաստեղծական անուն, որ ոմանք մեկնում են «տուն կամ արքունիք իշխանի» Բռ. Ս. Գրոց, Պոլիս 1881, էջ 502)։

— 1. Սիսակ որդի Գեղամ նահապետի Հայկազանց. (ըստ Սիսականի 17ա Ն. Ք. 2100 թ). իր քաջըր բարքի պատճառով կոչվել է աղու. իր անունից է ծագում Սիւնիf կամ Սիսական երկրանունը. իսկ իր մականունից՝ Աղուանf!—Խոր. Ա. ժբ. (Բ. ը). Ուխտ. Ա. ժզ. Յհ. կթղ. բ. Սամ. անեց. 43. Վրդ. է. Օրբ. գ. ZAPh 1, 190.—սեռ. Սիսակայ՝ Յհ. կթղ. բ. Ասող. Ա. ե. Մագ. թղ. հա. Մխ. այրիվ. 45. Սամ. անեց. 48. Վրդն. լս. 56. Օրբ. ա, բ, գ. Մին. համգ. 5.—Սիսակեանf՝ Խոր. Ա. ժգ. Բ. դ, ը. Սամ. անեց. 48.—տունն Սիսակայ՝ Լաստ. ժա, էջ 47.—Սիսական (գունդ են)՝ Խոր. Բ. ը. Կղկնտ. Ա. գ. Ասող. Ա. ե.—ի Սիսականայ՝ Մագ. թղ. հ։

— 2. Սիսակ Անձևացի. ուրացյալ նախարարներից էր. մյուսների հետ հակառակ կանգնեց Վահան Մամիկոնեանին և մինչև անգամ ուզում էին նրա արշավանքը խանգարել. Առեստ գյուղում պարտվելով փախավ «482 թ»։—Աղցաղ. 457։ (Սխալ է. ըստ Փարպ. տպ. 1904, էջ 127 կարդալ Սեւուկ)։

— 3. Սիսաք ձևով հիշված է մի անգամ էլ իր եղբոր Սարգիսի հետ, իբր որդիք Շահանդուխտի, 1316 թվի մի կիսատ արձանագրության մեջ, որից ոչինչ չի հասկացվում.—Ազգագր. հանդ. Գ. 141։

— Սիսակ անունը հնում թեև գործածական չէր, (եղածները կասկածելի են), բայց անցյալ դարում կենդանացավ իբրև ազգային անուն և այժմ էլ բավական տարածված է։

*ՍԻՍԱԿՈՒՀԻ*, իգ. <կազմված է նախորդ Սիսակ անունից՝ -ուհի մասնիկով։ Այս անունով հիշատակվում է միայն Վահան Գողթնացի նահատակի («737 թ») կինը, որ. տես Ալիշան, Յուշիկք Բ, 194։

† *ՍԻՍԹԱՆԳ*, իգ. <նախորդ Սիս բառից+հյ. թանգ։ Հիշատակված է մի անգամ ԺԳ դարում։

— Սիսթանգ, դուստր Մխիթարի և քույր Խութլուբէկի և Թիրքիշի, որոնք գրել տվին մի Ավետարան՝ Կարսի Գողխ գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 463։

*ՍԻՍԻԱՆՈՍ*, ար. <հուն. Σισίννιος անունից. այս անունով Justi 304 հիշում է 10 անձ, զանազան ազգերից (բայց բառի ծագումը չի տալիս)։ Այդ անձերից ավելի նշանավոր է Սիսիննիոս նույն պատրիարքը, որ հաջորդեց հայազգի Ատտիկոս պատրիարքին, նստավ 426—427 թ. և իրեն էլ հաջորդեց Նեստոր (428—431 թ)։ Քիչ է գործածված մեր մեջ. եղածներն են՝

— 1. Սիսիննիոս կամ Սիսիանոս, գլխավորներից մին էր 45 հայ նահատակների, որոնք նահատակվեցին Փոքր-Հայոց Նիկոպոլիս (այժմ Շապին-Գարահիսար) քաղաքում, իբր 319 թ.—Ավգերեան, Լիակ. վրք. սրբ. Դ 107—133, և հատկապես էջ 128։

— 2. Սիսիանոս վարդապետ Սեբաստացի. փոքր մատենագիր ԺԱ դարու. ունի Ներբողեան, որ խոսել է Ս. Քառասնից տոնի առթիվ՝ Սեբաստիոյ Ս. Քառասնից եկեղեցում. հրտր. Սոփերք, ԺԲ. անունը հիշվում է ճակատում՝ սեռ. Սիսիանոսի ձևով։—Ավգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 509, 511. Պարականոն շար. 68—71։—Կոչվում է նաև Սիսինոս, Սիսիոս, նաև Սոսիփաննոս (այս վերջինը հայտնապես սխալ) և համարվում է ըստ ոմանց ասորի (Զարբ. Հին դպր. 605)։

— 3. Սիսիանոս քահանա, իր որդի Յուսամ քահանայի հետ միասին գրել տվին մի Ավետարան՝ Մատթէոս վարդապետին, Վայոց ձորի Աղաւ անապատում, 1292 թ.—Խաղբակեանք 152։

— Նույնի կրճատ ձևն է Սիանոս, որ հիշված է 1742 թ. (Հուաք. 51)։—Դուցէ սրա հետ կարելի է կցել նաև Սանոս, որ վերը՝ էջ 395, դրինք Ալեքսիանոս անունից (տես անդ)։

*ՍԻՍԻԼԱ, իգ. <ֆրանս. Cécile սրբուհու անունով, որ մեծ հարգ ունի կաթոլիկ եկեղեցում և համարվում է երաժիշտների պաշտպանը։ Մի անգամ մեր մեջ հիշատակված ունինք՝

— Սիսիլա (հոգով Սիսիլէն), դուստր պարոն Յովհաննէսի՝ եղբոր խոջա Բաղդասարի, որ ստացավ մի Ավետարան (տեղն անհայտ)՝ ԺԸ դար։— Տաշեան՝ Ցուց. 724բ։

Σίσις (սեռ. Σίσιδος), հայր Անտիպատրոս հայ իշխանի Տիբարացոց և Խալիբների. Փոքր Հայքի թագավորն էր. ստիպվեց տեղի տալ Մեծն Միհրդատին և իր երկիրը հանձնեց նրան (Ն. Ք. 123—63)։ Բայց երբ Հռովմայեցիք հաղթեցին Միհրդատին, վերահաստատեցին Փոքր-Հայոց իշխանությունը՝ իրենց գերիշխանության տակ։—Ստրաբոն [հայոց մասին], Երևան 1940, էջ 75 և Justi 304ա. Տաշեան, Հայ բնակ. Սև ծովէն մինչև Կարին, էջ 13։

†ՍԻՍԽԱԹՈՒՆ, իգ. <վերի Սիս անունից+խաթուն։ Մի անգամ հիշված ունինք՝

— Սիսխաթուն, կին Վասակի. միասին մի այգի են նվիրել Կողբի (Ղազախ) Ս. Աստուածածին վանքին 1253 թ.—Արցախ, էջ 386։

†ՍԻՍՄԱՄ, իգ. <վերի Սիս անունից+հյ. մամ «մայր կամ տատ»։ Մի անգամ հիշված է՝

— Սիսմամ, կին Խաչեղբայրի՝ որդւոյ Աստուածատուրի. տուն ու կալվածներ են նվիրել Բագնայրի վանքին.—Անթվական Արձ. Շիրակ 112։

†ՍԻՍՎԱՐԴ, իգ. <վերի Սիս անունից+հյ. վարդ։ Մի անգամ ունինք՝

—Սիսվարդ, կին Յովհաննէս քահանայի՝ որդւոյ Կոստանդին քահանայի Հոռմեանց. տներ է նվիրել Արջոյառիջ վանքին 1213 թ. և Բագնայրի վանքին՝ 1215 թ.—Արձ. Շիրակ 122, 121։

ՍԻՍՏ... (ձևն ու սեռը անստույգ). գրված է սեռ. Սիստին կամ Սէստին. մերձավոր Խաչեղբայրի և նրա որդի Ավետիսի, որոնք հող են նվիրել Հոռոմոսի վանքին 1201 թ.—Արձ. Շիրակ 23։

*ՍԻՏԻԽԱՆ, իգ. ծագումը տես Սիթի, Սթի+պրս. xān. մի անգամ հիշված է 1711 թ. (Ջամբռ 207)։

*ՍԻՏԻՍ* (*հոլով առնում է Սիտիսն*), *ար. ծագումը ինձ անհայտ. երկու անգամ հիշված է 1587 Թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, էջ 260։*

**ՍԻՐ*, *ար.* <*ֆրանս.* sire *«տեր, իշխան» բառից (որ կրճատված է լա.* senior *«երիցագույն, ծերագույն» բառից)։ Փոխառյալ է Կիլիկեան շրջանում. մեր մեջ իբրև անձնանուն հիշված ունինք՝*

— 1. Սիր, *հիշված 1058 Թ?—Ձեռ. Սանաս. 2ա։*

— 2. Սիր, *երախտավոր Ս. Սիոնի (Երուսաղէմ). հայր Տէր Կոստանդի. հիշված է 1335 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։*

†*ՍԻՐԱԴԵՂ*, *ար.* <*հյ.* սէր+դեղ *բառերից (իբր «սիրոյ դարման»)։ Մի անգամ հիշված է՝*

— Սիրադեղ, *տանուտեր Նորգեղի կամ Նորագիւղի, հիշված 1465 Թ.—Այրարատ 320, Նոտարք 221 (գրում է Սիրատեղ)։*

†*ՍԻՐԱԴՈՒԽՏ*, *իգ.* <*հյ.* սէր+*պրս.* dùxt *«դուստր» բառերից. իբր նորակերտ անուն հիշում է Այրարատ 293ա (Սիրադուխտ Ներսիսեան †1887 Թ)։ Նույն անունը ժէ դարից ավանդված է մեզ հետևյալ ձևերով.* Սիսրւքուխթ *1633 Թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 86),* Սերիքուղթ *1657 Թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 33բ, ուր ասում է իր համար «որ եմ հօր կողմանէ ազգաւ հայ, ամուսին համայեցոյ»),* Սիրիքուղթ *1661 Թ. (Ձեռ. Վաստ. 920),* Սիրիքուղտ *1671 Թ. (անդ 940)։ Բացի առաջինից, մացյալ բոլոր չորս ձևերը ենթադրում են* Սիրաքուղթ *կամ* Սիրիքուղթ: *Հայտնի չէ թէ նախնական ձևն է իրոք* Սիրադո՞ւխտ, *որ ժողովրդական ստուգաբանությամբ դարձել է* Սիրաքուղթ *(«սիրոյ հմայական գիր») թե ընդհակառակը ուղիղն է* Սիրաքուղթ, *որ գիտական ստուգաբանությամբ վերածում ենք* Սիրադուխտ:

†*ՍԻՐԱԽԱԹՈՒՆ*, *իգ.* < *հյ.* սէր+խաթուն *բառերից (իբր «սիրոյ տիկին»)։ Հիշված է մի անգամ 1602 Թ.—Այրարատ 31։*

†*ՍԻՐԱԿԱՆ*, *ար. և իգ.* <*հյ.* սիրական *«սիրելի» բառից, որի ժղ. ձևն է* Սիրճկան). *որա համազորն է եբր.* Դաւիթ, *որ նույնպես նշանակում է «սիրելի»։ Իբրև ար. հիշված է ժէ դար (Ջքր. պատմ. 174), իբրև իգ. հիշված է 1797 Թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 121). հայտնի չէ թե անո՞ւն է 1662 Թ. (Թորոսեան Բ. 439)։ Այժմ գործածական է Պոլսում, իբր ար. և սրանից է* Սիրականեան *ազգանունը, որ հիշատակված է Պոլիս 1836 Թ. մի դամբանի վրա (Հայոց լեզ. պատմ. Բ. 477)։*

†*ՍԻՐԱՄԱՐԳ*, *իգ.* <*հյ.* սիրամարգ *թռչունի անունից. այս բառը ժողովրդական բարբառով դարձել է* սինամահուր. *իբրև անձնանուն երկու ձևերն էլ գործածված են.* Սիրամարգ *ձեր*

ավանդված է ԺԲ դարից մինչև ԺԸ դար և այժմ էլ կենդանի է. իսկ երկրորդը տես Սիմա ձևի տակ։

— 1. Սիրամար (վերջի բաղաձայնը կրճատված), մի այգի է նվիրել Հաղբատին 1179 թ. կամ քիչ հետո.—Արձ. Երզնկ-եանց՝ Հնախ. տեղագր. 49։

— 2. Սիրամարգ, կին Մկրտիչի՝ եղբոր տանուտեր Յով-հաննէսի, որ Աղթամարում գրել տվեց մի Ավետարան 1436 թ. —Ձեռ. Վասպ. 373։

— 3. Սիրամարը, մեռել է և թաղվել Ամասիայի Ս. Նիկողա-յոս եկեղեցու բակում 1447 թ. Մնում է իր տապանաքարը, որ ագուցված է նույն եկեղեցու պատին։ Նրանից հետո մեռել է իր թոռը՝ Խաթունփաշա, որի արձանագրությունն էլ ավելացրել են նախորդի ծայրին՝ 1469 թ։ Այսպես

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՍԻՐԱՄԱՐ
ՔԻՆ ԹՎ ՊՂԶ | ԵՒ ԻՐ ԹՈ
ՌԻՆՆ ԽԹ ՓԱՇԱՒՆ ԹՎ ՋԺԸ

Այս անտիպ արձանագրությունը հաղորդեց ինձ Ամասիայից Կարապետ Գազազեան, 1912 ապր. 12. առաջին տողի վերջին բառը շատ էր ջարդված և դժվարությամբ կարելի եղավ գուշակել։

— 4. Սիրամարգ, դուստր Յովանէսի և քույր Վարդան արեգայի, որ Կտուց անապատում գրել տվեց մի Ավետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 5. Սիրամարգ, կին Սուլթանի, մեծ մայր Եղիա երեցի, որ օրինակեց Ավետարանը՝ Բաջթաղույ Խողանավար գյուղում, 1490 թ.—Ձեռ. Սևան. 5 բ։

— Ավելի ուշ հիշատակված ունինք Սիրամ կրճատ ձևով 1599 թ. (Ձեռ. Վասպ. 756), Սիրամարգ 1647 թ. (Թորոս աղբ. Ա. 220), 1676 թ. (Ձեռ. Վասպ. 948), 1687 թ. (Ձեռ. Թաւր. 24 բ), 1700 թ. (Ձեռ. Ադուլ.=Արրտ. 1911, էջ 1003)։

*ՍԻՐԱՄԻՐ, ար. <Փրանս. սիր (տես վերը Սիր) «իշխան» +արաբ. امير amīr «իշխան» համանիշներից բարդված, ինչպես ունինք Սուլթանշահ, Շահամիր, Աղաբէկ, Աղախան; Խանամիր են կրկնակ պատվանուններից կազմված անձնանունները։ Հիշ-ված է ԺԴ—ԺԶ դարերում։

— 1. Սիրամիր պարոն, հայր պարոն Սիմէոնի, մի խաչ-քար են կանգնեցրել Խրիմում, այժմ ագուցված է Նոր-Նախի-

ջեանի Ս. Լուսաւորիչ եկեղեցու պատին, 1431 Թ.—Շահազիզ, Ազգագր. հանդ. Է, 51։

— 2. Սիրամիր, որի եղբայրներն էլ կոչվում են Շահամիր, Ամիր, Գուլամիր, Սիրաւագ. հիշված են 1560 Թ.—Տաշեան, Ցուց. 314։

— 3. Սիրամիր Գոյճուն (իմա պոյաճի «ներկարար» Սիրամիր)․ քիչ հետո մաղզիլ դոռիլ (որ պետք է կարդալ մառչիլ դուռուշ).— Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 339 (Թվականն անհայտ)։

— 4. Սիրամիր անթվ. է նաև Ձեռ. Վենետ. Բ. 868։

†ՍԻՐԱՅ, իգ. <կրճատ ձևն է Սիրա- երկվանկով սկսվող մի անվան, ինչ. Սիրամարգ, Սիրանոյշ են։ Նախ գտնում ենք Սիրայ ձևով՝ անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1311 Թվից ուշ (Ձեռ. Թաւր. 74բ)։ Երկրորդ գտնում ենք Սիրայ խաթուն ձևով, նույնպես անթվ. (Ձեռ. Վասպ. 618)։ Հոգով ունինք Սիրան 1588 Թ. (Տաշեան, Ցուց. 736բ), Սիրայն 1649 Թ. (Ձեռ. Կես. սարգ. 13ա)։

†ՍԻՐԱՆ, իգ. <կրճատ ձևն է Սիրանոյշ անվան. հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում և գործածական է նաև այժմ։

— 1. Սիրան, մերձավոր Մարտիրոս գրչի, որ Բաւուն միայնակեցի համար արտագրեց Աւետարանը 1330 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

— 2. Սիրան, մայր Յովհաննէս սարկավագի, որ հիշատակում է իրեն այն Աւետարանում, որ գնեց Մարտիրոս քահանան 1410 Թ.—Ձեռ. Վասպ. 164։

ՍԻՐԱՆԷՍ, որ և ՍԻՐԱՆՈՍ, ար. ծագումը ինձ անհայտ. առաջին ձևի վերջավորությունը Յովհաննէս, Վրթանէս անունների նման է։ Հիշատակված է նախ Ա դարում, ապա հանկարծ ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Սիրինոս, որդի Աբգար Թագավորի, որ այլուստ հայտնի է Անանուն ձևով.—բց. ի Սիրինոսէ՝ ZAPh 1, 216. տես Անանուն։

— 2. Սիրանէս վարդապետ, Սիւնեաց Տարսայիճ իշխանի ծախսով մի եկեղեցի է կառուցել Նորավանքում, 1275 Թ.—Արձ. Սիսական 191։

— 3. Սիրանոս Վանեցի, «ոչ Թէ յոռի ազգաց կամ ի վատթարաց, այլ յոյժ գովելոց, յընտրելոց և յառաքինեաց, ի զարմէ բարի և պատուական երիցանց». չարչարվելով մահմեդականներից, ստիպվեց ուրանալ իր հավատքը «1403 Թ».—Ցայսմ.

յուլ. 10, Նոր վկ. 200 (այլ ձ. Սիանոս), բայց այս երկու ձևերից պետք է ընտրել առաջինը, որովհետև հեղինակը բառախաղով ասում է. «Սիրանոս, որ որդի սիրական Բելիարայ եղև, զՔրիստոս ուրացաւ և տանջեցաւ»:

— 4. Սիրանես (սեռ. Սիրանիսայ), հիշված է 1557 թ.— Ձեռ. Դաղեան, Ա. 8 ա. (քիչ ցածը դարձյալ՝ Սիրանեսին):

— 5. Սիրանես, հիշված 1619 թ.—Ձեռ. Վենետ. Ա 722:

— 6. Սիրանոս, հիշված է 1389 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 760:

— 7. Սիրանես, հիշված է Արատեսի վանքի զանգակատան կամարից ընկած մի քարի վրա (Արրտ. 1888, էջ 768).—անթվական, բայց բավական հին:

†ՍԻՐԱՆՈՅՇ, իգ. <հյ. սեր և անույշ բառերից. կրճատ ձևերն են Սիրան, Սիրուշ (տես և Սիրան, Սիրայ): Սրանք հասցնում են մեզ ԺԴ—ԺԷ դարերը: Ավանդված չէ Սիրանույշ ձևը, որ սակայն այժմ շատ սիրված և շատ տարածված կենդանի հայկական անուն է: Իսկ նրա կրճատ ձևը (Սիրուշ) զուգադիպօրեն միայն նման է պրս. سروش sirūš «երկնային հրեշտակ» բառին:

Սիրապ տես Սրապիոն:

*ՍԻՐԱՏԱՆ, ար. <սիր և Ատան բառերից. տիտղոսը միացած անվան հետ. ինչպես՝ Պարոնեյոս կամ Լոյսպարոն. տես Ատան:

— 1. Սիրատան ոմն, օգնեց գնելու մի Աւետարան 1375 թ. —Տաշեան: Ցուց. 277 ա:

— 2. Սիրատան, որդի Յովանէսի. Կեսարիոյ Մանդիսոն գյուղում Յովանէս աբեղային գրել տվեց Յայսմաւուրքը 1495 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ, 1850:

†ՍԻՐԱՏԻԿԻՆ, իգ. <հյ. սեր և տիկին բառերից. ունինք միայն մի անգամ հիշված ԺԴ դարից՝

— Սիրատիկին, կին Պարոնշահի և մայր Խոսրովշահի, որ ստացավ Բաբերդում մի հին Աւետարան և նորոգել տվեց 1346 թ.—ՀԱ 1926, էջ 344:

†ՍԻՐԱՐՓԻ, իգ. <հյ. սեր և արփի բառերից, իբրև թե «սիրոյ արեգակ». պատկերավոր և գեղեցիկ նորակերտ անուն, որ անցյալ դարի վերջում հնարվեց Պոլսում:

†ՍԻՐԱՒԱԳ, ար. <ֆրանս. sire «իշխան»+հյ. աւագ բառերից, որով լինում է կրկնակ պատվանունների գումարը: Մի անգամ հիշված է 1560 թ. (Տաշեան, Ցուց. 314):—Տես և Սիրամիր:

*ՍԻՐԱՔ, տր. <հուն. Σειράχ ձևից, որ տառադարձված է եբրայեցերենից։ Այս անունով հայտնի է Սիրաք որդի Յեսուայ, որ գրել է «Իմաստութեան գիրքը», որ կրկին թարգմանությամբ հասել է մեր ձեռքը (չի մտնում եբրայական Ս. Գրքում, իբրև անվավեր մասյան)։ Իբրև անձնանուն հնում շատ քիչ է գործածված. երբեմն գործածվում է և այժմ։

— 1. Սիրաք, որդի Խութլափի, որի յիշատակին կանգնեցրեց մի խաչքար Վանք գյուղի Սպիտակ խաչ վանքում, 1333 թ.— Բարխուտ. Արցախ 66։

— 2. Սիրաք հիշված է նաև 1606 թ.—Նաթանեան, Արտօսր Հյստ. 153։

†ՍԻՐԻԲԱԽՏ, իգ. <հյ. սեր և բախտ բառերից բաղդված։ Մի անգամ ունինք ԺԲ դարից։

— Սիրիբախտ, դուստր Սանփաննոսի հուկեան, որ մի կալված նվիրեց Գեղարդայ վանքին 1177 թ.—Արձ. Այրարատ 343 (> Շահազիզ, Հին Երև. 76 Սիրբախտ ձևով)։

†ՍԻՐԻԽԱՆ, իգ. <ոչ թե «խանի սիրածը», որ գզվելի կլինէր, այլ «սիրոյ խան, սիրոյ իշխանուհին». մի անգամ գտնում եմ հիշատակված 1711 թ. (Ջամբռ 182)։

†ՍԻՐԻԿ, իգ. հին ձևն է նորակերտ Սերիկ անվան, որ տես առանձին։ Գրված է Սիրիք և հիշված է 1347 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Աղուլ.=Արրտ. 1911, էջ 463։

Սիրիճոս տես Սիրաճես։

*ՍԻՐՄԱ, իգ. <թրք. سرمه sərma «ոսկեթել» բառից։ Հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում. և դեռ գործածական էր անցյալ դարում Արևմտահայոց մեջ։

— 1. Սիրմա, դուստր Գրիգորիս քահանայի և վաղամեռիկ քույր Ստեփաննոս քահանայի, որ Ղրիմի Սուրխաթ քաղաքում, Քրիստոսատուր կրոնավորի համար օրինակեց Աստուածաշունչը 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7, 13։

— 2. Սիրմա, կին Ասիլի և մայր Արղլմսեհ քահանայի, որ Ամիթում գրել տվեց մի Ավետարան, 1373 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 618։

— 3. Սիրմա, դուստր Շատլուսի, կին Խութլուշայի, որ գրել տվեց մի Ավետարան 1386 թ.—Ճանիկեան, Հնութ. Ակնայ, էջ 78։

— 4. Սիրմա խաթուն, մերձավոր Կարապետ քահանա գրչի,

որ Աղթամարում օրինակեց Աւետարանը 1392 թ.—Ձեռ. Վաղպ. էջ 228։

— 5. Սիրմայ, կին Մխիթարի. ծնողներն են Պօղոս աբեղա դրչի, որ Բաղէշի Ամրդօլի վանքում օրինակեց Աւետարանը 1455 թ?—Նոտարք 178։

— 6. Սիրմա (սեռ. Սիրմին), կին Գուգարի. մայր Մելքիսեթ աբեղայի, որ վանահայրն էր Երերան վանքի, 1460 թ.—Այրիվ. 16 բ։

— 7. Սիրմա, կին Սարգսի և մեծ մայր Լիանոսի, որ ստացաւ մի Աւետարան, 1491 թ.—Թորոս աղբ. Ա. 120։

†ՍԻՐՈՂ, իգ. <հյ. սիրող գերբայից. մի անգամ գտնում եմ հիշված 1618 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 50բ).—գրված է սիրոյղ:

ՍԻՐՈՒԱՆ, ար. որդի Սիսակի՝ որդւոյ Գեղամ նահապետի Հայկազանց. իր անունով կոչվեց Շիրուանը (Չամչ. Ա. 71)։—Ալիշան Հյատ. էջ 278 ծան. 210 հարցնում է թե Չամչեանը որտեղի՞ց է գտել այս Սիրուանը, որ այլուստ անծանոթ է։—Ստուգաբանական կեղծիք։

†ՍԻՐՈՒԽՏ, իգ. շատ սիրուն բառ է, կազմված սէր+ուխտ բառերից. իբրև «սիրոյ ուխտ». մի անգամ միայն գտնում եմ հիշված 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 93, 94)։

ՍԻՐՈՒՀԻ, ար. Սիմանակլայ բերդի տէրն էր «յաւուրս Թագաւորութեան Լևոնի» (1299 թ).—Սիսուան 200 բ, որ կարծում է թէ սիր այստեղ ո՛չ թե սէր բառից է, այլ ֆրանս. sire «իշխան». բայց այնու ամենայնիվ անծանոթ է թում ունի:

†ՍԻՐՈՒՆ, ար. <հյ. սիրուն բառից. հիշատակված է ԺԳ դարից սկսած և այժմ էլ կենդանի է. որանից է Սիրունեան ազգանունը։

— 1. Սիրուն, հայր Յոհաննէս քահանայի, որ Կրակա գյուղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 301, Սիսուան 547բ։

— 2. Սիրուն սիր, իշխան, զինապան Լևոն Ե թագավորի. իր ծախսով վերանորոգեց Ատանայի «Ամենափրկիչ Ս. Աստուածածին» եկեղեցին, որին նվիրեց մի Աւետարան, որ գրել էր Ստեփաննոս գրիչը՝ 1297 թ. (այս Աւետարանը գողացվեց Ալթուն-տաշ նայիբի արշավանքի ժամանակ 1335 թ).—Սիսուան 260 ա, Տաշեան՝ Պատմ. պատկ. 115—8։ Նույն Սիր Սիրունը Լևոն թագավորի կողմից դեսպան ուղարկվեց Եգիպտացոց Նասր

սուլթանի մոտ՝ Պաղտին մարաջախտի և Վասիլ Թղթագրի հետ, 1336 թ.—Միսուան 559ա։

— 3. Սիրուն, որդի Վասիլի և հորեղբայր Աբրահամ քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբյուր գյուղում ստացավ մի Ավետարան, 1357 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 613։

— 4. Սիրուն, Մեծոփայ վանքի ճարտարապետներից մին 1402—1409 թ.—Նոտարք 30, Ազգագ. 2001։

— 5. Սիրունբեկ, եղբորորդի Մկրտիչ կրոնավորի, որ Բաղեշում, Ստեփաննոս գրչին օրինակել տվեց Ցայսմավուրքը 1446 թ.—Նոտարք 151։

— 6. Սիրուն (կամ Սիրունբեկ), որդի Ալեքսանի. մայրն է Սուլտանմելէք. «տարաժամ երիտասարդական կենօք փոխեցաւ ի կենցաղոյս և եթող մօրն իւրոյ սուգ անմխիթար և վէրք անողջանալի». մայրը նրա հիշատակին Աղթամարում գրել տվեց մի Ավետարան, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 413—5։

— 7. Սիրուն, որդի Մուրատի և եղբայր Վրթանէս քահանայի, որ Թովմա աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1456 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 31ա։

— 8. Սիրուն, կինն է Դովլաթ. ծնողներն են Գուլշատ խաթունի, որ Արծկէում, Յակոբ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1464 թ.—Նոտարք 219։

— 9. Սիրուն, ազգական Էղլշահի, որ ստացավ մի Ավետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 473։

— 10. Սիրուն Հիզնացի, 25 տարեկան գեղեցիկ երիտասարդ էր Խիզան քաղաքից. մայրը մահմեդական դարձավ. դատավորը պահանջեց Սիրունից, որ նա էլ մահմեդական դառնա, մերժեց. սկսեցին չարչարել։ Դաշույնով խոցոտեցին մարմինը, տակին խիճեր լցնելով՝ պինդ փակով կապեցին, քարով ատամները ջարդեցին, հողաթափներում կրակ լցնելով՝ ոտքերին հագցրին, ծոցում հրախառն մոխիր ածեցին, ախոռի սյունից՝ ձեռքերը ետ՝ բարակ չվանով պինդ կապեցին, թքում ու ապտակում էին. մարմինը ծակոտելով՝ աղ լցրեցին։ Երբ տեսան որ նա հաստատուն է իր կրոնին, տարին շուկա՝ հրապարակավ նահատակելու։ Հարուստ մահմեդականներ տարին նրան իրենց վաճառատունը և թանկագին կերպասներ նվիրելով հրապուրել էին ուզում։ Սիրունը ասաց. «Ամենայն մարդ զլաւն իւր կամենայ, եթէ ձեր հաւատդ լաւ է, նա ընդէ՞ր ձգէք կաշառօք ի վերայ քրիստոնէից»։ Ձեռքերը տարածելով աղոթում էր, ձեռքերը

*կտրեցին, շորերը հանեցին և մերկ մարմինը սրահար ծակոտելով նահատակեցին շուկայում «1476 թ»։—Նոր վկ. 309—312։*

— 11. Սիրուն, *քրոջ զավակ Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում գրել տվեց մի Ավետարան, 1481 թ.—Ձեռ. Վաստ. էջ 488։*

— 12. Սիրուն, *ազգական Յովհաննէս եպիսկոպոսի, որ Խիզանում գրել տվեց մի Ավետարան, 1486 թ.—Ձեռ. Վաստ. էջ 503—4։*

— 13. Սիրուն, *որդի տանուտեր Տողանի, որ Արճէշի Սասկան գյուղում գրել տվեց մի Ավետարան 1489 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 437։*

— 14. Սիրուն, *որդի Ստեփաննոսի. հիշված է Խիզանում գրված մի Ավետարանում 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284։*

— 15. Սիրուն *Ալիւրցի, Վասպուրականի Ամուկ (Գնունիք) գավառի Ալիւր գյուղից էր. ծառա էր մի մահմեդականի մոտ. տերը ուղարկեց նրան Խլաթ, կեռաս բերելու։ Սիրունը ձին կեռաս բարձած քաշում էր Վան քաղաքում, մահմեդական մանուկներ թափվեցին վրան և սկսեցին կեռասները հափշտակել։ Մի տղա քարով խփեց Սիրունին, նա էլ վերցրեց նույն քարը և խփեց երեխային. գլուխը ճղվեց, երկու ամիս հիվանդ պառկեց և մեռավ։ Ծնողները բողոքեցին. փաշան, մուֆթին և դատավորը քննեցին գործը և գտան որ Սիրունը հանցավոր չէ։ Իսկ սոֆթաները 2—300 հոգով հարձակվեցին Սիրունի վրա և պահանջեցին որ մահմեդական դառնա։ Սկսեցին տանջել։ Ծնողները խնդրում էին Սիրունից առերես ընդունել և ապա հեռանալ ուրիշ երկիր։ Սիրունը մերժեց։ Կատաղած սոֆթաները նույնիսկ մինարէի վրայից էզան կարդալն արգիլեցին, ասելով թե «խանգարեալ խափանեցաւ և յերկիր սուզաւ հաւատս մահմետական, զի անհաւատ հայ զմուսուլման սպանեալ է»։ Քսան օր տանջելուց և փողոցներում քաշ տալուց հետո, մի օր, շուկայում, սոֆթաներից մեկը դաշույնով զարկավ նրան, մի ուրիշը քարով ջարդեց գլուխը, մեռած մարմինը տարին կառափնատակ քարկոծեցին «1655 թ».—Առաք. պատմ. խդ, Զամչ. Գ. 651, Նոր վկ. 467—471։*

— *Ուշ ժամանակի հիշատակություն են Սիրուն 1508 թ. (Ձեռ. Վաստ. 634), 1552 թ. (անդ 656)։*

†*ՍԻՐՈՒՆԱԿ, իգ.* <*հյ.* սիրուն *բառի փաղաքշականն է. հմմտ. հաջորդը։ Մի անգամ գտնում եմ հիշատակված Գողթն գավառի*

Մարվանիս գյուղի եկեղեցու մի խաչքարի արձանագրության մեջ. «Թագուհի և մայրս Գոհարին և հայր Ազիզբէկին, Ամիրջանին, Սիրունակին. ՋԹ» (=1460 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, 325։

†ՍԻՐՈՒՆԻԿ, իգ. <նախորդի նման. փաղաքշականն է սիրուն բառի. մի անգամ հիշված է ԺԵ դարում։

— Սիրունիկ, կին Սսանայի, որ Փառխոսում կանգնեցրել է մի խաչքար 1481 թ.—Արցախ 307։

†ՍԻՐՈՒՆՆԱՆ, իգ. <հյ. սիրուն+նան «մայր» բառերից. գործածական է այժմ Ղարաբաղում։

*ՍԻՐՊԱՐՈՆ, ար. <ֆրանս. sire «իշխան»+պարոն բառերից. ինչպես կա Սիրաւագ, Սիրամիր: Հիշված է մի անգամ ԺԵ դարում։ Տես վերը Սիլպարոն։

— Սիրպարոն, որդի Վահան երեցի և եղբայր Աւետիք արեգա դրչի, որ օրինակեց Սաղմոսը Գալախորի վանքում 1495 թ. —Ձեռ. Սանաս. 24ա։

*ՍԻՐՊԷԿ, ար. <ֆրանս. sire «իշխան»+թրք. ա beg հոմանիշ բառից բարդված. մի անգամ հիշված է ԺԴ դարում։

— Սիրպէկ, որդի Նասախաթունի. հիշված է Աղախ (Աղով) քաղաքում 1341 թ.—Տաշեան, Ցուց. 885։

†ՍԻՐՎԱՐԴ, իգ. <հյ. սէր+վարդ բառերից, իբր «սիրոյ վարդը, սիրուց ծլած վարդը». Նորակերտ անուն։

†ՍԻԽԼԻԿ, իգ. <չհամարելով թրք. sülük «տզրուկ» բառից (որ շատ անհարմար պիտի լիներ կնոջ կամ աղջկա անուն դարձնելու), կարդում եմ Սիփլիկ և համարում եմ «սեւուլիկ, սեւուկ»։ Մի անգամ գտնում եմ հիշված՝

— Սիխլիկ, կին Ջհանշահի, որ հիշված է Սակոաբերդում կամ Ուրծայ անապատում, 1491 թ.—Այրարատ 443։

*ՍԻԽՂՈՍ, ար. <կրճատված է Սիղուանոս ձևից, որ անունով հայտնի էր 70 աշակերտներից մեկը (Ա. պետր. Ե. 12). այլուր կոչված է Շիղա, որի լատինացյալ ձևն է համարվում Silvanus «անտառային, գեղջուկ»։ Տես այս երկու անունները։

— Սիխղոս, աշակերտ Լուսաւորչի և առաջին առաջնորդ Յովհաննավանքի, կարգված Լուսաւորչից (Դ դար). կարծվում է նույն. որանից էլ վանքը կոչվել է Սիւղի կամ Սոլի վանք.— Զքր. սարկ. Գ. 7 Այրարատ 165.—նույնը Սիւղիոս՝ Զքր. սարկ. Գ. էջ 29։

ՍԻԽՍ, եպիսկոպոս Հայոց, եղբայր Զենոբ կամ Յակոբ ասորու. Լուսաւորիչը բերել է նրան իր հետ և ձեռնադրել Մամի-

կոնէից եպիսկոպոս։ Այսպես է ըստ Ջենոբ ասորու նոր տպ. (Երևան 1941, էջ 38). իսկ տպ. Վենետ. 1832 չունի այս անունը։ Նկատելի է նաև որ նամակի պատասխանում այս Սիւսի մասին ընավ հիշատակություն չկա ոչ տպ. Վենետ. էջ 10 և ոչ տպ. Երև. էջ 44։

†ՍԼԱՔ, տր. <հյ. սլաք բառից. հմմտ. Սղուկ։

— Սլաք նախկին Սլկունեաց. Վաղարշակը բարձրացրեց նրան նախարարության աստիճանին.—Խոր. Բ. ը. Սամ. անեց. 49։

†ՍԿԱՅՈՐԴԻ, տր. <հյ. սկայ «հսկայ»+որդի բառերից։

— Սկայորդի, նահապետ Հայկազն. հաջորդեց Կայպակին. (իսկ ըստ Չամչ. Ա. 93 հաջորդեց Փառնակ Բ-ին, Ն. Ք. 765 թ). իրեն էլ հաջորդեց Պարույրը Ն. Ք. 748 (ըստ Չամչ.)։—Խոր. Ա. ժթ, իզ. Յհ. կթղ. ը. Կաղկանտ. Ա. գ (չունի էմին), ժե (այսպես ըստ Շահն. իսկ էմին՝ Հսկայորդի). Մագ. թղ. ժթ. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 53. Մին. համգ. 10.—Հսկայորդի՝ Մխ. այրիվ. 18.—սեռ. Սկայորդւոյ՝ Խոր. Ա. իբ. Սամ. անեց. 45.—Սկայորդոյ՝ Մին. համգ. 10.—բց. ի Սկայորդւոյն՝ Խոր. Ա. իա։

Սկանդար տես Սքանդար։

Սհար տես Սահար։

ՍՂՄԷՐ, իգ. ծագումն ինձ անհայտ. վերջի մասը թվի մեր «մայր». մի անգամ հիշված է Նոր-Ջուղայում 1629 թ. (Կնիք հու. յոջ. էջ IV)։

ՍՂՈՒԿ, տր. ծագումն անհայտ. կա միայն՝

— Սղուկ նահապետ Սլկունեաց. Շապուհ թագավորի դրդումով ապստամբեց Տրդատի դեմ և Մամգուն չինացու ձեռքով ընաջինջ եղավ ցեղով։—Խոր. Բ. ձգ (նույնի մասին խոսելով Ասող. Բ. ա գրում է «առաքէ առ Սլկունին», որ պետք է կարդալ Սլկունին և ոչ թե համարել Սղուկ անվան ձևափոխություն։ Ասողիկը չի ճանաչում Սղուկ անունը, ինչպես որ մի քիչ վերն էլ ասում է «նահապետ ազգին Սլկունեաց», առանց անվան)։

*ՍՄԲԱՏ, տր. ծագումն անհայտ։ Կա նաև իրանեանց մեջ. ինչ. سنباد Sinbād որդի Բահրամ Գորի, Sunfādh մոգ Նիշապուրցի ապստամբ (755 թ). փոխառությամբ նաև Վրաց մեջ. ինչ. Sumbat Բագրատունի, որդի Ատրներսեհի, Sumbat էրիսթավաց էրիսթավ (Ժ դար) են (Justi 314—5)։ Հիշված է նաև Σαμβατίων ձևով երկու անձ Տանայիսի արձանագրության մեջ (Գ դար, Justi 281 բ)։ Խոր. Ա. իբ և Բ. կզ համարում է հրէական Շամբաթ ձևից, որ Բագրատունի տոհմի մեջ սովորական անուն էր։

Իրեն հետևում են նաև Մխ. անեց. իա, Սամ. անեց. 46, Մխի-ար. էջ 101 (գրում է Սմպատիա)։ Բայց այսպիսի հրէական անուն այլուստ ծանոթ չէ։ Կա արաբ. شنبه šanbaϑ «առյուծ» (Կամուս, Ա. 354), որ պիտի համապատասխաներ Լեոն անվան։ Մեր մեջ Սմբատ անունը հիշատակված է ամենահին օրերից և դեռ այժմ էլ կենդանի է Սումբատ ձևով, ինչպես և վրաց. Սումբատ։—Սրանից է Սմբատեան(ց) ազգանունը։ Հին ազգանվան զարմանալի մի ձև է Սմբատուրեանց, որ հիշված է մի անգամ Անիի 1215 թվի մի արձանագրության մեջ (տես տակը Սուլեմ)։—Կարևոր է նկատել որ հին հայոց մեջ Սմբատ անունը հատուկ էր աշխարհական անձանց, այն էլ ամենամեծ մասամբ մեծ ու փոքր թագավորների, իշխանների և նախարարների։ Մեր ունեցած անվանացանկում ոչ մի գրիչ չկա. կրոնական անձերից ունինք միայն № 35 Սմբատ Թոնդրակեցի քարոզիչը, № 119 Սմբատ քահանա և № 140 Սմբատ երեց։ Աշխարհականներից նրանք որ Սմբատ անունն էին կրում, կրոնավոր դառնալով նոր անուն են ստացել. այսպես Շնորհալին և Լամբրոնացին, որոնք առաջ Սմբատ էին, ապա կոչվեցին Ներսէս։—Վերջապես նկատենք որ ԺԵ դարից սկսած (ավելի ճիշտ 1489 թվից հետո), այլ ևս ոչ մի Սմբատ անունով անձ չունինք մեր հիշատակարաններում։

— 1. Սմբատ, այն է Շամբաթ իշխան հրեայ, որին Հայոց Հրաչեայ թագավորը գերի բերեց Երուսաղէմից և բնակեցրեց Հայաստանում։ Բագրատունեաց նախնին է.—Մին. համգ. 10.—սեռ. Սմբատայ՝ Մխ. անեց. գ։—Ավելին տես Շամբաթ։

— 2. Սմբատ «այրաքաջին». շինել է Տփխիսը ըստ Այս են քաղաքք և շինողք նոցին ZAPh 1, 190։ (Առասպել. պետք է համարել հաջորդը)։

— 3. Սմբատ Բագրատունի (այրաքաջ), որդի Բիւրատ Բագրատունու և գայակ Արտաշէս Բ-ի. փախցրեց նրան Պարսկաստան՝ ազատելով Երուանդի կոտորածից, ապա առաջնորդեց Հայաստան և հորը գահը բարձրացրեց (65 Թ).—Խոր. Բ. լէ, լը, խդ, խե—խէ, ծ, ծբ—ծգ. Կղկնտ. Ա. ը. Ասող. Ա. ե. Արծր. Ա. է. Պամ. վր. Ե. Մխ. անեց. ի.—սեռ. Սմբատայ՝ Խոր. Բ. լէ, լը, խդ, խդ, խզ—խը. ծ, ծբ, ծգ, ծբ, կգ. Ուխտ. Ա. խա, խբ. Արծր. Ա. է. Պամ. վր. Ե. Մխ. անեց. ի. Վրդ. ժէ, խա.—գրծ. Սմբատաւ՝ Խոր. Բ. ծգ.— Վրաց ազբ. Ա. 155—60 կոչում է Սումբատ Բիվրիտիան (=Բիւրատեան) և ընդարձակ պատմում է նրա պատերազմը Օսերի, Լեզգիների և Վրացոց հետ, ավելի մանրամասն քան ինչ

որ Խորենացին պատմում է Արտաշէս Բ-ի մասին (Ալանաց արշավանքը)։ Հետաքրքրական են իր տված նոր մանրամասնությունները Վրաց մասին։

— 4. Սմբատ որդի Գրիգորի, Կոկիոնցի, նահատակվեց Ստեփաննոս Ուլնեցու հետ «362 թ».—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. էջ 83։

— 5. Սմբատ ասպետ, որին Տրդատը ուղարկեց «ածել զկոյսն Աշխէն իւր ի կնութիւն» (Դ դար).—Խոր. Բ. ձգ։

— 6. Սմբատ ասպետ Բագրատունի, որդի Բագարատ Բագրատունու, սպարապետ Պապ թագավորի. Ջիրաւի ճակատամարտում հրաշեկ շամփուրով պսակելով սպանեց Մերուժանին «370 թ».— Խոր. Գ. լէ. Արծր. Ա. ժ. Մխ. անեց. իգ.—սեռ. Սմբատայ՝ Խոր. Գ. լէ. Կղկնտ. Ա. ժգ. Յհ. կթղ. ժգ. Պատմ. ներս. 20. Արծր. Ա. ժ, ժա. Մխ. անեց. իգ. Վրդ. իգ։

— 7. Սմբատ Սահառունի տես Բատ։

— 8. Սմբատ ասպետ Բագրատունի. Վարդան Մամիկոնեանի հետ գնաց Պարսից Վռամ թագավորի մոտ, հաշտեցրեց նրան Հայոց հետ և թագավոր նստեցրեց Արտաշէս Դ-ին «422 թ».—Խոր Գ. ծը.—սեռ. Սմբատայ՝ անդ։

— 9. Սմբատ, հայր Աշոտի՝ տեառն Բագրեւանդայ և Արշարունեաց (Զ դարի սկիզբը).— Այրարատ 55, Հայապ. 192։

— 10. Սմբատ Բագրատունի, շինել է Երուսաղէմում Կարնեցոց վանքը՝ ըստ Անաստաս վարդապետի տված տեղեկության (Հայապ. 227).—ուրեմն նախ քան Է դար։

— 11. Սմբատ Մամիկոնեան, որդի Գայլ Վահանի. հաջորդեց հորը 606 թ. հաջողությամբ կռվեց Պարսից Սուրէն և Տիգրան զորավարների դեմ. իր գերեզմանը ցույց են տալիս Մշոյ Ս. Կարապետի վանքում (տես Տրվըլէ, Ուղեւորութ. ի Փ. Ասիա, Վիեննա 1892, էջ 54)։—Մամիկ. գ, դ.—սեռ. Սմբատայ՝ Մամիկ. գ—ե։

— 12. Սմբատ իշխան Հաշտենից. գործակից և օգնական Սմբատի՝ Գայլ Վահանի որդու՝ Պարսից դեմ մղած պատերազմներում (606 թ).—Մամիկ. դ։

— 13. Սմբատ Բագրատունի, որդի Մանուէլի, հազար հոգով Մորիկ կայսեր (582—602 թ) հրամանով կանչվեց և ուղարկվեց Թրակիա պատերազմելու։ Ըմբոստացավ կայսեր դեմ, բռնըվեց և ձգվեց կրկեսը, ուր հաղթելով գազաններին՝ իր քաջության համար ներման արժանացավ և Աֆրիկէ աքսոր ուղարկվեց (շուրջ 590 թ.).—Սեբ. ժը. Մխ. անեց. իգ. Սիմ. ապար. 90,

95.—սեռ. Սմբատայ՝ Սեբ. ժը. Մխ. անեց. իգ. Սիմ. ապար. 92. —Սմբատի՝ Սիմ. ապար. 93։—Սրա հետ նույն անձն է՝

— 14. Սմբատ Բագրատունի Բագմայաղթ, Վրկան մարզպան. կոչված է Խոսրով Շնում. Ափրիկէի աքսորից փախչելով եկել է Պարսկաստան, ուր իր քաջության և հավատարմության համար սիրելի եղավ Պարսից Խոսրով Բ թագավորին և կարգվեց մարզպան Վրկան աշխարհի (Գիլան)։ Նվաճեց ապստամբ գավառները, չարաչար հաղթեց Քուշաններին, որոնց թագավորին էլ մենամարտության մեջ սպանեց «609 թ»։ Նորոգեց Թուրքեստանի անկյալ հայ գաղութի հոգևոր վիճակը։ Մասնակցեց Հայոց եկեղեցական ժողովներին՝ Վրաց կրոնական բաժանման առթիվ և հատկապես այն մեծ կրոնական ժողովին, որ գումարվեց Պարսկաստանում՝ քրիստոնէական դավանության տարբեր տեսակների քննության համար «615 թ»։ Մեռավ «617 թ»։ Մարմինը տարին Թաղեցին Կողովիտի Դարիւնք ավանում։—Սեբ. իգ—իդ, խգ, խդ. Գիրք Թղ. լթ, խգ, խէ, խը, ծգ. Ուխտ. Բ. լ, լբ, լգ, լե, խբ, խգ, ծդ, ծը, կը. Յհ. կթդ. ժէ. Ասող. Բ. ր. Մխ. անեց. իդ (միացնում է Մօրիկի ժամանակակից Սմբատ Բագրատունու հետ). Յայսմ. հոկտ. 26. Սամ. անեց. 76—77. Մխ. այրիվ. 64. Վրդ. լա. Կիր. 29. Սիմ. ապար. 95, 96. Օրբ. իե. Ջուղ. 48.—սեռ. Սմբատայ՝ Սեբ. իբ—իգ, լը, լթ, խբ, խե. Գիրք Թղ. լթ, խ, խղ—խը. Ուխտ. Բ. ա, ե, լ—լե, լէ, խգ, ծդ—ծթ, կա. Յհ. կթդ. ժէ, ժթ. Ասող. Բ. ր. Յայսմ. հոկտ. 26. Սամ. անեց. 77. Մխ. անեց. իգ. Կիր. 29. Վրդ. լգ. Օրբ. իե. Սիմ. ապար. 99. Ջուղ. 48, 49.—Սմբատի՝ Սիմ. ապար. 96, 111։—Նախորդ Սմբատ (№ 13) Բագրատունու և այս Սմբատ Վրկան մարզպանի նույնության մասին վկայում են մեր ժամանագիրներից Մխ. անեց. և Սիմ. ապար։ Նույնպես է ընդունում նաև Մարքվարտ՝ Բագր. ծագ. էջ 3, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 89—92, 269—274։ Բայց սրանց նույնության մասին առանձին հոդված ունի մեր Համալսարանի շրջանավարտ ուսանողուհիներից Հռիփսիմէ Ջանփոլադյան, Արմֆանի Տեղեկ. 1943, № 2, էջ 49—54, ինչպես և ժողովրդական մի գրքույկ «Սմբատ Խոսրով-Շում Բագրատունի» վերնագրով, որ Սմբատի զարգարուն և բանաստեղծական կենսագրությունն է, տպ. Երևան 1943, նույն հեղինակուհուց։—Սմբատ Վրկանի ընդարձակ կենսագրությունն ունի Ակինեան, Կիւրիոն կթդ. էջ 157—164, բայց նախորդ Սմբատի հետ կապելու մասին խոսք չկա։

— 15. Սմբատ *Բագրատունի, որդի Վարազ-Սահակի. տէր Դարօնից բերդի. օգնեց Արծափի պաշարեալներին՝ Արաբների դէմ 643 թ.—Սեբ. խբ։*

— 16. Սմբատ *Բագրատունի, որդի Վարազտիրոց մարզպանի և թոռն Սմբատ Վրկան մարզպանի. հօրը հետ գնաց Պոլիս և սիրելի եղավ կայսեր սենեկապետին։ Հայրը մասնակցելով կայսեր դէմ դավադրութեան, նրա հետ աքսորվեց։ Վերադարձավ 645 թվին։ Վարազտիրոցի մահից հետո, կայսեր կողմից նշանակվեց* դրունգար *(բայց ոչ կիւրապաղատ Հայոց), ըստ Մարք. Բագր. էջ 10՝ 645 թ. (Ադոնց. 710 դնում է «642 թ». բայց պատմիչը ասում է Կոստանդ կայսեր 5րդ տարին, որ անում է 645 թ)։—Սեբ. լթ, խբ, խե. Ղև. գ. Յհ. կթգ. ժթ. Վրդ. լգ.—տես.* Սմբատայ՝ *Սեբ. խե. Վրդ. լգ։*

— 17. Սմբատ *Բագրատունի, հայր Սմբատի՝ հաջորդի Գրիգոր Մամիկոնեանի.—տես.* Սմբատայ՝ *Յհ. կթգ. ի. (ըստ այլոց՝ պէտք է հասկանալ* Աշոտ. *տես ցածրը՝ Սմբատ (№ 21) կիւրապաղատ որդի Աշոտի)։*

— 18. Սմբատ *Բագրատունի. հունաց զօրավարի հետ Արաբների դէմ դուրս եկավ, բայց հաղթվեց։ Ներսէս Շինողի («641—661 թ») ժամանակ՝ Գրիգոր Մամիկոնեանի հետ պատանդ գնաց Արաբների մոտ, բայց մի տարուց ազատվեց ու վերադարձավ։ Կոստանդին կայսրը իր իշխանութեան 25-րդ տարին (ըստ Ղևոնդի, որ անում է 666 թ) նշանակեց նրան Թէոդորոս Ռշտունու փոխարեն։ (Պատկ. էջ 131 համարում է սրան Սմբատ որդի Վարազտիրոցի).—Ղև.* դ. *Ասող. Բ. գ. Մխ. անեց. իէ.—տես.* Սմբատայ՝ *Ղև. գ։*

— 19. Սմբատ *ի Քարոյեան, իշխան աղուան (Է դար).—Հրտր. Սամ. անեց. 286։*

— 20. Սմբատ *որդի Վարազ Գայլունու. հօրը հետ միասին գործակից եղան Տարօնի Վահան իշխանի պատերազմին՝ Պարսից դէմ (Է դար).—Մամիկ. ե.—630 թ. ըստ Չամչ. Բ. 338։*

— 21. Սմբատ *Բագրատունի Բիւրատեան, եղբայր կամ որդի Աշոտի, թոռնորդի Սմբատ Վրկան մարզպանի։ Յուստինիանոս կայսեր կողմից հայոց սպարապետ էր կարգված (691 թ), իբրև հաջորդ Գրիգոր Մամիկոնեանի։ «695 թ» Ներսէհ Կամսարականը հրաժարվելով իշխանութիւնից՝ պատրիկ դարձավ Սմբատը։ Աբդլլա ոստիկանը ձերբակալեց նրան և Սահակ կաթուղիկոսի հետ գերի քշեց Դամասկոս «702 թ»։ Սմբատը փախավ և*

Հայաստան դառնալով՝ հունաց զորավար Լեոն Իսաւրացու օգնությամբ այնպիսի ջարդ տվեց Արաբներին Վարդանակերտի հերոսամարտում, որ Աբդլլան հազիվ կարողացավ փախչել «703 թ»։ Կայսրը կարգեց նրան կյուրապաղատ Հայաստանի։ Սմբատը ապահովության համար քաշվեց Տայոց աշխարհը և ապա գնաց Փոյթ (այժմ Փոթի), ուր մնաց մինչև «712 թ»։ Աբդուլազիզի ժամանակ վերադարձավ և մնաց իշխանության գլուխը մինչև «715 թ»։—Ղև. ժ. Ասող. Բ. ը, դ. Կիր. 36. Վրդ. լէ, խդ. Մխ. այրիվ. 19. Մխ. անեց. գ, իէ. Սամ. անեց. 84. Յայսմ. մրտ. 31.— սեռ. Սմբատայ՝ Ղև. ը, ժ. Ասող. Բ. բ, դ. Վկ. դաւ. 89. Սամ. անեց. 85. Միխ. աս. իթ (=իը)։—Ցհ. կթղ. ի կոչում է սրան (երկիցս) Սմբատ որդի Սմբատայ (տես վերը № 17) և ոչ Աշոտի։—Վրաց պր. Ա. 79 կոչում է Սումբատ Բագրատունիան։

— 22. Սմբատ որդի Աշոտի. մին այն նախարարներից, որոնք մասնակցեցին Վարդանակերտի հերոսամարտին («703 թ»).—տարբեր է նախորդից.—Ղև ը. Վրդ. լէ։

— 23. Սմբատ Բագրատունի, որդի Աշոտի. կախվեց Կաշմ ոստիկանի հրամանով «707 թ».—Ղև. ժ. Ասող. Բ. գ. Մխ. անեց. իէ. (Թերևս նույն է նախորդի հետ։ Այսպես է դնում նաև Բ. Առաքելյան, Տեղեկ. ԱրմՖանի, 1941, № 1, էջ 70—71, բայց նա միացնում է նախորդ երկուսի հետ. որով Սմբատ № 21, 22, 23 նույն են լինում)։

— 24. Սմբատ Մամիկոնեան, որի որդիքը՝ Գրիգոր և Դաւիթ, հակառակելով Աշոտ պատրիկին «715 թ», բռնվեցին և աքսորվեցին Արաբիա։—Վրդ. լթ.—սեռ. Սմբատայ՝ Ղև. իա, իե։

— 25. Սմբատ, իշխան հայոց. մեռել է 726 թ. ըստ Կղկնտ. Գ. ժէ։

— 26. Սմբատ կյուրապաղատ Հայոց, ժամանակակից Յովհան կաթուղիկոս («717—728 թ») Օձնեցու.—Յայսմ. ապր. 17։

— 27. Սմբատ ասպետ Բագրատունի, քաղկեդոնիկ, հակառակելով Ստեփաննոս Սիւնեցու («†735 թ») հետ, հաղթվեց, որի վրա զայրանալով՝ հալածեց նրան.—Կղկնտ. Գ. ժզ. Կիր. 41. Այրիվ. 19 բ։ Օրբ. լ.—սեռ. Սմբատայ՝ Կղկնտ. Գ. ժզ. Կիր. 41. Օրբ. լ. Այրիվ. 19 ա։

— 28. Սմբատ Բագրատունի, պատրիկ և սպարապետ Հայոց, որդի Աշոտ պատրիկի (կուրացյալ) և հայր նախորդ Աշոտ Մսակերի։ Մասնակցեց Պարտաւի եկեղեցական ժողովին, որ գումարեց Սիոն կաթուղիկոսը «768 թ»։ Հասան ոստիկանը իր հետ

վերցրեց նրան և միասին հալածեցին ապստամբ Արտաւազդ Մամիկոնեանին Հայաստանից «774 թ»։ Միացավ Արաբների դեմ ապստամբության և նահատակվեց Բագրևանդի ճակատամարտում «775 թ»։—Կանոն. 166. Ղև. լդ. Ասող. Բ. բ. Մխ. այրիվ. 19. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 89. Մին. համգ. 28. Վրդ. լթ, խդ.—սեռ. Սմբատայ՝ Ղև. լդ. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 91. Վրդ. խա, խդ. Մին. համգ. 29.—Տաշեան, Ցուց. 653 բ։

— 29. Սմբատ Արծրունի. իշխան Վասպուրականի. եղբայր Գրիգոր Արծրունու, որ շինացրել է Աղրակը (Ը դար.)—Սուտ-Շապհ. 37։

— 30. Սմբատ որդի Աշոտի, իշխան Վասպուրականի. Դուկանք գյուղում ջարդեց Արաբներին (Ը դար).—Ղև. ը։

— 31. Սմբատ (Թերևս որդի Բուրդկայ). Կարինից գերի տարին Ասորիք՝ Բուրդկայ որդի Գրիգորի հետ միասին 807 թ.—Սամ. անեց. 91։

— 32. Սմբատ (կամ Սարբաս), ճգնավոր որ մարգարե ձևանալով՝ խաբեց Լևոն Ե կայսեր և գրգեց նրան ջնջել եկեղեցական սուրբ պատկերները (814 թ).—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 181—3։

— 33. Սմբատ Բագրատունի, որդի Աշոտ իշխանապետի, իշխան Տարօնի. Սիւնեաց Սահակ իշխանի հետ միասին դուրս եկավ Հոլ ոստիկանի դեմ. բայց հաղթվելով երկուսն էլ մեռան պատերազմում (819—820 թ).—Ալիշան՝ Յուշիկք Ա. 426, 436։ (Սրա որդին է Բագարատ՝ որ Տարօնի իշխան կարգվեց 839 թ.՝ ըստ Յուշիկք Ա. 427. իսկ այս Սմբատ իշխանապետի աղջիկը՝ Սմբատ Խոստովանողի կինն է և Աշոտ Ա Բագրատունի թագավորի մայրը (Յուշիկք Ա. 436)։

— 34. Սմբատ (Συμβάτιος), որդի Լևոն Ե (813—820 թ) կայսեր. մայրն է Թէոդոսիա թագուհի, որ Արշաւիր Արծրունու աղջիկն էր. Լևոն Ե կայսրը այս Սմբատին դարձրեց իրեն գահակից և հաջորդ՝ անունն էլ փոխելով և դնելով Կոստանդին (813 թ)։ Միքայէլ Բ Թլուատը խլելով գահը՝ Լևոնին սպանեց և Սմբատ—Կոստանդինին էլ երեք եղբայրների հետ միասին ներքինացնելով վանք դրեց (820 թ)։—Պատմում են թե Սմբատը չքնաղագեղ ձայն ունէր, որ ներքինացման ժամանակ կորցրեց, բայց հետո վերստացավ։—Չամչ. Բ. 432. Տէր Սահակեան, Հայ կայսերք Ա. 180, 194, 333—4։

— 35. Սմբատ Թոնդրակեցի. Ծաղկոտն գավառի Զարեհա-

ւան գյուղից էր. ժամանակակից Յովհաննէս Դրասխանակերտցի («898—929 թ») կաթուղիկոսի (ըստ Ասողիկի) կամ Յովհաննէս Դ Ովայեցի («833—855 թ») կաթուղիկոսի (ըստ Մաղխասյանի և Զամչ. Բ. 895)։ Հաստատվեց Ապահունեաց Թոնդրակ գյուղում և սկսեց քարոզել մի նոր աղանդ, որ նույն գյուղի անունով կոչվեց Թոնդրակեցի։ Մերժում էր եկեղեցական նվիրապետությունը, խորհուրդները, հանդերձյալ կյանքը, հոգու անմահությունը, ոչ մեղք էր ընդունում և ոչ էլ մեղքի համար պատիժ։ Այս աղանդը մեծ հաջողություն ունեցավ և հետո անցնելով Մանանաղի գավառի Թուլայլ գյուղը, ինչպես և Խնուս, նոր ձևափոխությամբ կոչվեց Թուլայլեցի։ Հայ եկեղեցին զինվեց նրանց դեմ և ամեն կերպ հալածեց։ Սմբատը հավանաբար սպանվեց։ Ըստ Գր. Նարեկացու Կճաւի թղթի մթնաբան պատմության, Սմբատի մահը հետևյալ ձևով է տեղի ունեցել.—Սմբատը իրեն Քրիստոս էր համարում. մոլեռանդ հավատացյալ մեկը զայրացած հարձակվում է նրա վրա, սպանում ասելով. «Քրիստոս երեք օրից հարություն առավ. ես քեզ սպանեմ ու թաղեմ. դու 30 օրից հարություն առ. թեև այդքան ուշ, բայց ես էլի կհավատամ և կընդունիմ որ դու Քրիստոս ես» (Սարգիսեան, Ուս. Թոնրակեց. աղանդին 70)։—Գիրք թղ. գր. Ասող. Գ. գ. Մագ. թղ. կէ, կը. Հայապ. 550—551.—տես. Սմբատայ՝ Գիրք թղ. գր. Մագ. թղ. կէ, կը. Շնորհ. թղ. 269։ Ըստ Մխ. այրիվ. 69 կոչվում է Սմբատ Արլաբրայ և քարոզել է 821 թ։ Այսպես նաև ըստ Այրիվ. 19 ա Սմբատ Կիւրապաղատի թոռն էր և քարոզել սկսեց 821 թվին։—Սարգիսեան, Ուս. Թոնրակեց. աղանդին, էջ 62—80. տես և Սարգիս (№ 23) աղանդապետ։

— 36. Սմբատ Առանշահիկ, քաջ իշխան Աղուանից. հաղթեց Բաբան պարսիկ իշխանին, որ գրավել ու կոտորում էր Բաղաց երկիրը, Գեղամայ երկիրը ևն, ապա ձերբակալեց նրան և հանձնեց ամիրապետին, որից և մեծամեծ պատիվներ ստացավ (837 թ).—Սիսական 15 ա։

— 37. Սմբատ, որդի Ներսեհի և եղբայր Յովհաննէսի. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—տես. Սմբատայ՝ Օրբ. լը։

— 38. Սմբատ, հայր Մուշեղի, որ հիշվում է իբրև վկա Տաթևի 844 թվի կալվածագրում.—տես. Սմբատայ՝ Օրբ. լը։

— 39. Սմբատ Ապահունի, մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. զ։

— 40. Սմբատ *Մարացեան, մասնակցեց Մուշէի պատերազմին «851 Թ».—Արծր. Բ. դ։*

— 41. Սմբատ *Տարօնեցի, Աշոտ Բագրատունու և Աշոտ Արծրունու հետ միացած սպանեցին Տաճատ Անձևացուն, որ Արաբների բանակին առաջնորդում էր Սասունցոց դեմ «851 Թ».—Սուտ-Շապհ. 55, 56։*

— 42. Սմբատ *Բագրատունի Աբլաբաս, որդի Աշոտ Մսակերի. պատանդ էր Բաղդադում. ազատ արձակվեց «822 Թ» և հօրը մահվանից հետո նշանակվեց սպարապետ Հայոց «824 Թ»։ Միացավ պարսիկ Սևադայ իշխանի հետ և պատերազմեց Հոլ ոստիկանի դեմ, բայց հաղթվեց։ Բուղա ոստիկանի առաջնորդը դարձավ Հայաստանը ավերելու և կոտորելու զավաճան գործում։ Ժիրաք զորավարի հետ գրավեց Տփղիսը։ Բայց ինքն էլ բռնըվեց ու տարվեց Բաղդադ, ուր չարչարվեց հավատքի համար, բայց չուրացավ և մեռավ բանտում, կոչվելով* խոստովանող։ *Նանայ ասորու արաբերեն «Մեկնութիւն Յովհաննու» աշխատությունը թարգմանել է տվել հայերենի։ Իր որդիներն են՝ Աբաս (որի համար էլ կոչվում է ըստ Արաբաց՝ Աբլաբաս, որ է հայր Աբասի), Աշոտ Ա (հիմնադիր Բագրատունեաց հարստութեան), Սմբատ, Շապուհ, Մուշեղ և Սահլ։—Յհ. կթղ. իե, իզ. Արծր. Գ. Թ, ժա, ժզ, ժե. Ասող. Բ. բ. Կիր. 43, 44. Վրդ. խբ—խդ. Նանայ, էջ 4, 7, 246. Մխ. այրիվ. 19. Մխ. անեց. գ. Յայսմ. մրտ. 3. Մին. համգ. 29. Սամ. անեց. 91—94. Օրբ. լզ. Ջուղ. 65.—սեռ.* Սմբատայ՝ *Յհ. կթղ. իե—իէ. Յհ. կթղ. հյր. 276. Ասող. Բ. բ. Գ. բ. Արծր. Գ. ժա, ժզ. Կիր. 44. Վրդ. խբ, խգ. Սամ. անեց. 92, 94, 95. Քհնպ. 272. Մխ. ու. իթ (=իը). Նհպաք. 94. Մին. համգ. 30. Յայսմ. մրտ. 3. Օրբ. լզ.—Ջարբ. Թրգմ. 621. Մարկվարտ, Բագր. 116. Ալիշեան՝ Մատեն. հնագ. Ա. 139. Խալաթ. Արաբ. մատ. 99, 101 (կոչվում է Աբու-Աբբաս Վալի՝ ըստ Արաբաց)։*

— 43. Սմբատ *Բագրատունի, իշխան Մոկաց. սիրելի լինելով Բուղային, ազատագրեց Վասպուրականցի շատ գերիներ «852 Թ».—Արծր. Գ. բ.—սեռ.* Սմբատայ՝ *անդ։ (Մարքվարթ, Բագր. 66 համարում է Սմբատ (№ 42) Աբլաբասի հետ նույն)։*

— 44. Սմբատ *պարսիկ, հազարապետ արքունի և փեսա Վարդ կեսարի։ Վարդ կեսարը տեսնելով Վասիլի հաջողությունները՝ մտադրվեց սպանել Վասիլին։ Վասիլը միացավ Սմբատի հետ և չարաչար սպանեցին Վարդին։ Բայց երբ Սմբատը տեսավ,*

որ Միքայէլ Արբշիռ կայսրը Վասիլին դահակից ընտրեց, նոր զավ սարքեց նրա դէմ։ Բռնվեց, կուրացվեց և աքսորվեց (866 թ)։—Զամչ. Բ. 694—5, Տէր Սահակեան, Հայ կայսրք, Ա. 206—7, 351։

— 45. Սմբատ Բագրատունի, որդի Սմբատ Խոստովանողի, եղբայր Աշոտ Ա Թագավորի.—Թալիշի 867 թվի արձանագրության մեջ ասվում է «յիշխանութեան Աշոտոյ և ի տէրութեան Սմբատայ հայոց սպարապետին» (Այրարատ 144=Շողակաթ 177)։—Արծր. Գ. ժա։

— 46. Սմբատ հայ իշխան Բիւզանդական արքունիքում. դավակից եղավ Վասիլին՝ սպանելու համար կայսեր, որով Վասիլը դարձավ Հունաց կայսր (867 թ)։—Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. 193։—Անշուշտ նույն է՝

— 47. Սմբատ (Συμβάτιος), եղբայր Վասիլ Ա կայսեր Հունաց.—Justi 315 ա (№ 29), Տէր Սահակեան, Հայ կայսրք Ա. 345։

— 48. Սմբատ ի Տուրայ գեղոյ. իբրև վկա հիշվում է Տաթևի 881 թվի կալվածագրում.—Օրբ. լթ։

— 49. Սմբատ հայ իշխան Պոլսում. Կոստանդին անունով նույն իշխանի հետ՝ Լևոն Իմաստասէր կայսեր կողմից դեսպան ուղարկվեց Տարօնի իշխան Գրիգորիկի մոտ՝ կարգավորելու համար նրա վեճը Գրիգոր Արքայիկի ('Αρκαΐκος) որդիների հետ (898 թ)։—Զամչ. Բ. 726, Տէր Սահակեան, Հայ կայսրք Ա. 366։

— 50. Սմբատ իշխան Սոկաց. հաշտեցրեց Վասպուրականի Աշոտ իշխանին Գուրգէն Ապուպելճի հետ (Թ դար).—Արծր. Գ. ժէ.—սեռ. Սմբատայ՝ Արծր. Գ. ժէ։—Ըստ Մարկվարտ, Բագր. 67 Սմբատ (№ 42) Խոստովանողի որդին է. հմմտ. № 43։

— 51. Սմբատ Հայկազուն իշխան Աղուանից. սպանեց իր ազգական Ապու-Ալին (Գօլին). (Թ դար).—րց. ի Սմբատայ՝ Կղկնտ. Գ. իը, իգ։

— 52. Սմբատ իշխան Արևելից (իմա Աղուանից). իր զորքով օգնական գնաց Սմբատ Ա Թագավորին՝ պատերազմելու համար Ափխազաց Դատաս Թագավորի դեմ (շուրջ 908 թ)։—Սուտ—Շապհ. 81։

— 53. Սմբատ Բագրատունի, որդի Սահակի՝ եղբոր Սմբատ Ա Բագրատունու. պատանդ գնաց Ափշին ոստիկանի մոտ «896 թ». մորը աղաչանքով ազատ արձակվեց. Յուսուփ ոստիկանի արշավանքի ժամանակ անձնատուր եղավ և թույնով սպանվելով թաղվեց Դարօնքում «911 թ»։—Յհ. կթղ. լե, լէ, խզ. Օրբ. լէ։

— 54. Սմբատ Ա Թագավոր Բագրատունեաց «890—914 Թ». որդին էր Աշոտ Ա-ի. գնացել էր նվաճել Գուգարքը, երբ լսելով իր հոր մահը, դարձավ Շիրակավան՝ գահ բարձրանալու։ Թագավորությունը եղավ «891 թվին»։ Նվաճեց Դուինը և բոլոր այն տեղերը, որոնք դեռ մահմեդական իշխանների ձեռքի տակ էին։ Իր ամբողջ կյանքը անց կացրեց պատերազմելով ներքին ապստամբների և արտաքին թշնամիների դեմ։ Ներքին ապստամբներն էին իր հորեղբայր Աբաս սպարապետը և մանավանդ Գագիկ Արծրունին։ Վերջինս միացավ Ատրպատականի Ափշին և Յուսուփ ոստիկանների հետ և երկար ժամանակ պատերազմեց Սմբատի դեմ։ Յուսուփը Գագիկին թագավոր պսակեց և հիմնելով Վասպուրականի (Արծրունեաց) անկախ թագավորությունը, ոչ միայն ջլատեց ներքին ուժերը, այլ և կենտրոնական իշխանության դեմ մշտական սպառնալիք ստեղծեց։ Ծանր պատերազմներից հետո, որոնք ուժասպառ արին Բագրատունեաց նորածին պետությունը, Սմբատը վերջապես ընկճվեց և անձնատուր եղավ Յուսուփին. և հավատքը չուրանալով՝ չարաչար տանջանքներով նահատակվեց «914 Թ»։ Ի՞նքն է այն Սմբատ (№ 123) Բագրատունին, որ թաղվել է Վանեվանում, ըստ իր եղբայր Շապուհ սպարապետի արձանագրության (Սիսական 61)։ Մյուս կողմից նա թաղված է համարվում Օձուն գյուղում, ուր «մինչև այժմ կանգուն է իր մահարձանը» (Մովսէսեան, Լոռիի Կիւրիկ. պատմ. էջ 8)։—Կղկնտ. Գ. իբ, իգ. Յհ. կԹգ. լ, լա, լգ-խգ, խե, խը. Արծր. Գ. իբ, իգ, իը. Դ. բ, գ. Ասող. Գ. գ, դ. Մագ. Թղ. ժԹ. Սուտ—Շապհ. 65—68, 71—75, 80—85. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 71 (խառնում է Սմբատ Բ-ի հետ), 19. Սամ. անեց. 95, 96, 98, 99. Պամ. վր. ժգ. Կիր. 45, 46. Վրդ. խե, խզ. Անանուն ժմ. 15. Յայսմ. ապր. 16, մայ. 27. Օրբ. յգ, լէ. խ, խբ. Օրբ. ողբ 34. Նհպտք. 95. Մին. համգ. 30, 31, 32. Հաւաք. 13.—Սեռ. Սմբատայ՝ Ստեփ. սեան. 41. Անան. ապստ. 132 ա, 133 բ, 144 բ. Կղկնտ. Գ. իբ. Յհ. կԹգ. յոչ. լ, լա, լգ—ծ, ծգ, ծե. Սուտ-Շապհ. 66, 67, 71, 73, 82—85. Արծր. Գ. իա, իգ, իը. Դ. բ-գ, Թ. Ասող. Ա. ա, ե. Գ. գ—դ, իզ. Պամ. վր. ժգ. Սամ. անեց. 98, 99. Մխ. անեց. գ. Ուռհ. 3, 84. 86, 218. Միխ. տն. իԹ (=իը). Կիր. 46—48. Վրդ. խզ. Մագ. Թղ. կէ. Անանուն ժմ. 15. Յայսմ. ապր. 16, մայ. 27. Սմբ. պատմ. 21. Օրբ. լգ, լէ, խ, խբ, խգ, խԹ, ծբ, ծգ, ծԹ. Մին. համգ. 31, 32, 110. Նհպտք.

96.—Սմբատի՝ Օրբ. ողբ 36.—Զարբ. Թրգմ. 338,620. Վրաց աղբ-Ա. 92—93 (Սումբաթ), 202—3, Բ. 97։—Զամչ. Բ. 705—758։

— 55. Սմբատ Սիսական իշխանաց իշխան. Աշոտ (№ 29) իշխանի անդրանիկ որդին է և Վասակ իշխանիկի եղբորորդին։ Մայրն է Շուշան (№ 10)։ Ժառանգելով իր հորից Սիւնեաց իշխանությունը, պահեց իր համար Վայոց ձոր և Ջահուկ գավառները, իսկ մնացյալը թողեց Սահակ, Բաբկէն և Վասակ եղբայրներին։ Ամուսնացել էր Արծրունեաց մեծ նախարար՝ Գրիգոր Դերենիկի դուստր Սոփիա իշխանուհու հետ։ Ապստամբեց Սմբատ Ա թագավորի դեմ, բայց երբ նա 25,000 զորքով վրան եկավ, վախեց և հնազանդվեց «903 թ»։ Սմբատից իբրև նվեր առացավ Նախիջևան քաղաքը։ Սմբատի գերությունից հետո, միացավ Արծրունեաց Գագիկ թագավորի հետ, դիմադրեց Յուսուփ և Նըսր ոստիկաններին և պաշտպանեց իր երկիրը, որ սակայն շատ ավերվեց (923 թ)։ Թուրքերի օգնությամբ կռվեց Արաբների դեմ՝ ձեռք ձգելու համար Գողթն գավառը։ Շինել է Հերմոնի վանքը Եղեգիսում 936 թ. (Օրբ. խթ)։ Սրա որդին և հաջորդն է Վասակ իշխանաց իշխան, որ գահակալեց իբր 958—963 թ։—Յհ. կթգ. ծդ, ծզ, ծթ, կ, կէ. Արծր. Գ. իը. Օրբ. լգ, լէ, խբ, խէ—ծա, ծգ.—սեռ. Սմբատայ՝ Յհ. կթգ. խգ, խթ, ծ, կ, կե, կէ. Անան. ապստ. 143ա. Օրբ. լգ—լը, խ, խգ, խդ, խէ, խթ—ծբ, ծգ, ծը—կ։—Սիսական 15—16։—Նույն պիտի լինի նաև այն Սմբատ իշխանաց իշխանը, որ հիշված է իբրև ժամանակակից Անանիա Մոկացի («946—968 թ») կաթուղիկոսի.—Անան. ապստ. 132ա։

— 56. Սմբատ, եղբայրն է Գագիկ, որդիներն են այս նույն Վասակ իշխանի Սիւնեաց, որ տիրեց 958—963 թ. թվի թե վաղամեռիկ եղան քան իրենց հայրը.—սեռ. Սմբատայ՝ Օրբ. ծթ.—Սիսական 16 ա։

— 57. Սմբատ Բ թագավոր Բագրատունեաց («977—990 թ»). որդի Աշոտ Գ Ողորմածի. կոչված է «Տիեզերակալ»։ Իր կյանքը անցկացրեց խաղաղությամբ և աշխարհաշինությամբ. պարիսպով պատեց Անին, որ գեղեցիկ շենքերով զարդարեց։ 979 թվին հիմնեց Տաշիրքի Կիւրիկեան թագավորութիւնը, որի հրավարտակը տես Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 25։—988 թվին գնաց Ափխազաց դեմ պատերազմի՝ իբրև օգնական Տայոց Դաւիթ կիւրապաղատի և առացավ Սակուրէթ բերդը։ Հիմնեց Անիի կաթուղիկէն, որ սակայն չկարողացավ վերջացնել. շինությունը շարունակեց իր որդի Գագիկ Ա-ի կինը՝ Կատրամիդէ թագու-

հին, սկսելով 1001 թվին և ավարտեց 1011 թ (Արձ. Շիրակ 67)։ —Ասող. Գ. ժա, ժբ, ժթ, իը. Սամ. անեց. 102—4. Մխ. անեց. գ. Ուռհ. 3, 17, 149. Կիր. 50. Վրդ. իը. Մխ. այրիվ. 19, 71. Անանուն ժմ. 15. Սմբ. պատմ. 77. Մին. համղ. 33, 115. Առաք. պատմ. 479. Նհպտք. 97.—Սմպատ՝ Օրբ. ժմ. 11, 12.—սեռ. Սմբատայ՝ Լաստ. բ. Ուխտ. Ա. ա. Ասող Գ. ժա, իը—լ. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 100, 103—5. Յայսմ. նոյ. 18. Ուռհ. 3. Մին. համղ. 34. Դրնղ. 302. Նհպտք. 97.—Սմպատայ՝ Օրբ. ժմ. 11,12.—Վրաց աղբ. Բ. 97. Ջամչ. Բ. 850—871.—Իր մի արձանագրությունը 987 թվից, որով նվիրում է Թալինի բաժը՝ տես Շահխաթ. Բ, 61, Այրարատ 144, լավագույնը Բանաս. 1903, էջ 27։—Իր նկարը քանդակված է Հաղբատի տաճարի պատի վրա. նկարագրությունը տես Արարատ 1886, 494> Մովսեսեան, Լոռի Կիւր. թգ. 31.—Իր մի ենթագրյալ առնապատկերի մասին՝ տես Շիրակ 49ա։

— 58. Սմբատ Ա. նախորդ Սմբատ իշխանի եղբոր որդին է, որով լինում է Սմբատ որդի Սահակայ՝ որդւոյ Աշոտի՝ որդւոյ Փիլիպպէի Ա (†848 թ)։ Կինն է Շահանդուխտ (№ 2) դուստր Աղուանից Սևադայ իշխանի։ Խնամացել էր Գագիկ Ա թագավորի հետ՝ կին տալով նրան իր անդրանիկ որդի Վասակի դուստր Կատրամիդէն։ Իբրև իշխան հիշված է դեռ 963 թվին, երբ Հաժիս և Ծացարդ գյուղերը նվիրեց Տաթևի վանքին։ Այս թվից հետո հայտարարում է իրեն թագավոր և հիմնում է Սիւնեաց վասալ թագավորությունը։ Մեռավ շուրջ 998 թ. և թաղվեց Տաթևի վանքում։ Իրեն հաջորդեց որդին Վասակ։—Օրբ. ծբ, ծգ, ծդ, ծը. Օրբ. ողբ 37.—սեռ. Սմբատայ՝ Օրբ. ծգ—ծե, ծը, ծթ. Սիսական 16, 524—5։ (Սիսական 110 եւ կա մի Արձ. 990 թվից այս Սմբատի անունով, բայց սխալմամբ գրում է «որդի Վասակայ» փխ. Սահակայ.—Վասակը Սմբատ Ա-ի որդին է և ոչ հայրը)։

— 59. Սմբատ, որդի Ապուղանի, եղբայր Թոռնիկի և Վահանի. հոր մահից հետո ժառանգեցին Տարօնը. փախադրվեց Պոլիս և ապրեց այնտեղ (Ժ դար).—Ջամչ. Բ. 726, 818, Justi 315 բ։

— 60. Սմբատ Շահանշահ, հիշված է ՆԾԵ=1006 թ. Տեկորի մոտ Ագարակ գյուղի կոտրատած մի արձանագրության մեջ (Շիրակ 126). բայց այս թվին այլ եւս Սմբատ շահանշահ չկա. վերջինը Սմբատ Բ-ն էր, որ մեռել է «990 թ». մահվանից հետո կարելի՞ էր արդյոք ասել «վասն Սմբատայ շահանշահի արևուն»։

— 61. Սմբատ Թոռնեցի մագիստրոս Բագրատունի, իշխան

*Ջահանի (Վասպուրական). Աշոտ Գ (Ողորմած) թագավորի կողմից և Լևոն վարդապետի հետ միասին պատգամավոր գնաց Զմշկիկ կայսեր մոտ, երբ նա իր բանակով մտել էր Հայաստան «973 թ»։ Գնաց Պոլիս, ուր ստացավ մագիստրոս և պրոտոսպաթար տիտղոսները։ Վերադառնալով Հայաստան, շինեց Բագնայրի վանքը՝ 1009 թ. (ըստ Օրբ. ժմ. 12) կամ 1012 թ. (ըստ Սամ. անեց. 105), իսկ ըստ Առաք. պատմ. 480՝ 1040 թ.—Կիր. 50. Մխ. այրիվ. 72. Չամչ. Բ. 845—7. Ազգապ. 1127։—Հայտնի չէ թե նույն է արդյոք հաջորդի հետ, ինչպես ունի Չամչ. բայց հմմտ. նաև Ազգապ. 1174 և Մագ. Թղ. յոդ. էջ* իա, իե։

— 62. Սմբատ *մագիստրոս (կամ մաժիստռոս), որդի Վահրամ (†«1045 թ») Պահլավունի սպարապետի. զորավար Գագիկ Ա Բագրատունու. հոր հետ միասին գնաց օգնական Դավիթ կյուրապաղատին Գարսից Մամլան ամիրայի դեմ պատերազմում «998 թ»։ Հիշված է նաև 1010 թ.—տես.* Սմբատայ՝ *Ասող. Գ. խա, Ալիշան՝ Շնորհ. էջ 12 (տախտակը)։*

— 63. Սըմպատ, *եղբայրներն են Արաս և Աշոտ. սրանք որդիքն են Գագիկի, որի շնորհիւ Անանիա առաջնորդ Հոռոմոսի ստացավ վանքի համար հարկերի ազատություն, փախուստի համար ապաստարան, փայտի ու խոտի պաշար են 1013 թ.—Շիրակ 33։*

— 64. Սմբատ *թագավոր հայոց «1020—1042 թ». մատենագրության մեջ կոչված է միշտ Յովհաննէս-Սմբատ (№ 138). իսկ ինքը իր արձանագրության մեջ կոչում է իրեն Սմբատ շահանշահ։ Նմանապես Վրաց աղբ. Բ. 97 կոչում է նրան Սմբատ որդի Գագիկի, թագավոր հայոց. բայց թվականը սխալմամբ դնում է 1015 թ։*

— 65. Սմբատ *(գրված Սմպատ) արքայուն, հիշված է Տարսայիճ իշխանի հետ մի կրճատ արձանագրության մեջ՝ Եախճի 1043 թ.—Ազգագր. հանդ. Գ. 168։*

— 66. Սմբատ *Բ թագավոր Սիւնեաց, որդի Աշոտ (№ 54) իշխանաց իշխանի։ Վասակ Ա թագավորը արու զավակ չունենալով՝ իրեն ժառանգ նշանակեց այս Սմբատին, որ իր քրոջ (անունն անհայտ) որդին էր։ Աշոտը ուներ երկու որդի՝ Սմբատ և Գրիգոր, որոնք իրար ետևից Սիւնեաց գահը բարձրացան Վասակ Ա-ից հետո։ Սմբատը դեռ իբրև իշխան հիշվում է 1017 թ. (Արձ. Սիսական 214) և 1019 թ. Տաթևի կալվածագրում. իսկ իբրև թագավոր հիշված է 1043 թ. (Արձ. Սիսական 235) և 1058*

թ։ Սմբատն էլ անզավակ էր, ինչպես և իր եղբայրը՝ Գրիգոր, որ հաջորդեց իրեն։—Օրբ. ծե, ծէ, ծը, ծթ.—տես. Սմբատայ՝ Վրդ. ծթ. Օրբ. հ.—Միսակյան 16 ար։

— 67. Սմբատ թագավոր Կյուրիկյան. Աշոտ Գ. Ողորմած թագավորի թոռն է և որդի Գուրգէնի, որ ավելի հայտնի է Կյուրիկէ Ա (դահակալած 979—989 թ) անունով։ Սմբատը հիշված է նախ 991 թվին, երբ Գուրգէն թագավորի հետ միասին կառուցին Հաղբատի Ս. Նշան եկեղեցին, ինչպես հայտնի է լինում հետևյալ արձանագրությունից. «Ի թուին Հայոց ՆԽ, Սմբատ և Գուրգէն հայոց թագաւորք կանգնեն զՀաղբատու Սուրբ Նշան եկեղեցին» (Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. էջ 77)։ Նույնի գրեթե կրկնությունն է՝ Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 17, Ազգագր. հանդ. է, 396։ Սմբատը դահակից եղավ իր եղբոր՝ Դավիթ Անհողինին, որ Լոռի թագավորն էր 989—1048 թ? Օգնեց Դավիթին տիրելու համար Տաշրաց, Տփղիսին ևն։ Հորեղբայրն է Կյուրիկէ Բ թագավորի և Հրանույշ (№ 3) թագուհու։ Հիշված է Կյուրիկէի հետ՝ Սանահնի մի արձանագրության մեջ 1063 թ. (Ազգագր. հանդ. Գ. 299, արտագրելով Շահխաթունուց, որովհետև արձանագրությունը այժմ կորած է)։ Կյուրիկէի և Սմբատի նկարը քանդակված է Սանահնի Ամենափրկիչ եկեղեցու արևելյան պատի վրա՝ դրսից՝ այս վերնագրով (Ազգագր. հանդ. Գ. 293, է. 384)։

ԿԻՒՐԻԿԷ ԹԱԳԱՒՈՐ ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ

Հիշված է նաև Հաղբատի «Թևաւոր խաչի» արձանագրության մեջ 1089 թ. «թագաւորաց մերոց Կիւրիկէի, Սմբատայ և Դաւթի» (Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. 79, Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 70, Ազգագր. հանդ. Գ. 325)։ Սմբատ թագավորի անթվական դամբանը գտնվում է Հաղարծնի վանքում, ուր է նաև Գագիկ թագավորի դամբանը (Արցախ 367)։—Ասող Գ. լ. (գրծ. Սմբատաւ), Վրաց պատ. Ա. 207—8 (հմմտ. ծան. 27). Justi 316ա. Մովսէսեան, Լոռի թգ. 48։—Հաճախ շփոթվում է Սմբատ Բ Բագրատունի թագավորի հետ. այսպես՝ վերև հիշվածներից առաջինը Սմբատ Բ-ն է, որ շինել է Հաղբատի եկեղեցին. Սանահնի նկարը իր վերնագրով նույնպես Սմբատ Բ-ն է. իսկ մնացյալը Կյուրիկէի Սմբատ թագավորն է կամ դժվար է որոշել։

— 68. Սմբատ պարոն, հայր Բագարատի. պահապանն էր Անիի՝ Ալփասլանի ժամանակ.—Սմբ. պատմ. 76 (Ջամչ. Բ. 978 հակառակն է դնում). տես և Սմբատ № 72։

— 69. Սմբատ պատրիկ, որդի Վահրամի. դարձել է կրօնաւոր և կոչվել Յովհաննէս «ըստ վերակոչման հրաժարելոյ իմոյ ի ծփանաց կենցաղոյս»։ Նոյն տարին էլ Յովհաննէս գրչին գրել է տվել մի Աւետարան, որի թվականն է «ի հինգհարիւրորդի քսան...», միավորը չի կարդացվում. ուստի Յովսէփեան (Շողակաթ 194) դնում է 1071—1080 թ։ Բայց իրոք գրիչը թվականը մանրամասնում է՝ ասելով. «ի թագաւորութեանն յունաց Միխայլին որդւոյ Տուկիծին... յամս աստուածապատիւ և հոգևոր տեառն Գրիգորիսի և տեառն Գէորգայ»։ Սրանցից Միխայէլը (է) նստել է 1071—1078 թ., Գրիգորիսը (որ Գրիգոր Բ Վկայասէրն է) 1066—1105 թ., իսկ Գէորգը (որ Գէորգ Գ. Լոռեցին է) 1067—1072 թ։ Այսպեսով թվականը կարող ենք սահմանափակել միայն 1071—2 թվերի միջև։—Շողակաթ 194. Ձեռ. Կարին. 18. Rapport Arm. 50, 57։ Նոյն պիտի լինի և հաջորդը՝

— 70. Սմբատ կիւրապաղատ հայոց, 1072 թ.—Rapport Arm. 57։

— 71. Սմբատ, հայր Հասանի, որ մի խաչքար է կանգնեցրել Հաւուցթառում, 1081 թ.—Շողակաթ 182։

— 72. Սմբատ որդի Բագարատի. նախապես իշխան էր Անիում. ապա գնաց Ուռհա և եղավ դուքս Ուռհայի, երբ հաջորդ Վասիլի «1083 թ»։ Նստավ վեց ամիս և Փիլառտոսի ձեռքով կուրացվեց.—Ուռհ. 223. Զամչ. Գ. 8.—սեռ. Սմբատայ՝ Ուռհ. 223—4 (տես և № 68)։

— 73. Սմբատ, Իւանէի հետ գրաւեց Խունանը 1128 թ.—Օրբ. ժմ. 17 (գրված Սմպատ)։

— 74. Սմբատ Օրբելեան, որդի Իւանէի. հիշված Սանահնի արձանագրութեան մեջ 1128 թ.—Justi 316ա (№ 51)։ Հմմտ. № 80։

— 75. Սմբատ, որդի Վասակի, որ Խաւախան բերդի (Գանձասար) տերն էր. սպանվեց պատերազմում Դեսմոյ որդի Հասանի ձեռքով (շուրջ 1147 թ).—Հայապ. 387։

— 76. Սմբատ պարոն և տեր Պապեռոնի. որդի Լամբրոնի Հեթում Ա իշխանի և թոռ Օշին Ա-ի. եղբայրն է Օշին Բ Սեբաստոսի և հորեղբայր Ներսէս Լամբրոնացու։ Կովեց Հունաց կայսեր բանակում Թորոս Բ-ի դեմ և Մսիսի առաջ սպանվեց (1151 թ)։ Սրան հաջորդեց Բակուրան որդին, որի քույրը՝ Ռիթա, Լևոն Բ-ի մայրն է։—Սմբ. պտմ. 96.—սեռ. Սմբատայ՝ Սմբ. պտմ. 99. Պտմ. լմբ. 226. Սիսուան 71, 80, 81. Հայապ. 414. Rapport Arm. 47. Տաշեան՝ Ցուց: 638։

— 77. Սմբատ, որդի Յովհաննէս-Սենեքերիմի, որ Անիի Սմբատ իշխանի եղբոր Գրիգորի քեռայրն էր. մեռել է 1166 թ.— Justi 316 ա (№ 50)։—Արդյոք նո՞յն է հաջորդի հետ։

— 78. Սմբատ, որդի Սենեքերիմ Ա թագաւորի Սիւնեաց. եղբայր Գրիգորի և Սևադայի. քույրն է Կատա։ Սենեքերիմին հաջորդեց անդրանիկ որդին Գրիգոր Բ թագաւոր Սիւնեաց (№ 158), որ մեռավ 1166 թ. նույն թվին մեռավ նաև Սմբատ եղբայրը։—Օրբ. ծը, ծթ.—սեռ. Սմբատայ՝ Օրբ. ծթ. կ. Սիսական, էջ 16բ։

— 79. Սմբատ (Արուխ), հունաց կայսեր պալատականներից էր. միաբանական խնդրի առթիվ կայսեր կողմից ուղարկվեց Շնորհալու մոտ «1167 թ».—Շնորհ. պատճ. 109. Ալիշան՝ Շնորհ. և պրգյ. 415։ [Չամչ. Գ. 99 առանձին անձեր է դնում Սմբատ և Արուխ. սակայն Շնորհ. պատճ. 109 և Ազգապ. 1411 չունին Արուխ, այլ միայն Սմբատ. իսկ Ալիշանը իբրև մի անձ է ընդունում Սմբատ Արուխին]։

— 80. Սմբատ Օրբելեան, որդի Իւանէի և թոռն Սմբատի. սպանվեց 1177.—Justi 316 ա (№ 53)։ Հմմտ. № 74։

— 81. Սմբատ (գրված Սմպատ) իշխան, հիշված է Գանձասարի մոտ Գառաւաձորի մի արձանագրության մեջ 1181 թ.—Շահխաթ. Բ. 379, Արցախ 180։

— 82. Սմբատ, որդի Համազասպ մարզպանի. իր որդիքն են Քուրդ, Հասան, Համազասպ և Սարգիս, որոնք հողեր են նվիրել Սանահնի վանքին 1191 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 283 և 282, Է, 383։

— 83. Սմբատ, որդի Հասանի (№ 23) Հաթերիցոյ (Սակառեանց), եղբայրներն են՝ Վախթանկ իշխան Խաչենի, Վասակ, Գրիգոր, Խոյդան և Գրիգորիս. օգնել են Մխիթար Գոշին շինելու Նոր-Գետիկի վանքը (Գոշավանք) 1191 թ.—Արձ. Սմբատեանց՝ Գեղարք. 173, Շահխաթ. Բ. 367, Արցախ 350։

— 84. Սմբատ, աշխարհական անուն Ներսէս Լամբրոնացու.—Տաշեան, Ցուց. 638, Ազգապ. 1383։

— 85. Սմբատ պարոն և տեր Սարաւանդի քարի. եղբայր Կոստանդին թագավորահոր. Հեթմեանց տոհմից։ (Այս Սմբատի որդին է Ճօֆրի՝ տեր Սարվանդի քարի և թոռն է մյուս Սմբատ՝ տեր Սարվանդի քարի)։ Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։—Սմբ. պատմ. 111. Միսուան 209 բ։—Տես և № 108։

— 86. Սմբատ *պարոն և տեր Կուկլակայ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. էջ 112։*

— 87. Սմբատ, *հայր Խալաթ Քանաքեռցու, որ շինեց Հաղարծնի վանքի մի եկեղեցին 1194 թ. և Քանաքեռում դնելով մի հող՝ նվիրեց Հաղարծնի վանքին 1206 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 370, Արցախ 366, Սմբատեանց՝ Գեղարքունիք 182, 183։*

— 88. Սմբատ, *հայր Գրիգորի, որ տերն էր Ոստնի. շինել է Ցախաքարի եկեղեցու դուռը 1211 թ.—Արձ. Սիսական 156 (չունի թվականը), Արրտ. 1888, 305։*

— 89. Սմբատ, *որդի Ուքանի և հայր Նաջմադնի, որ իր Սմբատ և Վահրամ որդիների հետ նվերներ են արել Հաղբատի վանքին և պատարագ են ստացել 1211 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 57, Ազգագր. հանդ. Է, 405։—Թերևս սրա շիրիմն է այն անթվ. գերեզմանը, որ գտնվում է Հաղբատում. տես* Ուքան № 2։

— 90. Սմբատ, *նախորդի թոռը և եղբայր Վահրամի.—տես անդ։*

— 91. Սմբատ *մեծ իշխան. հարազատ Պաղտինի և Բարսեղ քահանայի. հիշված է 1212 թ.—Զարբ. Հին դպր. 753. Ճանիկեան, Հնութ. Ակնայ 81։*

— 92. Սմբատ, *որդի Սարգսի (№ 117) Համազասպեանց, որ մեռավ պատերազմում և թաղվեց Սանահնում. Սմբատն էլ իր կնոջ Աղուտի հետ մի հող նվիրեց եկեղեցուն և մի խաչքար կանգնեցրեց նրա հիշատակին 1215 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 282, Է. 383։*

— 93. Սմբատ, *նվիրել է Հոռոմոսի վանքին Մարանց մարգի կեսը և թաղվել է վանքում 1217 թ.—Շիրակ 23։*

— 94. Սմբատ, *հայր Քուրդի և տէր Բարսեղի. այս Քուրդը Հաղբատի վանքում գերեզմանի տեղ է ստացել և վրան եկեղեցի է շինել ու պարսպով պատել. բայց դեռ կիսկատար՝ մեռել է. նրա որդիքը* Սմբատ *և Ուքան վերջացրել են և մի խաչքար կանգնեցրել 1220 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 58, Ազգագր. հանդ. Է, 405։*

— 95. Սմբատ, *նախորդի թոռն է. տես անդ։*

— 96. Սմբատ *(գրված Սճպատ), որդի Ջաջուռ Բ-ի. Խաղբակեանց տոհմից. վաղաժամ մեռավ և հայրը կանգնեցրեց նրա շիրմի վրա մի խաչքար՝ Հաւապտուկ բլրի գլխին, 1224 թ.—Խաղբակեանք 32—33, Արցախ 182։*

— 97. Սմբատ, իր եղբայրների Գրիգորի և Վահրամի հետ հիշվում են իբրև «պատրոն և տէր Հոռոմոսի վանքի», Արձ. ԺԳ դարի սկիզբը.—Շիրակ 17, 21։—Հեճուպ Գրիգոր և Սմբատ հիշված են՝ Արձ. Շիրակ 20 (անթվ). իսկ Հեճուպ Գրիգոր հիշված է 1228 թ. իբրև տեր Հոռոմոսի (Արձ. Շիրակ 23), Սմբատ և Գրիգոր հիշված են 1195 թ (Շիրակ 22), Սմբատ և Գրիգոր Հեճուպ 1198 (Շիրակ 21)։

— 98. Սմբատ որդի Քրդի, մայրն է Խորիշահ. կինն է Զմրուխտ խաթուն (№ 2). մի ջաղացք էր նվիրել իր կնոջը. երբ մեռավ՝ կինը Զմրուխտը նույն ջաղացքը նվիրեց Հոռոմոսի վանքին, 1234 թ.—Արձ. Շիրակ 24, Արար. 1870, 298։ (Հոր և մոր անունից կարելի է հետևցնել թե Արագածոտն գավառի Քուրդ իշխանի որդին է)։

— 99. Սմբատ որդի Գրիգորի և թոռն իշխանաց իշխան Դուլթի Շաթոռկանց. հիշված է 1236 թ.—Ցովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 25. Խաղբակեանք 18։

— 100. Սմբատ? հայր Գրիգորի, որ երևի նվերներ է արել Գոշավանքին, որի համար էլ ստացել է պատարագ 1237 թ.—Արձ. Արցախ 352, Ազգագր. հանդ. Ժ, 29։

— 101. Սմբատ, հայր Գրիգորի, որ Խաչէնի Մեծարանց վանքին հողեր է նվիրել 1241 թ.—Բանասէր, 1901, էջ 138։

— 102. Սմբատ, հայր Անագովլէի, որ նրա հոգուն ի հիշատակ՝ հարկից ազատ տուն ու հող է նվիրել Հոռոմոսի վանքին 1247 թ.—Շիրակ 20։

— 103. Սմբատ, որդի մեծ Վախտանգի, երկուսն էլ կողմնապետ Արցախի.—Սմբատի որդին է Գրիգոր հեջուբ, որին սնուցեց Խանէ աթաբէգը (†1227 թ), իսկ նրա որդի Աւագը (†1250 թ) արու զավակ չունենալով՝ իր տան խնամակալ կարգեց Գրիգորին (ավելին տես Գրիգոր հեջուբ, Ցուել.)։

— 104. Սմբատ (գրված Սնպատ), որի որդիքը Վահրամ և Հասան, մի հող են նվիրել իրենց հոր հիշատակին Մեծարանց վանքին 1251 թ.—Բանասէր, 1901, էջ 143։

— 105. Սմբատ (գրված Սնպատ), իր եղբայրների հետ, իրենց և իր կնոջ Կատայի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Խաչէնի Քարագլուխ գյուղում, 1253 թ.—Արձ. Արցախ 166։

— 106. Սմբատ, եղբայր կամ այլ մերձավոր Ցովհաննէս արքաունի, որ կալվածներ է նվիրել Հոռոմոսին իր, իր ծնողների, ինչպես և սույն Սմբատի համար 1253 թ.—Շիրակ 26։

— 107. Սմբատ, հայր Համազասպի և պապ Սաթաւի (Սաթոյի), որ իր Խորիշահ կնոջ հետ՝ Հաղբատի վանքին 55 դահեկան են նվիրել, Համազասպ վանահոր ժամանակ՝ 1243—57 թ.— Անթվ. Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 29։

— 108. Սմբատ որդի Ճօֆրի իշխանի (†1261 թ) Սարվանդի քարի. եղբայր Օշինի և Կոստանդինի.—Կոստանդին պայլի եղբոր Սմբատի թոռն է. հիշված է 1259 թ.—Թորոս աղբ. Բ. 437, Սիսուան 209 բ։—Տես և № 85։

— 109. Սմբատ (գրված Սմպատ), որդի Հեջուբի. հրամանով Ջալալ-Դոլայի (†1261 թ) մի այգեստեղ է տվել Գրիգորին, այն պայմանով որ Գրիգորն էլ Մեծարանց վանքից ստանա տարեկան 4 պատարագ, երկուսը Սմբատին և երկուսը Թամարին, որ երևի Սմբատի կինն է։—Անթվ. Արձ. Բանաս. 1901, 135։

— 110. Սմբատ, որդի Հեթում Ա-ի (†1270 թ) և եղբայր Լևոն Գ-ի.—Դարդել 16։

— 110բ. Սմբատ իշխան Արարատի. հիշված է Խոշաքի, Գոօշի և Սադունի հետ՝ 1270 թ.—Կանոն. 180, 186. Ջաղ. 23։

— 111. Սմբատ իշխանաց իշխան, որդի Լիպարիտի (№ 1) Օրբելեանց. մայրն է Ասփա. եղբայրներն են Էլիկում, Իվանէ, Փախրադուլա, Տարսայիճ, ինչպես հիշված է Լիպարիտի մեծ արձանագրության մեջ 1222 թ. (Սիսական 187—8)։ Կինն է Ռուզուքան. հաջորդեց եղբոր՝ Էլիկումին։ Ճարպիկ, իմաստուն և լեզվանի մարդ էր. 5 լեզու գիտեր (հայ, վրացի, ույղուր, փարսի և մուղալ)։ Գնաց Կարակորում «1251 թ», ուր Թաթարաց Մանկու ղանից ստացավ ենջու տիտղոսը և ոսկի փայիզա (սա նրանց պատվի տախտակն էր, որից մի նկար տես Սիսական 93)։ Թաթարիստանում մնաց 3 տարի և պարգևներ ու հողեր ստանալով վերադարձավ Սյունիք։ Նորոգեց շատ վանքեր, ի մէջ այլոց Տաթևը. շատ վանքեր էլ հարկից ազատեց։ Երկրորդ անգամ գնաց Թաթարիստան (1258 թ. ըստ Սիսականի) և ավելի մեծ պարգևների արժանացավ։ 1261 թվին շինել է Նորավանքը, ուր թողել է և մի մեծ արձանագրություն (Օրբ. կդ=Սիսական 189)։ 1265 թվին գյուղ ու հողեր է նվիրել Դադիվանքին (Արձ. Շահխաթ. Բ. 361, Արցախ 205). հիշված է նաև Հալիձորի նույն թվի մի արձանագրության մեջ (Ազգագր. հանդ. Դ. 41)։ Կոչված է «արքայ» երկու արձանագրության մեջ (Սիսական 154, 190)։ Մեռավ Թաւրիզում, իշխանությունը թողնելով իր եղբոր՝ Տարսայիճին։ Իշխել է 1253—1273 թ։ Հորեղբայրն է պատմիչ Ստե-

փառնոս Օրբելեանի, որին որդեգրել էր փոքր ժամանակ։—Օրբ. կր, կդ, կե.—Սմպատ՝ Օրբ. ժմ. 27.—սեռ. Սմբատայ՝ Օրբ. կդ, կե, հ.—Սմպատայ՝ Օրբ. ժմ. 28, 31.—գրծ. Սմբատաւ՝ Օրբ. կե.—Արձ. Շահխաթ. Բ. 354. Սիսական 142, 164, 171, 190, 197, 198, 203, 232, 526 (ուր գրված է (Սմպաթայ), 525.—ընդարձակ տես Սիսական 93 բ, Շողակաթ Ա. 28—29, 41, 45. Գալուստեան Աշ.՝ Մոնղոլ. շրջ. պատմ. էջ 31—36։ Դամբարանը գտնվում է Նորավանքում այս արձանագրությամբ (Սիսական 192).

ՍՄԲԱՏ ԱՐՔԱՅԻՆ Է ՏԱՊԱՆՍ ՅԻՇԵՑԷՔ Թ. ՁԻԲ.

Այս դամբարանը շինել է Տարսայիճ եղբայրը՝ Սմբատի մահվանից երկու տարի հետո, ինչպես արձանագրում է ինքը՝ դամբարանի դրան վրա. «Կամաւն Այ. ես Տարսայիճ իշխանաց իշխան շինեցի զդամբարանս յաղագս եղբաւր իմոյ Սմբատայ արքային. վասն որոյ աղաչեմ յիշել. Թուին ՉԻԴ» (Սիսական 190)։—Սմբատի որդին է Բուրթել, որի համար է կանգնեցրել Սմբատը Նորավանքում մի խաչքար (Սիսական 201, անթվական)։

— 112. Սմբատ, քեռորդի Օշին մարաջախտի. մայրն է Կեռան՝ քույր այս Օշինի. եղբայրներն են Կոստանդին Թագավոր Հայոց և Օշին. հիշված է 1274 թ.—ՀԱ 1898, 246 և 248։

— 113. Սմբատ, նվերներ է արել Ակոռի Ս. Յակոբ վանքին 1274 թ.—Արարատ 471։

— 114. Սմբատ Գունդստաբլ («1208—1276 թ»), որդի Կոստանդին պայլի և երեց եղբայր Հեթում Ա. թագավորի, տեր Պապեռոնի։ Մայրն է Պէպրիչէ. կինն է Թէոֆանո. որդիներն են՝ Հեթում, Օշին, Կոստանդին։ Ուներ նաև մի թաթար կին, որին պարգև էր ստացել Մանգու խանից և նրանից էլ ունեցավ մի որդի, որ կոչվում է Վասիլ կամ Վասակ Թաթար։ Երբ Հեթումը բարձրացավ Ռուբինեանց գահը, Սմբատն էլ դարձավ սպարապետ (1224 թ), հաջորդելով իր հոր՝ Կոստանդին պայլին։ Պատգամավոր գնաց Թաթարիստան «1247 թ», շնորհավորելու համար Koïouk խանի գահակալությունը, ուր պատրաստեց նաև հայ-թաթարական բարեկամական դաշինքը։ Թաթարիստանից դարձավ «1250 թ»։ Տարսոնի մոտ, հին Պապեռոնում շինեց մի եկեղեցի (այժմ Չանտըր), որի ընդարձակ ոտանավոր արձանագրությունը 1256 թվից՝ տես Սիսուան 73։ Եգիպտացոց դեմ հաղթական անեղ պատերազմում, Սարվանդի քարի մոտ, այնպես հալածական քշեց նրանց դեպի Մարաշ, որ ձին իր սրարշավ արշավանքի մեջ մի ծառի զարնվելով՝ Սմբատը ծանր վիրավորվեց

և մի քանի օրից մեռավ՝ 69 տարեկան հասակում, 50 տարի սպարապետության պաշտոն վարելուց հետո («1276 Թ»)։ Պատմիչ և օրենսգետ է։ Գրել է Տարեգիրքը, Դատաստանագիրք («1265 Թ») և թարգմանել է Անսիզք Անտիոքայ։ Սմբատը այս վերջին գիրքը թարգմանել է 1265 թվից առաջ. բնագիրը կորած է և գիտությունը շնորհակալ է նրան այս իրավաբանական կարևոր գրքի պահպանության համար։ Իրանից ունինք նաև Մեկնութիւն կամ համառօտութիւն Յովհ. Դամասկացու «Յաղագս գոյի էութեան» գրքի, որ թարգմանել է Բագարատ Մամիկոնեանը (ձեռագիրը տե՛ս Tübingen, էջ 111. ՀԱ 1888, 175 բ)։ —Սմբ. դատ. 13, 56, 78. Անսիզք 3, 93. Սմբ. պատմ. 110, 116, 123—4, 137. Ձեռ. օշ. 98 ա. 101 ա. Յիշատ. (Karst, Դատան. էջ Ь) և Սոկր. յոջ. 36. Մխ. այրիվ. 82. Մխ. աս. յիշ. և յաւել. Կիր. է, ծզ. Մաղաք. ար. 17. Զուգ. 81.—Սմպատ՝ Կիր. խզ. Մաղաք. ար. 16, 17.—սեռ. Սմբատայ՝ Սմբ. պատմ. 21, զտ. 14, 50. Անսիզք 3, 93. Կիր. խզ.—Սմպատայ՝ Կիր. լա, խզ.—գրված է Սիճիբադդ՝ Հեթ. պատմ. իզ. (անշուշտ լտ. m=մ կարդալով ni=ճի).—Զարբ. Հին դպր. 769—775, Թրգմ. 324, 383, 567. Աթան. յոջ. ժե. Յովնանեան՝ Հետազօտ. նախն. ոմկ. Ա. 163—232. Հայապ. 481.—Իր ձեռագիր ստորագրությունը տե՛ս Սիսուան 71. Իր ձեռագրից մի նմուշ REA 8, 25 և մի ուրիշ նմուշ ու ճաշոցի մեջ՝ իր գրած ստանավոր հիշատակարանը տես Սիսուան 71—73, ՀԱ 1901, 310—311։ —Ցետ մահու հիշատակութիւն է 1286 Թ. (Ձեռ. Վասպ. 109)։

— 115. Սմբատ իշխան, որդի Կոստանդին իշխանի, եղբայր Բակուրանի և Կոստանդի. գրել տվեց մի Աւետարան Յովհաննէս արքայեղբոր՝ 1278 Թ.—Սիսուան 146, Զարբ. Հին դպր. 92։

— 116. Սմբատ պարոն, որդի Կոստանդինի՝ տեառն Սարվանդի քարի. իր Օշին եղբոր հետ հիշված է 1278 Թ. (ավելին տես Կոստանդին № 77)։—Ձեռ. Վասպ. 102։

— 117. Սմբատ որդի Յովհաննէս երեցի, որ Կիլիկիայում օրինակեց Մաշտոցը՝ 1276—1286 թվերին (տես Յովհաննէս (№ 354) երեց անվան տակ)։ Սմբատը գերի էր ընկել թշնամիների ձեռքը և հայրը հիշում է նրան ասելով «զՍմբատն զգերի վարեալն զոր և ազատեսցէ զնա Քս. Ած. իւր հայրախնամ փառուքրնի»։ Սմբատի եղբայրն է Յոհաննէս սարկավագ։—Ձեռ. Հալէպի, Ա. 179 բ։

— 118. Սմբատ, «բարեմիտ պատանի», որի ձեռքով Սաճեսք

կանգնեցրել է մի խաչքար իր և իր եղբոր հիշատակին՝ Վայոց ձորի Գուլլիդուզ գյուղում, 1291 թ.—Սիսական 141։

— 119. Սմբատ քահանա Քաջկոնց, իր հոգեորդի և աշակերտ Հեթում քահանային (№ 19) գրել տվեց մի Աւետարան՝ Մամեստիայի Ս. Թորոս եկեղեցում, 1297 թ.—Թորոս աղբ. Բ. 347, Սիսուան 546 ա։

— 120. Սմբատ, իշխան Մամեստիոյ Բոթա բերդի. Ստեփաննոս Դ կաթուղիկոսի արտոնությամբ ամուսնացավ Յոպպէի Գուիտոն իշխանի Զապել անուն աղջկա հետ, որ իր երրորդ աստիճանի ազգականն էր։ Տասը տարի հետո, երբ մի քանի զավակներ էլ ունեին, ծանուցին իրեն թե իր ամուսնությունը ապօրինի է և թե հայոց կաթողիկոսի արտոնությունը անզոր է։ Խեղճ իշխանին ստիպեցին զիջել պապին, որ մերժելով հայոց կաթողիկոսի արտոնությունը՝ նրա ամուսնությունը չեղյալ հայտարարեց և ապա իր նոր արտոնությամբ եղյալ հայտարարեց «1298 թ»։—Ազգապ. 1729, 1757—9 (ըստ Կալանոս 412)։

— 121. Սմբատ Գ. թագավոր Հայոց Ռուբինեան, «1296—1299 թ». որդին էր Լևոն Գ-ի և եղբայր Հեթում Բ թագավորի։ Ծնվել է 1276 թ. (Ձեռ. օշ. 100 ա). ամուսնացավ Գուիտոն Իբելինեանի դուստր Զաբելի հետ, որ Հեթում Ա թագավորի Մարիամ աղջկա դուստրն էր։ Երբ Հեթում Բ իր Թորոս եղբոր հետ Պոլիս այցելության գնաց, աթոռը ժամանակավորապես Սմբատին հանձնեց։ Սմբատը փառավոր հանդես կազմակերպեց իր թագավորական օծման համար (Սիսուան 225 բ) և երբ Հեթում և Թորոս եղբայրները վերադարձան Պոլսից, Սմբատը երկուսին էլ բռնեց և Կիլիկիայից արտաքսեց։ Երբ նրանք Կիպրոսից, Պոլսից և վերջապես Ղազան խանից պաշտպանություն էին որոնում, Սմբատը երկուսին էլ բանտարկեց Բարձրբերդում, ուր Թորոսը սպանվեց և Հեթումը կուրացվեց։ Սրա վրա, Հեթումի մյուս եղբայրը՝ Կոստանդին, Սմբատին գահից գցելով բանտարկեց, Հեթումին արձակեց և ինքը գահ բարձրացավ։ Այդ միջոցին Հեթումի աչքերը բացվեցին և ժողովուրդը ուզեց նրան թագավորեցնել։ Կոստանդինը միացավ Սմբատի հետ և ուզեց դեմ գնել Հեթումին. բայց սա երկուսին էլ բռնեց և Պոլիս աքսոր ուղարկեց «1299 թ»։ Սմբատը աքսորից ազատվելով Պոլսից Կիլիկիա վերադարձավ՝ աթոռը ձեռք ձգելու համար «1309 թ»։ Բայց կուսակիցներ չգտնելով ետ դարձավ և իր թափառական կյանքը կնքեց Եւրիպ (Negroponte) կղզում «1311 թ» (Ազգապ. 1815)։—

*Իր թագավորության միջոցին Սմբատը ասորի Ծարած բժշկին՝ հայազգի Թորոս քահանայի օգնությամբ կազմել է տվել Անասնաբուժական մի գիրք, որի բնագիրը մնում է մինչև այժմ (Ձեռ. Թուր. էջ 137). տես Թորոս № 62։ Գրել է նաև Թուղթ Հռոմի Բոնիֆակիոս Ը (1294—1303 թ) պապին՝ օգնություն խնդրելու համար (Տաշեան, Ցուց. 110)։ Սմբատի մի ձեռագիր Շարականի մասին տես Դրնդ. 599։—Գամ. կիլ. 212. Գամ. լմբ. 243. Ցիշատ.* (Karst, *Դատաս. էջ* ե). *Հեթ. Ժմկ. Անանուն Ժմ. 28. Վահր. ոտ. 236. Սմբ. պատմ. 126—127, 136. Սամ. անեց. շար. 153—4, 163—6. Մխ. համգ. 46, 48, 49.—սեռ.* Սմբատայ՝ *Սամ. անեց. շար. 154—5. Նհպտք. 106. Մխ. համգ. 48.*—Սմբատի՝ *Սամ. անեց. շար. 154.—Զարբ. Հին դպր. 90, թրգմ. 156, 740, 741. Շահազիզ, Պատմ. պատկ. 115։*

— 122. Սմբատ *քարեպաշտ ոմն, հայր Բարսեղ վարդապետի (ԺԴ դար).—սեռ.* Սմբատայ՝ *Օրբ. հկճռ. է։*

— 123. Սմբատ *Բագրատունի, հիշվում է Վանեվանից շիրիմների շարքում (թվականն անհայտ).—Օրբ. լգ։ Տես և № 54։*

— 124. Սմբատ *(գրված Սմպատ) ոմն, իբր վկա ստորագրում է Քանաքեռում, Պարսեմայի այգու վաճառման արձանագրության 1306 թ.—Շահխաթ. Բ. 159, Այրարատ 298, Բանաս. 1903, 32։*

— 125. Սմբատ *մեծ իշխան, որդի Օշինի՝ որդւոյ Կոստանդին Լամբրոնացու. տեր Ասկուռաս և Պինակ բերդերի։ Հոր մահից հետո Հեթում Բ թագավորի հրամանով կարգվեց մարաջախտ թագավորության 1295 թ. (ըստ Չամչ. Գ. 293)։ Մասնակցեց Սսոյ «1307 թ» և Ատանայի «1317 թ» եկեղեցական ժողովներին։—Սմբ. պատմ. 137. Չամչ. Գ. 310. Ազգապ. 1787, 1819։ (Ըստ Սիսուան 85 մարաջախտ կարգվեց 1307 թ.՝ եղբորը՝ մարաջախտ Հեթումի մահից հետո, որին և հաջորդեց. մեռավ 1314 թ. իսկ էջ 115 և 485 մեռավ 1316 թ);*

— 126. Սմբատ *որդի Լիպարիտի, յազգէն Աւրպէլեանց, գերի էր տարվել Մար, ազատվեց ու վերադարձավ. երկու տարուց մեռավ կինը* Ոխբոզ. *Նրա հիշատակին Սմբատը հողեր նվիրեց Հերհերի վանքին 1317 թ.—Արձ. Սիսական 114։*

— 127. Սմբատ *իշխան, բերդակալ Սմբատակլայի. ներկա եղավ Սսի «1307 թ.» և Ատանայի «1317 թ» եկեղեցական ժողովներին.—Չամչ. Գ. 310, Ազգապ. 1787, 1819։—Սմբատ (№ 129) Բ Գունդստաբլի հետ նույն է։*

— 128. Սմբատ որդի Յովհաննէս երեցի և եղբայր Յովհաննէս դպրի, որ օրինակեց Աստուածաշունչը՝ 1319 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 20։

— 129. Սմբատ Բ գունդստապլ, որդի Լևոն գունդստապլի և թոռն Սմբատ Ա գունդստապլի, տէր Սմբատակլայի.—հիշված է 1320 թ. ըստ Միսսուան 73, 76, 519 բ. գրել է տվել մի շքեղ Աստուածաշունչ՝ Յովսէփ դպրին (Թորոս ադր. Բ. 296)։—Տես և № 127։

— 130. Սմբատ, որդի իշխանաց իշխան Սմբատի, եղբայրներն են Բուրթել, Ելիկում և Ջեսար Օրբելեանց. վերջինը շինեց Վայոց ձորի հովտումը, որ այժմ կոչվում է Սելիմի քարվանսարա, 1332 թ.—Միսակյան 164։

— 131. Սմբատ, որդի Պաղտին մարաջախտի, եղբայր Կոստանդին Դ թագավորի. ծնվել է 1333 թ.—Միսսուան 413։

— 132. Սմբատ պարոն, հիշված է Գլաձորի վանքում գրված մի Աւետարանի հիշատակարանում 1334 թ.—Թորոս ադր. Բ. 375։

— 133. Սմբատ Կիլիկեցի, պատմիչ. գրել է Կիլիկեան անցքերի և Եգիպտացոց 1335 թվի արշավանքի պատմությունը.—Զամչ. Գ. 335։

— 134. Սմբատ որդի Լիպարիտի Բ (№ 2), եղբայր Ելիկումի, Պածածի և Տէր Յովհանի. Տարսայիճ Օրբելեանի եղբայր Իւանէի (†1260 թ) թոռն է. հողեր է նվիրել Սպիտակաւոր Ս. Աստուածածին վանքին 1339 թ.—Ալիշան Սիսական 209, Միսակյան 138։

— 135. Սմբատ, որդի Լիպարիտի և հայր Բենայի, որ իր կնոջ՝ Սուսայի հետ իրենց Գանձաթաղի հողը նվիրել են Թանատի վանքին, 1348 թ.—Միսակյան 122։

— 136. Սմբատ, զինեց Կիպրոսի Պետրոս թագավորին և խնդրեց Կոմիկոսի մաքսատան տեսչի պաշտոնը 1367 թ.—Միսսուան 342 ա։

— 137. Սմբատ որդի Նանիկի, տէր Որոտան բերդի. Թուրքերը գրավեցին այս բերդը և Սմբատին հայրենազուրկ արին 1386 թ.—Ալիշան Սիսական 230։

— 138. Սմբատ Թագավորազն, որի որդին է Վախթանկ և թոռը Հասան (№ 70). Վախթանկի կինն է Նանա և Հասանի կինը Ռուզուքան. այս երկուսը (Հասան և Ռուզուքան) Ս. գրքեր են նվիրել Գեղարդայ վանքին.—Արձ. թիֆ. անհայտ (Այրարատ 340)։

— 139. Սմբատ, *որդի Լիպարիտի՝ որդւոյ Իւանէի՝ որդւոյ Լիպարիտի (ԺԴ դար).—Օրբ. կե—Հմմտ. № 134։*

— 140. Սմբատ *երեց Սսոյ Ս. Դաւիթ եկեղեցու. նվիրեց 100 դրամ և եկեղեցու Աւետարանը վաճառումից ազատեց (1293 և 1407 թվերի միջև)։—Թորոս աղբ. Բ. 303։*

— 141. Սմբատ *իշխան Օրբելեան, որդի Իւանէի, եղբայր Բուրթէլի, և երկուսն էլ թոռ Բուրթէլի։ Պեշգինէ Օրբելեանի հայրն է։ Գրիգոր Տաթևացին (Նոտարք 37) սովի ժամանակ գնաց սրա մոտ 1390 թ. և պաշտպանություն գտավ։ Միրանշահի որդի՝ Թաւրիզի Օմար իշխանի ստիպմամբ ուրացավ հավատքը։ Երբ սուլթան Ահմատը եկավ Բաղդադից և գրավեց Թաւրիզը, Սմբատն էլ գնաց նրա մոտ, ստացավ պատիվներ և Անդեղակոթ գյուղը։ Ուղարկվեց Սմրղանդ, բայց քիչ ժամանակ հետո վերադարձավ Սիւնիք և ապաշխարելով վախճանվեց 1421 թ. (ըստ Մեծոփ.՝ Վրաց երկրում, ուր փախել էին այլազգիների երկյուղից).—ըստ Սիսական 92 (տես ճյուղագրական ծառը) մեռել է 1410 թ։—*Սմբատ՝ *Աղամ. 230, 271. Մեծոփ. 33, 67, 72, 118.—*Սմպատ՝ *Ցայսմ. ապր. 27.—սեռ.* Սմբատայ՝ *Մեծոփ. 117.—բցռ.* ի Սմբատայ՝ *Մեծոփ. 34.—Չամչ. Գ. 443, Սիսական 96, Այրարատ 323, Ազգապ. 2035։*

— 142. Սմբատ *արքայազուն, վաղամեռիկ եղավ. Ննջում է իր տապանաքարը Ծղուկ գավառի Որոտն գյուղում 1430 թ.—Սիսական 218, Ազգագր. հանդ. Գ. 154։*

— 143. Սմբատ *որդի ամիր Գուրջիբէկի, եղբորորդի Զաքարիա Գ կաթուղիկոսի Աղթամարի։ Սմբատի մայրն է Դունիա խաթուն, կինն է Բէկի խաթուն, քույրն է Խանումխաթուն, որդին Իսկենդեր, որ Գրիգոր Աղթամարցու հայրն է։ Սմբատը սերում էր Սեֆեդինեան տոհմից, ուստի մոր կողմից Գագիկ Արծրունի թագավորական ցեղից էր համարվում։ Երբ Զաքարիա Գ Աղթամարի կաթուղիկոսը՝ հենված Ջիհանշահի բարեկամության վրա, տիրեց հայոց կաթուղիկոսական երկու աթոռներին (Էջմիածին և Աղթամար), մտածեց նաև հայոց թագավորական գահն էլ նորոգել, որին արժանավոր ժառանգ համարեց սույն Սմբատին։ Իր կենդանությամբ չկարողացավ իր այս միտքը իրագործել. բայց իր հաջորդը՝ Ստեփաննոս Դ կաթուղիկոս, անշուշտ հավանությամբ Ջիհանշահի, մեծ հանդեսով Աղթամարում թագավոր օծեց նրան (1466 թ.), որի համար էլ թագավորօրհնեք մի Մաշտոց էլ արտագրվեց։ Սմբատ թագավորը միայն ըն-*

տանեկան նշանակություն ունեցավ և ոչ մի դեր չխաղաց։— Հուսպ. 42, Նոտարք 226, Ակինեան՝ Գաւազանագիրք 111—113, Rapport Belgique 145. Ձեռ. Վենետ. Բ. 419։

— 144. Սմբատ, որդի Փիրհամզայի. մի հող է նվիրել Գանձասարի վանքին 1471 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 375, Արցախ 177։

— 145. Սմբատ, խոջա Վանեցի, որդի տանուտեր Խդրշահի, որ իր եղբայր Բարխմշահի հետ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 146. Սմբատ պարոն, որի և նրա թոռան հոգու փրկության համար Խաչատուր երեցը մի խաչքար է կանգնեցրել (Գյուքարաի ավերակ եկեղեցում) 1489 թ.—Սիսական 111։

— 147. Սմբատ (գրված Սմպատ), մանուկ պարոն, որի դամբարանը գտնվում է Դարարաի Ս. Աստվածածին եկեղեցում, 1494 թ.—Ազգագր. հանդ. Գ. 165։

— 148. Սմբատ (գրված Սմպատ), իշխանաց իշխան Վայոց Ձոր նահանգի, որդւոյ Տարսայիճի. Սմբատի որդին էր Եղիշէ արքեպիսկոպոս, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 585, Սիսական 150 ա (ձեռագրի նմանահանության մեջ)։

— 149. Սմբատ, քրոջ որդի Առոմի, որ Ագրակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526/7 (տես և Հարիր № 4)։

*ՍՄԲԱՏԱՆՈՅՇ, իգ. <նախորդ Սմբատ անունից + անոյշ բառով բարդված։ Մի անգամ միայն ունինք՝

— Սմբատանոյշ, դուստր Սմբատ Բագրատունու. Երուանդ Բ գերեց նրան՝ իր քրոջ՝ Սմբատուհու հետ, ի վրեժ Սմբատի, որ փախցրել էր մանուկ Արտաշէս արքայորդուն Պարսկաստան (68 թ)։—Խոր. Բ. լէ։

ՍՄԲԱՏԱՒԱԳ, տր. որա աղավաղումն է Սմբատաւաղ (երկիցս գրված այս ձևով), պարոն. իր կնոջ Ավթայի հետ նվերներ են արել Գոշավանքին և պատարագ ստացել—Անթվ. Արձ. Ազգագր. հանդ. Ժ, 32, Արցախ 351 (վերջինս դրում է Արտաւաղ)։

*ՍՄԲԱՏԻԿ, տր. <նախորդ Սմբատ անվան փաղաքշական ձևն է։

— 1. Սմբատիկ գյուղացի ձիավոր զինակիր Սմբատ Վրկան մարզպանի՝ Բուշանաց դեմ պատերազմում «608 թ».—Սեբ. իզ։

— 2. Սմբատիկ, Հունաց Լևոն Զ Իմաստասեր հայազգի կայսեր զորավարներից մեկն էր. տիրելով Ապուլիա քաղաքին,

նվաճեց Իտալիայ մեծ մասը (890 թ). բայց երկու տարի հետո մեռնելով՝ աշխարհակալության ընթացքը առկախ մնաց։—Տէր Սահակեան, Հայ կայսէրք, Ա. 239։ Նոյն է՝

— 3. Symbatikos պրոտոսպաթար Լեոն Զ կայսեր հունաց. գրավեց Benevent-ը (891 թ) և աշխատակցեց Վասիլեան օրինագրքի կազմության. կոչվում է նաև Symbatios և Sabbatis.—Justi 316 բ։

* ՍՄԲԱՏՈՒՀԻ, իգ. <Նախորդ Սմբատ անունից՝ ուհի իգական մասնիկով։

— 1. Սմբատուհի, դուստր Ենանոս Բագրատունու. կին Սահակայ՝ որդւոյ Ջաջուռ Արծրունու (Ա դար Ն. Ք.)—Արծր. Ա. գ։

— 2. Սմբատուհի, դուստր Սմբատ Բագրատունու (տես Սմբատանոյշ).—Խոր. Բ. լէ.—սեռ. Սմբատուհեայ՝ Խոր. Բ. կգ։

— 3. Սմբատուհի, դուստր Աշոտ Բագրատունու, կին Սահակ Արծրունի իշխանի և մայր Գրիգոր-Դերենիկի Ա, որ իր ուխտական զավակն էր և որին նվիրեց Աշատայ վանքին (Ը դար).—Սուտ-Շապհ. 37, 38։

† ՍՄԲՈՒԼ, ար. <հյ. սմբուլ ծաղկի անունից, որ պարսկերենից փոխառյալ բառ է։ Պարսկերենում էլ سنبل sunbul, որ բուն նշանակում է «յակինթ» ծաղիկը, նաև իբրև անձնանուն է գործածվում. օր. Sunbul անձ արար (Իբն-ի-Բատուտա, II, էջ 25), Sunbul անձ հնդիկ (անդ 413)։ Հնում ավանդված չէ մեր մեջ. բայց գործածական է այժմ։

ՍՄԳՈՒԿՍ, իգ. ծագումն ինձ անհայտ. հիշված է մի խաչքարի վրա 1529 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 532)։

ՍՆՆԿԵՒԱԳ. ար. ծագումն անհայտ. գուցե անձնանուն էլ չէ և պետք է կարդալ «սարկաւագ»։ Մի անգամ գտնում եմ Կուաշի 1101 թվի մի արձանագրության մեջ. «Կոշա տանուտէրուքս դատաւորն ւաղէրէյն Սննկեւագն թափեցին զՆաջուր առուն» (Բանաս. 1903, 27)։

ՍՈԶԿ, ար. ձևով անստույգ, ծագումն անհայտ. մի անգամ հիշատակված է՝

— Սոզկ? Աշտարակեցի, իր մի այգին նվիրել է Ս. Աստուածածին եկեղեցուն (թիվը անհայտ).—Արձ. Այրարատ 251 (Նիգ գավառում, Բաշ-Ապարանի մոտ, Ցամճլու գյուղում)։

ՍՈԼԹԻ, իգ. ծագումն ինձ անհայտ. գործածական է այժմ Ղարաբաղում. բայց չի համարվում Սուլթան անվան հետ նույն, ըստ որում Սուլթան արական է Ղարաբաղում, իսկ Սոլթի իգ-

Հնից ավանդված եմ գտնում սեռ. Սօլթին, իգ. թիւր անհայտ (Ջեռ. Վաստ. 450)։

*ՍՈԼԻ*, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշված է 1655 թվի մի արձանագրության մեջ՝ Այրարատ 340։

†*ՍՈԽԱԿ*, ար. <հյ. սոխակ թռչունի անունից. հազվագյուտ նոր անուն. տես Խորհ. Հայաստ. 1932 թ. փետր. 3, վերջին էջի հայտարարությանց մեջ։

**ՍՈԿՐԱՏ*, ար. <հուն. Σωκράτης անունից, որ ծագում է σῶς «անեղծ, առողջ, անվթար»+κράτος «ուժ, զորություն, կարող» բառերից։ Տառադարձված է նաև Սոկրատես։ Այս անունով հայտնի են Սոկրատ նշանավոր փիլիսոփան (Ն. Ք. 468—400), Սոկրատ Սխոլաստիկոս պատմիչ, ունի Եկեղեցական պատմություն, որ Եւսեբիոսի Եկեղեցական պատմության շարունակությունն է և նրա նման թարգմանված է հայերենի։ Մեր մեջ հնում գործածված չէ. այժմ երբեմն պատահում է։

**ՍՈՂԲԱԹ*, ար. <արաբ. صحبت şohbat «ընկերակցություն, մտերմական խոսակցություն» բառից. մեր մեջ իբրև անձնանուն գործածված եմ գտնում 1611 թ. Սաղպաթ ձևով (Դրնղ. 162)։

Սողիկ տես Սողոմոն։

**ՍՈՂՈՄԷ* կամ *ՍՈՂՈՎՄԷ*, իգ. (ծագումը. տես Սողոմոն, որի իգականն է. բուն նշանակում է «խաղաղ»)։ Հրէական անուն է, որ հիշատակված է այս ձևով Մրկ. ժե. 40 և ժզ. 1։ Այս անունով հայտնի են Սողոմէ՝ մայր Որդւոց Որոտման՝ Յակոբոս և Յովհաննէս առաքելոց (Մաթ. ի. 20), և Սողոմէ՝ դուստր Հերովդէսի, որ գլխատել տվեց Յովհաննէս Մկրտչին (Մաթ. ժդ. 3—12)։ Բացի առաջինից (Մրկ. ժե. 40 և ժզ. 1) մյուս բոլոր տեղերում Սողոմէ անունը չէ հիշված, այլ «մայր» կամ «դուստր» ակնարկությամբ (ֆրանս. Salomé, անգլ. Salome, ռուս. Саломея, Соломония)։ Այժմ կա Սողոմէր և Սողամէր, որոնք կազմված են մայր> մէր բառից ժողովրդական ստուգաբանությամբ։ Բայց գործածական է նաև Սալոմէ՝ ռուսական ձևով։

— 1. Սողոմէ դուստր Տրդատի. Կոստանդիանոս կայսեր առաջարկով եղավ կին Րէժի (Ռև), որ Վրաց Միհրան թագավորի որդին էր։ Այս խնամությամբ Տրդատ և Միհրան հաշտություն կնքեցին իրար հետ։ Ռև և Սալոմէ բնակվում էին Ուջարմայում. Սալոմէ Ուջարմայեցին ներկա էր Վրաց առաքելուհի Նունէի մահվան ժամանակ և Պեռոժաւր Սիւնեցու հետ միասին՝ նրա բերանից երկուսով գրի առին նրա կյանքը։—Գամ. վր. է,

ժա.—սեռ. Սողոմեայ՝ Գամ. վր. ժա.—Սողոմոնի! Գամ. վր. ը.—րց. ի Սողոմեայ՝ Գամ. վր. ժր.—Վրաց պտմ. Ա 168 (Սալոմէ), 174—5: Տես և Mourier, Hist. de Géorgie, էջ 113, Justi, էջ 260 բ:

— 2. Սողովմէ Մոկացի, անդամալույծ կին, Երուսաղէմում, Ս. Կույսի տեսիլքի առաջ, Տեառնընդառաջի տոնի փոփոխման առթիվ հրաշքով բժշկվեց! (560 թ).—Շիր. քրոն. էջ 72. Տաթև. ձմ. ժգ. Տաշեան՝ Ցուց. 3 բ՝ ըստ Գր. եպս. Արծրունեաց Թուղթ ի Հայս: (Տաթև. դնում է Յուստինոս կայսեր ժամանակ, այն տարին, երբ Մակար պատրիարք Երուսաղէմի (նստել է 564—575 թ) հաջորդեց Յոստոսին. իսկ Գր. եպս. Արծրունեաց՝ Յուստինոս կայսեր 33րդ տարին, որ լինում է 560 թ. (ըստ որում Յուստինիանոս Ա նստել է 527—565 թ):

— Ավելի ուշ հիշված ունինք Սողոմէ 1585 թ (Ձեռ. Վասպ. 703), Սողովմէ 1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 48), Սօղով 1602 թ. (Ձեռ. Վասպ. 808), Սուղում 1678 թ (Ձեռ. Թեհր. 6 բ=ՀԱ 1935, 396), Սողոմէ 1756 թ. (Տաշեան, Ցուց. 596 ա):

— 3. Սողովմէ ար! գրիչ. հիշված է 1730 թ.—Տաշեան, Ցուց. 518 բ:

*ՍՈՂՈՄՈՆ, ար. <եբր. שלמה Šəlomo անվան հուն. Σολομών տառադարձությունից (ավելի սովորական է Σαλωμών): Նույնը գրվում է նաև שלמה Saləmā, שלמון Saləmōn. Ծագում է שלם šlm=արաբ. سلم slm արմատից, որ նշանակում է «ամբողջական, անվթար, անվնաս, կատարյալ»: (Սրա հետ հմմտ. մովաբ. Salamanu (անուն թագավորի), եգիպտ. Ršpu-Šaramana (աստված), բաբել. Šullummā անձնանունը (Gesenius 836—7): Այս անվան իգականն է Սողոմէ, որ տես առանձին: Հները Սողոմոն մեկնում էին «խաղաղարար». հմմտ. Ա Մնաց. իբ. 9 «Ահա ծնցի քեզ որդի և նա եղիցի այր հանգստեան և հանգուցից զնա յամենայն թշնամեաց շուրջանակի. քանզի Սողոմոն անուն է նորա և զխաղաղութիւն և զհանդարտութիւն տաց ի վերայ Իսրայէլի յաւուրս նորա»: Ըստ այսմ նաև Առաք. 680 ա «Սաղօմօն, որ թարգմանի խաղաղարար».—Շնորհալին Սողոմոնի Իմաստության (գրքի) ոտանավորում ասում է.

Աստուածեղէն հոգւոյն ի սմա,
Խաղաղութեանն անուն արքայ:

Տաթև. հարց. 440 «Սողոմոն խաղաղութիւն թարգմանի»: Իբրև օրինակ անձնանվան հիշված է Թր. քեր. 44 Սողոմոնը և Խոր-

քեր. 179 Սաղոմոն ձևով: Օտար ձևերն են եբր. Salomon, արաբ. سليمان Suleymān են: Այժմ գործածական է մեր մէջ Սողոմոն, կրճատ Սողօ, Սուղի, Սողիկ ձևերով: Առաջինից ունինք Սողոյեան ազգանունը (Արթվին), երկրորդը գործածական է Ղարաբաղ, երրորդից ունինք Սողիկեան ազգանունը (Խարբերդ): Այս անունով հայտնի է Սողոմոն Իմաստուն, որդի Դաւթի, թագավոր Հրէից (Ն. Ք. 1082—975), հեղինակ մի քանի գրքերի, որոնք անցել են Ս. Գրքի մէջ (Երգ երգոց, Գիրք Առակաց, Իմաստութիւն Սողոմոնի, Ժողովող կամ Եկլեսիաստէս):

— 1. Սողոմոն եպիսկոպոս Մոկաց, ժամանակակից Ներսէս Բ Աշտարակեցի կաթողիկոսի («548—557 թ»), որ ի մէջի այլոց գրում է նաև նրան և զգուշացնում Նեստորականներից.— տես. Սողովմոնի՝ Գիրք Թղ. ժգ:

— 2. Սողոմոն եպիսկոպոս Մարդաղեայ, անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի «726 թ».—Ազգապ. 839:

— 3. Սողոմոն վարդապետ և առաջնորդ Մաքենոցաց վանքի. կոչվում է «հարանց հայր». մասնակցեց նախորդի հետ Մանազկերտի եկեղեցական ժողովին «726 թ»: Եղավ ուսուցիչ Ստեփաննոս Սիւնեցուն «†735 թ». հյուրընկալեց Վահան Գողթնացուն «736 թ»: Ինքն է որ առաջին անգամ խմբագրել ու գրել է մի մեծ Տօնական, որ հայ և օտար սրբերի վարքերի հավաքածոն է և հասնում է մինչև 747—750 թ: Այս է որ Մխ. այրիվ. 66 ասում է. «Հայր Սողոմոն արար զՏօնականն ի Մաքենիս 696 թ»: Այս Տօնականն է, որ և ուրիշ բառով կոչվում է Ճառընտիր:—Կղկնտ. Բ. խը. Գ. ժգ.—Օրբ. (տպ. 1910), էջ 99, 101, 132.—Ձեռ. Վենետ. Բ. 437, 470. Ձեռ. Դաշեան, 92 ա. Ջամչ. Բ. 426. Ցուցիկք Ա. 278, Բ. 174. Հայապ. 75. Ազգապ. 839, 911. Վկ. գողթ. 33, 76 (Սաղոմոն):—Իր մի հիշատակարանը հայոց նվիրապետության մասին տես Սարգիսեան, Անանիա թրգմ. էջ ժբ:

— 4. Սողոմոն Ա կաթողիկոս Աղուանից 781 թ. հաջորդեց Ահարոնին և նստավ 6 ամիս.—Կղկնտ. Գ. ի, իգ (հրատ. Շահն. Սաղօմօն). Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384:

— 5. Սողոմոն Գառնեցի, կաթողիկոս հայոց «791—2 թ», իբր հաջորդ Յովաբի: Նախապես Մաքենոցաց վանքում ճգնավոր էր. Թերևս սովորել էր Սողոմոն «հարանց հօր» մոտ: Աղուանից Միքայէլ կաթողիկոսը (707—742 թ) կանչեց նրան և միասին նզովեցին Աղուանից իշխաններին (Կղկնտ. Գ. իգ): Երբ Մաքե-

նոցաց վանքի միաբանների կեսը գնաց Ջրեսկ, Սողոմոնն էլ գնաց նրանց հետ և ճգնում էր Ջրեսկում։ Ընտրվեց կաթուղիկոս խոր ծերության հասակում։ Երբ նախարարներից ոմանք կատակով հարցրին նրան թե այդքան ծեր հասակում դու ինչ կարող ես անել, պատասխանեց. «Երթամ զի սևել գիս ընդ այլ հայրապետսն ստամ յորմ եկեղեցւոյն»։ Ուզում էր ասել թե միայն իր նկարը պիտի նկարվի մայր եկեղեցու պատին։ (Սրանով իմացվում է թե այն ժամանակ սովորություն կար սև գույնով նկարել կաթուղիկոսների նկարը կաթուղիկոսարանի եկեղեցու պատի վրա)։ Իրոք Սողոմոնը այնքան ծեր էր, որ մի տարուց մեռավ։—Ասող. Բ. բ. Քհնպ. 272. Կիր. ը. 42. Վրդ. խ. Ցհ. կթղ. հյր. 276. Մխ. այրիվ. 21. Սամ. անեց. 90. Կղկնտ. Բ. խը (հրատ. Շահն. Սաղօմօն). Առաք. պտմ. 479.—Սաղոմօն՝ Ցհ. կթղ. իդ. Օրբ. հա.—Սաղովմոն՝ Միխ. տն. իթ (=իը).—Սողովմոն՝ Մխ. անեց. դ.—սեռ. Սողոմոնի՝ Ցհ. կթղ. իդ.—Սողովմոնի՝ Այրիվ. 17 ա.—բց. ի Սողոմոնէ՝ Օրբ. իե։

— 6. Սողոմոն վանահայր Մաքենոցաց վանքի. երբ Բաբան պարսիկը (839 թ!)ավերեց վանքը, իր հետ առավ կրոնավորների կեսը և գնաց Շիրակ գավառի Ջրեսկ կոչված տեղը, ուր մնարան հաստատեց։ Այստեղ էր ճգնում նաև Սողոմոն Գառնեցին։—Կղկնտ. Բ. խը. (հրատ. Շահն. միշտ Սաղօմօն).—Սողոմոն՝ Օրբ. լ (այլ ձ. Սաղօմ), լգ.—Սօղովմոն՝ Ցայսմ. մրտ. 28.—սեռ. Սողոմոնի՝ Ցհ. կթղ. իդ.—Սաղոմոնի՝ Օրբ. իդ, լգ.—Տես Ջարբ. Թրգմ. 458?—Շփոթ է այս Սողոմոնի անձնավորությունը։ Օրբ. (տպ. 1910), էջ 159 հայտնապես ասում է թե երբ Բաբան պարսիկը ավերեց վանքը, «կրօնաւորքն նախիմաց եղեալ և յերկուս բաժանեալ՝ կէսքն գնացին ընդ հօրն Սաղօմի, ոչ առաջնոյն որ հարանց հայր կոչեցաւ, այլ ընդ նորին աշակերտին, ի Ջրեսկ. յորում պայծառանայր սոյն այս Սաղօմօն ճգնութեամբ սխրաժուտ լեալ»։ Բաբանի արշավանքը դրվում է 839 թ. (Զամչ. Բ. 442), ուստի Ջրեսկի վանքի հիմնումը այս թվին պիտի լինի, որից ավելի ուշ Սողոմոն Գառնեցու ընտրությունը և մահը։ Բայց Գառնեցին մեռել է 792 թվին, ուստի Բաբանի արշավանքը սխալ է կապել Ջրեսկի հետ, որ ամենաուշ հիմնված պիտի լինի 791 թվին։ Օրբ. (անդ, էջ 502) թեև գիտե որ Սաղօմօն նստել է կաթուղիկոս իբրև հաջորդ Յովաբի, բայց էջ 159 չի ասում թե Ջրեսկի ճգնավորն էր այն։ Ուրեմն պետք է ենթադրել մի երրորդ Սողոմոն՝ տարբեր «հարանց հայր Սողոմոնից» և

Սիմէոն Գառնեցու՞։ Այս հարցի շուրջը տես Ակինեան, Կիւրիոն կթղ. էջ 249։

— 7. Սողոմոն Բ կաթուղիկոս Աղուանից, որ հաջորդելով Թէոդորոսին՝ նստել է 785—796 թ. իր հաջորդն է Յովհաննէս Գ (№ 79).—Կղկնտ. Գ. իգ (հրտր. Շահն. Սաղօմօն). Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384։

— 8. Սողոմոն եպիսկոպոս Մեծառանց վանքի, ուր կանգնեցրել է մի խաչքար 853 թ.—Բանասէր 1901, էջ 143—4։

— 9. Սողոմոն Ա. եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդել է Յովհաննէս Գ-ին (№ 77), նստել է 7 տարի և իրեն էլ հաջորդել է Եղիա (ըստ Օրբ. տպ. 1910, էջ 498)։ Յովհաննէս Գ նստած լինելով 801—3 թ., Սողոմոն Ա ևս նստած պիտի լինի 804 թ։ Բայց այս թվականը սխալ է։ Մխսակյան 226 անորոշաբար դնում է Թ դարի կեսից հետո. Աղգապ. դնում է «867—885 թ». այս թվերը հաստատելու համար իբր վկայություն ունինք Փուղրիղուխտի արձանագրությունը 867 թ, ուր հիշված է Սողոմոն Ա-ը (Օրբ. անդ, էջ 220> Մխսակյան 282) և Ջեանշէրի Արձ. 871 թ. (Օրբ. անդ, էջ 217>Մխսակյան 287), ուր նույնպես հիշված է Սողոմոն Ա.—Թվականի շփոթության մասին տես Յովհաննէս № 89 և № 96։—Օրբ. լգ.—Սաղոմոն՝ Օրբ. հա։

— 10. Սողոմոն Բ Առաքինի, եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Յովհաննէս Դ-ին. սրա միջոցով Աշոտ Ա Բագրատունին («885—890 թ») նորոգեց Սիւնեաց քարոզությունը.—Օրբ. լգ.—Սաղոմոն՝ Օրբ. լդ, լգ, լը, լթ, խե, հա.—սեռ. Սողոմոնի՝ Կղկնտ. Գ. իր (հրտր. Շահն. ուղ. Սաղօմօնի).—Սաղոմոնի՝ Օրբ. լթ, խւ—Այս Սողոմոնին հաջորդել է Յովհաննէս Ե, որ հիշում է իրեն 895 թվի արձանագրության մեջ՝ իբրև նախաձեռնող Տաթևի շինության։ Միանգամայն ասում է թե «Ես Տէր Յովհաննէս որ երկրորդ կարգեցայ եպիսկոպոս Սիւնեաց զկնի Տեառն Սաղոմոնի» (Օրբ. լթ.> Մխսակյան 227)։—Սրանից երևում է որ Սողոմոնի մահը ամենաուշը 895 թվին է։

— 11. Սողոմոն Սեւորդի. նահատակվեց Բուղայի ձեռքով (Թ դար).—Արծր. Գ. ժա.—Սողովմոն՝ անդ։

— 12. Սողոմոն Բագրատունի, որին Արաբները ուղարկեցին բանտարկյալ Գուրգէն Ապուպելճի մոտ՝ հորդորելու համար, որ ուրանայ հավատքը (Թ դար).—Արծր. Գ. ժդ։

— 13. Սողոմոն եպիսկոպոս, հանգուցյալ վանահայր Վանեվանից 903 թ.—Օրբ. լգ, Շահխաթ. Բ. 251, Մխսակյան 60։

— 14. Սողոմոն Սագաստանցի, ճգնավոր. Բյուրական ամբոցի առման ժամանակ նահատակվեց Նսր ոստիկանի ձեռքով «926 թ».—Յհ. կթղ. կզ։

— 15. Սողոմոն վանահայր՝ Խարկովի մոտ գտնված Կարմիր վանքի (Շիրակ). հիշված է 985 թ.—Արձ. Շիրակ 169 (գրված է Սողովմոն)։

— 16. Սողոմոն վանահայր Հոռոմոսի վանքի 986 թ.—Արձ. Շիրակ 32, 169։

— 17. Սողոմոն հայր Սարգսկանն, որի հիշատակին պատարագ է նշանակում Տրդատ երեցը Անիի Ս. Փրկիչ եկեղեցում 1173 թ.—Արձ. Շիրակ 85։

— 18. Սողոմոն, եղբայր կամ այլ մերձավոր Յովհաննէս քահանայի, որոնց զամբանի վրա կանգնեցրած է մի խաչքար Հաղբատի հասարակաց գերեզմանատանում 1231 թ.—Արձ. Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 63, Ազգագր. հանդ. Է, 413։

— 19. Սողոմոն Գ եպիսկոպոս Սիւնեաց. ազգական և հաջորդ Յովհաննէս Ը-ի. նստավ իր ազգական Հայրապետ եպիսկոպոսի հետ միասին. գահակալել է 1252—1272 թ. բայց դեռ հիշված է 1274 թ. (Տարսայիճի մեծ արձանագրության մեջ (Օրբ. կե> Սիսական 232) և Manus. brit. mus. 294 բ.—Օրբ. կբ, կե.—Սաղոմոն՝ Օրբ. հա։

— 20. Սողոմոն հայր Սարգսի, որ իր կնոջ Արէժայի հետ, մի խաչքար է կանգնեցրել Արփայում 1303 թ.—Արձ. Սիսական էջ 184։

— 21. Սողոմոն քահանա, գրիչ. աշակերտ Գրիգոր ճգնավորի. օրինակեց Շարականը՝ 1423 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 50 բ։

— 22. Սողոմոն, հայր Սարգիս աբեղայի, որ ստացավ ու նորոգեց մի հին Աւետարան 1444 թ.—Ձեռ. Վասպ. 112 (Լալայեանը երկու հիշատակարան իրար է խառնել)։

— 23. Սողոմոն, միաբան Ապահունեաց ուխտի. հիշված է 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 24. Սողոմոն Տէր, միաբան Երուսաղէմի. իբրև վկա հիշվում է 1471 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 59 բ։

— 25. Սողոմոն, հայր Կարապետ քահանայի, որ Ղազար անուն անձից նվեր ստացավ մի Աւետարան, որ գրել էր տվել Սարգիս աբեղային՝ 1479 թ.—Ձեռ. Կես. ածած. 47 բ։

— 26. Սողոմոն աբեղա, եղբայր Խաչատուր աբեղայի, որ

Սեբաստիոյ Ս. Աստուածածին վանքի վանահայրն էր 1485 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 598։

— 27. Սողոմոն, առաջնորդ Սեբաստիոյ Ս. Աստուածածին վանքի, 1499 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 316։

Սողրաթմիշ տես Սորղաթմիշ։

ՍՈՃՈՆ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշատակված եմ գտնում 1612 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 32 բ)։

ՍՈՅԵՄՈՍ, ար. ծագումը ինձ անհայտ։

— 1. Սոյեմ Եմեսացի, սորի, թագավոր Ծոփաց, որին նշանակեց Ներոն կայսրը՝ երբ 55 թ.—Տաշեան՝ Արշակունի դրամներ, Վիեննա 1917, էջ 110 և Շուր՝ Ներոն կայսեր արևել. քղքկն. Վիեննա 1930, էջ 20, 37։

— 2. Սոյեմոս կամ Սոյեմ, թագավոր Հայոց 159—169 թ. որդին ու հաջորդն էր Աքեմենիդի։ Սրա ժամանակ Պարթևաց Վաղարշ Գ թագավորը արշավեց Հայաստան, կռվելու համար Հռովմայեցոց դեմ։ Սոյեմը փախավ Հռոմ։ Հռովմայեցիք նոր բանակ ուղարկելով հաղթեցին Պարթևներին և Լուկիոս Վերոս կայսրը վերահաստատեց Սոյեմին իր գահի վրա (169 թ)։—Գրգչ. Բնն. պատմ. Բ. 260—262. (ըստ Լէօ, Ա. 475 և 698 Սոյեմը գահակալում է 140—162 թ. և երկրորդ անգամ 164—169 թ)։

† ՍՈՆԱ, որ և Սոնիա, փաղաքշական ձևով էլ Սոնիկ. իգ. զարմանալի անուն է նրանով, որ բնիկ և սեփական է երեք տարբեր լեզվի։ Նախ հայերեն է և ծագում է Վանայ բարբառով սոնա «բարձրահասակ» (աղջկանց տրված ածական) բառից (տես իմ Գւռ. Բռ. էջ 978)։ Երկրորդ՝ արևել. Թրք. sona «էգ բադ» բառից (համարվում է տիպար գեղեցկության) և երրորդ՝ ռուս. Соня ձևից, որ София անվան փաղաքշականն է և որի օրինակով էլ կազմված կա այժմ Սոնիչկա։ Այս բոլոր ձևերը գործածական են այժմ. Վանում գործածական է Սոնա անունը. ժողովրդական երգը ասում է. «Սոնա գիլբար, Սոնա յար»։ ԺԸ դարից ավանդված է Սոնա խանում, կին մելիք Շահնազարի (Բարխուտ. Պատմ. աղվ. Բ. 45)։ Այս վերջինը կարող է թուրքերենից լինել։

ՍՈՆԴԻԿ, իգ. ծագումը ինձ անհայտ. գրված է նաև Սենտիկ, որ տես առանձին (էջ 481)։ Մի անգամ ավանդված է ԺԵ դարից՝

— Սոնդիկ, կին Խոցադեղի. ծնողներն են Մարտիրոս գրչի, որ Հաղբատում օրինակեց մի Շարակնոց 1437 թ.—Նոտարք, էջ 113։

—

*ՍՈՊԱՏՐԱ, իգ. <հուն. Σώπατρα անունից, որ Σώπατρος ար. անվան իգական ձևն է. ծագում է σῶς «անվթար, անայլայլ, ապահով»+πατήρ «հայր» բառից և նշանակում է «ճիշտ հոր պես, բռ. հօրամոյն»։—Մօրիկ († 601 թ) հայազգի կայսեր դուստրն է (Տէր Սահակեան. Հայ կայսերք Ա. 305)։

*ՍՈՍԹԵՆԷՍ, ար. <հուն. Σωσθένης անունից, որ ծագում է σῶς «անվթար, լավ պահված»+σθένος «ուժ, կարողություն» բառերից և նշանակում է «որի ուժը անվթար պահված է»։ Այս անունով հայտնի է Սոսթենէս աշակերտ Պօղոսի և գլուխ Կորնթոսի հավատացյալների (Ա. կոր. ա. 1)։

— 1. Սոսթենէս, երկրորդ առաջնորդ և վանահայր Մարմաշէնի վանքի. Թղթակից Գրիգոր Մագիստրոսի, որ գրել է նրան իր խգ և խդ նամակները։ Երբ Վահրամ Պահլավունին հիմնեց Մարմաշէնը, նրա վանահայր կարգեց Եղեմիային (№ 10, 1029 թ. կամ ավելի շուտ)։ Եղեմիան ուղեգրեց Սոսթենէսին և վանքը նրան հանձնելով՝ ինքը գնաց ճգնական կյանք վարելու Յովհաննավանքում, ուր և մեռավ ու թաղվեց 1033 թ։ Մնում է գերեզմանի խաչքարի արձանագրությունը (Արձ. Շիրակ 148, Ջքր. պատմ. Գ. էջ 11> Շահխաթ. Բ. 276)։ Սոսթենէսը եկավ Յովհաննավանք և Մխիթար վանահոր հետ երկու վանքերի իրավասության սահմանները որոշեցին (Ջքր. սարկ. Գ. 10)։—Սոսթինես՝ Մագ. Թղ. խգ.—նաև Սոսթէնեսի՝ Մագ. Թղ. խդ.—Սոսթենէսի՝ Ջքր. սարկ. Գ. 11.—Սոսթինեսի՝ Մագ. Թղ. խգ.—Սոսթենեայ՝ Ջքր. սարկ. Գ. 10։—Այս Սոսթենէսի մասին Վրաց մատենագրության մեջ 1046 թվից կա հետևյալ տեղեկությունը.—Վրաց Բագրատ Դ (1027—1072) Թագավորի ժամանակ, Ղրտիլայում (Ջավախք) զինվորական ժողով կայացավ (1046 թ)։ Սոսթենես նշանավոր գիտնական և ճարտարախոս հայ վարդապետը ներկայացավ Բագրատին և սկսեց գովել հայոց դավանանքը։ Վրացի Մելքածե Ծուրծղ՛արեցին, Սանանո Ճ՛վելեցին, Գրիգոր Արվխսերիձեն և Գաբրիէլ Ուկլիաձեն վիճեցին նրա հետ և հաղթվեցին։ Թագավորը կանչել տվեց Եփիմիոս Երկարին (Եփթվիմե Գրձելի), որ նոր էր եկել Երուսաղէմից և գտնվում էր Անչայի (Կղարջք) արքեպիսկոպոսարանում։ Սոսթենէսը պայման դրեց, որ եթե վրացիք հաղթեն, իրեն տկլոր դուրս հանեն, իսկ եթե ինքը հաղթի, թագավորը նրանց կարգալույծ անի և պալատից տկլոր վռնդի։ Եփիմիոսը հաղթեց և պահանջեց որ Սոսթենէսը մերկ դուրս գա։ Թագավորը խնդրեց, որ իրեն շնորհի այդ պատիվը և Սոս-

թենէսը ամոթահար հեռացաւ (Մելիքսեթ-բէգ, Վրաց աղբ. Ա. էջ 105—110)։

— 2. Սոսթինէս քահանա, որդի Գէորգի և հայր Արճոյ վանքի ավագերեց Տրդատ քահանայի, որ իր Խուշուշ անուն ավագերեցի հետ վերանորոգեց Անիի Ս. Փրկիչ եկեղեցին 1173 թ.—Արձ. Շիրակ 85։

— 3. Սոսթանէս, աշակերտ Սէթի և Սիմէոնի, որոնց գերեզմանի վրա՝ իր աշակերտակիցների հետ միասին շինել են Ս. Կարապետի մատուռը, Հաւուց Թառի վանքում, 1213 թ.—Արձ. Այրարատ 356։

— 4. Սոսթանէս, հայր Սարգիս և Վարդան քահանաների (Եկեղեաց գաւառի Իշոխա գիւղից), որոնք Կապոսի վանքում գրել տվին Տօնականը 1230 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1214։

— 5. Սոսթենէս վարդապետ, աշակերտ Վանական վարդապետի. որա հետ բանտարկեալ եղաւ Թաթարների մոտ «1236 թ». —Կիր. իր։

— 6. Սոսթանէս (սեռ. Սոսթանիսի), որի հանգստարանի կիսեղծ խաչքարը գտնվում է Մարաշի մոտ 1247 թ.—Strzygowski, Kunsthistorisches, հանված Hugo Grotte, Meine Vorderasienexpedition I գրքից. ըստ Հ. Ն. Ակինեանի այս Սոսթանէսը կարող է լինել այն, որ 1280 թվին Ստեփ. Վահկացու ձեռքով շինեց Սսոյ Հոգւոյն Սրբոյ եկեղեցին (ՀԱ 1912, էջ 186—7)։ Տես վարը՝ № 9։

— 7. Սոստանէս, որդի Հայրապետի, իր եղբոր Բարսեղի հետ միասին մի խաչ են կանգնեցրել ծնողների հիշատակին Խաչենի Խանձք գիւղում, 1253 թ.—Արցախ 159։

— 8. Սոսթենէս քահանա, եղաւ օժանդակ գրչութեան Դիոնիսիոսի գործերի, որ ստացաւ Յովհաննէս Արքայեղբայրը 1271 թ.—Ջարբ. Թրգմ. 390, Սիսուան 145։

— 9. Սոսթենէս րաբունի կամ վարդապետ, որի մասին հետևյալ գովեստն ենք կարդում. «Որ վարժ և կիրթ յամենայն գիրս աստուածային հնոցն և նորոց, և արտաքին փիլոսոփայից գեր ի վերոյ. որ և ի ժամանակիս մեր և ի թագաւորութեան Լեւոնի և ի հայրապետութեան Յակոբայ ոչ ոք է կատարեալ իբրև զսա յամենայն իմաստս, բայց ի մեծ րաբունւոյն, որ անուն ցօղ է քաղցր, որ և Վահրամ կոչի»։ Իր հրամանով և ծախսով Ստեփաննոս Վահկացին Սսում օրինակել է Նոր Կտակարանը 1280 թ. (Ջարբ. Հին դպր. 731, 802, Manus. brit. mus. 13 ա)։

Իր հրամանով նույնպես և Ստեփաննոս (№ 179) Վահկացու ձեռքով նորոգվել է Սսոյ Ս. Հոգի եկեղեցին 1280 թ.—Սիսուան 222 բ, 516 բ։—Տես վերը № 6։

— 10. Սոսթենէս կրոնավոր, օրինակեց Ճաշոցը Խրիմի Սուրղաթ քաղաքում 1350 թ.—Ֆ. Մուրատ, Ցայտ. յոլհ. էջ մղը։

— 11. Սոսթենէս ոմն հիշված Ձեռ. էջմ. Դև. № 671 (ԺԵ դար)։

— 12. Սոսրանէս, որդի Աւետիք քահանայի, որ գնեց մի Աւետարան 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68։

— Անթվական են Սոսթաթես Արճ. Խծկոնքի (Ազգագր. հանդ. Ա. 47), Արճ. Ծար (Արցախ 407), այլ Արճ. Ծար (Արցախ 407), իսկ Արճ. Հաղբատի (Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 32) թեև անթվական, բայց Տփղիսեցի Տէրտէրի (տես առանձին) հիշատակությունից երևում է որ գրված է շուրջ 1264 թ. և ուր հիշված է ոմն Սոսթէնես «բաղնավալ»?

ՍՈՎԻՆ, իգ. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված 1831 թ. (Manus. brit. mus. 44 բ)։

*ՍՈՎՈՒՆՋ, ար. սրա հետ նույն է Սևինջ, որ տես Սևինջ-բէկ անվան տակ։ Ծագում է թրք. سوینج sevinǰ «ուրախություն» բառից։ Վերի ձևից ունինք՝

— Սովունչ-Պուղա (բարդված թրք. بوغا buγa «ցուլ» բառով. պարոն ոմն, որի կինն էլ կոչվում է Կուլանիչա խաթուն. Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցում մի ավաղան են շինել 1415 թ. —Кучук-Иоаннесов, Стар. арм. над. էջ 36։

— 2. Սովունչ-մելիք (բարդված արաբ. ملك melek «հրեշտակ» բառով. ամբողջը պետք է հասկանալ «ուրախության հրեշտակ»). կին ոմն, որ իր երկու աղջիկների՝ Սաաթ խաթունի և Բաղդադ խաթունի հետ հիշված է մի խաչքարի վրա, որ այժմ ագուցված է Նոր-Նախիջևանի Ս. Լուսավորիչ եկեղեցու պատին, 1451 թ.— Ազգագր. հանդ. Է, 49։

*ՍՈՐԱՂԱՆ, ար. գրված է երեք ձևով (Սօրազան՝ զ ուղղել ղ, Սօրղան և Սուրղան). ծագում է թթր. صورمق sormaq «հարցնել» բայից։

— 1. Սօրղան, որդի Մարտիրոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164, 166, 168։

— 2. Սուրղան, որդի Երկիլի և եղբայր Զաքարայ արեղայի, որ Երզնկայում գնեց Յակոբ քահանայից մի Շարակնոց, 1487 թ. —Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— Իսկ Սօրազան հիշված է 1661 թ. (Ձեռ. Ազուլ.=Արար. 1911, 119)։

— Անթվական է Սօրղան իգ. որ հիշված է 1311 թ. գրված մի Աւետարանի անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. էջ 70 բ)։

*ՍՈՐՂԱԹՄԻՇ, թր. (այս բառը գրված է 7 տարբեր ձևերով. [1]Սարղաթմիշ (Ազգապ. 2035), [2]Սուրղաթմիշ (Ձեռ. Վենետ. Ա. 390), [3]Սորղաթմիշ (Ձեռ. Թաւր. 73 բ), [4]Սուրաթմիշ (Մեծոփ. 73, Չամչ. Գ. 443), [5]Սաւղաթմիշ (տես առանձին), [6]Սուաթմիշ (Ձեռ. Վասպ. 355) և [7]Սողրաթմիշ։ Սրանցից վերջին չորսը հասարակ վրիպակ համարելով՝ իբրև ուղիղ մնում են Սարղաթմիշ, Սորղաթմիշ և Սուրղաթմիշ։ Բառիս -աթմիշ վերջավորությունը ցույց է տալիս որ թրքական պատճառական բայի անցյալ դերբայն է. և որովհետև բառը թրք. չէ, ուստի պետք է լինի թթր. Փնտրելով Будагов-ի թաթարերեն բառարանի մեջ س և ص տառով սկսվող բոլոր հնարավոր ձևերը, գտա միայն երկու բառ, որոնք կարող էին համարվել արմատ։ Այս բառերն են՝ կիրգիզ. صرغتمق sərγətmaq «ոտքը ուժգին արձակել» (էջ 698 բ) և չաղաթ. سرغود sərγud, سرقود sarγud «գինու հարբածություն», որի այլ ձևերն են sarkət, sorkut, sorγutmaq «ծծել, կուլ տալ» (անդ 626 ա)։ Երկրորդ ձևը իր ձայնավորների երանգով համապատասխանելով մեր էլ տարբեր ձևերին, լավագույնն եմ համարում).—Սրանցից դուրս կա նաև թթր. ساوغات savγat «պարգև, նվեր, պարգևատրություն» (Будагов, I, 647 ա), ձևով ու իմաստով այնքան համար Սաւղաթմիշ բառին, որ ես կարծում եմ թե նախորդներից տարբեր առանձին բառ է և դրել եմ առանձին։

— 1. Սօրղաթմիշ, Մակուի Նուրադդին հայ կաթոլիկ իշխանի որդին էր. տեր Մակուի. Լէնկթիմուրը սիրեց նրան և ընկեր դարձրեց իր Յոռ Էօմէր կամ Օմար միրզայի, որ Թաւրիզի իշխանն էր։ Սորղաթմիշը Օմարի բանակի հրամանատարն եղավ և նրա բռնադատությամբ հավատափոխ եղավ, բայց հետո նորից քրիստոնյա դարձավ (շուրջ 1405 թ)։—Սօրղաթմիշ՝ Այրարատ 323.—Սուրղաթմիշ՝ Ուղեգրութ. Ա. 114.—Սուրաթմիշ՝ Մեծոփ. 73, Չամչ. Գ. 443.—Սարղաթմիշ՝ Ազգապ. 2035։

— 2. Սուաթմիշ (տես. Սուաթմշին), եղբորորդի Էվատշայի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան 1428 թ.—Ձեռ. Վասպ. էջ 355։

— 3. Սողրաթմիշ, որ իր որդի Ղայպայպուշի հետ հիշված է

Շամախու Գիրկ գյուղի մի դամբանի վրա 1474 թ.—Բարխուտ. Աղվ. երկ. 198։

— 4. Սուրդարմիշ ոմն, հիշված 1515 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 390։

— 5. Սորդարմիշ՝ անթվական (Ձեռ. Թաւր. 73 բ)։

ՍՈՐՄԷՆ, ար. ծագումն ինձ անհայտ. ունինք միայն՝

— Սորմէն սպարապետ և զորավար Հայոց. Հերակլից հետո եղավ կառավարիչ Յունահայաստանի 598—602 թ. (ըստ Այրարատ 561). քաղկեդոնիկ էր և ըստ Ազգապ. 596 հայ էլ չէ. իսկ ըստ Հացունի, Կարևոր խնդ. 396 հայ է։ Ունի վիճաբանական թղթակցություն Վրթանես քերթողի հետ.—սեռ. Սորմենայ, բց. ի Սորմենայ՝ Գիրք թղ. խա, իբ. Սեբ. իը. Ազգապ. 596 (բուն ձևը դնում է Սորմենոս, կրճատ Սորմէն և հայացյալ ձևով Սուրէն (ըստ զանազան ձեռագրերի)։—Ակինեան՝ Կիւրիոն կթ. 129։

*ՍՈՐՈՆՂՈՒԼ, ար. <Թրք. قول qul «գերի, ծառա, ստրուկ» բառից. անծանոթ է Սորօն. այս անունը առանձին չեմ գտած. գտնվում է միայն Սորօնղուլեան ազգանվան մեջ։

*ՍՈՒԷՏ, ար. <արաբ. سويد suveyd «սևուկ» բառից, որ سواد savād կամ sevād «սև» բառի փաղաքշականն է (տես Սևադայ)։ Ունինք միայն՝

— Սուէտ վարպետ, որդի վարպետ Աղիճանի, հիշված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1598 թվից ավելի ուշ։—Rapport Belgique 72։

ՍՈՒԼԷՄ, ար. ծագումն անհայտ։

— 1. Սուլէմ տանուտեր ոմն, որ շինել և իր անունով է կոչել Սիւնեաց Սուլիմաբերդը.—բց. ի Սուլեմայ՝ Օրբ. բ։

— 2. Սուլէմ (միայն սեռ. Սուլեմա ձևով), հայր Տիգրանի Հոնենց, որ շինեց Անիի Ս. Գրիգոր Լուսավորիչ եկեղեցին 1215 թ։ (Ամբողջական ձևն է Տիգրան որդի Սմբատուրենց Սուլեմա, յազգէ Հոնենց)։—Արձ. Շիրակ 75—78։

— 3. Աւագ Սուլիմ, քառասուն դեկան է նվիրել Թանատի վանքին (թիվը անհայտ).—Արձ. Սիսական 123։

*ՍՈՒԼԷՄԱՆ, ար. <արաբ. سليمان Suleymān անունից, որի ծագումը տես Սողոմոն։ Հայանի է Հայաստանի արաբ ոստիկան Սուլէյմանը «787—790» թ», ամիրապետներից Սուլէյման «715—717 թ», Օսմանեան սուլթաններից Սուլէյման Ա 1402—1410 թ, Սուլէյման Բ Քանունի «1520—1566 թ», Սուլէյման Գ «1683—1691 թ», որոնցից երկրորդը հիշված է Ջէյթունի Ս. Յակոբ

եկեղեցու շինության արձանագրության մեջ՝ Սուլիման խոնդքար 1545 թ. (Սիսուան 537)։

— 1. Սալումաճ, հիշված է Աքքիրմանի մի խաչքարի հիշատակության մեջ 1447 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 34։

— 2. Սուլեյմաճ, հիշված է 1654 թ.—Ձեռ. Հալեպի, Ա. 127։

— 3. Սիւլեյմաճ, հատկապես կոչվում է Էրմէնի Սիւլէյման փաշա. Մալաթիացի հայ էր. Թուրքացավ և եղավ Սուլթան Մէհէմմէդ Դ-ի (1648—1687) մեծ վէզիրը (եպարքոս) 1656 թ. նշանավոր անձ է եղել։—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. հտ. Բ, էջ 475, 801։

— 4. Սլեմաճ, հիշված է 1738 թ (Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ)։

*ՍՈՒԼԷՄԱՆՇԱՀ, ար. <նախորդ Սուլեմաճ անունից+պրս. šāh. հիշված է երկիցս ԺԸ դարում։ Կա մի սելճուք թագավոր Սիւլէյմանշահ անունով 1157—1160 թ։

— 1. Սուլեմաճշա, մեծ պապ Ամիրդօլի, որ Ուլաթում, Յովհաննէս գրչին գրել ավեց մի ճաշոց 1450 թ.—Նոտարք 164։

— 2. Սուլեմաճշա, որդի Ամիրալիի՝ հորեղբոր նույն Ամիրդօլի, 1450 թ.—Նոտարք 164։

*ՍՈՒԼԹԱՆ, ար. և իգ. գրված է զանազան ձևերով՝ Սուլթան, Սուլտան, Սուլդան, Սօլթան <արաբ. سلطان sulṭān «թագավոր, կայսր» բառից, որ տաճկերենում անունից առաջ դրվելով արական է, հետադաս՝ իգական. ինչ. Sultan Ahmed, բայց Fatime sultan.—Մեր մեջ գործածված է ԺԴ դարից սկսած. այժմ գործածվում է Ղարաբաղում իբր ար. անուն, իսկ Պոլսում, անցյալ դարում, Սուլթանա, Սուլթանիկ ձևով՝ իբր իգ. անուն։—Հները ար. և իգ. զանազանելու համար երբեմն ասում էին Սուլթան խոջա կամ Սուլթան խաթուն են։

— 1. Սուլթաճ (գրված Սլթան). հիշված է Կոսիկոսի շինության արձանագրության մեջ 1258 թ. բայց ընթերցումն անստույգ է.—Սիսուան 336, 338։

— 2. Սուլթաճ, Վրաց Գիորգի Է թագավորի (1306—46 թ) դուստրն է. կին Կոստանդին Գ (№ 137) թագավորի Կիլիկիո (տես անդ). վրացուհի է և թագուհի Հայոց. Լևոն Զ թագավորի մայրն է. փրկանքով ազատեց որդուն Ջենովացոց ձեռքից «1373 թ»։ Ամուսնու մահից հետո իր երկու որդիների հետ փախավ Կիպրոս։—Դարդել 31, 52, 53, 85. Բասմաջ. Լևոն Ե, էջ 39. Ազգատ. 1910, 1936։—Դարդելը 53—57 այս փախուստը պատ-

մում է հետևյալ ձևով.—Կոստանդին Դ Թագավորը (№ 144) (դահակալել է «1344—63 Թ») բանտարկեց Սուլթան տիկնոջ՝ երկու որդոցը հետ միասին, Կոռիկոս կղզում, 9 ամբողջ ամիս շատ քաղցած դրության մեջ։ Ուզելով սպանել նրան և երկու որդիներին, որպեսզի թագավորական գահը իր որդիներին տա, ուղարկեց նրան թունախառն մեղր իբր նվեր։ Բայց տիկինը փորձեց ուրիշի վրա և իմանալով որ թունավոր է, չկերավ և ազատվեց։ Կոստանդինը սրա վրա ուղարկեց երկու ասպետ, որպեսզի տիկնոջը իր երկու որդոցը հետ խեղդեն։ Բայց այս միջոցն էլ ի դերև ելավ, որովհետև տիկինը թունավորման փորձից վախեցած՝ նավով փախել էր Կիպրոս։

— 3. Սուլտան, դուստր Զաքարիայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—այս թվին Սուլտանը արդեն մեռած էր.—Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 850։

— 4. Սուլտան, կին Կիրակոսի, որ օգնեց Յովհաննէս գրչին օրինակելու Տաթևացու Քարոզգիրքը 1419 թ.—Տաշեան, Ցուց. 978 բ։

— 5. Սուլթան, միրձավոր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 6. Սուլթան, որդի սանամոր Յովհաննէս քահանա Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։

— 7. Սուլտան, որդի Առաքելի՝ եղբոր Սսոյ Կարապետ կաթուղիկոսի 1448 թ.—Սիսուան 223։

— 8. Սուլդան, հայր Մատթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերի Նորավանքում, 1456 թ.—հրար. Աղաթ. 1909 թ. յոջ. էջ ԽՁ։

— 9. Սուլտան դուստր պարոն Թումայի և քույր Յոհանէս աբեղայի, որ ստացավ մի Ավետարան՝ Աղբակի Ասփսթան գյուղում, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 ա։

— 10. Սուլտան, քույր Շամշայի, դուստր Յովանէսի՝ եղբոր Թումայի; որ Ներսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան, Աղթամար 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։

— 11. Սուլտան, կին Սարգիս քահանայի՝ որդւոյ Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 258։

— 12. Սօլտան, *կին Կիրակոս Զօշկանց երեցի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում, 1467 թ.—Նոտարք 230։*

— 13. Սաւլթան, *հայրն է Զուլալի (№ 1), որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։*

— 14. Սուլտան, *դուստր Թօզանի և քույր Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1471 թ. —Ձեռ. Վասպ. 463։*

— 15. Սուլթան, *դուստր կամ եղբորդուստր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում գրել տվեց մի Աւետարան 1473 թ. —Ձեռ. Վասպ. 467։*

— 16. Սաւլտան, *տատն է Յովհաննէս քահանայի, որ Խիզանում, տանուտեր Սահակի համար գրեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։*

— 17. Սուլթան, *դուստր տանուտեր Սաղաղայի, որ Աղթամարում, Թումայ քահանայէն գրել տվեց մի Աւետարան 1476 թ.—Ձեռ. Վասպ. 480, 482։*

— 18. Սուլթան, *կին խօջա Յովհաննէսի՝ հորեղբորորդւոյ խօջա Յովսէփի, որ էր իշխան Տարօնի և Մուշում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։*

— 19. Սուլթան, *պապ Եղիա երեցի, որ Քաջթաղուց Խողանավար գյուղում օրինակեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Սևան. էջ 5 բ։*

— 20. Սուլթան, *որդի Շապանի, թոռն Սուլթանի և եղբայր նույն Եղիա երեցի, որ օրինակեց Աւետարանը՝ Քաջթաղուց Խողանավար գյուղում, 1490 թ.—Ձեռ. Սևան. 5 բ։*

— 21. Սուլտան, *կին Մկրտչի և մայր Կարապետ քահանայի՝ մերձավորի Յովհաննէս գրչի, որ Խիզանում օրինակեց Աւետարանը 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։*

— 22. Սուլթան, *որդի Ամիրբէկի և եղբայր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺՆ դար).—Ձեռ. Սևան. 18։*

— 23. Սուլտան, *դուստր Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։*

—*Ավելի ուշ հիշված են* Սուլթան, *իգ. 1503 թ. (Ձեռ. Վասպ. 128),* Սուլթան *ար. 1604 թ. (Դրնդ. 49),* Սօլթան, *իգ. 1609 թ.* (Bodleian *110), 1653 թ. (Ձեռ. Թաւր. 45 բ)։—Կա և* Սուլդայ *(սեռն անհայտ)՝ 1638 թ. (Ձեռ. Վասպ. 896)։*

**ՍՈՒԼԹԱՆԱՂԱ, իգ. կազմված արաբ.* سلطان sultān+*թթր.* آغا

āγa բառերից. հիշվում է ԺԶ—ԺԷ դարերում. հնագույնն է 1565 թ. (Ձեռ. Վասպ. 663), 1575 թ. (անդ 688), 1594 թ. (անդ 735), 1602 թ. (անդ 188, գրված Սուլթան աղա), 1609 թ. (Ձեռ. Վասպ. 835), 1604 թ. (Թորոս աղբ. Բ. 267), անթվ. (Ձեռ. Վասպ. 344, ար!) 642 թ. իգ. (Ձեռ. Սանաս. 24 բ)։

*ՍՈՒԼԹԱՆԲԱԽՏ, իգ. <արաբ. سلطان sultān+պրս. بخت baxt «բախտ» բառերից. իբր թե «նա որ սուլթան լինելու բախտին է արժան»։

— 1. Սուլտանբախտ, դուստր Ստեփանոսի և քույր տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։

— 2. Սօլթանբախտ, կին Մելիքի՝ եղբորորդույ Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

*ՍՈՒԼԹԱՆԲԱՇԽ, ար? <արաբ. sultān+պրս. بخش baxš «պարգև» բառից, իբր «սուլթանի պարգևածը կամ որ կարելի է սուլթանին նվիրել»։ Մի անգամ հիշատակված եմ գտնում Ներքին Ագուլիսի մի խաչքարի վրա 1497 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ, էջ 313։

*ՍՈՒԼԹԱՆԲԷԿ, ար. և իգ. <կազմված արաբ. sulṭān+թրք. beg պատվանուններից։

— 1. Սաւլթանբէգ ոմն, վաղամեռիկ է եղել. գամբանը գտնվում է Ջիրախլու գյուղում, 1432 թ.—Սիսական 108։

— 2. Սօլթանբէկ, Նորգեղի տանուտերներից մին, 1465 թ.—Նոտարք 221, Այրարատ 320։

— 3. Սուլթանբէգի իգ. հիշված 1534 թ. (Ձեռ. Վասպ. 647)։

— 4. Սօլթանբէգ ար. հիշված 1601 թ. (Ձեռ. Վասպ. 793)։

— 5. Սուլթանպէկ իգ. հիշված 1727 թ. (Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1890)։

*ՍՈՒԼԹԱՆԳՈՒԼԻ, ար. և իգ. <արաբ. sulṭān+պրս. گل gul «վարդ» բառերից. իբր թե «սուլթանի արժանի վարդ»։ Հիշված է ԺԶ—ԺԷ դարերում։

— 1. Սուլթանկիւլի, իգ. հիշված 1587 թ. (Սմբատեանց՝ Սաղիան 259)։

— 2. Սաւլթանգուլ, ար. Ջուղայեցի ոմն 1595 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 25 ա)։

— 3. Սուլթանգուլ ար. հիշված 1609 թ. (Bodleian 110)։

— 4. Ցօլթանղաւլ ար. հիշված 1660 թ. (Ձեռ. Վասպ. 553)։

*ՍՈՒԼԹԱՆԴԻԼՇԱՏ, իգ. <արաբ. sulṭān+պրս. دل dil «սիրտ»+ شاد šād «ուրախ» բառերից. իբր թե «սուլթանի սիրտը ուրախացնող»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1603 թ. (Սմբատեանց. Երնջակ 214)։

*ՍՈՒԼԹԱՆԶԱԴԱ, իգ. <արաբ. sulṭān+պրս. زاده zāde «ծնված» բառերից. իբր «սուլթանի ծնունդ». հիշատակված են՝ Սուլթանզատա 1578 թ. (Ձեռ. Վատ. 9), Սուլթանզատե 1627 թ. (Ձեռ. Ներս. 40 բ), 1706 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 33 ա)։

*ՍՈՒԼԹԱՆԽԱԹՈՒՆ, իգ. <արաբ. sulṭān+թթր. xatun պատվանուններից. վերջին բառը կցված է հատկապես իգ. լինելը ցույց տալու համար։

— 1. Սուլտանխաթուն, դուստր Դանիէլ տանուտերի, որ գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1399 թ.—Ձեռ. Վատ. 234, 239։

— 2. Սուլտանխաթուն, կին Յովհաննէս քահանայի, որին ի վայելումն Կարապետ երեցը գրեց Վանում մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վատ. 342։

— 3. Սուլտան խաթուն, դուստր Ստեփաննոսի և քույր Յոհանէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Աւետարան 1422 թ.—Ձեռ. Վատ. 347։

— 4. Սուլթան խաթուն, կին խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վատ. 438, 439, 441։

— 5. Սուլթան խաթուն, որի հիշատակին մի խաչքար է ագուցված Նոր-Նախիջևանի Ս. Խաչ վանքի պատին, 1473 թ.—Ազգագր. հանդ. Է, 72։

*ՍՈՒԼԹԱՆԽԱՆ, ար. <սուլթան և խան տիտղոսներից, ինչպես ունինք Սուլթանշահ։ Գտնում եմ երեք անգամ հիշված ԺԶ—ԺԷ դարում։

— 1. Սուլթանխան Եւդոկիացի (Թոխաթցի). լատիներենից հայերենի է թարգմանել «Դաւանութիւն Հռովմայեցւոց եկեղեցւոյն», Հռոմ 1585 թ.—Ձեռ. Կարին. 182։—Բայց կա նաև՝

— 2. Սուլթանխան, ար. հիշված 1633 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. էջ 86։

— 3. Սուլթանխան, իգ. հիշված 1635 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 104 ա։

*ՍՈՒԼԹԱՆԽՈՋԱ, ար. <Սուլթան+խոջա բառերից, որ

վերջին եզրը դրված է արականը ցույց տալու համար, ինչպես որ խաթուն դրվում է իգականի համար։ Հիշատակված եմ գտնում 1592 թ. (Ձեռ. Վասպ. 724) և 1613 թ. (անդ 846)։

*ՍՈՒԼԹԱՆ-ԽՈՒՇԻ, ար.<Թրք. سلطان قوش sultan-qušə «փիւնիկ թռչունը, Թագավորահավ». մի անգամ գտնում եմ հիշատակված անթվական մի հիշատակարանում (1375 թվից ուշ)՝ Ձեռ. Վասպ. 224 (վրիպակով տպված Սօլթան Խուշի)։

*ՍՈՒԼԹԱՆՂՈՒԼԻ, ար. <արաբ. sulṭān+թրք. قول qulə «ծառան» բառերից, իբրև «սուլթանի ծառան»։ Հիշատակված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Սաւլթանղուլի, «դեռատրոյս ծաղիկն» խոջա Խդրշահի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. էջ 496։

— Ավելի ուշ ունինք Սուլթանղուլի 1525 թ. (Ձեռ. Վասպ. 417), Սուլթանկուլի 1593 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 87), անթվ. (Ձեռ. Վասպ. 442)։

— 2. Սուլթանղուլի պարոն, որի դամբանը գտնվում է Գնդեվանքում 1543 թ.—Միսական 106 (գրում է Սուլթանղովին? (հարցականով). պետք է կարդալ ով=ու, ինչ որ սովորական վրիպակ է։ Այս անձի հետ թաղված է նաև կինը՝ «պարոն Նազանայ խաթունն». քարի վրա քանդակված է Սուլթանղուլիի ձիավոր պատկերը՝ կաքավի որսի գնալիս, մոտն էլ մառովակներ)։

*ՍՈՒԼԹԱՆՄԵԼԷՔ, իգ. <արաբ. sulṭān «սուլթան»+ملك melek «հրեշտակ» բառից, իբրև թե «սուլթանի հրեշտակը կամ հրեշտակների սուլթանը»։ Հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Սուլթանմելիք, քույր Կարապետ կրոնավոր դրչի, որ պարոն Յովանէսի պատվերով գրեց մի Ավետարան 1344 թ.— Թորոս աղբ. Բ. 355։

— 2. Սուլտանմելէք, կին Ստեփաննոսի՝ եղբոր Իզիտի, որ Նարեկ գյուղում օրինակեց Ավետարանը Թաթարբէկի համար. Սուլտանմելէքն էլ այդ ժամանակ կերակուր էր պատրաստում (1420 թ).—Ձեռ. Վասպ. 327։

— 3. Սուլտանմելիք, զոքանչն է ոսկերիչ տանուտեր Յովանէս Երզնկացու, որ Արճէշում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 368։

— 4. Սուլտան-մելէք, դուստր Տեղունի, և կին Էլէքսանի. Աղթամարում, Գրիգոր գրչին գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Ոստանի Նախավկայի վանքին, 1452 թ.—Ձեռ. Վասպ. էջ 413 և 415։

— 5. Սուլթան-մելիք, *կին Բաղդասարի և մայր Մուղալ խաթունի և Շամշիդամարի, որոնք Վանում, Վարդան քահանային գրել տվին մի Աւետարան՝ 1461 թ.—Արցախ 139։*

— 6. Սուլդան-մէլիք, *կին Յովհաննէսի. ծնողներն են Հայրապետ քահանայի, որ Սալչաւկ խաթունի համար օրինակեց մի Մաշտոց 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 338։*

— 7. Սուլթանմէլէք, *դուստր ժամհար Մկրտչի և քույր «աղքատ Յովսէփի», որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 478։*

— 8. Սուլթանմէլիք, *կին Հազարբէկի և դուստր պղնձագործ Ըռուզբեկի, որ Կուքի գյուղում, Մանուէլ քահանային օրինակել տվեց Գանձարանը, 1478 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 39 բ, Սմբատեանց՝ Երնջակ 195։*

— 9. Սուլթան-մելիք, *կին Յովհաննէսի. ծնողներն են Շնահաւորի՝ կնոջ Ղարիբշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։*

— 10. Սուլթանմելեք, *քույր կամ մորաքույր Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը Հայրապետ աբեղային, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։*

— 11. Սուլթանմելիք, *եղբորդուստր Ազարիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։*

— 12. Սուլթան մելիք, *կին Աբրահամի և մայր Խուչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. էջ 29 բ։*

— 13. Սուլթանմելիք, *հիշված է անթվ. մի հիշատակարանում* (Manus. brit. mus. *55 ա)։*

**ՍՈՒԼԹԱՆՇԱՀ, ար. <պրս.* سلطانشاه Sulṭānšāh *անունից, որ կազմված է արաբ.* sulṭān+*պրս.* šāh *բառերից, իբր «Թագաւոր—արքայ»։ Այս անունով կա* Սուլթանշահ *իշխող Քիրմանի՝ 1074—85 թ.* (Justi *314 ա)։*

— 1. Սուլթանշահ, *(գրված Սութան Շահ), հիշված է Շաքիի Ամուր-աւան գյուղի հանգստարանի մի դամբանի վրա 1356 թ.—Բարխուտ. Աղվ. երկ. 215։*

— 2. Սուլթանշահ, *որդի Յովհաննէս քահանայի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան 1422 թ.—Նոտարք 69։*

— 3. Սօլթանշահ, *պարոն, կինն է Մինախաթուն. ծնողներն*

էն Սարգիս եպիսկոպոսի, որ Գուգարաց Կոթիփորայ (կամ Ընկուզագոմ) վանքում օրինակեց Յայսմաւուրքը 1427 թ.—Նոտարք 84։

— 4. Սուլտանշա, որդի Ամիրալիի՝ հօրեղբոր Ամիրդոլի, որ Խլաթում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Ճաշոց 1450 թ.—Նոտարք 164։

— 5. Սուլթանշահ (վրիպակով տպված է Սողտանշայ, որ է Սուլտանշայ), որ «ի ճանապարհ գնաց և ոչ գիտացին թէ զինչ եղև». եղբայրն է Փաշայի, որ իր որդու և իր ամուսնու հիշատակին մի Աւետարան գրել տվեց, Վան 1451 թ.—Ձեռ. Վասպ. էջ 411։

— 6. Սուլտանշայ, որդի Թուարքալի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Սարավանք գյուղում մի արկածի զոհ գնաց 1458 թ. (Ցուցակը տես Յովհաննէս քահանա № 1063).—Ձեռ Վասպ. էջ 429։

— 7. Սուլտանշայ, որդի Սախիփանոսի և եղբայր Խանձայի՝ կնոջ տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 8. Սուլթանշայ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց «Ժողովածու քերթուածոց», 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 9. Սալթանշայ, որդի Վարդանի և եղբայր Էգիլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472—3։

— 10. Սուլթանշա (գրված Սլթնշա). հիշված է Ներքին Ագուլիսի մի խաչքարի վրա 1478 թ.—Ազգագր. հանդ. ԺԱ. 313։

— 11. Սուլտանշայ, կինն է Թրուանդա. ծնողներն են Մկրտիչ քահանայի, որ Խիզանում օրինակեց Աւետարանը 1482 թ.—Ձեռ. Վասպ. 492։

— 12. Սուլթանշա, որդի Կուլշահի՝ մորաքրոջ Զաքարայ աբեղայի, որ Երզնկայում գնեց Յակոբ քահանայից մի Շարակնոց, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 13. Սուլթանշա, հայրն է Յուսէփ, մայրը՝ Աւագխաթուն, եղբայրը՝ Զաքարէ. այս բոլորի հիշատակին մի խաչքար է կանգնեցրած Թէոդոսիայի Ս. Հրեշտակապետ եկեղեցում, 1487 թ.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 351։

— 14. Սուլտանշայ, որդի Սախիփաննոսի, իր եղբայրների՝ Արաբշահի, Յովհաննէս քահանայի և Յակոբի հետ միասին գրել

տվին մի Աւետարան՝ Աղբակի Երնկանի գյուղում, 1490 թ.— Ձեռ. Վաստ. 511։

— 15. Սուլտանշայ, հորեղբայր Վարդանի, որ Շատախում, Խարայէլ գրչին գրել տվեց մի Աւետարան 1491 թ.—Ձեռ. Վաստ. էջ 518։

— 16. Սուլտանշայ, նախորդի որդին։

— 17. Սուլթանշայ, հայր Թորոս Համկլայեցու, որ հավատքի համար նահատակվեց «1494 թ».—Նոր վկ. 332, Ջամչ. Գ. 515, Ազգապ. 2216։

— 18. Սուլթանշահ, որդի Աբգար Եւդոկիացու. հայ տպագրության ռահվիրաներից. կոչված է Մարգանտոն, որ է Մարկոս Անտոնիոս։ Հոր հետ գնաց Եւրոպա և ապրում էր Հռոմում. եղավ տեսուչ Հայոց հյուրանոցի և աշխատում էր ձեռք ձգել իշխանական տիտղոս «1583 թ».—Ազգապ. 2272։ Տես և «Էջմիածին», 1944 թ. № 4, էջ 38—39։

— Ավելի ուշ հիշված է Սուլթանշայ 1621 թ. (Ձեռ. Վաստ. էջ 867)։

*ՍՈՒԼԹԱՆՈՒՄ, աբ. <Թրք. Sultanum «իմ Սուլթան, Սուլթանս» ձևից, ինչպես ունինք Շահում, Աղամ, Գուլում ևն։ Հիշված է 1602 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 13 բ), 1618 թ. (Manus. brit. mus. 13 ա), 1627 թ. (Ձեռ. Թեհր.= ՀԱ 1935, 395), 1683 թ. (Ուղուրլեան, Պատմ. գաղթ. Լիվոռն. 257), ԺԷ դարից (Առաք. պատմ. 47) և վերջապես Սուլթանում՝ հնդկահայ ազգային գործիչ Շամիր Շահամիրեանի հայրը (ԺԸ դար)։

*ՍՈՒԼԹԱՆՋԱՆ, իգ. <վերի Սուլթան իգ. անունից+ջան փաղաքշականով։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դարում։ Հնագույնն է Սոպթանջան 1578 թ. (Ձեռ. Վաստ. 9), ապա 1648 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 38 բ), Սուլթանճան 1666 թ. (Ձեռ. Վաստ. 924)։

*ՍՈՒԼԹԱՆՓԱՇԱ, իգ. <արաբ. sulṭān+թրք. پاشا paša տիտղոսներից։ Հիշված է նախ 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա 646), ապա Սօլթանփաշա 1627 թ. (Ձեռ. Թեհր. 6 ա=ՀԱ 1935, 395) և ապա Սուլթան/փաշա ձևով 1618 թ. (Manus. brit. mus. 13 ա)։

*ՍՈՒԼԽԱՆ, աբ. տես Սուլուխան. մի անգամ հիշված եմ գտնում Սուլխան ան Տփղիսեցի 1654 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 115, 120. նույն անձը կոչված է Սուլուխան (անդ, էջ161)։ Նույնը նաև Սիսական 84—87։

*ՍՈՒԼՈՒԽԱԹՈՒՆ, իգ. <Թթր. سولو sulu «գեղեցիկ, բարե-

դէմ» (Будагов, I. 649)+xatun «տիկին» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝ ԺԵ դարից, բայց տես և Սուլուխան։

— Սուլու խարուն, կին Էվատշայի՝ «լերդահատոր հարազատին» Ատոմ քահանայի, որ տես հավել. 1440 թ.—Ձեռ. Վաստ. 313։

*ՍՈՒԼՈՒԽԱՆ, ար. <Թթր. նույն sulu «գեղեցիկ» բառից (որ տես Սուլուխարուն)+պրս. خان xān «իշխան»։ Սուլուխան և Սուլուխաթուն ար. և իգ. անուններ են միևնույն sulu թթր. բառից, որից կա նաև Սուլու միրզա անունով մի գյուղ Հին Բայազիտի և Մակուի շրջանում (տես Այրարատ 486 բ)։ Սուլուխան անունը հիշված է երկու անգամ. նախ Երևանում 1631 թ. (Ձեռ. Բեռլինի, էջ 28 ա), մի քիչ ավելի ուշ՝ 1647 թ. (Թորոս աղբ. Ա. 220)։ Նույն անվան կրճատ ձևն է Սուլխան, որ տես վերը և որ գործածական է նաև Վրաց մեջ (հայտնի է օր. Սուլխան Օրբելեան բառարանագիրը)։

*ՍՈՒԼՈՒՔՇԱՀ, ար. <արաբ. سلوك suluk «վարք, բարք, կանոնավոր վարմունք» բառից+պրս. šāh. մի անգամ հիշատակված եմ գտնում ԺԵ դարում, բայց վրիպակով գրված՝

— Սալուքշահ, որդի Սուլդանի և եղբայր Մաաթէոս երեցի, որ օրինակեց Տօնականը Վերի Նորավանքում, 1456 թ.—Հրար. Ազաթ. 1909 թ. յուլ. էջ ԽՋ։

ՍՈՒԽԱՐ, ար. <Արճէշի Սուխարայ կամ Խառարատի վանքի անունն է, որ դարձել է Սուխար թագավոր. «ի սուրբ ուխտս Սուխար Թագաւորի» (1578 թ. մի հիշատակարանում, Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472)։

ՍՈՒԿԱՏ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Սուկատ, կինն է Մամիկ. ծնողներն են Գագերի, որ երկու տուն է նվիրել Հոռոմոսի վանքին 1231 թ.—Արձ. Շիրակ, էջ 21։

ՍՈՒՉՀԱՏԻ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ միայն գտնում եմ հիշված՝

— Սուչհատի, աշխատավոր ոմն Յովհաննավանքում 1687 թ.—տես Ձեռ. Էջմ. № 936 Ճառընտրի յիշատ։

ՍՈՒՋՈՒՄ, ար. ծագումն ինձ անհայտ. մի անգամ հիշված եմ գտնում՝

— Մելիք Սուջում, նստում էր Ցօր բերդում 1605 թ.—Առաք. պատմ. 9, նաև Բարխուտ. Պատմ. աղվ. Ա. 132։

† ՍՈՒՍԱՄ, իգ. <կրճատ ձևն է հաջորդ Սուսամբար անվան և ոչ թե թրք. susam «կնճիթն, շուշմայ, քունջութ». մի անգամ հիշված եմ գտնում 1642 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 332)։

† ՍՈՒՍԱՄԲԱՐ, իգ. <համանուն ծաղկի անունից, որ պարսկերենից փոխառյալ բառ է։ Հիշատակված է ԺԷ—ԺԸ դարերից և այժմ էլ գործածական է։ Հնագույն հիշատակությունն է Սուսամբար 1657 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 34 ա), Սուսունբար 1742 թ. (Հուսաք. 52), Սուսամբար 1756 թ. (Ձեռ. Վասպ. 313), Սուսանպար 1762 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 302)։ Սրա կրճատ ձևն է Սուսօ (թիվը անհայտ)՝ Ձեռ. Վասպ. 550։ Նաև՝

† ՍՈՒՍԱՅ, իգ. ծագում է նախորդից. մի անգամ գտնում եմ հիշված՝

— Սուսայ, կին Բենայի, որ էր որդի Սմբատի և տեր Փանձաթաղի. միասին մի այգի են նվիրել Թանատի վանքին, 1348 թ.—Արձ. Սիսական 122։

† ՍՈՒՐ, ար. <հյ. սուր «թուր» բառից, ինչպես կա արաբ. سيف Sayf անձնանունը, որ է բուն «թուր», նույնպես և թրք. Qələǰ-Aslan։

— Սուր, նահապետ Հայկազանց. հաջորդ Փառնակի, Ն. Բ. 1478 թ. ըստ Զամչ.—Խոր. Ա. ԺԹ. Ցհ, կթղ. բ. Կզկնտ. Ա. Ժե (չունի հրատ. Շահն). Մաղ. Թղ. ԺԹ. Սամ. անեց. 45. Վրդ. է. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 17. Մին. համդ. 9.—սեռ. Սուրայ՝ Սամ. անեց. 45։—Տես հատկապես Ալիշան՝ Հյու. յառաջ քան 200, 203, 310։

* ՍՈՒՐԱԹ, իգ. <արաբ. صورت ṣurat «պատկեր, նկար» բառից. իբրև անձնանուն գործածվել է մեր մեջ ԺԴ—ԺԶ դարերում։ Այժմ խափանված է։

— 1. Սուրաթ, կին Կարապետի և մայր Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Խրիմ) գրել տվեց Աստուածաշունչը 1325 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 2. Սուրաթ, դուստր Շամօի և քույր տանուտեր Ղազարի, որ Վան քաղաքում գրել տվեց մի Ավետարան 1418 թ.—Նոտարք 57, Ձեռ. Վասպ. 307։

— 3. Սուրաթ, դուստր տանուտեր Առաքելի, որ Խիզանի Գամաղիէլի վանքում գրել տվեց մի Ավետարան 1459 թ.—Ձեռ. Վասպ. 453, 455։

— 4. Սուրաթ, դուստր Խանդութի՝ դստեր Խոջալի, որ

Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. 485։

— 5. Սուրաթ, կին Աղբուղայի՝ հօրեղբօր Ազարիա արեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— Հիշված կա նաև Սուրաթ՝ 1512 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 646։

*ՍՈՒՐԱԹ-ԽԱԹՈՒՆ, իգ. <նախորդ Սուրաթ անունից+խաթուն. մի անգամ գտնում եմ հիշատակված՝ 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 73 ա)։

*ՍՈՒՐԱԹ-ՄԵԼԻՔ, իգ. <արաբ. صورت şurat «պատկեր» +ملك melek «հրեշտակ» բառերից և նշանակում է «նա որ հրեշտակի պատկերն ունի, հրեշտակադեմ»։ Մի անգամ ունինք հիշատակված՝

— Սուրաթ-մելիք, կին Սեփնջրէկի և մայր տանուտեր Նասրատինի, որ Բերկրիի Տէր-Ցուսկան որդի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Նոտարք 61։

ՍՈՒՐԱՑ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Սուրայ նախարար Մոկացի, ժամանակակից Արշակ Գ (†386 թ) թագավորի։—Խոր. Գ. խզ։

Սուրգայ տես Տուրգեա։

*ՍՈՒՐԷՆ, ար. <պհլ. Sūrēn (պրս. Sùrhan) անունից, որ տառադարձված է հուն. Σουρήνας, լա. Surena։ Այս անունով հայտնի են՝ Արշակունի Պահլաւական ազնվական մի տուն (որ Սասանեանց ժամանակ յետ արքայի երկրորդ գահն ունէր), Սուրէն պահլաւ հազարապետ Արեաց Վռամ թագավորի ժամանակ (Խոր.), Սուրէն պահլաւ զորավար Շապուհի (Բուզ.), Սուրէն մարզպան Հայաստանի՝ Զարմանդուխտ թագուհու ժամանակ (Բուզ.), այլ ոմն Սուրէն մարզպան Խոսրով Պարսից թագավորի ժամանակ (Սեբ.), Սուրէն զորավար Ցունահայաստանի՝ Խոսրով Բ Պարսից թագավորի ժամանակ (Սեբ.) են։—Հիւբշ. 73։ Ծագում է ըստ Justi 317 բ զնդ. sūra «ուժեղ, զորավոր» բառից՝-ēn գզվական մասնիկով. ինչ. Արտէն, Խորէն, Արշէն, Գուրգէն են։ Պատահական նմանություն ունի պրս. سوران sūran «հարձակում»։ Հնում քիչ է գործածված և հազիվ հիշատակված է Գ—Դ դարերում. այժմ վերանորոգվել է և բավական տարածված անուն է, որից Սուրէնեան ազգանունը և փղքշ. Սուրիկ (տես անդ)։

— 1. Սուրեն, *աշխարհական անուն Գր. Լուսաւորչի, ծն. «239 թ».—Ագաթ. 74։*

— 2. Սուրէն *նախարար Սալահունեաց, ժամանակակից Տրդատի. որդին՝ Թէոդորոսը քրիստոնյա դառնալով՝ Սուրէնը նահատակեց նրան «288 թ». մեռել է նրա նահատակութիւնից 4 տարի հետո, «292 թ»։—Յայսմ. մայ. 11 (երկու անգամ գրըված նաև* Օրէն, *որ թվի թե գրչի սխալ է).—սեռ.* Սուրենայ՝ *անդ։—Ալիշան՝ Յուշիկք Ա. 220։*

— 3. Սուրէն, *որի անունով էջմիածնի վանքը կոչվել է «Սուրենայ անապատ» ըստ Առաք. Բ. ր։ (Հայտնի չէ թե ով է այս Սուրենը. իսկ Այրարատ 213 ր համարում է էջմիածնի հին անունը)։*

— 4. Սուրէն *Խորխոռունի, նախարար Արշակ Գ («†386») թագավորի օրով.—Խոր. Գ. խգ, խե.—սեռ.* Սուրենայ՝ *Խոր. Գ. խե։*

**ՍՈՒՐԻԱՆ, ար. <արաբ.* سرياني suryānī *«ասորի, Սիրիացի» բառից։ Հիշատակված են այս անունով երկու տարբեր անձինք՝ Ջեռ. Հալէպի, Ա. 65 ար (թվականն անհայտ)։*

*ՍՈՒՐԻԿ, ար. այժմ* Սուրէն *անվան փաղաքշական ձևն է. բայց այդպես էր նաև հնում, երբ ունինք՝*

— Սուրիկ *նահապետ Հրաձորոյ. Մեծն Ներսէսի ուղեկիցներից մեկն էր՝ Վաղէս կայսեր մոտ դեսպան գնալու ժամանակ «364 թ».—Բուզ. Դ. ժա։—Նույնը Մեսր. եր. 52՝* Սուրիկ *նահապետ Գարեղենից։*

**ՍՈՒՐԻՋԱՆ, ար. <պրս.* سور sūr *«հանդէս, հացկերույթ, հարսանիք»+*جان jān *«հոգի» բառերից. այն է «հոգու հարսանիքը». հիշված է միայն մի անգամ* Սուրիճան *ձևով անթվական մի հիշատակարանում* (Manus. brit. mus. *56 ր)։*

*ՍՈՒՐՀԱՏ, ար. <արդյոք հյ.* սուր *և* հատ *բառերի՞ց է ձևանում։ Մի անգամ հիշատակված եմ գտնում* Սուրհատ *անուն նվիրատու Հոռոմոսի վանքին 1217 թ. կամ քիչ ուշ։—Արձ. Շիրակ, էջ 23։*

**ՍՈՒՐՄԱԿ, ար. նույն անունը կա նաև Վրաց մեջ. հմմտ.* Սուրմակ (*վրաց. Սաուրմագ) սպարապետ ան Վրաց. ստուգաբանությամբ* Sauromaces *թագավոր Վրաց, որին նշանակեցին Հռովմայեցիք և որին վտարեց Շապուհ Բ՝ 368 թ.* (Justi *292 ր, Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 505)։ Ծագումն անհայտ է. բայց անշուշտ օտար։*

— 1. Սուրմակ *Արծկէացի, փառամոլ երեց. միացավ նա-*

խարարներին՝ չարախոսելու համար Պարսից թագավորի առաջ և գահընկեց անելու Արտաշես Դ-ին ու Սահակ կաթողիկոսին և որա փոխարեն ստացավ կաթողիկոսական պատիվ «428 թ»: Բայց մի տարի հետո նախարարներից հալածվելով՝ ստացավ թագավորից Բզնունեաց եպիսկոպոսությունը: Շմուելի մահվամբ «437 թ» երկրորդ անգամ կաթողիկոսական գահ բարձրացավ. մեռավ «443 թ».—Փարպ. ժգ. Խոր. Գ. կգ. Դաւ. անյ. էջ 99. Յհ. կթգ. ժգ. Արծր. Դ. ժբ. Ասող. Բ. ա. Շնորհ. վիպ. 957. Կիր. 19. Վրդ. իգ. Յայսմ. սեպտ. 9. Մեծոփ. յիշ. գ. Յհ. կթգ. հյր. 273. Քհնպ. 270. Սամ. անեց. 70. Ջուղ. 44.—Սորմակ՝ Արծր. Ա. ժա. Մխի. առ. իթ (=իը). Գամ. սահ. 32.—Սաուրմագ Ծաղկեցի՝ Վրաց աղբ. Ա. 77.—սեռ. Սուրմակայ՝ Խոր. Գ. կգ, կգ. Փարպ. ժե. Յհ. կթգ. ժգ. Ասող. Բ. բ. Կիր. 19. Վրդ. իգ. Սամ. անեց. 70.—Սորմակայ՝ Գամ. սահ. 32.—գրծ. Սուրմակաւ՝ Խոր. Գ. կգ.— Սօրմակաւ՝ Արծր. Ա. ժա:

— 2. Սուրմակ եպիսկոպոս Բզնունեաց. մասնակցեց Արտաշատի ժողովին «449 թ», պատասխանելու համար Միհրներսեհի նամակին.—Փարպ. իգ. Եղիշ. 22:

ՍՈՒՐՄԱՆՇԱՀ, ար. (հոգով Սուրմանշէն). երկրորդ մասը պրս. شاه šāh «թագավոր» բառն է. անծանոթ է Սուրման. մի անգամ հիշված է 1694 թ.—Թորոս աղբ. Ա. 220:

ՍՈՒՐՈՒԽ, իգ. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Սուրուխ, կին պարոն Նէքնէքի, որ Բերկրիում, Խաչեր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1307 թ.—Ձեռ. Վասպ. էջ 153:

ՍՈՒՐՈՒՄԷԼ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ գըտնում եմ հիշված ԺԵ դարում:

— Սուրումէլ, որդի Ասիլ մէլիք տատի, որ Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 241:

ՍՈՒՐՍԻԿ, ար. ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշված է Ս. Սուրսիկ Յայսմաւուրքի մեջ (Տաշեան, Ցուց. 896 բ):

ՍՈՒՓԱՆ, ար. ծագումը ինձ անհայտ:

— 1. Սուփան տէր, վախճանվել է Վայոց ձորում 851 թ.— Կղկնտ. Գ. իա:

— 2. Սուփան մականունն է Գրիգոր Բ (№ 101) Սիսական իշխանի (†911 թ), որ Կոթայ եկեղեցու և Մաքենոց վանքի շինության ընդարձակ երկու արձանագրության մեջ (Օրբ. լդ,

որից Սիսական 55—56 և 68) կոչում է իրեն միայն Սուփան անունով։

— 3. Սուփան, շինել է Գնդեվանքի սրահը և այդ առթիվ կանգնեցրել է մի խաչքար 967 թ.—Արձ. Սիսական 106։

— 4. Սուփան, տէր Սիւնեաց. միացավ Յուսուփ ոստիկանի հետ ընդդէմ Սմբատ Ա-ի (թերևս նույն ընդ Գրիգոր Սուփան?) Ժ դար.—Յհ. կթղ. խզ։

— 5. Սուփան, որի որդին՝ Աշոտ Հայկազնեայ՝ իշխան Գեղարքունեաց՝ մեռավ Ահմադ ոստիկանի պատերազմում ընդդեմ Սմբատ Ա-ի (Ժ դար).—տես. Սուփանայ՝ Արծր. Գ. իբ։

— 6. Սուփան Գնդունի, վանական էր Գնդեվանքում (Ժ դար).—Օրբ. խթ։

— 7. Սուփան քահանա՝ Յաղջագուրայ Ս. Անանեանց վանքից. անդամ Թաշենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968») կաթողիկոսը.—Անան. պատմ. 134 բ։

— 8. Սուփան որդի Սակոի. իր եղբայրների հետ միասին Շոսաթ գյուղը նվիրեցին Տաթևի վանքին՝ 1026 թ.—տես. Սուփանայ՝ Օրբ. ծե։

*ՍՈՒՔԱՐ, իգ. <արաբ. سكر sukkar «շաքար» բառից. մի անգամ գտնում եմ հիշատակված 1674 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 175)։ Սրանից են կազմված Սուքրեան (Վեննա. Մորենացու աշխարհագրության հրատարակչի ազգանունն է) և Սիւքերեան (լսել եմ Ատափազարում) ազգանունները։

*ՍՈՒՔԻԱՍ, ար. (գրված է բազմազան ձևերով. Սիւքիանոս, Սիւքիոս, Եւսիւքիոս, Եւսիք, Իսիքոս, Իւսիգոս, Իսիքիոս, Իւսիւքիոս, Հիւսիքոս, այժմ գրվում է միայն Սուքիաս, ժղ. Սո՛ւքյազ (այսպես Ղարաբաղում. հիշված է 1628 թվին Սուքիազ ձևով (Երեմեան, Նոր-Ջուղայի ԺԷ դ. յուշարձ. էջ 9 բ). <հուն. Ἡσύχιος անունից, որ նշանակում է «հանդարտ, խաղաղ». ճիշտ տառադարձությամբ պիտի լինէր Հեսիւքիոս, հետին Բիւզ. հնչումով Իսիւքիոս։ Հմմտ. Յայսմ. օգոստ. 27 «Սուքիաս, որ ասի կեանս խաղաղականս առացեալ».—Վկ. սուք. 41 «Սիւքիաս անուանեցայ, այսինքն խաղաղական կեանս առացայ»։ Այժմ քիչ է գործածվում. սրանից է Սուքիասեան ազգանունը, որի հնագույն հիշատակությունը գտնում եմ 1276 թ. (Տէր Սուքիասեանց, Արցախ 233)։

— 1. Սուքիաս կամ Սուքիասոս, գլխավորն է Սուքիասեանց վկայից։ Սրանք Սաթենիկ թագուհու ազգականներից էին, Ալա-

նաց իշխանական տոհմից. Ոսկեանց քարոզութեամբ քրիստոնյա դարձան, մկրտվեցին և ճգնում էին Ջրաբաշխ սարում։ Խոսրով Ա (†240 թ) Թագավորի ժամանակ Բաղաշա անունով ալանը եկավ Հայաստան և բոլորին նահատակեց։ Այս վկայաբանությունը տես Վկ. սուք. 33—56. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. 90. Ալիշան, Արշալ. քրիստ. 59 շար։ Կա նաև վկայ. Վկ. սուք. որ ըստ Մառի հանված է Խորենացուց։ Սուքիասեանց գերեզմանի մասին տես Հնոց և Նորոց, էջ 135—9։—Սուքիաս՝ Ուխտ. Ա. խր. Յայսմ. օգոստ. 27. սեպտ. 19. Տաթև. ձմ. խե.—սեռ. Սուքիասայ՝ Վկ. սուկ. 65.—Սուքիանոսի՝ Յհ. կթղ. է.—Սուքիասեանք՝ Շար. գր. Պարգ. 691. Ճշ. 70. Ժմ. 947. Յայսմ. օգոստ. 27, հոկտ. 26, նոյ. 1. Տաթև. ձմ. խե. Թղթ. դաշ. 19. Մեծոփ. յիշ. ր.—Սուքիասեանց վկաների անունները են ըստ Յայսմ. օգոստ. 27՝ Սուքիաս (կռապաշտ ժամանակ կոչվում էր Բաեադրաս, ըստ Վկ. սուք. 41 Բարքաբբայ), Ղունկիանոս, Պողիքտես, Կոդրատոս, Իւքիրոն (այլ ձ. Դիոքսիքերոն), Մեմիանոս, Փոմկաս, Ներանգիոս (կամ Սերգիոս), Դոմետիանոս, Անդրիանոս, Զոսիմոս (կամ Յովսիմոս), Բիքտորիոս, Թալիլոս, Յորդանես, Անաստասիոս, Յակոբոս, Թէոդորիտոս.—մի քիչ տարբեր ընթերցվածներով՝ Վկ. սուք. 55. Այրարատ 537.—հմմտ. նաև Սուկաւեանք «վկայք Քրիստոսի 365 ամաւ յառաջ»... Գիրք թղ. ձդ.—Հացունի, Կարևոր խնդ. 128—135։

— 2. Սուքիաս (գրված Սուքեաս), Խաչատուր վարդապետի հետ միասին նորոգել են Հաղարծինի Ս. Գրիգոր տաճարը՝ Ափխազաց Թագավոր Գուրգեայ և նրա մեծ իշխան Սարգիս ամիրսպասալարի հրամանով 1155 թ.—Արցախ 367։

— 3. Սուքիաս վանաց երեց, որին Խոսրովիդուխտ և Գոհար Ժ դարում գրված մի Աւետարան նվիրեցին 1183 թ.—Շաղակաթ 191։

— 4. Սուքիաս, որի օժանդակությամբ Խաչատուր վրդ. նորոգեց Հաղարծնի վանքը 1184 թ.—Սմբատեանց, Գեղարքունիք, էջ 184։

— 5. Սուքիաս քահանա, եղբայր Յովհաննէս դպրի, Սաղմոսավանքում (ԺԲ դար).—տես Միաբան, Գորիս և շմ. էջ 48։

— 6. Սուքիաս, կազմեց Հաղբատում Եսայի և Թուղթք Պօղոսի ձեռագիրը 1209 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 71։

— 7. Սուքիաս, առաջնորդ Երից մանկանց վանքի 1260 թ.—Արցախ 222։

— 8. Սուքիաս եպիսկոպոս Սափնոպոլայ, անդամ Սսի եկե-

դեցական ժողովի 1307 թ.—Ազգապ. 1786։ (Գրված է Hesychios, որ պետք է հասկանալ Սուքիաս, մինչդեռ Զամչ. Գ. 309 դարձնում է Յուսիկ։ Միանգամայն Ազգապ. Ստիֆօպոլայ բառը, որ ուրիշներ Պոլիս են հասկանում, ընդունում է Փ. Ասիոյ Ստեփանուպոլիս կամ մի այլ քաղաքը, քանի որ տաճիկները դեռ Պոլիսը գրաված չէին և Ստամպոլ անունը դեռ չկար)։

— 9. Սուքիաս հայր Գրիգոր գրչի, որ Կաֆայում օրինակեց Տօնականն ու Յայսմաւուրքը՝ Աւետիք վարդապետի հրամանով, 1307 թ.—Manus. bibl. nat. էջ 57, 60։

— 10. Սուքիաս հայր Սարգիս քահանա գրչի, որ Նախավկայի վանքում օրինակեց Աւետարանը, 1320 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 30 ա։

— 11. Սուքիաս կուսակրօն քահանա, եղբայր Հայրապետ քահանայի, որ էր վանահայր Դրազարկի վանուց, 1325 թ.—Սիսուան 234 բ։

— 12. Սուքիաս, որդի Սարգիս քահանայի, որ Բզնունեաց Աղէթ գյուղում ստացավ մի Աւետարան 1330 թ.—Ձեռ. Թաւր. էջ 2 ա։

— 13. Սուքիաս քահանա, քրոջ որդի Յովհաննէս քահանայի (№ 712 ), որ Խիզանում Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, որին ժառանգորդ կարգեց սույն Սուքիաս քահանային 1402 թ.—Ձեռ. Վասպ. 289, Նօտարք 18։

— 14. Սուքիաս կաթուղիկոս Աղուանից, հաջորդել է Ստեփաննոս Դ-ին, որ մեռել էր 1323 թ. Սուքիասին էլ հաջորդեցին Պետրոս Բ. (†1406 թ) և ապա Կարապետ։ Հայտնի չեն Սուքիասի և Պետրոսի թվականները։ Միայն, որովհետև Կարապետը նստել է 1406 թվին, ուստի Սուքիասին և Պետրոսին պետք է դնել 1323—1406 թ. շրջանում.—Ձեռ. Դաշեան, Ա. 89 բ. Ջամբռ 77։—(Բարխուտ. Պատմ. աղվ. 205, 209 այս Սուքիասին իբրև վկայություն հիշում է մի Արձ. ՉԹ=1262 թվից. հիշում է նաև Ներսէս ՉԻԵ=1276 թվից։ Բայց չի նկատում որ այս անձինք հիշված են իբրև առաջնորդ և ոչ թե կաթուղիկոս։ Բացի սրանից 1200 թիվը շփոթում է 1300 թվի հետ)։

— 15. Սուքիաս կրօնավոր, հոգևոր որդի Ստեփաննոս քահանայի, որ օրինակեց Ծերուն քահանայի համար մի Աւետարան, 1420 թ.—Նօտարք 63։

— 16. Սուքիաս, միաբան Վարագայ վանքի 1454 թ.—Նօտարք 176։

— 17. Սուֆիաս, *միաբան Խիզանի Գամաղիէլ վանքի, 1468—9 թ.—Ձեռ. Վասպ. 452, 455։*

— 18. Սուֆիաս, *որդի Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում գրել տվեց մի Ավետարան 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463—4։*

— 19. Սուֆիաս *մահտեսի քաջ կրոնավոր, միաբան Աղրակի Ս. Բարթուղիմեոս վանքի, 1487 թ.—Ծանիկեան, Հնութ. Ակնայ 84։*

— 20. Սուֆիաս, *որդի Յովսէփի և եղբայր Յակոբ կրոնավորի, որ Աղթամարում օրինակեց Ավետարանը 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։*

— 21. Սուֆիաս *կրոնավոր, երեց միաբան Աղրակի Երնկանի գյուղի Ս. Աստուածածին վանքի, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 528։*

— 22. Սուֆիաս, *հայր Ռուզ տիկնոջ, որ Խիզանում, Յովանէս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։*

— 23 Սուֆիաս, *տաղասաց ԺԷ դարու.—Յուշիկք, Բ. 125։— Նույն է՝*

— 24. Սուֆիաս *վարդապետ, տաղասաց ԺԸ դարու. իր տաղերից տես Տաշեան, Ցուց. 1151 գ։*

***ՍՈՒՖԻԷ**, *իգ. <արաբ.* صوفي şūfī *«միստիկ, ջերմեռանդ, մոլեռանդ» բառի իգ.* صوفيه şūfiye *ձևից։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1635 թ. (Երեմեան, Նոր-Ջուղայի ԺԷ դ. յուշարձ. էջ 27 ա)։*

***ՍՈՓԻԱ**, *իգ. <հուն.* Σοφία *անունից, որ բուն նշանակում է «իմաստություն». այնպես որ մինչև անգամ այսպես էլ թարգմանված է Վրք. և վկ. Բ. 310. «Կին ոմն որում անուն էր Իմաստութիւն»։ Կա նաև* Իմաստուհի, *որ տես առանձին։ Հայտնի է սրբուհին* Սոփիա՝ *Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 398։ (Սոփիան մայրն էր, որ ուներ երեք դուստր՝ Պիստոս, Ելպիս, Ագապի։ սրանք նշանակում են «Հավատ, Յոյս, Սէր». չորսն էլ նահատակվեցին Հռոմում հավատքի համար՝ Ադրիանոս կայսեր ժամանակ, որ գահակալեց 117—138 թ։ Նրա անվան է նվիրված Պոլսի հռչակավոր բյուզանդական եկեղեցին՝ Այա-Սոֆիա, որ աշխարհիս ամենաշքեղ շենքն է համարվում։ Նախ եկեղեցի էր, Սուլթան Մեհեմմեդ Ֆաթիհը (1453 թ) վերածեց մզկիթի, իսկ այժմ թանգարան է)։ Այս անվան այլ ձևերն են գերմ.* Sophia, *անգլ.* Sophia, Soph, Sophy, *ֆրանս.* Sophie, *ռուս.* София, Софья, *փղքշ.* Соня. *կենդանի է այժմ մեր մեջ* Սոփիա, Սոփիկ,

Ղրբ. Սոփաճ, Պլ. Սոֆիցա, Կովկասում՝ Սոճիա, Սոճիկ ձևերով (տես վերը Սոճա)։ Փղքշ. Սոֆիկ ձևը գտնում եմ ԺԸ դար՝ Bodleian 167, իսկ Սոփիկ՝ Թվականն անհայտ մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Բ. 1013։

— 1. Սոփիա, Կեսարացի կին, որ եղավ Գրիգոր Լուսավորչի գայակը «239 Թ».—Զամչ. Ա. 367, Ազգապ. 74։

— 2. Սոփիա, քույրն է Թէոդորա (№ 1) հայազգի կայսրուհու, որ մեռավ 867 Թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 374։

— 3. Սոփի (որ և Հրաճոյշ), դուստր Աշոտ Ա Թագավորի, կին Գրիգոր-Դերենիկ Գ Արծրունու և մայր Աշոտի, Գագիկ Ա Թագավորի Արծրունեաց և Գուրգէնի. մեռել է «888 Թ».—Սոփի՝ Արծր. Գ. ի, լ. Դ. ա. Հաւաք. 33.—սեռ. Սոփեայ՝ Արծր. Գ. լ. Դ. ա։

— 4. Սոփիա իշխանուհի Սիւնեաց. էր դուստր Գրիգոր-Դերենիկ Գ Արծրունու և քույր Գագիկ Թագավորի Արծրունեաց. կին Սմբատ (№ 55) Սիսականի՝ որդւոյ Աշոտի։ Նախորդ Սոփի կամ Հրանոյշ իշխանուհու աղջիկն է։ Ժամանակակից է Բագրատունեաց Սմբատ Ա և Աշոտ Բ Երկաթ Թագավորների։ Յուսուփ ոստիկանի արշավանքի ժամանակ իր կեսրոջ և իր ծծկեր մանկան հետ ապավինել էր Երնջակ բերդը։ Երբ Յուսուփը գրավեց այդ բերդը և Սմբատին էլ նահատակեց («914 Թ»), իշխանուհիներին գերի տարավ ու չարաչար տանջանքների ենթարկեց։ Սոփիա իշխանուհու կեսուրը՝ Շուշան և դիեցիկ մանկիկը մեռան բանտում։ Իսկ Սոփիա իշխանուհին, որ ոչ իսկ «խոտեղեն անկողին ուներ, և ոչ իսկ ջուր և չոր հաց կատանայր», դիմացավ բոլոր տանջանքներին, քշվեց Ատրպատական, որտեղից վերջապես ազատվելով վերադարձավ Սիւնիք։ Իր ամուսինը՝ Սմբատ և նրա երեք եղբայրները նույնպես հասան։ Երկիրը քանդված ու ավերված, պալատները կործանված, ինչքը կողոպտված էին։ Չորս եղբայրները շուտով ամեն ինչ նորոգեցին և նույն իսկ Երնջակ բերդը Գողթնի արաբ ամիրայից ետ խլեցին։ Սոփիա իշխանուհին գնեց Հաւու գյուղը և նվիրեց Հերմոնի վանքին (936 Թ)։ Բայց իր գեղեցկագույն գործն եղավ Գնդեվանքը, որ շինեց նույն թվին Վայոց ձորի գլխին, քանդակելով նրա վրա հետևյալ սքանչելի արձանագրությունը.

ՄԵՏԱՆԻ ԷՐ ԱՆԵԿՆ ՎԱՅՈՑ ՁՈՐ, ԾԻՆԵՑԻ ԶՍԵ,
ԵՒ ԵԴԻ ԱԿՆ Ի ՎԵՐԱՅ

Այս արձանագրության համար Ալիշան, Շիրակ 95 ծան. ասում է «քան զշինուածն մեծաշուք՝ արձանագրեաց բան ամենաշուք»։

Քան զայս առաւել հակիրճ, միանգամայն քան զայս առաւել զգայուն ոչինչ չէր կարելի արձանագրել։—Սոփիա՝ Օրբ. խԹ, ծ.— Սոփի՝ Օրբ. լէ.—Սոփիոյ՝ Օրբ. լէ, խԹ.—Արձ. Սիսական 104—5, 15։

— 5. Սոփիա, քոյրն է Վարդ Փոկասի, որ իրեն կայսր հրատարակեց (†989 Թ). ամուսնացած էր Վարդ Սկլերոսի Կոստանդին անուն եղբոր հետ։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 182։

— 6. Սոփի, դուստր Աշոտ Գ Ողորմածի և քոյր Գագիկ Ա շահանշահի. կոչում է իրեն Թագուհի Հայոց և Վրաց. Թողել է մի Արձ. Մրէնում 992 Թ. (Շիրակ 138) և մի ուրիշ Արձ. (երեք անգամ կրկնված), որով վերացնում է Ալամանի հարկը (Շիրակ, էջ 125)։

— 7. Սոփի, դուստր Տիգրան մարզպան Անձևացու, կին Վահրամ (†«1045 Թ») Պահլաւունի սպարապետի. մեռել է 1015 Թ. Թաղվել է Մարմաշէնի վանքում, ուր ննում էր իր գամբանը հետևյալ արձանագրությամբ. «Այս հանգիստ է Սոփիայ ազախնոյն Քի... կիսաւրեա ու Աստուած փոխեցա և Թողի զաւակս իմ որբում. աղաչեմ յիշեսջիք զիս...»։—Ալիշան, Շնորհ. էջ 12 (տախտակը), Շիրակ 149։

— 8. Սոփիա, կին Սևադայի՝ Թագավորազին Աղվանից և մայր Սենեքերիմ Ա (†1094 Թ) Թագավորի Սիւնեաց.—սեռ. Սոփիայ՝ Օրբ. ծԹ։

— 9. Սոփիա, կին Առեստ=Ովրեստէս քահանայի և մայր Վասիլ Մելիտինեցի գրչապետի, որ օրինակեց մի ընտիր հունարեն Աւետարան 1226 Թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Ա. 543, Բ. էջ 1840։

*ՍՈՓՈՆԻԱ, ար. <եբր. צפניה Ṣəfanyā անվան հուն. Σοφονίας տառադարձութիւնից. ծագում է צפן ṣfn «Թաքցնել, ծածկել, պահել» արմատից (Gesenius 692)։ Այս անունով հայտնի է 12 փոքր մարգարեներից մին։ Հնից մեր մեջ ավանդված չէ. բայց այժմ գործածական է Պոլսում, Սոփոն, մանավանդ Սեփոն ձևով։

*ՍՊԱՀԱՆ, ար. <պրս. اسپاهان Ispāhān, որ և Ispahān, Sipāhān, Sifāhān քաղաքի անունից։ Հին ժամանակ նշանավոր էր այս քաղաքը և Շահաբասի ժամանակ դարձավ հռչակավոր մայրաքաղաք։ Ծագում է հպրս. spādān «բանակ» բառից.=պհլ. Spāhān, հուն. 'Ασπάδανα, ասոր. ܐܣܦܗܢ Aspahan (Հիւբշ. 21)։ Իբրև անձնանուն գործածված է նաև Թուրքերի մոտ. այսպես՝ Ասպահան (Մեծոփ. 79) որդի Ղարա-Իւսուֆի և եղբայր Սքանդարի,

որ եղավ առաջին Շահի Արմէնը 1422 թ. (կոչված է Իսպան՝ Արճէշի 1409 թվի մի արձանագրության մեջ՝ Նոտարք 31)։

— 1. Սպահան, որդի Աթապակի. ստացավ մի Աւետարան Սաղմոսավանքում 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22։

— Ավելի ուշ հիշված են Ասպահան՝ 1581 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա), Ըսպահան 1588 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 233 ա), Ասպահան 1608 թ. (Ձեռ. Վասպ. 824)։

*ՍՊԱՀԱՆՇԱՀ, ար. <Սպահան քաղաքի անունից+պրս. شاه šāh «թագավոր», որով ամբողջը լինում է «Սպահանի թագավոր»։ Հիշատակված է ԺԵ—ԺԸ դարերում։

— 1. Ասպահանշայ, որդի Թումայի՝ եղբոր Ղարիբշահի (№ 4), որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 2. Ասպահանշայ, որդի Ստեփաննոսի և թոռ տանուտեր Արապշահի, որ իր երեք եղբայրների հետ, Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— 3. Սպահանշայ, տանուտեր Մաշկադդակ գյուղի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան 1490 թ.—Ձեռ. Վասպ. 573։

— Ավելի ուշ հիշված են՝ Ըսպանշայ (իմա Սպահանշահ), 1523 թ. (Ձեռ. Կեռ. ածած. 47 բ), Ըսպահանշահ 1725 թ. (Ձեռ. Վասպ. 28)։

*ՍՊԱՆԴԱՐԱՏ, ար. <արշակունեան պհլ. *Spandaδāt, որ է հպրս. *Spantaδāta=զնդ. Spəntōdāta անունից։ Կազմված է հպրս. *spanta=զնդ. spənta «սուրբ»+dāta բառերից և նշանակում է «սրբատուր» (հմմտ. Բագարատ «Աստուածատուր»)։ Նոր ձևերն են պհլ. Spandyāt, պրս. Ispandiyāδ, Isfandiyāδ, Isfandiyār, տառադարձված հուն. հին ժամանակ Σφενδαδάτης, նոր՝ Σπανδιάτης։ Հայտնի են Spendōdāta որդի Վշտասպի, հայր Բահման-Արտաշրի (Աւեստա), պրս. اسفندیار Isfandiār որդի Գուշտասպ թագավորի Պարսից (Շահն. հտ. 4, էջ 289), որ գրավեց Թուրանի Պղնձէ քաղաքը (էջ 435), Isfendiār զորավար Շահաբասի, արշավեց Վրաստան (1616 թ) (Justi 308—9)։ Հայերենում հնագույն ձևն է Սպանդարատ, որ գործածվում է մեր մեջ էլ իբրև անձնանուն. ավելի ուշ՝ Սպանդիատ (տես տակը), Սպանդար (հիշում է Մագ. թղ լղ իբր Սասանում բանտարկված անձ. Տաշեան՝ Ցուց. 160 բ), որ և այժմ անձնանուն է դարձել (հմմտ. Սպանդար Սպանդարեան՝ խմբագիր Նոր-Դարի) և նորագույնը՝ Սպանտիար (տես տակը).—Հիւբշ. 74, 508։

— 1. Սպանդիատ նահապետ Մեհնունեաց. մին այն նախարարներից, որոնք ուղեկից եղան Ներսէսին՝ Վաղէս կայսեր մօտ դեսպանության գնալու ժամանակ «364 թ».—Մեսր. եր. 53 (այլ ձ. Սպանդարատ)։

— 2. Սպանդարատ Կամսարական, որդի Արշաւիրի, ազատվելով Արշակ Բ-ի կոտորածից՝ ապաստանեց ըստ Բուզ. Մամիկոնեանների մօտ, իսկ ըստ Խոր. փախավ Յունաստան, և Պապ թագավորի հետ «369 թ» վերադարձավ Հայաստան։ Ձիրաւի ճակատամարտում սպանեց Ղեկաց=Լեկաց (Լեզգի) Շէրգէր թագավորին։ Կինն է Արշանոյշ։—Խոր. Գ. լա, լգ, լէ, լը. Բուզ. Դ. ժթ. Մխ. անեց. իզ.—սեռ. Սպանդարատայ՝ Խոր. Գ. լը, խգ, խզ. Կղկնտ. Ա. ժզ.—Կոգեան, Կմսրկնները 65, 86—91։

— 3. Սպանդիատ Դիմաքսեան, ներկա էր Մեծն Ներսէսի մահվան բալեններին «373 թ»։—Տաշեան, Ցուց. 802 ա։

— 4. Սպանդարատ տէր Արշարունեաց. ժամանակակից Արտաշէս Դ թագավորի. պատգամավոր գնաց Պարսից Վռամ թագավորի մօտ՝ խնդրելու համար Սահակ կաթողիկոսի վերադարձը «432 թ»։—Խոր. Գ. կե։

— 5. Սպանդիատ Բագրատունի, ասպետ Հայոց, ժամանակակից Բաբկէն («490—516 թ») կաթողիկոսի. ուրիշ շատ նախարարների և կրոնավորների հետ ստորագրում է այն թղթին, որ Բաբկէնը գրեց Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք թղ. ը։

— 6. Սպանդիար, տաղասաց ԺԶ դարու.—Ցուշիկք Բ. 125։

— 7. Սպանդիար հիշված է 1557 թ. (Ձեռ. Վենետ. Ա. էջ 529)։

— 8. Ըսպանդիար հիշված է 1604 թ. (Ձեռ. Վասպ. 872)։

*ՍՊԱՐԱՄ, իգ. <պհլ. sparam, պազ. sparham, պրս. [illegible] siparam «ռեհան, basilic» բառից, որից նաև հյ. շահասպրամ, խմասպրամ ծաղկանունները և իրան. Zātsparam անձնանունը։ Մեր մեջ ավանդված է Սպարամ, Սպրամ և Սպրամիկ ձևերով (Հիւբշ. 75, Justi 310)։

— 1. Սպարամ, կին Վարազ-Տրդատ իշխանի Աղվանից. միանալով Աղվանից Ներսէս կաթողիկոսի հետ՝ ուզում էր քաղկեդոնականությունը տարածել Աղվանքում։ Հայոց Եղիա կաթողիկոսը արքունական զորք բերել տալով՝ պատժեց նրանց և աքսորեց Դամասկոս «713 թ»։—Սպարամ՝ Կղկնտ. Գ. ե (հրատ. Շահն. Սպրամ).—Սպրամ՝ Օրբ. ծա, կը. Կիր. ը. Օրբ. հկճռ. ժբ.—

տես. Սպարամայ՝ Կղկնտ. Գ. գ, է (հրտր. Շահն. Սպրամայ).— Զամչ. Բ. 564 կոչում է Սոփի։

— 2. Սպրամ, դուստր Վարազ-Տրդատի (Բ), Միհրական ցեղից, կին Առանշահիկ տեառն Սինեայ. շինեց Նորավանքը՝ Սողէից գավառում (Թ դար).—Կղկնտ. Գ. իզ. (Սիսական 75 կոչում է Ապրսամիկ)։

— 3. Սպրամիկ, մայր Մխիթարի, Հանձիթ գավառում. իր մոտ ապաստանեցին հունաց Նիկեփոր Բ կայսեր (963—9) երկու որդիները՝ Վասիլ և Կոստանդին, փախչելով Զմշկիկ կայսեր (969—976 թ) ձեռքից.—Ուռհ. 7, 29, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 143։

*ՍՊԻՐԻԴՈՆ, ար. <հուն. Σπυρίδων անունից, որ ծագում է σπυρίς, σπυρίδιον «կողով, կողովիկ» բառից։ Այս անունով հայտնի է Spyridon եպիսկոպոս Կիպրոսի, անդամ Նիկիոյ ժողովի (Sophocles 1005), որի վարքը մտել է մեր Յայսմաւուրքի մեջ (տառադարձված է նաև Սպիւռիտոն, Սփիւռիտոն)։ Մեր մեջ հնապես չէ գործածված. այժմ էլ անսովոր է։ Ծանոթ է միայն Սպիրիդոն Մելիքեան հայտնի երաժշտագետը († 1933 թ.)։

*ՍՏԱՀՐԱՇԱՊՈՒՀ, ար. <իրան. *Staxr-Šāpūr անունից, որ կազմված է *staxr=զնդ. staxra «ամուր»=պհլ. staxr «բերդ» +Šāpūr «Շապուհ» բառերից (Հիւբշ. 75)։

— Ստահրաշապուհ. այսպես է կոչում Եղիշէն մեր Վռամշապուհ թագավորին.—տես. Ստահրաշապհոյ՝ Եղիշ. 7։

ՍՏԱՏ, ար. ծագումն ինձ անհայտ։

— Ստատ իշխան Թոռնեցի. պատգամավոր գնաց Աշոտ Գ Թագավորի կողմից Զմշկիկ կայսեր մոտ.—Ուռհ. 18 (տպ. Երուսաղէմի՝ Սմբատ), 28 (տպված Ես Սատ)։

*ՍՏԵՓԱՆԻ, իգ. <հաջորդ Ստեփանոս անվան հունաձև իգականն է։ Հիշատակված է ԺԲ—ԺԳ դարում։

— 1. Ստեփանի (կամ Ստեֆանիա և կամ Եստեփեմի) դուստր Լևոն Բ թագավորի. կոչվում է նաև Ռիթա (Սիսուան 142). ընդարձակ տես Ռիթա № 3։

— 2. Ստեփանի (կամ Ստեփանիա Էմիլիա), դուստր Կոստանդին պայլի, քույր Հեթում Ա թագավորի և Սմբատ Գունդստապլի։ Ամուսնացավ Կիպրոսի Հենրի թագավորի հետ։ Երբ Սմբատը գնաց Թաթարիստան, Սմրղանդից տեղեկություններ հաղորդեց իր քրոջը և Հենրիին՝ 1248 թ. փետր. 6-ին։—Սիսուան 75, Բակուրան՝ Կիպրոս կզ. 115, Գիւրքճեան՝ Հայկկն. Կիլ. էջ 24։—

Այս Սմբատի Ստեփանիա Էմիլիային գրած նամակի հասցէն այսպես է հին ֆրանսերենով. „A tres haut et puissant homme Monseigneur Henry par la grace de Die roy. de Chipre et a sa chiere suer Emmeline la royne, et a noble homme Jehan de Hibelin son frere li Connoitables de Ermenie salut et amour“. — Արձ. 1242 թվից՝ Տաշեան ՀԱ 1901, էջ 310—311։

— 3. Ստեփանե կամ Ստեփանեա, կին Կոստանդին Լամբրոնացի իշխանաց իշխանի (†1250) և մայր Օշին մարաջախտի († 1294). արդեն մեռած էր 1274 թ. ՀԱ—1898, 245—6 և REA 6, 1 0։

— 4. Ստեփանիա, դուստր Լևոն Գ-ի. ծն. 1278 թ. այսպես է կոչված ըստ Սիսուան 555 ր. այլուր Թէֆանոյ № 9, ապա Թէոդորա։

*ՍՏԵՓԱՆՆՈՍ, ար. <հուն. Στέφανος անունից, որ բուն նշանակում է «պսակ». հմմտ. Գր. Նար. մատ. 380. «Ստեփաննոս կարդացեալ, որ ըստ Եղլադականին պսակ առձայնի».—Տաթև. ամ. 670 «Ստեփաննոս՝ որ թարգմանի պսակ»։ Տես և Պսակ անվան տակ։ Ըստ այսմ ուղիղ տառադարձությունն է Ստեփանոս (մի ն-ով), բայց շատ սովորական է դարձած գրել Ստեփաննոս (երկու ն-ով)։ Օտար ձևերն են լտ. Stephanus, իտալ. Stefano, գերմ. Stephanus, Stephan, անգլ. Stephen, ֆրանս. Etienne, իսկ ռուս. լինում է թե Стефан և թե Степан, փաղաքշականը Стёпа։ Մեր մեջ գործածական է Գ դարից մինչև այժմ։ Ժողովրդական ձևերն են Ստեփան, Ստեփ, Տեփան, Ստիկ, Սեփան, Տեփօ, Տեփիկ և ռուսերենի օրինակով՝ Ստեոպա, Սեոպա։—Տեփանոս ձևը հիշատակված է 1706 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 660), Տեփան ձևը՝ 1757 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 290 բ)։ Կիլիկեան շրջանում կային նաև Ստեփանե, Ստեփանէ, Ստեփ ձևերը, որոնք այժմ խափանված են։ Իբրև օրինակ անձնանվան հիշված է Թր. քեր. 44 Ստեփաննոս և Սիւն. քեր. 206 Ստեփաննոսիկ ձևերով։ Թարգմանված է նաև Պսակ, որ տես առանձին. իսկ իգականի համար ունինք Ստեփանուհի կամ Պսակուհի, որոնք օտարազգիների համար են (տես Ձեռ. Վենետ. Բ. էջ 6 (վերջին տող) և էջ 7)։— Սրանից ունինք Ստեփանեան, Ստեփաննոսեան և Տեփանեան ազգանունները։—Հիւբշ. 336։

— 1. Ստեփաննոս առաջնորդ Գողթան, հաջորդ Զրևանդի (Գ դար. Լուսավորչից առաջ է՝ ըստ Ազգապ. 60).—Օրբ. և։

— 2. Ստեփաննոս քահանա. մին է Հռիփսիմեանց ընկերակցող քահանաներից. կույսերի նահատակության ժամանակ

փախավ Դոնոյ լեռը և այնտեղ մեռավ ու թաղվեց։ Լուսաւորիչը նույն տեղում շինեց Աղջոց վանքը (Ջամբռ 281)։—Ցայսմ. հոկտ. 5, 6. Վրդն. աշխ. 509.—սեռ. Ստեփաննոսի՝ Ցայսմ. հոկտ. 5.—Այրարատ 361։ Իր վրա պարականոն մի շարական՝ 4 տնով, հեղինակն անծանոթ՝ տես Պարականոն շար. 164, ուր հիշված է ինքը՝ Ստեփաննոս, սեռ. Ստեփաննոսի ձևով։

— 3. Ստեփան եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. իբրև հաջորդ Վրթանէսի՝ նստավ 351 թ.—Ջքր. եպս. 281, Արրտ. 1868 դեկտ. էջ 103։

— 4. Ստեփանոս վանահայր Գլակայ վանքի (Ս. Կարապետ). իբրև հաջորդ Եպիփանի՝ նստավ «352 թ».—Մամիկ. ա։

— 5. Ստեփաննոս Ուլնեցի. Կոկիսոն քաղաքն էր բնակվում. 25 տարեկան երիտասարդ էր. հալածանքի պատճառով ծնողներին և մերձավորներին վերցնելով՝ սարն է ապաստանում։ Մատնվում են և տարվում Սոկրատէս դատավորի առաջ։ Ջուրանալով իրենց հավատքը՝ բոլորն էլ նահատակվում են «362 թ».—Շար. դր (էջ 425). Ցայսմ. օգոստ. 18. Վրք. և վկ. Բ. 322—339. Աղգապ. 188.—սեռ. Ստեփաննոսի՝ Շար. անդ։—Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Ն. 62—91 (էջ 83՝ նահատակակից ընկերների անուններն են՝ Բագարատ, Վիգաղիոս, Բասիլիոս, Սիմէոն Կեսարացի, Գրիգորիս Կոկիսոնցի, որա երկու որդիքը՝ Սըմբատ և Յովհաննէս, ծերունին Ղևոնդէոս՝ իր 3 որդիներով՝ այն է Դաւիթ, Ստեփաննոս և Թադէոս. որանցից շեղատառով. եղածները հայ են և հիշում եմ նաև առանձին. մյուսները անհայտ լինելով՝ չեմ հիշում առանձին)։

— 6. Ստեփաննոս Ասողնիկ Տարօնացի. աշակերտ Սահակի և Մեսրոպի. հիշվում է Խորենացու, Դաւթի, Փարպեցու և ուրիշների հետ։ Վիճաբանել է Մելիտոս փիլիսոփայի հետ։ Գրել է Կեսարիոյ հաջորդության պատմությունը, որ հրատարակված է Արրտ. 1868, էջ 42, 57, 104։—Ցայսմ. սեպտ. 17, նոյ. 25, փետր. 19. Ջքր. եպս. 281.—Մեծոփ. 38 հիշում է «Ասողիկ Թարգմանիչ» անունով.—Տաշեան, Ցուց. 60, 94, 344, 479.—Ստ. Մալխասեան, «Սեբէոսի պատմ. և Մ. Խոր.» 1899, էջ 55 ընդունում է երկու տարբեր Ստեփաննոս Ասողիկ, իսկ Միարան, Հյկկնք 1899, Վղրշպտ. էջ 75 մերժում է սրան։—Հմմտ. № 15։

— 7 8. Ստեփաննոս Սիւնեցի (առաջին), «որ յաշակերտաց անտի սրբոց Թարգմանչաց. գեօթն ձայնոն Աւագ օրհնու-

թեանց». իբր հեղինակ հիշվում է Շարականի սկիզբը (Ե դար)։— Ջամչ. Ա. 781։

— 9. Ստեփաննոս եպիսկոպոս Անձևացեաց. ժամանակակից Ներսէս Բ («548—557 թ») կաթուղիկոսի։ Մին է այն ինը եպիսկոպոսներից, որոնք չէին պատասխանել Ներսէսի հրավերին՝ Դուինում եկեղեցական ժողով գումարելու համար։ Այժմ Ներսէսը կրկնում է իր հրավերը սպառնական ձևով.—տես. Ստեփաննոսի՝ Գիրք Թղ. ժդ։

— 10. Ստեփաննոս առաջնորդ Վարագայ վանքի. հաջորդեց Միքէլին՝ շուրջ 560 թ.—Հայապ. 232։

— 11. Ստեփաննոս եպիսկոպոս կաթուղիկոսարանի. Մովսէս Եղիվարդեցի կաթուղիկոսի («574—604 թ») նամակը տարավ Կիւրիոնին.—տես. Ստեփաննոսի՝ Ուխտ. Բ. ա։

— 12. Ստեփաննոս Ա. եպիսկոպոս, 7-րդ առաջնորդ Ցուրտաւի. հաջորդեց Յոհան Ա-ին՝ շուրջ 540 թ.—Ուխտ. Բ. խը. Գիրք Թղ. ֆա։

— 13. Ստեփաննոս եպիսկոպոս, 10-րդ առաջնորդ Ցուրտաւի. հաջորդեց Սամուէլին՝ շուրջ 570 թ.—Ուխտ. Բ. խը. Գիրք Թղ. ծա։

— 14. Ստեփանոս եպիսկոպոս Տայոց. մին այն եպիսկոպոսներից, որոնք Յովհաննէս Բ Գաբեղեան («557—574 թ») կաթուղիկոսի հետ գրեցին Աղուանից եպիսկոպոսներին և զգուշացրին Նեստորական քարոզիչներից. — բց. ի Ստեփանոսէ՝ Գիրք Թղ. ժթ. Կղկնտ. Բ. է։

— 15. Ստեփաննոս Տարոնացի, պատմագիր, որից քաղել է Սեբէոս պատմիչը իր Պատմութեան գ գլուխը (Զ դար).—տես. Ստեփանոսի՝ Սեբ. էջ 11։—Հմմտ. № 6։

— 16. Ստեփաննոս Սիւնի, ապստամբեց Սամուէլ Վահեւունու հետ Պարսից Խոսրով Բ (590—628 թ) թագավորի դեմ. բայց շուտով հաշտվեց, և Պարսկաստան կանչվելով՝ պաշտոն ստացավ։ Իր հորեղբայր Սահակից հափշտակել ուզելով տանուտերությունը, Խոսրովի հրամանով բռնվեց ու գլխատվեց.—Սեբ. ժդ, ժթ, իա։

— 17. Ստեփաննոս եպիսկոպոս Բագրեւանդի. Հունահայոց այլ եպիսկոպոսների հետ հաւատոյ ձեռնարկ տվեց Հայոց Աբրահամ կաթուղիկոսին «607 թ».—Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ.—բց. ի Ստեփաննոսէ՝ Գիրք Թղ. ծե. Կղկնտ. Բ. խթ։

— 18. Ստեփաննոս եպիսկոպոս Գարդմանի. գնաց Եզր «630—641 թ» կաթուղիկոսի մոտ և «հաղորդեցաւ ընդ նմա».—

*Գղկնտ. Գ. խդ (չունի հրտր. էմին).—Զամչ. Բ. 543. Վրաց աղբ. Ա. 45 (նոր մանրամասնությամբ)։*

— 19. Ստեփաննոս *վանահայր Գլակայ վանքի. հաջորդեց Կամխտասին (Է դար).—Մամիկ. ա։ (Ըստ Զամչ. Բ. 295 սա որդին էր Վարդ Արծրունու, ի կնոջէն Մարիամայ, որ էր դուստր Մուշեղ Մամիկոնեան իշխանի Տարօնոյ. այս մասին տես Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 275)։*

— 20. Ստեփաննոս, *որդի Վարդ Պատրիկի՝ իշխանի Արծրունեաց. եղավ վանահայր Գլակայ վանքի՝ իբրև հաջորդ Թոդիկի (Է դար).—Մամիկ. ա—դ.—սեռ.* Ստեփաննոսի՝ *Մամիկ. գ։*

— 21. Ստեփաննոս, *կրտսեր որդին է Վահանի՝ թոռին Գայլ Վահանի (Է դար).—Մամիկ. էջ 55։*

— 22. Ստեփաննոս *եպիսկոպոս Բագրևանդի (Ը դարի սկիզբը).—Այրարատ 523։*

— 23. Ստեփաննոս *Ա Սիւնեցի. եպիսկոպոս Սիւնեաց. Դուինի ավագերեցի որդին էր. աշակերտ Մովսէս (№ 26) Սիւնեցու. ճգնական կյանք վարեց Մաքենեաց վանքում. սովորեց Սիւնիքում, Պոլսում, Աթէնքում, Հռոմում և վերադարձավ Դուին։ Պոլսում եղած ժամանակ Գերմանոս պատրիարքը (715—730 թ) միաբանական թուղթ գրեց և նրա ձեռքով Հայաստան ուղարկեց «728 թ»։ Ստեփաննոսը պատասխանեց այս թղթին։ Ունի նաև մի նամակ Անտիոքի եպիսկոպոսին (Գիրք թղ. ՋԴ, նույնը Ձեռ. Վենետ. Բ. 1059)։ Թողել է բազմաթիվ աշխատություններ. թարգմանություններ, մեկնություններ, ճառեր, շարականներ (հատկապես Մարտիրոսաց շարականները)։ Հիշենք ի մեջ այլոց՝ Մեկնութիւն ժամակարգութեան (հրտր. Արրտ. 1915—17 և արտատպ. 1917), Մեկնութիւն Քերականին (հրտր. Թր. քեր. Պետերբ. 1915), Մեկնութիւն Դանիէլի մարգարէի (հիշում է Վրդն. ղան), Դաւանութիւն հաւատոյ (Արրտ. 1893, 413—418), թրգմ. Գրոց Դիոնեսիոսի Արիսպագացւոյ (712 թ) և Լուծմանց Մաքսիմոսի, Մարդակազմութեան Գրիգորի Նիւսացւոյ (717 թ), Կիւրղի Պարապմանց (715 թ), Սկիզբն մեկնութեան Յոբայ, Պատճառ և Թելադրութիւն տեսլեան Եզեկիէլի, Մեկնութիւն Արարածոց (այժմ կորած), Աւետարանի, Ժամագրոց, Աղօթք կնքելոյ գերեզմանին են (տես Տաշեան, Ցուց. 1153 ա)։ Սարգիսեան, Ձեռ. Վենետ. Բ. 296 նրան է վերագրում նաև Ղուկասի Աւետարանի մեկնութիւնը, որի համառոտութիւնը տալիս է Վենետիկի № Ի Ճառընտիրը։ Բայց ենթադրություններ անելու կարիք չկա,*

որովհետև Ստեփաննոսը ունի արդեն ամբողջ Աւետարանի մեկնությունը։ Սարգիսեան, անդ, էջ 301 խոսում է նաև Սիւնեցու այլ Թարգմանությունների մասին, որ նա կատարել է Պոլսում Դաւիթ հիւպատոսի հետ, որին հույն է համարում (սրանց մասին տես Դաւիթ № 31)։ Իբր պիտի լինի նաև Աւետարանների ծաղկանկարների բացատրությունը, որ տես Թորոս աղբ. Ա. 192—4 և ՀԱ 1925, էջ 582։—Այս բոլորից դուրս, Ձեռ. Վենետ. Բ հիշատակված եմ գտնում Ստեփաննոսի անունով հետևյալ գրվածքները. 1) Երանելոյն քերթողի Ստեփանոսի Սիւնեցւոյ Պատասխանի առ վարդապետսն Աղուանից. Սկիզբն և հիմն ամենայն պահոց զուրբաթ և դչորեքշաբաթ գտաք (անդ, էջ 194).— 2) Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի Յաղագս եկեղեցօրհնեաց կարգաց թէ զի՞նչ է խորհուրդն (անդ, էջ 194).—3) Վասն անապականութեան մարմնոյն որք ասեն թէ որ աճէ և նուազէ ապականացու է... Ստեփանոսի իմաստասիրի ասացեալ (անդ, էջ 285).— 4) Ստեփանոսի Սիւնեաց եպիսկոպոսի տիեզերալոյս և իմաստուն վարդապետի ասացեալ ի դիմաց հերետիկոսաց. Զբնութեանս զանազանութիւնն... (անդ, էջ 1059)։—Ստեփաննոս Սիւնեցին ընտրվելով իբր հաջորդ Յովհանի Բ՝ վարեց Սիւնեաց առաջնորդությունը մի տարի և ապա մի պիղծ կնոջ ձեռքով սպանվեց «735 թ» Մողն ավանում և թաղվեց Թանահատի վանքում։ Կոչված է «սուրբ և մեծ իմաստասէր»։ Իր վկայաբանությունը գրել են Օրբելեանը և Մխ. Այրիվանեցին, որոնցից անցել է ապա Յայսմաւուրքի մեջ (Խաղբակեանք 118)։ Մանրամասն կենսագրությունն ունին Այրիվ. 17—23, Ձեռ. Կարին. 125 և Յուշիկք Ա. 270—292։—Գիրք թղ. ձզ, ձէ. Կղկնտ. Գ. ժզ. Տարօն. Բ. § 17. Սամ. անեց. 89. Կիր. 16, 17, 40, 41, խը. Վրդն. գան. ա, ժա (էջ 242, 274). Այրիվ. 17 բ, 19 աբ, 20—22 ա. Մխ. այրիվ. 67. Յայսմ. յուլ. 24. Օրբ. իթ, լ, լդ, հա. Տաթև. հարց. 637—8, 642. Պրպմ. 516. Շար. (հիշված է սկիզբը՝ հեղինակների շարքում, երգող Խաչի չորրորդ օրվա «Սրբութիւն սրբոց» շարականի (թիվ ՁԱ), որի ծայրանունն է Ստեփաննոս).—սեռ. Ստեփաննոսի՝ Գիրք թղ. ձզ, ձէ. Ստ. ժմ. 71. Կղկնտ. Գ. ժզ, ժթ. Խոսր. 77. Սիւն. յոբ. 304. Սիւն. քեր. 183. Մ. մաշտ. 260 բ. Յայսմ. յուլ. 24. Այրիվ. 17 ա—19 բ, 22 աբ. Կիր. 41. Վրդն. աշխ. 509. Օրբ. լ, լա, լդ. Մեծոփ. 38. Առաք. պտմ. 315, 388, 519, 557, 563, 631. Աթան. յոջ. էջ գ.—Ջամչ. Բ. 555. Ջարբ. Հին դպր. 489—496, Թրգմ. 288, 382. Ստ. ժմ. 1—12։—Տես նաև

Ստեփաննոս № 248.—*Նոր կենսագիրների մեջ կարևոր է հիշել Մ. Աբեղյան, Հայոց հին գրակ. պատմ. Ա. էջ 485, ուր Ստեփաննոսը դրվում է առաջին հեղինակ Ութ կանոնների, որոնք հետագայում այնպես մեծ զարգացում ստացան մեր եկեղեցական գրականության մեջ և կազմեցին Շարականը: Առանձնապես կարևոր է հիշել Սիսական, էջ 128, ուր Ալիշանը այնպիսի գերազանց գնահատական է տալիս Ստեփաննոսի մի շարականին, որ անհրաժեշտ եմ համարում բառացի մեջ բերել այստեղ. «Գեր ի վերայն բնաւից այդոցիկ՝ սուտանացեալ բարձրանայ անկորուստ և անկորնչելի յեկեղեցւոջ մերում, անզուգական կանոն Աւագ Օրհնութեանցն ի Յարութիւն Քրիստոսի. որք բաւական էին ոչ նմա միայնոյ ի փառս, եթէ և չէր այլ ինչ ծնուցեալ յերկոց նորին, այլ և համօրէն ազգի նորին՝ եթէ ջնջեալ բարձեալ էր բնաւ այլ դպրութիւն սորա: Ի նշուլից ծնուցածոյ այդմ միակ գոհարի՝ մարթ էր իմաստասիրել բանագիտաց, եթէ որպիսի և որքանիս արժան էր յուսալ բանաստեղծս յայնպիսւոյ ազգէ և ի լեզուէ. գոհար, որ արդ և ի միջի ոչ սակաւուց զերծելոց և յայտնի բերոց դպրութեան մերոյ, մանաւանդ ի շարս սրբազան երգոց, գերազանցօրէն փայլէ, և փայլեսցէ՝ մինչև երգարանեալն ի նմանէ Յարուցեալն ի մեռելոց՝ յարուսցէ զննջեցեալսն յաւուրն յանմահութիւն»:*

— 24. Ստեփաննոս *պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Յովհաննէսին և գահակալեց 758—774 թ. (Ադաւնունի):*

— 25. Ստեփաննոս *գրան երեց, մեծ գիտնական, իմաստասեր և քերական. (տարբեր նախորդից. հմմտ. վարը № 40).—Կիր. 40. Սամ. անեց. 89 (դնում է 775 թ).—ըստ Ազգապ. 905 նույն, չէ նախորդի հետ՝ հակառակ Չամչեանի:*

— 26. Ստեփաննոս *եպիսկոպոս, անդամ Նիկիոյ 787 թվի եկեղեցական ժողովի.—Չամչ. Բ. 423:*

— 27. Ստեփաննոս *Ա Դուինեցի, կաթուղիկոս հայոց «788—790 թ». հաջորդեց Եսայի Եղապատրուշեցուն.—Ղև. խր. Յհ. կթղ. իգ. Յհ. կթղ. հյր. 276. Բհնպ. 272. Ասող. Բ. բ, դ. Մխ. առ. իթ (=իը). Սամ. անեց. 89. Մխ. անեց. դ. Կիր. 42. Վրդ. խ. Մխ. այրիվ. 21. Օրբ. հա. Ազգապ. 905—910:*

— 28. Ստեփաննոս *քահանա, հունարենից թարգմանեց Բարսղի գործերից (Ը դար ըստ Ա. Զամինեանի).—Զարբ. Թրգմ. էջ 335:*

— 29. Ստեփաննոս *որդի Վարազ-Տրդատի, Միհրական ցե-*

ղից. «կխօրեայ վախճանեցաւ». սպանվեց իր ազգական Փիլիպպեան Ներսեհի ձեռքով Դաղոյի վանքի խորաձորում 821—2 թ. ըստ Մարքվարդ, Բագր. 43.—Կղկնտ. Գ. ի, իգ. Մխ. այրիվ. 23։

— 30. Ստեփաննոս Աբլասադ, իշխան Աղուան, թաքցրեց Բաբան պարսկի եղբայր Աբդուլլահին և ապա հանձնեց Արաբներին (838 թ. ըստ Տաբարի)։ Ստեփաննոսին սպանեցին Դաւոն և Շապուհ՝ 830 թ! (թվականները չեն համարվում)։ Ստեփաննոսի քեռորդիներն են Ապումուսէ (տես այս անունը) և Աբլասադ։—Կղկնտ. Գ. ի.—տես. Աբլասադայ՝ անդ։

— 31. Ստեփաննոս վանական Ծիծառնայ. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը> Միսաքյան, էջ 268 ա։

— 32. Ստեփաննոս որդի Տիրոցի և եղբայր Մուշեղի. հիշվում է իբրև վկա Տաթևի 844 թվի կալվածագրում.—տես. Ստեփաննոսի՝ Օրբ. լը։

— 33. Ստեփաննոս վանահայր Մաքենոցաց վանքի. ուսուցիչ Մաշտոց կաթուղիկոսի. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը.—տես. Ստեփաննոսի՝ Օրբ. լգ։

— 34. Ստեփաննոս Կոն, Սևորդեաց ցեղից. Ուտեաց Տուս գյուղում բռնվեց Բուղայից և քշեց Բաղդադ «852 թ», ուր հավատքը չուրանալով նահատակվեց «855 թ»—Յհ. կթղ. իգ. Ասող. Բ. բ. Կիր. 44. Վրդ. խզ. Յայսմ. մրտ. 2. Սամ. անեց. 94. Օրբ. լգ։

— 35. Ստեփաննոս, կրտսեր որդի Յունաց Վասիլ Ա հայազգի կայսեր; եղբայր Լևոն Իմաստասէր կայսեր. ծնվել է 872 թ. եղավ պատրիարք Պոլսի՝ հաջորդելով Փոտ պատրիարքին «886—893 թ».—Զամչ. Բ. 697, 702. Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 230, 352, 354։

— 36. Ստեփաննոս քահանա, աշակերտ Մաշտոց կաթուղիկոսի. գրիչ. օրինակել է Մաշտոցը 893 թ. և նրա վերջում ավելացրել է իր ուսուցչի կենսագրությունը.—Ջարբ. Հին դպր. 531, Չեռ. Դաղեան, Ա. 43 բ.—սրա լավագույն հրատարակությունն ունի Գր. Տէր-Պօղոսեան, «Ստեփաննոս վանականի յիշատ.» Շուշի 1913, ուր հիշված է էջ 41, 42՝ տես. Ստեփաննոսի ձեռվ։

— 37. Ստեփաննոս քահանա, Աղուանից առաքյալ Եղիշէի նշխարները թաղեց Ուռեկան գյուղում (Թ դար).—Կղկնտ. Ա. է.—տես. Ստեփաննոսի՝ անդ։—Ազգապ. 516 (շուրջ 489 թ)։

— 38. Ստեփաննոս, որդի Գագիկ Ա իշխանի Աղուանից. թոռան թոռն է Վարազ-Տրդատ իշխանի Աղուանից. իր քույրն

է Ապրամէն (Թ դար).—Կղկնտ. Գ. իզ. Մխ. այրիվ. 23.—տես. Ստեփաննոսի՝ *Օրբ. լբ*։

— 39. Ստեփաննոս *Բ. Ռշտունի, կաթողիկոս Հայոց «929—930 թ», հաջորդ Յովհաննէս Ե (№ 97) Պատմագրի. նստավ Աղթամարում, որովհետև Դուինը գրավված էր Նըսր ոստիկանից։—Սամ. անեց. 99. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21. Միխ. աս. իթ (=իը). Կիր. 48. Վրդ. խէ. Օրբ. հա.—տես.* Ստեփաննոսի՝ *Օրբ. ծա։—Ազգապ. 1069—74։*

— 40. Ստեփաննոս *(հայր), կոչվում էր «քերական». անդամ Խաչենի եկեղեցական ժողովի, որ գումարեց Անանիա Մոկացի («946—968 թ») կաթողիկոսը.—Անան. ապստ. 134 բ։*

— 41. Ստեփաննոս *քահանա, որդի Գէորգ քահանայի. Սևանեաց իշխանական ցեղից էր. թողեց «հայրենական շքեղաշքութիւնը» և կրոնավոր դարձավ. 936 թվին, Բղէն գավառում հիմնեց Նորավանքը և եղավ նրա առաջին վանահայրը։ Այնտեղ ճգնեց ու մեռավ 970 թ.—Օրբ. խզ.—տես.* Ստեփաննոսի՝ *Օրբ. խզ*։

— 42. Ստեփաննոս *Գ Սևանեցի. մականունն է «ընդակեր». Մաշտոց կաթողիկոսի տոհմից. կաթողիկոս հայոց «969—971 թ»։ Նախապես Սևանայ վանքի վանական և ճգնավոր էր, ապա առաջնորդ (965—9 թ. ըստ Սիսական 88 ա)։ Անդամ Անիի «969 թվի» ժողովի, որ գումարվել էր Վահան կաթողիկոսի արարքները քննելու համար։ Ժողովը կաթողիկոս ընտրեց Ստեփաննոսին և Վահանը փախչելով Վասպուրական՝ նզովեց Ստեփաննոսին։ Ստեփաննոսը անձամբ գնաց Վասպուրական, բայց Աբուսահլ իշխանը ձերբակալեց նրան և բանտարկեց Կոտորոց բերդում, ուր մեռավ մի տարի հետո «972 թ»։—Ասող. Գ. ը. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21. Սամ. անեց. 101. Բհնպ. 272. Միխ. աս. իթ (=իը). Ուռհ. 34, 38. Կիր. 49. Վրդ. խէ. Յայսմ. մայ. 27. Սմբ. պատմ. 40, 41. Օրբ. ժմ. 12. Օրբ. ծբ, կը, հա. Օրբ. հկճռ. ժբ. Մին. համզ. 33.—տես.* Ստեփաննոսի՝ *Ասող. Գ. թ*։

— 43. Ստեփաննոս *Ապարանցի, եպիսկոպոս Մոկաց. Ջափրանիկ Մանդլատի քեռորդին և եղբոր թոռն էր Դաւիթ (№ 61) եպիսկոպոսի, որին և հաջորդեց։ «983 թվին» հունաց Վասիլ կայսրից ստացավ մի քանի նշանավոր սրբութիւններ և Ապարանից Ս. Խաչը, որին է ընծայում Նարեկացին իր Ապարանից Խաչի Պատմութիւնն ու Ներբողը։—Գր. նար. մատ. 380, 422. Սիմ. ապար. 140. Հաւաք. 37.—տես.* Ստեփաննոսի՝ *Գր. նար. մատ. 422. Սիմ. ապար. 136, 137. Շար. (հիշվում է սկիզբը՝ իբր*

հեղինակ).—Նոյնը թարգմանաբար՝ Պատկ՝ Սիմ. ապար. 140. տես և Ամատունի, Պարակ. շար. 128.—րց. Ստեփաննոսէ՝ Սիմ. ապար. 137.—Նոյն է Ստեփանոս Մոկացի՝ նշանավոր բանաստեղծ՝ ըստ Ալիշան, Շնորհ. էջ 82:

— 44. Ստեփաննոս կրօնավոր և քահանայ Հայկազնեայ, Սիւնեցի, եղբօրորդի և աշակերտ Նորավանքի հիմնադիր Ստեփաննոս վանահօր: Նստում էր Նորավանքում, ուր Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան 989 թ. (սա է էջմիածնի հռչակավոր փղոսկրյա Աւետարանը).—Ձեռ. Կարին. 16. Տաշեան՝ Ակնարկ 20. Շողակաթ 190. Միսաքեան 203. Rapport Arm. 30—32:—Այս Աւետարանի մասին սխալ տեղեկութիւն է տալիս Սմբատեանց, Երնջակ 120, գրչութիւնը վերագրելով Ստեփաննոս եպիսկոպոսին՝ Մաղարդայ վանքում, 989 թ:

— 45. Ստեփաննոս Կամրջաձորեցի, ուսուցիչ Սամուէլ Կամրջաձորեցու. վեճ է ունեցել Անանիա Նարեկացու, Սամուէլի և ուրիշ վարդապետների հետ՝ Առաջավորաց պահոց մասին (Ժ դար).—Չամչ. Ա. 626:

— 46. Ստեփաննոս, աշակերտ Սիմէօն սքանչելագործ ճգնավորի. ճգնում էր Արշարունեաց վանքում. մեռավ և իր ուսուցչի հրաշքով «յարութիւն առաւ»! (Ժ դար).—Չամչ. Բ. 861:

— 47. Ստեփաննոս, որդի հունաց Ռոմանոս (№ 3) Լեկապենոս հայազգի կայսեր և քույր Հեղինէ (№ 6) հայազգի կայսրուհու (919—961 թ), որ Կոստանդին Պերփիւռոժէնի կինն էր: Ստեփաննոսը իր հոր՝ Ռոմանոսի ձեռքով թագավոր պսակվեց 924 թ., ապերախտությամբ գահընկեց արեց իր հոր 944 թ, բայց ինքն էլ հետո՝ իր Կոստանդին եղբոր հետ աքսորվեց (Ժ դար).—Չամչ. Բ. 834, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 24, 49, 80—90, 376, 481, 485:

— 48. Ստեփաննոս հիմնադիր-վանահայր Վայոց ձորի Ցախացքար վանքի (Ժ դար).—տես. Ստեփանոսի՝ Ասող. Գ. է:—Միսաքեան 152:

— 49. Ստեփաննոս վանահայր և ճգնավոր. շինեց Վաղանդանի հին եկեղեցին (Նախ քան 1000 թվականը), որ ապա Շահանդուխտ թագուհին վերաշինեց և վանք դարձրեց 1000 թ.—րց. ի Ստեփաննոսէ՝ Օրբ. ծղ. Միսաքեան 203:

— 50. Ստեփաննոս «աշակերտ Բարսղի, որ հոգւորն կոչեցաւ, առաքելաշնորհ բանիւ և գործով» (Ժ դար).—Ասող. Գ. է:

— 51. Ստեփաննոս, առաջնորդ կամ վանահայր Թալինի

կաթողիկէի, հիշված է 1040 թ. երբ Սմբատ Բ թագավորը մի այլի է նվիրում վանքին.—Արձ. Այրարատ 139=Շահխաթ. Բ. էջ 51։

— 52. Ստեփաննոս, առաջնորդ Բագնայրի վանքի. հիշված է 1042 թ.—Արձ. Շիրակ 114։

— 53. Ստեփաննոս վանահայր Սանդղկայ վանքի 1053 թ. —Rapport Arm. 40։

— 54. Ստեփաննոս գրիչ. օրինակել է Աւետարանը 1055 թ. (տեղն անհայտ).—Ձեռ. Վատ. 75։

— 55. Ստեփաննոս կրոնավոր, որի մահվան առթիվ Պետրոս Գետադարձ կաթողիկոսը («1019—1058 թ») մխիթարական թուղթ գրեց Գրիգոր († 1059 թ) Մագիստրոսին.—սեռ. Ստեփաննոսի՝ Մագ. թղ. խ (ըստ Կոստանեանի այն անձը պահլաւունի է. տես անդ՝ ցանկը)։

— 56. Ստեփաննոս արքեպիսկոպոս, որին ուղղում է Մագիստրոսը իր իէ, իը և իթ նամակները, միասին հիշելով միշտ նաև տէր Գրիգոր ամ.—Մագ. թղ. իէ (իը, իթ).—Թերևս նույն է Ստեփաննոս որդի Խեղենեկի Ա, որ տես։

— 57. Ստեփաննոս որդի Քրիստափոր քահանայի. նահատակվեց Թուրքերի ձեռքով՝ Արկնի 1062 թ.—Ուռհ. 139 (Չամչ. Բ. 976 ասում է ընդհակառակը թե ընդհանուր կոտորածից միայն սա է ազատվել)։

— 58. Ստեփաննոս որդի Փիլիպպոս քահանայի. ուսուցանում էր իր հոր՝ Փիլիպպոս քահանայի և իր եղբոր՝ Սահակի հետ Այրարատում 1066 թ.—Հացունի, Դաստ. 126 (իսկ ըստ Rapport Arm. 46 Սեբաստիայում)։

— 59. Ստեփաննոս եպիսկոպոս, քարոզիչ Իսլանդիայում (1080 թվից քիչ առաջ). տես Պետրոս № 19։

— 60. Ստեփաննոս Ասողիկ, Տարոնեցի, պատմիչ. Սարգիս Ա կաթողիկոսի («992—1019 թ») հրամանով գրել է իր ժամանակի պատմությունը, որ հասցնում է մինչև 1004 թ. (հրատ. Մալխասեան, Պետերբ. 1885 թ).—կորած են Բ գրքի Ե—Զ գլուխները, որոնք իբր թե գտնելով Ա. Տէր-Միքէլեանը, հրատարակեց Արրտ. 1892, էջ 748—754. բայց դրանք արդեն կան Մալխասեանի հրատարակության մեջ՝ էջ 135—145։ Իրեն է վերագրվում նաև Մեկնութիւն Երեմիա մարգարէի (տես վերը նաև Ստեփաննոս (№ 6, 15) Ասողիկ Ե և Զ դար)։—Լատ. բ. Սամ. անեց. 3, 73. Կիր. 4. Մխ. այրիվ. 37, 72. Ջուղ. 51. Ծն. կթղ.

էջ ք.—սեռ. Ստեփաննոսի՝ *Ասող. Ա. ա.—միայն Ասողիկ կամ Ասողնիկ ձևով՝ Մխ. անեց. ե. Սամ. անեց. 83, Վրդ. իէ.—սեռ.* Ասողնկայ՝ *Մագ. թղ. ծե.—րց.* ի Ստեփաննոսէ՝ *Առաք. պատմ. 480.—իբր առաջնորդ Կամրջաձորի՝ հաջորդ Սամուէլի տես Այրարատ 548—9։—Ջարբ. Հին դպր. 551—5։—(Ն. Հովսեփան, Բազմ. 1850, էջ 21—28 Ասողիկին համարում է հեղինակ այն զարմանալի ծածկագրության, որ գտնվում է Անիի Ս. Աստուածածնին եկեղեցու պատի վրա (Շիրակ 58) և որի շատ հնարագյուտ, բայց անվստահելի բացատրությունը տալիս է նույն հոդվածագիրը)։*

— 61. Ստեփաննոս *կաթուղիկոս Աղուանից, բնակվեց քիչ օրեր Վահանու վանքում, ուր և մեռավ 1091 թ. Յիշում է իր դերեզմանը (Սիսական 296 բ).—Օրբ. խդ։*

— 62. Ստեփան *ոՑ, որի կինը՝ Կուլոն կանգնեցրել է մի խաչքար Շամախու Առուշանայ շէն գյուղի հին գերեզմանատնում 1095 թ?—Բարխուտ.—Աղվ. երկ. էջ 202—3։*

— 63. Ստեփաննոս *վարդապետ որդի Աբլղմսեհի Ա, եղբայր Թոռնիկ Բ իշխանի, Դաւիթ և Գրիգոր կրոնավորների (ԺԱ դար).—Արծր. Դ. ժր։*

— 64. Ստեփաննոս *մանուկ վարդապետ Կարմիրվանեցի. 18 տարեկանից սկսեց վարդապետել Քեսունի Կարմիր վանքում. իր դասախոսության ներկա եղավ Բարսեղ Անեցի կաթուղիկոսը և շատ հավանելով՝ Քեսուն գավառի վրա եպիսկոպոս ձեռնադրեց։ Իր աշակերտներից են Սարգիս Շնորհալին, Իգնատիոս վարդապետը, Գրիգորիս և եղբայրը՝ Ներսէս Շնորհալին։ Հուղարկավոր եղավ Գրիգոր Բ կաթուղիկոսի թաղման «1105 թ».—Ուռհ. 300. Մխ. այրիվ. 79. Կրպտ. սարգ. յոբ.=Տաշեան, Ցուց. 751.—Ջարբ. Հին դպր. 617. Ալիշան՝ Շնորհ. էջ 50։*

— 65. Ստեփաննոս *Բ կաթուղիկոս Աղուանից, հաջորդել է Մարկոս Բ-ին 1076 թ? Բարսեղ Ա Անեցին իր կաթուղիկոսական ձեռնադրությունը սրանից ստացավ «1081 թ» Հաղբատում։ Սրան էլ հաջորդեց Յովհաննէս Դ։ (Ըստ Բարխուտ. Աղվ. պատմ. էջ 182 Ստեփաննոս Բ մեռել է 1103 թ).—Ուռհ. 221, 231, 237, 295. Կիր. ը. Վրդ. կ. Ջամբռ. 76. Հայապ. 385.—սեռ.* Ստեփաննոսի՝ *Ուռհ. 221, 295. Յայսմ. յուլ. 30.—(ըստ իս Ստեփաննոս Բ դեռ կենդանի էր 1114 թ. հմմտ. Գետըոս № 29 հիշատակված Ստեփաննոս Աղուանից կաթուղիկոսը ՇԿԳ=1114 թ. որ եթե Ստեփաննոս Բ-ը չէ, նաև Ստեփաննոս Գ չէ, որովհետև այս վերջինը նստել է «1129—1131 թ». տես № 70)։*

— 66. Ստեփաննոս արքեպիսկոպոս Ուռհայի. սրա աչքերը հանեցին Փռանգները՝ մի սուտ ամբաստանության պատճառով 1108 թ.—սեռ. Ստեփաննոսի՝ Ուռհ. 309։

— 67. Ստեփաննոս երաժիշտ. հնարել է «26 եղանակ՝ ընական լրաց և կենդանեաց ձայներէն առնըլով».—Ժամանակն անհայտ, բայց նախ քան Շնորհալին (Ալիշան՝ Շնորհ. 88)։—Ալիշանը այս հատվածը վերցրել է Գաճառաց գրքից, որ ամբողջությամբ տպված է Ձեռ. Վենետ. Բ 580 և որ արտատպում եմ այստեղ։ «Քանի՞ ձայնք են գոյից. Ստեփաննոս երաժիշտ 26 բաժանեաց.—բառաչել, պոռչել, պապչել, բչել, ճչել, կոռչել, գոչել, մռնչել, մռնչել, բըբչել, մամռալ, ճչել, կանչել, գոգահել, վընչել, գոռոչել, հաչել, հնչել, կառաչել, խրխնչել, կաղկանչել, վակել, ոռնալ, կարկաջել, սուլալ (=սուլել), սըսուրչել, և չինեաց գործիք 26 առանձին ազեօք. և երգէին նոքօք. և Թիմգիանոս Թեղբացի 1 չինեաց և 26 աղի։ Ցետ սորա Թէոֆլոս այլակերպ յօրինէր գործի, որ զամենայն կենդանեաց ձայն նովաւ երգէին։ Ցետ սորա Սինեբդէս արար զառաջի ձայն ի հիւսնականէ գանալ։ Եւ Փոկեղդէս եղբայր զերկրորդ ձայնն ի զարբնականէ։ Սոփեկղիադէս զերրորդ ձայնն ի հոսանաց գետոց։ Փիպիանոս քեռորդի սոցա զչորրորդ ձայնն ի ծփանաց ծովու։ Քինոսփենէս հմուտ ձայնից զազանաց և թռչնոց, զատուցանէ զկողմն առաջի ձայնէն. Աքիլես զկողմ երկրորդ. Եւնիմէոս զչորրորդ ձայն. Արքեղայոս մաքրեաց զամենայն որ ուսաւ ի ծովային կենդանեաց։ Եւ Թէոփիլեանք ամանք արարին սահղունս չորս և եղև 12 ձայն»։—Այս բոլորը հույն՞ են. ինչու Ալիշանը Ստեփաննոսին հայ է համարում։—Սրա բացատրությունը տալիս է Կոմիտասը (Ս. Սողոմոնեան, Արրտ. 1894 թ, էջ 227, 257), որ երկրորդ անգամ տպված է Անահիտ 1135 թ. № 1—2, էջ 321։ Նա ցույց է տալիս որ Ստեփաննոս երաժիշտը ոչ թե հօրինել, այլ թարգմանել է Բարսեղից։ Գրվածքն է «յաղագս ձայնից թէ ուստի գոու»։ Այս մասին գրում է նաև «Էջմիածին», 1946 թ. հունվ. էջ 47։

— 68. Ստեփաննոս (Տէր), հիշվում է Տէր Ղազարի հետ Մշոյ Առաքելոց վանքի մի խաչքարի վրա 1125 թ.—Սարգիսեան, Տեղագր. էջ 232։

— 69. Ստեփաննոս Ջոմղոմա, երեց, որին Յովհաննէս-Սարկաւագ վարդապետը (†«1129 թ») զրկեց եկեղեցուց՝ նրա անառակ վարքի պատճառով. սա հարձակվեց նրա վրա և ուզեց

*սպանել. Յովհաննէսը փախցաւ և նրան աւագերէց նշանակեց. Ստեփաննոսը դիւահարեց.—Կիր. 65։*

— 70. **Ստեփաննոս** *Գ կաթուղիկոս Աղուանից, որդի Կարճիկի և Թոռն Կարապետի. հաջորդեց Յովհաննէս Դ-ին և նստաւ «1129—1131 թ», որից հետո աթոռը թափուր մնաց 8 տարի և ապա նստեց Գագիկ-Գրիգորիս կաթուղիկոսը «1139 թ».—Կիր. ը. Ազգապ. 1363. Հայապ. 385։ (Այս թվերը չեն համապատասխանում Ջամբռին, որ էջ 76 ասում է թե 1103 թվին մեռավ Ստեփաննոս Բ կաթուղիկոսը և Բարսեղ կաթուղիկոսը եպիսկոպոսներ ուղարկեց Աղուանք, որոնք Ստեփաննոս Բ-ի եղբոր (անունը չի տալիս) կաթուղիկոս ձեռնադրեցին։ Սակայն սա անարժան գտնվելով՝ լուծվեց և նզովքի ենթարկվեց Բարսեղից։ Այնուհետև Աղուանքը մնաց առանց կաթուղիկոսի շուրջ 30 տարի։ Բարսեղը մեռավ և նրա հաջորդ Գրիգոր Տղայ կաթուղիկոսը ձեռնադրեց Գագիկ-Գրիգորին կաթուղիկոս Աղուանից «1139 թ»։ Այս թվերը ստուգելի են։ Աղուանից անտերնչությունը Հայապ. 386 դնում է 85 տարի (ինչպես հիշել ենք մենք էլ վերը՝ հա. Ա. էջ 557, տող* ա*), Ջամբռը 30 տարի, իսկ Ազգապ. 3 տարի։ Այս թվերից որն է ստույգ։ Ստույգն է 8 տարի, ինչպես դնում է Ազգապ. ըստ Մխ. Գոշի Տարք հայրապետացն Աղուանից)։*

— 71. **Ստեփաննոս** *եպիսկոպոս Կողթ գավառի (Արցախ) և Շամքորի. մին այն եպիսկոպոսներից, որոնք օծեցին Գրիգորիսին Աղուանից կաթուղիկոս «1139 թ»։—Հայապ. 385։*

— 72. **Ստեփաննոս** *գրիչ. գրի առավ Ոսկեբերանի «Ներբողեան Լուսաւորչի», որ հունարենից թարգմանեց Աբրահամ գրամատիկոսը և սրբագրեց Ն. Շնորհալին, 1141 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 572։*

— 73. **Ստեփաննոս** *Բ եպիսկոպոս Սիւնեաց. հաջորդեց Գրիգոր Դ-ին և նստավ 1116—1143 թ. որդին էր Կիւրիկէ Բ թագավորի և եղբայր Կիւրիկեան Դաւիթ և Աբաս թագավորների (Հայապ. 392, 385—6). ներկա էր Տաւուշի 1139 թվի ժողովին, ուր Գրիգորիսը օծվեց կաթուղիկոս Աղուանից։ Մեռել է Խաչենաքար բերդում 1143 թ. (Մովսէսեան, Լոռիի թղ. 56)։—Օրբ. ծթ, կր, հա.—ծնո.* **Ստեփաննոսի**՝ *Օրբ. ծթ, կ, կբ։*

— 74. **Ստեփ(աննոս) ճոճակ**, *որ մեռել է 1144 թ. և նրա հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Գորգ ճոճակը Մուշում.—Սարգիսեան, Տեղագր. 232։*

— 75. **Ստեփանոս** *քահանա, Սկևռայ վանքում, Գէորգ Սկե-*

տացուն (ոչ Լամբրոնացին) գրել տվեց մի ճաշոց, 1154 թ.— Շողակաթ 196։

— 76. Ստեփանէ որդի Լևոն Ա-ի և եղբայր Մլեհի ու Թորոս Բ-ի. Լևոնի գերության ժամանակ գնաց Հալէպ և մտավ Նուրէդդին սուլթանի ծառայության։ Երբ Թորոս Բ-ը դարձավ Կիլիկիա և ազատամրության դրոշը բարձրացրեց («1145 թ»), Ստեփանէն էլ Մլեհի հետ միացավ նրան։ Իկոնիայի և Սեբաստիայի սուլթաններից հողեր խլելով՝ Սև լեռան կողմը հիմնեց առանձին իշխանություն։ Նրա առաջդիմության վրա նախանձելով կայսեր տեղակալ Անդրոնիկոս Եփփորբէնը նենգությամբ ճաշի հրավիրեց նրան և եռման ջրի մեջ գցելով սպանեց («1157 թ»)։ Թորոս և Մլեհ ընկան Կիլիկիայի հույների վրա և ի վրեժ իրենց եղբոր՝ 10,000 հոգի սպանեցին։—Ստեփանէ կամ Ստեֆանէ՝ Գր. եր. 404, 409, 411, 428. Սամ. անեց. 130—131, 133. Պատմ. կիլ. 204, 205, 207. Միխ. աս. իե(=իգ). Մխ. այրիվ. 19. Վրդ. հգ. Վահր. ոտ. 197—8, 202, 209. Սմբ. պատմ. 98. Պատմ. ռուբ. 215, 217. Պատմ. լմբ. 238. Հայապ. 345.—Ստեփան՝ Մին. համգ. 41.—Ստեփաննէ՝ Կիր. 62. Վրդ. հգ (ըստ հրատ. էմինի).—Ստեփանէս՝ Միխ. աս. իե (=իգ).—սեռ. Ստեփանէի, Ստեֆանէի՝ Գր. եր. 411, 413. Հեթ. ժմկ. Վահր. ոտ. 211. Սամ. անեց. 134, 136, 138. շար. 140, 142, 145. Սմբ. պատմ. 98, 99, 102, 136. Պատմ. կիլ. 208. Պատմ. ռուբ. 215, 217—8. Պատմ. լմբ. 238—9.—Ստեփանեայ՝ Օրբ. ժմ. 20, 22. Պատմ. յյտ. ներս. 45. Կիր. ա. Վրդ. հը. Միխ. աս. իե, իէ, իը.—Ստեֆանեայ՝ Նհպտք. 103.—Ստեփանի՝ Գր. եր. 410.—բց. ի Ստեփանէ՝ Գր. եր. 413.—Ալիշան՝ Շնորհ. էջ 305—312 և Սիսուան 54։—Իբր հայր Ռուբէն Բ-ի հիշված է Անարզաբայի Արձ. 1187 թ (Սիսուան 239 և Հայապ. 344)։

— 77. Ստեփաննոս եպիսկոպոս, առաջնորդ՝ Տուրոս լեռան Մրջնաղբիւր վանքի. հիշված 1169 թ.—Թորոս աղբ. Բ. 317, Հայապ. 395։

— 78. Ստեփաննոս վարդապետ իմաստասէր, որի խնդրանոք Սամուէլ Անեցին գրեց Տոմարական մի գրվածք՝ հարց ու պատասխանով (շուրջ 1170 թ).—Ալիշան, Շնորհ. էջ 123, 265։

— 79. Ստեփանոս, հայր Շուշանի, որ Մանազկերտի Խաղդուղք գյուղի եկեղեցուց գողացված Աւետարանը երեան հանեց, 1171 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 545։

— 80. Ստեփանոս, քահանա Մանազկերտի Խաղդուղք գյու-

*դի. վաճառեց մի հին Ավետարան Ավետիս երեցին, 1171 թ.— Ձեռ. Վենետ. Ա. 545, Տաշեան՝ Ակնարկ 22 (գյուղի անունը գրում է Խաղխուղք)։*

— 81. Ստեփաննոս *վարդապետ, միջնորդ կրոնական բանակցության Ներսէս Շնորհալու, ապա Գրիգոր Տղայի և հույնական(?)ների միջև։ Շնորհալին 1172 թ. ուղարկեց նրան Հայաստան՝ ծանուցանելու համար հայ-հունական վեճերի ընթացքը.—տես.* Ստեփաննոսի՝ *Շնորհ. թղ. 323, Գր. տղ. 77։—Անշուշտ նույն անձն է՝*

— 82. Ստեփանոս *վարդապետ Ցակոբցի, դրան սարկավագ Ներսէս Շնորհալու. եղել է նշանավոր կազմարար, և կազմել, մետաքսով պատել ու թանկագին մարգարիտներով ընդելուզել է այն Ավետարանը, որ Ներսէս Շնորհալին նվիրել էր իր եղբորորդի Գրիգորիսին (ապա Գրիգոր Զ Ապիրատ կաթուղիկոս).—* Rapport Arm. *48, Ցովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 17։—Ըստ Թորոս աղբ. Բ. 443 նույնը կոչված է «արքունական վարդապետ», օգնել է Գրիգոր (№ 183) գրչին արտագրելու Ավետարանը 1173 թ։ Տես նաև վարը № 104։*

— 83. Ստեփաննոս *ոմն. խնդրեց Շնորհալուց († 1173 թ) Դաւիթ Անյաղթի Սահմանաց գրքի վերջին գլխի մեկնությունը.— Շնորհ. ստեփ. 295։*

— 84. Ստեփաննոս *ոմն «Խոհական մակացու իմաստուն մերասեռ» (հայ), որ Մելիտինէի ասորի Ցակոբ վարդապետի մի թուղթը բերեց Շնորհալուն։ Շնորհալին էլ թուղթը թարգմանել տվեց նույն Ստեփաննոսին և գրեց պատասխանը՝ Քրիստոսի մարմնի անապականության մասին։—Ալիշան՝ Շնորհ. էջ 406.= Շնորհ. թղ. 230—240։*

— 85. Ստեփաննոս, *միաբան Մաղարդի վանքի. հիշատակվել 1173 թ.—* Rapport Arm. *28։*

— 86. Ստեփաննոս *Կուտկեանց, իր Քարափողոցի հողերը նվիրեց Գեղարդայ վանքին, 1177 թ.—Շահազիզ, Հին Երևանը. էջ 76, Այրարատ 343 (որ ազգանունը գրում է Կուրկեա . . . ց), Արձ. Նիւթեր հին Հյաս. պատմ. էջ 130։*

— 87. Ստեփաննոս *եպիսկոպոս Սաղամասայ «գլանն Պարսից». անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պտճ. 199։*

— 88. Ստեփաննոս *արքեպիսկոպոս Եդեսիոյ. անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պտճ. 199։*

— 89. Ստեփաննոս *եպիսկոպոս Բջնունեաց. անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։*

— 90. Ստեփաննոս *եպիսկոպոս Ծափաց. անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։*

— 91. Ստեփաննոս *վրդ. գրիչ Աւետարանի, ուր դրել է նաև իր նկարը 1182 թ.—Արցախ 101։*

— 92. Ստեփաննոս *վարդապետ Կունդ, հիշվում է Ղուկասի մեկնության ձեռագրում իբրև գրիչ կամ աշխատակից՝ 1184 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 304։*

— 93. Ստեփաննոս *որդի Երեմիայի, մեծ եպիսկոպոս Տարօնի Գլակայ վանից Ս. Կարապետի. սրա մասին ահա ինչ է պատմում Օրբ. ժմ. 20։—ՈԼ=1181 թվին մեռավ Շահի Արմէնը, որ խաղաղասեր և քրիստոնյաներին սիրող մարդ էր։ Նրա օրով ամբողջ երկիրը, մանավանդ Հայոց աշխարհը խաղաղ ապրում էր։ Շահի Արմէնի մահվան վրա, Հագարացիք զենք առին և հարձակվեցին նրա երկիրների վրա. շատ քրիստոնյաներ կոտորեցին, շատ եկեղեցիներ քանդեցին։ Ավերեցին նաև մեծ և հռչակավոր Ս. Կարապետի վանքը, որ այն ժամանակ շատ պայծառ վիճակի մեջ էր, ուր «եկք և պանդուխտք բազում էին ժողովեալ յաղագս ուսմանց աստուածայնոց յամենայն աշխարհաց»։ Անօրենները հարձակվեցին, սուրի և հուրի զոհ դարձրին ամեն ինչ, կրոնավորներից շատերին սպանեցին, որոնց հետ նաև «զմեծ եպիսկոպոսն զտէր Ստեփաննոս, զկոչեցեալն Երեմիայի որդի»։ Այս դեպքերը եղել են 1185 թվին։*

— 94. Ստեփաննոս *միաբան Սաղմոսավանքի. գերի տարվեց Դուին 1187 թ, ուր հազիվ ազատվեց կախաղանից.—Միաբան, Գոր. և շմ. 54։*

— 95. Ստեփաննոս *Ա կաթուղիկոս Աղթամարի. Արզլմսեհ կիւրապաղատի որդին և Աղթամարի Դաւիթ Ա կաթուղիկոսի եղբայրն էր։ Մոր պապի անունով կոչվեց Ալուզ։ Նախապես իշխան էր Ամիւկի. ապա դարձավ եպիսկոպոս։ Օրինակել է մի Աւետարան՝ Ս. Խաչ վանքի Վահան եպիսկոպոսի համար 1161 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 28 բ, Ակինեան, Գուղնգիրք 36)։ Դաւիթ Ա կաթուղիկոսի կենդանության ժամանակ կաթուղիկոս օծվելով (1165 թվից քիչ առաջ), նրա մահից հետո հաջորդեց նրան։ Մեռել է 1185/90 թվերին, ըստ Ակինեան, անդ, էջ 37—38։—* Ստեփաննոս՝ *Արծր. Դ. ժբ.*—Ալուզ՝ *Արծր. անդ.—տես.* Ալուզի՝

անդ։—Հաւաք. 59 գիտի Ստեփաննոս Ա կաթուղիկոս «յաղատ տանէն», հաջորդ Գրիգոր Ա-ի և նախորդ Գրիգոր Բ-ի։

— 96. Ստեփաննոս գրիչ. Տիւրիկի Նեղկուկ գյուղում, ստացող հայր Կոստանդինի և Ղուկասի համար՝ օրինակեց մի ընդարձակ Տօնական, 1194 թ.—Manus. bibl. nat. էջ 54. Զարբ. Թրգմ. 726, Ձեռ. Վեննա. Բ. 510։

— 97. Ստեփաննոս Դ կաթուղիկոս Աղուանից 1155—1195 թ. հաջորդեց Բեժգէնին. իրեն էլ հաջորդեց Յովհաննէս Ե։ Գանձակի ամիրայի հրավերով հանդիսավոր ջրօրհնէք կատարեց Գանձակում, որի վրա Պարսիկները կատաղելով՝ քարկոծեցին նրան. հետո փրկանքով ազատվեց։ Անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ»։ Մասունքներ է նվիրել Գեղարդայ վանքին 1181 թ. (Արձ. Այրարատ 344)։ Սրա հրամանով գրեց Մխիթար Գօշը իր Դատաստանագիրքը՝ «1184 թվին»։—Շնորհ. պտմ. 198. Մխ. դատ. նխգր. գ. Կիր. դ, ը. Զամբռ 77.—սեռ. Ստեփաննոսի՝ Մխ. դատ. նխգր. ա, բ, ժա. Կիր. ժա. Այրարատ 261 (Արձ). Նոր վկ. 31 (հիշված 1167 թ).—Տես նաև Պետրոս (№ 29) Կեչառեցի։

— 98. Ստեփաննոս եպիսկոպոս առաջնորդ «Շամիրամաշէն քաղաքի» Խաչի անապատի՝ 1198 թ.—Տաթև 1927, 184։

— 99. Ստեփաննոս, մականուն Աղամ, ստացավ մի Աւետարան, որ գրել տվեց Գրիգոր գրչին, Մլիճի և Սկևռայ վանքերում, 1198 թ.—REA 7, 102—105։

— 100. Ստեփաննոս արքեպիսկոպոս Տարսոնի և առաջնորդ Մլիճոյ. հաջորդեց Ներսէս Լամբրոնացուն «1198 թ». ներկա եղավ Լեոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պտմ. 111. Սիսուան 74։

— 101. Ստեփաննոս եպիսկոպոս Բերդուսի. ներկա եղավ Լեոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պտմ. 111։

— 102. Ստեփ, պարոն և տեր Թոռնկայի. ներկա եղավ Լեոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պտմ. 111։

— 103. Ստեփաննոս Տիրացու վարդապետ, առաջնորդ Վարագայ կամ Խաչի վանքի. արքեպիսկոպոս Վանտոսպի. մեծահամբավ սրբությամբ և իմաստությամբ. ծերության ժամանակ Գրիգոր Զ Ապիրատ («1194—1203 թ») կաթուղիկոսը թախանձանոք հրավիրեց նրան իր մոտ՝ Հռոմկլայ։ Ներկա եղավ Լեոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Զարբ. Հին դպր. 634, 703. Հայապ. 441—3։—Թեև անունով նույն, բայց անձամբ տարբեր է՝

— 104. Ստեփաննոս *Ցակովկացի կամ Ցակորեցի, տիրացու և ապա վարդապետ. ըստ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 346 և Զամչ. Գ. 90 ուսուցիչն էր Ներսէս Լամբրոնացու, որ նրա խընդիրքով գրեց Տեսութիւն աղօթից կամ Մեկնութիւն Ննջմանն Ցովհաննու (Էր ընդ եղբարս)։ Այս գրվածքի համար Ալիշանն ասում է «հարկ է մի յառաջին երկանց վաղահաս մտացն լինել, զի լոկ Ներսէս կոչէ զինքն, և զորովանօք բարբառի առ դաստիարակն, և բազում պատուով, որ և Թուի զոլ մի ի նշանաւոր վարդապետաց ժամանակին և ի վանահարցն» (Սիսուան 89)։—Լմբ. 222. Լմբ. Էր ընդ եղբ. 156.—սեռ.* Ստեփաննոսի՝ *Լմբ. Էր ընդ եղբ. 3.—Գաթրճեան, Հանդիսատ յովհ. էջ 5, Տաշեան, Ցուց. 336, 639, 834, 1037. Զարբ. Հին դպր. 658. Սիսուան 89. Հայապ. 430։ (Վերջին երկուսը չեն կարող նույն լինել, որովհետև եթե № 103 Ստեփաննոս Տիրացուն հրավիրվել է Ապիրատի կողմից, այդ պիտի լինի ամենաշուտը 1194 Թվին. հետևաբար չի կարող նա լինել ուսուցիչ Լամբրոնացու, քանի որ Լամբրոնացին արդեն վարդապետ էր 1168 Թվին։ Նմանապես Լամբրոնացին «Էր ընդ եղբարս» են մեկնությունները գրել է 1177, 1178 և 1179 Թվերին (Տաշեան, Ցուց. 639 ա), ուստի չէր կարող 1194 Թվին եկող Ստեփաննոսը խնդրած լինել։ Վերջապես Լամբրոնացին մեռավ 1198 Թվին, որ 1194 Թվից միայն 4 տարի հեռու է։ Վերևվում (№ 82) հիշատակեցինք նաև մի ուրիշ Ստեփաննոս վարդապետ, նույնպես կոչված Ցակորցի, Շնորհալու գրած երեց, որ գործել է 1172—3 Թվերին։ Սա էլ անշուշտ տարբեր է Վարագայ վանահայր № 103 Ստեփաննոսից, բայց կարող է լինել Լամբրոնացու ուսուցիչ № 104 Ստեփաննոսը)։*

— 105. Ստեփաննոս, *ուսումնակից և համախոհ Ներսէս Լամբրոնացու (ԺԲ դար).—Լմբ. 229։*

— 106. Ստեփաննոս *տաղասաց. ունի տաղ ի վերայ Ներսէսի Շնորհալւոյն (Տաշեան, Ցուց. 1153 ա). Նույնը տես Ձեռ. Բեռլինի, էջ 75 ա, որ գրված է 1684 Թ. ըստ այսմ հեղինակին կարելի է դնել ԺԲ դարից։*

— 107. Ստեփաննոս *գրիչ. օրինակեց Ճառընտիրը (ԺԲ դար).—Ձեռ. Վենետ. № 1014, Անկ. գիրք նոր կտ. էջ ք. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ* հա։

— 108. Ստեփան, *որդի պարոն Խայտերի, որ ստացաւ մի Աւետարան (ԺԲ դար).—*Rapport Arm. *52։*

— 109. Ստեփանոս *միայնակեաց, միաբան Ս. Գրիգորի*

վանից Դարանաղեաց գաւառի, 1201 թ.—Ձեռ. Սեր. (ՀԱ 1924, էջ 247)։

— 110. Ստեփանոս *երեց, մերձավոր Առաքել գրչի, որ օրինակեց Աւետարանը Կամխի Եղիվանք անապատում, 1203 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 420։*

— 111. Ստեփաննոս *քահանա Խլաթի Դանջան գյուղի. նվիրատու ձեռագրի 1204 թ.—Հայապ. 448, Ձեռ. Վեննա. Բ. 471։*

— 112. Ստեփաննոս *եպիսկոպոս Տարոնի, հիշված 1204 թ.—Հայապ. 450։*

— 113. Ստեփաննոս *Ճոնի (Տարոնում), նվիրատու ձեռագրի, 1204 թ.—Հայապ. 450։ Հմմտ. № 74։*

— 114. Ստեփաննոս *եղբայր Վարդանի (Տարոն), նվիրատու ձեռագրի 1204 թ.—Հայապ. 450։*

— 115. Ստեփաննոս, *որի եղբայրը կազմել է մի մեծ Տոնական, որ գերությունից գնեցին Ղազարու վանքի միաբանները 1205 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 473։*

— 116. Ստեփաննոս, *իր եղբոր՝ Կոստանդինի հետ միասին հիմնարկեցին Խորին անապատը Կիլիկիայում, և եղավ առաջին առաջնորդը ԺԳ դարի սկիզբը։—Ձեռ. Վեննա. Բ. 234, Սիսուան 151։*

— 117. Ստեփանոս, *երաժիշտ Մշոյ Ղազարու վանքի. մի քանի ընկերների հետ Խլաթ գնաց և գնեց գերի ընկած մի մեծ Տոնական, 1206 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 472, Հայապ. 449։*

— 118. Ստեփաննոս, *առաջնորդ Հաղարծնի վանքի. հիշված է 1206 թ.—Սմբատեանց, Գեղարք. 183, Արձ. Շահխաթ. Բ. 370, Արցախ 366։*

— 119. Ստեփաննոս, *մի ջաղացբակ է նվիրել Բաղարանի վանքին 1211 թ. ավելին տես Սարգիս № 115։*

— 120. Ստեփաննոս, *Վահրամի և Խաչատուրի հետ մի այգի են նվիրել Հայրավանքին, Յովասափ առաջնորդի ժամանակ, որ հիշված է 1211—13 թ.—անթվ. Արձ. Սիսական 41։*

— 121. Ստեփաննոս *Գ եպիսկոպոս Սիւնեաց, որդի և հաջորդ Գրիգոր Ե Մեղրեցու (†1168 թ). ձեռնադրությունն ստացավ Շնորհալուց. գահակալեց «1168—1216 թ». սիրելի եղավ ժամանակի Թուրք իշխողներին, որոնք տվին նրան* Ֆախր-էլ-Մսեհ (فخر المسيح) *«պարծանք քրիստոնէից» տիտղոսը։ Մասնակցել է Հռոմկլայի եկեղեցական ժողովին «1179 թ»։ Վերջին տարիները նստում էր Վայոց ձորի Նորավանքում, ուր և թաղվեց (1216*

թ)։—Շնորհ. պատճ. 199. Օրբ. կբ, կդ, կե, հա.—սեռ. Ստեփաննոսի՝ Օրբ. կբ—կե, հ։—Սիսական 184—5։

— 122. Ստեփանոս, գրիչ. իր անձնական գործածության համար օրինակել է Մաշտոցը՝ Պայաս գյուղում (այժմ Փայաս, Կիլիկիա), 1216 թ.—Սիսուան 414։

— 123. Ստեփաննոս Աղթամարցի, որդի Յովհաննէսի, աշակերտ Վանականի. գրիչ. Խորանաշատի վանքում արտագրեց Արիստոտէլի Ցաղագս Աստուծոյ 1223 թ. (Էջմիածնի Ձեռ. № 2050). հրատ. Կոնիբիր, Քնն. Դաւ. անյ. էջ 92։—Առ որս Գրիգորի Աստուածաբանի և Փիլոնը՝ 1223 թ. (Ձեռ. Կարին. 214), Արար. 1902, 967, Շողակաթ 199։

— 124. Ստեփաննոս Տէր Սոփեստոս. մեռել է ՈՀԴ=1224 թ. դամբանը՝ որ կազմել է նրա քրոջ որդի Տէր Յովհաննէսը, գտնվում է Հաղբատի Կուսանաց անապատի արևմտյան կողմը։—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 65 և Լալայեան, Ազգագր. հանդ. Է, էջ 414, (որոնք երկուսն էլ դնում են ՈՀԴ=1125)։ Երզնկեանը սխալվել է 100 տարով. պետք է ուղղել 1225. ավելի լավ է դնել ՈՀԴ=1224. բայց գուցե այստեղ էլ վրիպակ կա ՈՀԴ փխ. ՈՀԳ։ Լալայեանը արտագրել է կուրօրէն իր նախորդից՝ առանց իսկ հաշիվը ստուգելու։

— 125. Ստեփաննոս վարդապետ, Երուսաղէմից եկավ Արտամետ և ծանոթացավ Յուսիկ (№ 13) քահանայի հետ 1224 թ. (տես այս անունը),—Գամ. տէր. յուսկ. 208—209։

— 126. Ստեփաննոս քահանա Արտամետցի, սրբակեաց և ողորմած մարդ էր. հայր Տէր Յուսիկ (№ 13) քահանայի և պապ Ստեփաննոս (№ 136) վարդապետի (տես այս երկուսի կյանքը). մեռել է 1226 թ.—Գամ. տէր յուսկ. 197—203։

— 127. Ստեփաննոս առաջնորդ Դարանաղեաց Աւագ վանքի, 1227 թ.—Տաթև 1927, 183։

— 128. Ստեփաննոս, գրիչ. օրինակել է մի Աւետարան 1229 թ. (տեղն անհայտ).—Ձեռ. Վենետ. Ա. 537։

— 129. Ստեփաննոս գրիչ. օրինակեց Աւետարանը Կայենոյ գավառի Գետկայ վանքում՝ Վանենի Խաղբակեանի համար 1232 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 9, Խաղբակեանք 99, Բարխուտ. Աղվ. երկ. 236։

— 130. Ստեփաննոս բժիշկ, որդի Անարոն բժշկի և եղբայր Ճօսլին բժշկի (1232 թ).—Ամիրտ. անգ. 2. Յովհաննեան, Հետազօտ. Բ. 410—413։ (Բասմաջեան, Ամիրտ. անգ. էջ իբ դնում է ՆՁԱ=

1032 թ.)։—Սրա հետ նույն է անշուշտ Ստեփաննոս բժիշկ, որ գրել է Ծաղիկ բժշկարանը՝ ԺԳ դարի առաջին կեսում (Ակինեան ՀԱ 1931, 708 ծ)։—Նույն պետք է լինի նաև Ստեփաննոս բժիշկ, շրջագայության դուրս եկավ դեպի Կիպրոս կղզին, Տարսոն և ուրիշ քաղաքներ և ամենուրեք գործադրում էր իր բժշկական արվեստը, 1232 թ.—ՀԱ 1937, 380։

— 131. Ստեփաննոս, հորեղբայր Յովհաննէս գրչի, որ Դրազարկում օրինակեց Գանձարանը (կամ Տաղարանը) 1241 թ.—Սիսուան 233 բ, Ջեռ. Վենետ. Բ. 1066։

— 132. Ստեփաննոս գրիչ, օրինակեց 1239 թվին Արիստոտելի Ստորոգութիւնք, որին հետո ավելացրեց՝ Նիւսացու Յաղագս կազմութեան մարդոյ, Սմբատ Գունդստաբլի խնդրանոք, Ատանա 1242 թ.—Շողակաթ 200։

— 133. Ստեփան, եղբայր Փորք նահատակի. այս երկուսի հիշատակին մի արձանագրություն կա Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցում 1243 թ.—Кучук-Иоаннесов, Стар. арм. над. 35։

— 134. Ստեփաննոս Ղազարավանեցի, վանահայր Հռոմի հայոց Ս. Աստուածածին հանգստարանի 1242 թ. ապա եղել է Վատիկանի Հայոց մենաստանի վանահայր, 1246 թ. հիշված է Մխիթար ճգնավորի տապանաքարի վրա, որ այժմ պահվում է Հռոմի Լատերանեան քրիստոնեական թանգարանում։ Տապանաքարի նկարը իր արձանագրությամբ տես Գալճեան, էջ 55. Թորոս աղբ. Բ. 441։—Տես նաև № 156 և 157։

— 135. Ստեփաննոս, Սարգսի և Ներսէս փիլիսոփայի հետ գնել է հող ու տուն և նվիրել Մեծարանց վանքին 1250 թ.—Արձ. Բանաս. 1901, 144։

— 136. Ստեփաննոս վարդապետ, Արտամեցի Յուսիկ քահանայի որդին էր. հայրը մի պարկ ցորեն տվեց նրան, որպեսզի տանի Անգղ գյուղի ջաղացքը աղալու։ Սով էր և աղքատների բազմությունը ջաղացքի դռանը հավաքված՝ ցորեն էր խնդրում։ Պատանին խղճաց և ամեն մեկին մի մի բուռ ցորեն տալով, տեսավ որ պարկը դատարկվեց։ Պարկը ավազով ու մոխրով լցրեց, էշը քշեց իրենց տան բակը և ծնողների երկյուղից փախչելով Բերկրի, մտավ Արգելանի վանքը։ Մայրը ալյուրից հաց թխեց, որդուն կանչեց, բայց նա չկար։ Ծնողները լաց ու կոծով փնտրում էին կորած որդուն, բայց չգտան։ Ուշ իմացան թե Բերկրիումն է. հայրը գնաց գտավ նրան և խնդրեց որ տուն վերադառնա։ Բայց Ստեփաննոսը վարդապետ դարձավ և

վանքից չհեռացավ։ Այլազգիների ասպատակության ժամանակ քաշվեց Խաչգլուխ լեռան Ս. Սահակի անապատը (Երերնայ վանք), ուր 12 տարի ճգնելուց և ուսուցանելուց հետո, կնքեց իր սըրբակյաց կյանքը՝ «1251 թ»։ Թաղվեց Արգելանի վանքում։ Իր գերեզմանի վրա շինեցին մի մատուռ, որ նշանավոր ուխտատեղի է։—Կիր. և. Յայսմ. յնվ. 3. Մխ. այրիվ. 80.—տես. Ստեփաննոսի՝ Յայսմ. անդ։—Գամ. տէր յուսկ. 210—232. Առաք. պամ. 321, 326. Ձեռ. Վենետ. Բ. 289—291։—Նրա մասին մի տաղ ունի Յակոբ եպս. Նետարենց (տես Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 128)։ Ստեփաննոսը նաև հեղինակ է. իրանից գտնում եմ Ձեռ. Վենետ. Բ. 289 հետևյալ գրվածքը. «Երանելոյն Ստեփաննոսի գիտնական և արգիւնական վարդապետի՝ որդւոյ Յուսկան. Խրատ հաւատացելոց՝ վասն վերջին գալստեան. Ի մէջ գիշերի կացեալ Գաբրիէլի ի մէջ երկնի և երկրի յանկարծ յեղակարծ ժամու և գոչէ սաստիկ և ահեղ բարբառով, թէ արիք մեռեալք...»։ Այս գրվածքի քննությունը կատարում է Սարգիսեան (անդ), ապա եզրակացնում. «Համառօտ՝ բայց հիւթեղ ճառըլի է այնպիսի գաղափարական գեղեցիկ գիւտերով և գոհարներով, զորս կը պատկերացնէ մեզ վսեմ ոճով և բառակազմութեամբ։ Հազուագիւտ նմոյշ մ'է այս, կիրթ և կորովի հռետորիս այնքան գրութիւններէն, որոնք դժբախտօրէն անյայտացեր են, և կամ ուրիշ Ստեփաննոսներու անուան վերագրուած»։—Կյանքը այլափոխված ձևով պատմում է Միաբան, Հայկականք, Վղրշպտ. 1899, էջ 84—97, ուր (էջ 84) Ստեփաննոսի ծնունդը դնում է 1224-ից ուշ, ուստի մահն էլ պիտի լինի ԺԳ դարի վերջը. մինչդեռ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ, 354 մահը դնում է 1251 թ. ինչպես ընդունում է նաև Ազգապ. Բ. էջ 1671։

— 137. Ստեփան Արճիշեցի, Յարիձորոյ վանքից, ուխտի եկավ Խորանաշատի վանքը՝ Գրիգորիս վարդապետի հետ. դրամական օգնություն ցույց տվին վանքի շինության՝ 1251 թ.—Արձ. Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 175։

— 138. Ստեփաննոս, որդի պարոն Յովհաննէսի. նշանավոր անձ էր Կարինում. երբ Բաչու թաթար զորավարը գրավեց Կարինը (1242 թ), գաղթեցրեց նրան՝ իր 5 եղբայրների հետ.—Վրդ. ձը։ Գնեց Խոռակերտ գյուղը և նվիրեց Խոռակերտի վանքին, որ ի հիմանց շինեց կամ վերանորոգեց 1252 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 12 ա, Արձ. Թրիալեթում (Աղ-քեօրփի), Ազգագր. հանդ. Է, 425 (վերջինս դնում է 1256 թ)։

— 139. Ստեփանոս *քահանա, մերձավոր Խաչատուր գրչի, որ Կիրակոս կրոնավորի համար գրեց մի Աւետարան, 1252 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379։*

— 140. Ստեփաննոս, *որդի Թորոս քահանայի, որ եղբորորդին էր Կոստանդին կաթողիկոսի, հիշված 1253 թ.—Թորոս աղբ. Բ. 359։*

— 141. Ստեփաննոս *վարդապետ, որ Տայոց Կողայ վանքում Վահրամ վարդապետի հետ միասին օգնել են Կիրակոս Արևելցուն ընդարձակելու Յայսմաւուրքը՝ ավելացնելով նրա մեջ 112 նոր սրբերի վկայաբանությունը, 1253 թ.—Հայապ. էջ 107, 472։*

— 142. Ստեփան *վարդապետ, մեռել է ու թաղվել Խարբերդի Խուլէի վանքի գերեզմանատան մեջ, ուր գտնվում է իր անունով մի խաչքար, 1254 թ.—Թորոս աղբ. Բ. 354։*

— 143. Ստեփաննոս, *դառն եպիսկոպոս Կոստանդին Ա կաթողիկոսի։ Հռոմկլայում իր ծախսով, Կիրակոս գրչին գրել տվեց մի սքանչելի մեծածախս նկարազարդ Աւետարան, 1248 թ. և կազմել տվեց 1254 թ.— Ձեռ. Հալէպի, Բ. 2, 4, 5, 6, Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 19։*

— 144. Ստեփանոս, *օգնեց Յովհաննէս գրչին՝ արտագրելու Աւետարանը, Հռոմ 1254 թ.—Ձեռ. Վենետ. Ա 409։*

— 145. Ստեփաննոս *եպիսկոպոս, ուղեկից եղավ Հեթում Ա թագավորին՝ Թաթարաց Մանգու խանի մոտ ճամբորդության ժամանակ «1254 թ».—Կիր. ծզ։*

— 146. Ստեփանոս *առաջնորդ Նորավանքի 1256 թ.—Արձ. Սիսական 199։—Հմմտ. № 149։*

— 147. Ստեփաննոս *վանահայր Գերեթին վանքի. նահատակվեց Թաթարների ձեռքով «1257 թ».—Մաղաք. աբ. 24.— տես.* Ստեփաննոսի՝ *Մաղաք. աբ. 25>Նոր վկ. 98—100։*

— 148. Ստեփաննոս *քահանա, ուրիշների հետ օգնում էր Կիրակոս գրչին և թուղթ էր կոկում, երբ նա գրում էր Աւետարանը՝ Մաշկևոր վանքում, 1259 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 55 բ։*

— 149. Ստեփաննոս *արքեպիսկոպոս Սիւնեաց, հիշատակվում է 1259 թ. (Արձ. Սիսական 113). մեռել է 1260 թ. դամբանը գտնվում է Նորավանքում.—Արձ. Սիսական 194։*

— 150. Ստեփանոս *քահանա, գրիչ. օրինակել է Գր. Նիւսացու գիրքը Մեծքարի անապատում 1260 թ.—Սիսուան 196 բ։*

— 151. Ստեփանոս կրոնավոր, գրիչ. օրինակեց Աւետարանը Յովհաննէս միայնակեցի համար, 1261 թ.—Ձեռ. Վասպ. 94։

— 152. Ստեփաննոս Դ. կթղ. Աղուանից. պատանի էր՝ հաջորդեց Ներսէս Բ-ին՝ 1261 թ։—Կիր. կա. տես Ներսէս № 58։

— 153. Ստեփաննոս, պարոն, «իշխանական պատւով զինուորեալ ի գրան արքայի (Հեթում Ա.)», որդի Թորոս քահանայի, եղբօրորդւոյ Կոստանդին Ա. կաթուղիկոսի Բարձրբերդցոյ, հիշված է 1244, 1248 և 1262 թ.—Թորոս աղբ. Ա. 188, Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. էջ 84, Ձեռ. Վենետ. Ա. 651, Ձեռ. Հալէպի, Բ. 5, 140 ա. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 333։

— 154. Ստեփաննոս, որդի Գրիգորի, եղբօրորդի Կոստանդին Ա. կաթուղիկոսի և հօրեղբօրորդի Հռոմկլայու Թորոս քահանայի ստացողի. հիշված է 1262 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. էջ 84, Թորոս աղբ. Ա. 188։ Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333)։

— 155. Ստեփաննոս եպիսկոպոս, որդի Գորգ քահանայի, եղբայր Թորոս քահանայի Հռոմկլայու, եղբօրորդի Կոստանդին Ա. Բարձրբերդցի կաթուղիկոսի. հիշված է 1244, 1256 և 1262 թվերին։—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. էջ 83, Թորոս աղբ. Ա. 188, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 333. Ձեռ. Վենետ. Ա. 651։

— 156. Ստեփաննոս քահանա Հռովմի. հիշված է նախ 1240 թվին՝ իբրև ստացող Աւետարանի, որ գրել է ավել Յակոբ վանականին (Ձեռ. Կարին. 18)։ Այնուհետև հիշված է Հռովմում գտնված երկու հայերեն արձանագրությանց մեջ 1246 և 1267 թվերից (Ալիշան, Շնորհ. էջ 179)։ Հմմտ. նաև հաջորդը։

— 157. Ստեփաննոս, հայ ճգնավոր, որ բնակվում էր Հռոմի Սալուիական ջրերի (այժմ Tre fontane երեք աղբյուր) հայոց մենաստանում. մեռել է 1267 թ. իր տապանաքարը հայերեն արձանագրությամբ տես Պալճեան, էջ 56 (տես նաև № 134)։

— 158. Ստեփանոս, գրիչ. Կիլիկիայի Վահկայ դղեկում, Մարտիրոս քահանայի համար օրինակեց կիսատ մնացած մի Աւետարան, 1269 թ.—Ձեռ. Վասպ. 95։—Հմմտ. № 169։

— 159. Ստեփանոս ոմն, մեռել է և թաղվել Տարսոնի Ս. Աստուածածին եկեղեցում, ուր իր հիշատակին մի խաչքար է կանգնեցրած 1270 թ.—Սիսուան 271 ա, 272 ա։

— 160. Ստեփաննոս քահանա, գրիչ. օրինակել է Գրիգոր Նիւսացու Մարդակազմութիւնը, Մեծքար անապատում, 1270 թ.—Ձեռ. Կարին. 27։

— 161. Ստեփաննոս *սարկավագ. Հեթում Ա («1226—70 թ») թագավորի հրամանով՝ պարսկերենից հայերենի թարգմանեց Ալքիմիայի մի ձեռնարկ, որի մի օրինակը գտնվում է այժմ Պարիզի* Bibl. nationale-*ում.*—Manus. bibl. nat. *էջ 130։—Սրա հետ նույն պետք է դնել՝*

— 162. Ստեփանոս *քահանա, Հեթում Ա («1226—1270 թ») թագավորի հրամանով պարսկերենից թարգմանեց պողպատ շինելու և ջուր տալու արվեստը, ինչպես նաև «Դարբնութեան և ներկարարութեան արուեստը»։—Սիսուան 518 ա։*

— 163. Ստեփաննոս *վանական քահանա, եղբայր փակակալ Գրիգորի. միասին կազմեցին այն ձեռագիրը, որ Հեթում թագավորի քույր Հռիփսիմէ կրոնավորուհին գրել էր տվել 1270 թ.— Բանասէր 1899, էջ 130։*

— 164. Ստեփաննոս *գրիչ. օրինակել է Յովհաննէս գրչի հետ միասին՝ Դիոնեսիոս Արիսպագացու գործերը, հրամանավ Յովհաննէս եպիսկոպոս արքայեղբոր, 1271 թ.—Զարբ. Թրգմ. 390, Սիսուան 145, Հայապ. 486։*

— 165. Ստեփան *Բ. Անձևացի, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Յովհաննէս Բ Աղձնեցու և նախորդ Խաչատուր Ա Տիգրանակերտցու։ (Հաւաք. 59)։ Ակինեան, Գւզնգիրք 40 գիտէ Ստեփանոս Բ. Նկարէն կաթուղիկոս Աղթամարի, մեռած 1272 թ. ըստ իր տապանագրի։ Անշուշտ կարելի է երկուսին նույնացնել։*

— 166. Ստեփաննոս *վարդապետ, վանահայր Ականց (կամ Ակներ) անապատի (Կիլիկիա). որա օրով գտնվեց Ոսկեբերանի Ներբող Լուսաւորչին. Ստեփաննոսը իսկույն մարդ ուղարկեց, որպեսզի օրինակեն ու բերեն Ակներ։ 1271 թվին օրինակել տվեց Մաղաքիա աբեղայի «Պատմութիւն Թաթարաց» (տես տպ. Երուսաղէմ, յիշատ. էջ 71)։ 1873 թվին գրել է տվել «Վարք Ներսէսի Շնորհալւոյ» (Զարբ. Հին դպր. 641) և նույն թվին Գրիգոր գրչին օրինակել է տվել Պատմութիւն Միխայէլի Ասորւոյ, ինչպես հայտնում է իր ինքնագիր հիշատակարանում 1273 թ. (Միխ. ասո. Բ տպ. յաւել. էջ 44—45).—Սիսուան 154 ա, Տաշեան, Ցուց. 361 ա. Զարբ. Հին դպր. 714, Թրգմ. 472։*

— 167. Ստեփաննոս *(վերջին 5 տառերը կորած), սնուցել է Յովհաննէս քահանային, որ երեք որդի էր։ Յովհաննէս քահանան իր եղբայրների (Յունան, Դաւիթ և Մխիթար) հետ շինել է Հաղբատի մոտ Բերդիկ գյուղի կամուրջը և նրա գլխին*

*մի խաչքար է կանգնեցրել ի հիշատակ իր ծնողների և իր սնուցող Ստեփաննոսի, 1273 թ.—Երզնկեանց՝ Հնախ. տեղագր. 103։*

— 168. Ստեփաննոս *երէցորդի, գրիչ. օրինակեց մի Ժողոված՝ Լևոն Գ-ի կին՝ Կեռան թագուհու համար, 1274 թ.—* Manus. bibl. nat. *էջ 22։ Նաև Վարդանի գործերը (տես Ձեռ. Վենետ. Բ. 1068)։ Տես և № 185։*

— 169. Ստեփաննոս *Վահկացի, հիշատակված է Օշին մարաջախտի Աւետարանում, 1274 թ.—ՀԱ 1898, 247 բ։—Հմմտ. № 158։*

— 170. Ստեփանոս *հոգևոր եղբայր Կարապետի, որ կազմեց Կեսարիայում մի Աստուածաշունչ 1274 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1844։*

— 171. Ստեփաննոս *քահանա, որդի Կարապետ քահանայի, իր եղբոր՝ Բարսեղ քահանայի հետ Աստուածատուր գրչին, Մամխսարում գրել տվեց մի Աւետարան, 1275 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Բ. 37 բ։*

— 172. Ստեփաննոս *քահանա, գրիչ. Սկևռայ անապատում, Յովհաննէս քահանայի հոգեորդի Կոստանդին քահանայի համար օրինակեց Մանրուսմունքը, 1275 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 244 բ։—Հմմտ. № 177։*

— 173. Ստեփաննոս *քահանա, որի դամբանը գտնվում է Դարբանդի մոտ (Մոլլա-Խալիլ) Պօղոս Բուլաղի հին գերեզմանատան մեջ, 1276 թ.—Սմբատեանց, Սաղեան, էջ 178։*

— 174. Ստեփանոս, *աշակերտ Թոմանոս վարդապետի, որ Վասպուրականում օրինակեց մի Աւետարան, 1276 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 427։*

— 175. Ստեփաննոս *քահանա, գրիչ. օրինակել է Դաւիթ Անյաղթի գործերը 1276 թ. (Ձեռ. էջմ. № 1889=1847).—Մանանդեան, Յունար. դպր. 265—275։*

— 176. Ստեփանոս *քահանայ, իր հոգևոր եղբայր համանուն Ստեփանոս քահանային գրել տվեց Մանրուսմունքը, Սկևռայ վանքում 1278 թ.—Շողակաթ 205 (տես հաջորդը)։*

— 177. Ստեփաննոս *քահանա, գրիչ. Սկևռայ վանքում օրինակել է Խազգիրքը (Մանրուսմունքը), որի հետ նաև մի պատվական Տօնացոյց, ՉԻԷ=1278 թ.—«Էջմիածին» 1945, օգոստ. 33 ա (ըստ Գ. Լևոնեանի հայոց Մանրուսմունքների ծանոթ ձեռագրերից հնագույնն է)։ Ամատունի, Պարականոն շար. էջ 73*

(նույնը Ձեռ. Կարին. 41 դնում է ԶԻԸ=1279 թ. տպ. 1178), Ծոդակաթ 205։ Հմմտ. նաև № 172։

— 178. Ստեփանոս միայնավոր, շատ էր փափագում իր ծախսով մի Աւետարան գրել տալ և նվիրել եկեղեցուն։ Դիմեց Սարվանդիքարի իշխան Կոստանդինին և նա էլ հրամայեց Յոհնանց անապատի միաբան X-ին, գրել մի Աւետարան։ Գրչի անունը հայտնի չէ, թեև Լալայանցը դնում է Պօղոս! որ սխալ է. գրիչը ասում է միայն «որ ի Պաւղոսի գեզերելով ի դրունս», ինչ որ նշանակում է թե սովորել է Ս. Պօղոս եկեղեցում։ Գրչությունը ավարտել է 1278 թ.—Ձեռ. Վասպ. 99։

— 179. Ստեփաննոս քահանա Վանկացի, գրիչ. Սոսթենէս վարդապետի հրամանով և ծախսով Սսոյ Ս. Հոգի վանքում օրինակեց Աւետարանը 1279 թ. (Զարբ. Հին դպր. 802, Սիսուան 163. իսկ ըստ Manus. brit. mus. 13 ա օրինակել է Նոր Կտակարանը 1280 թ)։ Հաջորդ տարին (1280 թ) նույն Սոսթենէս վարդապետի ծախսով նորոգել է Սսոյ Ս. Հոգի քարաշեն եկեղեցին (Սիսուան 222 բ)։ Իբր մատենագիր՝ երկասիրել է Արարածոց գիրքը (Սիսուան 516 բ), որի համար է ասում թերես՝

— 180. Ստեփանոս քահանա Վանկացի, ունի կարևոր և հմտական մի երկասիրություն, որ դեռ անհայտ է, 1280 թ.—Սիսուան 163, 536 ա։

— 181. Ստեփաննոս կազմարար. ժանի անապատում կազմեց «Եսայի և Թուղթք Պօղոսի» ձեռագիրը 1281 թ.—Տաշեան, Ցուց. 637 բ։

— 182. Ստեփանէ (գրված նաև Ստեֆանէ), որդի Լևոն Գ թագավորի և Կեռան թագուհու. ամուսնացել են 1262 թ. երախան ծնվել է 1281 թ, մեռել է մանուկ հասակում և թաղվել Դրազարկում. եղբայրն է Ալինախի և Օշինի։—Սիսուան 232 ա, 556 ա, Զարբ. Հին դպր. 90, 706. Հայապ. 490, 543։

— 183. Ստեփանոս քահանա, որդի Հայրանունի, իր երեք եղբայրներով (Զունաթ, Սասանայ և Վահրամ) շինեցին Տաշքենդ գյուղի (Նոր-Բայազիտ) Ս. Աստուածածին եկեղեցին.—անթվ. Արձ. Սիական 72, Գեղարքունիք 629 (Աբաղայ խանի ժամանակ, ուստի 1265—82 թ)։

— 184. Ստեփ(աննոս) քահանա, ստացավ մի Աւետարան, որի «առիթ եղև Տէր Վարդանն», 1283 թ.—Ձեռ. Վասպ. 106։

— 185. Ստեփաննոս քահանա, Սկևռայ վանքում, Հայոց

Կեռան Թագուհու համար օրինակեց Աւետարանը՝ 1283 թ.— Բարխուդ. Արցախ 39։ Տես և № 168։

— 186. Ստեփաննոս, հայրապետ կամ վանահայր Արցախի Ջրաբերդ գավառի Հոռեկայ վանքի. հիշված 1276, 1279—1284 թ.—Շահխաթ. Բ. 378, Արցախ 229, 233։

— 187. Ստեփաննոս կաթուղիկոս Աղուանից. հիշված է 1270 և 1276 թ, ապա 1279 և 1284 թ.—Արձ. Արցախ 233 և 125—6, 270, Սիսական 74, Սմբատեանց՝ Գեղարք. 625, Բարխուդ. Աղվ. երկ. 281—2։

— 188. Ստեփաննոս արքեպիսկոպոս, որդի Գրիգոր քահանայի, առաջնորդ Արքակաղնի վանուց, մեռել է 1284 թ. մայիսի 16-ին. եղբայրը՝ Կոստանդին քահանան նրա հիշատակին մի Աւետարան է գրել տվել նույն վանքում և նույն 1284 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 57։

— 189. Ստեփան կրոնավոր, գրիչ. օրինակել է Բարսղի ճառերը՝ 1285 թ.—Ձեռ. Կարին. 77։

— 190. Ստեփաննոս վանական քահանա, գրեց Նոր Կտակարանը, բայց չկարողացավ վերջացնել։ Ավարտեց Պետրոս վանական քահանան 1285 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 818։

— 191. Ստեփաննոս սարկավագ. հիշատակագիր Մխիթար Այրիվանեցու Ճառընտրի մեջ, 1286 թ.—Տաշեան, Ցուց. 544 ա, Ցովսէփեան՝ Մխ. այրիվ. էջ 3։

— 192. Ստեփաննոս քերթող, որի հիշատակությունը տես Մխ. Այրիվանեցու Ճառընտրի մեջ՝ 1286 թ. (Նույն է նախորդի հետ).—Տաշեան, Ցուց. 554 բ։

— 193. Ստեփանոս ձեռնավոր, հրամանով պարոն Սահմադինի և միացած Վահրամ քեթորարի հետ ներել են Օշականի քահանաների բոլոր հարկերը 1286 թ.—Արձ. Շահխաթ. Բ. 79, Այրարատ 189։

— 194. Ստեփանոս, հայր Թովմայի (№ 31). որ Արճէշում, Սիմէոն գրչին գրել տվեց մի Աւետարան 1286 թ.—Ձեռ. Վասպ. 106։

— 195. Ստեփանոս «հոգևոր տէր» Ս. Յակոբ վանքի (Արճէշ), 1286 թ.—Ձեռ. Վասպ. 106։

— 196. Ստեփանոս երեց, գրել էր «լաւ և ընտիր օրինակ» մի Աւետարան, որից արտագրեց Գռների վանահայր արքայեղբայր Յովհաննէս եպիսկոպոսը 1286 թ.—Ձեռ. Վասպ. 108։

— 197. **Ստեփանոս** գրիչ, օրինակել է Ջորոյ վանքում Ըարգորակ ճառս Ոսկեբերանի՝ Յակոբ Ա կաթուղիկոսի համար («1268—86»).—Մխուան 156 բ։

— 198. **Ստեփաննոս** երեց, ապա վարդապետ Կոռիկոսցի, որդի Յովհաննէս քահանայի. հրավիրեց Յովհաննէս Պլուզ Երզընկացուն ճառ խոսել Կիլիկիոյ եկեղեցիներում «եկեղեցու» մասին «1281 թ»։ Գրել է Տօմարը (կամ Պարզատումարը) Հեթում պատմիչի համար 1287 թ.—Ցուցիկք, Բ. 476, Մխուան 337 բ, 343 ա, 556 ա, Ջեռ. Վեննետ. Բ. 1236։—Նույն է նաև այն Ստեփաննոս քահանան, որ «Թագազարմ իշխանի հրամանաւ» կազմեց ու գրեց «Ամսամտիկը» (ցուցակ շրջանի լուսնի և արեգական), 1287 թ.—Ջեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 247 ա)։ Տես և № 264։

— 199. **Ստեփաննոս**, դպիր Սկևռայ վանքի. ժամանակակից Կոստանդին Բ («1286—1289 թ») կաթուղիկոսի.—Ջարբ. Հին դպր. 711։

— 200. **Ստեփաննոս** վարդապետ Սկևռացի. գնաց նվիրակ Հեթում Բ թագավորի կողմից Արևելյան հայոց եպիսկոպոսների և իշխանների մոտ՝ ծանուցանելու համար Կոստանդին Բ կաթուղիկոսի անկումը և հրավիրելու նոր կաթուղիկոսի ընտրության «1289 թ».—Օրբ. կէ.—Մխուան 106 համարում է առաջնորդ ուխտին Սկևռայ։

— 201. **Ստեփաննոս** Կաղզուանցի, գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Ցախստանի Ս. Աստուածածնի վանքում, 1289 թ.—Բիւրակն 1900, 102 բ։

— 202. **Ստեփաննոս** հայրապետ, հիշված է Մեծոփայ վանքի մի արձանագրության մեջ 1291 թ.—Սարգիսեան, Տեղագր. 268։

— 203. **Ստեփաննոս** եպիսկոպոս, կանգնեցրել է մի խաչքար՝ Գեօզալդարայի (Նոր-Բայազիտ) մոտ 1291 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 549։

— 204. **Ստեփանոս մելիք**, հոգևոր հայր տէր Աբրահամի (№ 33), որ Քաջբերունեաց գավառի տեսուչն էր (առաջնորդ) և շինեց Արճէշի եկեղեցիները 1291 թ.—Սարգիսեան, Տեղագր. 268։

— 205. **Ստեփաննոս** արքեպիսկոպոս Տարօնի և առաջնորդ Մլիճի վանքի. հիշված է 1285 և 1292 թ.—Տաշեան, Ցուց. 331 բ, ՏաթԵ 1927, 187, Manus. bibl. nat. էջ 74։ Տես և № 264։

— 206. **Ստեփանոս** միայնակեաց, Մխիթարիչ անուն գրչին, Բագուանի անապատում գրել տվեց մի Աւետարան, որ նվիրեց Կանայ անապատին, 1292 թ.—Ջեռ. Վասպ. 110։

— 207. Ստեփաննոս Դ Հռոմկլայեցի, *կաթողիկոս հայոց «1290—1293 թ». Երզնկայի Խախ գյուղից էր, անապատական. հաջորդեց Կոստանդին Բ կաթողիկոսին. Նստավ Հռոմկլայում։ Մելիք-Աշրաֆ հարձակվելով Կիլիկիոյ վրա, առավ ու ավերեց Հռոմկլան, գերի տարավ կաթողիկոսին Դամասկոս «1292 թ», ուր և մեռավ բանտում «1293 թ».—Օրբ. ժմ. 30. Սամ. անեց. շար. 152, 153, 163. Անանուն ժմ. 26, 27. Մխ. այրիվ. 21. Մխ. անեց. գ. Սմբ. պատմ. 125—6. ՀեԹ. ժմկ. Օրբ. կէ, հա. Յիշատ.* (Karst, *Դատաս. էջ* Ь). *Մին. համդ. 46, 140. Առաք. պատմ. 320, 335, 483. Թորոս աղբ. Բ. 436. Ջարբ. Հին դպր. 785. Նոր վկ. 117. Հայապ. 501. Ազգապ. 1723—1738։*

— 208. Ստեփաննոս *փիլիսոփա, տես Գրիգոր № 358։*

— 209. Ստեփաննոս *Սկեռացի, գրիչ. տես Գրիգոր № 358։*

— 210. Ստեփանոս, *ըստ Ալիշանի անունն է այն նշանավոր ճարտարահնար արվեստագետի, որ կազմել է Կոստանդին Բ (№ 83) կաթողիկոսի «սրբարան» կոչված նրբակերտ ճարտարարվեստ տուփը՝ 1293 թ։ Վարպետի անունը գտնվում է խաչի պատվանդանի տակ (Սիսուան 107—112) և հատկապես էջ 111 ա։*

— 211. Ստեփանոս *կաթողիկոս Աղթամարի. հիշված է նախ 1292 թ. և 1293 թ. Արձ. Ազգագր. հանդ. Ի, 209 և ԻԱ, 43. սրա ժամանակ Սարգիս և Ստեփանոս որդիք Հոռոմշահի շինել են Աղթամարի Ս. Ստեփանոս եկեղեցին (1293 թ).—բայց Հաւաք. 43 դեպքը պատմում է Ստեփաննոս Դ («1465—1489 թ») կաթողիկոսի օրով։ Տես և № 212 և 216։*

— 212. Ստեփանոս *կրոնավոր, որդի Հոռոմշահի. իր եղբայր Սարգիս (№ 196 և 462) կրոնավորի հետ միասին շինել են Աղթամարի Ս. Ստեփանոս եկեղեցին 1293 թ. (Արձ. Ազգագր. հանդ. Ի, 209. Ակինեան՝ Գւզնգիրք 44). իսկ ըստ Հաւաք. 43 այդ դեպքը եղել է Ստեփանոս Դ կաթողիկոսի օրով «1465—1489 թ.»։—Տես և նախորդը։*

— 213. Ստեփաննոս *եպիսկոպոս Նորավանքի. քեռորդի և հաջորդ Սարգիս եպիսկոպոսի, որ նահատակվել էր Երուսաղէմում (ԺԴ դար).—Օրբ. կբ, կդ. հա.—սեռ.* Ստեփաննոսի՝ *Օրբ. կբ, հ։—Նույն է արդյոք Ստեփաննոս առաջնորդ Նորավանքի, որ հիշված է 1291, 1292, 1294 թվերին (Արձ. Սիսական 191, 200, 204= Օրբ. էջ 357, Շողակաթ 207)։*

— 214. Ստեփանոս *մերձավոր, Թերես և որդի Խելօքի, որ*

Արգելանայ վանքում մի Աւետարան գրել տվեց 1294 թ.— Ձեռ. Վասպ. 120։

— 215. Ստեփաննոս քահանա, գրիչ. իր եղբօրորդիների պատվերով օրինակեց Աւետարանը Սկեռայ վանքում, «ի պակասել ամաց և ի զառանցեալ ալեաց և ի ծերութեան հասակի» 1295 թ.—Թորոս աղբ. Բ. 343։

— 216. Ստեփաննոս Գ Տղայ Սեֆեդինեան, կաթուղիկոս Աղթամարի «1272—1296?թ». Սեֆեդին արքայունի անդրանիկ որդին էր. պատանեկան հասակում կաթուղիկոս օծվեց և հաջորդեց Ստեփաննոս Բ Նիարէնին, որ մեռել էր 1272 թ։ Սալեց Աղթամարի Ս. Խաչ տաճարի գմբեթը, շինեց զանգակատունը և Ս. Յովհաննէս ու Ս. Նշան եկեղեցիները։ Ըստ մի հիշատակարանի՝ մեռել է 40 տարեկան «տարաժամ կենօք». ուստի ծնված պիտի լինի 1256 թ., կաթուղիկոս ձեռնադրված՝ 16 տարեկան հասակում և կաթուղիկոսութիւն վարած՝ 24 տարի.—Հաւաք. 38—39, Ակինեան՝ Գուղնդիրք՝ 42—45։ Սրա հետ պետք է նույնացնել Ստեփաննոս կթղ. Աղթամարի, որի օրով եղավ մեծ երկրաշարժ Վասպուրականում՝ 1275 թ. որ տևեց մի տարի՝ ըստ Զմչ. Գ. 28։ Ըստ Հաւաք. 60 ցանկի Ստեփաննոս Գ կաթուղիկոսը հաջորդն է Խաչատուր Ա. Տիգրանակերտցու և նախորդ Եղիշէ Բ Աղբակեցու։ Սալել է Ս. Խաչի գմբեթը։ Պիտի լինի ԺԳ դարում։ (Կեղծիք)։—Նույն է սակայն Ստեփաննոս կաթուղիկոս Աղթամարի, որդի Սեֆեդինի, եղբայր և նախորդ Զաքարիա կաթուղիկոսի. նստել է 1303 թվից քիչ առաջ (Արծր. յաւել)։—Դժվար է հաշտեցնել № 211 Ստեփաննոսի հետ։

— 217. Ստեփաննոս քահանա Իկոնիացի, եկավ Սկեռայ վանքը, ուր երկար տարիներ պաշտոնավարեց ու մեռավ ծեր հասակում։ Իր սանն է Գեւորգ քահանա, որ նրա մահից հետո գրեց Եսայի և Թուղթք Պօղոսի 1296 թ.—Սիսուան 106։

— 218. Ստեփաննոս գրիչ. օրինակել է մի Աւետարան, 1297 թ. որ ապա ստացավ Լևոն Ե թագավորի դռնապան Սիրուն իշխանը.—Շահազիզ, Պատմ. պատկ. 115։

— 219. Ստեփաննոս կրոնավոր, առաջնորդ Երզնկայի Ս. Կիւրակոս վանքի, 1298 թ.—Թորոս աղբ. Բ. 298։

— 220. Ստեփաննոս ոՖ, որ 1298 թվին հիշված է Քեալադաղ գյուղում մի քարի արձանագրության մեջ հետևյալ ձևով. «Զամենաքարին և ըլուսաւորիչն եկեղեցւոյ զտէր Ստեփաննոս ի բարի յիշեցէք. Թ. ԶԽէ».—Սիսական 172։

— 221. Ստեփաննոս *քահանա, ուսուցիչ գրչության (ԺԴ դար).—Զարբ. Թրգմ. 151։*

— 222. Ստեփաննոս *վարդապետ Ս. Կարապետի վանքի. որա հրամանով Տիրացու քահանա Մշեցին օրինակեց Գէորգ վարդապետ Դրազարկցու Ճաշոցը (ԺԴ դար).—Տաշեան, Ցուց. էջ 181 ա։*

— 223. Ստեփանոս *Սրիկ, տաղասաց ԺԴ դարու. Կիլիկեցի.—Սիսուան 517 ա։*

— 224. Ստեփաննոս, *մի այլի է նվիրել Հայրավանքին (ԺԴ դար).—Սիսական 41, Սմբատեանց՝ Գեղարքունի 435։*

— 225. Ստեփաննոս *քահանա, եղբայր Յովհաննէս գրչի (ԺԴ դար).—Յ. Մուրատ, Յայտ. յավհ. էջ* ջիա։

— 226. Ստեփաննոս *կաթուղիկոս Աղուանից. հարստահարության պատճառով եկավ բնակվելու Տաթևում՝ Ստեփաննոս Օրբելեանի մոտ (ԺԴ դարու վերջը)։ Հիշված է 1303 թ. ըստ Ակինեան, Գւղնգիրք 50։—Օրբ. կե.—տես.* Ստեփաննոսի՝ *Օրբ. հր։*

— 227. Ստեփաննոս *իշխան, շինեց Վայոց ձորում Սիոնի վանքը 1303 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 492։*

— 228. Ստեփաննոս Դ *Օրբելեան (կամ Ուռպելեան), մետրապոլիտ Սիւնեաց. պատմագիր. հաջորդեց Յովհաննէս Թ-ին։ Տարսայիճ իշխանի որդին էր. «1280 թվին» ընդունեց հոգևոր կոչում. «1285 թվին» գնաց Կիլիկիա՝ եպիսկոպոսական ձեռնադրություն ընդունելու. և որովհետև Յակոբ Ա կաթուղիկոսը («† 1286 թ») մեռել էր, ուստի Լևոն Գ թագավորը պահում է նրան, մինչև կաթուղիկոս է օծվում Կոստանդին Բ Պրօնագործը («1286—89 թ»), որի ձեռքից, հաջորդ օրը օծում ստանալով Ստեփաննոսը («1286 թ») և կոչվելով մետրապոլիտ Սիւնեաց՝ դառնում է իր թեմը՝ Տաթև «1287 թ»։ Սիւնեաց երկու բաժանյալ թեմերը՝ Տաթև և Նորավանք՝ նորից է միացնում։ 1289 թվին հրավիրվեց Կիլիկիա, իրեն ձեռնադրող Կոստանդին Բ կաթուղիկոսի գահընկեցության առթիվ՝ նոր ընտրություն կատարելու համար։ Բայց նա չկարողացավ մեկնել, ինչպես ասում է ինքը (Օրբ. ժմ. 31)։—Իր գրական գործերն են.* 1) *Պատմութիւն Սիւնեաց, որ գրել է «1297 թ». (Սմբատեանց, Երնջակ 316 (մեծ ցուցակ, էջ 8) ասում է թե Ստեփ. եպս. Նորավանքում գրեց Պատմ. Սիւնեաց նահանգի 1299 թ. որ պիտի լինի գրքի ավարտման տարին)։ Սկսում է Ադամից, բայց հակառակ իր ցանկության և իր որոնումներին այն հնագույն ժամանակների համար*

ուրիշ ոչինչ չունի, եթե ոչ Խորենացու պատմությունը։ Ավելի ուշ ժամանակների համար օգտագործել է Տաթևի արխիվները և զանազան արձանագրություններ, որոնցից շատերը ամբողջությամբ ագուցել է իր Պատմության մեջ։ Այս արձանագրությանց մի մասը այժմ էլ կա և նրանց համեմատությունից իմանում ենք թե ինչքան բարեխիղճ է վարվել ինքը նրանց ընդօրինակության մեջ։ Բայց շատերն էլ կորած են, ուստի պատմությունը շնորհակալ է նրան իր հոգածու վերաբերմունքի համար։ Բացի պատմությունից նա տալիս է նաև Սիւնեաց երկրի աշխարհագրությունը, վանքապատկան գյուղերի ցուցակներ և նրանց հարկերի չափը, եպիսկոպոսների և առաջնորդների գավազանագրերը են։—2) Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց (գրել է 1302 թ).—3) Ողբ ի Ս. Կաթուղիկէն, որ գրել է Խաչատուր Կեչառեցու խնդրանոք, 1299 թ. ըստ Ձեռ. Սևանի 41 բ և Ձեռ. Վենետ. Բ. 1104 (հրատ. Կոստանեանց 1885, Տփխիս).—4) Պատճառ ժողովոյն Քաղկեդոնի, նույնպես գրված Կեչառեցու խնդրանոք, 1302 թ.—5) Ժամանակագրութիւն, որ մինչև այժմ անծանոթ էր և որի մի օրինակը գտնվեց Կարնոյ Սանասարեան Վարժարանում (տես Ձեռ. Սանաս. շար.=ՀԱ 1921, 177։ Այս նույն ձեռագիրը փոխադրվելով մեր Պետական Մատենադարանը, հրատարակվեց Աշ. Աբրահամյանի ձեռքով, Երևան 1942 թ. 6) «Տեառն ս. Մեթոդի՝ եպիսկոպոսին Պատարայ և վկայի, յաղագս անցելոյն, ներկայիս և ապառնեացն, ասացուածք յԱստուածաշունչ գրոց», որ ինքը թարգմանել է և մտցրել իր Պատմության մեջ, իբրև ԼԲ գլուխ։ Սրանցից դուրս՝ օրինակել է տվել մի Աւետարան՝ իր եղբորորդի Յովհաննէսին 1302 թ. որի մասին մանրամասն տես Սմբատեանց՝ Երնջակ 230—238. «Մեկնութիւն ժողովողի» 1303 թ. (տես Ձեռ. Դաշեան, Բ. 47 բ) և «Թովմա Արծրունու Պատմութիւնը» նույն 1303 թ. (տես հրատ. Պատկ. էջ 319)։ Սրից իբր թե բերել է մի ընտիր Յայսմաւուրք, որի մասին տես Իւանէ (№ 20) Որոտնեցի։—Մեռել է «1304 թ»։ Կենսագրությունը տես Կ. Կոստանեանց, Օրբ. ողբ (առաջաբանում)։—Օրբ. (կբ), կե, հ—հբ. Օրբ. ողբ 53. Օրբ. ժմ. 22. Օրբ. հկճռ. ե.—սեռ. Ստեփաննոսի՝ Օրբ. ա, կե, կը, հբ. Օրբ. ողբ 23, 50. Օրբ. հկճռ. վերնագրում և ժա, ժբ.—բց. ի Ստեփաննոսէ՝ Օրբ. հ և ողբ 54.—իր անունն է հողում Օրբ. ողբ 49 հիշատակարանը.—Ջարբ. Նոր մատ. 128—142, 245—7. Տաշեան, Ցուց. 557 բ. Հայապ. 569. Ձեռ. Դաշեան, Բ. 30 ա.—իր անունը հիշ-

ված է զանազան արձանագրութեանց մէջ, որոնցից հիշում ենք մի քանիսը թվականի կարգով (անթվականները զանց առնելով)՝ 1295 թ. (ՉԽԴ գրէր Ստեփաննոս մետրապալիտ Սիւնեաց որ է պռաւտաւֆաանդէս Հայոց մեծաց, որդի մեծափառ իշխանին Տարսայիճի և շինող սուրբ եկեղեցւոյս յիշեցէք ի Քս=Սիսական 234), 1296 թ. (անդ 196), 1297 թ. (անդ 113), 1302 թ. (Թվ. ՉԾԱ. Լսելի արա ինձ, Տէր, զձայն ցնծութեան և զուրախութեան, անեղին ծննդեամբ զտէր ՍՓ. Սիւնեաց գահին կոչեա ի փառս հայրենեաց. անդ՝ էջ 236), 1303 թ. (անդ 200)։ Ինքն է որ հիշված է նաև Արփայի մի խաչքարի վրա «տէր Ստեփաննոս» անունով 1303 թ. (Սիսական 184)։ Նորավանքում մնում է իր դամբանը այս արձանագրությամբ. «Ի թվին ՉԾԲ. այս է շիրիմ հանգըստեան մեծի մետրապոլիտ Սիւնեաց Ստեփաննոսի» (անդ 194)։— Ազգապ. 1773 Ստեփաննոսի մահը դնում է 1304 թ. և իրոք որ այս թվին էլ դադարում են հիշատակությունները, որոնք են. «Թվ. ՉԾԳ. Լսելի արա ինձ, տէր, զձայն ցնծութեան և զուրախութեան և ցնծասցեն ոսկերք իմ տառ. Գթա Քս. ԱԾ. ի տէր Ստփ.» (Սիսական 236), «Այս տէր Սփ. Օրպէլեանց մեծաւ ջանիւ ուղղափառ պահէ զաւանդս յեկեղեցիս Հայոց. ՉԾԳ. Տէր Ստփ. մետրապօլիտ Սիւնեաց, որ է Պրոտոփրանտէս ամենայն Հայոց» (Սիսական 236 կարծում է թե «յետնոյ ուրուք» գործ է այս արձանագրությունը և չունի ՉԾԳ թվականը. իսկ Ազգ. հանդ. Գ. էջ 141 ունի ՉԾԳ և անունն էլ գրում է Այս տէր Ստեփ. Օրբէլեան)։ Բայց այս երկուսը չեն համաձայնվում դամբանի թվականին ՉԾԲ=1303, ուստի Ալիշանը ուղղում է ՉԾԸ և մահվան թիվը համարում է 1309։

— 229. **Ստեփաննոս** պատանի, որդի Կարապետ աղայի, վերանորոգել է Արատէսի վանքը 1303 թ, բայց նույնը կրկնված է 1533 թ.—Արձ. Սիսական 144 (առաջինը ՉԾԲ և երկրորդը ՋՁԲ թվին)։

— 230. **Ստեփան** վարդապետ. գրիչ. օրինակել է մի ժողովածու, ուր կա Նոննոսի մի լավ օրինակ ՉԾԲ=1303 թվից (Ձեռ. էջմ. № 579).—Կարինեան ցուցակում սխալմամբ գրված է ՌԾԲ=1603.—Մանանդեան, Յունաբան դպրոցը, էջ 237։

— 231. **Ստեփաննոս** հայրապետ Երզնկայի Ս. Կիրակոս վանքի, 1304 թ.—Թորոս աղբ. Բ. 421։

— 232. **Ստեփաննոս**, ծերունի միաբան Երզնկայի Ս. Կիրակոս վանքի, 1304 թ.—Թորոս աղբ. Բ. 421.

— 233. Ստեփաննոս *սարկավագ. գրել տվեց Գրիգոր գրչին մի Շարակնոց 1305 թ.—Տաշեան, Ցուց. 535 բ։*

— 234. Ստեփաննոս, *իբրև վկա ստորագրում է Բանաքեցի Պարսեմայի այգու վաճառման պայմանագրին, 1306 թ.—Արձ. Այրարատ 298 և Բանաս. 1903, 32։*

— 235. Ստեփաննոս, *Դռան երեց Հեթում Բ թագավորի. Թղթաբեր Հեթում թագավորահոր առ Գրիգոր Է կաթուղիկոս «1293—1307 թ». անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ».—Տաշեան, Ցուց. 111 ա, Ազգապ. 1773, 1785։*

— 236. Ստեփաննոս *քահանա Սեբաստացի, որ Գրիգոր քահանային գրել տվեց մի Ավետարան 1307 թ.—Շողակաթ 210։*

— 237. Ստեփաննոս *եպիսկոպոս Սիւնեաց, որ Յովհաննէս Օրբելեան մետրապոլտի, Դաւիթ և Եսայի վարդապետների են հետ պատասխանեց Կոստանդին Գ Կեսարացի կաթուղիկոսի թղթին (Ազգապ. 1806)։—Տաշեան, Ցուց. 180, 1153 բ համարում է Օրբելեանը, ինչպես է նաև երկու ձեռագրում. «Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի և գահերէց մետրապօլտի, որ է պռոտոբանոտէս Մեծաց Հայոց». բայց ինչպե՞ս համարացնել թվականը, երբ Օրբելեանը մեռել է 1304 թ. իսկ Կոստանդին Գ գահ է բարձրացել «1307 թ»։*

— 238. Ստեփան *(կամ Ստեփաննոս) քահանա, որդի Ղազարի, գնեց Մխիթար վարդապետից մի Ավետարան, որ նա գրել էր Մեծոփայ վանքում, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 155—6։*

— 239. Ստեփաննոս *վարդապետ, վանահայր կամ առաջնորդ Ասպխնկայ անապատի 1307 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 247), ապա 1308 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 46 բ, Արցախ 143)։*

— 240. Ստեփանոս, *հայր Գիլանի, որ հիշատակագրել է Բաղնայրի նշանավոր Ավետարանում, 1308 թ.—Ձեռ. Կարին. 16։*

— 241. Ստեփաննոս *գրիչ. օրինակել է Աստուածաշունչը 1308 թ.—Ձեռ. Կարին. 15։*

— 242. Ստեփանոս *քահանա, որդի Կիրակոս քահանայի, որ գրել տվեց մի Ավետարան, 1308 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 36 ա, ուր կա և սրանց նկարը։*

— 243. Ստեփաննոս *սարկավագ, գրիչ. Հայոց գունդստապլի դուստր Զապլուն իշխանուհու համար օրինակեց Ավետարանը, 1309 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 519)։*

— 244. Ստեփանոս *վարդապետ, վանահայր Թանատի վանքի 1311 թ.—Արձ. Սիսական 120։*

— 245. Ստեփաննոս, *անդրանիկ եղբայր Յակոբ քահանայի, որ Կոստանդին Պեհեսնեցի արքեպիսկոպոսի հետ միասին գրել տվին Սսում մի Յայսմաւուրք 1311 թ.—Բակուրան, Կիպրոս կղ. էջ 108։*

— 246. Ստեփանոս *եպիսկոպոս Հաճընի, հիշված Սալմաստի Գրիգոր եպիսկոպոսի ընտրողների շարքում՝ 1311 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 31 ա։ Նույն է՝ Ստեփանոս եպիսկոպոս Հարգանի 1311 թ.—Սիսուան 164 բ։*

— 247. Ստեփաննոս *քհ. Գոյներիցանց (կամ Գոյներ Երիցանց), Հայծառոնեցի, մականուն Երկայն, աշակերտ Գէորգ Սկևռացու, որ նրա խնդրանոք գրեց Թրատ վասն գրչութեան կամ Թրատ վասն հանգամանաց հեգից (Զարբ. Հին դպր. 719, Տաշեան, Ցուց. 783, 842,* Manus. brit. mus. *306 բ։* Bodleian *232 և 246, Ձեռ. Վենետ. Բ. 1000. իբր 30 տարի հիշվում է զանազան հիշատակարաններում (1284—1312). 1292 թվին կոչում է իրեն «ծեր». բայց դրանից 20 տարի անց (1312 թ.), գտնվում է Կիպրոսում, ուր քաշվել էր Կիլիկիոյ վտանգներից նեղված (Սիսուան 97)։ Այնտեղ գրել է մի գեղազարդ ձեռագիր (Գործք Առաքելոց, Կաթուղիկեայք և Աւետարան Յովհաննու)։ Այս ձեռագիրը գրված է Հեթում (Գ.) Լամբրոնացու դուստր Ալիծի համար (քույր Կեռան թագուհու և կին Փիլիպպոսի Իպլինեան՝ սենեսկալի Թագաւորութեան Կիպրոսի), որ հյուրընկալել էր նրան և իբր որդի խնամում էր։ Ձեռագիրը գրված է 1310—12 թվերին, Կիպրոսի Մագուսա (=Ֆամակուստա) քաղաքում (Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց մետրապոլիսը, էջ 342—8=*REA *10,39)։ Ունի նաև մի Տօնացոյց՝ «1300» թ. (Ազգապ. 1181)։ Իր ձեռագիրներից հիշատակելի են նաև մի Աւետարան 1290 թ. (Սիսուան 96 ա), մի Աստուածաշունչ՝ 1292 թ. (Ձեռ. Կարին. 10, Շողակաթ 207), և ուրիշ գործեր՝ 1297 թ. (Զարբ. Թրգմ. 156), 1288 թ. (Զարբ. Թրգմ. 157)։ Թերևս նաև մի Աստուածաշունչ Հեթում Բ-ի համար 1295 թ. (Շողակաթ 208)։ Հասցրել է աշակերտներ, որոնցից հիշենք գրիչ Վահրամ սարկաւագը՝ 1298 թ. (Սիսուան 96 բ, Հայապատում 503 թ.)։ Ստեփաննոսի խնդրանոք էլ ոմն Ներսէս օրինակել է Ոսկեփորիկը (Ձեռ. Վենետ. № 1150, ըստ Սարգիսեան, Եւագր. ներած. էջ կզ)։ Ժամանակակիցներից կոչված է «անհաս գրիչ», «այն որ լի էր և պատրուն յարհեստ գրչութեան և ընդ բնաւս հաչակեալ» (Շողակաթ 207, Ձեռ. Հալէպի. Ա. 118)։ Ալիշան՝ Սիսուան 97 ա կարծում է որ*

նույն անձն է նաև Ստեփաննոս Իրիցու որդի, որ 1274 թ. օրինակել է Վարդան վարդապետի մի գործը՝ Գեռան Թագուհու համար։ Այս դեպքում Ստեփաննոսի գործունեության սկիզբը կձգվի մինչև 1274 թ։ Հմմտ. № 269։

— **248. Ստեփաննոս** վարդապետ Ապարանցի. հիշված է 1312 թվին գրված մի Շարակնոցի լուսանցքում, իբր հեղինակ «Սրբութիւն սրբոց» շարականի (Տաշեան, Ցուց. 524 բ)։ Այլուստ հայտնի է որ այս շարականի հեղինակն է Ստեփաննոս Սիւնեցին (†«735 թ»). օր. Տաշեան, Ցուց. 779 բ «զՍրբութիւնն սրբոցն Խաչի՝ Ստեփաննոս Սիւնեցին ասաց»։ Թյուրիմացությունը նրանից է, որ Սիւնեցին հիշյալ շարականը ի պատիւ Ապարանից Խաչի է անել. հմմտ. Տաշեան, Ցուց. 799 բ «զՍրբութիւն սրբոցն Ստեփաննոս եպիսկոպոս ի պատիւ Ապարանիցն»։ Այստեղից էլ առեղծվել է անգոյ ոՖ Ստեփաննոս վրդ. Ապարանից։

— **249. Ստեփանոս**, գրիչ. օրինակել է Դրազարկում Մանրուսումն երգարանը, «ի խնդրոյ պատուական և կուսակրօն քահանայի Յոհաննիսի, որոյ քեռի էր պատուելի ծերունի քահանայ Ստեփանոս», 1313 թ.—Միսուան 233 բ, 738, «Էջմիածին» 1945, օգոստ. 33 բ։

— **250. Ստեփաննոս** քահանա Սեբաստացի, որդի Պետրոս քահանայի. իր անձնական գործածության համար օրինակեց Աստուածաշունչը՝ Սեբաստիայում, 1313 թ.—Ջեռ. Սեբ. (ՀԱ. 1923, 70, 71)։

— **251/2. Ստեփաննոս** քահանա, հոգևոր եղբայր Ստեփաննոս քահանայի, որ օրինակեց Աստուածաշունչը Սեբաստիայում, 1313 թ. Ստեփաննոս քահանան (առաջինը) օգնում էր երկրորդին՝ թուղթ քանոնելով և թանաք եփելով.—Ջեռ. Սեբ. (ՀԱ 1923, 71)։

— **253. Ստեփանոս** քահանա, սիրելի հոգևոր որդի Սկևռայ վանքի առաջնորդ Պեհեսնեցի Կոստանդին եպիսկոպոսի (№ 109), որի հետ «արեամբ չափ» աշխատել է Հռոմկլայում և Պեհեսնիում և անօրեններից սպանվել է Սկևռայ վանքի սպասավորության ժամանակ (1314 թվից քիչ առաջ).—Ջեռ. Վասպ. 61։

— **254. Ստեփաննոս** քահանա Անարզաբայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1314 թ.— Զարբ. Թրգմ. 265, Միսուան 243 ա, REA 2, 283, Գաթըրճեան՝ Պտրգմ. 84։

— **255. Ստեփանոս**, դեռաբույս որդի Աւետիք քահանայի, որ Հարք գավառի Դոնեվանք գյուղում, Յովաննէս քահանային

գրել տվեց մի Աւետարան, 1316 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 464։ (Թվի թե նա ունէր վաղամեռիկ համանուն մի եղբայր եւս)։

— 256. **Ստեփաննոս** եպիսկոպոս Ատանայի, հիշված է «1307—1317» թվերին. այսպես՝ իբր անդամ Սսոյ «1307 թվի» ժողովի, Տարսոնի 1311 թվի ժողովի, ուր ընտրվեց Սալմաստի եպիսկոպոս Գրիգորը, և Ատանայի «1317 թվի» ժողովի.—Ազգապ. 1785, 1818, Ձեռ. Հալէպի, Բ. 31 ա. Սիսուան 260 ա։

— 257. **Ստեփաննոս** եպիսկոպոս Կողոնիոյ, անդամ Ատանայի եկեղեցական ժողովի «1317 թ».—Ազգապ. 1818։

— 258. **Ստեփաննոս** եպիսկոպոս Բարձրբերդի. անդամ Սսոյ «1307 թ» և Ատանայի «1317 թ» եկեղեցական ժողովների.—Սիսուան 149 բ, Ազգապ. 1784, 1818։

— 259. **Ստեփանոս** քահանա, ուսուցիչ Աստուածատուր գրչի, որ օրինակեց Աւետարանը, 1317 թ.—Manus. brit. mus. 20 բ։

— 260. **Ստեփաննոս** վարդապետ. հիշված է Դարանու դաշտի Խոռինանց գյուղում, 1317 թ.—Թորոս աղբ. Ա. 218։

— 261. **Ստեփանոս** դպիր, որդի Մարտիրոսի. Գալու անապատում Սիմէօն գրչին գրել տվեց մի Շարական, 1318 թ.—Շահազիզ, Պատմ. պատկերներ 111։

— 262. **Ստեփանոս** կաթուղիկոս Արևելեան Հայոց, 1319 թ. ժամանակակից Կոստանդին Գ Կեսարացու.—Տաշեան, Ցուց. էջ 885 ա։

— 263. **Ստեփաննոս** որդի Բասիլի, գրիչ. Փոսի անապատում, Պօղոս քահանայի պատվերով գրեց մի Աւետարան, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 516)։

— 264. **Ստեփաննոս** Կրակացի, առաջնորդ Մլիճի և արքեպիսկոպոս Տարսոնի, որդի Ամրակումի կամ Պակէի (†1301). նախապես ամուսնացած էր. անդրանիկ որդին է՝ Տէր Գրիգոր։ Անդամ էր Սսոյ եկեղեցական ժողովի «1307 թ» (Ազգապ. 1784)։ Գրել է տվել մի գեղեցիկ Աւետարան՝ 1317 թ. (Ազգապ. 5527), Ճաճախապատում, Պրոխոռոն կամ Վարք Յովհաննու աւետարանչի (1307 թ). հորինել և Մաշտոցի մեջ է մտցրել Կանոն Նաւօրհնեաց կամ Կանոն օրհնութեան նաւու։ Ունի նաև մանր ընտանեկան հիշատակներ։ Մեռել է 1320 թ.—Սիսուան 74, 271 բ, 517 ա։ Տես և № 198 և 205։

— 265. **Ստեփաննոս** տէր կամ իշխան Նորբերդի 1317—1320 թ։ Օշին թագավորի կողմից, Կապանի Յակոբ եպիսկոպոսի հետ միասին դեսպան ուղարկվեցին Յովհաննէս պապի և Ֆրան-

սխալի թագավորի մոտ, հայտնելու համար Ատանայի ժողովի որոշումները 1317 թ.—Սխուան 287 ա, 558 ա, Ազգապ. 1826։

— 266. Ստեփաննոս արքեպիսկոպոս Սեբաստիոյ. որդի Տաճատ քահանայի, մայրն է Թեմիայ. անդամ Համկլայի և ապա Սսոյ եկեղեցական ժողովի 1307 թ. (Ազգապ. 1785, Հացունի՝ Կարևոր խնդ. 267)։ Վեց տարի անց հիշվում է դարձյալ Ստեփաննոս եպիսկոպոս առաջնորդ Սեբաստիոյ, 1313 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1923, էջ 70, 71)։ Այցելության գնաց Կիլիկիա՝ ողջունելու Օշին թագավորին, 1320 թ. Թագավորը նվիրեց նրան մի Ավետարան, որ գրել էր Ավետիս գրիչը (№ 37) և նկարազարդել էր մասամբ Սարգիս Պիծակը. բայց ոչ ամբողջությամբ։ Եպիսկոպոսը ման եկավ, գտավ Պիծակին և վճարելով 1300 դրամ, նկարել տվեց մնացյալ բոլոր թերի մասերը (Սխուան 236)։ Տարավ իր հետ Սեբաստիա։ Երբ այլազգիների ձեռքից ստիպվեց փախչել իր երկրից, նույն Ավետարանն էլ տարավ իր հետ Կաֆա (Թէոդոսիա), ուր նվիրեց մի եկեղեցու։ Երիմի գաղթի ժամանակ, Ավետարանը բերվեց Նոր-Նախիջևան (1789 թ) և այնտեղից էլ փոխադրվեց Երևան, մեր Պետական Մատենադարանը (Շահազիզ, Պատմ. պատկ. 112—115)։ Այս մի ձեռագիրը պատկերն է հայ ազգի ճակատագրի. աշխատանք, արվեստ, գիտություն, ապա հարստահարություն, փախուստ, գաղթ երկրից երկիր և ի վերջոյ ներգաղթ դեպի Մայր երկիրը։ Գնացի տեսա այս ձեռագիրը (№ 7651), գուրգուրանքով համբուրեցի նրա ճակատը մեր բոլոր տարագիր հարազատների անունից և մաղթեցի որ նրանք էլ մի օր արժանի լինեն հայրենի արևը վայելելու։

— 267. Ստեփանոս Կրակացի, ուսուցիչ էր Կրակայ գյուղաքաղաքի դասատան մեջ, որ գտնվում էր Թորոս Ջաւտկայ հովանավորության տակ, 1320 թ.—Սխուան 547 բ։—Հմմտ. № 288։

— 268. Ստեփաննոս, որդի Ներսէս քահանայի, որ Ապահունեաց Արսէ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1321 թ.—Ջեռ. Վասպ. 167։

— 269. Ստեփաննոս, մականուն Երկայն, Երուսաղէմում օրինակեց Ճաշոցը 1316 թ. (տես Յ. Մուրատ, Ցայտ. յավ. էջ մղը).—Ծեր հասակում, «որ յոյժ պակասեալ էր ճաճանչ լուսոյ յաչացս և պակասեալ ի զաւրութենէ», Վարդիշխան քահանայի խնդրանոք օրինակեց Ավետարանը, Երուսաղէմում, 1321 թ.—Թորոս աղբ. Բ. 344—5։—Արդյոք № 247 Գոյներիցյանց է։

— 270. Ստեփաննոս *եպիսկոպոս Սիւնեաց, որդի իշխանաց իշխան Տարսայիճի և եղբայր Էլիկումի։ Արատէսի վանքի Ս. Սիոն եկեղեցուն նվիրել է Վանեվանը, Կթանոցը և ուրիշ վեց գյուղ 1321 թ.—Արձ. Միսակյան 144։ Սրանից դուրս ունի և անթվ. Արձ. Արատէսի վանք (Միսակյան 142)։ Հիշվում է Յովհաննէսի հետ 1321 թ.* (Manus. brit. mus. *22 բ)։*

— 271. Ստեփաննոս *աբեղա, մեծ աշխատությամբ արծաթապատեց այն Աւետարանը, որ օրինակեց Ստեփան (№ 269) Երկայն գրիչը Երուսաղէմում, 1321 թ.—Թորոս աղբ. Բ. 346։*

— 272. Ստեփաննոս *Դ. կաթուղիկոս Աղուանից, 1261—1323. «մանուկ տիօք» հաջորդել է Ներսէս Բ-ին († 1261) և 62 տարի գահակալելուց հետո՝ մեռել է 1323 թ. իր հաջորդն է Սուքիաս.—Կիր. կա, Ջեռ. Դաղեան, Ա. 89 բ.—հիշված է մի հիշատակարանում 1273 թ. (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 10) և 1303 թ. Ջեռ. Դաղեան, Բ. 45, Ջամբռ 77։*

— 273. Ստեփաննոս *երեց Երկաթենց, կազմեց Սսում մի հին Աւետարան, որ Բարսեղ երէցորդին գնել էր Հալէպում, 1323 թ.—Ջեռ. Կես. ածած. 64 բ։*

— 274. Ստեփաննոս *դպիր, գրիչ. Սկեռայ վանքում, 1324 թվին օրինակեց մի ժողովածու, որ այժմ գտնվում է Օքսֆորդ։ Պետք է համարել այն Վարք սրբոցը, որ հիշում է Սիսուան 107՝ գրված Աբրահամ միակեցի համար, ավելի ճիշտ Պրոխորոն գիրքը* (Bodleian *71)։*

— 275. Ստեփանոս *Փոքր, դպիր. միաբան Կիլիկիոյ Դալու վանքի, հիշված 1325 թ.—Սիսուան 201 ա։*

— 276. Ստեփաննոս *քահանա, որդի Վահրամի, եղբայր Գրիգոր գրչի, որ Ակների վանքում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն Թղթոցն Պօղոսի, 1325 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 572, Սիսուան 155 ա։*

— 277. Ստեփաննոս *քահանա, կազմարար. կազմեց Գետաշէնի հնացյալ Աւետարանը 1325 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. էջ 44, 61։*

— 278. Ստեփանոս *քահանա, որդի Յոհան քահանայի. գրել տվեց Աւետարանը իր որդի Մխիթար սարկավագին, որ չկարողացավ վերջացնել և մեռավ։ Շարունակեց Գրիգոր երեցը և վերջացրեց Սարգիս քահանան, 1326 թ.*—Rapport Belgique *85։*

— 279. Ստեփաննոս, *որդի Կիրակոսի (№ 56), որ օգնեց*

*Յովհաննէս գրչին օրինակելու համար Աւետարանը 1327 թ.—Ձեռ. Հալէպի Ա. 397։*

— 280. **Ստեփաննոս**, *թոռ Թանգերի (№ 2), որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1327 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. էջ 397։*

— 281. **Ստեփաննոս** *վարդապետ (կամ վանական քահանա). գրիչ. Դրազարկի վանքում օրինակեց Շարականը՝ 1328 թ.—Ձեռ. Կարին. 174, Շողակաթ 211։*

— 282. **Ստեփաննոս** *գրիչ. օրինակել է «Պատմութիւն վարուց և կենաց Ոսկեբերանի», ի վանս Ստեփաննոսի Ուլնեցւոյն, 1328 թ.—Ձեռ. Կարին. 190, Սիսուան 184 բ։*

— 283. **Ստեփանոս**, *որդի Վահրամ քահանայի և եղբայր Ներսէս վարդապետի, որ Յովհաննէս գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը, 1328 թ, երբ Ստեփաննոսը արդեն մեռած էր.—* Manus. brit. mus. *87 ա։—Հմմտ. № 285 և 284։*

— 284. **Ստեփաննոս** *քահանա, հայր Յովհաննէս գրչի, որ իր քեռորդի Ներսէս վարդապետի համար օրինակեց Մանրուսմունքը՝ 1328 թ.—* Manus. brit. mus. *87 ա։—Հմմտ. № 283 և 285։*

— 285. **Ստեփանոս** *վարդապետ, որդի Ներսէս քահանայի և հօրեղբայր Ներսէս վարդապետի, որ Յովհաննէս գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը՝ 1328 թ. երբ Ստեփաննոսը արդեն մեռած էր։—Հմմտ. № 283 և 284։—* Manus. brit. mus. *87 ա։*

— 286. **Ստեփաննոս** *արքեպիսկոպոս և առաջնորդ (տեղն անհայտ), 1329 թ.—Ձեռ. Վասպ. 180։*

— 287. **Ստեփանոս** *վանահայր Ակների վանքի (Կիլիկիա), 1325 թ. հիշվում է իբրև փակակալ նույն վանքի, 1329 թ.—Սիսուան 155, Ձեռ. Վենետ. Բ. 572։*

— 288. **Ստեփաննոս** *քահանա Կրակցի. Հալէպում օրինակել է մի Ժողովածու, ուր գտնվում է նաև Խրատք Եզնկայ, 1329 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 214 (հրատարակիչը սխալվելով դնում է 1429)։—Հմմտ. № 267։*

— 289. **Ստեփանոս** *քահանա, միաբան Ակների վանքից, հիշված 1329 թ.—Սիսուան 155 բ։*

— 290. **Ստեփաննոս** *կրոնավոր, որի խնդրանոք Յովհաննէս Կարեւոր աբեղան օրինակեց Շարակնոցը 1329 թ.—Տաշեան, Ցուց. էջ 497 ա։*

— 291. **Ստեփան**, *մերձավոր Հայրապետ գրչի, որ Կիլի-*

կիոյ Փոքր անապատում օրինակեց Սանդուղք աստուածային ելից, 1329 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։

— 292. Ստեփաննոս եպիսկոպոս, առաջնորդ Փոս անապատի (Կիլիկիա), 1329 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։

— 293. Ստեփանոս, մերձավոր Մարտիրոս գրչի, որ Բաւուն միայնակյացի համար արտագրեց Աւետարանը, 1330 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 770։

— 294. Ստեփանոս, որդի Սարգսի՝ հոգևոր զավակի Բաւուն միայնակյացի, որ գրել տվեց մի Աւետարան, 1330 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 770։

— 295. Ստեփաննոս վարդապետ. հանցանքի համար արգելափակված էր Մոլևոնի դղեկում՝ Կոստանդին վարդապետի հետ, 1331 թ.—(տես Կոստանդին № 128).—Ձեռ. Հալէպի, Բ. 126 բ։

— 296. Ստեփաննոս վարդապետ, ուսուցիչ Յովհաննէս քահանայի. Դաւիթ գրչին շնորհեց Ս. Գիրքը՝ օրինակելու համար Գայլեձորում։ Արդեն մեռած էր 1332 թ.—Հայապ. 548։

— 297. Ստեփանոս սրկ., որ երեք կալվածներ է նվիրել Տաթևի վանքին 1332 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Գ. 141 (Լալայեանի արտագրածը լինելով՝ անհասկանալի է)։

— 298. Ստեփաննոս արքեպիսկոպոս Մամեստիոյ. դեսպան գնաց Լևոն Թագավորի կողմից Յովհան ԻԲ պապի մոտ, որ պատվով արձակեց նրան իր ուղեկիցների հետ 1332 թ.—Սիսուան 250 ա, 558 բ։

— 299. Ստեփանոս Տէր, հոգևոր հայր և ուսուցիչ Յովհաննէս քահանայի, որ Գայլեձորի վանքում Երեմիայի մարգարեութեան իր օրինակը տվեց արտագրելու Եփրեմ գրչին, 1332 թ. երբ Ստեփաննոսը մեռած էր.—Ձեռ. Վիեննա. Ա. 127։

— 300. Ստեփան խազան, մերձավոր Կրակացի Ներսէս արեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը 1335 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 348։

— 301. Ստեփանոս քահանա, որդի Վահրամի և եղբայր Գրիգոր գրչի, որ Կիլիկիայում գրեց մի Աւետարան, 1334 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 698։

— 302. Ստեփանոս նորընծա. քահանա, որ ապրում էր Երուսաղէմի Ս. Սիոնում, 1335 թ.—Ձեռ.—Վիեննա. Բ. 348։

— 303. Ստեփանոս քահանա, որդի Մելիքշահ Թիլուխարձեցու, որ նրա համար գրել տվեց մի Աւետարան, 1335 թ.—Bodleian 5։

— 304. Ստեփանոս, վանահայր և առաջնորդ Հոռոմոսի վանքի. հիշված է 1336 թ.—Արձ. Շիրակ 28։

— 305. Ստեփաննոս կրոնավոր, քեռորդի Զաքարիա կաթուղիկոսի Աղթամարայ. մեռավ 1326 թվից քիչ հետո.—Արծր. յաւել.—մեռ. Ստեփաննոսի՝ անդ։—Ըստ Հաւաքարանի հաջորդեց Զաքարիային և նստավ 1336 թ։

— 306. Ստեփաննոս եպիսկոպոս, գրիչ. Խորձեան գավառի Խլպաշի վանքում օրինակեց մի Աւետարան, 1336 թ.—Նաթանեան, Արտօսր Հայաստանի, էջ 151—2։

— 307. Ստեփանոս, հայր Վասիլ Թղթագրի Լևոն Ե թագավորի. Վասիլի մասին տես առանձին (1337 թ).—Շահազիզ, Պատմ. պատկ. 118։

— 308. Ստեփաննոս վարդապետ, «հոգևոր հարազատ» Մխիթար Սասնեցու († «1237 թ»). հիշվում է Մխիթարի կենսագրության հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Բ. 302։

— 309. Ստեփաննոս վարդապետ Քաջբերունեաց գավառից? ուսումնակից Յովհաննէս Արճիշեցու և Մխիթար Սասնեցու. ուսանում էր Գլաձորի վանքում, Եսայի Նչեցու մոտ, 1280-ական թվերին։ Դեռ կենդանի էր 1337 թ։—Մկ. մեծոփ. էջ 28, 32։

— 310. Ստեփանոս, որդի Կարապետի և եղբայր Առաքելի, որ օրինակեց Աւետարանը Մոկաց Դաշտ գյուղում, 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։

— 311. Ստեփաննոս, նախորդի պապն է.—անդ 198։

— 312. Ստեփաննոս Աղթամարցի, կաթուղիկոս հայոց 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։ Հմմտ. № 481։

— 313. Ստեփանոս կրոնավոր, Տարօնի Ղազարավանքի միաբաններից. գտավ մի հին մագաղաթյա Աւետարան, որ այլազգիների ձեռքը գերի էր ընկել. «յառաջն աւետարան էր և անկեալ էր ի ձեռս այլազգեաց և թուխթ թուխթ էր արած. ես լուացի զինքս ու շատ աշխատեցայ. այնոր համար որ ըզգիրն դժար կու առնէր ու ըղծա(ղ)կներ...»։ Գրիչը նորից է գրել 1339 թ. բայց էլի գերի է ընկել և Լէնկթիմուրի զինվորները վաճառքի են հանել. Տիրացու կրոնավորը գնել է և ազատել։—Ձեռ. Վասպ. 202։

— 314. Ստեփաննոս գրիչ. օրինակեց Շարականը Կիլիկիայում, ՉՂ=1341 թ.—Ձեռ. Կարին. 175 (տպ. ՉՉ, պետք է ուղղել ՉՂ)։

— 315. Ստեփաննոս, վանահայր Միակեցերի վանքի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Սիսուան 153 ա. Ազգապ. 1870։

— 316. Ստեփաննոս վարդապետ կաթուղիկոսարանի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870. Այլ է՝

— 317. Ստեփաննոս եպիսկոպոս կաթուղիկոսարանի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 318. Ստեփաննոս եպիսկոպոս Տրապիզոնի, անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 319. Ստեփաննոս արքեպիսկոպոս Անարզաբայի (Անաւարզա), հիշված նախ 1342 թ (Սիսուան 241 ա). անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 320. Ստեփաննոս Գ, կաթուղիկոս Աղթամարի, «1336?—1346 թ». հաջորդեց Զաքարիա Ա Սեֆեդինեանին։ Զունի Հաւաքարան, էջ 40։ Համարվում է Զաքարիա Ա-ի եղբորորդին։ Իր բնավորությունը ցույց տալու համար՝ հիշենք թե կոչված է «աղքատասէր» իր տապանագրում, որ գտնվում է Աղթամարում և որ հետևյալն է. «Ի թվին ՉՂԵ (=1346) վախճանեցաւ աղքատասէր հայրապետն մեր տէր Ստեփանոս կաթողիկոս ամենայն Հայոց, ազգաւ Արծրունի...»։—Ակինեան, Գուղնգիրք 58—63։ (Նույնը ունի Ազգապր. հանդ. Ի, 210, բայց դնում է †1348 թ. տարբերությունը Ե և Է տառերի նմանության պատճառով է)։

— 321. Ստեփաննոս առաջնորդ Բաբերդի՝ 1346 թ.—ՀԱ 1926, էջ 344։

— 322. Ստեփաննոս որդի Ապրէլուսի, որ ստացավ մի Աւետարան, 1347 թ.—Ձեռ. Ազուլ. (Արրա. 1911, 462—5)։

— 323. Ստեփաննոս վանահայր կամ միաբան Հառոմոսի վանքի 1347 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ. արվ. 37, 42։

— 324. Ստեփանոս աբեղա, միաբան Գաղիտոյ Ս. Գէորգ եկեղեցու. հիշվում է իբրև վկա, 1348 թ.—Ձեռ. Ազուլ.=Արրա. 1911, 565։

— 325. Ստեփանոս քահանա, որդի Գրիգորի. գնեց մի հին Աւետարան, որ վերստին կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.— Manus. brit. mus. 8 բ։

— 326. Ստեփաննոս երեց. Սուրխաթ քաղաքում (Խրիմ) օրինակեց Ճաշոցը 1349 թ.—Կամենից 160։—Հմմտ. № 328։

— 327. Ստեփանոս դպիր, հիշված 1350 թ. Երուսաղէմի Ս. Սիոնում.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 328. Ստեփանոս *քահանա, որդի Գրիգորիս քահանայի.*
*մայրն է Աչքազատ. գրիչ. Սուրխաթում (Խրիմ), Քրիստոսատուր*
*կրոնավորի համար օրինակեց Աստուածաշունչը 1352 թ.—Ձեռ.*
*Վասպ. 7,—Հմմտ. № 326։*

— 329. Ստեփանոս *պարոն, թուղթ հայթայթեց Ստեփա-*
*նոս քահանային՝ օրինակելու համար Աստուածաշունչը Քրիստո-*
*սատուր կրոնավորի համար, Սուրխաթ 1352 թ.—Ձեռ. Վասպ. 13։*

— 330. Ստեփանոս, *որդի Պարոնշահի, հղկեր հօր Յոհան*
*վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց*
*Նոյյի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, 4 ա։*

— 331. Ստեփանոս *գրիչ. Սուրխաթ քաղաքում (Խրիմ)*
*օրինակեց Նոյյի և Թուղթք Պօղոսի, ստացող Յոհան վարդա-*
*պետի համար, 1356 թ.—Ձեռ. Բեռլին, 3 բ, ա։—Հմմտ. № 337։*

— 332. Ստեփաննոս *գրիչ. Սուրխաթում, Կարապետ քահա-*
*նայի համար օրինակեց Վարդանի, Գէորգի և Արիստակէսի քե-*
*րականական գրվածները, ինչպես և նշանագրերի ցանկը, 1357*
*թ.—Գիտական նյութերի ժղ. № 1, էջ 46 բ։—Հմմտ. № 337։*

— 333. Ստեփանոս *գրիչ, արտագրել է Գեորգ Սկևռացու*
*և Արիստակէսի գործերը՝ գրչության արվեստի մասին, Սուր-*
*խաթ 1357 թ.—«Էջմիածին», 1944 № 1, էջ 40 բ։—Հմմտ. № 337։*

— 334. Ստեփանոս *կրոնավոր Ս. Գէորգ զորավար վանքում*
*1357 թ.—Ձեռ. Վասպ. 213։*

— 335. Ստեփաննոս *գրիչ, Նախավկայի վանքում օրինա-*
*կեց Իգնատիոսի Մեկնութիւն Ղուկասու, Կարապետ քահանայի*
*համար, 1357 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 227։*

— 336. Ստեփաննոս *արքեպիսկոպոս, որդի Գրիգոր քա-*
*հանայի, առաջնորդ «հիւսիսական կողմանց», աթոռակալ Խրիմի,*
*որի աթոռանիստն էր Սուրխաթ քաղաքը։ Հիշված է 1328, 1341,*
*1346, 1350, 1351, 1352, 1353, 1354, 1355 և 1358 թվերին, ու-*
*րեմն 1328—58 թ. (30 տարի).—*REA *10, 41, Ճառընտ. 1355 թ.*
*Պարիզի Ազգ. մատ. № 45, ըստ Անան. Թրգ. էջ 16, Ջարբ. Թրգմ.*
*508, ՀԱ 1895, 304 ա=Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց*
*մետրապոլիսը, էջ 329, Թորոս աղբ. Բ. 392, 426, Ձեռ. Վասպ.*
*6, Շահազիզ՝ Հին Երևանը 72, «Էջմիածին» 1945, օգոստ. 34 ա,*
*Հացունի՝ Կարևոր խնդ. 268։ Նոյն է նաև Ստեփաննոս եպիս-*
*կոպոս Կաֆայի, հիշված 1357-ից առաջ, որից հետո Թադէոս*
*† 1357 թ. (Այրարատ 545)։ Նույն 1357 թվին հիշված է Սուր-*
*խաթ գրված մի ձեռագրում (Գիտական նյութերի ժղ. № 1, էջ*

46 բ)։ Կասկածելի է կամ տարբեր անձ է Ստեփաննոս եպս. 1362 թ. (Ջարբ. Թրգմ. 389)։

— 337. Ստեփաննոս գրիչ. Սուրխաթ քաղաքում, Մինաս քահանայի համար օրինակեց Կիւրղի Մեկնութիւն Եսայեայ 1354 թ. (Ջարբ. Թրգմ. 508), իսկ 1357 թվին էլ Մեկնութիւն Քերականին (Տեղեկ. Արմֆանի, 1943 № 2, էջ 86)։—Հաջորդ և նախորդ համարներում ունենք Սուրխաթում Ստեփաննոս անունով 5 գրիչ, այն է № 331, 332, 333, 337, 341.—Նույն իսկ մեկը (№ 341) Սուրխաթից Երուսաղէմ է գնացել և Երուսաղէմից Սուրխաթ վերադառնալիս, Պոլսում նստած ձեռագիր է արտագրում։ Այս Սուրխաթցի Ստեփաննոսների թվականը գնում է 1356 թվից մինչև 1361 թ։

— 338. Ստեփաննոս, որդի Սահակ քահանայի, ստացավ Արճէշում գրված մի ժողովածու՝ 1360 թ.—Քոսեան, Հայք ի Ջմիւռնիա, Բ. 83։

— 339. Ստեփաննոս Արևելցի, աշակերտ Սէթ վարդապետի և հայր Թագւորշահ դպրի, որ Երուսաղէմում գրել տվեց մի Աւետարան 1360 թ.—Թորոս աղբ. Բ. 438։

— 340. Ստեփաննոս կրոնավոր, Գրիգոր քահանայի օգնությամբ, ստացող Թագւորշահ դպրի համար օրինակեց Աւետարանը՝ Երուսաղէմ 1360 թ.—Թորոս աղբ. Բ. 437։

— 341. Ստեփանոս գրիչ, Երուսաղէմից Խրիմ գնալու ժամանակ դադար է առել Պոլսի Ղալաթիա թաղի Ս. Սարգիս եկեղեցում և այնտեղ օրինակել է Եսայի Նչեցու Մեկնութիւն Քերականի, 1361 թ.—Թորգոմեան, Ստամպօլոյ պատմ. հտ. Բ. 484—5։—Հմմտ. 337։

— 342. Ստեփանոս քահանա, որդի Նատիրի, գրիչ. Խրիմի Սուրխաթ քաղաքում, Յովհաննէս կրօնավոր Սեբաստացու հրամանով գրեց Դաւթի Սահմանաց գիրքը, 1363 թվին.—Manus. brit. mus. 248 ա։

— 343. Ստեփաննոս կրոնավոր, գրեց Երուսաղէմում «Սարգիս ճառս» 1355 թ. և Ճառընտիրը 1363 թ.—Տաթև տարեց. 1925, 292։

— 344. Ստեփաննոս արքեպիսկոպոս Եկեղեաց (Երզնկայի). հիշված է 1356 և 1363 թ.—Հացունի, Կարևոր խնդ. 266։

— 345. Ստեփանոս քահանա, գրիչ. օրինակեց Մաշտոցը՝ Ամիթ (Տիգրանակերտ) քաղաքում, 1364 թ.—Ձեռ. Թուր. 136 ա։

— 346. Ստեփաննոս կրոնավոր, ուսուցիչ Ատոմ կրոնա-

վորի, որին շնորհեց Լուծմունք Վարդանի գիրքը՝ օրինակելու համար, Աղթամար 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 846։

— 347. Ստեփանոս կրոնավոր, ուսումնակից Ատոմ կրոնավորի. որ Աղթամարում օրինակեց Լուծմունք Վարդանի, 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 846։

— 348. Ստեփաննոս կրոնավոր, եղբայր Յովհաննէս կրոնավորի, երկուսն էլ միաբան Աղթամարի, 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. էջ 846։

— 349. Ստեփաննոս կրոնավոր, միաբան Աղթամարի Ս. Խաչ վանքի (տարբեր է երեք համանուններից). հիշված է 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 846։

— 350. Ստեփան կրոնավոր. գրիչ. Աւագ վանքում օրինակեց Նարեկը՝ 1366 թ.—Ձեռ. Կարին. 172։

— 351. Ստեփաննոս գրիչ, Մոկաց Ծպատի վանքում օրինակեց Մայր Մաշտոցը 1369 թ.—Թորոս աղբ. Բ. 427։

— 352. Ստեփաննոս կրոնավոր, Մեծոփում օգնեց Սիմէոն գրչին՝ օրինակելու համար Դաւթի Լուծմունք Ճառից Աստուածաբանի, 1370 թ.—Տաշեան, Ցուց. 757 ա։

— 353. Ստեփանոս գրիչ. Թադէոս քահանայի համար մի Մանրուսմունքի մեջ կատարեց նոր հավելումներ, 1371 թ.—Bodleian 20։

— 354. Ստեփաննոս գրիչ. օրինակեց Աստուածաշունչը 1371 թ.—Ձեռ. Կարին. 14։

— 355. Ստեփանոս որդի Կարապետ երէցի. սարկավագ էր 1333 թվին Երուսաղէմում և իր հոր արտագրած մի Ճաշոցում գրել էր իր հիշատակարանը։ Ապա եղավ երէց և գրեց մի նոր Ճաշոց, որ Ջուրին գյուղում վաճառեց Անպէտի որդի Սարգսին, միջնորդությամբ Կարապետ քահանայի՝ որդւոյ Խաչերեսի, 1371 թ.—REA 10, 57։

— 356. Ստեփանոս կրոնավոր, գրիչ. իր եղբոր՝ Ներսէսի խնդրանոք գրեց մի Աւետարան, Դարանաղեաց (Կամախի) Աւագ վանքում, 1372 թ։—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 45։

— 357. Ստեփաննոս կրոնավոր, գրիչ. օրինակել է մի Աւետարան, 1372 թ.— Շահազիզ, Հին Երևանը, էջ 227։

— 358. Ստեփանոս քահանա; եղբայր Թորոս քահանայի, որ Ամիթում արտագրեց Աւետարանը՝ 1373 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 618։

— 359. Ստեփաննոս, *հիշատակագիր մի Աւետարանի, որ Վարդան անուն անձը գնեց 1374 թ.—Ձեռ. Վասպ. 144։*

— 360. Ստեփաննոս *գրիչ. օրինակել է Տիրատուր քահանայի համար՝ Ն. Շնորհալու տաղերը, 1374 թ.*—Manus. bibl. nat. *էջ 146։*

— 361. Ստեփաննոս *քահանա Այասի, 1375 թ. տես Ցիմի Այասցի։*

— 362. Ստեփաննոս, *եղբայր Տիրացուի, որ Մոկաց գավառի Գանաց վանքի առաջնորդն էր և Նահապետ գրչին օրինակել տվեց Եսայեայ մարգարէութիւնը՝ 1380 թ.—Ձեռ. Սեր. (ՀԱ 1923, էջ 73)։*

— 363. Ստեփանոս *կրոնավոր, որդի Կիրակոսի. գրիչ. Կարապետ կրոնավորի համար օրինակեց Հին Կտակարանը՝ Սզկայու վանքում. 1381 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 848—851։*

— 364. Ստեփաննոս *կրոնավոր, քեռին է Նիկողայոս կրոնավորի, որ Վանում, Յովհաննէս երեցին գրել տվեց Եղիշէի Վարդանգիրքը 1381 թ.—Թորոս աղբ. Բ. 334։*

— 365. Ստեփանոս *կրոնավոր, եղբայր Յովհաննէս կրոնավորի, †1382 թ.*—Bodleian *165։*

— 366. Ստեփաննոս *վարդապետ (մականուն* Փիր.), *գտնըվում էր Տփղիսում, երբ Լէնկթիմուրը գրավեց այդ քաղաքը. հազիվ ազատվեց նրա հրոսակներից «1386 թ».—Մեծոփ. 19 (գնում է ՊԼՁ թ), Ազգապ. 1971։—Նույն չէ՞ № 408-ի հետ։*

— 367. Ստեփաննոս *վարդապետ (Արճիշեցի?), ապաստանել էր Մշու Ս. Կարապետ վանքը և Լանկթամուրի արշավանքից վանքն ապաստանած Արճիշեցի գաղթականներին մխիթարում ու քաջալերում էր «1387 թ».—Մեծոփ. 21, Ազգապ. 1973։—Հմմտ. № 498։*

— 368. Ստեփաննոս *արքեպիսկոպոս Սեբաստիոյ. նոր վկա։ Բուրհանադդին Սուլթանի բռնակալության պատճառով՝ զորքը գրգռված էր նրա դեմ և ուզում էին ապստամբել. Բուրհանադդինը լսեց այդ մասին և 14 տաճիկ սպանեց։ Չարախոսեցին թե եպիսկոպոսն էլ ապստամբներից է, ուստի իր երկու աբեղաների հետ (Թէոդորոս կամ Թորոս և Սեղբեստրոս) կանչեց իր առաջ և պահանջեց ուրանալ իրենց հավատքը։ Մերժեցին՝ նահատակեց բոլորին էլ «1387 թ»։ Իր վրա կա մի գեղեցիկ գուսանական տաղ (Բազմ. 1848, էջ 341, Ալիշանի գեղեցիկ գնահատականով).—*

Յայսմ. յունիս 23, Առաք. պատմ. 484. Զամչ. Գ. 431—3. այս բոլորը արտատպ. Նոր վկ. 137—150 (տաղն էլ միասին)։

— 369. Ստեփաննոս երեց Թուրկուրանցի. գրիչ. օրինակեց «Կտակարանք որդւոյն Յակոբայ», խնդրանօք խօջա Ղազարոսի և Մարտիրոսի՝ որդոց Ստեփաննոս քահանայի, 1388 թ.—Տաշեան, Ցուց. 413 և 929։

— 370. Ստեփաննոս վարդապետ, փակակալ Ապրակունեաց վանքի՝ Սարգիս վարդապետի առաջնորդության ժամանակ, 1388 թ.—Մեծոփ. 39. Ազգապ. 1966։

— 371. Ստեփանոս միայնակեաց, որդի Մկրտչի, Աղթամարի վանքում Կարապետ գրչին օրինակել տվեց Ճառընտիրը և նվիրեց Գաւաշ գյուղի եկեղեցուն, 1389 թ.—Ջեռ. Ազուլ.= Արրտ. 1911, 759—765։

— 372. Ստեփանոս, երկու նույնանուն քահանաներ Գաւաշ գյուղի, 1389 թ.—Ջեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 765։

— 373. Ստեփաննոս Լալուկ վարդապետ, որդի Բեհնամշայի. մայրն է Աղիզմելէք. «յաշակերտաց մեծին Գրիգորի» (Տաթևացին է). առաջնորդն էր Թաւրիզի հայոց, երբ իրեն դիմեց Սահակ պարսիկ Թաւրիզեցին և մկրտվելով քրիստոնյա դարձավ (1380 ական թվերին, ապա նահատակվեց 1417 թ).—հիշված է Նոր վկ. 217, 219 ≤Մեծոփ. 74, 76 և Ջեռ. Թաւր. 71 ա (Թաւրիզ 1311 թ. գրված մի Աւետարանի անթվ. հիշատակության մեջ)։

— 374. Ստեփաննոս վարդապետ, գրիչ. Երուսաղէմի «Լեռնակողմանց Ս. Կարապետ վանքում» օրինակեց Մաշտոցը 1390 թ.—ՏաԹև տարեց. 1925, 292։

— 375. Ստեփաննոս Սսեցի, ասպետ Սիս քաղաքի. հայոց պետության անկումից հետո, նրա զավակները բնակվում էին Կիպրոսում. Լևոն Զ թագավորը 100 ոսկի ֆրանկ պարտք ունենալով նույն Ստեփաննոսին, կտակեց 1392 թ. այդ գումարը վճարել իրեն կամ զավակներին.—Բասմաջեան, Լևոն Ե. 131, Սիսուան 560 բ։

— 376. Ստեփաննոս, որդի Խնկիկի և եղբայր Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում գրել տվեց երկու Աւետարան 1392—3 թ.—Ջեռ. Վասպ. 227—229։

— 377. Ստեփաննոս մահդասի, երեց և հայր Մարիամու վանից, 1394 թ.—Bodleian 161։

— 378. Ստեփաննոս, *այլ կրոնավոր նույն տեղում և նույն թվին.*— Bodleian *161։*

— 379. Ստեփաննոս *քահանա Ամուկցի. նախ բնակվում էր Լիմ կղզում, ապա գնաց Արճէշ և տեսնելով որ ոչ մի հոգևորական չկա, մի կին փախցրեց և այլազգիներին կաշառելով երկար ժամանակ մնաց Արճէշ քաղաքում՝ իբրև առաջնորդ։ Քրիստոնյաներից ոմանք մատնեցին նրան Արծկէի Սոհանդ ամիրային, որ գլխատմամբ նահատակեց նրան Մուսեֆիր տանուտիրոջ հետ «1395 թ»։—Մեծոփ. 47, 112> Նոր վկ. 184։ (Չամչ. Գ. 465 դնում է 1432 թ)։*

— 380. Ստեփանոս, *որդի Յովհաննէսի և «մանկատիպ եղբայր» տանուտեր Մարտիրոս Շատախեցու, որ Ծպատի անապատում, Կարապետ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1395 թ.— Ձեռ. Վասպ. 231—4։*

— 381. Ստեփաննոս *վարդապետ, նախ աշակերտեց Մովսէս վարդապետին, ապա Յովհաննէս Որոտնեցուն, դասընկեր ունենալով Յովհաննէս Մեծոփեցուն՝ Ապրակունեաց վանքում, ուր ստացավ «մասնավոր գավազան»։ Մեռավ Կողովտում 1395 թ.—Մեծոփ. 47, 55. Այրարատ 499. Ազգապ. 1984 (սրա հետ նույն է դնում Ստեփաննոս Դարացին) և 2003։*

— 382. Ստեփանոս *կրոնավոր, որդի Մովսէսի. ստացավ ու նորոգեց մի հին Ավետարան, 1396 թ.—Տաշեան, Ցուց. 416 բ։*

— 383. Ստեփանոս, *որդի Խասրովի և եղբայր Վարդան քահանայի, որ Երզնկայում գրել տվեց մի Ավետարան և վաճառեց մի ուրիշ Վարդան քահանայի, 1397 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1926, 45։*

— 384. Ստեփաննոս, *վանահայր Գամաղիէլի վանքի, 1397 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1286։*

— 385. Ստեփաննոս *(Տէր), որդի Դաստակերի (№ 3 և 4), միաբան Վարագայ վանքի 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429։*

— 386. Ստեփաննոս *ազնվական ոմն, բնակվում էր Աղիովտում (Բաշքերունեաց գավառ). հայրն է Թովմա Մեծոփեցի պատմագրի (1390-ական թվերին).—Տաշեան, Ցուց. 418 ա, Ազգապ. 2093։*

— 387. Ստեփաննոս *վարդապետ. ունի Գանձ փոխման Ս. Աստուածածնի, որ արդեն գտնվում է 1485 թվին օրինակված մի Գանձարանում. ուստի ԺԴ դար.—Տաշեան, Ցուց. 760 բ։*

— 388. Ստեփաննոս *երեց. գրել է «Վասն շարականաց թէ ով է ասացեալ» (հմտր. Տաշեան, Ցուց. 441 և 779). հիշված հե-*

դինակներից վերջինն է Յովհ. Երզնկացին, որ ԺԴ դարի կեսից առաջ է. ուստի ինքն էլ սրանից քիչ ուշ է։

— 389. **Ստեփաննոս** *գրիչ՝ օրինակեց Ճառընտիրը. տես Մերկեր մանկտաւագ (ԺԴ դար)։*

— 390. **Ստեփ** *Սիր, հիշվում է մի անթվական հիշատակարանում, որ գրված է 1311 թվից ուշ (ԺԴ դար).—Ձեռ. Թաւր. 73ա։*

— 391. **Ստեփաննոս** *վարդապետ, վերանորոգել է Թէոդոսիայի մոտ՝ Գեօքթէփէի Ս. Ստեփաննոս եկեղեցին 1401 թ.—Արձ. Բժշկեան՝ Ճանապ. ի Լեհ. էջ 320։ Նույն չէ՞ արդյոք հաջորդի հետ։*

— 392. **Ստեփաննոս** *վարդապետ, նորոգել է Ղրիմի Գարատաղ գյուղի մոտ գտնված Ս. Ստեփաննոս եկեղեցին 1401 թ.—Բժշկեան, Պատմ. Անւոյ 320> Նոտարք 12։—Տես նախորդը։*

— 393. **Ստեփաննոս** *կրոնավոր, հարեղբայր Յովհաննէս Հռետոր վարդապետի, միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի, 1402 թ.—Նոտարք 17։—Այլ է № 409։*

— 394. **Ստեփան** *արեղա, հիշատակագիր, կամ երկրորդ ստացող Վեննետկի է Ճառընտրի, 1402 թ.—Ձեռ. Վեննետ. Բ. 166։*

— 395. **Ստեփաննոս** *քահանա, որդի Գրիգոր քահանայի՝ հարեղբոր Յովհաննէս քահանայի, որ Խիզանում օրինակեց մի Աւետարան 1402 թ.—Ձեռ. Վասպ. 289։*

— 396. **Ստեփաննոս** *քահանա, հայր Ղազար երեցի, որ Յովհաննէս Աշեցուն գրել տվեց մի Աւետարան, 1402 թ.*—Manus. brit. mus. *38 բ։*

— 397. **Ստեփաննոս** *քահանա, որդի Մելքիսեթ քահանայի. մայրն է Տիրանց. գրիչ. Խնձուրուտ վանքի վանահայր Մովսէս քահանայի առաջարկությամբ գրել է մի Աւետարան՝ Խիզան քաղաքում, 1404 թ.—Նոտարք 23, Ձեռ. Վասպ. 292։*

— 398. **Ստեփաննոս** *կրոնավոր, գրել տվեց մի Ճառընտիր Ստեփաննոս գրչին. տեղն ու թիվը հայտնի չէ. բայց այլուստ գիտենք որ այս գրիչը բնակվում էր Ոշտունեաց Տշող գյուղում, ուր գրել է մի Տօնական 1415 թ.—Նոտարք 22։—Հմմտ. № 412։*

— 399. **Ստեփաննոս** *կրոնավոր, ազգական Կիրակոս քահանայի, որ Դանիէլ սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. 277։*

— 400. **Ստեփաննոս**, *խնդրեց Առաքել Բաղիշեցուց զանազան տաղեր (1404 թ. կամ ավելի ուշ).—Տաշեան, Ցուց. 286։*

— 401. **Ստեփաննոս** *քահանա, Կիլիկիոյ մեծ արտագաղթի*

առաջնորդներից մին՝ դեպի Կիպրոս կամ Իտալիա, 1404 թ.— Սիսուան 542 բ, Ազգապ. 2007։

— 402. **Ստեփաննոս** եպիսկոպոս, որ Ներսէս վարդապետի և Դուրիթ (№ 200) եպիսկոպոսի հետ Խիզանի Գամաղիէլ վանքի առաջնորդն էր 1407 թ.—Նոտարք 26։—Նույն է № 453։

— 403. **Ստեփաննոս** երեց, որդի ավագերեցի, ողորմած և աղքատասեր մարդ. մեռել է 1407 թ.—Հայապ. 543։

— 404. **Ստեփաննոս** Բերկրեցի, աշակերտ Սարգիս վարդապետի Սուխարայ վանքի, ապա Գրիգոր Տաթևացու (†1410 թ), երբ նա ուսուցանում էր Մեծոփի վանքում. դասընկեր Թովմա Մեծոփեցու.—Մեծոփ. 52, Ազգապ. 1999։

— 405. **Ստեփաննոս** Դաւրիժեցի (տպված Դահավրէժու), աշակերտ Գրիգոր (†1410 թ) Տաթևացու.—Մեծոփ. 51 (կոչում է «Ստեփաննոս ի Թաւրիզոյ»). Յայսմ. ապր. 27։

— 406. **Ստեփանոս** Աւագերիցյանց, գրիչ. Սխում, Կոստանդին քահանայի պատվերով օրինակեց Մանրուսմունքը 1412 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 153 բ։

— 407. **Ստեփաննոս** երաժիշտ, որդի Հնդուի, ուսուցիչ Թադէոս քահանայի, որ Արճէշի Մեծոփայ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1412 թ.—Ջեռ. Դաղեան, Բ. 30 բ։

— 408. **Ստեփաննոս** վարդապետ, կոչված «Փիր». Ուշտունեաց Բախվանից գյուղից էր. աշակերտ Յովհան Որոտնեցու։ Վարդապետական քարոզությամբ շատ տարիներ ման եկավ Փոքր-Ասիայում, երկու անգամ ուխտի գնաց Երուսաղէմ, ապա եկավ իր սեփական գավառը՝ գյուղերին ու վանքերին շատ նվերներ բերելով (շուրջառ, սկիհ և գրքեր)։ Տասնից ավելի եկեղեցի շինեց Ուշտունեաց երկրում։ Հետո իրեն օգնական առնելով Մկրտիչ, Եփրակոս, երկու Յովհաննէս, Սիմէոն և Գրիգոր անունով կրոնավորներին, նստավ Ս. Յակոբ վանքը, որ շուրջ 200 տարի է ավերված էր։ Նորոգեց և վերաշինեց Գրիգոր և երկու Յովհաննէս կրոնավորների ճարտարապետությամբ՝ 1412 թ։ Մի քանի տարի այս վանքում մնալուց հետո, վանքը հանձնեց իր աշակերտ Սիմէոնին և նորից գնաց Երուսաղէմ, ուր և մեռավ։—Նոտարք 41, 45, 87, 137 (Ս. Յակոբի վանքը կոչում է նաև Կապուտկողայ վանք. տես և Սիմէոն վարդապետ № 159)։ Վանքի շինության պատմությունը ըստ Թովմա Մինասենցի հիշատակարանի՝ տես Նոտարք 136—9։—Հմմտ. № 366։

— 409. Ստեփաննոս, *միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի, հիշված 1402 և 1413 թ.—Նոտարք 17, 42, 43. (տարբեր է № 393)։*

— 410. Ստեփաննոս *եպիսկոպոս, Խիզանի Ս. Խաչ վանքում օրինակեց Գր. Տաթևացու Քարոզգիրքը 1414 թ.—Ձեռ. Կարին. 2> Նոտարք 44։*

— 411. Ստեփաննոս *վարդապետ, միաբան Տէր Յունկան որդու վանքի, 1414 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 62 ա։ — Տես № 425։*

— 412. Ստեփաննոս *ոմն, որ Տշող գյուղում (Ռշտունիք), Ստեփաննոս քահանային գրել տվեց մի Ճառընտիր 1415 թ.—Նոտարք 45։—Տես № 398։*

— 413. Ստեփաննոս *գրիչ. օրինակեց Աւետարանը Նարեկայ վանքում 1415 թ.—Բարխուտ. Աղվանից երկ. 247։*

— 414. Ստեփաննոս *աբեղա, Թուղթ կոկող՝ Կոճերաց վանքում, 1415 թ.—Լմբ. առակ.* XI։

— 415. Ստեփաննոս *քահանա, մերձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ օրինակեց Աւետարանը 1416 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։*

— 416. Ստեփաննոս *քահանա, այլ, անդ։*

— 417. Ստեփաննոս *(անձի ձաղկանքով գրված* Սըտեփաննոս*) աբեղա, որդի Յովանէսի, մայրն է Ազիզ։ Խիզանում գրել տվեց մի Աւետարան, 1417 թ.—Ձեռ. Վասպ. 304—5։*

— 418. Ստեփաննոս *քահանա, կինն է Մինայ. ծնողներն են Կարապետ (№ 202) քահանա նշանավոր գրչի, որ Վանում օրինակեց Աւետարանը 1418 թ և այլ գրքեր։—Նոտարք 57, Ձեռ. Վասպ. 309 (տես և Ձեռ. Վասպ. 340—341, 369)։*

— 419. Ստեփաննոս, *մորեղբայր Մկրտիչ քահանայի (№ 88)։ Բերկրի՝ քաղաքի տանուտերն էր իր եղբայր Մարտիրոսի հետ՝ 1418 թ.—Նոտարք 55։*

— 420. Ստեփաննոս, *առաջնորդ Մոկաց Ս. Գէորգ անապատի. հիշված է 1418 թ.—Նոտարք 54։*

— 421. Ստեփաննոս, *որդի տանուտեր Յովհաննէսի, որ ստացավ Վանում մի Մաշտոց 1418 թ.—Տաշեան, Ցուց. 383 բ։*

— 422. Ստեփաննոս *քահանա, որդի Գրիգոր քահանայի. մայրն է Խաթուն մելէք. եղբայրներն են Քոչբէկ և Առաքել (երկուսն էլ սարկավագ, ապա եղան քահանա և Քոչբէկը կոչվեց Յովհաննէս). հորեղբայրն է Մարտիրոս կրոնավոր նահատակ։ Ռշտունեաց Տշող գյուղում գրել է մի Տօնական 1404 թ, մի Յայսմաւուրք 1410 թ, մի Ճառընտիր 1415 թ, մի Մաշտոց 1417 թ, մի Ճառընտիր ևս 1419 թ. և մի ուրիշ Ճառընտիր էլ ան-*

թվականը.—Նոտարք 21, 22, 38, 44, 45, 50, 59։—Արդարև բեղմնավոր գրիչ։

— 423. Ստեփաննոս, կինն է Մոչան. ծնողներն են Յովհաննէս քահանայի, որ Ռշտունեաց Տշող գյուղում գրել տվեց մի Ճառընտիր 1419 թ.—Նոտարք 59։

— 424. Ստեփաննոս գրիչ, Նարեկի վանքում օրինակել է մի Աւետարան՝ Շնորհաւոր տիկնոջ համար, 1419 թ.—Ձեռ. Վասպ. էջ 319։

— 425. Ստեփաննոս, միաբան Բերկրիի Տէր Յուսկան որդի վանքի. հիշված է 1420 թ.—Նոտարք 61։ — Տես № 411։

— 426. Ստեփաննոս, որդի Վարդիշխանի. հիշված է մի Հաւաքածոյի հիշատակարանում, 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 427. Ստեփաննոս, ամուսին Ոսկեհեր տիկնոջ, երախտավոր Ս. Թորոս վանքի. 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 428. Ստեփաննոս եղբայր Վարդի, հիշված է նախորդ Հաւաքածոյի հիշատակարանում 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 429. Ստեփաննոս քահանա, որդի Յովհաննէսի, մայրն է Աւագ տիկին. եղբայրներն են Աւետիս վարդապետ և Ներսէս կրոնավոր. գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Ծերուն քահանայի համար՝ 1420 թ.—Նոտարք 63։

— 430. Ստեփանոս վարդապետ, առաջնորդ Գառրկայ վանքի (Ոստան), 1420 թ.—Ձեռ. Վասպ. 324։

— 431. Ստեփանոս, երեք այ միաբաններ նույն վանքի, 1420 թ.—անդ 324։

— 432. Ստեփաննոս, որդի Ամիրբէկի և եղբայր Իգիտ (=Գոսկ) կրոնավորի, որ Նարեկ գյուղում, Թաթարբէկի համար օրինակեց Աւետարանը, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 327, Նոտարք 62։

— 433. Ստեփաննոս կրոնավոր, Վանում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Նոտարք 66։

— 434. Ստեփանոս քահանա, հորեղբայր Ստեփանոս կրոնավորի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան 1421 թ.—Ձեռ. Վասպ. 340։

— 435. Ստեփանոս կուսակրոն աբեղա, միաբան Գառուագրակ վանից, 1421 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 313։

— 436. Ստեփաննոս «սպասաւոր բանի», մերձավոր Կարապետ երեցի, որ Վանում օրինակում էր Աւետարանը, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 342։

— 437. Ստեփանոս «դեռաբոյս ծաղիկ» որդի Յովհաննէս

քահանայի, որին ի վայելումն Կարապետ երէցը գրեց Վանում մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 342։

— 438. Ստեփանոս կրոնավոր, որդի Թումայի և Շնոհուր տիկնոջ. գովաբանված է և կոչված «ուսուցիչ մեր». իր աշակերտ Կարապետ երեց գրչին հանձնարարեց գրել մի Աւետարան, Վան քաղաքում, 1421 թ. բայց ավարտին չհասնելով «ոչ ժամանեաց աչօք իւրովք տեսանել զկատարումն», մեռավ նույն 1421 թ.—Ձեռ. Վասպ. 340—341։

— 439. Ստեփաննոս, որդի Վարդանի և եղբայր Թումայ կրոնավորի, որ Ծպատ անապատում օրինակել տվեց Աւետարանը՝ 1421 թ.—Ձեռ. Վասպ. 331։

— 440. Ստեփանոս, որդի Թովմա քահանայի՝ հոգևոր հոր և վարպետի Յոհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Աւետարան 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 441. Ստեփաննոս, կինն է Աւթա, ծնողներն են Յոհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Աւետարան 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347—8։

— 442. Ստեփանոս, նորաբողբոջ պատանեկ, եղբորորդի Յոհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347։

— 443. Ստեփանոս կրոնավոր. միաբան Բերկրիի Եղավանք ուխտի 1422 թ.—Ձեռ. Վասպ. 349։

— 444. Ստեփաննոս հայրապետ (վանահայր), հիշված է Բերկրիի Եղավանք ուխտում 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348, Նոտարք 70։

— 445. Ստեփաննոս, մերձավոր Մարթայի՝ հոգևոր մոր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիում գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 446. Ստեփաննոս եպիսկոպոս Աղուանից կաթուղիկոսության. հիշված է 1423 թ.—Նոտարք 72։

— 447. Ստեփաննոս վարդապետ Գամաղիէլի վանքի. Խիզանցի Պետրոս քահանայի հետ միասին ուրացան հավատքը. բայց ապա զղջալով ներկայացան Խիզանի դատավորին՝ իրենց սխալը հայտնելու. երկուսն էլ նահատակվեցին 1424 թ.—Նոր վկ. 245—262 > Ազգապ. 2057։

— 448. Ստեփաննոս Սորբեցի. երիտասարդ հասակում ուրացել էր հավատքը. լսելով սույն Ստեփաննոս վարդապետի և Պետրոսի ուրացումը, դարձը և նահատակությունը, ինքն էլ

*դարձի եկավ և նահատակվեց 1424 թ.—Նոր վկ. 257—9.. Ազգապ. էջ 2058։*

— 449. Ստեփաննոս *խոճա, կինն է Մելիքայ խաթուն, որդին է պարոն Մկրտիչ. Տրապիզոնում հող է գնել և կառուցել այնտեղ Ամենափրկիչ վանքի եկեղեցին, հունաց Կիր Ալեքս թագավորի ժամանակ, 1424 թ.—Արձ. Բժշկեան, Պատմ. Պոնտոսի 83> Նոտարք 75։*

— 450. Ստեփանոս *վանահայր Ագուլիսի Թովմա առաքեալ վանքի 1424 թ.—Սիսական 326 բ։*

— 451. Ստեփանոս, *որդի Խաթունի, որ Աղթամարում, Թումա արեղային գրել տվեց մի Աւետարան 1425 թ.—Ձեռ. Վասպ. 352։*

— 452. Ստեփանոս, *մյուս որդի նույն Խաթունի, անդ 352։*

— 453. Ստեփաննոս, *եպիսկոպոս Խիզանի Գամաղիէլ վանքի, հիշված 1427 թ.—Նոտարք 83։—Նույն է № 402։*

— 454. Ստեփաննոս, *միաբան Խիզանի Գամաղիէլ վանքի 1427 թ.—Նոտարք 83։*

— 455. Ստեփաննոս, *Երզնկայի վերին Թլկան գյուղից, հայր Ղազարի, որ գնեց մի Աւետարան և ընծայեց Ս· Սարգիս եկեղեցուն, 1427 թ.—Նոտարք 84։*

— 456. Ստեփաննոս *միաբան Պատրկայ վանքի 1428 թ.—Նոտարք 88։*

— 457. Ստեփան *խոջա, դամբանը գտնվում է Դարբանդի Պօղոս-Բուլաղ գերեզմանատան մեջ 1428 թ.—Բարխուտ. Աղվ. երկ. 109։*

— 458. Ստեփաննոս *որդի Սաղաթիէլի և եղբայր տանուտեր Մկրտչի, որ ստացավ մի Ճառընտիր, Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583—4։*

— 459. Ստեփանոս, *որդի Ամիր-Սարգիսի և եղբայր Էվատշայի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան 1428 թ.—Ձեռ. Վասպ. 355։*

— 460. Ստեփաննոս *առաջնորդ Այրիվանքի (Գեղարդ), 1429 թ.—Այրարատ 350։*

— 461. Ստեփան *Կրակացի* (de Grak), *առաջնորդ Հալէպի. գրեց մի ժողովածու 1429 թ.—Սիւրմէեան,* La vie et la cult. *էջ 17։*

— 462. Ստեփաննոս *կրոնավոր, որդի Թումայի. մայրն է Շնորհաւոր. պապը՝ Խոցգեղ. Թվի թե միաբան էր Խոսրովայ*

*վանքում, ուր Վարդան արեղային գրել տվեց մի Աւետարան և նվիրեց վանքին, 1430 թ.—Նոտարք 94։*

— 463. Ստեփաննոս *քահանա, որդի Սիմէոնի. մայրն է Աղէկ. ստացավ մի Աւետարան 1430 թ։—Ձեռ. Հալէպի, Ա. 70—71։*

— 464. Ստեփաննոս *կրոնավոր, եղբորորդի Պետրոս № 115 արքեպիսկոպոսի, որ տեր (1430 թ)։—Ձեռ. Վասպ. 134—5։*

— 465. Ստեփաննոս *եպիսկոպոս Վայոց Ձորի, օրինակեց Մեկնութիւն Առակաց Սողոմոնի, 1431 թ.—Սմբատեանց, Երնջակ 316 (մեծ ցուցակ, էջ 7)։*

— 466. Ստեփանոս, *որդի Ուֆիկի և Թաճխաթունի. իր երկու եղբայրների՝ Գրիգորի և Յորդանանի հետ միասին Թումայ կրոնավորին գրել տվին մի Աւետարան, Ուրանց գյուղում, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364, 366։*

— 467. Ստեփաննոս *(ամիրա կամ մելիք), եղբայր Աղթամարի Դաւիթ Գ (1393—1433) և հայր Զաքարիա Գ (1434—1464) կաթողիկոսների. անորոշաբար հիշված է մի խաչքարի վրա (Ակինեան, Գւզնգիրք 86) և Հաւաք. 41—42։*

— 468. Ստեփանոս, *կինն է Զմրութ. ծնողներն են Յովանէս գրչի, որ Մոկաց Սուրբկանց գյուղում գնեց մի հին Աւետարան 1433 թ.—Ձեռ. Վասպ. 204։*

— 469. Ստեփանոս, *որդի Լէանոսի և եղբորորդի նույն Յովանէս գրչի.—անդ 204։*

— 470. Ստեփաննոս *բրուտ տանուտեր, որդի Թումայի, մայրն է Մրուաթ, կինն է Մելէք խաթուն, գրել տվեց Կարապետ քահանային մի Աւետարան, Վան 1435 թ.—Ձեռ. Վասպ. էջ 369, 370։*

— 471. Ստեփաննոս *որդի Արիստակէս երեցի, որ ստացավ մի Աւետարան 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 բ։*

— 472. Ստեփաննոս *վարդապետ. գրիչ. օրինակել է Ոսկեբերանի Մեկնութիւն չորեքտասան թղթոցն Պօղոսի, 1435 թ.—Ձեռ. Կարին. 162։—Նույն է՝*

— 473. Ստեփանոս, *գրիչ. աշակերտ Թովմա Մեծոփեցու. Մեծոփայ վանքում օրինակել է Մեկնութիւն թղթոցն Պօղոսի, 1435 թ.—Շողակաթ 213։*

— 474. Ստեփաննոս *Որոտնեցի, հիշատակագիր Իլվովում, 1435 թ.—Կամենից 161, Սիսական 220 ա։*

— 475. Ստեփաննոս *վարդապետ, հոգևոր եղբայր Թովմա Մեծոփեցու. որի հետ և ամբողջ ժողովրդի հետ միասին փախան*

Զաղաթայի արշավանքի ժամանակ դեպի Բաղէշ, ուր հյուրասիրվեցին Բաղէշի Ստեփաննոս եպիսկոպոսի մոտ՝ երեք տարի (1435 թ)։—Մեծոփ. 109։

— 476. Ստեփաննոս երեց, գրիչ. Բաղէշում, տանուտեր Թումայի խնդրանոք օրինակեց Ցայսմաւուրքը 1436 թ.—Նոտարք 109։

— 477. Ստեփաննոս, որդի Տէրաւագի և եղբայր տանուտեր Ցովհաննէսի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։

— 478. Ստեփանոս քահանա Կրծանեցի (Տփղիսի մոտիկ Կրծանիս գյուղից), 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 ա։

— 479. Ստեփաննոս սարկավագ, որդի Կարապետ քահանայի. հիշված է 1437 թ. (Նոտարք 112). ապա եղավ քահանա՝ Ազարիա (№ 7) անունով, որ տես։

— 480. Ստեփանոս, որդի Յովանէսի. Տրապիզոնում Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1437 թ. (Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 55)։

— 481. Ստեփանոս կթղ. Աղթամարի հիշված է 1437 թ.—Ձեռ. Վասպ. 380։ Հմմտ. № 312։

— 482. Ստեփանոս, ազգական Ստեփաննոսի, որ Տրապիզոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1437 թ.—Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 55։

— 483. Ստեփաննոս եպիսկոպոս Տաթևի կամ Սիւնեաց. որդի պարոն Սմբատի և եղբայր Պէշգինէի Օրբելեանց. թոռն Իւանէ Օրբելեանի։ Գնաց Սիս և այնտեղից բերեց մի Ցայսմաւուրք, որ ապա օրինակեց Այրիվանքի առաջնորդ Սիմէոն վարդապետը (†1428 թ)։ Տաթևում արտագրել է Գր. Տաթևացու Քարոզգիրքը (1422 թ)։ Նույն թվին գնաց Վրաց երկիրը՝ իր մոր տեսության և այնտեղ էլ մեռավ։ Արդեն մեռած էր «1438 թ»։—Մեծոփ. 118. Ջամչ. Գ. 471. Սիսական 241։

— 484. Ստեփանոս, որդի Սատաղայի և Շահտիկնոջ, թոռն Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում Դաւիթ գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243—4։

— 485. Ստեփաննոս հայրապետ, որդի Կոստանդին ավագերեցի և եղբայր Թորոս քահանայի. առաջնորդ Մելիտինէի Ս. Գրիգոր վանքի 1438 թ.—Թորոս աղբ. Բ. 453։

— 486. Ստեփաննոս եպիսկոպոս, որդի Յակոբ ճգնավոր վարդապետի և աշակերտ Գրիգոր Խլաթեցու. երկուսով միասին Թա-

դեցին նահատակ Գրիգոր Ծերենց Խլաթեցու մարմինը՝ Ցիպնայ վանքում, «1426 թ». ապա նաև Յովհաննէս մանուկ Խլաթեցուն 1438 թ.—Մեծոփ. 43, Նոր վկ. 280, 290, 298. Ազգապ. 2059։

— 487. **Ստեփանոս** որդի Սահակ երեցի՝ մերձաւորի Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում գրել տվեց մի ճաշոց, 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 244։

— 488. **Ստեփաննոս** բժիշկ. արդեն մեռած էր 1438 թվին.—Տաշեան, Ցուց. 740 բ։

— 489. **Ստեփանոս** քահանա Կաֆայի, որին ի մէջի այլոց գրեց Կոստանդին կաթուղիկոսը՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ 1438 թ.—Գալճեան, 87։

— 490. **Ստեփաննոս**, ուսուցիչ Յովհաննէս գրչի. թվականն անհայտ, բայց 1112—1439 թվերի միջև—յիշատ. Զարբ. Թրգմ. էջ 613։

— 491. **Ստեփաննոս** քահանա, կինն է Փաշա. ծնողներն են Կարապետ գրչի, որ Ոստանում օրինակեց ճաշոցը 1439 թ.—Նոտարք 119։

— 492. **Ստեփաննոս** վարդապետ, աշակերտ Հերմոնայ վանքի մեծ վարդապետ Յովհաննէսի, անդամ Էջմիածնի մեծ ժողովի 1441 թ.—Նոտարք 122։

— 493. **Ստեփանոս** կրոնավոր, որդի Պարոնի և եղբայր տանուտեր Մկրտիչի, որ Աղթամարում, Դանիէլ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1441 թ.—Ձեռ. Վասպ. 382—3։

— 494. **Ստեփանոս** կրոնավոր, որդի Դանիէլ քահանայի (№ 30). մանրամասն տես **Նամախաթուն**. հիշված է 1433, 1436, 1441 թ.—Ձեռ. Վասպ. 366, 383, 375։

— 495. **Ստեփաննոս** աբեղա, գրիչ. օրինակել է Աւետարանը՝ Անկիւրիոյ Ս. Աստուածածին վանքում, 1441 թ.—Բիւրակն 1900, 103 ա։

— 496. **Ստեփաննոս**, եղբայր Ոնոփրիոս քահանայի, հօրեղբայր Մկրտիչ քահանա Արճիշեցու, որ գրել տվեց մի ճաշոց, 1441 թ.—Թորոս աղբ. Ա. 222։

— 497. **Ստեփան** եպիսկոպոս, մօրաքեռորդի նույն Մկրտիչ քահանա Արճիշեցու, որ գրել տվեց մի ճաշոց, 1441 թ.—Թորոս աղբ. Ա. 223։

— 498. **Ստեփաննոս** եպիսկոպոս Բաղէշի. երբ Ջաղաթայի երկրորդ արշավանքի ժամանակ հայ ժողովուրդը փախավ դեպի Խլաթ, Խոյ, Բերկրի, Արծկէ և Արճէշ, և այնտեղից էլ Բաղէշ

*ապաստանեց, այս Ստեփաննոսը հյուրընկալեց նրանց և պահեց ու պահպանեց 3 տարի։ Փախստականների մեջ էին նաև Թովմա Մեծոփեցին, որ պատմում է այս դեպքը, և նրա հոգևոր եղբայր Ստեփաննոս վարդապետը (1435 թ), որից էլ Նոտարք 108։ Նույնը հիշվում է իբրև առաջնորդ Բաղէշի 1438 թ. (Նոտարք 117)։ Իբրև Թղթակից անդամ հիշված է Էջմիածնի մեծ ժողովին 1441 թ. (Մեծոփ. 109 և Մեծոփ. յիշ. ա)։ Վերջին հանգամանքը թույլ է տալիս ինձ միացնելու № 367 Ստեփաննոս վրդ. Արճիշեցու հետ, որ հող էր տանում Լէնկթիմուրից փախած դժբախտներին «1387 թ»։ Եթե այս թվին վարդապետը 27 տարեկան լիներ, ծնունդը կընկնի 1360 թ. հետևաբար 1441 թվին կլինի 81 տարեկան և այս պատճառով է որ ծերունին չկարողացավ ներկա լինել ժողովին և թղթով հայտնեց իր համաձայնությունը։*

— 499. Ստեփաննոս *վարդապետ ի տանէն Սիւնեաց, անդամ Էջմիածնի մեծ ժողովի, 1441 թ.—Մեծոփ. յիշատ. ա։*

— 500. Ստեփաննոս *վարդապետ յԾղեղեաց. հակառակորդ Կիրակոս Վիրապեցի կաթուղիկոսի (1441 թ).—Թվի թե նույն է նախորդի հետ։—Մեծոփ. յիշատ. գ։*

— 501. Ստեփաննոս *եպիսկոպոս, «տեղապահ Սիւնեաց աթոռոյն, ի յաղատաց», անդամ Էջմիածնի մեծ ժողովի, 1441 թ.—Մեծոփ. յիշ. ա։*

— 502. Ստեփաննոս *ճգնավոր յԱղթամարայ կողմանէն 1441 թ.—Մեծոփ. յիշ. բ։*

— 503. Ստեփաննոս *երեց Տայշող գյուղի. գրիչ. օրինակեց Մեսրոպ երեցը, Զենոբ պատմիչը, Յովհան Մամիկոնեան են, 1441 թ. (Ձեռ. Էջմ. № 1755).—Տաշեան, ժղվծ. առ. Վրդն. 189, Պատմ. Տարօնոյ, Երևան 1941, էջ* XV *(հրտր. Աշ. Աբրահամյանի)։—Հմմտ. № 598։*

— 504. Ստեփաննոս *վարդապետ Արծկէու, անդամ Էջմիածնի մեծ ժողովի 1441 թ. (Մեծոփ. յիշ. ա). կոչվում է Ստեփաննոս արքեպիսկոպոս, առաջնորդ Արծկէի, 1442 թ.—Նոտարք 129։*

— 505. Ստեփաննոս *վարդապետ, ծեծեց Եաղուբ բէկի առաջ մի տղայի, որ պաշտպանում էր Կիրակոս Վիրապեցուն 1443 թ.—Դրնդ. 315։*

— 506. Ստեփանոս *մելիք, կինն է Խաթուն Մելէք. որդիքն են Տուղշահբէկ, Դովլաթշահ և Ասլանբէկ, որոնց բոլորի հիշատակին՝ Աղթամար կղզում մի խաչքար է կանգնեցրել Զաքարիա կաթուղիկոսը 1444 թ.—Արձ. Ազգագր. հանդ. Ի, 211։*

— 507. Ստեփաննոս *կրոնավոր, որդի նշանավոր գրիչ Դանիէլ (№ 30) քահանայի. հիշված է 1444 թ.—Նոտարք 135։*

— 508. Ստեփաննոս *քահանա, կինն է Արղունմելէք. ծնողներն են Առաքել քահանայի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Ճաշոց 1444 թ.—Նոտարք 134։*

— 509. Ստեփաննոս, *որդի նույն Առաքել քահանայի. նախորդի թոռն է.—Նոտարք 135։*

— 510. Ստեփանոս *որդի Յովանէս քահանայի և հայր Կարապետ քահանայի, որ օրինակեց Գանձարանը՝ Ոստանում, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։*

— 511. Ստեփանոս *եպիսկոպոս Խարբերդի, հիշված 1435 և 1444 թ.—*Manus. brit. mus. *121 բ,* Manus. bibl. nat. *էջ 101։*

— 512. Ստեփաննոս *խոջա, տանուտեր Գաւաշ գյուղի. իր ընկերների հետ օգնեց Ս. Վարդան զորավար վանքի վերաշինության 1444 թ.—Ձեռ. Վասպ. 389, Նոտարք 46։*

— 513. Ստեփաննոս *«սրբահոգի», մին է վեց միաբաններից Գաւաշի Ս. Վարդան զորավար վերաշինված վանքի 1444 թ.—Ձեռ. Վասպ. 389, Նոտարք 46։*

— 514. Ստեփանոս *«հայրապետ», միաբան Ոստանի Պոլկի վանից. արդեն մեռած էր 1444 թվին.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։*

— 515. Ստեփաննոս *կամ Մելիք-Ստեփան, հայր Զաքարիա Գ (†1464) կաթուղիկոսի Աղթամարի. հիշված է մի արձանագրության մեջ՝ 1444 թ.—Ակինեան՝ Գւզնգիրք 86, 108։*

— 516. Ստեփանոս *կրոնավոր, միաբան Ոստանի Պոլկի վանից. պատճառ եղավ, որ Կարապետ քահանան օրինակի Գանձարանը, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։*

— 517. Ստեփաննոս *հայր Թուրվանդի՝ կնոջ Հազարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։*

— 518. Ստեփաննոս *քահանա, մի Աւետարան նվիրեց Սորի գյուղի Ս. Քրիստափոր եկեղեցուն, 1445 թ.—Նոտարք 145։*

— 519. Ստեփաննոս *կրոնավոր, միաբան Գամաղիէլի վանքի 1445 թ.—Նոտարք 145։*

— 520. Ստեփաննոս, *որդի Գորգի Մելիքի, որ էր իշխան Աղիովիտի. Թովմա Մեծոփեցի պատմագրի եղբորորդին է, որ հիշված է 1445 թ.—Նոտարք 147։*

— 521. Ստեփաննոս *կրոնավոր, որդի Ամիրմէլիքի, որ էր*

ուսուցիչ Յովհաննէս քահանայի՝ որդւոյ Գորգի Մելիքի՝ եղբօր Թովմա Մեծոփեցի պատմագրի. հիշված է 1445 թ.—Նոտարք 147։

— 522. Ստեփաննոս, այլ որդի նույն Ամիրմելիքի. արդեն մեռած էր 1445 թ.—Նոտարք 147։

— 523. Ստեփաննոս Գաւաշեցի, միաբան Ռշտունեաց գավառի Ս. Յակոբ վանքի 1445 թ.—Նոտարք 139։

— 524. Ստեփաննոս, որդի Հայրապետ քահանայի և Նաս խաթունի. գրիչ. Բաղէշում օրինակեց Յայսմաւուրքը Մկրտիչ կրոնավորի պատվերով 1446 թ.—Նոտարք 151—2։

— 525. Ստեփաննոս եպիսկոպոս Սիւնեաց, որդի Իւանէի՝ տեառն Որոտան. հիշված է 1447 թ.—Սիսական 218 ա։

— 526. Ստեփաննոս արքեպիսկոպոս Գողթան, որդի Աղպուղայի. մայրն է Խուանդ խաթուն. հաջորդեց իր քեռի Տէրունական եպիսկոպոսին. գրել տվեց Մատթէոս երեցին մի ընդարձակ Տօնական, Ագուլիս 1447 թ.—Ձեռ. Թաւր. 120—3, Հայունի, Կարեւոր խնդ. 269։

— 527. Ստեփաննոս, որի անունով մի արձանագրություն կա Ռշտունեաց գավառի Գանձակ գյուղի ծովափի Ս. Գէորգ եկեղեցու բարավորի վրա, Մկրտիչ անուն անձի հետ՝ 1447 թ.—Նոտարք 155։

— 528. Ստեփանոս, հայր Թովմայի, Գրիգորի և Ղազարի, որոնք Աղնայ գյուղից էին և Մոկաց Փառավանք գյուղում, Իսրայէլ գրչին գրել տվին մի Աւետարան, 1447 թ.—Ձեռ. Վասպ. 397, 400, Նոտարք 156։

— 529. Ստեփաննոս գրիչ. օրինակեց Հարանց վարքը 1449 թ. (Ձեռ. Վեննա. № 806).—տես Ցուցք. ներած. էջ ծբ։

— 530. Ստեփանոս, որդի Խաչատուրի և եղբայր Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ մի Աստուածաշունչ 1449 թ. երբ Ստեփանոսը մեռած էր.—Ձեռ. Վեննա. Ա. 115։

— 531—2. Ստեփաննոս կրոնավոր, երկու համանուն միաբաններ Խլաթի Ս. Յովհաննէս եկեղեցու, 1450 թ.—Նոտարք 164։

— 533. Ստեփաննոս կրոնավոր, գրիչ. մահդասի Պօղոսի պատվերով օրինակեց Աւետարանը՝ Ջերմաձորի Փոքր Ակոռի վանքում, 1451 թ.—Նոտարք 168։

— 534. Ստեփաննոս քահանա, որդի Յովհաննէս քահանայի և եղբայր Մովսէս աբեղայի, որ Պղնձայգոյ աւագ անապատում օրինակեց Աւետարանը 1451 թ.—Ձեռ. Վասպ. 408։

— 535. Ստեփաննոս, կինն է Մարթա. ծնողներն են Փա-

*շայի, որ Վանում, իր նահատակ որդու և իր կարօտամահ ամուսնու հիշատակին մի Աւետարան գրել տվեց Վան 1451 թ.—Ձեռ. Վասպ. 411։*

— 536. **Ստեփանոս**, *հայր Կարապետ Մանկարօնի՝ փեսայի Փաշայ տիկնոջ, որ իր որդիների և իր ամուսնու հիշատակին մի Աւետարան գրել տվեց Վանում, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։*

— 537. **Ստեփաննոս**, *«որ կատարեցաւ յանօրինաց», հայր մահտեսի Պօղոսի, որ Ջերմաձորի Փոքր Ակոռի վանքում օրինակել տվեց Աւետարանը 1451 թ.—Նոտարք 168։*

— 538. **Ստեփաննոս** *քահանա, կինն է Աղութ խաթուն (№ 6). ծնողներն են Մելիք խաթունի, որ Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Նոտարք 171։*

—539. **Ստեփաննոս** *գրիչ. օրինակել է մի Աւետարան տանուտեր Խաչատուրի համար 1453 թ. (ուրիշ ոչինչ հայտնի չէ)։—Ձեռ. Վասպ. 419։*

— 540. **Ստեփանոս** *քահանա, հայր Կարապետ գրչի, որ Յովանէս տանուտիրոջ համար գրեց մի Ճառընտիր, Վանում, 1453 թվից քիչ առաջ.— Հրատ. Ազաթ. 1909 թ. յոջ. էջ ծ։*

— 541. **Ստեփաննոս** *քահանա, Բաղէշում, Թորոս Դրազարկցու գրած ընտիր օրինակից արտագրել է Աւետարանը, 1454 թ.—Թորոս աղբ. Բ. 445>Նոտարք 174։*

— 542—3. **Ստեփաննոս**, *երկու համանուն միաբաններ Վարագայ վանքի 1454 թ.—Նոտարք 176։*

— 544. **Ստեփանոս**, *հայր Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ.=ՀԱ 1937, 580։*

— 545. **Ստեփաննոս**, *պարոն, մեծ հայր Խաչատուր քահանայի, որ իր որդու՝ Դաւիթ քահանայի համար օրինակեց Աւետարանը՝ Արճէշ 1455 թ.—Նոտարք 177։*

— 546. **Ստեփաննոս**, *միաբան Ս. Փրկիչ վանքի, օգնում էր իր հոգևոր եղբայր Թադէոս սարկավագին, երբ սա օրինակում էր Աւետարանը Երուսաղէմի Ս. Սաբա վանքում, 1455 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 59։*

— 547. **Ստեփաննոս**, *հանգուցյալ որդի Թումայի՝ եղբոր տանուտեր Մանկտաւագի, որ Մցի գյուղում գնեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։*

— 548. **Ստեփանոս**, *միաբան Վերի Նորավանից 1456 թ.—Հրատ. Ազաթ. 1909 թ. յոջ. էջ ԽԶ, Զարբ. Թրգմ. 727։*

— 549. Ստեփանոս, հիշվում է իր միաբանակիցների հետ՝ իբրև միաբան մի վանքի, որի անունը չէ հիշատակված, 1456 թ.— Ձեռ. Վասպ. 425։

— 550. Ստեփանոս, իր միաբանակիցների հետ հիշվում է իբր անտես նույն վանքի, որի անունը չէ հիշատակված, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

— 551. Ստեփաննոս Ղարիպշահ, մահտեսի, որդի Աստուածատուրի, մայրն է Խաթունմելիք. եղբայրներն են Ազատշահ, Խուդաբաղշ սարկավագ և Խդրշահ. որդիներն են Փայօշ և Ջաքար (թէ՞ սրանք Ստեփաննոսի մորաքրոջ՝ Գոհարմելէքի որդիներն են)։ Հեզ ու բարեպաշտ մարդ էր։ Երբ Քուրդ Հասանը Մշոյ դաշտը ավերեց և շատ գերի տարավ, Ստեփաննոսը բաշխեց իր ամբողջ հարստությունը և գերիներին փրկանքով ազատեց։ Եկեղեցու համար գնել է շատ սպասներ և թանկագին գրքեր։ Ինքն է որ Լիմ կղզում Ղազար դրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք, որ շարունակվեց Սուխարայ և Արգելանի վանքերում, սկսելով 1452 թ. և վերջացավ 1457 թ.—Ձեռ. Թաւր. 102—5։

— 552. Ստեփաննոս որդի Աղերի. մեռել է 1458 թ. ավելին տես Փաշամելէք։—Ձեռ. Վասպ. 426, 428, 431։

— 553. Ստեփաննոս որդի Գրիգորի (1458 թ.) տես Փաշամելէք։

— 554. Ստեփաննոս գրիչ, օրինակել է մի Աւետարան՝ մահտեսի Աստուածատուրի համար, «Եղոստոտ» կոչված վայրում, 1459 թ.—Ձեռ. Վասպ. 432 (չի դնում հիշատակարանը)։—Հարծեմ վրիպակ է և պետք է կարդալ Ծանոթ:

— 555. Ստեփաննոս եպիսկոպոս Ս. Վարդանայ վանքի 1460 թ.—Նոտարք 197, Ձեռ. Վասպ. 434։

— 556. Ստեփաննոս աբեղա, միաբան նույն վանքի 1460 թ. —Նոտարք 197, Ձեռ. Վասպ. 434։

— 557. Ստեփաննոս Արծկեցի, աբեղա, հիշատակագիր 1460 թ.—Ազգապ. 2163։—Նույն է № 560։

— 558. Ստեփան, որդի Հալիմխաթունի, ուստի և թոռ Թումայի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1460 թ.— Ձեռ. Վասպ. 433։

— 559. Ստեփաննոս կրոնավոր, որդի Գուրջիբէկի և Էլթախաթունի, եղբայր Ներսէս աբեղայի, որ Աղթամարում, Թումայի համար մի Աւետարան գրեց 1460 թ.—Ձեռ. Վասպ. 434, 437։

— 560. Ստեփաննոս միակեց, Արծկէում Միքայէլ քահա-

նա՛յին գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Հավատավոր վանքին (Ս. Գէորգ), 1460 թ.—Նոտարք 196։—Նույն է № 557։

— 561. **Ստեփաննոս**, գրել տվեց մի Ավետարան Վարդան աբեղային, Աղջոց վանքում և նվիրեց Գառնիի կաթուղիկէ եկեղեցուն, 1460 թ.—Նոտարք 195։

— 562. **Ստեփաննոս**, կինն է Մելիք. ծնողներն են Վարդան գրչի, որ Կողուց վանքում օրինակեց Ավետարանը 1461 թ.—Նոտարք 198։

— 563. **Ստեփաննոս** աբեղա, գրիչ. օրինակել է Ռամգիրք (կախարդական ընդարձակ մի հատոր), 1461 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 108 բ։

— 564. **Ստեփաննոս** քահանա, հայր Ներսէս եպիսկոպոսի, որ Տիւրիկում, Զաքարիա քահանային գրել տվեց մի Ավետարան, 1462 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 51։

— 565. **Ստեփաննոս** վարդապետ, մականունն է Ձալակ. սպիտակ բուռով ծեփեց ու նորոգեց Կտուցի վանքը 1462 թ.—Նոտարք 207. Թվի թե սրա հետ նույն է՝

— 566. **Ստեփաննոս** վարդապետ, «որ է հոգևոր հայր մեր (Կտուց անապատի), և խրատիչ ամենայն բարութեանց, որ և զօգուտն քարոզեաց ի գիշերի և ի ցերեկի մեզ, և է փիլիսոփայ (երաժիշտ) երեցական արհեստի, և ծաղիկ ժամատեղաց. և է գիտակ ամենայն հին և նոր կտակարանաց աստուածային գրոց գիտութեան, որ յար և նման է վարժապետին իւրոյ Թումայ վարդապետին» (1462 թ).—Նոտարք 208։

— 567—8. **Ստեփանոս**, երկու համանուն որդիք Աստուածատուրի (առաջինը մեռած), որ Ուշտունեաց Բերդաձոր վանքում գրել տվեց մի Ավետարան 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443։

— 569. **Ստեփանոս**, որդի Հազարբէկի և եղբայր Կիրակոս Սարփեցու, որ գնի միջնորդ եղավ տանուտէր Էգիլշահի և Յովհաննէս գրչի միջև, Արծկէ 1463 թ. սպանվեց անօրեններից.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 570. **Ստեփանոս**, հայր տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Ավետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։

— 571. **Ստեփաննոս** գրիչ. Ավագ վանքում օրինակել է Գր. Նազիանզացու Աստուածաբանութիւնը և Կիւրղի Աղեքսանդրացւոյ Պարապմանց գիրքը 1463 թ.—Ձեռ. Կարին. 6։

— 572. **Ստեփանոս**, հայր Խոնձայի՝ կնոջ տանուտեր Էգիլ-

*շահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։*

— 573. Ստեփաննոս *եպիսկոպոս, միաբան Խորձեան գաւառի Խլպաշի վանքի, ուր օրինակեց Աւետարանը 1464 թ.—Թորոս աղբ. Բ. 341, Նօտարք 218։*

— 574. Ստեփաննոս *եպիսկոպոս Սիւնեաց, որդի Իւանէ Որոտնեցու, հիշված 1464 թ.—Սիսական 21 ա։*

— 575. Ստեփաննոս, *արքեպիսկոպոս Թադէոս Առաքելի վանքի, 1464 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 302։*

— 576. Ստեփաննոս, *միաբան Յովհաննավանքի 1464 թ.—Այրարատ 172։*

— 577. Ստեփաննոս *արքեպիսկոպոս, վանահայր Սաղիանի՝ 1464 թ.—Սմբատեանց, Սաղիան 31։*

— 578. Ստեփաննոս *աբեղա, գրիչ. Հայոցթաղում, Դանիէլ վարդապետի խնդրանոք գրեց մի Ճաշոց, 1464 թ.—Ձեռ. Սևան. 19 բ, Սմբատեանց, Գեղարքունի 403։*

— 579. Ստեփաննոս *Ձմշկածագցի. գրիչ. օրինակել է Աւագ վանքում մի Ժողովածու, 1464 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 115 բ, 116 աբ)։*

— 580—1. Ստեփաննոս, *երկու համանուն քահանաներ Վանի Պօղոս-Պետրոս եկեղեցու, 1465 թ.—Նօտարք 222։*

— 582. Ստեփաննոս *քահանա, որդի Մանուէլ քահանայի. գրել տվին մի Ճաշոց Յովհաննէս գրչին, Հերմոնի վանքում, 1465 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 403։*

— 583. Ստեփանոս *քահանա, հայր Մատթէոս քահանայի, որ Անաւարզայում Հայրապետ եպիսկոպոսին գրել տվեց մի Ճաշոց, 1466 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 235 բ։*

— 584. Ստեփաննոս *ճգնավոր, միաբան Առբերդի վանքի, 1466 թ.—Նօտարք 225։*

— 585. Ստեփաննոս, *տնտես նույն վանքի, 1466 թ.—Նօտարք 225։*

— 586. Ստեփաննոս, *հայր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։*

— 587. Ստեփաննոս *վարդապետ, առաջնորդ այս Նահանգի (մր Նահանգի), 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։*

— 588. Ստեփանոս *քահանա, գրիչ. օրինակել է «Գիրք աստեղագիտութեան» 1466 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 133։*

— 589. **Ստեփաննոս** *կրոնավոր, որդի Յովաննէսի. մայրն է Հիրիքայ. եղբայրն է Սահակ: Տարօնի Եղերդոտ վանքում, Յովհաննէս արեղայի պատվերով օրինակեց Աւետարանը 1463 թ.— Նոտարք 215: Ավելի ուշ, նույն վանքում օրինակել է Գանձարանը՝ 1466 թ.—Նոտարք 227:*

— 590. **Ստեփաննոս** *եպիսկոպոս երկրին Գեղամայ, հիշված 1465 թ. (Սիսական 35), որի հետ նույն են Ստեփաննոս եպիսկոպոս «երկրին Գեղամայ» ԺԵ դարի կեսին (Սիսական 523) և Ստեփանոս եպիսկոպոս գաւառին Գեղարքունեաց՝ ԺԵ դար (Ձեռ. Սևան. 19):*

— 591. **Ստեփաննոս** *Շաւղրցի, կաթուղիկոս Սսոյ, հիշված է մի Ճաշոցի հիշատակարանում 1466 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 236 ա) և Ստեփաննոս կաթուղիկոս Սսոյ՝ հիշված մի Յայսմաւուրքի հիշատակարանում 1467 թ.—Բակուրան, Կիպրոս կղ. 56:*

— 592. **Ստեփանոս** *եպիսկոպոս, առաջնորդ Կիւրղի վանքի. նույն վանքում, Գրիգոր աբեղայի համար օրինակեց Աւետարանը 1467 թ.—Ձեռ. Վասպ. 448:—Զարմանալի է, որ վանքի առաջնորդ եպիսկոպոսը իր միաբաններից մեկի համար Աւետարան է արտագրում: Բայց ավելի զարմանալի է այն, որ Ձեռ. Սեբ. (տես № 593/4) ես հայտնում է թե նույն 1467 թվին, նույն Կիւրղի վանքում Ստեփանոս գրիչը արտագրում է մի Աւետարան, բայց այս անգամ Սահակ երեցի համար և Ստեփաննոսը պարզ գրիչ է, իսկ Ստեփաննոս եպիսկոպոսը առաջնորդ: Սրանցից ո՞րն է ճիշտ:*

— 593. **Ստեփանոս** *առաջնորդ Կիւրղի վանուց, 1467 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 257:*

— 594. **Ստեփանոս** *գրիչ. Կիւրղի վանքում, Սահակ երեցի պատվերով օրինակեց Աւետարանը 1467 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 257:*

— 595. **Ստեփաննոս**, *որդի Զանիբէկի և հանգուցյալ եղբայր Կիրակոս Զօշկանց երեցի, որ օրինակեց Ճառընտիրը Աղթամարում 1467 թ.—Նոտարք 230:*

— 596. **Ստեփաննոս** *եպիսկոպոս, առաջնորդ Մենծկերտ գավառի Սիրունքար անապատի 1468 թ.—Թորոս աղբ. Բ. 378:*

— 597. **Ստեփանոս** *քահանա, որդի Ամիրի. Հերմոնի վանքում, Անանիա աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.— Ձեռ. Թաւր. 132 բ:*

— 598. **Ստեփանոս** *քահանա, հայր Գրիգոր քահանայի, որ*

Տայշող գյուղում կազմեց ու ծաղկեց Յովհաննէս քահանայի Աւետարանը 1469 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 259։—Հմմտ. № 593։

— 599. **Ստեփանոս** քահանա Բիւրականի, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 600. **Ստեփանոս**, հայրապետ Տիւրիկի Վաւտըռ գյուղի Ս. Աստուածածին վանքի. գրիչ. նույն վանքում, Նորմանուկի պատվերով արտագրեց Աւետարանը, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 751=Թորոս աղբ. Բ. 363։—Հմմ. № 618։

— 601. **Ստեփանոս**, որդի Նորմանուկի, որ Տիվրիկի Վաւտըռ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 363։

— 602. **Ստեփանոս**, միաբան Խիզանի Գամաղիէլ վանքի, 1468—9 թ.—Ձեռ. Վասպ. 452, 455։

— 603. **Ստեփանոս**, կինն է Խըպրել, ծնողներն են Մարգարիտի՝ կնոջ տանուտեր Առաքելի, որ գրել տվեց մի Աւետարան՝ Խիզան 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453։

— 604. **Ստեփաննոս** արքեպիսկոպոս, մականուն Գողալ (գեղեցիկ), իբր առաջնորդ Սալնապատի վանքի հիշված է 1457 թ. (Նոտարք 186). սրա քրոջ որդին է Յովհաննէս կրոնավորը, որ գնեց մի հին Շարակնոց և նորոգել տվեց 1465 թ. (Rapport Belgique 145). Ստեփաննոսը իբրև առաջնորդ հիշված է նաև 1470 թ. (Ձեռ. Վասպ. 460)։

— 605. **Ստեփաննոս**, որդի Թորոսի և եղբայր Կիրակոս կրոնավորի, որ Եկեղեաց գավառի Կայիփոսի վանքում գրել տվեց մի Սաղմոս, 1470 թ.—Թորոս աղբ. Բ. 305։

— 606. **Ստեփաննոս** մանուկ Կոստանդնուպոլսեցի. նահատակվեց հավատքի համար «1471 թ».—Զամչ. Գ. 515> Նոր վկ. 305, 727—8 (որի մասունքը իբր թե պահվում է Վիեննայի Ս. Ստեփաննոս հոյակապ Մայր եկեղեցում)։

— 607. **Ստեփաննոս** մահտեսի. գրիչ. օրինակել է Աւետարանը 1471 թվին.—Ձեռ. Կարին. 18։

— 608. **Ստեփաննոս**, հայր Թումա կրոնավորի. երկուսն էլ մերձավոր Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում գրել տվեց Աւետարանը 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463։

— 609. **Ստեփանոս**, շինեց Առտէրում Ս. Աստուածածին եկեղեցին՝ 1472 թ.—Ակինեան՝ Գուղնգիրք 117։

— 610. **Ստեփաննոս** վարդապետ, ուսուցիչ էր Երզնկայի Կայփոսի վանքում, 1473 թ.—Թորոս աղբ. Բ. 328։

— 611. **Ստեփանոս**, *որդի Մկրտչի և եղբայր ռէս Մարտիրոսի, որ Բերկրիում գրել տվեց մի Աւետարան 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։*

— 612. **Ստեփաննոս**, *հայրն է Կարապետ վարդապետ Բաղիշեցու (ծն. շուրջ 1475 թ), որ էր գրիչ, տաղասաց, ապա և առաջնորդ Մշոյ Առաքելոց վանքի։—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 311, ՀԱ 1937, 320։*

—613. **Ստեփաննոս**, *հայր Վարդանի և պապ Եղլշահի, որ ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 473։*

— 614. **Ստեփանոս**, *եղբայր Եղիազարի և հորեղբայր Գրիգոր կրոնավորի, որ Արծկէում, Ղազար քահանային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1475 թ.—Ձեռ. Մաղն. 36։*

— 615. **Ստեփաննոս** *աբեղա, եղբայրն է Վայոց Ձորի Յովհաննէս արքեպիսկոպոսի և Թոռն մեծին Պռօշի. հիշված է 1475—6 թ.—Կարապետ եպս.՝ Դօփեանք 94։*

— 616. **Ստեփանոս** *Դանիկ, գրել է տվել մի Աւետարան, 1477 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1925, 261։*

— 617. **Ստեփաննոս** *կրոնավոր, հորեղբայր Մելքիսեթ գրչի, որ Հալէպում, մահտեսի Ֆարաճի համար օրինակեց Աւետարանը 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96։*

— 618. **Ստեփաննոս** *վարդապետ առաջնորդ Տիւրիկի՝ 1480 թ.—Թորոս աղբ. Ա. 231։—Հմմտ. № 600։*

— 619. **Ստեփաննոս** *եպիսկոպոս, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ ի յիշատակ Գրիգորիս աւագ սարկաւագի և նվիրեց Երից մանկանց եկեղեցուն, 1480 թ.—Ձեռ. Կես. սարգ. 11 ա։*

— 620. **Ստեփաննոս** *կրոնավոր, հոգևոր եղբայր Խաչատուրի, որին օգնում էր թուղթ կոկելով, երբ նա օրինակում էր Աւետարանը Կտուց անապատում, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։*

— 621. **Ստեփաննոս** *աշակերտ Տէր Յովանէ Նաղաշի, որին օգնեց արտագրելու համար Ճաշոցը՝ Կեսարիայում 1481 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848։*

— 622. **Ստեփանոս** *աբեղա, դասավար, միաբան Բոլորաբերդի անապատի 1482 թ.—Խաղբակեանք 236։*

— 623. **Ստեփաննոս** *եպիսկոպոս, որ Յովհաննէս է կաթուղիկոսի հետ գնացել էր Կամենից 1485 թ.—Ալիշան՝ Կամենից, էջ 135։*

— 624. **Ստեփանոս**, *որդի Ոստանի քահանա Ատոմ փիլիսոփոսի (երաժիշտ), 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։*

— 625. Ստեփաննոս *արքեպիսկոպոս Տաթևի, յազատ տանէ, եղբորորդի և հաջորդ Շմաւոն արքեպիսկոպոսի Տաթևի։ Մի աղջիկ առևանգող և տաճկացող մի արեղայի ապաշխարանքի ենթարկած լինելով՝ Թաւրիզի աթաբէգ Սոֆի Խալիլի վրիժառութեան զոհ դարձավ։ Խալիլը խարդախութեամբ հրավիրեց նրան իր մոտ և առաջարկեց հավատքը ուրանալ։ Մերժում ստանալով, քեռորդի եպիսկոպոսին խաշելով և մորեղբորորդի արեղային խորովելով չարաչար նահատակեց («1478 թ»), Ստեփաննոսին 5 տարի չարաչար տանջեց, բայց հետո իշխանուհու միջնորդությամբ ազատ արձակեց («1483 թ»)։ Ստեփաննոսը մի տարի հետո ուխտի գնաց Երուսաղէմ և Տաթև վերադարձին վախճանվեց «1485 թ»։— Նոր վկ. 313—9, Ազգապ. 2198, Սիսական 21 ա, 528 (դնում է 1453 թ)։*

— 626. Ստեփաննոս *գրիչ, Արճէշում, Ծիրանաւոր Ս. Աստուածածին վանքում, ի հիշատակ Մուրադի գրել է մի Աւետարան, 1486 թ.—Ջեռ. Վասպ. 499—500։*

— 627. Ստեփան *եպիսկոպոս, առաջնորդ Կեսարիոյ Ս. Գր. Նիւսացու վանքի, 1486 թ.—Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. էջ 1849։*

— 628. Ստեփաննոս, *հայր Մովսէս արեղայի, որ Բաբերդի Անլոց վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.— «Էջմիածին» 1944, № 1, էջ 36 բ։*

— 629. Ստեփանոս, *որդի Էրկիլի և եղբայր Զաքարայ արեղայի, որ Յակոբ քահանայից գնեց մի Շարակնոց, Երզնկայում, 1487 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 27 աբ։*

— 630. Ստեփանոս *մերձավոր Աստուածատուրի, որ գնեց մի հին Աւետարան 1488 թ.— Ջեռ. Վենետ. Ա. 492։*

— 631. Ստեփաննոս, *որդի Յովհաննէս քահանայի, որ նրա համար օրինակել է տվել Աւետարանը Սարգիս գրչին, Բերկրիի Առեղս գյուղում, 1488 թ.—Ջեռ. Վասպ. 508—9։*

— 632. Ստեփաննոս *Սարաձորեցի, կաթուղիկոս Սսի «1477—1488 թ». հաջորդել է Կարապետ Եւդոկիացուն՝ ըստ Ազգապ. 2209։ (Իսկ ըստ Սիսուան 218 Ստեփաննոս ի Սարաձորոյ նստել է 1449 թ. իբրև հաջորդ Կարապետ Սսեցու և իրեն էլ հաջորդել է Յովհաննէս Ա. Անտիոքացի 1474 թ)։*

— 633. Ստեփաննոս *նորընծայ կրոնավոր Գողթան Բուստայ անապատում 1489 թ.—Սմբատեանց՝ Երնջակ 276։*

— 634. Ստեփաննոս *կրոնավոր, որդի Համշահի. իր եղբայր*

Սարգիս կրոնավորի հետ միասին շինեցին Ս. Փրկիչը (Աղթամար), Ստեփաննոս Դ կաթողիկոսի («1465—1489 թ») ժամանակ։—Հուշաք. 43։

— 635. **Ստեփաննոս** Դ կաթողիկոս Աղթամարի «1465—1489 թ». (կոչված է տղայ 1488 թ. Ձեռ. Վասպ. 510). հաջորդեց Զաքարիա Գ կաթողիկոսին, որի հորեղբոր՝ Գուրջիբէգի որդին էր։ Մայրն է Էլթիա խաթուն. եղբայրն է Ներսէս եպիսկոպոս։ Իբր կրոնավոր հիշվում է 1449 թ։ Զաքարիան իր հետ Էջմիածին տարավ նրան և արքեպիսկոպոս ձեռնադրեց 1461 թ։ Զաքարիայի եղերական մահից հետո, վերադարձավ Աղթամար, ուր օծվեց կաթողիկոս (1465 թ)։ Շարունակելով իր նախորդի փառասեր քաղաքականությունը և վայելելով Ջիհանշահի բարեկամությունը, ուզեց մի նոր շուք տալ Աղթամարի աթոռին և Զաքարիա կաթողիկոսի եղբորորդի Սմբատին մեծ հանդեսով թագավոր օծեց։ Սրանից հետո գնաց Էջմիածին, իբրև Ամենայն Հայոց հայրապետ՝ 1467 թ (Նոտարք 229)։ Բայց նույն տարին մեռավ իր բարեկամը՝ Ջիհանշահ (1444—1467 թ) և գահ բարձրացավ նրա որդին՝ Ուզուն-Հասան։ Սա հետևում էր տարբեր քաղաքականության և չէր սիրում ոչ Զաքարիային և ոչ էլ Ստեփաննոսին։ Ուստի Ստեփաննոսը ստիպվեց վերադառնալ Աղթամար և ամփոփվել նրա շրջանակում, ուր շինեց Առաքելի եկեղեցին «1472 թ»։ Մեռավ «1489 թ»։—Հուշաք. 41—43. Ձեռ. Վասպ. 469 (հիշված 1474 թ), 459 (1470 թ), Նոտարք 127, 159, 222, 224, 225, 226 (հիշված իբր նորընծայ 1466 թ), Rapport Belgique 146, Ազգապ. 2170, 2174, 2211 և մանրամասն՝ Ակինեան, Գւզնգիրք 94, 109—119։—Ըստ այլ ժամանակակից ձեռագրի մեռել է 1484 թ (տես Ալպօյաճեան, Պատմ. հայ Կես. Բ. 1848)։—Այս բոլորին հակառակ է գալիս Ստեփաննոս կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Զաքարիայի, նստել է «1494—1495 թ»՝ ըստ Ազգապ. 2212, որին համաձայն է Թորոս աղբ. Բ. 276 և 446 տրված հիշատակությունը ՋԽԴ=1495 թ. (եղբայրն էլ կոչվում է Ներսէս արքեպս)։ Այս անպատեհությունը հարթելու համար Ակինեան՝ Գւզնգիրք 115՝ թվականը ՋԽԴ=1495 դարձնում է ՋԺԴ=1465 թ։

— 636. **Ստեփանոս** Տէր, միաբան Աղբակու Ս. Բարթուղիմէոս վանքի, 1489 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 51 բ։

— 637. **Ստեփաննոս** քահանա Բաբերդցի, որդի Ներսէս քա-

հանայի, որ Մովսէս աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

— 638. Ստեփանոս քահանա, ամուսին Ուլուխաթունի՝ քրոջ Խոնդքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 639. Ստեփանոս հայր Խաթունմելէքի և պապ Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

— 640. Ստեփաննոս, կինն է Սադգաթ. որդիքն են տանուտէր Արարշահ, Յովհաննէս քահանա, Յակոբ և Սուլտանշահ, որոնք Ազրակի Երնկանի գյուղում գրել տվին մի Աւետարան, 1490 թ.— Ձեռ. Վասպ. 511։

— 641. Ստեփաննոս, որդի Արարշահի, նախորդի թոռն է։

— 642. Ստեփանոս հայր Մկրտչի, մերձավոր Դովլաթխաթունի, որ Աղթամարում Հայրապետ աբեղային գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12 բ։

— 642բ. Ստեփաննոս նորընծա քահանա, սպասավոր Սակսարբերդ գյուղի Ս. Ստեփաննոս եկեղեցու 1491 թ.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ. էջ իբ։

— 643. Ստեփաննոս առաջնորդ Բիվոլի. հաջորդեց Խաչատուրին. գահակալել է 1481 թ. և մեռել 1492 թվին՝ ըստ Ալիշան, Կամենից, էջ ի և 135, REA 7, 40, Ազգապ. 2375։

— 644. Ստեփաննոս եպիսկոպոս Գեղարդի. եղբայր Յովհաննէսի. նստավ 1458 թ. մեռավ 1493 թ.—Թորոս աղբ. Բ. 304, Այրարատ 346։

— 645. Ստեփանոս, որդի Միրիշիկի?, եղբայր Յոհաննէս եպիսկոպոսի, Պռոշեանց ցեղից. նորընծայ աբեղա էր 1475 թ. ապա եղավ եպիսկոպոս Կոտայից, ինչպես հիշված է 1486 թ. եղբորորդի Ջումայ Բ-ի Պռոշեանց. վերջին հիշատակությունը 1493 թվից է.—Խաղբակեանք 232—4, 236, 239, 240։

— 646. Ստեփանոս, որդի խոջա Միրիջանի, որ Աղթամարում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 647. Ստեփանոս, որդի Սուքիասի՝ եղբոր Յակոբ կրոնավորի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 648. Ստեփան աբեղա Այրի վանից. գրիչ. Համանգուլ

*կույսի համար գրեց մի Ավետարան, 1493 թ.—Թորոս աղր. Բ. էջ 304։*

— 649. **Ստեփանոս** *քահանա, հայր Մովսես երեցի, որ Ավագ վանքում Գրիգոր արեղային գրել տվեց մի Ավետարան, 1494 թ.—Ձեռ. Բուլղ.=ՀԱ 1937, 576։*

— 650. **Ստեփաննոս**, *գրիչ. օրինակեց Մաշտոց ձեռնադրութեան, 1494 թ.* **Առնջւոյ** *վանքում.—Ձեռ. Կարին. 141։*

— 651. **Ստեփանոս**, *որդի Մովսես երէցի, որ Ավագ վանքում Գրիգոր արեղային գրել տվեց մի Ավետարան, 1494 թ.—Ձեռ. Բուլղ.=ՀԱ 1937, 576։*

— 652. **Ստեփանոս** *որդի Գրիգորի. Աղթամարում Գրիգոր դրչին գրել տվեց մի Ավետարան, 1497 թ.*—Bodleian *11։*

— 653. **Ստեփաննոս** *Որձոկցի, գրել տվեց մի Ավետարան 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284 բ։*

— 654. **Ստեփանոս** *վարդապետ, վանահայր Խառտիշարի վանքի, հիշված է 1491 թ.* (Bodleian *29) և 1497 թ. (Թորոս աղր. Բ. 305)։*

— 655. **Ստեփանոս**, *կինն է մահտեսի Լուսին. ծնողներն են Տէր Ավագ քահանայի, որ Երուսաղէմում, Վրթանէս արեղային օրինակել տվեց Գանձարանը 1497 թ.—Ձեռ. Հալէպի՝ Ա. 150։*

— 656. **Ստեփանոս**, *որդի Տէրպարոնի և եղբայր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 ա։*

— 657. **Ստեփաննէս** *(գրված է Ստեփաննէս), հայր Հարիբի (№ 4), կնոջ Ատոմի, որ Աղբակի Երնկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526։*

— 658. **Ստեփանոս**, *հորեղբայր Յովհաննէս քահանայի, որ Խիզանում, Թուզ տիկնոջ պատվերով գրեց մի Ավետարան, 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։*

— 659. **Ստեփանոս**, *որդի Մովսէսի. Արծկէում մի Ավետարան գրել տվեց Յակոբ եպիսկոպոսին, 1499 թ.—Ակինեան, Մատեն. հետազ. Դ. 123։*

— 660. **Ստեփան** *Դ. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Սահակ Բ-ի և նախորդ Յովհաննէս Ջ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։*

— 661. **Ստեփաննոս** *Ե. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Յովսէփի և նախորդ Ղևոնդ Գ-ի (ԺԵ դար)։—Հաւաք. 61 (կեղծիք)։*

— 662. **Ստեփաննոս** *Զ. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ*

Սահակ Գ-ի և նախորդ Դավիթ Զ-ի (ԺԵ դար)։—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 663. Ստեփան Է կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Յոհան Է-ի և նախորդ Սիոնի (ԺԵ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։

— 664. Ստեփաննոս Ը կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Կարապետ Ա Խիզանցու և նախորդ Ներսէս Ե-ի. «այր առաքինի յամենայն գործս բարիս» (ԺԵ դար).— Հաւաք. 62 (կեղծիք)։

— 665. Ստեփաննոս եպիսկոպոս. գրիչ. օրինակել է Հայոց Տոմարը և Շիրակացու գործերը (ԺԵ դար).—Շիր. տիեզ. յոյ. XV։

— 666. Ստեփաննոս քահանա, որդի Ամիրբէկի և եղբայր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սեան. 18։

— 667. Ստեփաննոս, որդի Ղահրամանի, գրիչ. օրինակեց Գանձակում մի Աւետարան (ԺԵ դար).—Ձեռ. Սեան. 13 ա։

— 668. Ստեփաննոս եպիսկոպոս, առաջնորդ Գանձակի Լեզանի Ս. Աստուածածին վանքի (ԺԵ դար).—Ձեռ. Սեան. 13 ա։

— 669. Ստեփանոս որդի Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 Թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— 670. Ստեփաննոս եպիսկոպոս Ճալէթի, ի յաշխարհն Աղուանից. սրա հոգու համար գրվեց մի Աւետարան 1499 Թ. ապա բերվեց Արարատեան գավառի Հառընջոյ վանքը, ուր ոսկով և գունագեղ նկարներով զարդարվեց՝ 1505 Թ.—Բարխուտ. Աղուանից երկ. 247։

— 671. Ստեփաննոս Ուլուխալացի (մոտ Զմշկածագի), ընտրվեց պատրիարք Պոլսի, բայց պաշտոնանկ եղավ 1550 Թ. գնաց Լեհաստան, ուր գրել է մի Սաղմոս 1551 Թ.—Bodleian 17։

— 672. Ստեփաննոս պատրիարք Պոլսի «1550—1561 Թ». հաջորդեց Աստուածատուր Եազուպեանի. իր օրով Անդրէաս Պարոնաէր պատրիարք Երուսաղէմի գնաց Պոլիս՝ կալվածական խնդրով, որին օժանդակ եղավ Ստեփաննոսը։—Ազգապ. 2260։ (Ալիշան՝ Կամենից 18 արդեն 1549 Թվին պատրիարք է գնում և այցելել է տալիս Կամենից)։

— 673. Ստեփաննոս Ե Սալմաստեցի, կաթուղիկոս հայոց «1545—1567 Թ». հաջորդեց Գրիգոր ԺԱ-ին, որին նախապես աթոռակից էր՝ սկսած «1541 Թվից»։ Լեզվագետ անձ էր. գիտեր նաև լատիներեն։ Երկարատև ժամանակ ճանապարհորդել էր Ռուսաստան, Լեհաստան են։ Հայ ազգի փրկության երազով «1548 Թ» Պոլսի վրայով գնաց Վենետիկ, Հռոմ՝ Պօղոս Գ պապի

մոտ, ապա Գերմանիայ Կարոլոս Ե կայսեր, բայց անհույս մնալով Լեհաստանի և Ղրիմի վրայով վերադարձավ էջմիածին։ Կաթողիկոսության ժամանակ իրեն աթոռակից էր Միքայէլ Սեբաստացին, որին ավելացրեց ապա Բարսեղ և Գրիգոր։ Գրել է Մեկնութիւն Յովհաննու Աւետարանի և Նախերգանք չորից աւետարանչաց, որոնք նաև պարսկերենի է թարգմանել (Զամչ. Գ. 517)։—Նաև տաղասաց է. իր տաղերից մեկը գտնում եմ Ձեռ. Հալէպի, Ա. 165 նկարագրված Տաղարանում և հետևյալ ձևով է սկսվում.

Եղուկ և վա՜յ է ինձ որ ի յայս հասայ,
Եաւթըն մահու չափ մեղաւք ես աղտեղացայ,
Եւ երկար ժամանակաւք...
Ո՜վ Ստեփաննոս վատթար
Ընդէ՞ր դու մեղար,
Զպատուիրանն...

Ձեռ. Վաստ. 676 դնում է 1572 թվին էջմիածնի կաթողիկոս՝ Ստեփաննոս Զպլախ. այս անունով կաթողիկոս չկա այդ թվին։ Այդ շրջանից գիտենք Ստեփաննոս Ե Սալմաստեցի, որ նստել է «1545—1567 թ». և որին հաջորդել է Միքայէլ Ա Սեբաստացի «1567—1576 թ»։ Պետք է ենթադրել թե Զպլախը նույն Սալմաստեցին է, որի մահվան լուրը դեռ չէր հասել հիշատակագրին։—Կամենից, էջ 135 էլ կարդում ենք, որ էջմիածնի Ստեփաննոս կաթողիկոսը գնացել է Հռոմ, հնազանդել Պապին, դարձել Իլվով, ուր և մեռել է 1551 թ։ Մեջ է բերում նաև նրա լատիներեն տապանագիրը, ուր թվականն էլ գրված է 1551 թ. «...animam suam Deo tradidit 1551»։ Սխալմո՞ւնք է, թե քարերն էլ են կեղծում։—Առաք. պատմ. 337—8, Ալիշան՝ Հայ-Վենետ. 324—330. Կամենից 19. Հայապ. 592. Ազգապ. 2233—63. «Էջմիածին», 1944, № 2, էջ 48 և 1945. օգոստ. էջ 56 (շատ կարևոր)։

— 674. Ստեփաննոս Զ Առնջեցի, որդի Պր. Խոճին, աթոռակալ Միքայէլ Սեբաստացի կաթողիկոսի, որի մահվանից («1576 թ.») առաջ արդեն վախճանվել էր.—Առաք. պատմ. 338, Ազգապ. 2264, Ալիշան, Կամենից 32, 164,—հիշված է 1563 թ. Ձեռ. Լվով (ՀԱ 1936, 509)։ Ճանիկեան, Հնութ. Ակնայ 79 (իր անթվ. հիշատակարանը իբրև ստացող՞մի Շարականի)։

— 675. Ստեփանոս երեց Եւդոկիացի կամ Թոխաթեցի, տաղասաց, երգիծաբան. ծնվել է 1558 թ. Եւդոկիա քաղաքում. կրթությունը ստացել է իր քաղաքում. 1580 թվին ձեռնադրվում

է քահանա. 1589 թվին ուխտի է գնում Երուսաղէմ և վերադառնում իր քաղաքը։ 1602 թվին Եւդոկիան ենթարկվում է Գարա Եազըճիների ասպատակության. Ստեփանոս քահանային էլ բռնում են և չարաչար տանջանքների ենթարկում։ Ապա կարծելով թե արդեն մեռել է, թողնում են ու հեռանում։ Ասպատակների հեռանալուց հետո, շատերի հետ Ստեփանոսն էլ փախչում է Պոլիս (1603 թ), մի տարի հետո Կաֆա (Թէոդոսիա), ուր պարապել է ուսուցչությամբ և ձեռագրեր արտագրելով։ Կյանքի վերջերքում դարձավ իր հայրենի քաղաքը, ուր գտնում ենք արդեն 1621 թ. մի քանի տարի հետո էլ վախճանվում է։ Ունի զանազան տաղեր, որոնց ամբողջական հավաքածուն դեռ չէ հրատարակված։ Տաղերի մեջ նշանավոր են Ողբ և ոտանաւոր ի վերայ Եւդոկիա մեծ քաղաքին (Ղարա Եազըճիների արշավանքի պատմությունն է), Գանգատ ի ձեռաց լուոց և ճանճից (1614 թ), Գովասանութիւն Կաֆայի քահանայից (այս երկուսը զավեշտական) են։ Ստեփանոս Թոխաթեցու կյանքի և գրական գործերի մասին տես Ակինեան, Հինգ պանդուխտ տաղասացներ, Վիեննա 1921, էջ 117—137։—ՀԱ 1924, 238, Նորայր՝ Բռ. ֆրանս. 52 ա, Տաշեան՝ Ցուց. 469, 987, Յուշիկք Բ. 101. Կոստանեանց՝ Նոր ժող. Գ. էջ գ. Հայապ. 583, 605. Ձեռ. Վենետ. Բ. 906, 943։

— 676. Ստեփաննոս կաթուղիկոս Աղթամարի. հիշված ենք գտնում ըստ ժամանակակից հիշատակարանների՝ 1608 թ. (Ձեռ. Վասպ. 828), 1616 թ. (անդ 852), 1619 թ. (անդ 859, կոչված Աղթամարեցի), և 1621 թ. (անդ 866)։ Ընդամենը լինում է 1608—1621 թ.՝ 13 տարի. Նախորդ և հաջորդ մի քանի տարիները էլ հաշվելով՝ բավական է մի անձ ենթադրելու։ Այս շրջանի համար Ակինեան, Գւղնգիրք, էջ 130 ասում է թե «ձեռագրաց մեջ կամ այլուր 1606—1660՝ 55 ամեայ շրջանին Աղթամարայ կաթողիկոս չէ յիշուած»։ Մեր այս Ստեփաննոսը պատշաճօրէն կարող է լրացնել այդ թերին։

— 677. Ստեփաննոս, աշակերտ Ներսէս Մոկացու († 1627 թ), որի գրած «Պատմութիւն պատկերի Աստուածածնին» տաղի վրա ավելացրեց 300 տուն ևս։—Զամչ. Գ. 565։

— 678. Ստեփաննոս տաղասաց, նախ քան 1647 թ. իր տաղերից նմուշներ տես Կոստանեանց, Նոր ժող. Ա. 46, Բ. 10. հմմտ. № 682 և 690։

— 679. Ստեփաննոս կաթուղիկոս Աղթամարի. ժամանակակից Էջմիածնի Մովսէս (1629—1632 թ). կաթուղիկոսի. հա-

ջորդել է Գրիգորիս Գ-ին. իրեն հակաթոռ կամ աթոռակից է հիշվում Մարտիրոս Գուռճի 1645—1648 թ։ Երկուսին էլ մերժում է Ակինեան, Գւզնգիրք 131։ Բայց Ստեփաննոս կաթողիկոսի գոյությունը Աղթամարում 1645 թվին անուրանալի է, որովհետև հիշված է Ձեռ. Վասպ. 605։

— 680. Ստեփաննոս կաթողիկոս Աղթամարի, հիշված է 1654 թ. (Ձեռ. Վասպ. 290)։—Տես վերը № 676։

— 681. Ստեփաննոս կաթողիկոս Աղթամարի. հաջորդեց Բաղդասարին, որ նստել էր «1663 թ»։ (Տես Ակինեան, Գւզնգիրք, էջ 196)։

— 682. Ստեփաննոս Կեղեցի կամ Ստեղեցի. տաղասացունի տաղ «Փառք քեզ, թաղաւոր փառաց» (օրինակված 1671 թ).—Տաշեան, Ցուց. 792 բ։

— 683. Ստեփանոս կաթողիկոս Աղթամարի, հաջորդել է Պետրոսին 1670 թ. հիշված է 1671 թ. հայտնի չէ թե երբ է մեռել, բայց անշուշտ 1677 թվից առաջ.—Ակինեան, Գաւազանագիրք 136։

— 684. Ստեփան հայ, բաց արեց Պարիզում երկրորդ սրճարանը՝ 1672 թ.—Ալիշան, Յուշիկք Ա. 73։

— 685. Ստեփաննոս Մեղրեցի, միաբան և նվիրակ Էջմիածնի. պատրիարք Պոլսի. հաջորդեց Սարգսին «1670 թ». հանգարտությամբ կառավարեց աթոռը՝ սանձելով կուսակցական կռիվները մինչև իր մահը «1674 թ».—Ազգապ. 2602։

— 686. Ստեփաննոս Ջուղայեցի. աշակերտ Դավիթ Ջուղայեցու. նստավ առաջնորդ Նոր-Ջուղայի (1684 թ). մի ուրացյալ վարդապետի չարախոսությամբ բանտարկվեց մի տարի. հրավիրվեց Էջմիածին և կարգվեց կաթողիկոս՝ Նահապետ կաթողիկոսի փոխարեն «1695—6 թ»։ Նահապետը կարողացավ գահընկեց անել նրան։ Բանտարկվեց Երևանում, ուր և մեռավ «1698 թ» և թաղվեց Խոր-Վիրապում։—Ջուղ. 148—153, Չքբ. սարկ. Բ. կե. Այրարատ 439. Ազգապ. 2674. ժամանակակից մի հիշատակություն իր մասին տես Թորոս աղբ. Բ. 410։

— 687. Ստեփաննոս Լեհացի կամ Ռըվովցի. Նիկոլի հալածանքից փախչելով եկավ Էջմիածին և իր հմտության պատճառով Փիլիպպոս կաթողիկոսից վարդապետական աստիճան ստացավ։ Գիտեր քաջ լատիներեն. սովորեց նաև հայերեն, և լատիներենից թարգմանեց զանազան գործեր. ինչ. Պատմութիւն Յովսեպոսի (1660 թ. տես Սիսական 305 բ), Դիոնեսիոս Արիս-

պագացի և լուծմունք նորին (1662 թ), Վարք Դիոնեսիոսի և յիշատակարան իւր, Արիստոտելի մետաֆիզիկայն, Ցաղագս մարդկային հոգւոյ (1668 թ. ըստ Թորոս աղբ. Բ. 449), Գրոկլի Պատճառաց գիրք, Հայելի վարուց, որ է Հարանց վարք ֆրանկաց (թրգմ. 1660 թ. տպ. 1702 թ.—ըստ Միքարանի ուսումնասիրութեան՝ Հայկականք, Վղրշպտ. 1903, էջ 11—30 թարգմանված է լեհերենից և ոչ թե լատիներենից), Պատմութիւն Ղուրանի, Բուրաստան աղօթից, Հոգեաց գիրք, Սիրաքի գրքի նոր թարգմանությունը (որ տպ. Ոսկանի Աստուածաշնչի մէջ)։ Ինքը նաև նկարիչ էր և նկարել է էջմիածնի տաճարի զանազան նկարները (տես այս մասին նաև Ակինեան, Յովնաթան Նաղաշ, Վիեննա, 1911, էջ 105 են)։ Երբ Յակոբ Բ կաթուղիկոսը գնաց Պոլիս, Ստեփաննոսը նշանակվեց փոխանորդ, իսկ նրա մահից հետո տեղակալ («1680 թ»)։ Մեռել է 1699 թ. ըստ Չամչ. Գ. 620 կամ 1689 թ. ըստ Ջեռ. Դաղեան, Ա. 92 բ։—Առաք. պտմ. 314—6, Զքր. սարկ. Գ. 37. Յոհնաթ. 30. Կամենից, էջ 140, 144. Այրարատ 223, 241. Զարբ. Նոր մատեն. 362—4. Թրգմ. 391—4.—Իր ինքնաձեռագիրը տես Շողակաթ 213։

— 688. Ստեփան Թ. *կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Ներսէս Զ-ի և նախորդ Բաղդասար Բ-ի (ԺԷ դար).—Հաւաք. 63 (կեղծ էք)։*

— 689. Ստեփաննոս *Ժ. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Բաղդասար Գ-ի և նախորդ Մարկոս Բլուրմակեցու (ԺԷ դար).—Հաւաք. 63 (կեղծիք)։*

— 690. Ստեփաննոս *Շատախցի, տաղասաց ԺԷ դարի.—Յուշիկք, Բ. 126։*

— 691. Ստեփանոս *Կաֆայեցի, կոչում է իրեն «տրուպ յետին բանասէր», Ալիշանը անվանում է «քահանայ». գրել է Սահակ Բրուտեցի († 1715 թ) նոր վկայի նահատակութեան սրտառուչ պատմությունը, որ տպված է նախ Սիսական 345, 528 և ապա արտատպված Նոր վկ. 552—9։*

— 692. Ստեփաննոս *Ռօշքա Սարգսեան, Կամենիցացի, Օֆիցեալ Ստանիսլաւովու. ծն. 1670 թ. † 1739 թ։ Կամենից քաղաքի ավագերեցն էր։ Ունի Տրամաբանութիւն, Փիլիսոփայութիւն, Բարոյական Աստուածաբանութիւն, Նամականի, Ժամանակագրութիւն, բայց իր մեծագոյն գործն է ընդարձակ Բառարան հայ-լատին և լատին-հայ, որ կոչվում է Գանձ հայերէն լեզուի.—Զարբ. Նոր մատ. 365, Տաշեան՝ Ցուց. 1152 գ։*

— 693. Ստեփաննոս *Շահումեան, Սիւնեաց Դաւիթ բէգի նշանավոր զորավարներից մին. Պալի գլխատումից հետո կարգվեց իշխան Գենուազի (1714 թ). գերի ընկավ Թուրքերի ձեռքը 1724 թվի մի պատերազմում, բայց մի Թուրք բարեկամի միջոցով ազատվեց։ Բայինտուր զորավարի հետ օգնության հասավ Մեղրեցոց, որոնց պաշարել էր Թուրքերի 18,000-անոց բանակը. հաղթեց նրանց և ետ քշեց։ Պատկանելով Շահումեան տոհմին, որոնք հարուստ առևտրական տուն ունեին Վենետիկում, ինքն էլ գաղթեց Վենետիկ։ Այստեղ, Մխիթարեան վարդապետներից մեկին (Հ. Ղուկաս Ստեփանեան, Սեբաստացի. †1751) պատմեց Դաւիթ բէգի ապստամբության պատմությունը, որ և նույն վարդապետը գրի առավ և ապա տպվեց (Պատմութիւն մարտից Ղափանեցւոց)։ Մահվան թիվը հայտնի չէ։—Սիսական 277 ր և 301—302, ուր ընդարձակ տես իրենց ճյուղագրությունը։—Ջամչ. Գ. 789—792 կոչում է «Վրթանիսեան»։*

— 694. Ստեփաննոս *Դաշտեցի (Նոր-Ջուղայից). գրել է Ընձեռումն վիճաբանության, Մախաղ փշրանաց (1700 թ), Կոչնակ ճշմարտութեան, Խնդիր ուղղութեան. բայց բոլորից ավելի կարևոր է Ժամանակագրութիւն Օսմանեան սուլթանաց (ԺԸ դար).—Ջամչ. Գ. 749, Այրարատ 494, Զարբ. Թրգմ. 213. Տաշեան, Ցուց. 1152 ր, Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 216 ր։*

— 695. Ստեփաննոս *Զաքարեան, Պրուսացի, մականունը՝ Աղաւնի. պատրիարք Պոլսի «1831—39 թ». հաջորդեց Կարապետ Գ Պալաթցուն։ Նախապես Արմաշի և Նիկոմիդիոյ առաջնորդն էր։ Պատրիարքության ժամանակ զարկ տվեց ուսումնարանական գործին. իր օրով բացվեց Իւսկիւտարի ճեմարանը («1838 թ»)։ Այս ժամանակ սկսվում է բողոքականության մուտքը հայոց մեջ. Ստեփաննոսը անընդունակ զգալով իրեն կռվել դրա դեմ, գահից հրաժարվում է («1839 թ»)։ Հաջորդ տարին նորից է գահակալում («1840 թ»), բայց ամիրաների դեմ ժողովրդական պայքարի ժամանակ գահընկեց է լինում («1841 թ»), ուրից հետո քաշվում է Արմաշ, որ արդյունավետ կերպով կառավարում է մինչև իր մահը «1853 թ»։—Ազգապ. 3559, 3722, 3732։*

— 696. Ստեփաննոս-*Պետրոս Ժ Ազարեան, կաթուղիկոս կաթոլիկ հայոց 1880—1899 թ, իբր հաջորդ Անտոն-Հասունի.—Ազգապ. 4496։*

— 697. Ստեփաննոս *վարդապետ Հին Ջուղայեցի. ունի տաղ*

ու Դաւիթ Անյաղթ. (ժամանակն անյայտ).—Մանանդեան, Յու-նար. դպր. 278։

— 698. Ստեփաննոս պատմիչ ոմն, որի Պատմութիւնը կո-րած է. թվականն էլ անյայտ.—Այրարատ, 5 ծան։

— 699. Ստեփաննոս իմաստասէր, որի խնդրանօք Սամուէլ քահանան գրեց «Մեկնութիւն տոմարի»։ Թվականն անյայտ։ Սրա մի օրինակը արտագրել է Նայի գրիչը 1626 թ.—Ձեռ. Ներս. 33ա։

— 700. Ստեփաննոս երեց, որդի Յովհաննէս քահանայի. տոմարագետ. գրել է «Յաղագս ընթացութեան արեգական 28 ամաց և շրջագայութեան լուսնին իննևտասներեակ ամաց»։—Թվականը անյայտ է։—Զարբ. Հին դպր. 790։

— 701. Ստեփաննոս գանձասաց. գրել է մի քանի գանձեր, ինչ. Սիրով վառեցար, Սոսկալի ահիւ են. հրտր. Ճռաքաղ 1859, 77—78, Բազմ. 1864, 169 և 1894, 211 են (ըստ Տաշեան, Ցուց. 1153 բ)։—Ժամանակն անյայտ։

*ՍՏԵՓԱՆՈՒՀԻ, իգ. <Ստեփան անվան իգական ձևն է, որ միևնույն ժամանակ ունի Պսակուհի ձևը, որ տես առանձին։ Սրա հունական իգական ձևն է Ստեփանի կամ Ստեփանիա, որ տես վերը։

*ՍՐԱՀԱՆԳ, ար. <պրս. سرهنگ sarhang «զորագլուխ» բառն է, որի վրա տես Սարհանգ։ Վերի ձևով ունինք միայն մի ան-գամ հիշատակված՝

— Սրահանգ, որդի Ջաջուռի Ա., եղբայր Խաղբակ Բ-ի կամ հօրեղբայր Ջաջուռ Բ-ի. երկու խաչքար ունի կանգնեցրած Հա-ւապտուկ լեռան կողին, 1173 թ. հիշված է նաև 1214 թ.—Յով-սէփեան՝ Խաղբակեանք 31։

†ՍՐԱՀԱՍ, ար. <հյ. սուր+հասանել բառերից բարդված, այն է «արագահաս», որ սրբերին տրված ածական է։ Մի ան-գամ ունինք՝

— Սրահաս, որդի խոջա Յովհաննէսի, որ ժառանգեց Տա-րօնի իշխան իր հօրեղբօրորդի խոջա Յովսէփի Մուշում գրել տված Աւետարանը 1488 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

*ՍՐԱՊԻՈՆ, ար. <հուն. Σεραπίων, ավելի լավ Σαραπίων անունից, որ ծագում է հույն-եգիպտ. Σέραπις, Σάραπις աստու-ծու անունից, որ ընդունել էին նաև Հռովմայեցիք.=լտ. Sera-pion։ Այս անունով հայտնի են՝ Սրապիոն հույն բանաստեղծը, Սրապիոն՝ եգիպտացի կուսակալ Կիպրոսի, Սրապիոն բժիշկ Աղեք-սանդրացի, Սրապիոն նկարիչ, նաև մի քանի հայրեր և վկաներ,

*որոնցից նշանավոր է* Սրապիոն աբբա՝ *ճգնավոր Եգիպտացի, որի վարքը մտած է Հարանց վարքի մեջ։ Գրվում է* Սրապիոն, Սարապիոն, Սերապիոն, *որոնց մեջ ավելի սովորականն է* Սրապիոն։ *Գործածված է մեր մեջ ԺԲ դարից և կա նաև այժմ։ Կրճատ ձևն է* Սրապ *(կա և* Սիրապ՝ *1716 Թ, Տաշեան, Ցուց. 703)։ Սրանից են* Սրապեան, Սրապիոնեան *ազգանունները։*

— 1. Սրապիոն, *նվիրատու ձեռագրի, Տարօն, 1205 Թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 473, Հայապ. 450։*

— 2. Սրապ, *որդի պարոն Աւլան Սեբաստացու, որ ստացավ Ճառք Եպիփանու, 1350 Թ.—Տաշեան, Ցուց. 107 բ։*

— 3. Սրապիոն *որդի Կոստանդինի և եղբայր Յովհաննէս քահանայի, որ Գրիգոր աբեղային օրինակել ավեց Աւետարանը 1484 Թ.—Ձեռ. Թաւր. 16։*

— 4. Սրապիոն *աբեղա, Զագավանից վանքին նվիրեց Դաւիթ Անյաղթը (ԺԵ դար).—Այրարատ 291։*

— 5. Սրապիոն *Օձաեղացի, մեծ վարդապետ, որ ՌԾԲ=1603 թվին ուսուցանում էր Բաբերդի Վահանաշենու վանքում.—Գրիգ. ԺՄ. 203. Նշխ. մատ. 71։ (Ա. Տէր-Միքէլեան, հրտր. Սամ. անեց. էջ 301 համարում է հաջորդի հետ նույն. բայց չի կարող լինել, որովհետև 1603 թվին Ուռհայեցին կաթողիկոս է օծվել, իսկ նրանից առաջ էլ Տիգրանակերտի առաջնորդն էր)։*

— 6. Սրապիոն *Եդեսացի կամ Ուռհայեցի, կաթողիկոս հայոց «1603—1606 Թ»։ Աշակերտն էր Ղուկաս Կեղեցու, որից ընդունեց վարդապետական գավազան «1586 Թ» (Ազգապ. 2292)։ Տիգրանակերտի առաջնորդն էր, հայտնի իր գիտությամբ, սրբակեցիկ վարքով և հարստությամբ։ Հասցրել է բազմաթիվ աշակերտներ։ Դաւիթ և Մելքիսեդեկ կաթողիկոսները ծանր պարտքերից նեղված, դիմեցին նրան և խնդրեցին գալ փրկել Էջմիածինը։ Սրապիոն վարդապետը 1602 թվին եկավ Ջուղա (Հին), ուր գնացին նաև երկու կաթողիկոսները, որոնք կշտամբվելով իրենց վարքի համար՝ քաշվեցին Տաթևի վանքը։ Ջուղայեցիք տեսնելով Սրապիոնի բարեմասնությունները, տարին Էջմիածին և կաթողիկոս օծեցին Գրիգոր ԺԳ անունով («1603 Թ»)։ Կաթողիկոսները դիմեցին Շահաբասին, որ ոչ միայն բռնի գանձեց պարտքերը նրանցից, այլ և նոր պահանջներ դրավ Սրապիոնի վրա։ Նա հեռացավ Տիգրանակերտ, ուր և մեռավ մի տարի հետո «1606 Թ»։—Առաք. պատմ. 3—8, 14, 18—20, 25, 159, 184, 217, 219, 338, 340. Դրնգ. 367—370. Թոփոս աղբ. Բ. 419, 430,*

442, 464, 484. Ձեռ. Հալէպի, Ա. 224 ր. Ձեռ. Թեհր. 1 բ=ՀԱ 1935, 309. Ազգագ. 2291—6։—Գրել է պատմական մի աշխատություն, որ հասցրել է մինչև 1601 թ. որա համար Դարանաղցին ասում է թէ նախանձորդ մարդիկ անհետացրել են։ Սրապիոնի աշակերտն է Գրիգոր վրդ. Կեսարացի, որ գրել է Ողբ և երկու Գանձ իր ուսուցչի մահվան վրա (Ձեռ. Հալէպի, Բ. 127 բ և 128 ար)։

† ՍՐԲՈՒՀԻ, իգ. <հյ. սուրբ բառի իգականն է և Աստուածածնի 7 անուններից մեկն է (Սրբուհի, Տիրուհի, Իսկուհի, Թագուհի, Մաքրուհի, Դշխոյ, Մարիամ)։ Կրճատ ձևերն են Սուրբիկ, Սրբօ, Սրբուն։ Հնագույն հիշատակություններն են՝ Սրբուհի (մայր Մոլդաւիոյ Յովհաննէս Անգութ իշխանի՝ 1572—4 թ. ըստ Տաճ՝ Արևել. հայք 27, եթե միայն ստույգ է), Սուփիկ (հմմ. Սուրբիկ)՝ հիշված 1664 թ (Bodleian 252), Սրբուհի՝ 1732 թ. (Ձեռ. Ազուլ.= Արրտ. 1911, 317), 1796 թ. (Էֆիմ. 448)։

ՍՐԵՄ, ար. ծագումը ինձ անհայտ։

— Սրեմ, ձիագողերի գլխավորն էր, որ իր ընկերներով միասին գողացավ Պարսից Սուրէն զորավարի երամակը. Սրեմը կռվեց Պարսից դեմ և սպանվեց. իր թաղված տեղը կոչվեց Սրեմաձոր։ Ժամանակակից է Գայլ Վահանի որդի Սմբատին (606 թ)—Մամիկ դ։

Սրմա տես Սիրմա։

* ՍՔԱՆԴԱՐ, ար. <արաբ. اسکندر Iskandar անունից, որ հուն. Ἀλέξανδρος ձևի տառադարձությունն է (ավելին տես Աղեքսանդր)։ Անունն է Մակեդոնացի մեծ աշխարհակալի (տես հտ. Ա. 106)։ Պարսկական ատասպելը դարձրել է նրան որդի Դարեհի, որի կինն էր Անահիտ՝ դուստր Փիլիպպոս կայսեր հունաց (Շահն. հտ. 5, էջ 44)։ Iskender անունը առաջացել է ինչ որ բույսի անունից, որ գործ դրին բժիշկները Անահիտի հոտած շունչը բուժելու համար։ (Արաբ. ձևը կազմված է նախ հունարենի al-նախավանկը կրճատելով՝ իբր թե արաբերենի որոշիչ al հոդը լինել. ապա տեղափոխությամբ skandr. և որովհետև արաբերենում երկու բաղաձայնով սկսվող բառերը ստանում են ا (alif) նախահավելվածը (հմմտ. Platon> արաբ. Aflātun, frang>efrenǰ), ըստ այսմ էլ ձևացել է Iskandar։ Մեր մեջ այս անվան գործածությունը ԺԵ դարից է սկսում. գրված է Սքանդար, Սկանդար, Իսկանդար, Իսկենտէր, Իսքենտէր, Իսքանդար, Իսքանտար, Ասքանդար, նաև Սքանդր (Նոտարք 160, 224, 232) ձևերով։ Այս

անվան այսքան ուշ հիշատակությունը մեր մեջ՝ ցույց է տալիս, որ փոխառությունը կատարված է Ղարա Իւսուֆի որդի Իսքենդեր Շահի-Արմէնի անունից, որ 17 տարի դիցազնաբար կռիվ մղեց Լենկթիմուրի որդի Շահռուխի դեմ և մինչև վերջ անպարտելի մնաց (1421—37)։

— 1. Սքանդար, *որդի Թաճդինի, որ Արճէշ քաղաքում, կարապետ գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք 1437 թ.—Նոտարք 111—2։*

— 2. Սկանդար *բժիշկ, որի որդին՝ Յովհաննէս բժիշկը խմբագրեց մի Բժշկարան 1438 թ.—Տաշեան՝ Ցուց. 740։*

— 3. Իսկանդար, *երեք ֆլորինով վաճառեց իր ունեցած Աւետարանը Յովհաննէս քահանային 1439 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. էջ 83 բ։*

— 4. Սքանտար *խոջա, որդի պարոն Ջաքարի և եղբայր տանուտեր Արղլաղիզի, որ Ոստանում, գերությունից փրկեց մի Ճաշոց 1459 թ.—Նոտարք 194։*

— 5. Սքանդար, *ազգանունն է Ասլան-Մելիքենց, հավատքի համար նահատակվել է 1465 թվից հետո.—Նոտարք 220, Ազգապ. հտ. Բ. էջ 2172։*

— 6. Իսկենդեր, *որդի Սմբատ Թագավորի (1466 Թ) և հայր Գրիգոր (№ 704) Ա Աղթամարցի կաթուղիկոսի։—Ակինեան՝ Գավազանագիրք 108, 111։*

— 7. Սքանդար, *որդի Վարդանի և եղբայր Էգլշահի, որ ստացավ մի Աւետարան 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472։*

— 8. Սկանդար, *փեսա Ղարիպխաթունի, որ գրել տվեց մի Աւետարան Բուստի անապատում 1489 թ.—Սմբատեանց՝ Երընջակ 276։*

— 9. Սքանդար *ոսկերիչ, զարդարել է մի Աւետարան, որ նվիրվել է Մշոյ Ս. Կարապետ վանքին 1496 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արվ. 43, 45։*

— 10. Իսքանդար *որ հիշված է ԺԶ դարում (տես Ց. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ* յխա)։

— 11. Սքանտար *տանուտեր Ուռհայեցի, որին նահատակեց Ղարայեազիճին՝ Աբրահամ քահանայի հետ միասին «ՌԽԹ=1600 Թ» հունվ. 22, դշ.—Սամ. անեց. շար. 176=Առաք. պատմ. 490 և Նոր վկ. 422։ — Պատկեր աւուրն բոլորովին ճիշտ է գալիս։*

— Ավելի ուշ հիշված են Իսկանդար 1655 թ. (Թորոս աղբ. Բ. 372), Ասֆանդար 1808 թ. (Ջեռ. Վասպ. 360), անթվ. (անդ, էջ 327)։

† ՍՕՍ, որ և Սօսի, ար. <հյ. սօսի ծառի անունից. (համմտ. պրս. թրք. چنار činār, որ նշանակում է նույնպես «սօսի» և նույնպես մեր մեջ դարձել է անձնանուն, բայց այս անգամ իգական գործածությամբ, մինչդեռ Սօսի արական է. տես վերը՝ էջ 213). գործածական է այժմ. անմահացած է Պռօշեանի «Սօս և Վարդիթեր» գեղեցիկ վեպով. ավելի հնից ունինք Բէգսօսի 1686 թ. (Խաղրակեանք 255)։

† ՍՕՍՈՒՆ, իգ. <ժղ. սօսուն «գեղեցիկ» բառից. (այս բառը գործածական է միայն Խրիմի և Նոր-Նախիջևանի բարբառով և ուրիշ տեղ գործածություն չունի. տես իմ Գւռ. բռ. էջ 978 ա. իսկ Վանեցոց բարբառով սօսուն կամ սուսուն նշ. «լեռնային մի գեղեցիկ ծաղիկ կարմիր գույնով»). իբրև անձնանուն հիշված է մի անգամ 1696 թ.՝ սեռ. Սօսընի ձևով (Տաշեան՝ Ցուց. 591 բ) և մի անգամ էլ սեռ. Սուսնին ձևով՝ անթվ. (Ջեռ. Վասպ. 150)։

ՎԵՐՋ Դ ՀԱՏՈՐԻ



## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 91 | 23 | *Աւետարան* | *Ծառընտիր* |
| 548 | 3 | *Իշխան* | *իշխան* |
| 548 | 4 | *իշխանէկ* | *Իշխանէկ* |
| 591 | 9 ն. | *Հեսիռքէոս* | *Հեսիւքէոս* |
| 621 | 17 | *ճառալէ* | *ճառս լէ* |
| 624 | 10 ն. | 1873 | 1273 |

